ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԶԵ.

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ

## ՀԱՏՈՐ Ա.
## ՊՈԼՍԱՀԱՅ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

ԳՐԵՑ

Հ. ԵՓՐԵՄ Վ. ՊՕՂՈՍԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ





ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1957

# GESCHICHTE DER ARMENISCHEN KULTURVEREINE

I. BAND

VON

P. EPHREM POGHOSSIAN

MECHITHARIST



WIEN

MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI

1958

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ

## ՀԱՏՈՐ Ա·
## ՊՈԼՍԱՀԱՅ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

ԳՐԵՑ
Հ· ԵՓՐԵՄ Վ· ՊՈՂՈՍԵԱՆ
Մխիթ. Ուխտէն



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1957

*Արտատպուած «Հանդէս Ամսօրեայ» էն*

| | Թ. | Էջ |
|---|---|---|
| 1951 | 11—12 | 537—565 |
| 1952 | 1— 3 | 133—150 |
| | 4— 6 | 293—816 |
| | 7— 9 | 423—454 |
| | 10—12 | 622—635 |
| 1953 | 1— 3 | 132—152 |
| | 4— 6 | 292—308 |
| | 10—12 | 604—620 |
| 1954 | 7— 8 | 333—348 |
| | 9—10 | 440—446 |
| | 11—12 | 585—602 |
| 1955 | 1— 2 | 57— 73 |
| | 3— 4 | 256—270 |
| | 7— 9 | 405—430 |
| | 11—12 | 572—601 |
| 1956 | 3— 6 | 266—282 |
| | 7— 8 | 357—380 |
| | 9—12 | 517—540 |
| 1957 | 1— 2 | 76— 92 |
| | 3— 5 | 239—254 |
| | 6— 7 | 322—346 |
| | 8—10 | 481—503 |
| | 11—12 | 559—588 |



# ՅԱՌԱՋԱԲԱՆ

1951 Նոյեմբերին երբ ուսումնասիրութեանս *Ներածութիւնը* կը գրէինք (ՀԱ· 1951, էջ 537—546), աչքի առջեւ ունէինք մօտ 350 Ընկերութիւններու ցանկ մը: Թէեւ սկսած էինք հրատարակութեան տալ մեր հաւաքած նիւթերու պաշարը, սակայն երբեք վերջնականապէս սպառած չէինք համարեր մեր աղբիւրներու քննութիւնը: Կրկնապատկելով մեր պրպտումներու աշխատանքը՝ 1951—1958, այսինքն՝ եօթը տարիներու ընթացքին մեր հաւաքած Ընկերութիւններու թիւը բարձրացած էր 690ի: Կրնա՞նք ըսել թէ Պոլսահայ *բոլոր* Մշակ· Ընկերութիւններու *վերջնական թիւն է այս*: — Մենք չունինք այդ յաւակնութիւնը: Զի հաւանական է որ նախ՝ ինչ ինչ աղբիւրներ վրիպած ըլլան մեր ուշադրութենէն, երկրորդ՝ վստահ ենք թէ եղած են Ընկերութիւններ ալ, որոնք *բնաւ երբեք ծանուցուած չեն* ո՛չ մէկ գրքի, ո՛չ մէկ թերթի, ո՛չ մէկ յայտարարութեան կամ «ազդ»ի մէջ:

Այն Ընկերութիւնները, որոնք հրատարակութիւնս սկսուելէ վերջ գտնուեցան՝ մասամբ կրցանք զետեղել բուն մարմնոյն մէջ, իսկ մնացածը կու տանք գործիս վերջը իբրեւ *Յաւելուած*:

Ուսումնասիրութեանս ընթացքին յաջողեցաւ մեզ քանի մը անծանօթ, աննիշդ եւ թերի մնացած կէտեր, Ընկերութիւններու մասին, լուսաբանել, ճշդել ու լրացնել: Այս մասն ալ կու տանք երկիս վերջաւորութեան մէջ:

Ինչ կը վերաբերի նիւթերու ցանկին՝ ճշդագոյն պիտի ըլլար տալ իւրաքանչիւր Ընկերութեան անուան ցանկ մը: Զըրինք ատիկա՝ լոկ չխճողելու համար արդէն խճողուած ու ընդարձակուած գործ մը:

Փափագելի էր մեզ գոնէ քանի մը Ընկերութիւններու կնիք - պատկերներու վերարտադրութիւնը ներկայացնել գործիս մէջ: Բան մը, որ թէ՛ հետաքրքրական է ինքնին եւ թէ փոքրիկ զարդ մը պիտի ըլլար միակերպ ընդարձակ էջերուն: Դժբախտաբար չյաջողեցաւ:

Ի վերջոյ հարկ կը համարինք ուշադիր ընել մեր ընթերցողները որ Պոլսոյ մէջ ներկայիս գոյութիւն ունեցող «Սանուցները» մեծ մասով արդէն գոյութիւն ունէին 1920էն առաջ. քանի մը հատը միայն — օրինակ Կեդրոնական Սանուցը — նոր են ու վերջին տասնամեակներուն կազմուած (Այսոնց մասին տե՛ս Երջանիկ Տարեգիրքի հաւաքածոյին մէջ):

Հեղինակը

## ՎՐԻՊԱԿՔ

| | | Սխալ | Ճիշդ |
|---|---|---|---|
| էջ | 5 | *նն* | *են* |
| էջ | 16 | *ունցած* | *ունեցած* |
| էջ | 17 | 3773 | *թ.* 3773 |
| էջ | 181 | 2. *Վերծանութեան թանգարանի ընկերութիւն* | 2. *Վերծանութեան թանգարանի ընկերութիւն* (1847) |

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ

## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

1. Մշակոյթ բառը ընդարձակ իմաստ ունի. կը նշանակէ մարդուն ազնուացումն ու կատարելութիւնը մտաւոր, բարոյական ու ճաշակագիտական տեսակէտով:

Այն տեսակէտը, որ մեր յաջորդ ուսումնասիրութեան նիւթ պիտի կազմէ՝ «Մշակոյթ» բառին մտաւոր–կրթական իմաստովը առնուած է: Այս տեսակէտով՝ Մշակութային Ընկերութիւնները մաս կը կազմեն դպրոցական ընդհանուր զարգացումին, կամ՝ մէկ բառով՝ կրթական գործին:

Հին ժամանակներն անծանօթ էր, բնականաբար, «Մշակութային Ընկերութիւն» բացատրութիւնը: ԺԷ. դարու վերջերն ու ԺԸ. դարու սկիզբը, երբ առաջին անգամ կը ծանօթանանք հայ մշակութային ընկերութիւններու գոյութեան՝ անոնք «Եղբայրութիւն» անունով կը յորջորջուին եւ կրօնաեկեղեցական եւ բարեբարական նկարագիր կը կրեն: Ուշագրաւ է սակայն որ ո՛չ միայն այն հին առենները, այլ եւ յետոյ ալ յաճախ կը հանդիպինք մշակութային ընկերութիւննե–

րու, որոնք կրօնական անուն կը կրեն։ Իբրեւ նմոյշ յիշենք. «Ս. Ոսկեանց Ընկերութիւն» (Եւդոկիա), «ի Սէր Յիսուսի Ազգասիրաց Ընկերութիւն», «Ս. Ստեփաննոսի Նախավկայի Ընկերութիւն» (Ադրիանուպոլիս), «Ամենայն սրբոց Ընկերութիւն» (Մարզուան), եւ այլն։ Այս իրողութիւնը նախ յայտարար նշան է հայ ժողովուրդի բնածին կրօնասիրութեան։ Բայց, ըստ մեզ, ատիկա ուրիշ աւելի խոր նշանակութիւն մ'ալ ունի. — Թրքահայերը ստիպուած էին յաճախ իրենց դպրոցներու պաշտպան ընկերութիւններու անունը կնքել կրօնական կամ բարեբարական տիտղոսով մը՝ կասկածանքի ու հալածանքի չենթարկուելու համար։ Այս կէտը փաստ մըն է ընդունելու համար որ Թրքահայ շատ մը ընկերութիւններ, նոյն իսկ զուտ կրօնական նկարագրով կամ բարեգործական անունով, ինչպէս Ազքատախնամները, իրենց ծրագրով եղած են գլխաւորաբար մշակութային ընկերութիւններ՝ հնարաւոր պարագային նպաստելու համար հայ դպրոցին կամ ընդհանրապէս հայ մշակոյթին։

Այս առթիւ ըսենք նաեւ որ եղած են ատեններ, երբ մշակութային ընկերութիւններ կազմուած ու գործած են, առանց հրապարակի վրայ որոշ անուն մը կամ տիտղոս մը գոյութիւն ունենալու։ Ատո'վ միայն կը մեկնուին հայ թերթերու մէջ ինչ ինչ յիշատակութիւններ ընկերութիւններու, որոնց ո'չ

անունը, ո՛չ տեղը, ո՛չ թուականը եւ ոչ ալ կանոնադրութիւնը յայտնի կ՚ըլլայ եւ որոնք սակայն իրապէս գոյութիւն ունեցած են։

Յորջորջումի տեսակէտով Մշակութային Ընկերութիւնները կրնանք բաժնել 3 շրջանի. 1. Հին շրջան, այսինքն՝ մինչեւ 1810, երբ հայ ընկերութիւնները սովորաբար «Եղբայրութիւն» կոչուած են։ 2. Միջին շրջան, 1810—1908, երբ անոնք ընդհանրապէս «Ընկերութիւն» անուանուած են։ 3. Նոր շրջան, 1908էն ասդին, երբ հայ ընկերութիւնները մեծ մասով «Միութիւն» տիտղոսը կը կրեն։

2. Հայ Մշակութային Ընկերութիւնները, իրենց ծագումէն սկսած, եղած են օժանդակ մը հայ դպրոցին։ 1861ին Արծուի Վասպուրականի[1] կը գրէ որ ժողովրդական դպրոցներէն շատերը ընկերութիւններու նպաստով, իր բառերով՝ «ընկերական հոգաբարձութեամբ» կը կառավարուին։

Թէ որքան մեծ նշանակութիւն ունեցած են ընկերութիւնները հայ դպրոցի գոյութեան ու զարգացման համար՝ յառաջ կը բերենք անցեալ դարու քառասունական թուականներէն կարծիք մը միայն։ Պօլսոյ Հայաստան[2] թերթի խմբագիրը Բերայի Նարեկեան վարժարանի քննութեան փայլուն հանդէսը նկարագրելէ յետոյ՝ դրուատելով նոյն վարժարանի պաշտպան «Նարեկեան Ընկերութիւն»ը՝

---

[1] Վան, 1861, էջ 68։
[2] Կ. Պ. 1848, Թ. 86։

*կը գրէ. «Կը յուսանք որ Պէյօղլուի ազնիւ բնակչաց սէրը իրենց ընկերութեանը բարեկարգութեանը վրայ առաւել եւս սաստկանալով նոյն դպրոցին յառաջադիմութիւնը քիչ ժամանակի մէջ ազգիս ուրիշ ամէն դպրոցներէն գերազանց հանդիսանայ...* դպրատան մը բարեկարգութիւնը՝ ընկերութեան մը բարգաւաճ յառաջադիմութենէն կախեալ ըլլալուն ամենեւին տարակոյս չունինք. վասն զի միշտ կը տեսնանք թէ քանի որ ազգային դպրոցներնէս մէկը այս միջոցներէս զուրկ է՝ իր բարեկարգութիւնն ալ այնքան կասկածոտ է... ընկերութիւն մը քանի որ բարգաւաճի, այնքան աւելի դպրատան մը պտուղը կը զարգանայ»:

*Մեր ժողովուրդը, կրթական տեսակէտով, երկար դարերէ ի վեր զուրկ մնացած սեպհական պետական պաշտպանութենէ՝ իր կրթական յարկերը ինքը ստեղծած՝ ինքն ալ պահած է զանոնք իր սեպհական միջոցներով: Ահա թէ ինչու — իր դպրոցներու գոյութեան ու յառաջդիմութեան համար — ան բնազդաբար գոյութիւն տուած է մշակութային ընկերութիւններու, որոնց հաւաքական ձեռնտուութեամբ դիւրատար եղած է բառնալ հայ կրթական գործի նիւթական բեռը: Ահա այն մեծ նշանակութիւնը, որ ունեցած են հայ մշակութային ընկերութիւնները մեզի համար: «Հայոց բարեգործական — լուսաւորական ընկերութիւնները, կը գրէ*

Անանուն[3], խիստ կարեւորութիւն չէին ստա-նում նկատի առնելով, որ հայերի մէջ կուլտուրական բոլոր հիմնարկները պահպանւում էին հասարակական, յօժարակամ գոհաբերութեամբ»:

Հայ Մշակութային Ընկերութիւնները ոչ միայն նպաստած են արդէն գոյութիւն ունեցող դպրոցներուն՝ այլ եւ ջանացած նն գոյութիւն տալ անոր հոն՝ ուր պէտքը զգացուած է: Իբրեւ այսպիսի՝ Հայ Մշակութ. Ընկերութիւնները իրենց գոյութեան գլխաւոր նպատակ ունեցած են հայ ժողովուրդի մտաւոր զարգացումը եւ կրթական վերելքը: Այդ նպատակին հասնելու համար, բացի դպրոցներէ՝ անոնք հիմնած են նաեւ հրատարակչականներ՝ գրքերու եւ թերթերու տպագրութեան համար. բացած են լսարաններ՝ ճառախօսութեան եւ թանգարաններ ու գրադարաններ՝ ընթերցումը քաջալերելու համար:

3. Մշակութային Ընկերութիւնները մեծապէս օգտակար եղած են մեր ազգին համար ոչ միայն նիւթապէս, այլ եւ բարոյապէս: Անոնք ապացուցած են թէ Հայը ոչ միայն ատակ է հաւաքական գործունէութեան, այլ եւ հրաշալի արդիւնք յառաջ կը բերեն անոր միութենական աշխատանքները: Անոնք ամրապնդած են փոխադարձ վստահութիւնն ու ընկերական կապը մեր մէջ:

[3] Գ. Անանուն, Ռուսահայերի հասարակական զարգացումը, Հտր. Բ, Էջմիածին 1922, էջ 162:

Ընկերութիւններու բարոյական ու նիւթական օգուտը շեշտելով՝ Մասիս[4] կը գրէր նախորդ դարու կէսին. «Այս սիրայօդ ընկերութեանց միջոցաւ յիրաւի շատ աղեկութիւններ եղան թէ՛ դպրոցներու համար եւ թէ՛ ազգին հասարակութեանը մէջ ընկերութեան բեղմնաւոր ու միաբանական սկզբունքը տարածելու համար»: «Այսօրուան օրս մեծ ճշմարտութիւն մըն է ազգիս մէջ, թէ ուսումնասիրական ընկերութիւնները խիստ օգտակար են դպրոցաց բարեկարգութեանը եւ մանկանց յառաջադիմութեանը համար: Եւ այս ճշմարտութիւնը... մենք քիչ ժամանակէ ի վեր փորձիւ ճանաչեցինք՝ երբոր արդէն հաստատեալ ընկերութեանց քիչ կամ շատ արդիւնքը տեսանք, կամ լաւ եւս է ասել ձեռօք շօշափեցինք զայն», կը գրէ Արշ. Արարատեան» (1848, Թ. 303):

Թրքահայ ընկերութիւններու վրայ խօսելով՝ Լէօ տեղ մը կը գրէ որ այդ ընկերութիւնները «մի մի նշաններ էին թէ հասարակութիւնը որքան գեղեցիկ կերպով ըմբռնել է ընկերական սկզբունքը[5]»:

1871ին Մ. Պէշիկթաշլեանի շիրմին վրայ խօսած իր ճառին մէջ խնդագին կը շեշտէր Խորէն Եպ. Նարպէյ[6] թէ Հայութեան մէջ «Նախապաշարմանց խաւարը հետզհետէ կը

---

[4] Կ. Պ. 1852, Թ. 12:

[5] Ստեփան Նազարեանց, Հտ. Բ, Թիֆլիս 1902, էջ 180:

[6] Մամուլ, Կ. Պ. 1871, Թ. 169, էջ 99:

ցնդի, միութեան սէրը կը ծաւալի··· Հեռի չէ այն ժամանակը··· յորում Հայն զՀայ իբրեւ եղբայր ողջագուրելով արտասուագին ցնծութեամբ պիտի տօնախմբէ ցանկալի Ազգային միութիւնը»։

Այդ ազգային միութիւնը միակ փրկութիւնը կը համարէր մեր լքուածութեան ու տառապանքի օրերուն Ներսէս Պատրիարք Վարժապետեան 1878ին, երբ կը գրէր[7]. «Ո՛չ, Ազգը խեղճ չէ մեր կարծածին չափ. իրաւ է թէ գրկեալ եւ հարստահարեալ է, բայց շատ բան կրնայ ընել եթէ միանայ»։ Միութեան գեղեցիկ օրինակ կու տար նա նոյն տարի — 1878ին — գոյութիւն ունեցող աւելի քան 35 Հայ Մշակութ. Ընկերութիւնները[8]։ Առանձին կոնդակով ալ կը յորդորէր նա «Հաստատել վարժարանաց համար խնամածու ընկերութիւններ եւ եթէ արդէն կան, բարոյական եւ նիւթական ձեռնտուութեամբ զանոնք քաջալերել[9]»։

4. Հայ Մշակութ. Ընկերութիւններու ամենաեռուն գործունէութիւնը գլխաւորաբար անցեալ դարու քառասունական թուականներէն կը սկսի։ Այս իրողութիւնը իր մեկնութիւնը կը գտնէ անոր մէջ որ այդ թուականներուն Թուրքիոյ մէջ տեղի ունեցած են մեծ

[7] Լոյս, Կ. Պ. 1878, Թ. 76, էջ 602։

[8] Անդ՝ էջ 605։

[9] Մատթէոս Հանճեան, Հարիւր քսան եւ հինգամեայ յոբելեան Բերայի Ս. Երրորդութիւն եկեղեցւոյ, Կ. Պ. 1932, էջ 171։

դէպքեր, որոնք հայ ընկերային եւ հասարակական կեանքի վրայ մեծապէս ազդած են: Այդ դէպքերն են 1839ի Կիւլհանէի հռչակաւոր խաթթի Շէրիֆին (Արշ. Արարատեան, 1841, Թ. 52), ու անոր ծնունդ 1844ի Թանզիմաթը «որք գառաջինն հռչակելով հաւասարութեան, արդարութեան եւ բարեկարգութեան փրկարար սկզբունքները, ցնցեցին բովանդակ Թուրքիան, եւ մեր Ազգին համար ալ վարչային եւ ընկերային բարենորոգման հզօր մղում տուին[10]»:

Ասոր վրայ աւելցնելու է նաեւ 1854—1856ի Խրիմի պատերազմը, որ Թուրքիան ուղղակի յարաբերութեան մէջ կը դնէր արեւմտեան Եւրոպայի հետ եւ խաթթի Հիւմայունը, որ կը շեշտէր Թանզիմաթին գործադրութիւնը: Այս ազատական ու բարեկարգական նոր շարժումին հետեւանքն էր 1857ի Ազգային Կանոնագիրն ու 1860ի Սահմանադրութիւնը[11]:

40ական թուականներուն Հայ Մշակութ. Ընկերութիւններու աշխոյժ շարժումին 'մէջ շատ կարեւոր դեր խաղացած է նաեւ ժամանակի Պատրիարքը՝ Մատթէոս Արք. Զուհաճեան (1844—1848) որուն մասին ժամանակակից հայ թերթը կը գրէ. «...այժմու

---

[10] Բիւզանդ Քէչեան, Պատմութիւն Ս. Փրկչի հիւանդանոցին Հայոց, Կ. Պ. 1887, էջ 90:

[11] Անդ՝ էջ 91: — Հմմտ. Հ. Մինաս Նուրիխան, Ժամանակակից Պատմութիւն, Ա., Վենետիկ 1881, էջ 474, Բ., 1896, էջ 556 եւ Մասիս. 1855, Թ. 162:

Կոստանդնուպօլսոյ վեհափառ Պատրիարք Տ. Մատթէոս ազգասէր Արքեպիսկոպոսին ջանիցը պտուղն է, որ Պատրիարքութեան աստիճանին հասած առենէն մինչեւ հիմայ անխոնջ աշխատելով, յորդորելով եւ խրախուսելով, եւ գրեթէ ամէնուն ալ ինքն արդեամբք ձեռնտու եւ օգնական ըլլալով, Կոստանդնուպօլսոյ մէջ ընկերութիւններ շատցուց եւ դուրսերն ալ ամէն տեղ գրեր գրելով եւ յորդորելով՝ այս փափաքը ամէն տեղ արթընցուց[12]»:

1860*ի Սահմանադրութեան ազդեցութիւնը ծանօթ է ընդհանրապէս հայ մտքի եւ մշակութային կեանքի վերածնունդի մասին: Հայ հեղինակ մը մատնանիշ կ'ընէ նաեւ անոր ազդեցութիւնը հայ մշակութային ընկերութիւններու գործունէութեան վրայ, գրելով. «Անոր շնորհիւ ԺԹ. դարու վերջին շրջանին մէջ շատ մը կրթական հաստատութիւններ ծնունդ առին Պոլսոյ մէջ թէ գաւառներ:* Սահմանադրութիւնը գլխաւոր ազդակն ու նպաստողն էր կազմակերպուած բազմաթիւ ընկերութիւններուն, որոնք Պոլիս եւ գաւառները ահագին զարգացական դեր կատարեցին[13]»: *Ուրիշ մ'ալ կը գրէ. «...սահմանադրական շրջանի սկիզբէն զարթնում մը տեղի ունեցած էր ժողովուրդին մէջ*

[12] Հայաստան, Կ. Պ. 1847, Թ. 68: — *Տես նաեւ* Արշ. Արարատ, 1844, Թ. 204:

[13] *Գազիկ Օզանեան*, Հայկունի, *Մարզուան* 1912, *էջ* 110—111:

մտաւոր զարգացման ի նպաստ, կարդալ գրել սորվելու համար ժողովրդային դասախօսութիւններ հաստատելով խանութներու, սենեակներու եւ վարժարանաց սրահներու մէջ եւ այս նպատակաւ զանազան անուններով ընկերութիւններ կազմուած էին[14]»:

5· Մշակութային Ընկերութիւններ կազմելու եւ առհասարակ ընկերական գործունէութեան թափը կոտրած եւ ազատութիւնը կապտուած է Թրքահայոց քով 1880ական թուականներէն սկսած: 1881ին կ'արգիլուի վարժարաններու եւ ընկերութեանց սրահներու մէջ ժողով եւ բանախօսութիւն[15]: 1882ին Բ. Դուռը ցանկը կ'ուզէ բոլոր ազգային ընկերութիւններու, ինչպէս նաեւ անոնց նպատակն ու նիւթական կարողութիւնը[16]: 1884—1886 կը հետապնդուի «Միացեալ Ընկերութեան» գործունէութիւնը, որ 1892էն վերջ անգործութեան կը դատապարտուի[17]: 1895—1908 Թրքահայ մշակութ· ընկերութեանց կեանքը գրեթէ կանգ առած է չնչելէ: Սուրհանդակի մէջ[18] Զիֆթէ Սարաֆ 1908էն առաջուան շրջանը մատնանշելով՝ կը գրէ· «...Նոյն իսկ երեք երիտասարդներ քով քովի չէին կրնար գալ եւ որոշ ժամանակէ մը աւելի խօսիլ կամ խորհրդակ-

[14] Մարտիրոս Հանէսեան, անդ՝ էջ 135:
[15] Մասիս, 1881, Թ· 2822:
[16] Անդ՝ 1882, Թ· 3134:
[17] Միացեալ Ընկերութիւնք Հայոց, Կ. Պ. 1912, էջ 13—15:
[18] Կ. Պ. 1908, Թ· 77:

ցիլ որեւէ նիւթի վրայ... եւ այս տասնեակներով տարիներէ ի վեր»:

1887 Յունուար 16ին գումարուած Ազգ. Խառն Ժողովքի Կենդր. Վարչութիւնը 21 Յօդուածներէ բաղկացած Կանոնագրութիւն մը կը կազմէ (տե՛ս Կազմական Կանոնագիր Ազգային Ընկերութեանց, Կ. Պ. 1887), որուն 19րդ Յօդուածին համեմատ բոլոր նախկին Ընկերութիւնները պարտաւոր են նոր վաւերացում առնել: Անվաւեր ընկերութիւնք անմիջապէս կը լուծուին (Յօդուած 14):

Թուսահայոց քով ալ 1896—1905 արգելքները կ՚ենթարկուին մշակութային ընկերութիւնները[19]:

6. Հայ Ընկերութիւններու վրայ դիտուած պարագայ մը կայ, որ ցաւալի կէտ մը համարուած է: Այդ պարագան հայ ընկերութիւններու կարճատեւութիւնն է: Ըսել կ՚ուզենք թէ հայ ընկերութիւնները չեն կրցած երկար ատեն պահել իրենց գոյութիւնը: Այս խնդրոյն ճշգրիտ մեկնութիւնը տուած է արդէն Օ. Բ. (Օգնական Բանասէր) Մասիսի մէջ՝ գրելով[20]. «Այս տեսակ ընկերութեանց ալ անդամոց յօդաւորող կապը միեւնոյն ազգին սէրը ու իրենց սիրտերնուն եռանդը ըլլալուն, երբոր այն սէրը ու այն եռանդը միշտ վառ պահելու չարունակ նիւթ չեն գտնար, թէ՛ իրենց աշխատութեանը դիւրութենէն եւ

[19] Տե՛ս Լէօ, Երեսնամեակ Հայոց Բարեգործական Ընկերութեան, Թիֆլիս 1911, էջ 97—98, 122, 212:
[20] 1852, Թ. 12:

*թէ՛ անոր պտուղներուն յոյսէն, մանաւանդ երբոր եկամուտի անհաստատութեանը, երբոր իրենց անձնական գործքերուն հոգը, գիրենք կը նեղեն ու կը ստիպեն, այն սէրն ու այն եռանդը հարկաւ կամաց կամաց կը պաղի ու կ՚ոչնչանայ:* Ահա բուն մեծի մասին այս եկամուտի անհաստատութեան պատճառաւն է, որ այս կերպ ընկերութեանց շատը խափանուեցան»:

7. *Հայ Ընկերութիւններու վրայ լրիւ ուսումնասիրութիւն մը, որքան գիտենք, եղած չէ: Մեզի ծանօթ են քանի մը փորձեր՝ տալու համար ցանկը կամ համառօտ նկարագրականը մշակութային եւ այլ հայ ընկերութիւններու: Պոլսոյ Պատրիարք Ներսէս Արք. Վարժապետեան տուած է* 1878*ին գոյութիւն ունեցող հայ ընկերութիւններու ոչ-լրիւ ցանկը. յիշած է* 35 *ընկերութիւն*[21]*: Սկսնակ Բանասէր (Դոկտ. Ն. Տաղաւարեան) ներկայացուցած է* 1812—1875*ի «Գրական եւ կրթական ընկերութիւնները Թրքահայոց մէջ», թուելով* «միայն անոնց կարեւորները[22]»*: Ա. Ալպօյաճեան գրած է համառօտ պատմութիւնը «Պոլսոյ Հայ ընկերութիւններու», հասցնելով մինչեւ* 1900[23]*: Ալպօյաճեան իր գրութեան սկիզբը կու տայ յաջորդ*

[21] Լոյս, 1878, *թ.* 76:

[22] Արեւելք, 1898, *թ.* 3853—3854:

[23] *Հ. Մ. Պոտուրեան, Գաղութահայ Տարեգիրք, Պուքրէշ* 1939, *էջ* 51—60, 1940, *էջ* 78—90 *եւ* 1941, *էջ* 113—123:

*բացատրութիւնը․ «Հետեւեալը փորձ մըն է կազմելու համար Կ․ Պոլսոյ Հայ Գաղութին բոլոր մշակութային, մարդասիրական եւ բարեպաշտական ընկերութեանց ցուցակը սկիզբէն մինչեւ 1908… Հեռի է ինէ յաւակնութիւնը թէ այս ցանկը անթերի ու լիակատար է… աղբիւրներ նշանակել զանց առնուած է պարզապէս չխճողելու համար*[24]*»: Ցաւալի է որ հմուտ Հեղինակը զանց ըրեր է յիշել աղբիւրներ, մինչդեռ յայտնի է որ գործի մը գիտական արժէքը բուն իսկ աղբիւրներու յիշատակութիւնն է որ պիտի բարձրացնէ:*

8․ *Ահա մեր ծրագիրը: Պիտի խօսինք բոլոր Հայ Մշակութային Ընկերութիւններու վրայ, առանց որեւէ Ընկերութիւն դուրս թողլու: Պիտի ջանանք փաստացի տուեալներով ներկայացնել զանոնք: Անոնց ժամանակագրական պատմութիւնը պիտի հետապնդենք մինչեւ 1914, հնարաւոր պարագային՝ նոյն իսկ մինչեւ մեր օրերը: Իւրաքանչիւր ընկերութեան սկիզբը կը դնենք իր հիմնումի թուականը, տարակուսական եղած պարագային՝ հարցականով մը: Որքան ալ փափաքելի էր ճշդել իւրաքանչիւր ընկերութեան ծնունդ տուող հեղինակը, վայրը եւ ժամանակը՝ սակայն անհնարին եղաւ լրիւ հանիլ այս փափաքին իրագործման:*

*Ամբողջ նիւթը կը բաժնենք հետեւեալ Գլուխներու․*

---

[24] *Անդ՝* 1939 *էջ* 51:

Ա. Թրքահայ Մշակութ. Ընկերութիւններ

I. Պոլսահայ Ընկերութիւններ

II. Հայաստանի եւ Անատոլուի Ընկերութիւններ

Բ. Ռուսահայ Մշակ. Ընկերութիւններ

Գ. Պարսկահայ Մշակ. Ընկերութիւններ

Դ. Հայ Գաղութներու Մշակ. Ընկերութիւններ:

## Ա. ԹՐՔԱՀԱՅ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ՝

*Թրքահայոց մշակոյթի կեդրոնը Պոլիսն է. հաստատում մը, որ ապացուցանելու կարիք չունի։ Հայ Մշակութային Ընկերութիւններու մեծագոյն մասն ալ Պոլսոյ մէջ է որ ծնունդ առած է։ Պոլսէն դուրս կազմուած շատ մը Հայ ընկերութիւններ իսկ իրենց նախնական օրինակն ու մայր ընկերութիւնը Պոլսոյ մէջ ունեցած են։*

*Հետեւաբար բնական է որ Հայ Մշակութային Ընկերութիւններու վրայ խօսած ատեն՝ առաջնութիւնը Պոլսոյ տանք եւ անոր ընկերութիւններէն սկսինք։ Ուշադիր կ'ընենք սակայն որ Պոլսոյ ընկերութիւններու կարգին մէջ չենք դասեր այն ընկերութիւնները, որոնք թէեւ Պոլսոյ մէջ կազմուած՝ սակայն Հայաստանի այս կամ այն քաղաքի պանդուխտներէ հիմնուած են։ Սխալ է րստ մեզ — օրինակով մը բացատրելով մեր միտքը — Պոլսոյ Սեբաստացիներէ կազմուած «Սենեքերիմեան Ընկերութիւնը» Պոլսահայ Ընկերութիւն համարիլ։ Պոլսոյ մէջ պանդխտաբար ապրող Հայերէ կազմուած ընկերութիւնները պիտի դետեղենք համապատասխան Հայաստանի*

*քաղաքին կամ գիւղին ընկերութիւններուն մէջ։ Եթէ սակայն Պոլսոյ մէջ գտնուող Հայաստանի զանազան վայրերու պանդուխտներ միասին կը կազմեն ընկերութիւն մը, որ չի կրնար որոշ քաղքի մը կամ գիւղի մը վերագրուիլ՝ կը համարինք պոլսական ընկերութիւն։*

I. Պոլսահայ Մշակութային Ընկերութիւններ։

*Պոլսոյ մէջ մեզի ծանօթ ընկերութիւններու թիւն է մօտ* 350*։ Ընկերութիւններու այսքան մեծ թիւ մը դասաւորելու եւ անոնց պատմութիւնը առաւելագոյն չափով ճշդրտել կարենալու համար լաւագոյն կը համարինք Պոլիսը բաժնել թաղերու եւ ենթաթաղերու, խօսելով իւրաքանչիւր թաղի մէջ գոյութիւն ունցած ընկերութիւններու վրայ՝ ժամանակագրական կարգով։ Այն ընկերութիւնները, որոնց ո՛ր թաղին մէջ ծնունդ առած ըլլալը չկրցանք ստուգել՝ պիտի յիշենք ամէնէն վերջը, Պոլիս վերնագրի տակ։*

ՂԱԼԱԹԻԱ

1· Ս· ՅՈՎՍԷՓԱՑ ԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ (1742)

*Ղալաթիոյ հնագոյն ընկերութիւնը կը կոչուի «Ս· Յովսէփայ Եղբայրութիւն», որ հիմնուած է* 1742*ին Ղալաթիոյ* St. Benoît *եկեղեցին։ Հիմնադիրներն են Հայ Կաթողիկէ Համայնքի ամիրաները, աղաներն ու եկեղեցականները։ Ընկերութիւնը իր սկզբնաւո-*

*ութեան մէջ եղած է զուտ կրօնա–բարյա–կան ընկերութիւն մը, որուն «միակ նպատակ էր՝ ժամանակին ազգային երիտասարդու–թիւնը անբարոյականութենէ ետ կեցընել*[25]»:

*Ընկերութիւնը ունեցած է իր ծրագիր–կանոնագիրը, որ 1742ին տպագրուած է եւ որմէ օրինակ մը Ս․ Յովհան Ոսկեբերան եկե–ղեցւոյ մատենադարանին մէջ կը պահուէր: Ըստ այդ կանոնագրութեան «Ս․ Յովսէփայ Եղբայրութիւն»ը ունեցած է 12 անձէ բաղ–կացած վարիչ մարմին մը: Անդամ կրնային գրուիլ միայն ամուրի այրեր, որոնք անդա–մագրուելէ վերջ կրնային ամուսնանալ: Ան–դամավճարը ըստ կամս էր, ամէն մարդ իր կարողութեան համեմատ նուէր մ՚ընելով: Եղբայրութիւնը ունեցած է* 2000 *անդամ:* 1750*ին Բենեդիկտոս ԺԴ․ Ս․ Քահանայա–պետը յատուկ կոնդակով հաստատած է Եղ–բայրութիւնը, որ մինչեւ* 1870*, այսինքն՝* 128 *տարի պահած է իր գոյութիւնը*[26]:

*Անտոն Քէօլէեան կը յիշէ այս Եղբայ–րութիւնը, գրելով․* «1811 *Մարտ* 22 *վախ–ճանի զարֆճի Ստեփան Աղան, որ էր* Եղբայր Սրբոյն Յովսէփայ Աստուածահօրն[27]»:

1870—1892 *ընկերութիւնը անգործու–թեան ու մոռացութեան կ՚ենթարկուի:* 1892 *Հոկտեմբերին Ազարեան Կաթողիկոս–Պատ–*

[25] Մէճմ․ Ախպար, կ․ գ․ 3773: — *Նոյն՝* 1905, *թ․* 4293:

[26] *Անդ:*

[27] *Օրագրութիւն*, 1811 *Մարտ* 22 *(անտիպ)*:





ըխարքը կը վերակենդանացնէ Մանախումբի մը միջոցաւ, փոխելով նաեւ անոր նպատակը, որ կ'ըլլայ մէկ կողմէ «Աստուածահօր ջերմեռանդութիւնը տարածել», միւս կողմէ «աղքատիկ տղոց կրթութեան» հոգ տանիլ[28]: Ընկերութեան նոր վարչական կազմին ատենապետն է Յովսէփ Ծ. Վ. Թոքասեան, օգնական ունենալով Կարապետ Գաբրաջեան, Յովսէփ Թընկըրեան: Անդամները երկսեռ են, իսկ անդամավճարը՝ ամսական 1 ղրուշ:

Ընկերութիւնը մինչեւ 1900 կ'ունենայ 855 անդամ՝ 250 ոսկի դրամագլուխով: Կը պահէ 2 աղքատ տղայ: 1905ին կը հոգայ 8 աղքատ մանչերու եւ աղջիկներու կրթութեան ծախքը[29]:

1915ին հրատարակուած հաշուեցոյցէ մը կ'իմանանք որ ընկերութիւնը ունի 58,430·50 ղրշ·, սեպհական տուն մը (Բանկալթի), արժէթղթեր, եւն: Կը հոգայ 13 մանչ եւ 10 աղջիկ տղոց կրթութեան ծախքը: Յիշեալ հաշուեցոյցին կից Յայտարարութիւն մը կ'ըսէ· «Տղու մը կրթութիւնը ապահովել, համապատասխան է ամբողջ ընտանիք մը թշուառութենէ ազատելու եւ լաւագոյն ծառայութիւնն է որ կը մատուցուի Հասարակութեան... այս նպատակաւ Եղբայրութիւնս ըրած է ինչ որ կը ներէին իր համեստ մի-

---

28 Մէճմ. Ախպ. Թ. 3774:
29 Անդ՝ Թ. 4293:

ջոցները, վերջին իննամեայ շրջանին մէջ 57,420 դրչ․ի գումար մը տրամադրելով ի նպաստ 23 աղքատիկ տղոց դաստիարակութեան, որոնցմէ երկուքը կատարելագործած են իրենց ուսմունքը Եւրոպայի մէջ»։

Պետրոս Արք․ Արելեան 1871ին Մարաշի մէջ հաստատած է ընկերութեանս մէկ ճիւղը[30]։ Ճիւղ մ՚ալ գոյութիւն ունեցած է Տրապիզոնի մէջ, ուր Եղբայրութիւնը 1881ին դպրոց մը կը բանայ[31]։

## 2· ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ (1781)

1737էն առաջ Հայ Կաթոլիկէները Ղալաթիոյ Դոմինիկեանց Ս․ Պետրոս եկեղեցւոյ մէջ «Ս․ Գրիգոր Լուսաւորիչ» անունով խորան մը շինած էին։ 1781ին նոյն եկեղեցւոյ մէջ Լուսաւորչեան Եղբայրութիւն անունով բարեսիրական ընկերութիւն մ՚ալ կը հիմնեն, որուն նպատակն էր նպաստել աղքատներուն[32]։ «Լուսաւորչեան»ի պաշտօնատեղին էր այժմեան Ոսկերերան եկեղեցւոյ հողին վրայ գտնուած տուն մը, ուր ունէր 12 հոգիէ կազմուած գործադիր մարմին մը, որ կը մատակարարէր ունեցած գումարը[33]։

Թէ այս Ընկերութիւնը զուտ կրօնական հաստատութիւն մը չէր, այլ մասնաւոր ծրա–

---

[30] Մէճմ. Ախպ․ 1910, Թ․ 4769։
[31] Մասիս, 1881, Թ․ 3074։
[32] Հ․ Սահակ Վ․ Սրապեան, Ս․ Յակոբ Ազգային Հիւանդանոց, Վիեննա 1915, էջ 12։
[33] Անդ՝ էջ 14—15։

գիր մ՚ալ ունէր կրթական–դպրոցական՝ անկէ՛ յայտնի կ՚ըլլայ որ անոր վարիչները 1803ին Ղալաթիոյ Սէն Բնուա եկեղեցւոյ պարտէզին մէջ հայ տղոց կրթութեան համար «Մանկանց Դպրատուն» մը կը բանան, ինչպէս կը գրեն ընկերութեան անդամները՝ Մխիթար Ծաղիկեան, Ստեփան Ասկէրեան եւ Աթանաս Մազլըմեան 1803 Նոյեմբերին. «... փիշտս ի ներքուստ, փիշտս յարտաքուստ կրելով, յառաջ տարինք մեր Լուսաւորչի եղբայրութիւնը, բանալով (մանկատուն) մեծ պարտիզին ճիզվիթ ժամուն ի յառաջացումն մանկանց Հայոց Ազգին[34]»:

Լուսաւորչեան Եղբայրութիւնը «Մանկանց Դպրատան» վարչութիւնը քիչ վերջ (հաւանօրէն արդէն 1803ին) Վենետիկի Մխիթարեան Միաբանութեան կը յանձնէ, որուն մէկ անդամը՝ Հ. Պօղոս Թընկըրեան՝ կը ստանձնէ դպրոցին վարչութիւնը օգնական ունենալով ուսուցիչ մը՝ Անտոն Քէօլէեան, զոր վերը յիշեցինք: 1806ին դպրոցը կը փոխադրուի Ղալաթիոյ մէջ եղած Ֆրանսական St. George եկեղեցին, ուր նոյն տարի, ի պատիւ Լուսաւորչեան Եղբայրութեան մեծ հանդիսութիւն տեղի կ՚ունենայ[35]:

Թէ որքան ատեն պահած է իր գոյութիւնը այս ազգօգուտ ընկերութիւնը՝ չենք գիտեր.

---

[34] Դոկտ. Վահրամ Յ. Թորգոմեան, Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլոյ Պատմ. Վիեննա, 1932, էջ 546:

[35] Քէօլէեան, Օրագրութիւն 1806 Յունիս 16:

*գիտենք միայն որ 1830ին կը միանայ «Կղեմէսեան Եղբայրութեան» հետ*[36] *եւ գուցէ ինքն է որ յետոյ պատճառ կ'ըլլայ Հայ Կաթողիկէներու Լուսաւորչեան Վարժարանի հիմնադրութեան։*

3· Ս· ՅՈԿՈԲԱՑ ԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ (1804)

*Հայ Կաթողիկէ Ընկերութիւն մ'է «*Ս· Յակոբայ Եղբայրութիւն»*ը, հաստատուած 1804ին վերոյիշեալ Ս· Բենեդիկտոսի եկեղեցւոյ մէջ «աղքատ ժառանգաւորներու նպաստելու համար*[37]*», ուր ունէր նաեւ իր պաշտպան սուրբին նուիրուած խորան մը՝ առանձին կամ հասարակաց աղօթքներ ընելու համար։ Ս· Յակոբ Մծբնայ Հայրապետին նուիրուած այդ խորանը յետոյ կը փոխուի Սրբուհի Փիլոմենայի, երբ Հայ Կաթողիկէները իրենց յատուկ ազգային եկեղեցին կ'ունենան (1834ին) եւ ընկերութիւնն ալ հոն կը փոխադրուի։*

*Ունէ՞ր այս Ընկերութիւնը մշակութային գործունէութիւն մ'ալ — չենք գիտեր· այնքան դոյզն է մեր իր մասին ունեցած ծանօթութիւնը։*

4· ԿՂԵՄԷՍԵԱՆ ԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ (1810)

*Լուսաւորչեան Եղբայրութիւնը, ժամանակ մը վերջ, խախր դրած էր իր նպատին*

---

[36] *Յ· Ականեան, Հասունեան քաղաքականութիւն, Տփղիս* 1868, *էջ* 11—12։

[37] *Հ· Սահակ Վ· Սրապեան, անդ՝ էջ* 11—12։

մէջ տեղացիի եւ գաւառացիի միջեւ, ինչ որ իրաւացի դժգոհութիւն յառաջ բերած էր գաւառացիներուն մէջ: Պոլսոյ Անկիւրացիները, որոնք գաւառացի կը համարուէին՝ Լուսաւորչեաններուն հակառակ՝ յիշեալ եկեղեցւոյ մէջ ուրիշ խորան մը կը կանգնեն եւ անոնցմէ բաժնուելով 1810ին Կղեմէնեան Եղբայրութիւն անունով նոր Ընկերութիւն մը կը հիմնեն, որ կ'ունենայ իր յատուկ վարչութիւնը, գանձանակը եւ գործունէութեան ուղղութիւնը[38]: Թէ կրթական ի՞նչ արդիւնք տուած է այս Եղբայրութեան գործունէութիւնը՝ անծանօթ կը մնայ մեզ: Հաւանական է որ անոնք ալ բացած ըլլան դասընթացք մը իրենց մանուկներուն համար:

1827—1830ի հալածական տառապանքի օրերէն վերջ՝ Լուսաւորչեաններ ու Կղեմէնեաններ անյիշաչարութեամբ կը միացնեն իրենց ուժերը՝ դարմանելու համար ստացուած վէրքերը:

## 5· ՏՆԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹԵԱՆ ԵՂԲԱՐՈՒԹԻՒՆ (1847)

Պոլսոյ Հայաստան թերթը[39], 1847 Յուլիս 5 թուով նորակազմ Ընկերութեան մը մասին հետեւեալ տեղեկութիւնը կը հաղորդէ. «Խիստ շատ ուրախ եղանք երբոր լսեցինք որ Ազգերնուս մէջէն քանի մը խոհեմ ու խելացի անձինք ազգիս մէջ տնական

[38] Անդ՝ էջ 14:
[39] 1847, Թ. 54:

տնտեսութիւն *խօսելու համար* եղբայրութիւն *մը հաստատեր են. ըսել է խօսք մէկ ըրեր են որ իրենց ընտանեացը* ուտելուն՝ խմելուն՝ հագուելուն՝ կապուելուն չափ մը դնեն, *պարզութիւն մը տալ տան տուներնուն կահ կարասիքներուն. վերջապէս աւելորդ ու անօգուտ ծախքերը վերցունելով մասնաւորապէս իրենց մէջէն՝ ջանք կ՚ընեն առհասարակ բոլոր ազգին մէջէն ալ վերցունելու»*:

Հայաստան *չի ճշդեր Եղբայրութեանս անունը եւ հիմնումի վայրը: Իր բառերէն կազմեցինք ընկերութեանս անունը եւ* 1879*ի նոյնանուն ընկերութենէն կը հետեւցնենք թէ Ղալաթիոյ մէջ հիմնուած է:*

6. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1847 ?)

*Առաջին անգամ Սկանակ Բանասէրն է որ ընկերութիւնս* 1847*ին հիմնուած կը դնէ*[40], *որուն կը հետեւի Արփօյաճեան*[41], *ընդունելով թէ ընկերութիւնս նախ* 1847*ին հիմնուած՝ յետոյ* 1860*ին վերակազմուած է: Մենք կը դեդեւինք ընդունիլ այդ թուականը, նկատի ունենալով որ ոչ միայն ժամանակակից թերթերուն անծանօթ է այս անունը, այլեւ երբ* 1860*ին կը հիմնուի «Անձնուէր ընկերութիւն» մը, որ մեծերու յատուկ կիրակնօրեայ դասընթացքներ կը բանայ՝ թերթերէն ոչ մէկուն կողմէ կը նկատուի վերակենդանա–*

---

[40] Արեւելք, 1898, Թ. 3853:
[41] Հայաստանի կոչնակ, 1926, էջ 148:

*ցում մը կանխապէս գոյութիւն ունեցող նոյնանուն ընկերութեան մը: Այս պարագան իրաւամբ կասկած կու տայ Ընկերութեանս* 1847*էն եղած ըլլալուն: Թորգոմեանի*[42] *ալ անծանօթ է Ղալաթիոյ* 1847*ի «Անձնուէր»ը. անոր ծանօթ է միայն* 1860*ի «Անձնուէր»ը:*

## 7. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860)

1860*ին հիմնուած է «Անձնուէր ընկերութիւն»ը, որուն նպատակն է. «Պանդուխտ Հայերու կարդալ գրել սորվեցնել*[43]*»: Ժամանակակից թերթը* — Մեղու[44] — *կը գրէ* 1860 *Օգոստ.* 10 *թուով. «Չենք կրնար չը յայտնել մեր բերկրութիւնը* Նորակազմ ընկերութեան *մը համար ալ, որուն անդամները* ուխտ կ'ընեն ամեն մէկերնին մէկ մէկ կողմ երթալով այն տեղին պանդուխտ Հայերուն կարդալ ու գրել ուսցընելու...: *Այս անձինքը... ձրի գիրքեր ընծայող անձինք ալ կը փնտռեն կը գտնեն ու վերջապէս մեր պանդուխտ եղբայրներուն վրայ ամենեւին ծանրութիւն չեն բեռնաւորեր... Չուքուր-չէշմէ խանը օթեւանող գըսեցի Հայերը ընկերութեանս այս խորհուրդը լսելնուն պէս՝ իսկոյն սենեակ մը մաքրեր պատրաստեր են, իրենց վարժապետն հոն ընդունելու համար»:*

---

[42] *Անդ՝ էջ* 520: *Հմմտ.* Մասիս, 1860, *Թ.* 461-1864, *Թ.* 636, 665:

[43] Մէր, *Կ. Պ.* 1864, *էջ* 64:

[44] *Կ. Պ.* 1860, *էջ* 171:

Մեղու յետոյ[45] «Անձնուէր Ընկերութիւն» վերնագրի տակ աւելի մօտէն տեղեկութիւն տալով՝ կը շարունակէ. «Այս ընկերութիւնը օր օրի մեծնալու եւ իր աշակերտաց թիւը մեծցնելու վրայ է. արդէն քանի եռուն ուսումնական երխտասարդներ ամէն կիրակի խաները, մաքսատուները, նաւամատոյց-ները եւ ուրիշ տեղեր կը պտտին, ո՛ր տեղ 100, ո՛ր տեղ 50 աշակերտի կարդալ եւ գրել ուսցնելու...: Այս ընկերութեան պայման-ներէն մէկն է սա. ամէն Հայ ընկեր է, ո՛ր մէկը աշակերտներ կարդացնելով, ո՛ր մէկը անոնց գիրք ճարելով, ո՛ր մէկն ալ թէ՛ վար-ժապետները թէ՛ աշակերտները քաջալերելով եւ կամ դանոնք չծաղրելով ու չյուսահատե-ցնելով: Ուստի ով որ կը ծաղրէ այն 40—50 տարու Հայերը, որ կարդալ ուսնելու սկսած են, 25—30 տարու վարժապետի մը առջեւ ծունկ չոգած տեսնելով կամ դանոնք վհա-տեցնելով թէ այն տարիքնուն ետքը ա՛լ չեն կրնար ուսնիլ՝ այնպիսի անձը թշնամի է Ազգին...: Այս ընկերութիւնը մեծ գործեր պիտի ընել տայ իր այն դուրսեցի աշակերտ-ներուն... օր մը ուսցնելու պիտի աշխատին ուրաքանչիւրը իրեն երկրին մէջ»:

Մեղու կը յիշէ նաեւ «Անձնուէր»ի հիմ-նարկութեան նախաձեռնող անձը. «Այս ըն-կերութեան հիմնադիր եղած է Գրավաճառ Պ. Յարութիւն Մարգարեան. յղացեր է այս

---

[45] Անդ՝ էջ 194—195:

վսեմ խորհուրդը, հաղորդեր է քանի մը հոգւոյ եւ անոնց հետ մէկ սիրտ մէկ հոգի՝ սկսեր են աշխատիլ այս գործին[46]»:

Ըստ Փունջի[47] «Անձնուէրը» հիմնուած է 1860 Օգոստ. 1ին: Ընկերութեան ծրագրին եղած է պանդուխտ Հայերու կարդալ գրել սորվեցնել, ինչպէս որ տեսանք: Հետեւաբար չենք գիտեր թէ ի՞նչ հիման վրայ Զարդարեան[48] «պաղտնի նպատակներ» կը վերագրէ Ընկերութեանս, զոր սխալ կը համարի Ալպօյաճեան[49]:

«Անձնուէր Ընկերութիւնը» Պոլսոյ գաւառական թաղերու մէջ կիրակնօրեայ վարժարաններ բացած է, որոնցմէ Ղալաթիոյ Ս. Փրկչի վարժարանինը ամէնէն արդիւնալիցն ու երկարատեւը եղած է:· Հոս դասախօսած է, մօտ երեսուն տարի, Քրիստոսատուր Ղազարոսեան, որուն մասին գովեստով կ՚արտայայտուի Սէր թերթը[50], յիշելով անոր Սերաստացի պանդուխտ աշակերտները: Ղազարոսեանի տնօրինութեան օրով (1872) դասախօսած են նաեւ Յովհ. Ա. Կէօմրիւքճեան, Սարգիս Ֆինճանճեան եւ

46 Անդ՝ էջ 195:
47 Կ. Պ. 1867, թ. 160:
48 Վահան Զարդարեան, Յիշատակարան, Կ. Պ. 1909, էջ 344:
49 Գալ. Տարեգ. անդ՝ Բ., էջ 81:
50 1864, էջ 64: — Քրիստ. Ղազարոսեանի մասին տե՛ս Լոյս, Կ. Պ. 1880, էջ 329—334. Պետրոս Կարապետեան, Հնդադարեան Յիշատակարան, Կ. Պ. 1935, էջ 99—100:

Գրիգոր Ճէպահեան[51]: Փունջ[52] կը հաւաստէ որ Պոլսոյ կիրակնօրեայ վարժարանները 700 աշակերտ ունեցած են:

«Անձնուէր»ի ճիւղեր բացուած են նաեւ Հայաստանի հետեւեալ վայրերը. Բաղէշ, Տիարպէքիր, Սեբաստիա, Տիվրիկ, Եւդոկիա, Կիւրին, Սղերդ, Տէրճնաէ, եւն[53]:

## 8. ՀԱՅԿԱԶՆԵԱՆ ԴՊՐՈՑԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860)

Հայ կաթ. Ազգային Կրթութեան ժողովը (տե՛ս իր Կանոնները՝ տպուած Վիեննա 1860ին) 1860 Օգոստ. 15ի նիստին առթիւ կազմած է գաղափարը հիմնելու «Հայկազնեան դպրոցաց Ընկերութիւն»ը, որուն նպատակն է. «Այն պիտոյքները եւ օգնութեան աղբիւրները հոգալ՝ որոնք Ազգային կրթութեան գործը յառաջ տանելու եւ տարածելու հարկաւոր են» (Յօդուած 3): Ընկերութեան Կանոնագիրը կազմուած է 20 Յօդուածներէ, որոնք 1860 Դեկտ. 26ին ժողովքով ընդունուած են (տե՛ս Ընկերութիւն Հայկազնեան Դպրոցաց, Ղալաթա Կ. Պ. 1860, էջ 3—9, հայ-ֆրանս.):

Ընկերութեան տարեկան անդամավճարն է 1 օսմ. լիրա, իսկ հաւաքուած դրամը պիտի գործածուի «Հայկազնեան դպրոցաց շինու-

[51] Մէճմ. Հավատիս, Կ. Պ. 1872, Թ. 1050:
[52] 1867, Թ. 160:
[53] Ծիածան, Կ. Պ. 1867, Թ. 40: — Մամուլ, Կ. Պ. 1869, էջ 19: — Օրագիր, Կ. Պ. 1869, Թ. 22. 1872, Թ. 819: — Հայրենիք, Կ. Պ. 1871, Թ. 55:

*թեան, պահպանութեան եւ բարեկարգութեան»* (*Յօդուած* 4)։ *Ընկերութիւնը ունեցած է «արուեստից վարժարան» մը բանալու ծրագիրը* (*Յօդուած* 5)։

*Ընկերութեանս գործունէութեան եւ տեւողութեան մասին ծանօթութիւն կը պակսի*։

## 9. ՎԱՐԺԱՊԵՏԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ (1862)

Կիլիկիա *կիսամսեայ հանդէսը*[54] 1863 *Յունուար 20 թիւով յայտարարութիւն մը կը հրատարակէ, ուր «Վարժապետական Ընկերութեան» Տնօրէն ժողովը Ազգ. Վարչութեան ուղղելով խօսքը՝ կու տայ հետեւեալ բացատրութիւնը. «Կրօնի եւ բարոյականութեան պաշտելի սկզբունքը եւ նուիրական շահերն անաղարտ պահելով ուսմանց եւ քաղաքակրթութեան բարիքը մերայնոց կանոնաւորապէս վայելել տալու իղձը անտարակոյս «Ազգ» բառին նշանակութիւնը հասկցողներուն ուղոյն մէջ բնական ազդում մի է. ուստի... չենք կարծեր որ նոր օրինակ բան մի թուի* այս միաբանութիւնը, որ մօտ օրերուս մէջ կազմուեցաւ *այս սուրբ նպատակին անխոտոր դիմելու համար՝* այնպիսի անհատներէ, որոց կոչումն է ի պաշտօնէ բարոյական եւ ուսումնական սպաս մատուցանել Ազգիս լրութեանը... *պարտ եւ պատշաճ համարեցանք այս միաբանութիւնը պաշտօնական կերպով եւ իր* «Վարժապետական

---

[54] *Կ. Պ.* 1863, *էջ* 51—53։

Ընկերութիւն» անուամբ ազգախնամ վարչութեանց ծանուցանել»:

Պոլսոյ Ժամանակ[55] թերթը «Վարժապետական Ընկերութիւն Հայոց» վերնագրի տակ ճշդելով ընկերութեանս հիմնադրութեան մօտաւոր ժամանակը՝ 1863 Յունուար 2ին կը գրէ. «Այս անունով ընկերութիւն մը կազմուած կայ 4—5 ամիսէ ի վեր, բայց ցարդ հրատարակութիւն մը տեսնուած չէ այն ընկերութեան վրայօք»:

Հետեւաբար ընկերութիւնս հիմնուած է 1862 Օգոստոս–Սեպտեմբերին: Թորգոմեանի քով[56] սխալ տեղիք նշանակուած է իբրեւ աղբիւր տրուած ըլլալով «Ժամանակ 1862 Յունուար 1»: Ժամանակի առաջին թիւը լոյս տեսած է 1863 Յունուար 2ին:

Ինչպէս Կիլիկիա թերթի վերոյիշեալ տեղիքը կը ցուցնէ՝ Ընկերութեանս հիմնադիրներն են հայ ուսուցիչները, նպատակ ունենալով «1. Ազգային վարժարաններու մէջ ուսուցման եղանակը բարեկարգել եւ միօրինակ ընթացք մը տալ անոր: 2. Վարժապետական վիճակի բարւոքութեան հոգ տանիլ[57]»:

Արեւելքի յօդուածագիրը[58] կու տայ յաւելուածական տեղեկութիւն մը ընկերու-

[55] Ժամանակ. Հանդէս Հայրենանուէր, Կ. Պ. 1863, Թ. 1, Յունուար 2:
[56] Անդ՝ էջ 521 ծանօթ.:
[57] Ժամանակ, անդ՝ էջ 4:
[58] Արեւելք, Թ. 3853:

թեանս մասին՝ գրելով. «Շատ բաներ կը սպասուէր 1862ին հաստատուած Վարժապետական Ընկերութենէն... կարճ եղաւ այս ընկերութեան կեանքը. վերակազմուեցաւ 1866ին, բայց հազիւ քանի մը տարի տեւեց»:

## 10. ԱՆՁՆԱՆՈՒԷՐ ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863)

1860ին կազմուած «Անձնուէր Ընկերութեան» կիրակնօրեայ դպրոցներու գաւառացի աշակերտները 1863ին կը հիմնեն «Անձնանուէր Սանուց Ընկերութիւն»ը, նպատակ ունենալով գաւառներու մէջ վարժարաններ բանալ[59]: Ընկերութեանս ծանօթ է Պոլսոյ Ծիածանին[60] որ կը յիշէ «Անձնանուէր Սանուց Ընկերութեան» անդամները, առանց մանրամասնութիւններու:

## 11. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (?)

«Ուսումնասիրաց» անունով քանի մը ընկերութիւն կազմուած է Պոլսոյ զանազան թաղերու մէջ, որոնցմէ մէկ-երկուքինը բաւական բարձր հնութիւն ունի: Ղալաթիոյ մէջ հաստատուածը կը յիշէ Դոկտ. Թորգոմեան[61], դժբախտաբար առանց ժամանակը ճշդելու: Մեր պրպտումներու մէջ լուսաբանութիւն մը չենք գտած այդ մասին:

---

[59] Անդ՝ Թ. 3853: — Մասիս, 1866, Թ. 784:
[60] Ծիածան, 1867, Թ. 41:
[61] Անդ՝ էջ 526:

### 12. ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (?)

Կը յիշուի Թորգոմեանէ[62]: Նմանօրինակ ընկերութիւններ կան Պոլսոյ միւս թաղերուն մէջ: Ղալաթիոյ «Եղբայրական»ը մեզ անծանօթ է:

### 13. ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (?)

Ղալաթիոյ մէջ կազմուած «շատ ընկերութիւններու» կարգին կը յիշէ զայս Թորգոմեան[63] եւ չունի որեւէ ծանօթութիւն անոր մասին: Անծանօթ է ընկերութիւնս եւ նախորդները նաեւ Սկսնակ Բանասէրին[64]:

### 14. ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

Ղալաթիոյ Ամենափրկչեան վարժարանի աշակերտները կազմած են «Սանուց Ընկերութիւն» մը (Արեւելք, 1898, թ. 3853), որուն ժամանակը հաւանօրէն 1870 է (Մասիս, 1870, թ. 992):

### 15. ԳՈՐԾԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

Արեւելքի համեմատ (թ. 3853) Գործասէր Ընկերութիւնը հիմնուած է 1870ին: Հիմնադիրներն են. Յարութիւն Ջինճիրճեան, Աւետիս Սուրէնեան եւ Յարութիւն Թաշճեան: Ընկերութիւնը 1871 Օգոստ. 11էն մինչեւ 1872 Յունիս 13 կը հրատարակէ Արարատ

---

62 Անդ՝ էջ 527:
63 Անդ:
64 Արեւելք, թ. 3853:

թերթը: Հրատարակած է նաեւ Ռ. Յ. Պէրպէրեանի «Բանք հաւատացելոյ ուրուք» (Գաղութ. Տարեգիրք, Բ., էջ 89):

Պոլսոյ Օրագիրը (1873, Թ. 930) կը յիշէ Ընկերութիւնս, ըսելով թէ անդամները Ղալաթիա ժողովքի կը հրաւիրուին:

Սաճ (Կ. Պ. 1950, Թ. 32—33), անշուշտ սխալատպութեամբ, ընկերութեանս հիմնումը 1876ին դնելէ վերջ՝ կ՚ըսէ որ Ընկերութիւնը հրատարակած է «Փող» թերթը եւ մէկ-երկու տարիէն դադրած: «Փող Առաւօտեան» (յետոյ «Փող Արեւելեան») լոյս տեսած է 1870 Սեպտ. 26էն մինչեւ 1872 Դեկտ. 1:

Ընկերութիւնս դադրած ըլլալու է 1873ի վերջը:

## 16· ՀԱՅ-ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1876)

Խումբ մը ուսումնասէր երիտասարդներ հիմնած են ընկերութիւնս, որ ունեցած է իր կանոնագիրը՝ հրատարակուած 1877ին: Ըստ այդ կանոնագրին՝ ընկերութեան հիմնումի ճշգրիտ թուականն է 1876 Նոյ. 1: Ընկերութիւնը հիմնուած է «նպաստելու ազգային գրականութեան զարգացման եւ գիտութեանց ծաւալման, գրագիտաց եւ գիտնականաց երկերը տպելով եւ գրական, գիտական, պատմական Հանդէս մը հրատարակելով[65]»:

---

[65] Կանոնագիր Հայ-Գրական Ընկերութեան, Կ. Պ. 1877, էջ 6:

Ընկերութիւնը չէ կրցած հասնիլ իր յառաջադիր նպատակին: Տուած է միայն շարք մը բանախօսութեանց Ղալաթիոյ դպրոցին մէջ: Դադրած է 1878ի վերջերը[66]:

## 17. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻՆ ՀԱՅՈՑ (1877)

1877 Մարտ 9ին հաստատուած է Ընկերութիւնս եւ ունի «Հիմնական Կանոններ» 12 յօդուածներէ բաղկացած եւ «Մասնաւոր Կանոններ» 15 կէտերէ կազմուած: Ահա ընկերութեան նպատակը. «Ազգային մատենադարանն ու թանգարանը ճոխացնել, բանասիրական եւ հնագիտական հետազօտութիւններ ընել եւ հրատարակել ի տեղեկութիւն[67]»: Տարեկան անդամավճարն է 44 ղրշ.: Հիմնադիրներն եղած են՝ Խորէն Արք. Նարպէյ, Տ. Յովհ. Հիւնքեարպէյէնտեան, Բարսեղ Հալաճեան եւ Յ. Արշակ: Ընկերութիւնը փայլուն գործունէութիւն ունեցած է 1877—1881 հիմնելով Ազգ. Մատենադարանը, ուր հաւաքած էր բազմաթիւ հայերէն Ձեռագիրներ, հայերէն եւ օտար լեզուով գրքերու ճոխ հաւաքածոյ մը, հին դրամներ եւ ուրիշ հետաքրքրական հնութիւններ:

Ընկերութեան վարչական ժողովի Նախագահն էր Խորէն Արք. Նարպէյ, Դեր-Նախագահը՝ Յովհաննէս Սագըզլեան (յետոյ

[66] Թորգոմեան, անդ՝ էջ 522:

[67] Կանոնագրութիւն Ազգ. Մատենադարանի Ընկերութեան, Կ. Պ. 1877, էջ 5:

փաշա), իսկ Ատենադպիրները՝ Թովմաս Թերզեան եւ Մկրտիչ Աճէմեան:

Ընկերութիւնը 1877ին կը յաջողի հիմնել Հայկազեան Կաճառ մը, որուն բացումը կը կատարուի 1877 Հոկտ· 23ին: Կաճառի նպատակն էր հետազօտել ամէն բան, որ Հայութեան անցեալին եւ ներկային կը վերաբերի, այսինքն· 1· Հայկազեան լեզու, 2· Գաւառական բարբառներ, 3· Բաղդատական լեզուագիտութիւն, 4· Մատենագիտական պատմութիւն, 5· Ազգ· Պատմութիւն, 6· Հնագիտութիւն, 7· Հին եւ նոր սովորութիւններ, 8· Դրամագիտութիւն, 9· Դիցաբանութիւն, 10· Աշխարհագրութիւն, 11· Բնական պատմութիւն, 12· Գեղարուեստներ:

Ցաւալի է որ «Հայկազեան կաճառ»ը չէ կրցած երկար ատեն պահել իր գոյութիւնը՝ հակառակ լաւ կազմակերպուած ըլլալուն, որուն մէջ կարող անձինքներ ալ չէին պակսեր: Հաւաքուած հնութիւններէն շատ բան ցիրուցան եղած է: Գրքերն ու Ձեռագիրները յետոյ դասաւորած եւ Ձեռագիրներու ցանկը պատրաստած է Բարգէն Ծ· Վ· Կիւլէսէրեան: Իսկ մնացած գոյքերը 1911ին Ղալաթիայէն Բերայի Ազգ· Մատենադարանը փոխադրուած են[68]:

## 18· ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ (1879)

Կազմուած է 1879ին նախաձեռնութեամբ Ներսէս Արք· Վարժապետեան Պատրիարքի,

[68] Թորգոմեան, անդ՝ էջ 523—524:

*որուն ծրագիրն էր* գաւառահայոց տնտեսական վիճակը բարւոքել: *Միութեան տարեկան անդամավճարն էր քառորդ ոսկի: Արդէն* 1879*ին* 200 *հոգի* 300 *բաժին կը գրուին, սակայն Հայաստանի սովը վրայ հասնելով՝ ընկերութեան գործունէութիւնը առկախ կը մնայ:* 1881*ի Սեպտեմբերին Վարժապետեան Պատրիարք կը վերակազմէ Միութիւնը մասնաւոր ժողովքի մը մէջ, ուր կը ներկայացնէ Հայաստանի ժողովուրդին տնտեսական տխուր վիճակը, բայց կը քաջալերէ, ըսելով թէ «Ազգը կրնայ բան մը ընել այս կարգի չարեաց դարման տանելու համար*[69]*»: Ժողովականներէն շատեր, խրախուսուած Հայրենասէր Պատրիարքի խօսքերէն՝* 10*ական բաժին կը գրուին: Կը կազմուի դիւան մը, որուն ատենապետ կ'ըլլայ Յովհ. Կիւմշեան, որ* 3 *տարիէ ի վեր աշխատած էր այս գործին համար. անդամներ կը նշանակուին Ռէթէոս Պէրպէրեան, Տիգրան Հինքեարպէյէնտեան եւ Բիւզանդ Քէչեան: Ընկերութեան կանոնագիրը կը վաւերացուի Ազգ. Քաղաքական Ժողովէն՝ «տէրութեան քաղաքականութեան դպչող որեւէ տրամադրութիւն չունենալուն» համար*[70]*:*

---

69 Մասիս, 1881, Թ. 2994:

70 *Անդ՝* 1882, *Թ.* 3347: — *Ընկերութեան կանոնները, որոնք «Տնտեսագիտական Միութիւն Հայոց» խորագիրը կը կրեն՝* 40 *կէտերէ բաղկացած են եւ հրատարակուած՝ առանց տեղւոյ եւ թուականի: Այս կանոններէն առաջինը կ'ըսէ. «Ընկերութեանս նպատակն է Հայոց մտային եւ նիւթական զարգացման հետամտիլ»:*

## 19. ԱՐԱՐԱՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880 ?)

*Կը թուի թէ հրատարակչական մըն է* Արարատեան Ընկերութիւնը, *որուն կեդրոնատեղին եղած է Ղալաթիա, Կէօչէ–Օղլուեան Թ.* 11—12—13: *Ընկերութիւնը հրատարակած է* 1. *Ն. Տէր Ղեւոնդեանի՝ Մայրենի լեզու, Այբբենարան, Կ. Պ.,* 2. *Վահան Վ. Պարտիզակցիի՝ Հայկական Ցինակատակ, Կ. Պ.,* 3. *Թովմաս Թերզեանի՝ Մտամարզութիւն Կ. Պ.* (Լոյս, *Կ. Պ.* 1880, *էջ* 488):

## 20. ՄԻԱՑԵԱԼ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՔ ՀԱՅՈՑ (1880)

1880 *տարւոյ Մայիս ամիսը գեղեցիկ թուական մ՚է հայ ժողովուրդի մէջ համեբաշխ աշխատանքի լաւագոյն օրինակը տրուած ըլլալուն համար: Բացէք ժամանակակից ազգային թերթերը եւ պիտի տեսնէք նոյն չարժումը պոլսահայ մտաւորական փաղանգի մը, որ կը ջանայ օր առաջ վերջացած տեսնել միացումը երեք կարեւոր Մշակ. Ընկերութիւններու՝ լծուելու համար ազգաշէն գործունէութեան մը, որ մինչեւ այն ատեն ո՛չ տեսնուած եւ ո՛չ ալ լսուած էր:*

*Արարատեան, Դպրոցասիրաց–Արեւելեան եւ Կիլիկեան Ընկերութիւնները միացնելով իրենց բարոյական ու նիւթական ուժերը՝* 1880 *Յունիս* 1*ին կը կազմեն* «Միացեալ Ընկերութիւնք Հայոց»*ը*[71], *որուն նպատակն էր*

[71] Մասիս, 1880, *Թ.* 2624: — Փունջ, 1880, *Թ.* 1479, 1530: — Արեւ. Մամուլ, *Իզմիր*, 1880, *էջ* 251, 290, *եւ այլն*:

*«Հայաստանի և Կիլիկիոյ մէջ կրթութիւն ծաւալել*[72]*»:*

*Ընկերութեան անունի ընտրութիւնը տեղի կ'ունենայ 2 անուններու առաջարկութեամբ* — Կրթական Ընկերութի՞ւն *թէ* Միացեալ Ընկերութիւն: *Քուէի առաւելութեամբ կ'ընդունուի վերջինը*[73]*:*

*Անցեալ դարու հայ մշակութային ընկերութիւններու դաստիարակչական գործունէութիւններու մէջ առաջնակարգ դեր կատարած է «Հայոց Միացեալ Ընկերութիւն»ը: Իր կեդրոնն ու ժողովատեղին եղած է Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ աջակողմի մէկ շէնքը: Իսկ իր գործունէութեան ասպարէզը՝ Մեծ-Հայք և Կիլիկիա:* 1880—1884 *Ընկերութիւնը բացած է Հայաստանի մէջ* 24 *նոր դպրոց, որոնց մէջ կը պաշտօնավարէին* 115 *ուսուցիչ և կը սորվէին* 2822 *աշակերտ-աշակերտուհի: Ընկերութեան այդ վարժարաններուն համար տարեկան* 3000 *օսմ. ոսկի կը ծախսուէր:*

*Հայաստանի և ուրիշ հայաշատ վայրերու մէջ Ընկերութիւնը կ'ունենայ աւելի քան* 16 *ճիւղեր, որոնք Ընկերութեան հրահանգներով ու ուղղութեամբ կ'աշխատէին միեւնոյն նպատակին համար — դպրոց բանալ և ուսում ծաւալել: Պոլսոյ դրեթէ բոլոր թաղերու մէջ կազմուած էին մասնաճիւղեր:*

---

[72] *Միացեալ Ընկերութիւնք Հայոց, Կ. Պ.* 1882, *էջ* 3:

[73] Մասիս, 1880, *Թ.* 2638:

«Միացեալ»ի մեծ արդիւնքն է նաեւ կրթական նոր ուղղութիւնը, զոր մտցուց նա գաւառի Հայոց մէջ, ուր անկէ առաջ Սաղմոս, Ժամագիրք եւ Նարեկ միայն կը կարդային:

Միացեալի այս արդիւնաշատ գործունէութիւնը բնական էր որ համակրանքի մեծ ալիք մը տարածէր ընդհանուր Հայութեան մէջ: Կ՚ըլլան նուիրատուութիւններ ու կտակներ, կ՚ունենայ բազմաթիւ բարերար ու պատուոյ անդամներ ոչ միայն Թրքահայոց, այլեւ արտասահմանի Հայերու եւ Հայասէրներու մէջ[74]:

Ընկերութիւնը կ՚ունենայ նաեւ կզզխացումի, սուգի ու տրտմութեան օրեր: Քաղաքական դիտաւորութիւններ վերագրուելով իրեն՝ կ՚ենթարկուի կասկածանքի, հալածանքի ու կզզխացումի, յատկապէս 1895—1896ին (Հմմտ. Մասիս, 1897, Թ. 85, 88):

Բայց 1908ի ընդհանուր խանդավառութեան օրերուն ինքն ալ կը վերականգնի թարմ ուժերով ու բազմապատկուած աւիւնով: Գումարուած առաջին Ընդհ. Ժողովքէն վերջ՝ կը բացուին Մշոյ «Ներսէսեան» վարժարանը, Ալաշկերտի երկսեռ դպրոցը, Զէյթունի 5 վարժարանները ու Խաչլուի Նախակրթարանը, որոնց կը յաջորդեն Մեծ-Հայքի եւ Կիլիկիոյ մէջ բացուած 36 վարժարաններ:

---

74 Հմմտ. Միացեալ Ընկերութիւնք Հայոց, Կ. Պ. 1882, էջ 13—15. 1912, էջ 21—49:

*Ընկերութիւնը* 1911—1912*ին ունէր* 85 *վարժարան*, 72 *մանչերու եւ* 13 *աղջիկներու համար*, *համագումար* 6813 *աշակերտներով*[75]:

1915*ի հայաջինջ հեղեղը «Միացեալ»ն ալ քշեց տարաւ*[76]:

## 21· ԱՇԽԱՏԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

Մասիս[77] 1881 *Յունուար* 3 *թուականով կը գրէ· «Ղալաթիոյ վարժարանի պանդուխտ սաներն իրենց մէջ* Աշխատասիրաց *անունով* Ընկերութիւն *մը կազմած են*, *իւրաքանչիւրը՝ շաբաթական* 20 *փարա տուրք վճարելով*, *զանազան կարեւոր գրքեր գնելու համար՝ ի պէտս պարգացելոց»: Հիմնումի ժամանակը հաւանօրէն* 1880*ի վերջերն է*:

## 22· ՎԱՐԺԱՊԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1880)

1881*ին «Ի խանձարուրս վախճանեցաւ մօք ինչ յառաջ» կը գրէ Յակոբ Գուրգէն* (*Ողեւորութիւն յԱթէնս եւ ի Զմիւռին*, *Կ. Պ.* 1881, *էջ* 54 *ծանօթ.*):

---

[75] Սուրհանդակ, *Կ. Պ.* 1908, *Թ*. 73: — Հողդար, *Սեբաստիա*, 1911, *Թ*. 38: — *Միացեալ Ընկերութիւնք*, 1912, *էջ* 22:

[76] *«Միացեալ»ի վրայ ընդարձակ աշխատութիւն մը լոյս տեսած է, Ընկերութեան կողմէ*, 1912*ին*, *ուր տրուած է պատկերը ընկերութեան կեանքին ու գործին՝ հիմնումէն մինչեւ* 1911: *Գրքին անունն է. «Միացեալ Ընկերութիւնք Հայոց*, *Կ. Պ.* 1912:

[77] *Անդ՝* 1881, Թ. 2788:

Կը թուի թէ 1881ին վերակենդանացնել ուզած են գայն ուրիշներ:

Ընկերութեան «ատենադպիր» Ատենապետ Մ. Սպեան եւ Ատենադպիր Յ. Գ. Փալապաշեան ծանուցումի մը մէջ «Վարժապետական Միութեան» Բ. նիստին կը հրաւիրեն Ղալաթիոյ «Կեդրոնական վարժարան»ի մէջ «իրենց նիւթական եւ բարոյական վիճակին բարւոքման նախանձախնդիր բոլոր վարժապետք ու վարժուհիք[78]», որմէ կ՚իմանանք թէ կազմուած Միութիւնը երկսեռ է եւ իր նպատակը՝ ուսուցիչներու նիւթական ու բարոյական վիճակի բարւոքումը:

23. ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ ԳԱՒԱՌԱՀԱՅՈՑ
(1882)

Պոլսոյ մէջ գտնուող գաւառացի Հայեր, իրենց կեդրոն ունենալով Ղալաթիոյ Մումխանէ Թ. 109ը՝ 1882ի սկիզբը կը հաստատեն «Բարեգործական Միութիւն Գաւառահայոց» ընկերութիւնը, որուն նպատակն էր «պահել Հայը իւր Հայրենի երկրի մէջ եւ խափանել պանդխտութիւնը», ինչպէս նաեւ «սոյն պանդխտութեան արգասիք եղող եղկելի տնտեսական եւ բարոյական վնասներուն դիմադրել, աշխատութեան ազատկարծան դրութիւնը ծնող պատճառներուն բարձումն ու խափանումն[79]»:

Միութեան Ատենապետն է Սահակ Ապրեսեան, Ատենադպիրը՝ Միհրան Հազարապետեան:

[78] Մասիս՝ 1881, Թ. 3030:
[79] Անդ՝ 1882, Թ. 3125:

*Միութիւնը 16 կէտերէ բաղկացած իր Կանոնագիրը* Մասիսի *մէջ*[80] *հրատարակելով՝ կը յայտնէ որ Գործադիր Ժողովի համար մասնաւոր Ներքին կանոնագիր ալ ունի*:

## 24. ՄԻԱԲԱՆՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑԱԿԱՆԱՑ ՀԱՅՈՑ (1882)

Մասիսի[81] 1882*ի ամառուան շրջանի թիւերուն մէջ տրուած ծանուցումներէ կ'իմանանք թէ հայ եկեղեցականներէ կազմուած է Ընկերութիւն մը, որ սա տիտղոսը կը կրէ.* «Միաբանութիւն եկեղեցականաց Հայոց»:

*Ընկերութեան Ատենապետն է Խորէն Արք., իսկ Ատենադպիրը՝ Յովհ. վարդապետ: Ընկերութիւնը կազմած ըլլալով իր կանոնագիրը՝ կը ջանայ գայն վաւերացնել՝ գործի անցնելու համար: Իր նպատակը անծանօթ է մեզ: Հաւաքատեղին՝ Ղալաթիոյ Ազգ. Մատենադարանը*[82]:

## 25. ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1882)

*Այս Ընկերութիւնը կազմուած է* 1882 *Օգոստոս–Սեպտեմբերին՝ Ս. Փրկիչ Ազգ. Հիւանդանոցի օժանդակելու համար: Հիւանդանոցի Հոգաբարձուները՝ Յ. Ֆէնէրճեան եւ Միք. Յակոբեան կը գրեն. «Մի քանի բարեսէր անձինք Ազգ. Հիւանդանոցի հաստատութեան նպաստելու նպատակաւ* «Օժանդակ

---

[80] *Անդ*:
[81] 1882, *Թ*. 3216, 3251:
[82] *Անդ*՝ 3251:

Ընկերութիւն» *անուամբ ընկերութիւն մը կազմած եւ անցեալ Սեպտ. ամսոյ մէջ հաւաքեալ դրամով 5 սնտուկ քարիւղ (կազ) գնելով Հոգաբարձութեանս յանձնած են, որոց համար Հոգաբարձութիւնս կը փութայ իւր խորին շնորհակալութ զգացումներն յայտնել*[83]» :

## 26. ՆԵՐՍԷՍ–ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884)

*Ներսէս Արք. Վարժապետեան, Պոլսոյ Պատրիարքը* († 1884 *Հոկտ.* 26) *գեղեցիկ ծրագիր մը մշակած էր. հիմնել բարձրագոյն հայ վարժարան մը, որ ըլլար գոնէ շարունակութիւնը Աւագել–Նուպար–Շահնազարեանի: Վաղաժամ մահը արգելք եղած էր սակայն այդ ծրագրին գործադրութեանը: Իր մահէն վերջ միահամուռ փափագ կը յայտնուի գլուխ հանել Ազգին սիրելի Հայրապետին ծրագիրը: Ահա այսպէս ծնունդ կ'առնէ* 1884 *Նոյեմբեր* 11*ին* «Ներսէս–Վարժապետեան Ուսումնարանի Ընկերութիւն»*ը, որուն հիմնական ծրագիրը կ'ըլլայ* «1. *Ի պատիւ Հանգուցելոյն վայելուչ շիրիմ մը կանգնել Մայր — եկեղեցւոյ մէջ:* 2. *Ներսէս Վարժապետեանի անուամբ Ուսումնարան մը հաստատել*», *եւ այլն*[84] :

---

[83] *Անդ՝ Թ.* 3305. 1883, *Թ.* 3404:
[84] *Երկրագունդ, Կ. Պ.* 1885, *էջ* 23:

Ազգ. Վարչութիւնը հնդամեայ շրջանի մը համար Ընկերութեան կը յանձնէ նաեւ «Կեդրոնական Վարժարան»ի բացումի խնդիրը[85]:

1884 Դեկտ. 28ին Ընկերութեան Գործադիր Մասնախումբի անդամներն են.

Արիկ Ունճեան
Աստուածատուր Ջունդ
Կարապետ Սըվաճեան
Մինաս Ձերազ (Ատենադպիր)
Մկրտիչ Էսայեան (Ատենապետ)
Յարութիւն Նորատունկեան
Յովհաննէս Թորոսեան
Սերովբէ Կիւլպէնկեան (Գանձապահ)
Տիգրան Կիւմիւշկէրտեան
Տիգրան Փէշտիմալճեան[86]:

Ընկերութիւնս կոչուած է նաեւ «Ներսէս Վարժապետեան Ընկերութիւն[87]» եւ 1886ին դադրած է[88]:

Բարգէն Ծ. Վ. Կիւլէսէրեան[89] կ'ըսէ որ Ներսէս Պատրիարք՝ Կեդրոնական Վարժարանի կրթական բարձր հաստատութիւնը ապահովելու համար «իր անունով ընկերութիւն մըն ալ հաստատած է», այն է՝ «Ներսէս-Վարժապետեան Ընկերութիւնը»: Մեզի

[85] Անդ՝ էջ 24:
[86] Անդ՝ էջ 25: — Հմմտ. Արեւելք, 1895, Թ. 598:
[87] Մասիս, 1887, էջ 301. Թերթը կ'ըսէ որ ընկերութիւնը մարած է:
[88] Թորգոմեան, անդ՝ էջ 526:
[89] Կոչում Յովհաննէս Պատրիարք, Վիեննա 1904, էջ 213:

*հաւանական չ՚երեւար որ Ներսէս Վարժապետեան Պատրիարք ինքը հիմնած ըլլայ իր անունով կոչուած Ընկերութիւնը: Մեր յառաջ բերած ապրիւրները կը ժխտեն Կիւլէսէրեանի կարծիքը: Իսկ Դոկտ. Վ. Թորգոմեան*[90] *կը գրէ. «Նոյն տարին* (1884) *հաստատուած է հոն* (*Ղալաթիա*) ի յիշատակ Ներսէս Պատրիարքի, *Ներսէս Վարժապետեան Ընկերութիւնը, որ շինած է Կեդրոնական Վարժարանը»:*

## 27. ԱՐԵՒԵԼԵԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1886)

1886 *Մարտ 9ին հաստատուած է* Արեւելեան Տնտեսական Միութիւնը: *Ունի* 90 *Յօդուածներէ կազմուած Կանոնագիր մը՝ հրատարակուած* 1886*ին եւ* 1887*ին: Իր երրորդ Յօդուածը կ՚ըսէ. «Միութեան նպատակն է՝ ժողովուրդը տնտեսութեան վարժեցնել եւ անոնց վիճակը բարուոքելու օգնել տնտեսագիտական եւ մարդասիրական միջոցներով»* (Տնտեսս, Կ. Պ. 1887, *էջ* 133):

*Ընկերութեան արձանագրուող մը կը վճարէ* 100 *դրուշ, իսկ շաբաթը* 10 *դրուշ ալ իր անձին կամ ընտանիքին համար կը պարտաւորուի խնայել:*

*Ընկերութեան անդամ կրնայ գրուիլ ո՛րեւէ անձ, ո՛րեւէ ազգէ:*

*Ընկերութիւնը դիւրութիւն կու տայ իր անդամներուն կալուածի կամ սեպհական բնա–*

---

[90] *Անդ՝ էջ* 526:

կարանի տէր դառնալու: Կ'օգնէ նաեւ գործ գտնելու:

Ընկերութեան անդամներու ցանկի մը մէջ (տե՛ս Եռամսեայ Տեղեկագիր Արեւելեան Տնտեսական Միութեան, Կ. Պ. 1889, էջ 18—25) կը տեսնենք ամէն ազգէ, վիճակէ եւ արհեստէ անձերու անուններ:

Ընկերութեան հիմնադիրն է Յ. Արշակ, որ 1885 Յունուարին յատուկ յայտարարութեամբ բացատրած է կազմուելիք Ընկերութեան ծրագիրն ու նպատակը (Եռամսեայ Տեղեկագիր, անդ՝ էջ 26—27):

Ընկերութիւնը իր ծախքով հրատարակած է Պոլիս «Տնտես» անունով թերթ մը, 1887—1888:

1908ին վերակազմուած է այս Ընկերութիւնը (Սուրհանդակ, Կ. Պ. 1908, Թ. 81):

## 28. ԿԵԴՐՈՆԱԿԱՆՑԻ ՍԱՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

Պոլսոյ Սուրհանդակ[91] թերթի մէջ Յ. Ճ. Սիրունի «Կեդրոնականցի Սաներու Միութիւն»ի անունով հրաւէր մը կը հրատարակէ «վարժարանին քանի մը կենսական խնդիրներուն մասին» խորհրդակցելու համար: Կ'երեւայ թէ նոր կազմուած էր ընկերութիւնը: Այդ տարին «Կեդրոնական» վարժարանի շէնքը հայ գաղթականներով լեցուած էր եւ ջանք կ'ըլլար վարժարանի ուսումնական ընթացքը սկսելու: Ընկերութիւնը կը

[91] Կ. Պ. 1908, Թ. 86:

*կոչուի նաեւ «Ուսանողական Միութիւն»* (Սուրիասեղակ, *տես՝ Թ.* 108)։

## 29. ԱՐԱՔՍ ԽՆԱՅՈՂԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

*Թէոդիկ*[92] 1910 *Յունուար* 31*ի տակ կը գրէ. «Ընդհանուր ժողով* «Արաքս» խնայողական Ընկերութեան, *Ղալաթիա։* 1 *տարուան մէջ Ընկերութիւնն անդամներէ գանձեր է* 748 *օսմ. ոսկի»։ Այս մասին ուրիշ տեղեկութիւն չունինք։ Հաւանօրէն հաստատուած է* 1909*ին։*

## 30. ՀԱՅՈՑ ՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

*Կը թուի թէ կազմուած է* 1910*ի սկիզբը։ Առաջին համագումար ժողովքը տեղի ունեցած է* 1910 *Մարտ* 13*ին*[93]*։ Ընկերութիւնը վաւերացուած է* 1910 *Յուլիս ամսոյն։ Իր կանոնները, բաղկացած* 62 *յօդուածներէ, հրատարակուած են առանձին գրքոյկով Պոլիս* 1910*ին։ Ահա իր նպատակը. «Տալ ժողովուրդին իր իմացական պահանջքներուն համապատասխան-լաւագոյն գործերը, դիւրամատչելի գիներով, եւ այս կերպով սատարել՝ հայ գրողին արժանիքին եւ աշխատութեան գնահատումին*[94]*»։ Ընկերութեան անդամավճարն է այրերու* 60, *կիներու* 30 *դրշ.։*

---

[92] *Ամէնուն Տարեցոյցը,* 1911. *էջ* 411։

[93] *Թէոդիկ, Ամէն. Տարեց.* 1911. *էջ* 411։

[94] *Հայոց Հրատարակչական Ընկերութիւն, Կանոնագիր, Կ. Պ.* 1910. *էջ* 3։ — *Թորգոմեան (տես՝ էջ* 527) *Ընկերութիւնս կը կոչէ «Թրքահայ Հրատարակչական Ընկերութիւն»։*

Ընկերութիւնը Զապէլ Եսայեանի «Աւերակներու վրայ» երկը հրատարակելէ վերջ (Կ. Պ. 1911) լուծուած է։

## 31. ԹԱՏԵՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

Տրուած ծանուցումէ մը կ՚իմանանք թէ Ղալաթիոյ մէջ կազմուած «Թատերական Ընկերութեան» Ա. Ընդհ. ժողովքը 1910 Օգոստ. 22ին տեղի կ՚ունենայ[95]։ Իր մասին կը պակսի անդրադարձ ծանօթութիւն։

## 32. ՎՈՍՓՈՐ ԽՆԱՅԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

1910 Մարտ 1ին հիմնուած է Վոսփոր խնայասիրական Ընկերութիւնը, որուն առաջին Յօդուածին մէջ գրուած են հիմնադիրներու անունները. Քերովբէ Թէքէեան, Ալիքսան Թօփալեան, Արամ Ինճիճեան, Վահէ Իսկէնտէրեան, Պօղոս Մխիթեան, Անտոն Պէճիտեան, Բօլ Սահակեան, Յովսէփ Տէտէպալ եւ Յարութիւն Քէչէճեան[96], բոլորն ալ վաճառական եւ պաշտօնեայ։ Անդամ կրնան ըլլալ միայն Թրքահպատակները, վճարելով ամսական կէս ոսկի։ Ընկերութեան ձգտումն է. «Անդամներու ամսավճարներով գոյացնել դրամագլուխ մը եւ անով ձեռնարկել առեւտրական շահաբեր գործի մը[97]»։ Իր կանոն–

[95] Թէոդիկ, Ամէն. Տարեց., անդ՝ էջ 411։

[96] Կազմական կանոնագիր Վոսփոր Խնայասիրական Ընկերութեան, Կ. Պ. 1910, էջ 4։

[97] Կազմական կանոնագիր, Կ. Պ. 1910, էջ 5։

*ներն ունին 27 Յօդուած։ Կը կառավարուի Ընդհանուր եւ Վարչական Ժողովէ մը։*

## 33. ԴՊՐԱՑ ԴԱՍ (1912)

*Ղալաթիոյ մէջ կազմակերպուած «Դպրաց Դաս» մը, իբրեւ ընկերութիւն, կը յիշուի շատ ուշ՝ 1912ին, զոր հովանաւորած ու մարզած է Կոմիտաս Վարդապետ, որուն հիւանդութենէն վերջ (1915) կազմալուծուած է Ընկերութիւնը*[98]*։*

98 *Դոկտ. Թորգոմեան, անդ՝ էջ* 532։

## ԲԵՐԱ

### 1. ՀԱՄԱԶԳԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1846)

1846 *Մարտ* 17*ին Բերայի մէջ գումարած իր առաջին ժողովքին առթիւ* Համազգեաց Ընկերութիւնը 76 *ստորագրութեամբ դրական յայտարարութիւն մը հրատարակելով կ՚ըսէ. «Մեծաց արդարեւ գովութեանց է արժանաւոր եւ առիթ անչափ խնդութեան, տեսանել արծարծեալ ի սակաւ յայսոսիկ ամս ի սիրտ ամենայն ազգայնոց մերոց, փոյթ իմն եռանդեան ի կանգնումն ուսումնարանաց, եւ ի զարգացումն ուսումնական ընկերութեանց ... ազգ մեր նախնագոյն յազգս, իբր անյիշատակ թաղեալ երբեմն ի տգիտութեան խորս ... արդ զգլուխ ի վեր ամբարձեալ յաւերակաց շիրմացն, թախիծ մեզ արկանէ որդւոց իւրոց, մի՛ զանց առնել զխիք ի կենդանացուցանել զնա յիմաստութիւն... Մի ազգ եմք եւ ի մի միաբանութիւն ժողովեալ, երթիցուք ուր ձգիցէ զմեզ ճշմարիտ ազգասիրութիւն* [1]*»:*

*Այս յառաջաբանէն վերջ՝ Ընկերութեան հիմնադիրները կը ներկայացնեն* 10 *կէտեր,*

---

[1] Արշ. Արարատեան, 1846, Թ. 257:

որոնք իրենց գործունէութեան ապագայ ասպարէզը պիտի կազմեն։ Այդ կէտերն են·

«Ա· Միասիրտ, միակամ, խաղաղասէր շաղկապումն անձանց ի մի միաբանութիւն։

Բ· Յօրինուած եւ թարգմանութիւն գրեանց օգտակարաց, եւ հրատարակումն այնոցիկ տպագրութեամբ։

Գ· Կանգնումն վարժարանաց եւ դպրոցաց ի քաղաքս եւ ի գիւղս՝ ի դաստիարակութիւն ուստերաց եւ դստերաց։

Դ· Հմտութիւն եւ գործադրութիւն արուեստին երկրագործութեան։

Ե· Հետախոյզ քննութիւն հայրենականաց հնութեանց եւ սովորութեանց։

Զ· Հաւաքումն մատենից նախնեաց եւ գրամոց եւ այլոց նշխարաց հնութեանց։

Է· Հաւաքումն նիւթոց բնական պատմութեան կենդանեաց, բուսականաց եւ ընդերկրեայց։

Ը· Ուսումն ամենազգի արուեստից ծաղկելոցն ազանց։

Թ· Բարգաւաճումն վաճառականութեան ըստ եւրոպական օրինի։

Ժ· Ուսումն անթերի գիտութեան վաստակելոյ ի մետաղս [2]»։

Ընկերութիւնը իր անմիջական գործունէութեան նպատակ կ՚ընտրէ սակայն հետեւեալները· 1· Թարգմանել կամ շարադրել կարեւոր հատուածներ՝ մտքի զարգացումի

---

[2] Անդ։

*համար. 2. ջանք ընել՝ հաստատուն վաճառականութեան մը հիմ դնելու. 3. պատրաստութիւն տեսնել՝ մանչերու եւ աղջիկներու վարժարաններ հիմնելու համար*[3]*:*

*Ընկերութեան առաջին գործը կ'ըլլայ կազմել իր յատուկ Կանոնագիրը: Այս կարեւոր գործը, ընկերութեան խնդրանքով, գլուխ կը հանէ Վենետիկի Մխիթարեաններէն Հ. Պետրոս Մինասեան, ինչպէս կը պատմէ ժամանակակից անձ մը*[4]*:*

*Պէրպէրեան եւս կու տայ կարեւոր լուսաբանութիւն Ընկերութեանս մասին՝ գրելով. «... ազգասէր եւ ուսումնասէր անձինք ի Հռովմէական Հայոց՝ յորոց բազումք աշակերտեալք էին ի Մուրատեան եւ ի Ռափայէլեան վարժարանն եւ ի Վանսն Վէնէտկոյ եւ Վիէննայու, համամիտ եւ համակամ խորհրդով եւ հաւանութեամբ կամեցան հաստատել զԸնկերութիւն իմն ընդ Լուսաւորչեան Հայոց: Նպատակ Ընկերութեան էր ազգասիրութիւն եւ յառաջադիմութիւն ի բարոյական մասին, եւ բացէ ի բաց հերքումն տարապարտ վիճից... բացցեն նոքօք դպրոցս ի հայաբնակ քաղաքս Ասիոյ, յորս ոչ գոյ դպրոց, ոչ ընթերցանութիւն եւ ոչ ուսումն զանազան արուեստից...: Զկանոնս Ընկերութեանն խմբագրեաց Հ. Պետրոս Վ. միաբան Վէնէտ-*

---

[3] *Անդ:*

[4] *Յ. Ասկէրեան, Հասունեան քաղաքականութիւն, Տփղիս* 1868. *էջ* 77:

կեան վանից եւ զանուն նորա կոչեաց Համազգեաց Ընկերութիւն[5]»:

Ընկերութեանս ոգին ու «գլխաւոր միաբանաւէրք»ը եղած են. Մկրտիչ Սամանճեան, Յակոբ Տաւուտեան (յետոյ՝ Դոկտոր), Ա. Լութֆեան, Խաչատուր Գազազեան, Յովսէփ Վարդանեան (յետոյ՝ Փաշա), Կարապետ Թիւլպէնտճեան, Սարգիս Ասկէրեան եւ Սերովբէ Ագնաւուրեան[6]: Ընկերութեան Քարտուղարը եղած է Մկրտիչ Պէշիկթաշլեան[7]:

Իբրեւ Համազգային Ընկերութիւն՝ ամէն հայ կրնար անդամ գրուիլ՝ մուտքի համար 10 եւ ամսական 5 դահեկան վճարելով: — Իզմիրի թերթը գովելով Հայ Կաթողիկէ երիտասարդներու ազգասիրական այս շարժումը՝ խրախուսական սա տողերը կը գրէ. «Անշուշտ իւրաքանչիւր հայրենասէր անձն յաջողութիւն եւ յառաջադիմութիւն պիտի բարեմաղթէ եւ նպատակամատոյց ըլլայ ըստ կարի Համազգեաց Ընկերութեանը եթէ, ինչպէս որ կը խոստանայ՝ ազգասիրութիւնը եւ ընկերսիրութիւնը միմիայն առաջնորդ ունենայ միշտ իր ամէն ընթացիցը[8]»:

Հակառակ անոր որ Ընկերութիւնը իր արարոյցէն սկսած կ'ունենայ զանազան խոչըն–

---

[5] Ա. Պէրպէրեան, Պատմութիւն, էջ 350—351:
[6] Անդ՝ էջ 358:
[7] Վահան Զարդարեան, Յիշատակարան, Դ., էջ 133:
[8] Արշ. Արարատ., անդ՝ Թ. 257:

դատեր, թիւրիմացութիւններ ու նոյն իսկ ստոխներ՝ կարճ ժամանակի մէջ մեծապէս կը տարածուէր: Կը գտնէ անթիւ համակիրներ ու սատարողներ: 1848 Փետրուարին իր անդամներու թիւը 600էն աւելի էր[9]: Տէր էր սեփական տան մը Բերա, Լալէ փողոց թ. 13[10]:

Բայց արդէն 1848ի վերջերը Ընկերութիւնը կը բախի լուրջ արգելքներու: Հայութիւնը տակաւին հասունցած չէր ըմբռնել կարենալու համար թէ կրօնական տարբերութիւնը իսկական արգելք մը չէր որ միեւնոյն ցեղին ու հայրենիքին զաւակները հասարակաց օգտին ու շահուն համար միացնեն իրենց ուժերը եւ ձգտին հասարակաց վախճանի մը: Ասով միասին թղթակից մը կը պատմէ որ, երբ Համազգեացի կաթողիկէ անդամները կը ստիպուէին որ իրենց մէջէն ոչ-կաթողիկէները հեռացնեն՝ կաթողիկէները կը պատասխանեն թէ «մենք միեւնոյն Հայոց ազգն եմք, եւ կրօնի տարբերութիւնը... չկրնար ազգերնիս երկուքի բաժնել[11]»:

Վէճը կ'երկարի սակայն, հասնելով մինչեւ Հռոմ եւ Բ. Դուռը: Ու Ընկերութիւնը կը ստիպուի փոխել իր կանոնագրութեան շատ մը կէտերը: Փոփոխուած կանոնները, կազմուած 41 Յօդուածներէ, կը հրատարա-

---

[9] Անդ՝ թ. 304:
[10] Արեւելք, 1898, թ. 3853:
[11] Արշ. Արարատ., 1848, թ. 310:

*կուրն 1851ին*[12]*: Բայց փոփոխութիւնները օգուտ մը չեն ըներ՝ փրկելու համար Ընկերութեան գոյութիւնը: Ու ան կը դադրի պահ մը գոյութիւն ունենալէ: 1852 Սեպտեմբերին* Մասիս[13] *կը գրէ թէ «կը լսենք նաեւ որ Համազգեաց Ընկերութիւնն ալ* խափաներ է»:

*Սակայն յանթեղի կը մնար տենչը վերականգնելու Ընկերութիւնը իր նախնական վիճակին մէջ՝ իբրեւ իսկական Համազգային Ընկերութիւն մը:* Մասիս[14] 1860*ի վերջը կը գրէ որ «Հին Համազգեաց Ընկերութեան արգոյ անդամները գովելի խորհրդով ազգային մատենադարան կամ ընթերցարան մը բանալու ձեռք զարկեր են . . . տեղն է Պէյօղլու Սագըզ–Աղած Թաղը Լալէ սօգագ Թ.* 13, *Համազգեաց Ընկերութեան քարաշէն տունը»:*

1861*ի սկիզբը փորձ մը կ՚ըլլայ Ընկերութիւնը վերարծարծելու: Կը վերաքննուին անոր կանոնները*[15] *եւ* 1861 *Ապրիլ* 21*ին գումարուած ընդհանուր ժողովը կը հրատարակէ նոր կանոնները, որոնք* 24 *Յօդուածէ բաղկացած են եւ որոնց երկրորդը կ՚ըսէ. «Առանց կրօնի եւ վիճակի խտրութեան ամէն Հայազգի պիտի կարենայ այս Ընկերութեան բաժանորդ ըլլալ եւ յամենայնի հաւասար իրաւունք ու–*

---

[12] *Տես Ջատագովութիւն Համազգեաց Ընկերութեան, Կ. Պ.* 1851, *էջ* 34—42: — *Հմմտ. Պէրպէրեան, անդ՝ էջ* 351—358:

[13] *Թ.* 33:

[14] *Թ.* 464:

[15] Մասիս. 1861, *Թ.* 476:

*նենալ*[16]»: *Այս կանոնները երեք տարի անփոփոխելի էին: Ընկերութեան անդամ կրնային ըլլալ նաեւ տիկինները՝ առանց ժողովքներու մասնակից ըլլալու իրաւունքի* (*Կանոն* 6): *Ընկերութեան կեդրոնն էր դար-ձեռայ Բերա, Լալէ փողոց Թ.* 13:

*Կրցա՞ւ Ընկերութիւնը այս իր նոր ձեւին մէջ տոկալ երկար ատեն: Բնականաբար ոչ: Ընկերութիւնը այս ձեւով ալ հանդուրժուած չէր ու կաղնիկալ ընթացք մը վերջ՝ դադ-րած է:* 1870*ին փափաք կը յայտնուի ան-դամ մըն ալ վերակենդանացնելու զայն, զի անոր «յիշատակը տակաւին Հայ սրտերը կը բաբախէ*[17]»:

Օրագրի *համեմատ*[18] *«քաղաքային մաս-նութեամբ ցրուած» է Ընկերութիւնը:*

*Ընկերութիւնը, իբրեւ այսպիսի, դադ-րելէ յետոյ՝ երկար ատեն պահած է իր գոյութիւնը ուրիշ ձեւի տակ: Ան բացած է իր կեդրոնին մէջ — Բերա — հայ աղջկանց վարժարան մը, զոր վարած է Տիկնանց «Յա-ռաջդիմասէր Ընկերութեան» միջոցաւ*[19]:

*«Համազգեաց» վերնագրով ընդարձակ յօդուած մ'ունի Թուրէն Որբերեան «Համազ-գային Տարեգիրք»ի մէջ*[20], *ուր մանրամաս-նօրէն խօսուած է նիւթիս մասին:*

---

[16] Մէճմ. Հավատիս, 1861, *Թ.* 403:
[17] Մամուլ, *Կ. Պ.* 1870, *էջ* 462:
[18] *Կ. Պ.* 1874, *Թ.* 1389:
[19] *Տե՛ս* Մասիս, 1881, *Թ.* 3068 *եւ* 1882, *Թ.* 3267:
[20] *Գահիրէ*, 1936, *էջ* 216—226:

## 2. ՆԱՐԵԿԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1846)

1846 *Մայիս 1ին հաստատուած է* Նարեկեան Ընկերութիւնը, *որուն անդրանիկ յայտարարութիւնը կ'ըսէ. «Պէյօղլուի Հայկազեան դպրատունները, բարձր սրբազան, ամենապատիւ Տ. Մատթէոս ազգասէր եւ ուսումնասէր Պատրիարքին յորդորանօքը՝ տեղացի ազգասիրական ոգւով եւ իրենց ուրիշ տեղի ազգակիցներուն նմանելու փափաքով նոր Ընկերութիւն մը հաստատեցին* 1846 *Մայիս 1էն՝ բարեյարմար պայմաններով կարգաւորուած, եւ երանելի Ս. Գրիգոր Նարեկացւոյն օժանդակութեանը նուիրելով անունը դրուեցաւ Նարեկեան Ընկերութիւն: Ընկերութեանս յատուկ պաշտպան Սրբազան Պատրիարքն է, եւ ընտրեալ հոգաբարձուներուն ամէնն ալ Նորին Սրբազնութիւնը կը հաստատէ*[21]»:

*«Բարեյարմար պայմաններով կարգաւորուած» բացատրութիւնը կը յայտնէ թէ Ընկերութիւնը ունեցած է որոշ կանոնագրութիւն մը, որ մեզի անծանօթ է:*

*Ընկերութեան ամսական անդամավճարն է* 5 *գրուշ: Անդամավճարի ընկալագիրը կը ներկայացնէ Ս. Գրիգոր Նարեկացին՝ շրջանակի մը մէջ, ծնրադիր, բազկատարած: Շրջանակին վերը գրուած է «Նարեկեան Ընկերութիւն Հայոց», իսկ վարը «ի Պէյօղլու*

---

[21] Հայաստան, 1846, *թ.* 8: — *Հմմտ.* Մասիս, 1853, *թ.* 57:

1846 *Մայիս* 1»: *Ընկալագրիս նմանահանութիւնը տուած է Դոկտ. Վահրամ Թորգոմեան*[22]:

*Ընկերութեանս ջանքերով կը կառուցուի Բերայի մէջ Նարեկեան վարժարանը, որ երկար կեանք ունեցած է, իսկ Ընկերութիւնը, որ վարժարանին պաշտպանն է՝ կարճատեւ կեանք մ'ունեցած է, թէեւ իր անունը կրած է վարժարաններու հոգաբարձութիւնը՝ մինչեւ* 1861[23]:

*Ընկերութեանս առաջին անդամներէն մին եւ Նարեկեան վարժարանի հոգաբարձու եղած է Դոկտ. Ստեփան Փաշա Ասլանեան*[24], *որուն ջանքերով թոյլցած Ընկերութիւնը* 1849*ին վերակազմուած է*[25]:

## 3· ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1846)

*Ինչպէս ծանօթ է՝ Թրքահայոց մէջ թատերական խաղերու սկզբնաւորութիւնը արդէն ԺԹ. դարու առաջին քառորդին եղած էր:* 1840*ական թուականներուն Պոլսոյ զանազան թաղային դպրոցներու եւ առանձնական տներու մէջ փոքրիկ ներկայացումներ տեղի կ'ունենային:*

1846*ին թատերական խաղերու միջկատակի յատուկ տեսարաններ ներկայացնող*

---

[22] Հանդէս Ամսօրեայ, 1905, էջ 78:

[23] *Մարտիրոս Հանէսեան, Հարիւր քսանեւհինգամեայ Յոբելեան Բերայի Ս. Երրորդութեան եկեղեցւոյ, Կ. Պ.* 1932, *էջ* 59—60:

[24] *Հ.* Ա., *անդ՝ էջ* 78—79:

[25] *Հ. Մ. Պոտուրեան, Հանրագիտակ, էջ* 227:

Ընկերութիւն մը կը կազմէ Յովհաննէս Գասպարեան († 1867)։ Ընկերութեան անունը աւանդած չեն ժամանակակից թերթերէն Հայաստան եւ Ազգասէր, որոնք կը խօսին Գասպարեանի ներկայացումներու մասին։ Այպօյաճեան[26], մեզի անծանօթ աղբիւրէ առնելով, Արամեան Ընկերութիւն կը կոչէ զայն։

Հայաստան[27] 1847 Յունիս 6ին կը գրէ Ընկերութեանս մասին. «Պ. Յովհաննէս Գասպարեան հանճարեղ եւ միանգամայն ճարպիկ երիտասարդը, որ տարիէ մը ի վեր հայազգի երիտասարդներէն Ընկերութիւն մը կազմելով Պէյօղլուի ձմերանոցի դիմացը անֆիթէադրոյի մը մէջ կերպ կերպ ուժի եւ ճարտարութեան վերաբերեալ սքանչելի խաղերէն ետքը միջկատակ կոչուած զուարճալի խաղերէն ալ խաղցնելով ամեն ժամանակ անցունել կու տար իր բազմաթիւ հանդիսականներուն, այս տարի իր հանդիսականները առաւել գոհ ընելու մտօք ուրիշ նոր նոր խաղեր ալ խաղցունելու սկըսեց. նաեւ սուրբ Գրոց պատմութեան երեւելի դիպուածներուն տեսարանները ալ աչքի առջեւ կը բերէ կոր, որոնց մէկ քանին անցեալ կիւրակէ անանկ բնականի պէս ցցուց որ բոլոր հանդիսականք ապշեցան մնացին»։

Կալկաթայի Ազգասէրը[28] օտար թերթերէ առնելով կու տայ մանրամասնութիւններ

---

[26] Գաղութահայ Տարեգիրք, Ա., էջ 55։
[27] Թ. 50։
[28] 1847, Թ. 118։

Գասպարեանի ներկայացումներու մասին, որոնց ներկայ կ՚ըլլար, կ՚ըսէ, նոյն իսկ Սուլթանի Թագաւորամայր կայսրուհին, «որ եւ պաշտպանուհի Թատերականացս այսօրիկ»:

Յովհ. Գասպարեանի գործակիցներն եղած են. Միքայէլ Բամպուքճեան, Մելքոն Գասպարեան, Ալիքսան Սվաճեան, Յակոբ Սվաճեան, Մարտիրոս Խանճեան, Գէորգ Չիլինկիրեան, Սերովբէ Պէրպէրեան, Աղասի Մինասեան, Յարութիւն Պաղտատլեան, Կարապետ Տէօքմէճեան եւ Հաճի Սահակ: Այս խումբը Պոլսոյ մէջ երկար ատեն մեծ ընդունելութիւն գտնելէ վերջ՝ մեկնած է Կովկաս (1849)[29]: Որքան կ՚երեւայ՝ անկէ ուրիշ երկիրներ ալ անցնելով՝ շրջան մ՚ըրած է Գասպարեան: 1863 Փետրուարին սկիզբը ծանուցում մը կ՚իմացնէ որ Յովհ. Գասպարեան Իտալիոյ մէջ նոր Ընկերութիւն մը կազմելով վերադարձած է Պոլիս եւ միտք ունի Կէտիկ Փաշայի մէջ «մինչեւ հիմա չտեսնուած ճարտարահնար եւ զրօսեցուցիչ խաղեր ներկայացնելու . . . եւ տարակոյս չունի որ մեծապէս գոհ պիտի ըլլան[30]»:

1867ին, Գասպարեանի մահէն վերջ, իր Բերայի լարախաղատան մէջ կը շարունակուին գանազան խաղերու ներկայացումները, որոնց մուտքը 5 եւ 10 ղրուշ կ՚արժէր[31]:

---

[29] Գաղութահայ Տարեգիրք, անդ:
[30] Մասիս, 1863, Թ. 573:
[31] Մասիս, Փոքր, Կ. Պ. 1867, Թ. 30:

## 4. ԲԱՐԵՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1856)

*Ս. Փրկչի Ազգ. Հիւանդանոցի ի նպաստ հիմնուած է* Բարեսիրական Ընկերութիւնը, *որ կարճատեւ կեանք մ'ունեցած է*[32]*: Հիւանդանոցի Պատմութեան հեղինակին*[33] *անծանօթ է Ընկերութիւնս: Ժամանակակից հայ թերթը*[34] *կը տեղեկագրէ. «Յայտնի է որ սուրբ Փրկչի ազգ. հիւանդանոցին ծախքը խիստ ծանր ըլլալով, մանաւանդ ժամանակէ մը ի վեր ուտելեաց սղութեան պատճառաւը եւս առաւել ծանրանալով, ազգային առատաձեռնութենէն հաւաքված տուրքերն ու կամաւոր նուէրները դժուարաւ կը բաւէին հիւանդանոցին մէջ խնամեալ 350ի չափ կարօտելոց պիտոյքը եւ գլխաւորապէս ուտելիքը առատապէս հոգալու. այս պատճառաւ օրը մէկ անգամ միայն տաք կերակուր կը տրվէր իրիկունները...: Այս անբաւական վիճակը քանի մը ազգասէր բարեպաշտ անձանց սիրտը շարժելով, խորհեցան բաժանորդական Ընկերութիւն մը կազմել եւ հիւանդանոցին մատակարարութեան պակասը լեցնել...: Այս աստուածահաճոյ խորհրդոյն կատարմանը համար առ այժմ հարիւրէն աւելի անձինք յօժարակամ իրենց ստորագրութիւնը տուած ըլլալով, կը յուսացվի որ բաժանորդաց թիւը*

---

[32] *Թորգոմեան, անդ՝ Բ., էջ* 590: — *Գաղութ. Տարեգ., Ա., անդ՝ էջ* 60:

[33] *Բիւզանդ Քէչեան, Պատմ. Ս. Փրկչի Հիւանդանոցի, Կ. Պ.* 1888:

[34] Մասիս, 1856, *Թ.* 225:

*պէտք եղած օգնութեան բաւական ըլլալու կէտին կը հասնի, որ է 400 բաժին, ամէն մէկը 100 ղուռուշի։ Ահաւասիկ այս* Բարեսիրական Ընկերութեան *ներկայ բաժանորդները»։* Մասիս *կու տայ հոդ եւ յաջորդ թիւերուն մէջ անունները Ընկերութեան բաժանորդներուն, որոնց մէջ են օրուան Պատրիարքը եւ հայ մեծամեծներ, բաժիններու գումարը հասցնելով 336ի։*

5. ԴԵՐԱՍԱՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1857)

*Սրապիոն Հէքիմեանի ձեռքին տակ Բերայի մէջ կազմակերպուած ու մարզուած առաջին դերասանական խումբը եղած է նաեւ թատերական Ընկերութիւն մը, որ կոչուած է* Դերասանական Ընկերութիւն։ *Ընկերութեան կազմութիւնը տեղի ունեցած կ'երեւայ* 1857*ին.* 1858 *Ապրիլ* 28*ին Ընկերութեան կողմէ Թովմա Թ. Յարութիւնեան ծանուցում մը տալով՝ կ'իմացնէ թէ Ընկերութեան խումբը մօտ ատենէն ներկայացում պիտի տայ։ Պատմական եւ չատ հետաքրքրական է այդ ծանուցումը, ուր ներկայացած կը գտնենք հայ ազգային թատրոնի անդրանիկ դերասանական խումբերէն մին՝ հաւանօրէն իր ամբողջական կազմովը։ Ահա այդ ծանուցումը.*

«Ծանուցմունք

1858 Ապրիլ 28

*Մեծարգոյ խմբագիր. Պէյօղլուի մէջ հաստատուած ու Սրապիոն աղա Հէքիմեանէն վարժուած Դերասանական Ընկերութիւնը չորս հինգ օրէն Մ. Միշէլ եւ եղբարք Նաումի թատրոնը իր պատրաստած* Միւրայի փէյլէ-սօփ իլէ միւսէյէպ քարտաշլար» *ըսուած զուարճալի խաղը պիտի ներկայացընէ: Ընկերութիւնը Մ. Նաումի եւ Սրապիոն աղա Հէքիմեանին հսկողութեանը տակ ըլլալով՝ քիչ ատենէն առաջ երթալուն տարակոյս չկայ. այս խաղին ներկայանալու անձինքն են.*

*Պ. Ս. Ե.*
*Պ. Յովհ. Աճէմեան.*
*Պ. Գարեգին.*
*Պ. Գաբրիէլ Պալատլըեան.*
*Պ. Թովմաս Թ. Յարութիւնեան.*
*Ազաւնի Տանիմարքա Գէորգեան.*
*Ֆաննի:*

*Խաղը ներկայանալու գիշերը օր մը առաջ ուրիշ ծանուցումով իմաց պիտի տրվի:*

*Մնամ եւ այլն.*

*Թովմայ Թ. Յարութիւնեան*[35]»:

Մասիս[36] *նոյն Ընկերութեան Բերայի մէջ տուած Թրքերէն ներկայացումին վրայ խօսե-լով՝ կ՚ըսէ. «Հայազգի դերասանները՝ որ*

---

[35] Մասիս, *Թ.* 327:
[36] *Անդ՝ Թ.* 353:

միայն տարիէ մը ի վեր *այս դժուար եւ փափուկ արհեստը սկսած են, արդարեւ զարմանալի ճարտարութիւն ցոյց տուին իրենց ձեւացմունքներուն մէջ»:*

*1860ին սկիզբը արդէն բազմացած էին Հայոց մէջ Թատերական Ընկերութիւնները: «...գրեթէ ամէն կողմէն թատերական կամ գերասանական նորանոր Ընկերութեանց կազմուելուն արձագանգը ականջնուս կը հնչէ», կը գրէ ժամանակակից մը*[37]:

## 6. ՄՈՒՐԱՏԵԱՆ ԵՒ ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1859)

1859 *Յունուար 7ին հիմնուած է* Մուրատեան եւ Ռափայէլեան Աշակերտաց Ընկերութիւնը[38]: *Հիմնողներն են երկու վարժարաններու նախկին աշակերտները: Այդ հիմնարկութեան առաջին տարեդարձին առթիւ Ընկերութիւնը* 1860 *Յունուար 7ին Բերայի Ս. Երրորդութեան եկեղեցւոյ մէջ հանդիսական պատարագ մատուցանել կու տայ երկու Բարերարներու եւ անոնց համօրէն ննջեցելոց հոգիներուն համար: Պատարագիչն է Հայոց Պատրիարքը: Նոյն օրը իրիկուան դէմ, Բերայի մէկ ընդարձակ սրահին մէջ, զարդարուած Մուրատի եւ Ռափայէլի մեծադիր նկարներով՝ կը խմբուի Ընկերութեան տարեդարձի հանդէսը: Կը նախագահէ Մկրտիչ*

---

[37] Մասիս, 1860, Թ. 423:

[38] Մէնմ. Հավատիս, 1860, Թ. 330:

Պէշիկթաշլեան: Տեղի կ'ունենան նուագ, ճառախօսութիւն եւ գինեձօն:

Մէծմ. Հայաստանի տաղանդաւոր խմբագիրը, Յովսէփ Վարդանեան, նկարագրած է այդ տարեդարձի գեղեցիկ հանդէսը տալով նաեւ հանդիսաւոր օրուան ձօնուած Սրապիոն Հէքիմեանի «Երգ բաժակին», Պէշիկթաշլեանի ճառը եւ մասեր միւս ճառերէն: Վարդանեան իր նկարագրականին մէջ կը գրէ. «Յիրաւի ազգերնիս զուրկ է քաղաքական կենդանութենէն. խոնարհինք աստուածային կամացը առջեւ: Բայց Յունուարի եօթներորդ օրը մեզի ցուցուց որ ունինք բարոյական կեանք մը, առաւել տեւական եւ առաւել ազնիւ. չունինք առիթներ յաղթական կամարներ ու արձաններ կանգնելու մեր դիւցազանց. բաժին է սոսկա քաղաքական կենդանութիւն վայելող ազգաց. բայց ունինք դիւցազնական առաքինութեամբ պերճացեալ անձինք եւ սոցա արդեամբը պսակեալ կենդանի յիշատակներ, կենդանի այսօր եւ կենդանի յաջորդութեամբ մինչեւ յաւիտեան: Ասոնք պղինձ չեն եւ ոչ մարմարիոն, այլ իմացականութիւն. իմացականութիւն՝ հոգի աշխարհի, անմահ իբրեւ հոգի եւ ոչ ապականացու իբրեւ նիւթ. յիշատակ՝ զոր ոչ աշխարհակալը կը կործանէ եւ ոչ թշնամին կը փշրէ [39]»:

Մուրատ–Ռափայէլեան Ընկերութեան հաւաքատեղին է Բերա, Համազգեաց Ընկերու-

[39] Անդ:

*թեան սրահը: Տնօրէն ժողովքի Ատենապետն է Մ. Պէշիկթաշլեան, իսկ Ատենադպիրը՝ Թովմաս Թերզեան[40]: Ընկերութեան կանոնագիրը անծանօթ է մեզ: Անոր նպատակը մասամբ կը բնորոշեն* ՄԷճմ. Հավատիսի *հետեւեալ խօսքերը, արտասանուած Ընկերութեան մէկ անդամին մահուան առթիւ. «Մեր եւ հեռատես աչք մը թշուառ ազգիս թշուառագոյն վիճակին ակնարկութիւն մ'ըրած ժամանակը, անշուշտ պիտի տեսնայ փոքրիկ միութիւն մը, որ խաւար գիշերուան մը ամպապատ քողէն չի ծածկուած աստղի մը պէս բարձրէն փայլելով, քողարկեալ, բայց լուսաւոր երկինքը կը ներկայացնէ: Իրաւամբ այսպիսի ազնիւ միութիւն մը կը համարինք Մուրատեան եւ Ռափայէլեան վարժարաններու աշակերտաց կաճառը, հաւատոյ կրթութեան մը խայրիքը: Այս ազնիւ պատանեակները ... ունին իրենց ուղեցոյց ... Նարոյէանի երրորդի այս նշանաւոր պատգամը.* Անցեալէն ինչ որ բարի է, պահպանել ու ազգային պատրաստել ... : *Ցանկալի է ուրեմն այսպիսի միութիւն մը, որ անցեալը ապագային հետ պիտի կապէ, որ է միայն ազգային դժուարութեանց դժուարագոյնը[41]»:*

*Ընկերութիւնը* 1862 *Մարտ* 15*ին* 7 *հոգիէ բաղկացած Յանձնաժողով մը կը կազմէ, որ ունի իր յատուկ կանոնագիրը եւ Ընկերու-*

---

[40] *Անդ՝* 1861. *Թ.* 397, 435:
[41] *Անդ՝ Թ.* 417:

թեան Գործադիր Ժողովն է[42]: 1864ին Ընկերութեան նախագահն է Սրապիոն Հէքիմեան: Ընկերութիւնը սովորութիւն ըրած ըլլալով իր հիմնադրութեան տարեդարձը ճաշկերոյթով մը տօնախմբելու՝ 1864ի ճաշկերոյթին կը մասնակցին աւելի քան 60 ընկերներ եւ քանի մը պատուոյ անդամներ[43]. վերջիններուս մէջ է Գրիգոր Օտեան: 1868 Փետրուարին, մինչ Ընկերութեան ամէնէն արդիւնաշատ անդամը — Մ. Պէշիկթաշլեան — ծանր հիւանդութեան մը պատճառաւ անկողնոյ գամուած էր՝ Ընկերութիւնը տարեդարձի ճաշկերոյթը կը սարքէ Palais de Christalի մէջ, ուր Ընկերութիւնը կ՚որոշէ իր ծախքով հրատարակել Պէշիկթաշլեանի գլխաւոր գործերը: Գիրքը լոյս կը տեսնէ սակայն 1870ին, 582 էջով[44]:

Մկրտիչ Պէշիկթաշլեանի մահէն վերջ (1868 Նոյ. 28) Մուրատ–Ռափայէլեան Ընկերութիւնը հետզհետէ տկարանալով՝ 1871ին բոլորովին դադրած է:

### 7. ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ (1860)

1860 Սեպտ. 1ին, Բերայի մէջ «զանազան կրօնքէ ուր ազգայինք ի դիմաց եռանդի չափ ընկերաց» կը հիմնեն Բարեգործական Ընկե-

[42] Անդ՝ 1862, Թ. 444:
[43] Մասիս, 1864, Թ. 622:
[44] Անդ՝ 1870, Թ. 1037:

բութիւնը[45]: 1861ին հրատարակած իր մէկ Յայտարարութեամբ Ընկերութիւնը կը յայտնէ այն շարժառիթները, որոնք մղած են հիմնելու այս Ընկերութիւնը: Հոն գլխաւորաբար կը շեշտուի. «Եւրոպիոյ մեքենաշարժ ճարտարութիւնները մեր ընիկ ձեռագործ արուեստներուն յաջորդեցին: Եւրոպիոյ դրամական առատութիւնն ու հմտական ճարտար կարգադրութիւնները իրենց սեպհականեցին մինչեւ ցարդ մեր ընիկ սեղանաւորաց ըրած շահերը: Եւրոպիոյ լուսաւորեալ երկրագործութիւնը հալածեց ու խափանեց մեր հինաւուրց հողագործութիւնը. արդէն իսկ Եւրոպիոյ երկրագործական շատ բերքեր սկսած են գալ մաքառիլ մեր ընիկ բերքերուն հետ աշխարհի է՛ն պարարտ հողին վրայ եւ է՛ն գեղեցիկ կլիմային տակ...: Ո՞րն է արդեօք դարմանը: Շատ դիւրութեամբ լուծելու խնդիր մըն է ասի: Ի ընէ արհեստաւոր ու երկրագործ ազգ մը՝ իր ձեռքի արուեստն ու երկրագործութիւնը անպիտանալուն համար թշուառութեան մատնուած՝ ուրիշ կերպով չկրնար կանգնիլ, բայց միայն նոր քաղաքականութեան պահանջած արուեստներն ու երկրագործութիւնը ձեռք բերելով: Ան ատեն ահա՛ կրնանք հաւասար զօրութեամբ մրցիլ մեր հողին վրայ օտարոտի ճարտարութեանց, արուեստներու եւ երկրագործութեան հետ

---

[45] Յայտարարութիւն Բարեգործական Ընկերութեան Հայոց, Կ. Պ. 1861, էջ 16:

*եւ մեր բնիկ երկրացի ըլլալուն շնորհիւն ի բաց վանել զանոնք . . . : Ասոր համար ալ ազգին ընելիքը յայտնի կեցած է :* Ազգին աղքատ ու խեղճ մասին զաւակներն առնել ու պզտիկուց անոնց զանազան արհեստներ ու մանաւանդ երկրագործութիւն սորվեցնել գիտութեան ընծայած նոր լոյսերուն համեմատ . . . : *Եթէ կարենանք այս արդիւնքը ձեռք բերել, ազգին նիւթական վիճակն ու բարոյական վիճակը միանգամայն բարելաւած կ'ըլլանք*[46]» :

*Յայտարարութիւնը յետոյ Համազգային ձեռնարկի մ'անհրաժեշտութիւնը մատնանշելով՝ կը շարունակէ . «Ժամանակնիս սուղ եւ աշխատութիւննիս ծանր է : Ասանկ ժամանակներու մէջ եւ ասանկ գործ մ'ի գլուխ հանելու համար ընդհանուր Ազգին բոլոր նիւթական, մտաւորական ու բարոյական զօրութիւնները պէտք է միանան ու ի մի ձուլուին . . . : Այս նպատակով եւ այս սկզբունքներով հաստատուեցաւ ահա* Համազգային Ընկերութիւն մը Բարեգործական Ընկերութիւն Հայոց *անունով : Այս Ընկերութեան հաստատութիւնը բարի գործէ մ'աւելի, Ազգային հարկաւորութիւն մըն էր, անհրաժարելի պէտք մըն էր*[47]» :

*Ժամանակակից բոլոր թերթերը կը յիշեն Ընկերութիւնս :* Մասիս[48] *կը գրէ . «Ու–*

---

[46] *Անդ՝ էջ* 11—14 :
[47] *Յայտարարութիւն, անդ՝ էջ* 14—15 :
[48] 1860 . *Թ* . 452 :

բախ սրտիւ կը ծանուցանենք որ այս օրերս մեր Հոմէական ազգային լուսաւորեալ մասին կողմէն Համազգային Ընկերութիւն մը հաստատելու առաջարկութիւններ եղած է Լուսաւորչական մասին մէկ քանի պատուաւոր ուսումնականացը․․․։ Ընկերութեան նպատակը պիտի ըլլայ երկրագործութեան ու վաճառականութեան դպրոց մը հաստատել եւ գաւառաբնակ Հայոց աղքատ եւ անտեբունչ տղայքներ այս կենցաղօգուտ ուսմունքներուն մէջ կրթել՝ առանց կրօնի խտրութեան։ Ահաւասիկ ազնիւ եւ ճշմարիտ ազգասիրական ձեռնարկութիւն մը՝ որուն ի բոլոր սրտէ յաջողութիւն կը մաղթենք»։

Ընկերութեան հիմնական Կանոնները[49] խմբագրած է յատուկ Յանձնաժողով մը, որուն անդամներն էին․

Սերովբէ Ալիշանեան
Գրիգոր Ալաթօն
Մկրտիչ Ալաթօն
Սերովբէ Թաղւորեան
Դոկտ․ Յովսէփ Ճիշմանեան
Գրիգոր Օտեան[50]։

Բարեգործականի նպատակն է․ «Ազգին որբ, անտէր եւ չքաւոր տղայքը երկրագործութեան եւ արուեստից գրաղեցնելու միջոցներն ի գործ դնել (Յօդուած Ա․)։ Ընկերու-

---

[49] Տե՛ս Ցայտարարութիւն, անդ՝ էջ 21—24։
[50] Անդ՝ էջ 17։ — Մասիս, 1860, Թ․ 456։

թեան անդամ է ամէն հայ, որ տարեկան բաժին մը կը վճարէ· մէկ բաժինն է 1 օսմ· լիրա (Յօդ· Բ· եւ Գ·)։ Ընկերութիւնն ունի Ընդհանուր եւ Տնօրէն ժողով։ Առաջինին կը մասնակցին բոլոր անդամները, իսկ երկրորդը 5 հոգիէ կը բաղկանայ՝ ընտրուած Ընդհանուր ժողովէն։ Ընկերութեան առաջին ատենապետն եղած է Գրիգոր Այաթօն, իսկ Ատենադպիրը՝ Մ· Պէշիկթաշլեան։ Առաջին Տնօրէն ժողովը կազմուած է հետեւեալներէ·

Գրիգոր Այաթօն
Սերովբէ Թագւորեան
Մկրտիչ Միւհէնտիսեան
Դոկտ· Յովսէփ Ճիշմանեան
Գրիգոր Օտեան։

Բարեգործական Ընկերութեան նշանաբանն եղած է «Սէր եւ Միութիւն[51]»։ Յ· Ոսկան Բարեգործականի այս գեղեցիկ սկզբունքը մատնանշելով՝ կը գրէ· «Վերջապէս իմ սիրելի ազգիս հատուածեալ մասերը, յանուն Բարեգործական Ընկերութեան, կը միարանին եւ հայ անուամբ իրար կ՚ողջունեն· փարելի՜ ողջոյն, որով այնչափ տարիներէ ի վեր ժառանգական կարծուած ատելութիւնը կը փարատի[52]։ Իսկ Մասիսի խմբագրութիւնը կ՚աւելցնէ· «Ասանկ ազնիւ խորհրդով եւ

51 Յայտարարութիւն, էջ 27։
52 Մասիս, 1860, Թ· 461։

ճշմարիտ ազգասիրութեան ոգւով հաստատեալ Ընկերութիւն մը՝ որ կրօնական խարութիւնները մէկդի թողլով՝ հայ անունը կրող համազգի եւ համարւին եղբայրներ սիրով իրարու հետ կը միաբանին, ազգին օգտակար ծառայութիւններ ընելու համար, տանկ ընկերութիւն մը՝ ըստ մեզ՝ լուսաւորութեան եւ քաղաքակրթութեան ճամբուն մէջ նոր յառաջադիմութեան քայլափոխ մըն է ազգերնուս համար. ուստի եւ իր հիմնարկութիւնը ուրախութեամբ ողջունելով՝ անխափան յառաջադիմութիւն ու կատարեալ յաջողութիւն կը մաղթենք իրեն[53]»:

1860ի վերջը Ընկերութիւնը ունէր 340 անդամ 446 բաժինով: Ընկերութիւնը մտադրած էր ունենալ 200·000 դրուշի դրամագլուխ մը՝ գործի անցնելու համար[54]: Անդամավճարներէ, նուիրատուութիւններէ ու թատերական հանդէսներէ հաւաքուած դրամներու գումարը, արդէն 1862ին բարձրացած էր 100·000 դրուշի[55]: 1864ին տակաւին գործի անցած չէր Ընկերութիւնը[56]: Փնջիկ տրտնջելով որ Ընկերութիւնը հաշուետուութիւն չ'ըներ հանրութեան առջեւ՝ կ'ըսէ որ «մենք գիտենք թէ ան խափանած է»: Ըստ Արեւելքի[57] Ընկերութիւնը կազմալուծուած է

---

[53] Անդ՝ Թ. 456:
[54] Անդ՝ 1861, Թ. 512—513:
[55] Մասիս, 1862, Թ. 524, 526:
[56] Սէր, 1864, էջ 46:
[57] 1898, Թ. 3853:

Գրիգոր Աղաթօնի մահէն (1868) վերջ։ Թէեւ 1868—1871 Ընկերութիւնը տակաւին կանգուն էր՝ սակայն միշտ կը դանդաղէր գործի անցնելու։ Ցայտնապէս կը տեսնուի որ Ընկերութիւնը, սկիզբէն ի վեր, ձեռնարկց վարչական անձերէ զուրկ եղած է։ Իր ունեցած դրամագլուխէն շատ աւելի նուազով, յաջորդ տարիներու ուրիշ հայ Ընկերութիւններ, աչքառու գործունէութիւն ցոյց տուած են կրթական գետնի վրայ, ինչպէս մասամբ տեսանք եւ դեռ պիտի տեսնենք։

1868 Հոկտ. 25ին Բարեգործականի երկու Գանձապետները — Պետրոս Կիւզէլ եւ Գէորգ Զարդարեան — հետեւեալ հաշիւը կը ներկայացնեն։ Ընկերութիւնը ունի պատրաստ դրամ՝ 1871·01 թրքական լիրա, 18 հատ մուրհակ Crédit Foncier 397·71½ լիրա արժէքով եւ 24 լիրայի դրամարկղ մը։ Որով Ընկերութեան ունեցած դրամարժէքին գումարն է 2293·72½ թրքական լիրա [58]։

1873ին Պոլսոյ Օրագիր կը հարցնէ թէ Ընկերութիւնը մինչեւ ե՞րբ անգործ պիտի մնայ [59]։ 1874ին Ընկերութեան դրամագլուխը բարձրացած էր 4000 թրքական լիրայի, որ կը համապատասխանէ մօտ 400·000 դրուշի, բայց թերթը [60] կը բողոքէ որ «դրամը միմիայն աւելցնելու ջանք մը կայ, առանց օրեւէ բարոյական արդիւնքի»։ Իսկ տակէ

[58] Մասիս, 1868, Թ. 872։
[59] Օրագիր, Թ. 909։
[60] Անդ՝ 1874, Թ. 1389։

վերջ ո՛չ Ընկերութեան անունը կայ ոչ ալ բողոքող: Ու Բարեգործական Ընկերութիւնը հրապարակէն կը քաշուի խոշոր դրամագլուխով մը՝ առանց որեւէ չօշափելի ազգային գործունէութեան:

## Ց· ՕԳՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1861)

1861ին Ս. Փրկչի Հիւանդանոցը տնտեսական անմխիթար վիճակ մ'ունէր: Մոմարանը, որ ամսէ ամիս 6000 դչ. եկամուտ մը կ'ապահովէր՝ անգործածելի դարձած էր. քանի մը կալուածներ անվարձ մնացած էին. հոգաբարձութիւնը քաշուած էր գործէ: Միակ մխիթարական պարագան Տիկնանց Խնամակալութեան Ընկերութիւնն էր, որ իր այցելութիւններով ու զանազան նուիրատւութիւններով բարի սամարացիի դերը կը կատարէր[61]:

Ահա այսպիսի պարագաներու մէջ է որ երեւան կու գայ Օգնական Ընկերութիւնը՝ Հիւանդանոցի նիւթական կարիքները հոգալու համար:

Մեղու[62] կը գրէ որ Ընկերութեան հիմնումի նախաձեռնող անձը մինչ կը ջանար գոյն ու կերպարանք տալ Ընկերութեան՝ ուրիշներ զինքը կը կանխեն: Մասիսի համեմատ[63] Ընկերութիւնը կազմողն է Գալուստ

---

[61] Մասիս, 1861, Թ. 512:
[62] Կ. Պ. 1862, էջ 9—10:
[63] Անդ՝ Թ. 512:

*Տէր-Պօղոսեան, որ Տնտեսական Խորհուրդի անդամ էր։ Վերջինս* 1861 *Նոյ.* 24*ին «Օգնական Ընկերութեան նախնական պայմանները» հրատարակելով* Մասիսի *մէջ*[64] *կ'իմացնէ թէ Ընկերութիւնը «առ այժմ մէկ տարուան համար պիտի չարունակուի»։ Անդամ գրուողը ամսական* 10 *դչ. պիտի վճարէր։ Ընկերութեան գրասենեակը՝ Մայր եկեղեցւոյ մօտ՝ Ազգ. Հիւանդանոցի գրասենեակն էր։ Բերայի Ընկերութիւններու կարգին կը յիշէ զայս Թորգոմեան*[65]*։*

*Ընկերութիւնը կը կազմակերպուի եւ գործի կ'անցնի* 1862 *Յունուար* 1*ին։ Ունի* 12 *Վերատեսուչ Խորհրդական,* 5 *Գանձապետ եւ ուրիշ* 37 *պաշտօնեայ, բոլորը նուիրուած Հիւանդանոցի հոգատարութեան։ «Ձայն Քրիստոսի եւ հրաւէր առ Ազգայինս» խորագրով ջերմ հրաւէր մը կ'ուղղէ ժողովուրդին՝ դիմելով անոր բարի սրտին։ Կը հրատարակէ իր* 15 *Կանոնները*[66]*։*

*«Խաւարեալ»ի եւ «Լուսաւորեալ»ի շրջանն էր սակայն ասիկա։ Սահմանադրական եւ հակասահմանադրական վէճերու աղմուկին մէջ կը ստիպուի Ընկերութիւնը ժամանակէն առաջ քաշուել ասպարէզէն, այն է՝ արդէն* 1862 *Ապրիլ* 15*ին*[67]*։ Բայց Ընկերութեան* 27

---

[64] *Անդ։*

[65] *Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան, Բ.,* էջ 590։

[66] Մասիս, Թ. 517։ — *Բ. Քէչեան, Պատմ. Հիւ. անդ՝* էջ 160—162։

[67] Մասիս, Թ. 531։ — Միղու, էջ 62։ — Մէճմ. Հավ. 1863, Թ. 491։

անդամները մինչեւ 1863 Յունուար կը շարունակեն Հին անդանոցի մատակարարութեան գործը[68]:

Մասիս[69] դովեստով կը խօսի Ընկերութեան գործին վրայ եւ կու տայ անոր 13 ամսուան հաշուեցոյցը:

## 9. ԱՐԵՒԵԼԵԱՆ ԹԱՏՐՈՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1861)

Մասիս[70] կը յիշէ Ընկերութիւնս իր իսկական անունով. «Արեւելեան Թատրոնի Ընկերութիւն», բայց յաճախ կոչուած է պարզապէս «Արեւելեան Ընկերութիւն»: Յիշեալ թերթը Ընկերութեանս մասին առաջին ծանուցումը 1861 Դեկտ. 13ին ընելով՝ կը գրէ. «Բերկրութեամբ կը ծանուցանենք թէ հայազգի ուսումնական երիտասարդներէ կազմուած Թատերական Ընկերութիւն մը Պէյօղլուի Քաֆէ Օրիանթալ ըսուած քազինօն թատրոնի փոխելով՝ վաղը Դեկտ. 14 հինգշաբթի օրէն սկսեալ շաբաթը երեք գիշեր եւրոպական ընտիր թատերախաղեր պիտի ներկայացնէ հայերէն լեզուաւ: Վաղը իրիկուան ներկայացուելիք թատերախաղերն են՝ «Երկու յիմարներ» թատերգութիւն (տրամ) երեք արարուածով, եւ «Անծանօթն» անուն զաւեշտը (ֆարսա): Թատրոնին տնօրէնն է արգոյ Պ. Ռուբէն Կարապետեան եւ երաժշտու-

---

[68] Պատմ. Հին., անդ՝ էջ 165:
[69] Թ. 577:
[70] Թ. 516:

թեան առաջնորդն է Պ. Ֆօւքինի խալացի վարպետը[71]»։

Ընկերութեանս հիմնումի ճշգրիտ թուականը չենք կրցած ստուգել։ Որքան կ'երեւայ՝ ժամանակակից թերթերը չեն աւանդած զայն։ Այն ստոյգ է որ Արեւելեան Թատրոնի խումբը կազմուած է Օրթագիւղի եւ Խասգիւղի Թատերական խումբերու միացումով, որ տեղի ունեցած է 1860 Փետր. 26ին՝ Խասգիւղի խումբին Բերա Նաումի Թատրոնին մէջ տուած ներկայացումէն «քիչ ետքը[72]»։ Հաւանական կը թուի 1861ի ամառը կամ աշնան տեղի ունեցած Ընկերութեան կազմութիւնը։

Ա. Ալպօյաճեան կը յիշէ Ընկերութեանս կազմութեան նախաձեռնողները. Առաքել Ալթուն Տիւրրի Եղբարք, Յարութիւն Մերճէմզուլի, Աղեքսանդր Մերճէմզուլի, Գրիգոր Խուրասաճեան եւ Գր. Ֆրէնկեան[73]։

Առաջին անդամներէն մին եղած է նաեւ Պ. Նորատունկեան, որ 1861 Դեկտ.ի սկիզբը կը հրաժարի անդամակցութենէ[74]։

Արեւելեան Թատրոնի Ընկերութիւնը լուծուած է 1863 Ապրիլին[75], բայց կը մնայ թատերախումբը, բաժնուելով մասերու։ Ասոնցմէ մէկ մասը կը կազմէ «Հայ Դերասանական Ընկերութիւն»ը։

---

71 Մասիս, Թ. 514։
72 Արեւելք, 1898, Թ. 3791։
73 Գաղութ. Տարեգ., Բ., էջ 82։
74 Մասիս, անդ՝ Թ. 516։
75 Ընդարձակ Տարեց., 1927, էջ 170։

## 10· ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՅԱՐՔՈՒՆԻ ԲԺՇԿԱԿԱՆ ԴՊՐՈՑԻ (1861)

*Ընկերութիւնս յիշուած է Ա. Ալպօյաճեանի քով*[76], *առանց մանրամասնութեան. Հին յիշատակութեան մը չենք հանդիպած: Արքունի բժշկական դպրոցը՝ Կալաթա Սարայ՝ հիմնուած է Սուլթան Մահմուտ Բ.էն* 1839 *Մարտ* 14*ին, միայն մահմետական տղոց համար:* 1841*ին սկիզբը Սուլթան Ազիզ թոյլ կու տայ որ «րայաներու» — հայ, յոյն, հրեայ — տղաք ալ կարենան մուտք ունենալ այդ վարժարանը*[77]: *Հայ աշակերտներէն* 3 *հոգի — Ստեփան Ասլանեան, Նիկողայոս Արքիլոֆ եւ Գրիգոր Եանովիչեան —* 1848*ին արդէն բժշկական վկայութիւն կը ստանան*[78]: 1845*էն սկսած հայ բժիշկներ ալ դասախօսած են հոն*[79]:

## 11· ԽՆԱՅՈՂԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

*Ընկերութեան Յանձնաժողովի Ատենադպիր՝ Հ. Մ. Ալաճաճեան՝* 1862 *Ապրիլ* 17*ին Բերայէն ծանուցում մը կը հրատարակէ* Մասիսի *մէջ*[80], *որմէ կը տեղեկանանք Ընկերութեանս գոյութեան մասին: Ծանուցումը կ՚ըսէ.* «Խնայողական Ընկերութեան *կանո–*

---

[76] *Անդ՝ էջ* 83:
[77] Արշ. Արար. 1840, *թ.* 8:
[78] *Անդ՝* 1848, *թ.* 317:
[79] *Դոկտ. Վ. Թորգոմեան, անդ՝ էջ* 581—582:
[80] 1862, *թ.* 532:

նադրութիւն մը խմբագրելոյ համար կազմուած Յանձնաժողովը կատարած ըլլալով իրեն եղած յանձնարարութիւնը, ընդհանուր ժողով կը հրաւիրէ յառաջիկայ Կիւրակէ՝ որ է Ապրիլ 22 ի ժամ 3՝ ի Նարեկեան վարժարան Բերայի — յայտնելով նաեւ որ ամէն փափաքողք ազատ են ներկայ գտնուիլ յիշեալ ընդհանուր ժողովյն»:

## 12. ՊԱՀԱՊԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

Ս. Փրկչի Ազգ. Հիւանդանոցի պատսպարեալներու թշուառ վիճակը բարուոքելու համար կազմուած Օգնական Ընկերութիւնը ունեցած էր անհամակիրներ ալ, որոնք տարբեր տեսակէտի եւ գաղափարի տէր ըլլալով՝ հարկ համարած էին կազմելու ուրիշ Ընկերութիւն մը, որ հսկէր Օգնական Ընկերութեան գործերուն վրայ: Այս երկրորդ Ընկերութիւնը կոչուեցաւ Պահապան Ընկերութիւն, որ սակայն առանց գրական գործ մ'արտադրելու՝ օգտակար եղողին ալ արգելք եղած էր գործելու:

Պահապան Ընկերութեան վերատեսչութիւնը 45 անդամէ կը բաղկանար, ինչը թաղերէ հինգական հոգի ընտրուած ըլլալով[81]:

Ընկերութեան գոյութիւնը տարի մ'իսկ չտեւած՝ լուծուած է[82]:

---

[81] Պատմ. Ս. Փ. Հիւ., անդ՝ էջ 162:
[82] Հմմտ. Մեղու,‧ 1862, էջ 81—83: — Մասիս, 1862, Թ. 531:

1857 Սեպտեմբերին Արիստակէս Յովհաննէսեան եւ Գաբրիէլ Երանեան «ազգիս երկու քաջահմուտ եւ բազմարդիւն երաժիշտները[83]», կը հրատարակեն «Քնար Արեւելեան» երաժշտական ամսաթերթը, նուիրուած թուրք, պարսիկ եւ արաբ երաժշտութեան՝ եւրոպական ձայնագրութեամբ: Մասիս փափաք կը յայտնէ որ հայկական երգեր ալ հրատարակեն եւրոպական ձայնագրութեամբ՝ Եւրոպացւոց ծանօթացնելու համար հայ երգերը: Յովհաննէսեանի մահէն վերջ թերթին անունը եւ ծրագիրը կը փոխուի:

1861 Սեպտ. 1էն սկսած կը հրատարակուի «Քնար Հայկական» անունով, խմբագրութեամբ Գաբրիէլ Յ. Երանեանի եւ Նիկողայոս Մ. Թաշճեանի:

Արդ, 1862ին այդ թերթին նպաստելու եւ հրատարակութիւնը ապահովելու համար՝ կը հիմնուի Երաժշտական Ընկերութիւնը: Ընկերութեան հիմնադիր կ'ըսուի Գաբրիէլ Երանեան[84]: Նիկողայոսի մահէն վերջ իր տեղը կ'անցնի Տիգրան Չուհաճեան, իբրեւ հեղինակ երաժշտական մասին:

1862 Ապրիլ 4ին Ընկերութեան մէկ ծանուցումը կը հրատարակէ Մասիս[85], հետեւեալ բառերով.

---

[83] Մասիս, 1857, Թ. 297:
[84] Անդ՝ 1862, Թ. 558:
[85] Թ. 530:

«Երաժշտութիւնը Ազգիս մէջ ձայնագրութեամբ զարգացնելու նպատակաւ նոր Ընկերութիւն մը կազմուեցաւ մեծապատիւ անձանց եւ ազգասէր ուսումնականաց խնամօքը. ուստի յարգի բաժանորդաց կը ծանուցուի որ Քնար Հայկականին Բ. շրջանը պիտի հրատարակուի յառաջիկայ Ապրիլ ամսոյս մէջ ամենայն բարեկարգութեամբ, եւ Երաժշտական Ընկերութեան կանոններն ալ լրագրաց միջոցաւ հասարակութեան պիտի հաղորդուին.

Տիգրան Զուհաճեան

Գաբրիէլ Երանեան»:

Ընկերութեան ծրագիրն էր «Ազգային երգեր, թատերական նուագներ ու պարերգեր հրատարակել. ընտիր նուագածուներ յառաջ բերել եւ երաժշտութեան ճաշակը առհասարակ բոլոր Հայոց մէջ ծաւալել[86]»:

Համազգային էր Ընկերութիւնը: Անդամավճարը՝ «Քնար Հայկական»ի բաժանորդագինը՝ ամսական 60 դրուշ:

Ընկերութեան հիմնադիրներն ու թերթին պաշտպաններն եղած են խումբ մը 60ական թուականներու հայ մտաւորական ընտրանիէն, ինչպէս կը տեսնուի իրենց անուանացանկէն.

Գրիգոր Աղաթօն
Գրիգոր Օտեան
Գրիգոր Խուրտաճեան

[86] Անդ՝ Թ. 534:

Ճանիկ Պէյլիքճեան
Մարտիրոս Մխհէնտիսեան
Յակոբ Քէօչէեան
Յակոբ Պուրունսուզեան
Յարութիւն Փափազեան
Յոհաննէս Կէլկէլեան
Յովակիմ Նէմրուզեան
Նահապետ Ռուսինեան
Պօղոս Քէօչէեան
Սերովբէ Թագւորեան
Փիլիպպոս Կէլկէլեան[87]:

Հրատարակուելիք նիւթերու քննութեան ու ընտրութեան համար Ընկերութիւնը իր մէջէն Յանձնաժողով մը կազմած էր, որուն անդամներն էին.

Թորոս Նազարեան
Մատթէոս Մամուրեան
Մկրտիչ Պէշիկթաշլեան
Յակոբ Ոսկանեան
Սրապ Հէքիմեան
Ստեփան Փափազեան[88]:

Ընկերութեան կանոնագրութիւնը չենք տեսած: Կը կարծենք թէ չէ հրատարա- կուած: Դժբախտաբար ո՛չ Ընկերութիւնը, ո՛չ թերթը կրցած է տեւել միայն գոնէ քանի մը տարի: 1863ին երկուքն ալ դադրած են: Ընկերութիւնը 1888ին կը վերակազմուի ձեւափոխուած անունի տակ:

---

[87] Անդ:
[88] Անդ: — Տե՛ս նաեւ Ծաղիկ, 1903, էջ 81:

## 14. ՀԱՅ ԴԵՐԱՍԱՆԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863)

*Ընկերութեանս անունը «Հայ* Երիտասարդաց *Ընկերութիւն» կոչուած է Ալպօյաճեանի քով*[89], *որ կը կարծենք թէ ճիշդ չէ։ Ընկերութիւնս ժամանակակիցներէն մերթ «Հայ* Դերասանաց *Ընկերութիւն» կոչուած է*[90], *մերթ «Հայ* Դերասանական *Ընկերութիւն*[91]*» եւ մերթ սկզբնատառերով գրուած «Հ. Դ. Ընկերութիւն*[92]*։ Առաջին ձեւով (Հայ Դերասանաց Ընկերութիւն) կը կոչուի նաեւ Հրանտ Ասատուրէն*[93]*։*

*Ընկերութիւնս կազմուած է Արեւելեան Թատրոնի Ընկերութեան լուծուելէն վերջ, հաւանօրէն արդէն* 1863*ին։ Հիմնադիրներն էն, Պետրոս Մաղաքեան, Յակոբ Վարդովեան, Ստեփան Պէնկլեան, Օր. Եպրոս Կէօմրիւքճեան*[94]*։ Ընկերութեան առաջին ներկայացումը տեղի ունեցած կ՚ըսուի* 1864 *Փետր.* 8*ին։ Անոր եռանդուն գործունէութեան կը հանդիպինք սակայն* 1865*ի ձմեռուան ընթացքին*[95]*։ Գործունեայ է նաեւ* 1867—1869[96]*։*

---

[89] *Գաղութ. Տարեգ., Բ., էջ* 83։
[90] Մասիս, 1865, *Թ.* 681։
[91] Մասիս *Փոքր*, 1865, *Թ.* 37։ — Մէճմ. Հավ., 1865, *Թ.* 623։
[92] Մասիս, 1865, *Թ.* 682. *նոյն՝* 1867, *Թ.* 829։
[93] *Ընդ. Տարեց.* 1927, *էջ* 171։
[94] *Անդ՝ էջ* 181, 182։
[95] Մասիս, 1865, *Թ.* 681, 682 *եւն։*
[96] Մասիս, *Թ.* 782։ — *Ընդ. Տարեց., անդ՝ էջ* 183։

### 15. ԱՂՔԱՏԱՍԻՐԱՑ ԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ (1864)

Հայ Կաթողիկէ Համայնքի հիմնած բաժնետիրական այս Ընկերութիւնը սկիզբը կոչուած է «Աղքատասիրաց Եղբայրութիւն[97]», բայց չորս տարի յետոյ կը կոչուի «Աղքատասիրաց Ընկերութիւն[98]»:

Հ. Սահակ Վ. Սրապեան (Ս. Յակոբ Ազգ. Հիւ. Վիեննա 1915, էջ 130) կ'անուանէ զայն «Աղքատասէր Եղբայրութիւն»:

Ընկերութեան նպատակն եղած է որ եւ աղքատ հայ տղոց արհեստ մը սորվեցնել, որպէս զի թէ՛ իրենք ինքնապահ ըլլան, եւ թէ իրենց ընտանիքը ապրեցնեն:

1864 Յուլիսին Ընկերութիւնը կօշկակարութեան գործատեղի մը կը բանայ Պոլսոյ Պուլէզգափուի Եապըճը փողոց թիւ 2ի մէջ, ուր վարպետի մը հսկողութեան տակ քանի մը աղքատ տղաք կօշկակարութիւն կը սորվին[99]:

Երկու տարի լաւ կերպով կը շարունակուի գործը, բայց բաժնետէրերէն ոմանք իրենց բաժինը վճարած չըլլալով՝ աշխատանոցը գոցուելու վտանգի մէջ կ'իյնայ: Բարերար ձեռքեր սակայն չեն թողուր որ այս օգտակար գործը խափանուի: Որով կօշկակարութեան արհեստանոցի աշխատանքները մինչեւ 1868 կը շարունակուին: Մէճմուայը

---

97 Մէճմ. Հայ., 1864, Թ. 558, 592:
98 Անդ՝ 1868, Թ. 728:
99 Անդ՝ Թ. 558:

Հավատիսի *խմբագրութիւնը ուրախութեամբ կը գրէ որ տղաք այնքան յառաջացած են իրենց արհեստին մէջ որ ոչ միայն ինքնապահ եղած՝ իրենց ընտանիքներն ալ կ'ապրեցնեն, այլ եւ իրենցմէ ոմանք, իբրեւ վարպետներ, ուրիշներու ալ կը սորվեցնեն նոյն արհեստը*[100]*: Եւ կ'աւելցնէ թէ ասիկա՝ մէկ անգամ եղած աղքատի ողորմութիւն մը չէ, այլ միայուն օգնութիւն մըն է աղքատներուն:*

1868*ի սկիզբը Ընկերութիւնը մասնախումբի մը միջոցաւ հին անդամներու յետնեալ բաժինները գանձելէ զատ՝ նոր անդամներ ալ կը գտնէ եւ Ընդհանուր ժողովի մը մէջ նոր վարչական մարմին կ'ընտրէ սա յաջորդներէն.*

*Յակոբ Թընկըր (Նախագահ)*
*Լորէնցիոս Ագամեան (Գանձապահ)*
*Գէորգ Այտընեան (Ատենադպիր)*
*Մկրտիչ Պահատրեան (Փոխ–Ատենադպիր)*
*Յովսէփ Ագարեան անդամ*
*Անտոն Հանըմեան անդամ*
*Մարկոս Գարկայեան անդամ*[101]*:*

*Սովորութիւն եղած էր ամէն ամսոյ առաջին Կիրակին Ս. Յակոբայ մատրան մէջ պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն մատուցանել Աղքատասիրաց Եղբայրութեան ննջեցելոց համար (Հ. Ս. Վ. Սրապեան, անդ՝ էջ* 131):

---

[100] *Անդ՝ Թ.* 728:
[101] *Անդ:*

## 16. ՈՒՇՏՈՒՆԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

1864 *Ապրիլ* 11 *թուով կը գրէ Պոլսոյ* Մասիս *թերթը*[1]. *«Երկրութեամբ սրտի կը լսենք թէ Բերայի մէջ* Ուշտունեաց *անունով* Ընկերութիւն *մը հաստատուեր է ամսոյս սկիզբէն*, որուն նպատակն է առեւտրական գործողութիւններ ընել եւ միանգամայն աղքատ հասարակութեան համար ընթերցարան մ'ունենալ եւ Ընկերութեան տարեկան շահէն ալ թաղին աղքատաց բաժին մը հանել : *Այս քանի մը օգտակարութիւններն ի միասին ունեցող նորահաստատ Ընկերութեան մեր կողմանէ ուրիշ ընելիք չի մնար, բայց եթէ բարեմաղթել որ իրենց առաջադրեալ նպատակին յաջողութեամբ հասնին»* :

*Ընկերութեանս անունը անծանօթ եղած է Արփօյաճեանի*[2] :

## 17. ԱԶԳԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865)

*Բերայի բնիկներն ու պանդուխտները* 1865 *Յունիսին կազմած են* Ազգասիրական Ընկերութիւնը, *նպատակ ունենալով* 1. *Հանգուցեալ Իգնատիոս վարժապետի Պախչէլի անունով պանդոկին մէջ բացած պանդուխտներու գիշերային դպրոցին ուսուցիչի ամսականը, դպրոցին վարձքը, լոյսի եւ գրենական ծախքերը վճարելու*, 2. *անտէրունչ եւ աղքատ աշակերտներու հիւանդութեան պա–*

---

1 Թ. 635:
2 Անդ՝ Բ., էջ 86:

բաղայքին բժշկական ծախքը հոգալու, 3· կարօտ աշակերտներու տարեկան նուէր մը, օրինակ՝ զգեստ, նուիրելու համար։ Ընկերութեան կենդրոնատեղին էր Ջուխուր կամ Թառլապաշի ճատտէսի, թիւ 134[3]։

Ինչպէս կը տեսնուի՝ Ընկերութիւնը «Անձնուէր»ի սկզբունքն ունէր։

1867 Յուլիսին Պոլսոյ «Փունջ» (Թ. 180) կը գրէ որ Ընկերութիւնը ութ ամիսէ ի վեր դադրած ըլլալով՝ Յուլիս 1էն սկսած է գործել Օգսէն Ճահանեանի, Ստեփան Փափազեանի, Նշան Օտեանի, Սարգիս Պօշնագեանի եւ Մկրտիչ Խամէրեանի դրամական օգնութեամբ, որոնք խոստացեր են ամսէ ամիս մէկմէկ մէճիտ շնորհել։

### 18· ՆՈՐԱԿԱԶՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1866)

Թատերական Ընկերութիւն մըն է Նորակազմ Ընկերութիւնը, որ կազմուած կ'երեւայ 1866ի առաջին ամիսներուն։ Հիմնադիրներն են. Յ. Աճէմեան, Տիկ. Արուսեակ Պէզիրճեան, Տիկ. Ծաղիկեան, Սարգիս Միրիճանեան եւ ուրիշներ[4]։ «Նորակազմ»ի թատերախումբը իր առաջին ներկայացումը կու տայ 1866 Մարտ 17ին, Նաումի թատրոնին մէջ, ներկայացնելով «Յուդիթ եւ Հողոփեռնէս[5]»։

Ընկերութիւնը կը գործէ 1866—1868։

---

[3] Մասիս, 1865, Թ. 706։ — Մասիս Փոքր, 1865, Թ. 27։

[4] Ընդ. Տարեց., 1927, էջ 182։

[5] Մասիս, 1866, Թ. 731։

## 19. ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1866)

1866 *Հոկտեմբերին ծրագրուած է Հիմնել* Հայկական Ընկերութիւնը, *նպատակ ունենալով Բերայի մէջ գիչերօթիկ վարժարան մը բանալ: Ընկերութեան հիմնադիրները իրենց կողմէ «առժամանակեայ կերպիւ» Ընկերութեան Նախագահ կ'ընտրեն Դոկտ. Սերվիչէն, իսկ Գանձապահ՝ Գէորգ Պէյ Երամեան*[6]*: Ընկերութիւնը բաժանորդական ըլլալով՝ կը բաղկանար* 30 *բաժինէ, իւրաքանչիւրը՝* 50 *թրքական լիրա, որով գումարը պիտի ըլլար* 1500 *լիրա, որ պայման էր դպրոցի բացումին համար: Նոյեմբերի սկիզբը* 8 *բաժին գրուելէ վերջ՝ ա՛լ ոչ ոք կը գրուի: Որով Ընկերութիւնը այն ինչ ծնած՝ մեռած էր:*

## 20. ԱՍԻԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1866)

Ասիական Ընկերութիւնը *«Արեւելեան դերասանական խմբին աւերակաց բեկորներուն վրայ բարձրացած*[7]*» թատերական Ընկերութիւն մըն է, որուն խումբը արդէն* 1866*ի ձմեռուան շրջանէն կը սկսի իր ներկայացումներն*[8] *եւ* 1867—1869 *մերթ Նաումի եւ մերթ Օսմանիէ թատրոնի բեմին վրայ կը փայլի*[9]*:*

[6] *Անդ՝ թ.* 769:
[7] Մասիս, 1868, *թ.* 868:
[8] *Անդ՝* 1867, *թ.* 820:
[9] *Տե՛ս անդ՝ թ.* 787, 789. 1868, *թ.* 833, 840. 1869, *թ.* 904:

## 21· ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1866)

*Ընկերութիւնս հաստատուած կ'ըսուի նախաձեռնութեամբ Երուսաղէմի միաբան Յակոբ Վ. Զիլինկիրեանի*[10]*, որ սակայն Ընկերութեան հիմնուելէն վերջն է որ խըն-դրած է անդամագրուիլ*[11]*:*

*Ընկերութեան նպատակն եղած է Լուսա-ւորչական եկեղեցւոյ կարգուսարքին մէջ փոփոխութիւններ մոցնել եւ նկատուած է բողոքականամիտ եւ ապանդաւոր*[12]*: Իր կեն-դրոնը կը գտնուէր Բերայի մէկ անկիւնը*[13]*, իսկ Յակոբ Վ. 1867ին բանտարկուած էր Բ. Դուռը՝ իր մէկ պարտքին համար*[14]*:*

*Ընկերութիւնը 1868ին կը հրատարակէ 18 էջով «Յայտարարութիւն Լուսաւորչեան Ընկերութեան» անունով գրքոյկ մը*[15]*: Իսկ Գործադիր Ժողովի անդամները — Ա. Ա. եւ Մ. Ռ. Փ. — կ'իմացնեն թէ Զիլինկիրեան իրենց Ընկերութենէն վտարուած է*[16]*:*

## 22. ԿԱՄԱՒՈՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

*Թատերական է* Կամաւոր Ընկերու-թիւնը, *հիմնուած 1869ին: Իր խումբին ա-ռաջին ներկայացումը տեղի ունեցած է* 1869 *Դեկտ. 29ին*[17]*: Անդամներէն կը յիշուին.*

[10] *Ա. Ալպօյաճեան, Գաղութ. Տարեգ. Բ.,* *էջ* 86:
[11] Մասիս, *Փոքր*, 1869, *Թ.* 357:
[12] Մասիս, 1868, *Թ.* 854:
[13] *Անդ՝ Թ.* 855:
[14] *Անդ՝ Թ.* 806:
[15] *Կ. Պ.*, 1868:
[16] Մասիս, *Փոքր*, *Թ.* 357:
[17] Օրագիր, 1869, *Թ.* 92:

*Պ. Մաղաքեան, Գ. Լճեցի, Պ. Ադամեան, Ջերաչի, Տիկ. Ա. Պէզիրճեան, իսկ խումբը «փոքր ու խոնարհ անուամբ կ'երեւի, բայց մեծ ու փառաւոր կը գործէ*[18]»:

*Գործած է գլխաւորաբար* 1870*ին*[19]:

23. ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Բերայի մէջ հաստատուած է*[20] *այն* Դպրոցասիրաց Ընկերութիւնը, *որ* 1870 *Մայիս* 1*ին Կալաթա Սարայ կայսերական Լիսէի հայ ուսանողներէն հիմնուած է*[21], *նախաձեռնութեամբ Կարապետ Սվաճեանի*[22]: *Իր ձգտումն էր «Հայաստանի վայրերու մէջ վարժարաններ հաստատել*[23]»: 1874*ին Բան-կալթիի մէջ գումարած ընդհանուր ժողովի մը մէջ փոփոխութեան կ'ենթարկէ իր կա-նոնները*[24]:

*Մեզի կը թուի թէ այս Ընկերութեան սկզբնական նպատակը եղած է, Հանէսեանի բառերին պէս*[25], նիւթապէս օգնել կարօտ դպրոցներու եւ կիրակնօրեայ դասախօսու-թիւններ սարքել, *իսկ* 1874*ին կանոններու փոփոխութիւններ ընելով՝ նպատակի այլ փոփոխութիւն տեղի ունեցած է, այսինքն՝*

---

[18] *Անդ, Թ.* 99:
[19] Մամուլ, 1870, *էջ* 550, 559, Մասիս, 1870, *Թ.* 956:
[20] *Մարտ. Հանէսեան, անդ՝ էջ* 115:
[21] Մասիս, 1879, *Թ.* 2431:
[22] *Հանէսեան, անդ*:
[23] Արեւելք, *Թ.* 3853:
[24] Ասիա, *Կ. Պ.* 1874, *Թ.* 28:
[25] *Անդ՝ էջ* 135:

Արեւելքի՝ *վերը ըսածին պէս՝* գաւառներու մէջ վարժարաններ բանալ: *Ըստ Ալպօյաճեանի*[26] 1877*ին «Արարատեան»ի օրինակին հետեւելով է որ ընկերութիւնը կ՚որոշէ Հայաստանի մէջ վարժարաններ բանալ, առաջին նախակրթարանը բանալով Մուշի Լինճ գիւղի մէջ եւ յետոյ ալ Մուշի եւ Ալաշկերտի շրջաններուն մէջ՝ Մկրտիչ Սարեանի կրթական տեսչութեամբ:*

*«Դպրոցասիրաց»ը* 1878*ին Արեւելեան Ընկերութեան հետ միանալով՝ կը կազմուի* Դպրոցասիրաց-Արեւելեան Ընկերութիւնը[27]:

## 24. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870?)

*Բերայի* Ուսումնասիրաց Ընկերութիւնը *հաստատուած է նախաձեռնութեամբ Միհրան Սվաճեանի*[28], *բայց հիմնումի տարին եւ մանրամասնութիւնները կը պակսին, թէեւ Հանէսեան անորոշ կերպով «70ական շրջանին» կ՚ըսէ:*

## 25. ՎԱՐԴՈՒՀԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

*Հայ կաթողիկէ երիտասարդներ* 1871*ի գարնան կը հիմնեն* Վարդուհեան Ընկերութիւնը: *Հիմնարկութեան «գործակից եղած է Տիւզեան մեծահամբաւ գերդաստանը իր վաղածանօթ վեհանձնութեամբն ու ազգա-*

---

26 *Գալ. Տարեգ. Բ., էջ* 88:
27 Մասիս, 1879, Թ. 1431:
28 *Մարտ. Հանէսեան, անդ՝ էջ* 135:

*սիրութեամբը*[29]»: *Ընկերութեան նպատակն եղած է Բերայի մէջ «ազգային օրիորդաց ցերեկօթիկ վարժարան մը ունենալ*[30]»: «*...այնպիսի դպրոց մը... ուր սկզբունքն եւ տալիք կրթութիւնը համեմատ ըլլան ազգիս արդի կացութեանը*» (Մասիս, 1872, *թ*. 1265)։

*Ընկերութեան առժամանակեայ Ատենապետն է Աննոն Ս. Պիւքմէճեան, իսկ Ատենադպիրը՝ Յարութիւն Ե. Պօյեան: Կանոնագիրը Երկոտասանից ժողովէն վաւերացուելէ վերջ շատ անդամագրուող եղած է*[31]: *Դժբախտաբար չկրցանք ձեռք բերել Ընկերութեան կանոնագիրէն օրինակ մը, որ արձանագրութեանց տոմսակներու ետեւն անդամ գրուած է եղեր*[32]: *Ամսական անդամավճարն է* 5 *դչ. եւ մուտքի՝* 1 *մէճիտ* (Մասիս, *թ*. 1265):

1872*ին ընկերութիւնը ունէր* 130 *անդամ եւ բաւական խոշոր գումար մը*[33]: *Իր գոյութիւնը պահած է մինչեւ* 1880, *բայց աղջկանց վարժարան մը բացած ըլլալու մասին արձանագրութեան մը չենք հանդիպիր*: 1880 *Դեկտ*. 30*ին Պօլսոյ* Մասիս *կը գրէ*[34]. «*Կանխաւ եղած հրաւիրանաց վրայ, Կիրակի օրն* (*Դեկտ*. 29) *Համազգեաց Ընկերութեան*

[29] Մամուլ, Կ. Պ., 1871, էջ 339—340:
[30] Մէճմ. Հավ., 1871, *թ*. 1080:
[31] *Անդ*՝ *թ*. 948:
[32] *Անդ*՝ *թ*. 1080:
[33] *Անդ*՝ *թ*. 1081:
[34] *թ*. 2785:

*վարժարանին մէջ* Վարդուհեան Ընկերութիւնն ընդհանուր ժողով կազմեր ու որոշեր է՝ իւր դրամագլուխն Աղքատասիրաց Ընկերութեան պարգեւել, *ա՛յն պայմանաւ որ յիշեալ Ընկերութիւնը պաշտօնապէս յայտարարէ թէ իւր նպատակը միմիայն Հայ աղքատ աղջկանց դաստիարակութեան նպաստել է անխտիր կերպիւ»*: Աղքատասիրաց Ընկերութիւնը *Հայ Կաթ. Համայնքէն կազմուած է 1875ին: Ի նպաստ Վարդուհեան Ընկերութեան տրուելիք պարահանդէսի մը առթիւ Գ. Այպուդյաճեան կ'ըսէ որ Ընկերութիւնը* համազգային *է եւ «Համազգեաց»ի վերականգնումը*: (Մասիս, 1873, *Թ*. 1349):

26. ԽՐԱԽՈՅՍ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873)

*Ընկերութիւնս յիշուած է Ա. Ալպօյաճեանէ*[35], *որ կը գրէ. «Խրախոյս Ընկերութիւն Ազապեան Վարժարանի կազմուած է պաշտպանելու համար Փանոսեանը՝ Օգսէն Խօճասարեանի յարձակումներուն դէմ. եւ վարժարանին յառաջդիմութիւնը ապահովելու համար»: Ազապեան աղջկանց վարժարանը Սամաթիոյ մէջ* 1869 *Յունուարին բացուած՝ յետոյ փոխադրուած էր Բերա, բայց չէ կրցած պահել իր գոյութիւնը երկար ատեն: Հիմնադիրն էր Կարապետ Փանոսեան:*

---

[35] *Պատմ. Տարեգ. Բ., էջ* 90:

## 27. ՀԱՄԱԿԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

*Ըստ Հանէսեանի*[36] *Ընկերութիւնս հիմ-նուած է 70ական թուականներուն Միհրան* Քէաթիպեանի *ձեռօք: Պոլսոյ* Օրագիրը *կը ճշդէ թէ՛ ժամանակը եւ թէ՛ հիմնադիրը: Միհրան Ս.* Քիթապճեան *եւ Մարտիրոս Յ. Տէօքմէճեան* 1874 *Հոկտ.* 24*ին կը գրեն* Օրագրին[37]. «*Տեսնելով որ Բերայի թաղին Հայ երիտասարդութիւնը չունենալով իրեն համար միութեան վայր մը, միշտ ցրուեալ լինելով... իւր կենաց ամէնէն թանկագին շրջանը... պարապ տեղը սպառելով... Ուստի ի նկատի ունենալով զայս ամէնը, խումբ մը անփորձ երիտասարդներ որոշեցինք ընկերութիւն մը կազմել եւ յաջողեցանք... Ընկերութիւն մը կազմեցինք Հա-* մակամ *անուամբ, որու նպատակն է գիրքերու թանգարան մ'ունենալ, ուր պիտի գտնուին զանազան տեսակ գրքեր. վերջապէս երիտասարդութեան իբր վայր միութեան որոշեցինք Բերա, Թարլապաշի* 42 *թիւ գրօ-սարանը... Հայ երիտասարդութեան միտքն ու հոգին բարոյապէս զարգացնող վայր մի... Համակամ Ընկերութեան ազգասէր անդամք փափաքած եւ միանգամայն որոշած են ամէն Կիրակէ... դասախօսութեան պարապիլ, ուր պիտի ընդունին ուսման փափաք ունեցող ազգայինք, մանաւանդ պանդուխտ եղբարք...* Ընկերութեան հիմնարկութենէն,

---

[36] *Մարտ. Հանէսեան, անդ՝ էջ* 135:
[37] 1874, *Թ.* 1375:

այսինքն՝ 1874 Մարտ 31 է ի վեր *անդամակցաց թիւը, որ 13 է, տակաւին 14 եղած չէ, արդարեւ աւի մեծ նախատինք մ'է Բերացոց...»:*

*Ընկերութիւնը* 1875 *Յունուար* 5*ին վիճակահանութիւն մը կը սարքէ, իսկ* 1875 *Փետր.* 19*ին ալ Ռ. Սէտէֆճեանի հեղինակած «Մեծն Վարդան Մամիկոնեան, փրկիչ Հայրենեաց» ողբերգութիւնը կը ներկայացուի Արեւելեան Թատրոնի մէջ՝ ի նպաստ «Համակամ»ի*[38]:

## 28. ՀՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

Մասիսի *մէջ* (1875, *Թ.* 1692) *տրուած ծանուցումէ մը կ'իմանանք թէ* 1874*ի աշնան Բերայի մէջ հիմնուած է* Հնասիրաց Ընկերութիւն *մը՝ որուն անդամ գրուիլ ուզողը պէտք էր դիմել Ապտուլլահեաններու Գործարանը: Ընկերութիւնը արդիւնաւոր չէ եղած* (*հմմտ.* Մասիս, 1877, *Թ.* 2066):

## 29. ԲԱՐԵՊԱՇՏԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ Ի ՆՊԱՍՏ ԳԱՒԱՌԱՑ ԿԱԹՈՂԻԿԷ ՀԱՅՈՑ (1875)

*Հիմնուած է Հայ Կաթողիկէ Հոգեւոր Ժողովի կողմէ* 1875 *Յունուար* 27*ին՝ նպատակ ունենալով, ինչպէս անունէն յայտնի է, «գաւառաց պիտոյից դիւրութիւն մը մատուցանել»*[39]:

---

[38] Օրագիր, *անդ՝ Թ.* 1402: — Մամուլ, 1875, *էջ* 326:

[39] *Կանոնք Բարեպաշտական Ընկերութեան, Կ. Պ.*, 1875, *էջ* 3:

Ընկերութեան կենդրոնն էր Ղալաթիա, ամսական բաժնեգինը 1 դահեկան, իսկ վարչական մարմինը կ՚ընտրէր Հոգեւոր ժողովը: Իր կանոնները, Կաթողիկոս–Պատրիարքէ հաստատուելէ վերջ՝ 1875ին կը հրատարակուին հայերէն եւ թուրքերէն:

Ուրիշ է «Ազգասիրական եւ Բարեպաշտական Ընկերութիւն Հայոց»ը, հիմնուած 1862ին, որուն հետ նոյնացուցած է Ալպօյաճեան[40] 1875ի այս Ընկերութիւնը:

## 30. ԱՂՔԱՏԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

Բերայի Աղքատասէր Տիկնանց Ընկերութիւնը հիմնած են Հայ Կաթողիկէ «Վսեմաշուք Տիկնայք եւ Շնորհափայլ Օրիորդք ոմանք» 1875 Մարտ 1ին[41]: Իր նպատակն է. «միմիայն Ազգիս աղքատաց թշուառութեան օգնել... մանաւանդ աւելի հոգ տանիլ կարօտ աղջիկ տղայոց բարեկրթութեան, ուսմանց եւ արուեստից, որպէս զի իրենք զիրենք ապրեցնելով օր աւուր աղքատութիւն ալ պակսի, որ է նպատակ եւ միմիայն վախճան Աղքատասէր Ընկերութեան»[42]:

Ընկերութեան անունը պաշտօնական կնիքի վրայ նշանակուած է «Աղքատասէր կանանց Ընկերութիւն», իսկ Ընկերութեան

---

[40] Գաղ. Տարեց. Բ., էջ 85:
[41] Կանոնադրութիւնք, Կ. Պ., 1880, էջ 5:
[42] Անդ, էջ 14—15:

հրատարակութեանց մէջ գրուած է անգամ մը «Տիկնայց», անգամ մ'ալ «Տիկնանց»[43]:

Ընկերութիւնը ունի Հիմնական (6) եւ վարչական (42) կանոններ: Անդամ կրնան գրուիլ միայն տիկիններ եւ օրիորդներ, իսկ այրեր՝ միայն իբր պատուոյ անդամ կ'ընդունին (Յօդ. Ա.): Առաջին 20 անդամները, որոնք «հիմնադիրք» կը կոչուին՝ կ'ընտրեն Ընկերութեան Վարչական Մարմինը, որ կը բաղկանայ 9 անձէ եւ կ'ունենայ Նախագահ, Փոխ–Նախագահ, Գանձապետ եւ Ատենադպիր (Յօդ. Բ—Դ):

Ընկերութիւնը ունի Ընդհանուր եւ Վարչական ժողով, որոնցմէ առաջինին չեն կրնար մասնակցիլ 21 տարիքը չլրացնողներ:

Ընկերութեան անդամավճարն է կէս մէճիտ: Բաժանորդներէ հաւաքուած հասոյթին միայն մէկ չորրորդը կրնայ աղքատներու յատկացուիլ, մնացածը շահու կը դրուի (Յօդ. 35):

Ընկերութիւնը մեծապէս նպաստած է Բանկալթիի Ս. Յակոբայ Անկելանոցին: 1879ի Զատկի առթիւ Ընկերութիւնը Անկելանոցի կարօտ անձինքներուն կը նուիրէ 452 կտոր զանազան ճերմակեղէն (Մասիս, 1879, Թ. 2294):

Ընկերութիւնը մինչեւ 1881 Փետր. ունեցած է 1200·76 Թրք. լիրա մուտք, որմէ մաս

---

[43] Հմմտ. Ընկերութիւն Աղքատասէր Տիկնանց—Հաշուեկշիռ, Կ. Պ. 1881 եւ Կանոնադրութիւնք Աղքատասէր Ընկերութեան Տիկնայց, Կ. Պ. 1880:

մը գործած է, իբր նպաստ, կարօտեալնե-
րու եւ «Համազգեաց Օրիորդաց» վարժարա-
նին[44]։ 1881ին հրատարակուած անդամու-
հիներու եւ պատուոյ անդամներու ցանկէն
կը տեսնենք որ բազմաթիւ Հայ Կաթողիկէ
անուանի Գերդաստաններ ալ անդամա-
գրուած են Ընկերութեանս[45]։

Ինչպէս տեսանք նախապէս՝ Վարդու-
հեան Ընկերութիւնը 1880ին իր դրամա-
գլուխը «Աղքատասիրաց»ին կը նուիրէ,
պայմանաւ որ սա «Հայ աղքատ աղջ-
կանց դաստիարակութեան» գործածէ այդ
դրամը[46]։

Թէ որքան ատեն կանգուն մնացած է
այս օգտաշատ Ընկերութիւնը՝ մեզ անծա-
նօթ է։ Ամէն պարագայի՝ երկարատեւու-
թեան ամէն երաշխիք կ՚ընծայէին իր կանոն-
ներն ու գտած բացառիկ համակրանքը։

1911ին գործօն է տակաւին Ընկերու-
թիւնս (Թէոդիկ, Ամէն. Տարեց. 1911,
էջ 407)։

## 31. ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1876)

«Հայ Կարմիր Խաչի Ընկերութեան»
ծագումը կրնանք համարել 1876ի Թուրք-
սերպական պատերազմի առթիւ Թրքահայ
Լուսաւորչական եւ Կաթողիկէ Տիկնանց
կազմած Միութիւնը, որուն մասին ժամա-

---

[44] Տե՛ս Ընկերութիւն Աղքատասէր Տիկնանց-Հաշուեկշիռ, Կ. Պ., 1881։
[45] Անդ։
[46] Մասիս, 1880, Թ. 2785։

*նակակից հայ թերթերը հետեւեալը կը հաղորդեն․ «Բերկրութեամբ կ'իմանանք որ* հայազգի նշանաւոր գերդաստանաց ումանց տիկնայք, *Եւրոպիոյ քաղաքակիրթ ազգաց օրինակին հետեւելով, Օսմանեան տէրութեան թշնամիներուն դէմ պատերազմելով վիրաւորեալ զօրականաց դարմանին համար պէտք եղած նիւթերը պատրաստելու եւ նուիրելու նպատակաւ մասնաժողով մը կազմեր են։ Յիշեալ մարդասիրական եւ հայրենասիրական մասնաժողովին անդամ գրուած են արդէն․*

*Տիկին Նուրեան*
*Տիկին Ստեփան փաշա*
*Տիկին Մ․ Ապրօ*
*Տիկին Մ․ Ադարբեկեան*
*Տիկնայք Մաքսուտ*
*Տիկին Թ․ Սանտալճի*
*Տիկին Նորատունկեան*
*Տիկին Ալլահվէրտի*
*Տիկին Թընկըր*
*Տիկին Ջենոր Էլմասեան*
*Տիկին Մինասեան*
*Տիկին Անտոն պէյ Մըսըրլը*
*Տիկին Եուսուֆեան*
*Տիկին Ո․ Տէմիրճիպաշեան*
*Տիկին Իլիաս Զայեան*
*Տիկին Էսայեան*
*Տիկին Խորասանճեան*
*Տիկին Գազազեան*

*Տիկին Մէրնէմգուլի*
*Տիկին Յ. Տավուտեան*
*Տիկին Յ. Սագըր*
*Տիկին Կ. Շահպազ*:

*Լսածնուս նայելով*, տէրութեան նախաբարաց ընտանիքներն ալ՝ լսելով հայ տիկնանց այս հայրէնասիրական գործը, փափաքեր են իրենք ալ անդամակցիլ սոյն մասնաժողովին: *Նմանապէս կը լսենք թէ մեր ազգէն ուրիշ բազմաթիւ տիկնայք ալ անդամակցելու փափաք կը յայտնեն: Մասնաժողովս այսօր կամ վաղը շրջաբերականաւ մը պիտի յայտնէ իւր անդամոց՝ պատրաստելիք նիւթոց տեսակներն եւ յանձնուելու տեղերը: Մասնաժողովս որոշած է հրատարակել ապագային մէջ այն անդամոց անուններն՝ որք իրօք օժանդակեն այս մարդասիրական գործին*»[47]:

*Գոլոս* Լոյս *թերթն ալ «Մարդասիրական Ընկերութիւն Հայ Տիկնանց» վերնագրի տակ արձագանգելով միեւնոյն լուրը՝ իր կողմէ կ՚աւելցնէ. «Հայ կանանց այս Հայրենասնուէր ու մարդասիրական ձեռնարկն մեծի գոհունակութեան եւ շնորհակալեաց արժանի է, որ մեծ պատիւ կը բերէ ընդհանուր Հայոց ազգին: Նորա դարեւոր հաւատարմութեան*

---

[47] Մասիս, 1876, Թ. 1847, 1854: — *Միջազգային Կարմիր Խաչի Ընկերութիւններու հիմնադրութիւնը եղած է Ժընեւի մէջ* 1863—1864*ին՝ նպատակ ունենալով գլխաւորաբար պատերազմներու ժամանակ վիրաւորներու հոգածութիւնը*:

եւ անձնուիրութեան նոր ապացոյց մը այտալով: Իցի՜ւ թէ Հայ կանայք այս կարգի Հայրենեաց պաշտպանութեան եւ մարդասիրական գործոց մէջ իրենց վաստակն ու ջանքն կրկնապատկեն եւ աշխարհի յայտնեն թէ իրենք ալ Կատարամիտէի, Շուշանայ, Տիգրանուհւոյ եւ այլոց Հայոց մեծաց Տիկնանց սերունդն են»: Լոյս յետոյ յառաջ կը բերէ Մասիսի տուած հայ տիկիններու ցանկը, աւելցնելով յաջորդներն ալ.

Տիկին Վ. Վահան
Տիկին Կոստան փաշա
Տիկին Ռուսինեան
Տիկին Սերվիչէն
Տիկնայք Կիւմիւշկերտանեան[48]:

Պոլսոյ հայ տիկնանց այս նախաձեռնութիւնը Իզմիրի մէջ հետեւողներ կ'ունենայ, ուր 14 «Ազգ. երեւելի հայ Տիկնայք», «շարժեալ ի գեղեցիկ օրինակէ»՝ կը միանան նոյն նպատակին մէջ[49]:

Յատուկ իմաստով «Հայ Կարմիր խաչի Ընկերութիւն» մը կազմուած է սակայն 1908ի սահմանադրութենէն յետոյ, Պոլսոյ մէջ: Անոր կազմութեան ճիշդ ժամանակը չենք գիտեր, բայց 1909ի սկիզբը արդէն կազմուած էր: 1909 Ապրիլին «Կարմիր խաչի Ընկերութեան մեր խոհեմագարդ քոյրերուն» վերնագրով գրութիւն մ'ուղղելով

[48] Լոյս, 1876, էջ 12:
[49] Արշալոյս Արարատեան, 1876, Թ. 1044:

*նոյն Ընկերութեան՝ Դոկտ. Ս. Թէրզեան կը գրէ.* «Ուրախութեամբ կարդացինք ձեր կազմակերպութիւնը: *Լաւ գործ մ՚ըրած էք անմիջապէս ձեր ծառայութիւնները Ազատութեան Բանակին տրամադրութեան ներքեւ դնելով: Կը խնդրեմ որ ամբողջ Կիլիկիոյ ներկայ աղխտալի կացութիւնն ուշադրութեան առնելով, ձեր ծառայութեանց մէկ մեծ մասն ալ նուիրէք տեղւոյն տառապեալ, վիրաւորեալ, անպատսպար ու մահամերձ եղբայրներուն եւ քոյրերուն: Ասով ա՛լ աւելի արժեցուցած պիտի ըլլաք ձեր մարդասիրական ու ազգասիրական նուիրական պաշտօնը, որուն ներկայիս մէջ այնչափ պէտք ունի մեր տարաբախտ Կիլիկիան*[50]»:

1915*ի գարհուրանքէն վերջ՝* 1918 *Նոյեմբեր* 26*ին դարձեալ կը կազմուի Պոլսոյ մէջ «Հայ Կարմիր Խաչ»ը, նպատակ ունենալով.* «խնամել եւ դարմանել տարագիր, անօք եւ որբ հայ հիւանդները՝ Պոլիս եւ գաւառներու մէջ, ընկեցիկներ դիեցնել, մայրանոցներու մէջ հովանաւորել ծննդաբերութիւններ, ապաստանարաններու եւ մանկանոցներու մէջ պատսպարել ազատագրուած աղջիկներ եւ տղաք»: *Ունէր* 5000 *անդամ* (*Ամէն. Տարեց.* 1921, *էջ* 299—300):

*Բերայի Ս. Երրորդութիւն եկեղեցւոյ*

---

[50] Բիւզանդիոն, 1909, Թ. 3810: — *Տես նաեւ* Հայ Բոյժ, *Պարիս* 1950, Թ. 113, *էջ* 90:

դիմացի չէնքին մէջ տեղի կ'ունենային Հայ Կարմիր Խաչի ժողովները, 1918էն վերջ[51]:

## 32· ԿԱՐՕՏԵԼՈՑ ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

Հայութեան մէջ համերաշխ աշխատանքի սիրուն օրինակ մըն է նաեւ Կարօտելոց Օժանդակ Ընկերութիւնը, համազգային կազմով Ընկերութիւն մը, որուն նպատակն է. «Պոլսոյ մէջ գտնուած կարօտեալ ազգայնոց օգնել՝ առանց կրօնի խտրութեան[52]»:

Ընկերութիւնս հիմնուած է Բերա 1877 Մարտ 27ին: Հիմնադիրներն են համազգային երիտասարդներ: Առաջին տարուան Վարչական կազմն է հետեւեալը·

Գ· Տ· Թէրզեան (Նախագահ, Բողոքական)
Մ· Ս· Քիթապճեան (Գրագիր Ժողովոյ, Լուսաւորչական)
Յ· Մ· Մազլէմեան (Խորհրդական, Կաթողիկէ[53]):

Երկրորդ տարուան Վարչական կազմը·

Հ· Կ· Վ· Սիպիլեան (Ատենապետ, Կաթողիկէ)

---

[51] Թորգոմեան, անդ՝ Բ., էջ 563: Ընկերութիւնը Պոլսոյ եւ գաւառներու մէջ 40 մասնաճիւղեր ունէր, որոնց Կեդրոնական Վարչութիւնը կը կազմէին. Ստեփան Գաբրայեան (Ատենապետ), Տիկ. Մարի Սթամպուլեան (Բ. Ատենապետ), Տիկիններ Զ. Գալէմքեարեան, Պ. Գույումճեան, Ա. Կիմիշկէրտան եւ Բժիշկներ Եագուպ, Նազգաշեան, Շահպազ, Բարսեղեան, եւ այլն (Տե՛ս Թէոդիկ, Ամէն. Տ. 1921, էջ 300):

[52] Կանոնագիր, Կ. Պ. 1878, էջ 4:

[53] Ցուցագիր Կարօտելոց Օժանդակ Ընկերութեան. Կ. Պ. 1877, էջ 2:

Հ. Ա. Վ. Ոսկերինեանց (Փոխ–Ատենապետ)
Գ. Տ. Թէրզեան (Ատենապետ, Բողոքական)
Յ. Մ. Մազլճեան (Փոխ–Ատենապետ)
Յ. Յ. Միլլիճեան (Գանձապահ)
Մ. Ս. Քիթապճեան (Փոխ–Գանձապահ, Լուսաւորչական)
Գ. Օտապաշեան (Համարակալ)
Հ. Մ. Պէրպէրեան (Փոխ–Համարակալ)
Խ. Յ. Մարաճ (Խորհրդական)
Մ. Պ. Արապաճեան (Խորհրդական[54]).

Անխտիր ժողովականութեան գեղեցիկ օրինակ մը ներկայացուցած է Ընկերութիւնը Մասիսի մէջ (1877, Թ. 2014)։

33. ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ–ԱՐԵՒԵԼԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

«Դպրոցասիրաց» եւ «Արեւելեան» Ընկերութիւնները իրարու հետ միացած են 1878 Յունուար 1ին՝ կազմելով միացեալ Դպրոցասիրաց–Արեւելեան Ընկերութիւնը, որ իրեն գործի ասպարէզ ունեցած է ատ. Հայաստանի մէջ ազգային կրթութեան նպաստել[55]. յատկապէս աշխատելով Մշոյ գաւառին մէջ (Մասիս, 1879, Թ. 2232)։ Ունի 41 Յօդուածէ կազմուած Կանոնագիր մը։ Անդամավճարն է ամսական 1 դահեկան։ Սոփորական Վարչական Մարմիններէ զատ՝ այս Ընկերութիւնը ունի նաեւ Ուսումնական

[54] Կանոնագիր Կար. Օժ. Ընկ. Կ. Պ. 1878, էջ 6։
[55] Կանոնագիր, Կ. Պ. 1879, էջ 3։ — Մասիս, 1878, Թ. 2077, 2082։

Մանախումբ մը, որ կը բաղկանայ երեք անդամէ:

Ընկերութեան ազգասիրական ծրագիրը մեծ խանդավառութիւն ստեղծելով Հայութեան մէջ՝ առաջին տարին արդէն 335 նոր անդամ կ'ունենայ. մասնաճիւղեր կը հաստատէ Տրապիզոն, Ռոտոսթօ եւ Մանչեստր. նուիրատուութիւններ կ'ըլլան զանազան տեղերէ[56]:

Ընկերութիւնը 1878 Նոյ. 6ին Մուշի Ս. Մարինէ թաղին մէջ կը բանայ առաջին վարժարանը, տնօրէնութեամբ պոլսեցի Փիլիպպոս Երէցեանի[57]: Մինչեւ 1879 Հոկտ. Ընկերութիւնը կ'ունենայ Մուշի, Բաղէշի եւ Վաղարշակերտի (Ալաշկերտ) մէջ մէկմէկ վարժարան, իսկ Մուշի մէջ նաեւ Ընթերցարան մը[58]:

Ընկերութեան նիւթական միջոցներն աւելցնելու համար 1879 Յունուար 24ին կը տրուի պարահանդէս մը. Վասպուրական Ընկերութիւնը 50 Փերական, Ռոտոսթոյի ճիւղը 10 ոսկի մէճիտ կը նուիրէ[59]:

Դպրոցասիրաց – Արեւելեան Ընկերութիւնը, ըստ 1880 Ապրիլ 19ի կայացած համաձայնութեան, կը միանայ Արարատեան եւ Կիլիկեան Ընկերութիւններու հետ՝ կազմե-

---

56 Դպրոցասիրաց–Արեւելեան Ընկերութիւն, Տեկագիր, Կ. Պ. 1879, էջ 4—5, 26—28:

57 Անդ՝ էջ 9: — Հմմտ. Մասիս, 1878, Թ. 2190:

58 Մասիս, 1879, Թ. 2431, 2457, 2482, 2484, 2499: — Արեւ. Մամուլ, 1879, էջ 157:

59 Փունջ, 1879, Թ. 1345, 1350:

*լով «Միացեալ Ընկերութիւնք Հայոց»ը։ Դպրոցասիրաց – Արեւելեան Ընկերութեան Կեդրոնական Ժողովի Դիւանը պաշտօնական Յայտարարութեամբ* 1880 *Յուլիս* 3*ին կը ծանուցանէ թէ «իւր գործքերուն շարունակող ճանչնալով Միացեալ Ընկերութիւնք Հայոցը՝ կը դադրի գոյութիւն ունենալէ*[60]։

## 34. ԽՆԱՄԱՏԱՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Հիմնուած է Բերա,* 1879 *Սեպտեմբեր* 1*ին։ Իր նպատակն է. «Պոլսոյ մէջ իւր անուամբ արական սեռի վարժարան մը բանալ*[61]»։

*«Խնամատար»ի Կանոնագիրը ունի* 33 *Յօդուած։ Ընկերութեան անդամ կրնայ ըլլալ ամէն հայ, որ կը վճարէ ամսական* 2 *դահեկան եւ իրաւունք ունի մասնակցելու Ընդհանուր ժողովի։ Գործադիր ժողովը կը բաղկանայ* 12 *անդամէ։*

*Ընկերութեանս մասին անդրադոյն տեղեկութիւն չունինք։ Ան անծանօթ է Ալպօյաճեանի։*

## 35. ՀԱՅ ԿՐԹԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1880)

1880 *Յունուար* 1*ին հաստատուած է* Հայ Կրթական Միութիւնը, *որ իրեն նպատակ ունեցած է. «Ս. Բերայի ազգային երկսեռ վարժարանաց յարատեւ յառաջդիմութեան*

---

[60] Արեւելեան Մամուլ, 1880, էջ 210—211։

[61] *Կանոնագիր Խնամատար Ընկերութեան. Կ. Պ.* 1879, էջ 3։

հող տանիլ. Բ. Աղքատ բայց ջանասէր եւ զգաստ ուսանողաց յատուկ պաշտպանութիւն ընել. Գ. Կիրակնօրեայ եւ գիշերային դասախօսութիւններ ընել տալ. Դ. Ժողովրդային գրադարան մը հաստատել. Ե. Բերայի ազգային երկսեռ վարժարանաց հոգաբարձութիւնն ստանձնել... անակնկալ պարագայի մէջ. Զ. Բերայի մէջ ընտելարանաց յաւելման եւ բարձրագոյն ուսումնարանի մը հաստատութեան աշխատիլ[62]»:

Ընկերութիւնը թէեւ ունեցած էր իր անհամակիրները՝ սակայն տարին չլրացած՝ կ՚ունենայ 230 անդամ. կը նպաստէ թաղին վարժարաններուն[63]:

Իր Կանոնագիրը, որ ունի Ա—Զ + 35 Յօդուած՝ հրատարակած է Հանէսեան[64]:

1881ին Ընկերութեան Տնօրէն Խորհուրդի Ատենապետն է Տ. Մ. Էքսէրճեան, իսկ Ատենադպիրը՝ Մարտիրոս Տէօքմէճեան: 1880ին Ատենապետն էր Խաչիկ Պիւլպիւլեան[65]:

36. ԹՈՐԳՈՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1881)

«Բերայի արուեստասէր Հայ երիտասարդութիւնը նկատելով որ ազգային Ընկերութեանց մեծագոյն մասը աւելի կրթական քան թէ արուեստական նպատակի կը նուիրեն

---

[62] Մարտ. Հանէսեան, Հարիւր քանեւհինգամեայ Յարելեան. անդ՝ էջ 154:
[63] Մասիս, 1881, Թ. 2866:
[64] Անդ, էջ 154—159:
[65] Գաղութ. Տարեց. 1941, էջ 120:

իրենց ջանքերը, մինչեւ արուեստական ճիւղին զարգացման կարեւորութիւնն ալ՝ մանաւանդ գաւառական աղջկանց համար» այնքան յայտնի է՝ ուստի Բերայի մէջ 1881 Յուլիս 1ին կը կազմէ Թորգոմեան Ընկերութիւնը՝ «Հայաստանի մէջ արուեստական (արուեստի) ճիւղը մշակելու նպատակաւ[66]»:

Ընկերութեան կեդրոնատեղին է Բերայի Նարեկեան վարժարանը. անդամավճարը՝ ամսական 1 դահեկան. օրիորդներ, տիկիններ եւ օտարազգիներ միայն պատուոյ անդամ կրնան ըլլալ: 1882 Մարտին Ընկերութիւնը ունէր 200 անդամ. իր Գործադիր ժողովի Ատենապետն էր Լեւոն Մ. Ասլանեան, իսկ Ատենադպիրը՝ Միհրան Տամատեան[67]:

Ընկերութեան Կանոնները 34 Յօդուած է բաղկացած են, հրատարակուած 1881ին[68]:

37· ՅԱՌԱՋԴԻՄԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1881)

1881 Դեկտեմբերին Համազգեաց Ընկերութիւնը իր բացած Հայ Կաթողիկէ «Օրիորդաց վարժարան»ի խնամակալութիւնը կը յանձնէ «Ազնուուհի Տիկնանց Յառաջդիմասէր Ընկերութեան[69]»: 1882ի Յուլիսին նոյն

---

[66] Մասիս, 1882, Թ. 3145: — Ընկերութեան Կանոնագրի ճակատը գրուած է. «Նպատակ՝ Արուեստարան մը հաստատել ի Հայաստան»):
[67] Մասիս, անդ:
[68] Տե՛ս Կանոնադրութիւն Թորգոմեան Ընկերութեան. Կ. Պ. 1881:
[69] Մասիս, 1881, Թ. 3068:

Օրիորդաց վարժարանի ամավերջի քննութեանց ներկայ եղող մը կը գրէ. «Արդարեւ յոյժ գովելի է տեսնել տիկնանց համեստ եւ աղքատ Ընկերութիւն մը, ընկերակցութեան գաղափարին ճշմարիտ նշանակութիւնը հասկնալով, ուրիշ իրեն նման, դաստիարակութեան նպատակաւ հաստատուած եղբայր Ընկերութեան մը, այն է Համազգեաց Ընկերութեան հետ միանալով, հայ անուն կրող աղջկանց դաստիարակութեանց ամենակարեւոր գործովը կը զբաղի... սանուհեաց կարճ ժամանակի մէջ ըրած յառաջադիմութիւնը տեսնելով, պարտ անձին կը համարիմք մեր խորին շնորհակալիքը յայտնել այն հաստատութեան մեծապատիւ անդամոցը... Վարժարանս Յառաջադիմասէր Ընկերութեան Տիկնանց այս փոքրիկ խմբակին փութաջան հսկողութեանը կը պարտաւորի իւր վարժապետաց եւ վարժուհեաց գերազանց ընտրութիւնը[70]»։

Հաւանական կը թուի որ Հայ Կաթողիկէ Տիկնանց կազմած այս Ընկերութիւնը հիմնուած ըլլայ 1881ին։ Իր մասին ուրիշ կողմէ տեղեկութիւն մը չունինք։ Ալփօյաճեանի անծանօթ է անունս։

Ընկերութիւնը 1882էն վերջ ալ, գոնէ 1882—1883ի դպրոցաշրջանին, շարունակած է իր դաստիարակչական աշխատանքները[71]։

---

[70] Մասիս, 1882, թ. 3240։
[71] Անդ՝ թ. 3267։

## 38. ՆԵՐՍԻՍԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1881)

*Ստեփաննոս Պետրոս Ժ. Ազարեան Կաթողիկոս հիմնած է* Ներսիսեան Ընկերութիւնը 1881 Յուլիս 23*ին, կազմելով անոր կանոնագիրն ալ, որ կը բաղկանայ 34 Յօդուածէ, հրատարակուած 1881ին։ Ընկերութեան նպատակը. «Հայ Կաթողիկեայ Հաստատակութեան դպրոցաց նպաստելով՝ նոցա վիճակը բարւոքել եւ հարկ եղած տեղերը նոր դպրոցներ կամ վարժարաններ հաստատել*[72]*»։*

*Անդամ կրնայ գրուիլ ամէն անձ, որ ամսական* 1 *արծաթ դահեկան կը վճարէ։ Ընկերութեան կեդրոնն է Բերայի Կաթողիկոսարանը, իսկ Տնօրէն ժողովի Նախագահը՝ Կաթողիկոսը, ունենալով Ատենադպիր, Համարակալ եւ Գանձապետ։*

## 39. ԳԹԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1881)

*Ընկերութեանս յիշատակութեան առաջին անգամ* 1881 *Յուլիս* 24*ին կը հանդիպինք։* Մասիս (1881, *Թ.* 2949) *կը գրէ որ Հայ Կաթողիկէները Բերայի Կաթողիկոսարանի մէջ Կաթողիկոս-Պատրիարքի Նախագահութեամբ ժողով մ'ընելով՝ Կաթողիկոսը երեք կէտեր կ'առաջարկէ, որոնցմէ երրորդն է.* «աղքատաց օգնութեան համար Բերայի մէջ կազմեալ Գթասէր Ընկերութեան

---

[72] *Կանոնադրութիւն Ներսիսեան Ընկերութեան, Կ. Պ.* 1881, *էջ* 1, *Յօդ.* 1։ — *Հմմտ.* Մասիս, 1881, *Թ.* 2949։

գործողութիւնը մայրաքաղաքիս բոլոր թաղերուն մէջ ծաւալել»:

Ինչպէս կը տեսնուի՝ աղքատախնամ Ընկերութիւն մըն է: Թերեւս նոյն 1875ի «Աղքատասէր Տիկնանց Ընկերութեան» հետ: Այս մասին չկայ որեւէ ակնարկութիւն:

Ընկերութիւնս 1881էն սկսած քանի մը տարի արդիւնաւոր գործունէութենէ վերջ լուծուած է: 1891 Դեկտեմբերին կը վերակազմուի դարձեալ. Ընկերութեան նպաստեալ անդամներու համար պատարագ կը մատուցուի. Յանձնախումբ մը կը կազմուի, որ քանի մը նոր կանոններ կը գծէ Ընկերութեան յառաջդիմութեան համար, որոնցմէ յիշենք մէկ երկուքը. Տարին մէկ անգամ, Փետրուարին, ժողովք կազմել եւ հաշուետուութիւն ընել. Անարատ Յղութեան տօնին Զայնաւոր Պատարագ մատուցանել տալ հանգուցեալ անդամներու համար, եւ այլն:

Ահա Յանձնաժողովի անդամներու անունները.

Տիկին Տիրուհի Մըսըրլեան (Նախագահ)
Տիկին Նեկտար Տիւզ (Փոխ–Նախագահ)
Տիկին Թէրէզա Գույումճեան (անդամ)
Տիկին Սրրուհի Ազարեան (անդամ)
Տիկին Թագուհի Մըսըրլեան (անդամ)
Տիկին Մարի Հաճիպիեար (անդամ)
Տիկին Լուչիա Շէրպէթեան (անդամ)
Տիկին Մարի Գասապեան (անդամ)
Տիկին Գաթինա Գոլլարօ (անդամ)

Տիկին Մարինոզա Ազարեան (Գանձապետ)
Տիկին Տիրուհի Հանըմեան (Ատենադպիր)
Տիկին Գաթինա Եաղուպճեան (Փոխ-Ատենադպիր)
Տիկին Երանիկ Թորուզ, անդամ (Մէճմ. Ախ. 1891, Թ. 2252, 2257)։

Յովհաննէս Յ. Ալան ուրախութիւն յայտնելով Գթասէր Տիկնանց Ընկերութեան վերակազմութեան առթիւ՝ կ'ըսէ. «Մինչդեռ Յոյնք եւ այլք ունին իրենց կանանց Ընկերութիւնները, մենք ինչո՞ւ չունենանք մերը։ Ինչո՞ւ մեր տիկիններն ու օրիորդները անգործ նստին. միթէ մենք ալ պէտի չունենայի՞նք մեր Դպրոցասէր եւ Հայուհեաց Ընկերութիւնները. արդեօք առ մեզ չկա՞ն որբ եւ աղքատ աղջկունք... Գթասէր Տիկնայց Ընկերութիւնն, որչափ ալ գրաւած է մեր ամէնուն սէրն ու համակրանքը, նոյնչափ ալ մեծ են այն գործերը, զորս կ'ակնկալենք այս Ընկերութենէն։ Ժամն է որ մեր կանայք եւս ստանձնեն գործունեայ դեր մը մեր հասարակական գործոց մէջ եւ աղջկանց դաստիարակութեան կարեւորութիւնն ի միտ առնելով ձեռն ի գործ արկեալ սկսին գործել...» (Մէճմ. Ախ., 1892, Թ. 2300)։

Ընկերութիւնը բաւական մեծ գումար մը հաւաքելէ վերջ՝ մաս մը այրի եւ որբ տիկնանց, մաս մը աղքատ աղջկանց կրթութեան եւ մաս մ'ալ գաւառի վարժարաններուն օժանդակելու կը գործածեն, իսկ եթէ

միջոցները ներէն՝ մատղիր են նաեւ արհեստանոց եւ որբանոց բանալ (Անդ՝ Թ. 2340)։

1892ի չրջանին Ընկերութեան ջանքերով Խարբերդի վիճակին մէջ կը բացուի աղջկանց վարժարան մը՝ ուսուցչութեամբ Անարատ Ցղութեան Հայ Մայրապետներու (Մէճմ. Ախ., Թ. 2518)։

Պոլսոյ Հայրենիք (1892, Թ. 157) 1892 Փետրուարին խօսելով Ընկերութեանս վրայ՝ ըսելէ յետոյ թէ ան «մէկ երկու տարիէ ի վեր կազմուած է» (անչուշտ վերակազմուած ըսել կ՚ուզէ), կը գրէ. «Ընկերութեան վարչութիւնն սկսած է անխոնջ կերպով աշխատիլ... ամէնքս ալ առհասարակ բարոյապէս պարտական ենք անոր նպաստել... երբ խնդիրը հիւանդի, աղքատի համար է, ո՛չ տեղի, ո՛չ թաղի, ո՛չ քաղաքի խտրութիւն կրնայ ըլլալ»։ Հայրենիք կ՚իմացնէ նաեւ որ Ընկերութիւնը Մարտ 5ին նուագահանդէս մը պիտի տայ։ Իսկ Յ. Ալփիար, ծանօթ երգիծաբանը, իրեն յատուկ սիրուն երանգաւորումներով կը նկարագրէ այդ նուագահանդէսը։ «Ըսելիք չի կայ, կ՚ըսէ, աւելի փառաւոր եւ փայլուն սրահ մը կազմել դիւրին չէ եւ Գթասէր Տիկնայք հպարտ ըլլալու են որ ամէն ոք փութացած էր իրենց հրաւէրին պատասխանել»։ Այդ առթիւ կ՚երգէ Տիկ. Այվազեան, դուեչտ մը — «Երկու անկողինով սենեակ» — կը ներկայացնեն Ալլահվէրտեան եւ Էնքսէրճեան, եւ այլն (Անդ՝ Թ. 165)։

*Ընկերութիւնը* 1897*ին հինգ տոմսակ* Մասիսի *խմբագրութեան տրամադրութեան տակ կը դնէ, որպէս զի «ի յիշատակ հանգուցեալ Աննա Ազարեան Տիկնոջ» բաշխուելիք հացի, ձիթապտուղի եւ լուբիայի բաշխման մասնակից աղքատներու յատկացնէ*։ (Մասիս, 1897, *Թ*. 78)։

40․ ՀՈԻՓՍԻՄԵԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1882?)

Մասիս[73] 1883 *Յունուար* 20 *թուով փոքրիկ ծանուցում մը կը հրատարակէ, գրելով թէ «Համազգեաց եւ* Հռիփսիմեանց Ընկերութեանց *ի նպաստ ծանուցեալ պարահանդէսն այս գիշեր տեղի պիտի ունենայ Վէրտիի թատրոնին մէջ, ի Բերա»*։ Մասիս *յաջորդ օրը կը ծանուցանէ թէ «Հռիփսիմեանց եւ Համազգեաց* վարժարաններու *ի նպաստ պարահանդէսը» տեղի ունեցած է շատ մեծ յաջողութեամբ*[74]։

*Ինչպէս կը տեսնուի՝ Հռիփսիմեանց վարժարանը ունի իրեն պաշտպան Ընկերութիւնը, նոյնանուն։ Հարց է սակայն թէ* Մասիս *ո՞ր Հռիփսիմեանց վարժարանը կ՚ակնարկէ։ Եթէ Բերայինն է — զի Պոլսոյ միւս թաղերու մէջ ալ Հռիփսիմեանց անունով վարժարան կայ — հաւանական է ընդունիլ թէ Բերայի վերաբերող Գունաւուլա թաղի Հռիփսիմեանց վարժարանն ըլլայ։ Դժբախտաբար* Մասիսի *այս տեղեկներէն զատ ու-*

[73] *Թ*. 3387։
[74] *Անդ՝ Թ*. 3388։

*բիչ լուսարանութիւն չենք գտած Ընկերութեանս մասին: Ժամանակակից ուրիշ թերթեր ալ նոյն բառերով միայն տուած են յիշեալ ծանուցումը:*

### 41. ՈՒՍՈՒՑՉԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1882)

*Ընկերութեանս նախաձեռնողն է Ռ. Պէրպէրեան, որ Ուսուցչական ձաչկերոյթի մ'առթիւ, 1882 Օգոստոս 22ին, կ'իմացնէ թէ կազմուած է* Ուսուցչական Միութիւն *մը, որուն Կանոնագիրը «քիչ օրէն լոյս կը տեսնէ», կ'ըսէ*[75]*: Ոչ Կանոնագիրը տեսած ենք եւ ոչ ալ «Միութեան» մասին ուրիշ գրութիւն մը:*

### 42. ՏԻԿՆԱՆՑ ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹԻՒՆ (1886)

*Բերայի աղջկանց վարժարաններու համար 1886 Ապրիլ 21ին արդէն կազմուած էր «Տիկնանց Խնամակալ Մարմին» մը հետեւեալ անդամներով.*

*Տիկին Աննա Մայր Խայեանց*
*Տիկին Զ. Սարգիս Համամճեան*
*Տիկին Մաննիկ Տուրուտեան*[76]*:*

1888 *Ապրիլ 6ին նոյն Տիկնանց Խնամակալութիւնը ընդարձակելով իր գործի ասպարէզը՝ կը կազմէ Բերայի «Աղքատախնամ»ը, «դարման տանելու համար աղքատաց վիճակին, հայթայթելու համար չքա–*

---

[75] Մասիս, 1882, Թ. 3268. Համա. 3269:
[76] *Մարտ. Հանէսեան, անդ՝ էջ 186:*

ւորներուն սնունդ եւ զգեստ, աղքատ հիւանդներուն ալ բժիշկ ու դեղ եւ վերջապէս պաշտպան եւ հոգածու ըլլալ թշուառին[77]»:

Աղքատ աղջիկներու եւ որբեւայրիներու գործ հայթայթելու համար Տիկնանց Աղքատախնամը աշխատանոց մը կը հաստատէ Բերա Նարեկեան վարժարանի մէջ[78]:

## 43. «ՔՆԱՐ» ԵՐԱԺՇՏԱՍԷՐՆԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1888)

Ընկերութիւնս կազմուած է 1888ին եւ իր գումարումները կ՚ընէր Բերայի Արհեստանոցի սրահներէն մէկուն մէջ[79]:

## 44. ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԱԿՈՒՄԲ (1892)

Հայ Կաթողիկէ Ընկերութիւն մըն է Հայ Երիտասարդաց ակումբը հիմնուած 1892 Մարտին: 1892 Մարտ 22 թուակիր նամակ մը կու տայ յաջորդ լուսաբանութիւնները: Նամակագիրը պատմելով Հայ Կաթ. Համայնքի Կաթողիկոս-Պատրիարք Ստեփանոս Ազարեանի գործունէութիւնը՝ կը յիշէ նախ Ս. Գրիգոր Լուսաւորիչ Ուսումնարանի հաստատութիւնը, յետոյ Գթասէր Տիկնանց Ընկերութեան վերակազմումը: «Այլ սակայն, կ՚ըսէ նամակագիրը, միւս կողմը զգալի պիտոյք մը կար, զոր պէտք էր նոյնպէս դարմա-

---

77 Անդ՝ էջ 189—190:
78 Գաղութ. Տարգ., Գ., էջ 122:
79 Հանէսեան, անդ՝ էջ 191:

նել, այսինքն հաստատակութեանս մէկ կողմէ ուսումնաւարտ աշակերտներուն մէջ բարոյական եւ ուսումնական զգածումներն վառ պահելու, մէկզմէկ ճանչնալու, միմեանց անձնուիրաբար ձեռնտու ըլլալու, որը եւ աղքատ մանչ տղայոց կրթութեան եւ դաստիարակութեան օգնելու, ուսումնաւարտ աշակերտաց գործ եւ պաշտօն հայթայթելու... միւս կողմէ երբեմն այս ուսումնաւարտ աշակերտներն ի մի գումարելով եւ բարոյական եւ ուսումնական բանախօսութիւններ կատարելու» համար «նոյն ինքն Ամեն. Գերերջ. Հոգեւոր Տէրն բարձրագոյն պաշտօնական հաւանութեամբ իսկ եւ իր բարձր հսկողութեան ներքեւ գտնուելու պայմանաւ կաթողիկէ Հայ Երիտասարդաց ակումբ մը կազմած է[80]»: Ակումբին Դիւանը կազմուած է հետեւեալներէ.

Գրիգոր Մինասեան (Ատենապետ)
Եդուարդ Բէքմէզ (Դեր–Ատենապետ)
Յակոբ Շէրպէթճեան (Գանձապետ)
Կոմիտաս Մնացական (Ատենադպիր):

Ագարեան Կաթողիկոս Ակումբին կը նուիրէ 60 գիրք, իսկ Ակումբը իր ծախքով երկու աղքատ, բայց ուշիմ տղայ Ս. Գր. Լուսաւորիչ Ուսումնարանը կը զետեղէ, ամսական 100 դրուշ կը քուէարկէ Պեհեանի մէջ Սահակ Վարդ. Պեննայեանի հիմնած դպրո–

---

[80] Մէճմ. Ախպար, կ. գ. 1892, թ. 2340, 2539:

ցին, կը խոստանայ հոգալ Մալաթիոյ ման-չերու վարժարանի աշխարհագրութեան գրքերը եւ նպաստ մ'ընել ազգային ուսանող-ներու [81]: Ընկերութիւնը 120ական ֆրանք կը յատկացնէ Պարիս խրատագիտութիւն եւ բժշկութիւն սորվող Այթունեան եւ Ապտուլ-լահեաններու, Պարիս բժշկութիւն սորվող Մարմարեանի 100 ֆրանք նպաստ կը կապէ, Վիեննա բժշկութիւն սորվող Տիմոթէոս Ցրու-ֆրսեանի ճամբու ծախք եւ ամսական երկու անգղիական կը նուիրէ, Հաճընի նորաբաց դպրոցի նիւթական հոգը կը ստանձնէ եւ ու-րիշ զանազան նուիրատուութիւններ կ'ընէ:

Ընկերութեան եկամուտն է ամսական 5 դահեկանի անդամավճարները եւ տարե-կան մէկ թատերական ներկայացում կամ նուագահանդէս մը:

45. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԲԵՐԱՅԻ (1895)

Բերայի մէջ Աղքատախնամը, իբրեւ Ըն-կերական տուանձին կազմակերպութիւն, հիմնուած է, ըստ Ա. Ալպօյաճեանի, 1895 Նոյ. 19ին [82]: Բ. Քէչեան 1907ին ցաւ կը յայտնէր տակաւին որ Բերա ուրիշ թաղերէ ետ կը մնայ իր Աղքատախնամին օգնելու գործին մէջ [83]: Զատ է Բերայի Աղքատա-խնամը, իբրեւ թաղային մարմին, որ սկսած

[81] Անդ՝ Թ. 2340:
[82] Գալ. Տարեգ., Գ., էջ 122:
[83] Բիւզանդիոն, 1907, Թ. 3252:
[84] Թորգոմեան, անդ՝ էջ 558:

է 1927ին իր 50ամեայ Յոբելեանը, 1897էն ի վեր ունենալով նաեւ Դարմանատուն մը[84]:

## 46. ԴՊՐԱՑ ԴԱՍ (1897)

Քանի մ'անգամ փորձուած է Բերայի մէջ ունենալ կազմակերպուած կանոնաւոր Դպրաց Դաս մը, բայց չէ յաջողած[85]: Մասիսի մէջ յօդուածագիր մը գարմանք կը յայտնէ որ Բերայի պէս կարեւոր թաղ մը մինչեւ 1897 չէ ունեցած իր Դպրաց Դասը: Ուրբէն Ճիվանեան, Թաշճեանի աշակերտը, ջանացած էր կազմել յատուկ խումբ մը, սակայն ատանց յաջողելու՝ քայքայուած էր այն: 1897ին Բերայի Ս. Երրորդութիւն եկեղեցւոյ դպիրները հրաւէր կը գրկեն Բերայի երիտասարդներուն որ գան մասնակցին նորակազմ Դպրաց Դասին ու յիշեալ յօդուածագիրը յոյս կը յայտնէ որ «պիտի յառաջդիմէ այդ Դպրաց Դասը, քանի որ երիտասարդ եւ պատանի ուժեր ձեռք ձեռքի կը միանան Գ. Դպրապետին շուրջ[86]»: Հանճեան 1911ին կը հաստատէ որ 1897ի կազմուածն ալ մնայուն բան մը չէ եղած: Այդ տարին (1911) Բերայի Թաղական Խորհուրդը Ուրբէն Ճիվանեանի տեղ Դպրապետութեան կը կոչէ Լեւոն Զիլինկիրեանը: Վերջինս Բերայի երեք եկեղեցիներուն համար միակ Դպրաց Դաս մը կը կազմէ, որ մինչեւ 1923 կը պահէ իր

[85] Հանճեան, անդ՝ էջ 209:
[86] Մասիս, 1898, Թ. 150:

գրութիւնը: 1922ին Զիլինկիրեանի տեղը կ՚անցնի Ներսէս Խիտավէրեան եւ որովհետեւ Դպրաց Դասը դարձեալ կազմալուծուած ու ցրուած էր՝ Խիտավէրեան զայն կը կազմակերպէ 1929ին իբրեւ Բերայի Ս. Երրորդութեան յատուկ Դպրաց Դաս[87]:

## 47. ԿԱԹՈՂԻԿԷ ՀԱՅ ԴՊՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1897)

Ընկերութեանս 15րդ Կանոնը կ՚ըսէ. «Ընկերութիւնս իրեն յատուկ կնիք պիտի ունենայ, որոյ շրջանակը փորագրուած պիտի ըլլայ «Կաթուղիկէ Հայ Դպրաց Ընկերութիւն 1897[88]»:

Բերայի Հայ Կաթողիկէներու Դպրաց Ընկերութիւնը հիմնուած է 1897 Սեպտեմբեր 27ին Ս. Յովհան Ոսկեբերան եկեղեցւոյ ժողովրդապետութեան մէջ: Ունի Կանոնագիր մը 30 Յօդուածէ՝ հաստատուած Ստեփաննոս Ազարեան Կաթողիկոսէ 1897 Հոկտ. 14ին: Ընկերութեան նպատակն է. «Հայ Կաթողիկէ Հասարակութեան յատուկ Դպրաց Դասու մը ծնունդ տալ, աստուածային պաշտամունքը պարտ ու պատշաճ շքեղութեամբ եկեղեցեաց մէջ կատարելու. Երգեցիկ աղքատ տղայոց մտաւորական ու բարոյական զարգացումը բարւոքելու եւ անոնց ապա-

[87] Հանէսեան, անդ՝ էջ 240—242, 259, 269:

[88] Տե՛ս Հիմնական Կանոնադրութիւն Դպրաց Դասու Կաթողիկէ Հայ Հասարակութեան, Կ. Պ. 1897, էջ 4:

գայն ըստ կարելւոյն ապահովելու համար» (Յօդ. 1): Ընկերութիւնը պիտի ջանայ պահպանել տալ «բուն իսկ Մայրենի Եկեղեցւոյ երգեցողութիւնները եւ ծէսերը... պիտի ջանայ Դպրաց Դասու համար արժանընտիր Ձայնապետներ հասցնել եւ յարմար դպիրներ եւ տիրացուներ ընտրել» (Յօդ. 2): Ընկերութիւնը «պիտի ջանայ ըստ կարելւոյն նորանոր միջոցներ հայթայթել աղքատ երգեցիկ տղայոց դպրոցական դաստիարակութեան զարգացումը դիւրացնելու համար» (Յօդ. 3):

Ընկերութեան անդամավճարն է ամսական 1 դահեկան: Գործադիր ժողովը ունի հինգ անձ՝ նախագահութեամբ Ս. Յովհ. Ոսկեբերանի Մեծաւորին եւ իր պաշտօնավարութիւնը կը տեւէ 3 տարի (Յօդ. 8—10): Տարին անգամ մը Ձայնաւոր Պատարագ մատուցանել կու տայ Ընկերութիւնը Ս. Ստեփանոսի տօնին օրը, որուն ներկայ կ՚ըլլան անդամները (Յօդ. 18): Ընկերութիւնը կ՚ունենայ իր Դպրապետ-Ուսուցիչը. կը վճարէ թէ՛ անոր եւ թէ՛ Դպիրներու ամսականները. կը մասնակցի աղքատ ննջեցեալներու թաղման ծախքին (Յօդ. 19—21). կ՚ապահովէ Ս. Յովհ. Ոսկեբերանի թաղական դպրոցի եւ անոր ուսուցիչներու ծախքերու վճարումը (Յօդ. 30):

Ընկերութեան Գործադիր Ժողովի անդամները 1897ին.

Նիկողայոս Վրդ. Պաքչեան
Մ. Միրան
Յ. Պէհլամեան
Ա. Պէկեան
Կոմիտաս Քէրիմեան[89]:

48. ԿՐԹԱԿԱՆ ԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ (1903)

«Բերացի» մը կը գրէ Մէնմ. Ախպարի մէջ, 1903 Նոյ. 15/28ին. «Մեր երիտասարդներուն անտարբերութեանը վրայ խօսած ատեննս սփոփանք մը տալու համար ինքզինքիս եւ կարդացողներուս, կ'ուզեմ արձանագրել ըղձալ լուրի մը, որ գիս շատ ուրախացուց. Ս. Գրիգոր Լուսաւորիչ վարժարանի նախկին աշակերտներէն ոմանք Կրթական Եղբայրութիւն մը կազմեր են, որ նպատակ պիտի ունենայ իրենց վարժարանին օգնել եւ իրենց հաւաքած դրամներով աղքատ աշակերտներ դնել հոն: Շատ գեղեցիկ, շատ գնահատելի ձեռնարկ մը ահա՛, որուն շարունակութեան փափաքող ենք ջերմապէս: Ս. Գրիգ. Լուսաւորիչ վարժարանին նախկին աշակերտներուն այս զուտ կրթական ձեռնարկը աղուոր նորութիւն մըն է, որ կ'ապացուցանէ թէ մեր երիտասարդները տակաւ մէկդի պիտի դնեն իրենց կրթական անտարբերութիւնը եւ պիտի սկսին խորհիլ ու գործել, ինչպէս որ կը վայլէ ուսմունք առած երիտասարդներու[90]»:

[89] Անդ՝ էջ 8:
[90] Մէնմ. Ախ. 1903, Թ. 4094:

*Ընկերութեան մասին ուրիշ տեղեկութիւն չունինք*:

## 49. ԲԵՐԱՅԻ ԵՐԻՏԱՍԱՐԴՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Ընկերութիւնս հիմնուած է* 1908 *Օգոստոսին*: *Մէկ ամսուան մէջ ունեցած է* 90 *անդամ*: *Իր ծրագիրն եղած է* «*Հաստատել Լսարան–Ընթերցարան մը, միջոցը տալու համար Բերայի Երիտասարդութեան՝ վայելելու ընթերցանութեան եւ ընկերախօսութեան բարիքները*[91]»: *Վարչական Խորհուրդի Բ. Ատենապետն է Մ. Մարտիրոսեան, Ատենադպիրը՝ Մ. Ս. Ռափայէլեան*[92]:

*Ընկերութիւնը* 1908 *Սեպտ*. 28*ին կը ծրագրէ թատերական ներկայացում մը տալ՝ Լսարան–Ընթերցարանի բացումին համար հարկ եղած միջոցներն ունենալու համար*: *Առ այդ կ'ընտրուի Մասնախումբ մը հետեւեալ անձերէն. Դոկտ. Խանճեան, Ենովք Արմէն, Վահէ Զօփուրեան, Հրանտ Պօշնաքեան եւ Վահէ Պօշնաքեան*[93]: *Ընկերութիւնս կոչուած է յաճախ* «*Բերայի Հայ Երիտասարդաց Միութիւն*[94]»:

1919*ին վերակազմուած է Ընկերութիւնս նոր Վարչականով* (*տե՛ս Թէոդիկ, Ամէն. Տ*. 1921, *էջ* 302):

[91] Սուրհանդակ, կ. Պ. 1908, Թ. 89:

[92] *Անդ*՝ *Թ*. 86:

[93] *Անդ*՝ *Թ*. 89:

[94] *Ամէնուն Տարեցոյցը*, 1911, *էջ* 409: — Մարմնամարզ, կ. Պ. 1911, *էջ* 89:

50. ՕՐԻՈՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Սկիւտարի «Ազգանուէր Հայուհեաց Ընկերութեան» օժանդակ մըն է 1908ի վերջերը Բերայի մէջ կազմուած* Օրիորդաց Միութիւնը, *որ* 1909 *Ապրիլ* 26*ի սարքած երաժշտա-թատերական առաջին ցերեկոյթին բացումի խօսքը Սիպիլի տալով՝ վերջինս կը հաղորդէ քանի մը տեղեկութիւններ Միութեան մասին։*

*Տիկին Սիպիլ Յրանսացի հեղինակի մը այս խօսքը. «Ընկերութիւն մը, որ կանանց դաստիարակութեամբ չի զբաղիր, կորսուած ընկերութիւն մըն է» իրեն նշանաբան առնելով՝ հին ազնուական Հայուհին դաստիարակչական գործերը դրուատելէ վերջ, կ'ըսէ. «Արդեօք չա՞տ լաւատես եւ չա՞տ յաւակնոտ բաղդատութիւն մը ըրած կ'ըլլամ, երբ ըսեմ թէ մեր Օրիորդաց Միութեան անդամուհիները խորթ թոռները չեն այդ իշխանուհիներուն, որոնց վրայ կը գմայլինք։ Անոնք դեռ երէկուան դպրոցականները, Բերայի նման զեխութեան, պերճանքի, փափկութեան մթնոլորտի մը մէջ սնած՝ կը խղճահարին իրենց գեղարուեստական մեծ կամ պզտիկ տաղանդները անգործութեան դատապարտելու, այնպիսի ժամանակի մը մէջ, երբ ամէն մարդ իր ունեցածը չունեցածը պէտք է տայ.* Եւ կ'ուզեն իրենց գաւառացի քոյրերուն օգտակար ընծայել իրենց բոլոր կարողութիւնները։ *Չորս ամիսէ ի վեր գի–*

*չէր ցորեկ կ՚աշխատէին… տալէ, ողորմելէ, նուիրելէ յոգնած, ձանձրացած, սպառած ազգէ մը կորզելու համար* գաւառացի հայ աղջիկներուն բաժինը…: *Զանազան գաւառներէ բազմաթիւ հանրագրութիւններ կը հասնէին մեզի, «դպրո՛ց, դպրո՛ց» պոռալով: Ո՞ր մէկուն պատասխանենք, ո՞ր մէկուն գոհացում տանք…: Կը գրեն մեզի թէ խեղճ աղջիկները դպրոց երթալու համար պարզ հագուստ մը անգամ չունին… ուրկէ՞ պիտի գտնէ Ազգանուէր Հայուհեաց Ընկերութիւնը անոնց զգեստ…:* Եւ ահա մեզի օգնութեան կը հասնի Օրիորդաց Միութիւնը, անոնք պիտի հայթայթեն խեղճ աղջիկներուն զգեստը… *Անոնք քաջասիրտ աղջիկներ, հայրենիքին օգտակար ըլլալու համոզումով ոգեւորուած՝ բարեբախտութիւնը ունին առաջին հանդէսը իրենք կազմակերպելու..*[95]»:

51. ԷՍԱՅԵԱՆ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Մարտիրոս Հանէսեան*[96] *կը գրէ. «Թաղին (Բերայի) Ազգային վարժարանաց աղքատիկ տղոց նպաստելու նպատակով կը կազմուի* 1911ին *Էսայեան Սանուց Միութիւնը»: Սակայն* Էսայեան Սանուց Միութիւնը *ատկէ* երեք տարի առաջ *հիմնուած է, այն է* 1908ին: *Գոլոս* Սուրհանդակ[97] 1908 *Սեպտ.* 17*ին*

[95] *Թէոդիկ, Ամ. Տար.* 1910, *էջ* 126—129:
[96] *Յոբելեան Բերայի Ս. Երրորդութեան եկեղեցւոյ, անդ՝ էջ* 242:
[97] *Թ.* 81:

*ծանուցումի մը մէջ կը տեղեկացնէ.* «Խաչեան վարժարանի նախկին շրջանաւարտները կը փափաքին Միութիւն մը կազմել նպատակ ունենալով Խաչեան վարժարանի կարօտ երկսեռ աշակերտաց գրենական եւ դասական պիտոյքը ձրիապէս հայթայթել: *Այս Միութեան անդամակից ըլլալ փափաքող Խաչեան վարժարանի նախկին երկսեռ շրջանաւարտները խորհրդակցութեան համար կը հրաւիրուին... Ս. Երրորդութեան շրջափակին մէջ գտնուող Արհեստանոցին սրահը»:*

*Ինչպէս կը տեսնուի՝ Միութիւնս* երկսեռ է: *Ցարդ մեր տեսած Ընկերութիւնները կա՛մ արական եւ կամ իգական էին: Թէեւ մէկուն ու միւսին մէջ խառն անդամներ այլ կ՚ընդունուէին երբեմն, սակայն յատուկ իմաստով երկսեռ Ընկերութիւն մը չկար: Որով կրնայ ըսուիլ թէ Խաչեան Սանուց Միութիւնը առաջին հայ երկսեռ Ընկերութիւնն է, որուն ոչ միայն անդամները, այլ եւ վարչական կազմն ալ երկսեռ է: Խաչեան Սանուց Միութիւնը* 1912*ին հրատարակած իր գրքոյկին մէջ*[98] *կը շեշտէ Միութեան այս առաջնութիւնը: Հոն տրուած է Միութեան հնգապատիկ նպատակը. Ա. Խաչեան վարժարանի նախկին սաներուն միջեւ բարոյական կապ հաստատել՝ գումարելով ժողովներ եւ հանդէսներ. Բ. Խաչեան*

98 *Քառամեակ Խաչեան Սանուց Միութեան* 1908—1912. Կ. Պ. 1912, էջ 7—8:

*վարժարանի աշակերտներուն մտաւորական զարգացումին նպաստել՝ սարքելով Դասախօսութիւններ, հիմնելով Մատենադարան ու Թանգարան եւ յաջողակ աշակերտներն ալ վարձատրելով Մրցանակով. Գ. Խայեան վարժարանի կրթական ու բարոյական մակարդակին հոգածու գտնուիլ... Գ. Խայեան վարժարանի կարօտ աշակերտներուն օգնել. Ե. Առհասարակ չքաւոր մանուկներու դաստիարակութեան մղում տալ*[99]:

*Միութեան անդամավճարն է ամսական* 100 *փարա: Վարչութիւնը կը բաղկանայ Ընդհանուր Ժողովէ, Վարչական Խորհուրդէ եւ Օժանդակ Մասնախումբերէ: Միութիւնը իր առաջին տարիէն սկսած ձգտած է հասնիլ իր նպատակին: Խայեան վարժարանի* 150 *երկսեռ աշակերտներու ձրի դասագիրք եւ գրենական հայթայթած է, սարքած է ցերեկոյթներ ու բանախօսութիւններ, որդեգրած է որբ մը Ատանայէն՝ հոգալով անոր ամէն պէտքը, հիմնած է Մատենադարան՝ աւելի քան* 1200 *հատորով եւ վերջապէս կազմելով* Օժանդակ Միութիւն *մը՝ «Խայեան Սանուց Օժանդակ Միութիւն» անունով, կազմուած՝ Խայեան վարժարանի աշակերտուհիներէն, նպատակ ունենալով օգնել Միութեան ձեռնարկներուն եւ իրենք իրենց*[100]:

---

99 *Անդ՝ էջ* 5:
100 *Անդ՝ էջ* 23:

*Խնայեան Սանուց Միութիւնը* 1913*ին այ կը կազմէ* Մարմնամարզական Միութիւն *մը* (Մարմնամարզ, *Կ. Պ.* 1913, *էջ* 59) ։

*Խնայեան Սանուց Միութիւնը Ա. և Բ. համաշխարհային պատերազմներէ վերջ՝* 1947*ին կը վերակազմուի*, 1951*ին կ'ունենայ* 540 *անդամ: Իր ներկայ նպատակն ու գործունէութեան ասպարէզը կը կազմեն.* 1· *Մշակութ. շարժում*, 2· *Ընկերային օժան-դակութիւն*, 3· *Միութեան նուագախումբի գործունէութիւն*[101] ։

52· ՄՈՒՐԱՏ-ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*«Մուրատ-Ռափայէլեան Նախկին աշա-կերտաց Ընկերութեան» լուծուելէ վերջ՝ կը մնար այրող փափաք մը զայն վերակենդա-նացած տեսնելու:* 1908*ի Սահմանադրու-թիւնը կ'ընծայէր պատեհ առիթը:* 1908 *Սեպ-տեմբերին կը կազմուի նախ «Նախաձեռնարկ Առժամեայ Մասնախումբ» մը: Զանազան խորհրդածութիւններէ յետոյ՝* 1908 *Նոյ.* 29*ին Բերայի Մխիթարեան վարժարանի մէջ գու-մարուած Ընդհ. ժողովով կը հիմնուի «*Մու-րատ-Ռափայէլեան *Նախկին Աշակերտաց* Միութիւն»*ը, որուն անդրանիկ Տնօրէն ժո-ղովի վարչութեան կազմը կ'ըլլայ հետե-ւեալը.*

[101] Մարմարա, *Կ.Պ.* 1951, *Թ.* 2767: — Այսօր, *Պարիս* 1952, *Թ.* 319:

| | |
|---|---|
| Արամ Յ. Երամ (Ծերակուտական) | Ատենապետ |
| Յակոբ Փափազեան | Դեր-Ատենապետ |
| Պօղոս Միմիտեան | Ատենադպիր |
| Յովսէփ Տէտէպալ | Գանձապետ |
| Յովսէփ Փափազեան | Հաշուակալ |
| Մկրտիչ Աճէմեան | Խորհրդական |
| Յովհաննէս Խորասանճեան | ” |
| Յովսէփ Կիւմիւշեան | ” |
| Գամէր Սուրէնեան | ” |

Միութեան կանոնագրի 18 Յօդուածներէն Բ.ը կ՚ըսէ. «Միութեան նպատակն է եղբայրակցական յարաբերութիւն մը գոյացնել Մուրատ-Ռափայէլեան նախկին աշակերտաց մէջ, աջակցելով իրարու նիւթապէս եւ բարոյապէս եւ այս նպատակաւ հաստատել Ընթերցարան-Լսարան մը Միութեան անդամներուն յատուկ» (տե՛ս Ամսօրեայ Տեղեկատու, Կ. Պ. 1909, Թ. 1, էջ 1—8, 38—39: — Բազմավէպ, 1908, էջ 574—576):

Միութեան կեդրոնն էր Պոլիս, բայց անդամակցութիւն կ՚ընդունէր նաեւ դրսէն, բաւական որ Վենետիկի Մխիթարեանց Նախկին աշակերտներ եղած ըլլային: 1909 Մայիսին Միութիւնը ունէր աւելի քան 100 անդամ, որոնց մէջ պետական բարձրաստիճան անձեր ալ, ինչպէս՝ Յովհ. Փաշա Սագըզ, Անտոն Փաշա Նաֆիլեան, Արամ Յ. Երամ՝ Ծերակուտական, եւն:

*Միութիւնը ունեցած է իր յատուկ թերթը «Ամսօրեայ Տեղեկատու» անունով, որ հրատարակուած է Կ. Պ. 1909 Մայիսէն մինչեւ 1914 Դեկտեմբեր: 1930ին թերթը կը վերհրատարակուի «Տեղեկատու Մուրատ–Ռափայէլեան Նախկին Աշակերտաց Միութեան» անունով, որուն խմբագրութեան կեդրոնը կ'ըլլայ սակայն Պարիս–Սեւրը եւ կը տեւէ մինչեւ 1932 Յունիս. հոս է որ վերակազմուած է նաեւ Միութիւնը՝ Ա. Համաշխարհային պատերազմէ վերջ: Պարիսի Մուրատեան վարժարանի մէջ Միութիւնը կը յաջողի, 1931ին, Պէշիկթաշլեանի անուան նուիրուած թատերասրահ մը կառուցանել, ուր կը կազմուի նաեւ Միութեան «Կիլիկիա»* երգչախումբը՝ *ղեկավար ունենալով տաղանդաւոր, վաղամեռիկ Գուրգէն Ալէմշահը* (Տեղեկատու, 1932, *Թ.* 13):

*Անկախ վերոյիշեալ Միութենէն՝ 1926ին Միլանի մէջ կը կազմուի «Մուրատ–Ռափայէլեան Նախկին* Սանուց Միութիւն» *մը՝ ղեկավարութեամբ Միքայէլ Ալէմշահի: Այս վերջինը* 1931 *Մարտին կը հրատարակէ* «Մուրատ–Ռափայէլ» *անունով Պարբերաթերթ մը, որուն մէջ կը կարդանք Միլանի եւ Պարիսի «Միութիւն»ներու միացման փորձերու մասին գրուած նամակները՝* 1929—1930*ի ընթացքին: Երկու Միութիւններու ձուլումը չէ յաջողած* (*տե՛ս* Մուրատ–Ռափայէլ, *Միլան*, 1931, *էջ* 16—31):

*Միլանի «Սանուց»ը 1931ին ունէր 46 անդամ:*

53․ ՀԵՐԱՑԻ ԲԺՇԿԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

1908*ի վերջերը խումբ մը բժշկական ուսանողներ, ինչպէս՝ Սուրեան, Տիրատուրեան, Անդրէ Վահրամ, բժշկական Միութիւն մը կը կազմեն, որուն անունը կը կնքէ Դոկտ. Վ. Թորգոմեան՝ կոչելով զայն ԺԲ. դարու Հայ նշանաւոր բժիշկ՝* Մխիթար Հերացիի *անունով՝* Հերացի Բժշկական Մութիւն: *Այս Միութիւնը կը հաստատուի* 1909 *Յունուար* 1*ին եւ կը տեւէ մինչեւ* 1910*ի սկիզբը (Տեղեկագիր Հայ Բժշկական Միութեան, Կ. Պ.* 1921, *էջ* 16—17):

53ա․ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՏԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

*Անունը արդէն կը բնորոշէ իր խնկութիւնը: Հիմնուած է* 1909*ին: Տեւած մինչեւ* 1914:

54․ ՀԱՅ ՏՐԱՄԱԲԻՔ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

*Բերայի* «Հայ Տրամաբիք Ընկերութիւն»*ը կազմուած է* 1910*ի ձմեռնամուտին (Թէոդիկ, Ամէնուն Տարեց.*, 1921, էջ 277—278): 1912*ին ժամանակաւոր կերպով վերակազմուելէ վերջ (Անդ՝ էջ* 278) *կը քայքայուի: Իսկ* 1919*ի Յունուարին վերջնականապէս կը վերակազմուի (Անդ՝ էջ* 278, 280, 308):

## 55· ՀԱՅ ԲԺՇԿԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

*Արդէն 1911ի ընթացքին ջանքեր եղած էին* Հայ Բժշկական Միութեան *հիմնումին համար, սակայն 1912 Մայիս 28ի պետական արտօնութեամբ է որ վերջնականապէս կազմուած է Միութիւնը*[102]*: Հիմնադիր անդամները 20 պոլսահայ բժիշկներ են, որոնց անուան ցանկը աւելորդ չենք համարիր հոս ևս տալ մականունի կարգով․ Աճէմեան Տիգրան, Արդումանեան Մկրտիչ, Դաւիթեան Գրիգոր, Եաղուպեան Կարապետ, Զարփճեան Գէորգ, Զօհրապ Գէորգ, Էյմասեան Յակոբ, Էքմէքճեան Յակոբ, Թորգոմեան Վահրամ, Խանճեան Կարապետ, Մալխասեան Լեւոն, Մաթէոսեան Հայկ Պարոնիկ, Միմիտեան Անտոն, Զիլինկիրեան Բեթրակ, Պապայեան Տիգրան, Պօղոսեան Խաչատուր, Սերթլեան Սարգիս, Տաղաւարեան Նազարէթ, Տատուր Յակոբ, Քրիսեան Ծանիկ*[103]*:*

*Միութեան նպատակն է․ «Զբաղիլ բժըշկական ընդհանուր հարցերու ուսումնասիրութիւններով: Հայ բժշկական դասին մէջ համերաշխութեան ու եղբայրակցութեան զօրաւոր զգացումներ վառ պահել եւ ի հարկին պաշտպանել անոր բարոյական եւ նիւթական իրաւունքները: Հարկ տեսնուած պարագային՝ գիտական օժանդակութիւն բերել՝*

---

102 *Տե՛ս Տեղեկագիր Հայ Բժշկական Միութեան, Կ․ Պ․* 1913, *էջ* 5—9:

103 *Հայ Բժշկական Միութիւն, Կ․ Պ․* 1912, *էջ* 2:

ազգային կրթական ու բարեգործական հաստատութիւններու[104]»: Իր Կանոնագիրը ունի 32 Յօդուած՝ Հրատարակուած 1912ին: Անդամները մուտքի համար 108, իսկ տարեկան բաժնի համար 54 դրուշ կը վճարեն:

1912—1913ի շրջանին Միութեան Վարչական կազմը հետեւեալն է.

| | |
|---|---|
| Դոկտ. Հ. Պ. Մաթէոսեան | Ատենապետ |
| Դոկտ. Վ. Յ. Թորգոմեան | Փոխ–Ատենապետ |
| Դոկտ. Գ. Դուրեան | Ատենադպիր |
| Դոկտ. Ս. Սէրթլեան | Փոխ–Ատենադպիր |
| Դոկտ. Բ. Զիլինկիրեան | Գանձապետ |
| Դոկտ. Յ. Էքմէքճեան | Գրապահ |

Միութիւնը մինչեւ 1922 պահած էր իր գոյութիւնը:

55ա. ՀԱՅ ՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1912)

1911ի վերջերը կամ 1912ին սկիզբը հիմնուած է Թրքահայ Հրատարակչական Ընկերութիւն (տե՛ս Ժամանակ, Կ. Պ. 1912, թիւ 1059, 1134, 1190):

55բ. ԶԲՕՍԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1912)

Բերայի Ընկերութիւնս առաջին անգամ կը յիշուի 1912ին (Ժամանակ, 1912, Թ. 1140):

---

[104] Անդ՝ էջ 3:

### 56. «ՆԱՒԱՍԱՐԴ» ԳՐԱԿԱՆ, ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՒ ԳԻՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

*Հիմնուած է* 1913*ին Դանիէլ Վարուժանի ձեռքով եւ վերակազմուած՝* 1918*ին։ Ահա իր նպատակը. «Արթնցնել եւ արծարծել հայ երիտասարդութեան մտային թագուն կարողութիւնները, քաջալերել զանոնք եւ մղում տալ անոնց զարգացման*[105]»։

1920*ին Միութիւնը ունէր* 35 *անդամ։ Վարչական Խորհուրդը կազմուած էր հետեւեալներէ. Արամ Յ. Ագնաւուր (Ատենապետ), Յ. Ֆրէնկեան, Օր. Մ. Պարոնեան, Ա. Եղիկեան, Հ. Տանտինեան, Թ. Զատիկեան, Ս. Մխճեան*[106]։

### 57. «ԱՐՈՒԵՍՏԱՍԷՐ» ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Միութիւնս հիմնուած է* 1918 *Դեկտեմբերին։ Նպատակը եղած է. «Գեղարուեստի եւ մանաւորապէս երաժշտութեան ճաշակը ներմուծել հայ երիտասարդութեան մէջ»։ Ունէր* 40 *անդամ եւ* Նուագախումբ *մը* 20 *հոգինոց, ղեկավարութեամբ «Մաէսթրօ» Յ. Սինանեանի։ Վարչական Խորհուրդը կը կազմէին. Կարապետ Ալիքսանեան (Ատենապետ), Ա. Պարխսեան, Հ. Քիւրքճեան, Մ. Քիպարեան, Ա. Քէպապճեան, Լ. Հազարապետեան եւ Ն. Թէքէյեան*[107]։

---

[105] *Թէոդիկ, Ամէնուն Տ.* 1921, *էջ* 303։

[106] *Անդ*։

[107] *Թէոդիկ, Ամէնուն Տարեցոյցը*, 1921, *էջ* 301։

## 58. «ԱՏՐՈՒՇԱՆ» ԳՐԱԿԱՆ ԵՒ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԵՐԿՍԵՌ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

1918 Դեկտ. 29ին հիմնուած է Բերայի «Ատրուշան»ը՝ նպատակ ունենալով. «Տարածել գրականութիւնն ու գեղարուեստը»: Ունէր 25 անդամ: Վարչութիւնը կը կազմէին. Վահրամ Սեւունի (Ատենապետ), Յ. Սարուխան, Պ. Սարունի, Օր. Հ. Գարփայեան[108]:

## 58ա. ՈՐԲԱՀԱՒԱՔ ՄԱՐՄԻՆ (1918)

Նոյնանուն Միութիւններ կազմուեցան պատերազմի դադարին՝ զանազան թաղեր (տե՛ս Բերայինը՝ ժամանակ, 1918, Թ. 3372):

## 59. ՀԱՅ ԼՍԱՐԱՆԱԿԱՆ «ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑԱԿԱՆ» ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Հիմնուած 27 Յունիս 1919ին՝ ունենալով նպատակ. «Առանց դասակարգային, յարանուանական եւ կուսակցական խտրութեանց՝ բոլոր Միութիւնները ի մի հաւաքելով, գործունէութեան մղել զանոնք՝ ազգային հրատապ անհրաժեշտութեանց առջեւ»: Անդամակցած են 30 Հայ Միութիւններ: Իր Վարչական Խորհուրդը. Ա. Մակարեան (Ատենապետ), Պ. Զարդարեան, Կ. Թարխանեան, Յ. Սարուխան, Դոկտ. Հ. Գուրսալեան, Գ. Աթթարեան եւ Ճ. Թաշճեան: Մայր Դիւանը կը կազմէին. Յովհ.

---

[108] Անդ՝ էջ 300:

Աճէմեան, Ս. Ճէնապեան եւ Ս. Սարգիսեան[109]:

60. «ԳԻՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ» ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Հիմնուած է 1919 Փետր. 28ին: Իր նպատակն էր. «Սատարել Հայաստանի վերաշինութեան, պատրաստելով հողագործ եւն, մասնագէտներ»: Ունեցած է 220 անդամ: Վարչական Մարմինը կը կազմէին. Կարապետ Նուրեան (Ատենապետ), Հ. Տանցիկեան, Ս. Ստեփանեան, Թ. Սուքիասեան, Պ. Ալան, Մ. Բիւչիւքեան, Յ. Էքշեան[110]:

61. «ԱՍՏՂԻԿ» ՄԻՈՒԹԻՒՆ (1918—1919)

Կը յիշուի Բերայի մէջ, գինադադարէն վերջ կազմուած Միութիւններու կարգին եւ կ՚ըսուի թէ Բերայի «Ատրուշան»ը 1920 Սեպտ. 20էն ի վեր որեւէ կապ չունի «Աստղիկ»ի հետ[111], ուրեմն՝ 1920 Սեպտ. 20էն առաջ գոյութիւն ունէր «Աստղիկ»:

62. «ԴՊՐՈՑԱՍԷՐ»Ի ՕԺԱՆԴԱԿ ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

1879ի «Դպրոցասէր Տիկնանց Ընկերութեան» նպաստելու համար կազմուած է այս «Օժանդակ»ը, 1913ի սկիզբը:[112]:

---

109 Անդ՝ էջ 300:
110 Անդ՝ էջ 301:
111 Անդ՝ էջ 300, 308:
112 Ժամանակ, Կ. Պ. 1913, Թ. 1432:

63· «ԿԱՅԾ» ՄԻՈՒԹԻՒՆ (1920)

*Կը յիշուի 1921ին, Պիմէն Զարդարեանէն, առանց որեւէ մանրամասնութեան*[113]։

64· ՀԱՅ ԱԿՈՒՄԲ (1919 ?)

*Հայ Միութիւններու կարգին յիշուած է 1920ին*[114]։

65· ՀԱՅ ՈՒՍՈՒՑՉԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1912)

*1912ին անգամ մըն ալ փորձուած է կազմել այս Ընկերութիւնը, որ ա՛յնքան կարեւոր դեր կրնար խաղալ Պոլսոյ պէս դպրոցներով հարուստ միջավայրի մը մէջ* (Ժամանակ, *Կ. Պ.* 1913, *Թ.* 1351)։ *Դժբախտաբար տեղեկատուն դոհ եղած է լոկ Ընկերութեանս անունը յիշելով*[115]։

66· ՀԱՅ ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919—1921)

*Հաւանօրէն կազմուած է զինադադարէն վերջ։ 1922ին ունէր 40 անդամ՝ հետեւեալ Վարչական կազմով. Հ. Եազմաճեան, Ս. Բարսեղեան, Ս. Ամատունի, Ծ. Այվազեան, Վ. Մինասեան, Յ. Եօրտամեան եւ Ս. Գալուստեան*[116]։

---

[113] *Թէոդիկ, Անդ՝ էջ* 308։
[114] *Անդ՝ էջ* 308։
[115] *Անդ*։
[116] *Թէոդիկ, Ամէն. Տ.* 1922, *էջ* 371։

### 67. ՏՊԱՐԱՆԱԿԱՆ ՀԱՅ ԲԱՆՈՒՈՐՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Ինչպէս ուրիշ շատ մը Ընկերութիւններու՝ նոյնպէս ասոր* անունը *անգամ ամբողջական չէ տրուած Պիմէն Զարդարեանի կազմած ցանկին մէջ, որով չենք գիտեր թէ Թէոդիկի քով*[117] *յիշուածը Ընկերութի՞ւն թէ Միութիւն է: Նկատի առնելով որ 1908էն վերջ կազմուածները մեծ մասով «Միութիւն» կոչուած են՝ անծանօթ այս Ընկերութիւնները «Միութիւն» կոչեցինք:*

### 68. «ՏԱԻՐՈՍ» ԿԱՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1919 ?)

*Յիշուած պարզ անունով, սապէս. «Տաւրոս կանանց*[118]*»:*

### 69. ՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԻՒՆ (1920)

1918*էն առաջ չենք հանդիպած Բերայի* Հայ Տիկնանց Ընկերակցութեան *յիշատակութեան: Թորգոմեան (Երեմիա Չէլէպիի եւն, Բ., էջ* 562—563) *զայն* 1918*էն վերջ յիշելով՝ կ'ըսէ թէ շնորհիւ Տիկնանց Ընկերութեան՝ Բերայի աղջկանց Արհեստանոցը* 1920*ին փայլուն վիճակ ունէր:*

### 70. ՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԻ ՏԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1918—1920)

*Կը յիշուի Թորգոմեանէ (Երեմիա Չէլէպիի եւն, Բ., էջ* 563)*: Ընկերութեան ժո–*

---

[117] *Անդ՝* 1921. *էջ* 308:
[118] *Անդ՝ էջ* 308:

*գոմէները Բերայի Արհեստանոցի շէնքին մէջ տեղի կ՚ունենային:*

## 71· ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԵՐԱԺՇՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1929 ?)

*«Եկեղեցական Երաժշտասիրաց Միութեան» կեդրոնական խումբը երկար ատեն գործած է Բերայի Ս. Երրորդութիւն եկեղեցւոյ մէջ՝ ղպրապետութեամբ Մկրտիչ Իւթիւճեանի եւ ղեկավարութեամբ Ներսէս Խիստավէրտեանի, որուն կ՚անդամակցին նաեւ Սամաթիոյ Դպրաց Դասի անդամներէն Հայկազէր Նշանեան, Միքայէլ Թուլլաճեան, Նուպար Իւթիւճեան, Տամիրամ Ճիզմէճեան, որոնց մասնակցութեամբ ու գործակցութեամբ հրատարակուած են պատարագի հարազատ երգեցողութիւնները, պատիւ բերելով մեր ազգային եկեղեցական կազմակերպութեանց: Միութեանս մասին ուրիշ տեղեկութիւն չունինք: Հիմնումի թուականի մասին մօտաւոր կռուան մըն է Ներսէս Խիստավէրտեանի կողմէ Բերայի Դպրաց Դասի կազմութիւնը 1929ին, ինչպէս տեսանք նախապէս: Կարապետեան[119] Միութեանս գործունէութեան շրջանի մասին ակնարկելով՝ սա անորոշ բացատրութիւնը գործածած է (1935էն առաջ) «քանի տարիներէ ի վեր»:*

---

*[119] Պետրոս Կարապետեան, Հնդաղարեան Յիշատակարան, անդ՝ էջ 312:*

# ՖԷՐԻԳԻՒՂ (Բերա)

## 1. ՏԱՃԱՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

Երբեմն Բերայի վերարբերող Ֆէրիգիւղ ունեցած է Տանատեան Ընկերութիւն մը, որ ըստ Փունճի[1] հիմնուած է 1862 Յունիս 26ին, իսկ ըստ Մասիսի[2] 1862 Ապրիլ 22ին:

Ընկերութեան սկզբնական նպատակներէն մին եղած է «Ընկերութեան ունեցած պատրաստ դրամին մէկ երրորդ մասը» Ֆէրիգիւղի եկեղեցւոյն նուիրել[3]: Ընկերութիւնը 1864ին Ֆէրիգիւղի Ս. Վարդանանց եկեղեցին համար խաչկալ մը շինել կու տայ[4]:

Մասիսի համեմատ[5] Ընկերութեան նպատակն է, 1866ին, «Ֆէրի գիւղի մէջ Ազգային դպրոց մը կառուցանել»: Ընկերութեան այս նպատակին հասնելու համար՝ 1866 Փետրուար 1ին Արեւելեան Թատրոնի մէջ մասնաւոր ներկայացում մը կը տրուի ի նպաստ Ընկերութեան: Կը ներկայացուին. «Նախերգանք մը», «Սանդուխտ» ողբերգութիւնը եւ «Դագաղ ու Խաղ» գաւեշտը[6]:

Ջեփիւռ[7] կը գրէ որ Ընկերութիւնը իր մէկ տարեկանին արդէն կիսամեռ խոնջած է: Կ'երեւայ թէ այդ է պատճառը որ 1863ին

---

[1] Կ. Պ. 1866, Թ. 127:
[2] 1871, Թ. 1130:
[3] Պեզճեան Թոչնիկ, Կ. Պ. 1863, Թ. 10, էջ 78:
[4] Մարտ. Համէսեան, անդ՝ էջ 327:
[5] 1866, Թ. 725:
[6] Անդ:
[7] Կ. Պ. 1863, էջ 97:

հարկ տեսնուած է Ընկերութեան կանոններուն մէջ փոփոխութիւն մտցնել: 1863 Մարտ 12ին Ընկերութեան Ընդհ. Ժողովը կը գումարուի Գումգափուի Դրսի դպրոցը· նախագահն է Պետրոս Ծ. վարդապետ, իսկ Ատենապետը՝ Տիգրան Գաւխամաճեան: Այս առթիւ հիմնական կանոնագրութեան մէջ սա փոփոխութիւնները կ՚ըլլան. տարեկան 50 դրուշի տուրքը 30ի կ՚իջեցուի, վճարմանց համարատուութիւնը տարեկանի կը փոխուի եւ Ընդհ. Ժողովի գումարման համար բաւական կը համարուի 40է աւելի անդամի ներկայութիւնը[8]:

Ընկերութիւնը սովորութիւն ունի իր տարեդարձի օրը հանդիսական պատարագ մատուցանել տալու եւ դաշտագնացութիւն կամ նուագերգութիւն ու ճաշկերոյթ սարքելու[9]:

1869 Հոկտ. 2ին Փոքր–Մասիս[10] կը ծանուցանէ որ Ընկերութեան Ընդհ. Ժողովէն ընտրուած Յանձնաժողովը Ընկերութեան Կանոնագրութիւնը խմբագրած է: Ընկերութեան նոր կանոնագրութիւն մ՚ունենալը Մեծ–Մասիս ալ կը ծանուցանէ նոյն տարին, բայց երկու տարի վերջ միայն կը հրատարակէ զայն[11]:

---

8 Պեգասեան Թռչնիկ, անդ:

9 Մասիս, 1864, Թ. 646: — Մէնմ. Հավ., 1865, Թ. 606:

10 1869, Թ. 431:

11 Տե՛ս Մասիս, 1871, Թ. 1131:

*Ընկերութեան այս նոր կանոնագրութիւնը 17 Յօդուածէ բաղկացած է, որոնց առաջինը կ'ըսէ.* «Ընկերութեանս նպատակն է Ֆէրրիգիւղի մէջ Լուսաւորչական գիշերօթիկ դպրոց մը հաստատել եւ անոր պիտոյքը հոգալ ու մատակարարել»։

*Ընկերութիւնը իր նպատակին հասնելու համար պայմանաժամ որոշած է, այն է՝ 35 տարի. 1871 Հոկտ. 1էն մինչեւ 1906 Սեպտ. 31։ Այդ ժամանակը լրանալուն պէս՝ պիտի սկսի գործադրել իր նպատակը՝ բանալով դպրոցը։ Ընկերութիւնը 1871ին ունէր 250 օսմ. ոսկի դրամագլուխ մը՝ արժէթուղթի վերածուած։ Իր կանոնագրութեան վերջին Յօդուածին համեմատ՝ Ընկերութեան կանոնները անփոփոխելի են։*

*Չենք գիտեր թէ Տաճատեան Ընկերութիւնը իր նպատակին հասա՞ծ է։ Իր անունով վարժարան մը, որքան գիտենք, չկայ Ֆէրիգիւղի մէջ։ Հոն կայ Մէրամէթճեան վարժարանը՝ կառուցուած Զենոբ Պէյ Մէրամէթճեանէ, 1912ին*[12]։

*Ընկերութեանս մասին* Օրագիր *կ'արձանագրէ 1873ին, գրելով.* «*Ի դիմաց Տաճատեան Ընկերութեան Ատենապետ Կարապետ Գ. Ազարթմաճեան եւ Ատենադպիր Եղիազար Մ. Մէլիքեան Ընկերութեան անդամ–*

[12] *Մարտ. Հանէսեան, անդ՝ էջ 327*։

*ները ընդհանուր ժողովի կը հրաւիրեն Ենի–գափուի վարժարանը*[13]»։

*Իսկ* Մասիս (1875, *թ*. 1689) *կ'իմացնէ թէ Ընկերութեան ունեցած պատրաստ գոյքն է 39 բաժնետոմս, որոնցմէ 9ը Բումէլի Երկաթուղիներու։ Ասոնք կ'արժեն* 450—500 *ոսկի եւ մասնաւորապէս արդիւնքն են Ընկերութեան գործօն անդամին՝ Համբարձում Մագպուլեանի* (*անդ՝ թ*. 1691)։

## 2. Ս. ՎԱՐԴԱՆԱՆՑ — ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872 ?)

*Ֆէրիգիւղ ունեցած է նաեւ* «Ս. Վարդանանց Ընկերութիւն» *մը, որուն ծագումը յայտնի չէ։* Մասիս[14] *կարճ ծանուցում մը հրատարակելով՝ Ընկերութեան մասին յետագայ հակիրճ տեղեկութիւնը կու տայ.*

«*Ֆէրիգիւղի* «Ս. Վարդանանց» Ընկերութիւնը *կը խնդրէ մեզմէ ծանուցանել թէ իւր անունը* «Ուսումնասիրաց»ի *փոխելու* «հարկն զգացած է»։ *Հետեւապէս իւր* նախկին տոմսակներն ու կնիքն *յիշեալ անուան վերածուած են*»։

Մասիս*ի այս ծանուցումէն կը տեսնուի որ Ընկերութիւնը ոչ միայն նոր կազմուած չէ, այլ եւ ենթադրել կու տայ թէ ան գոյութեան անցեալ շրջան մը ունեցած է իր ետեւը.*

---

[13] Օրագիր, 1873, *թ*. 919։
[14] 1882, *թ*. 3106։

կ'ըսուի՝ «իր նախկին տոմսակներն ու կնիքն»։

Ֆէրիգիւղ արդէն 1859ին «Վարդանանց» անունով եկեղեցիի մը հիմը դրած է, աւարտելով զայն 1861ին[15]։ Իսկ 1872ին ունէր դարձեալ «Վարդանանց» անունով դպրոց մը[16]։ Արդ, հաւանական չէ՞ ենթադրել որ արդէն այդ տարիներէն Ֆէրիգիւղի Հայութիւնը ունեցած է նաեւ «Վարդանանց Ընկերութիւն» մը։

Ընկերութեանս անունը «Ուսումնասիրաց» ձեւով միայն ծանօթ է Ալպօյաճեանի (Գաղ. Տար., Գ., էջ 121) եւ կը դնէ 1883ին։

3. ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

Ֆէրիգիւղի եւ Միացեալ Թաղերու (Շիշլի, Նշան-Թաշ, Վերին-Բանկալթի) հայ բնակչութիւնը 1913ին կը հիմնէ Կրթասիրաց Միութիւնը՝ ժողովուրդին կրթութեան եւ վարժարաններուն նպաստելու համար (Ժամանակ, 1913, Թ. 1635)։

ԲԱՆԿԱԼԹԻ (Բէրա)

1. ԱՂՔԱՏԱՍԷՐ ԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ (1872)

Հայ Կաթողիկէ Ընկերութիւն մ'է Աղքատասէր Եղբայրութիւնը հաստատուած 1872 Սեպտեմբերին, ինչպէս կը ծանուցանէ Մա–

[15] Մարտ. Հանէսեան, անդ՝ էջ 326։
[16] Ասիա, կ. Պ. 1872, էջ 64։

մուլ[17] *կատակախառն բառերով*: *Ընկերու-թեան նպատակը եղած կ'երեւայ Ս. Յակոբի աղքատներու խնամատարութիւնը*:

2. ՎԻԵՆՆԱԿԱՆ ՄԽԻԹԱՐԵԱՆՑ Կ. ՊՈԼՍՈՅ ՎԱՐԺԱ-ՐԱՆԻՆ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884)

1884էն *առաջ «մի քանի տարիէ հետէ» փակուած Վիեննայի Մխիթարեանց Բան-կալթիի գիշերօթիկ վարժարանը* 1884*ի Սեպ-տեմբերին կը վերաբացուի ձեռնտուութեամբ Հայ Կաթողիկէ Համայնքի Կաթողիկոս-Պատ-րիարք Ազարեանի եւ Հայ Կաթ. ականաւոր անձերու*[18]: Արեւելք *կ'իմացնէ միեւնոյն ա-տեն թէ* «Վարժարանին նախկին աշակերտ-ներէն 40 *անձինք եւս* Ընկերութիւն մը կազ-մած են, *ամէն տարի* նուազահանդէս մը տա-լու համար ի նպաստ սոյն կրթական հաստա-տութեան[19]»:

*Դժբախտաբար չունինք մեր ձեռքը Ըն-կերութեան Ծրագիր-Կանոնագիրը, որ ան-շուշտ գոյութիւն ունեցած ըլլալու է: Որ-քան կ'երեւայ սակայն Ընկերութիւնը հիմնա-կան կազմակերպութիւն մը չէ ունեցած եւ կարճ ժամանակէն մարած է: Ասիկա անկէ յայտնի կ'ըլլայ որ* 1887 *Դեկտեմբերին վար-ժարանի նախկին աշակերտները «Վարժա-րանի Հոգաբարձութենէն* ի վաղուց անտի բաղձացուած Ընկերակցութեան մը կազմա-

[17] *Կ. Պ.* 1872, *Թ.* 234, *էջ* 221:
[18] Արեւելք, 1884, *Թ.* 217:
[19] *Անդ*:

կերպութեան *կը փութան*[20]» *եւ նոյն ամսոյ 6ին հիմ կը դնեն* «Ընկերութեան Նախկին աշակերտաց Կ. Պոլսոյ Վիեննական Մխիթարեան Վարժարանի[21]»:

*Ուրեմն երկրորդ անգամ կը կազմուի Վիեննական Վարժարանի Նախկին աշակերտաց Ընկերութիւնը, հաւանօրէն միեւնոյն յորջորջումով:*

1887*ի Ընկերութիւնը ունի իր «Կանոնագիր»ը, ինչպէս տեսանք, հրատարակուած* 1888*ին եւ որ կազմուած է* 25 *կէտերէ, որմէ կ'իմանանք թէ Ընկերութեան նպատակն է.* «Ա. Աշակերտներուն իրարու սէրն ու բարեկամութիւնը տեւական կերպով ամրապնդել, Բ. Օգնել աղքատիկ մանկանց՝ նոյն վարժարանին սփռած ազգօգուտ դաստիարակութենէն օգուտ քաղելու, զանոնք նոյն գիշերօթիկ վարժարանին մէջ կրթելով[22]»:

*Ընկերութեան Վարչութիւնը* 9 *անդամէ կազմուած է, որոնք կ'ընտրեն իրենց Դիւանը՝ Ատենապետ, Փոխ-Ատենապետ, Ատենադպիր, Համարակալ եւ Գանձապետ: Ընկերութեան անդամավճարն է կէս ոսկի:*

*Ընկերութիւնը իր ծախքով Բանկալթիի Մխիթարեան վարժարանը կը դնէ գիշերօթիկ աշակերտ մը, որ կա՛մ չքաւոր անդամի մը*

[20] *Կանոնագիր Ընկերութեան Նախկին աշակերտաց վարժարանի Հարց Մխիթարեանց Վիեննայ ի Կոստանդնուպոլիս* ,*Վիեննա* 1888, *էջ* 3:
[21] *Անդ՝ էջ* 5:
[22] *Անդ:*

գաւակն ըլլալու է եւ կամ ուրիշ հինգ աղքատ տղաքներու մէջէն քուէով ընտրուած (Կանոն 21)։ Անկէ զատ Ընկերութիւնը յանձն կ'առնէ նոյն վարժարանի պարգեւաբաշխութեան առթիւ բարձրագոյն դասի արժանաւոր աշակերտի մը առաջին մրցանակը տալ՝ որ 5—10 օսմ. ոսկիի արժողութեամբ առարկայ մ'ըլլալու է (Կանոն 25)։

Ամէն տարի Դեկտ.ի առաջին Կիրակին Ձայնաւոր պաշտօն-պատարագ կը մատուցուի Բանկալթիի վարժարանին վախճանած նախկին աշակերտներու համար, որուն ներկայ կ'ըլլան Ընկերութեան անդամները։ Ընկերութիւնը տարին անգամ մը հացկերոյթ կու տայ իր անդամներուն եւ վարժարանի ուսուցիչներուն (Կանոնագիր, էջ 5—6)։

Մէճմուայը Ախպար[23] կը պատմէ որ Ընկերութիւնը 1892ին ստանձնած է երկու աշակերտի դաստիարակութեան հոգը։

Ընկերութիւնս 1909 Փետր. 22ին կը վերակազմուի «Վիեննական Մխիթարեան Հայց Նախկին աշակերտաց Միութիւն» նոր յորջորջումով եւ իր Կանոնները նորինորոյ խմբագրելով։ Այս Կանոնները՝ զանազան մեկնողական թիւերով ճոխացած՝ 22 Յօդուածէ կազմուած են։ Ահա իր առաջին Յօդուածը. «Առաջիկայ Կանոնագրիս անդամակցողաց մէջ Միութիւն մը կազմուած է,

[23] 1892, Թ. 2293։

որուն գումարման վայրն է Մխիթարեանց վարժարանն ի Բանկալթի։ Միութեանս նպատակն է Վիեննական Մխիթարեան Հայրց նախկին աշակերտաց մէջ յարաբերութիւնները պահպանել ու տարածել։ Միութեանս նպատակը բարոյապէս նիւթապէս օգնել ընկերոջ՝ իր անդամոց վրայ ո եւ է կրօնական պարտաւորութիւն չի դներ[24]»։

Անդամակցութեան պայմաններն են․ 1․ Վիեննական Մխիթարեան Հայրց աշակերտած ըլլալ․ 2․ Առնուազն 16 տարեկան ըլլալ․ 3․ Բարի համբաւ ունենալ (Յօդ․ Բ․)։ Անդամավճարն է 60 դահեկան։

Միութիւնը կը կառավարուի Գործադիր Մարմին մը, որ ունի 12 անդամ։ Իր կնիքը կը ներկայացնէ ծուածիր մը, մէջտեղը երկու ձեռք՝ գիրար բռնած եւ չուրջը գրուած․ «Վիեննական Մխիթ․ Հայրց Նախկին Աշակերտաց Միութիւն․ 1887—1909» (Յօդ․ 22)։ Միութիւնը 1913ին 126 անդամ ունէր, որոնց մէջ կարեւոր թիւ մը պատուոյ անդամներու, ինչպէս օրինակ՝ Յովհաննէս Փաշա Գույումճեան։

Ընկերութիւնս հրատարակած է — 1911—1915 — ամսաթերթ մը՝ «Ուսումնասէրն» անունով, ուր կը գտնենք մէկէ աւելի լուրջ ուսումնասիրութիւններ։

---

[24] Կանոնագիր Վիենն․ Մխիթ․ Հայրց Նախկին աշակերտաց Միութեան ի Կ․ Պոլիս․ Կ․ Պ․ 1909, էջ 3։ — Հմմտ․ Մէնմ․ Ախ․ 1908, Թ․ 4624։

### 3. Ս. ԸՆՏԱՆԻՔ ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ (1902)

*Հայ Կաթողիկէ բարեսիրական Ընկերութիւն մըն է* Ս. Ընտանիք Աղքատախնամ Եղբայրութիւնը, *հիմնուած Պօղոս Պետրոս ԺԱ. Էմմանուէլեան Կաթողիկոս–Պատրիարքէն, 1902 Մարտին, Բանկալթիի Անարատ Յղութեան եկեղեցւոյ ժողովրդապետութեան մէջ: Պօղոս Պետրոս ԺԲ. Սապպաղեան Կաթող. Պատրիարքը 1904 Դեկտ. 27ի կոնդակով կ՚ընդհանրացնէ զայն Պոլսոյ Ասաղ թեմին բոլոր ժողովրդապետական եկեղեցիներուն համար:*

*Եղբայրութիւնը, որ նուիրուած է Նազարէթի Ս. Ընտանիքին եւ Ս. Յովհ. Մկրտչին՝ իրեն նպատակ ունի* «աղքատասէր անդամներու նպաստովը օգնութիւն հասցնել ժողովրդապետական եկեղեցւոյն պատկանեալ Հայ Կաթողիկէ չքաւոր ընտանիքներուն… անոնց ուտելիք, հագնելիք, բնակարան, տնական պիտոյք եւ այլն տալով [25]»:

*Ունի «Վարչական Մարմին» — 2 քահանայ եւ 3 աշխարհական. «Նպաստող Մարմին» — ամէն ընտանիք, որ կրնայ ամսական առնուազն 1 ղրուշ վճարել, ինչպէս նաեւ ամէն անձ, որ կ՚ուզէ որեւէ կերպով նպաստել:*

---

[25] *Ս. Ընտանիք Աղքատախնամ Եղբայրութիւն, Կ. Պ.* 1904, *էջ* 6—8:

Ասոնց դիմաց «Եղբայրութիւն»ը ամէն ամսոյն վերջին օրը պատարագ մը մատուցանել պիտի տայ թէ՛ Վարչական եւ թէ՛ Նպաստող Մարմնոյ անդամներու ննջեցեալներուն, իսկ տարին անգամ մըն ալ — Մայիսի առաջին Կիրակին — Ձայնաւոր Պաշտօն-Պատարագ մը՝ նոյն դիտաւորութեան համար:

Եղբայրութիւնը ունեցած է 10 Յօդուածէ կազմուած Ծրագիր-Կանոնագիր մը, որ 1904ին հրատարակուած է հայերէն-թրքերէն:

### 4. ՄԱՍՆԱՃԻՒՂ ԱԶԳԱՆՈՒԷՐ ՀԱՅՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ (1908)

Բանկալթիի Նիկողոսեան վարժարանի աշակերտուհիները 1908ին «Ազգանուէր Հայուհեաց Ընկերութեան» Մասնաճիւղ մը կազմելով՝ նոյնին 100 ղրուշ կը ղրկեն ամսէ ամիս[26]:

### 5. ՍԱՆՈՒՀԵԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1909 ?)

Նիկողոսեան աղջկանց վարժարանի աշակերտուհիները կազմած են նաեւ Սանուհեաց Միութիւն մը, որ 1911ին Մատենադարան մը, իսկ 1912 Ապրիլ 15ին ալ յատուկ թերթի մը հրատարակութիւնը կը հիմնէ: Թերթը կը կոչուի «Փեթակ» ամսօրեայ պատկերազարդ հանդէս», որ լոյս կը տեսնէ մինչեւ 1914 Մարտ-Ապրիլ: Մատենադարանը

[26] Սուրհանդակ, 1908, Թ. 115:

1912*ին ունէր 212 հատոր գիրք* (Փերթակ, Կ. Պ. 1912, *էջ* 75)։ *Միութիւնը* 1913*ին կ'ունենայ «Երանդ» անունով Տիկիններու եւ Օրիորդներու յատուկ մարմնամարզական Ակումբ մը*[27]։

6. ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1914)

*Յ. Հինդլեանի Նոր–Դպրոցի աշակերտները հիմնած են* «Սանուց Միութիւն» *մը* (Ժամանակ, 1914, *Թ*. 1823), *որուն մասին անդրադարձ ծանօթութիւն կը պակսի*։

7. «ՅԱՑԳԱԼՈՅՍ» ՈՐԲԵՐՈՒ ՀՈԳԱՏԱՐ ՄԱՐՄԻՆ (1918)

*Կազմուած է* 1918*ին Բանկալթի* (Ժամանակ, 1918, *Թ*. 3404)։

8. ՄԽԻԹԱՐԵԱՆ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1945)

1945 *Հոկտեմբերէն է ծագումը* «Մխիթարեան Սանուց Միութեան», *որուն նախաձեռնող–հիմնադիրներն են. Պր. Պր. Կարապետ Էրսան, Եդուարդ Սուրեան, Զարեհ Եալըրգճեան, Կարպիս Թորոսեան, Թօկօ Աճէմեան, Յարութիւն Խաչատուրեան եւ Արայ Կարմիրեան*։

*Միութեան հիմնարկութեան պաշտօնական թուականն է* 1946 *Օգոստ*. 2։ *Արդէն առաջին ամսուան մէջ Միութիւնը ունեցած է* 65 *անդամ, իսկ* 1948*ին* 306 *անդամ կը հաշուէր Միութիւնը իր անդամատետրներուն մէջ*։

---

[27] Մարմնամարզ, Կ. Պ. 1913, էջ 222։

Միութիւնը շուտով կը զգայ սեպհական Ակումբի մը անհրաժեշտութիւնը։ Մխիթարեան վարժարանի յատկացուցած հաւաքավայրի սրահը շատ փոքր կու գար օրէօր աճող Միութեան անդամներու մեծ թիւին։ Կը շինուի ուրոյն շէնք մը Բանկալթիի Մխիթարեան վարժարանի շրջապատին մէջ ու Միութիւնը 1947 Մարտ 23ին կ'ընէ պաշտօնական բացումը իր Ակումբին։ Բացման հանդիսութիւնները՝ իրենց գեղարուեստական բաժիններով, ճառերով ու ներկայացումներով հարկ կ'ըլլայ նոյն օրն իսկ կրկնել գոհացում տալու համար համակիր հանդիսականներու բազմութեան։

Հայ Մշակութային Միութիւններու երկար շարքին մէջ ուրոյն տեղ մը կը գրաւէ «Մխիթարեան Սանուց»ը իր համեմատաբար կարճ ժամանակի մէջ հանդէս բերած ժիր գործունէութեամբն ու տուած մեծ արդիւնքովը։ Միութեան գեղեցիկ կազմակերպութիւնը ինքնին ամէն բան կը բացատրէ արդէն։ Իր Վարչական Կազմին մէջ կան եօթը Յանձնաժողովներ՝ ուրոյն ճիւղերով ու գործունէութեան ասպարէզներով։ Այդ Յանձնաժողովներն են. Ընկերային Օժանդակութիւն եւ Առողջապահութիւն, Գրական եւ Հրատարակչական, Երաժշտական, Թատերական եւ Մարզական։ Երկար պիտի ըլլար՝ եթէ ուզէինք նոյն իսկ համառօտ պատկերի մը մէջ ամփոփել իւրաքանչիւր Յանձնաժո-

ղովի կազմը, գործունէութեան եղանակն ու աշխատանքի տարածութիւնը։ Պարզ գաղափար մը տուած ըլլալու համար ընդհանուրի մասին՝ առնենք միայն Ընկերային Օժանդակութեան Յանձնախումբը։ Ասիկա 4 մասերէ կը բաղկանայ. Ա. Կարօտ ուսանողներու օգնութիւն, Բ. Վաստակաւոր Ուսուցիչներու օգնութիւն, Գ. Միութեան անդամներու գործ հայթայթելու սպասարկութիւն, Դ. Միութեան թեւարկութեան տակ ուսանողներու եւ անդամներու բժշկական խնամք։ Այս չորս կէտերէն միայն առաջինը առնենք. Միութիւնը իր ծախքով Մխիթարեան վարժարանի նախակրթարանին, միջնակարգ եւ Լիսէի բաժիններուն մէջ եօթը աշակերտի ուսում կը ջամբէ՝ անոնց բոլորին գրենական պիտոյքն ալ ինքը հոգալով, անոնցմէ հինգին ցերեկուան ճաշը տալով, հագուստն ու յարակից ծախքերն ալ ստանձնելով։ Ասկէ զատ Միութիւնը իր հիմնարկութենէն սկսած ամսական 40 ոսկիի յատկացում կ՚ընէ 2 խոստումնալից համալսարանականներու՝ բարձրագոյն ուսման համար։ 1947ի սկիզբը Միութիւնը կարեւոր գումար մը կը յատկացնէ Թուրք նախակրթարանի մը երկու աշակերտներու։ 1947ին կը հիմնէ «ուսանողաց Ֆոնտ» մը՝ գտնելով մեծ համակրութիւն։

Ահա Միութեան լոկ «Ընկերային Օժանդակութեան» Յանձնախումբի գործունէու-

թեան տպարէզի չորս ճիւղերէն միայն մէկուն մէջ ունեցած արդիւնքը, այն ալ լոկ երկու տարուան ընթացքին: Մխիթարեան Սանուց գործունէութեան մասին լրիւ գաղափար մը կազմել փափաքողին կը յանձնարարենք կարդալ Մխութեան «Ամսօրեայ Հանդէս» Սանի յատկապէս առաջին տարիին՝ առաջին եւ երկրորդ թիւերը: Հոն կը գտնէ ընթերցողը նաեւ Մխութեան շէնքի[28] եւ հիմնադիրներու[29] նկարները:

Մխութեան տեղեկատու թերթը՝ «Սան» 1948 Փետրուարէն սկսած ամսէ ամիս կանոնաւորապէս լոյս կը տեսնէ՝ յաճախ պատկերազարդ եւ մերթ գարդարուն խնամուած յօդուածներով ու ուսումնասիրութիւններով:

Մխութիւնը լոյս հանած է նաեւ փոքրիկ շարք մը հատորիկներու, ինչպէս՝ Յորելեար Հ. Հմայեակ Ն. Վրդ. Համբարեան (կենսագրական), Սիպիլ (Բանախօսութիւն Տիկ. Հայկանոյշ Մառքի) եւ այլն:

Մխութիւնը կը շարունակէ իր Մշակութային աշխոյժ գործունէութիւնը՝ հանդիսանալով տիպար Մշակութային Ընկերութիւն մը՝ քաղաքակիրթ երկիրներու չափանիշով: Իրեն կը մաղթենք, իր անունին համեմատ, մնայուն ու յարատեւ «Մխութիւն»:

---

[28] Սան, Կ. Պ. 1948, Թ. 1, էջ 4:
[29] Անդ՝ Թ. 2, էջ 4—7, 20—21:

# ՏՕԼԱՊՏԷՐԷ (Բերա)

## 1· ԽՆԱՄԱԿԱԼՔ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

Բերայի մեծ հրդեհին (1870) պատճառաւ Բերայի հայ բնակչութեան մէկ մասը ապաստանած էր կից Թաղին՝ Տօլապտէրէի մէջ, ուր կազմուած էին փոքրիկ դպրոցներ ալ: Այդ դպրոցներէն մին էր նաեւ «Հայկական Երկսեռ» անունով դպրոցը: Արդ, այդ դպրոցին նիւթապէս սատարելու համար 1872 Ապրիլի սկիզբը Թաղին 7 ուսումնասէր անձեր «Խնամակալք Ընկերութիւն»ը կը հաստատեն՝ ընտրելով իրենց մէջէն Ատենապետ, Ատենադպիր եւ Գանձապետ: Ընկերութեան Ատենադպիրը՝ Յարութիւն Գարաեան՝ 1872 Ապրիլ 6 թուով նամակ մ'ուղղելով Պոլսոյ Մասիսին՝ կը բացատրէ թէ ի՛նչ ձեւով Ընկերութիւնը պիտի կարենայ նպաստել յիշեալ դպրոցին: Գարաեան կը գրէ. «Սոյն Ընկերութեան յիշեալ վարժարանին բարեկարգութեան նկատմամբ կատարելիք պաշտօնն է. Ա. Արդէն վարժարանին համար յատկացած եւ անօրէնէն զատ խնամակալաց ստորագրութեամբը վաւերացած տոմսակներով ազգասէր անձանցմէ դրամ հաւաքել: Բ. Հաւաքուած հասոյթը դպրոցական ո՛ր թերութեան գործածուիլը լրագրաց միջոցաւ հետզհետէ հրատարակել: Գ. Նուիրատուաց չնորհած նուէրները դարձեալ լրագրաց միջոցաւ յականէ յանուանէ յայտ առնել» (Մասիս, 1872, Թ. 1224):

*Ընկերութեանս անունը, զոր Ալպօյաճեանի ցանկին մէջ չենք գտներ,* Մասիսի *նամակագիրը «Խնամակալք Ընկերութիւն» կոչելէ յետոյ իր ստորագրութեան մէջ կը գրէ «Ի գլխայ...* խնամակալաց Ընկերութեան» (Մասիս, *անդ*):

2· ԱՐՇԱԿՈՒՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

*Ընկերութեանս մասին կը գրէ Հանէսեան*[30]. «1872 *Սեպտեմբեր* 16*ին կը կազմուի* Արշակունեան Ընկերութիւնը *Տօլապտէրէի մէջ, ուր Բերայի մեծ կրակէն յետոյ բնակչութիւնը շատցած էր: Արշակունեան Ընկերութեան* նպատակն էր նոյն թաղին մէջ վարժարանի մը հաստատումը եւ մատուռի մը կառուցումը: *Թաղական Խորհուրդը կը հովանաւորէ այս Ընկերութիւնը եւ դիմում կ'ընէ Պատրիարքարան որ հանգանակութիւն կատարելու համար ժապաւինեալ տոմար մը կը յանձնէ Ընկերութեան Գանձապետ Յակոբ Աճատեանի*»:

*Ընկերութեան Ատենապետը՝ Ստեփան Թուտ օղլու՝* 1873 *Մարտ* 20*ին կ'իմացնէ թէ Ընկերութիւնը Մարտ* 25*ին «կը փութայ դպրոցին հիմնարկութիւնը ընել»* (Մասիս, 1873, *Թ*. 1365):

*Չենք գիտեր թէ Ընկերութիւնը կը յաջողի՞ իր ուժերով կանգնել դպրոցի շէնքը*:

30 *Մարտ. Հանէսեան, Հարիւրքսանհինգամեայ Յոբելեան, անդ՝ էջ* 123—124: — *Հմմտ.* Մասիս, 1873, *Թ*. 1365:

Հանէսեան այս կէտը կը լուսաբանէ մասամբ, գրելով թէ Ընկերութիւնը իր հաւաքած դրամով 500 կանգուն գետին մը կը գնէ, իսկ Սարգիս Պէյ Պալեանի նուիրած 150 ոսկիով ալ գնուած գետնին յարակից երկու փայտաշէն շէնքեր կը գնուին, 1875ին: Ընկերութեան խնդրանքով Թաղական Խորհուրդը նոյն շէնքերը միացնելով՝ դպրոցի կը վերածէ եւ կը սարքաւորէ, որով 1875 Օգոստոս 10ին դպրոցի բացումը կը կատարուի Պատրիարքի, Սարգիս Պէյի եւ պաշտօնական անձերու ներկայութեամբ: Այս վարժարանը Ընկերութեան անունով «Արշակունեան» կը կոչուի, բայց նոյն Ընկերութեան բաղձանքով կը դրուի Թաղական Խորհուրդի իրաւասութեան տակ (Հանէսեան, անդ՝ էջ 124):

Արշակունեան Ընկերութեան գործօն անդամներն եղած են. Յակոբ Աճառեան, Ստեփան Գալֆա, Խաչիկ Պիւլպիւլեան, Խաչիկ Գալֆա, Տէմիրճի Յակոբ, Տէմիրճի Յովհաննէս[31]:

## ՇԻՇԼԻ (Բերա)

### 1. ՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

Շիշլիի մէջ կազմուած Հայ Տիկնանց Միութիւնը կը յիշէ Թէոդիկ[32], պատմելով Միութեան ձեռնտուութեամբ ամուսնութիւնը հայ որբուհիի մը:

[31] Հանէսեան, անդ՝ էջ 139—140: — Հմմտ. Թորգոմեան, անդ՝ Բ., էջ 647—648:

[32] Ամէնուն Տարեցոյցը, 1911, էջ 407:

*Միութիւնը կազմուած է 1909 Մայիս 1ին, ինչպէս կը տեսնուի իր «Հիմնական Կանոնագիր»էն, տպուած Պոլիս, ուր կը կարդանք. «Հայ Տիկնանց Միութիւնը՝ որ կազմուած է Կիլիկիոյ աղէտին վաղորդայնին՝ արկածեալներուն օգնելու նպատակով, որոշած է տեւական հանգամանք մը տալ իր գործունէութեան եւ նպատակ ընտրած է.* Ա. Պոլսոյ մէջ Արհեստանոց–Որբանոց մը պահելով՝ պաշտպանել առհասարակ գաւառացի չափահաս որբուհիները եւ սովորեցնել անոնց ձեռարուեստի զանազան ճիւղեր, որպէս զի կարենան ապագային պատուաւորապէս ապրիլ իրենց ձեռքի աշխատութեան արդիւնքով (*Պոլսեցի աղքատ աղջիկներ ալ կ՚ընդունուին արհեստանոցին մէջ՝ ցերեկեայ ըլլալու պայմանով*): Բ. Օգնել առհասարակ գաւառներու կարօտ ժողովուրդին՝ հանդերձեղէն, անկողին, սննդեղէն, գրենական պիտոյք, եւ այլն դրկելով[33]»:

*Միութեան Կանոնագիրը ունի 17 Յօդուած, որոնց համեմատ Ընկերութեան անդամավճարն է ամսական 1 դահեկան: Միութիւնը ունի Հիմնադիր Ժողով եւ Տնօրէն Խորհուրդ. առաջինին կը մասնակցին բոլոր անդամները, իսկ երկրորդը՝ կազմուած* 11 *հոգիէ՝ կ՚ընտրուի Հիմնադիր ժողովէն եւ կը տեւէ 2 տարի:*

---

[33] *Հիմնական Կանոնագիր Հայ Տիկնանց Միութեան*, Կ. Պ. 1909 (?), էջ 3:

*Միութիւնը իր գոյութիւնը ապահովելու համար ունեցած հասոյթին* 10% *պահեստի կը յատկացնէ՝ գնելով դրամատուն մը կամ պատուաւոր հաստատութեան մը մէջ։*

2. ՀԱՅ ԵՐԿՍԵՌ ՄԻՈՒԹԻՒՆ (1911 ?)

*Շիշլիի* Հայ Երկսեռ Միութեան *մասին միայն յիշատակութեան մը հանդիպած ենք*[34]*։ Երիտասարդական եւ մարզական ընկերութիւն մը կը թուի ըլլալ։*

3. ԿԱՐՕՏ ԸՆՏԱՆԵԱՑ ՊԱՇՏՊԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1914)

*Շիշլի–Ֆէրիգիւղի մէջ,* 1914*ին կազմուած է Միութիւնս՝ չքաւորներու դրամական օգնութիւն ընելու համար* (Ժամանակ, 1914, *Թ*. 1995)։

4. «ՌԱՀՎԻՐԱՑ» ՀԱՅ ՏԱՐԱԳՐԵԱԼՆԵՐՈՒ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Ընկերութեանս նպատակն էր. Տարագրութենէ վերադարձողներուն աշխատանք կամ գործիք ու նիւթ հայթայթել* (Ժամանակ, 1918, *Թ*. 3366)։

---

[34] *Տե՛ս* Մարմնամարզ, *Կ. Պ.* 1911, *էջ* 89։

## ՍԱՖՐԶ-ԱՂԱՃ (Բերա)

*Բերայի վերաբերեալ Թաղերէն Սաֆրզ-Աղաճի մէջ կազմուած քանի մը Ընկերութիւններ Բերայի տակ յիշած ենք արդէն:*

### 1· ԱՆԱՐԱՏ ՅՂՈՒԹԵԱՆ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏՈՒՀԻՆԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1916)

Սաֆրզ-Աղաճի *Հայ Կաթ. Անարատ Յղութեան Մայրապետներու վարժարանին նախկին աշակերտուհիներու նախաձեռնութեամբ եւ Սարուխանեան Յովսէփ Վրդ.ի օժանդակութեամբ* 1916*ին կը հիմնուի* «Անարատ Յղութեան Նախկին Աշակերտուհիներու Ընկերութիւն»*ը, որուն նպատակն է՝ չատոնց գոյութիւն ունեցող Հայ Կաթողիկէններու «Ս. Աննա Որբանոց»ի աշակերտներու սնունդը հոգալ:*

*Ընկերութեան առաջին տարիներու գործունէութիւնը, Վարչական կազմը, անդամներու թիւը, եւ այլն, անծանօթ են մեզ: Չենք գիտեր նաեւ թէ Կանոնագիր ունեցա՞ծ է:*

*Ընկերութեան* 1918*ի մուտքն եղած է* 87·154 *ղրուշ, իսկ ելքը՝* 74·040 *ղրուշ:* 1919*ին Ընկերութեան Վարչութիւնը կը կազմէին հետեւեալ Օրիորդները. Մարի Ալի-*

քեան, Հռիփսիմէ Կօթօլեան, Թերէզ Տալեան, Վերժին Ղարիպեան, Սրբուհի Ճէնտէնէճեան, Մարի Թօփալեան, Շաքէ Զիլինկիրեան, Արմաւիր Ալէմշահ, Աղաւնի Սրապեան (Ժամանակ, Կ. Պ. 1919, Թ. 3439)։

## ԹԱՔՍԻՄ (Բերա)

### 1. ՀԱՅ ԳՐԱՇԱՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Ընկերութիւնս կազմուած է 1919 Յունուարի սկիզբը եւ նախ կոչուած է «Հայ Գրաշարական Միութիւն», իր ժողովքները գումարելով Թաքսիմի «Հաշտութիւն» գարեջրատան վերնայարկը (Ժամանակ, 1919, Թ. 3424)։ 1919 Յուլիսի Ընդհ. Ժողովքէն կ՚անուանուի «Տպարանական Բանուորական Միութիւն» (Անդ՝ Թ. 3575)։ Իսկ 1919 Օգոստոսին սկիզբը վերջնականապէս կը ստանայ «Տպարանական Հայ Բանուորներու Միութիւն» յորջորջումը (Անդ՝ Թ. 3587)։

Իր Դիւանը կազմուած էր հետեւեալներէ. Տիգրան Տօղրամաճեան (Ատենապետ), Միքայէլ Տէր-Սահակեան (Ատենադպիր), Մկրտիչ Նահապետեան (Գանձապետ), եւ այլն (Անդ՝ Թ. 3575)։ Ընկերութեան մուտքի տուրքն էր 20 դուրուշ։

Ասով ճշդած եւ լրացուցած կ՚ըլլանք Բերայի Թ. 67 Միութիւնը, որ հաւանօրէն այս Միութիւնն է եւ զոր ա՛յնքան անորոշ եւ անխմաստ ներկայացուցած են Թէոդիկի Ամէնուն Տարեցոյցի մէջ։

## 2. ԿԻԼԻԿԵՑԻ ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐՈՒ ՈՒՍՈՒՑՉԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1922)

*Հաւանօրէն* 1922*ի սկիզբը հիմնուած՝ գաղթական հայ ուսուցիչներու մէջէւ* (Ժողովուրդի Ձայնը, *Կ. Պ.* 1922, *Թ.* 1031):

## ՊԷՇԻԿԹԱՇ

### 1. ՀԱՅԿԱԶԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1859)

Արեւելքի *մէջ*[1] *«Սկսնակ Բանասէր» կը գրէ. «Բաւական արդիւնարեր եղաւ* 1858*ին Պէշիկթաշի մէջ կազմուած Ընկերութիւն մը, որուն նպատակն էր* ճախակրթական գիրքեր տպել եւ աժան ծախել»: *«Սկսնակ»ի յիշած այդ Ընկերութիւնը* «Հայկազեան»*ն է, բայց ո՛չ թէ* 1858*ին, այլ* 1859 *Յունուար* 1*ին հիմնուած է, ինչպէս կը ճշդէ* Երեւակ[2]. «1859 թուին Յունուար 1էն *Կոստանդնուպոլսի նեղուցին Պէշիկթաշ գիւղը* Հայկազեան Ընկերութիւն *անունով սկսած Ընկերութիւնը*»:

*Հետեւաբար սխալ է նաեւ Թորգոմեանի կարծիքը թէ* 1861*ին հիմնուած է Ընկերութիւնս*[3]:

*Հայկազեան Ընկերութեան առաջին յիշատակութիւնը* Մէճմուայը Հավատիս[4] *կ'ընէ, կոչելով զայն «Հայկազեան Ընկերու*

---

[1] *Կ. Պ.* 1898, *Թ.* 3853:
[2] *Կ. Պ.* 1860, *էջ* 71:
[3] *Երեմիա Չէլէպիի Ստամպօլայ Պատմ., Բ.*, *էջ* 660:
[4] *Կ. Պ.* 1860, *Թ.* 358:

*թիւն»,* *որ կը կոչուի նաեւ «Հայկազ*ՆեաՆ *Ընկերութիւն»*[5] *եւ յիշելով անոր հրատարակած «Նախագիտելիք Մանկանց» եւ «Նախնական դասագիրք Թուագիտութեան» գրքերը։*

1861*ին Ընկերութիւնը իր երրորդ տարուան սկիզբը հաշուեցուցակ մը լոյս ընծայելով՝ կը ցուցնէ թէ արդէն* 8 *կտոր գիրք հրատարակած է «ընթերցասիրութեան ազգիս մէջ ծաւալելուն հզօր օժանդակ մը ըլլալու յոյս տալով»*[6]*։*

Երեւակ[7] *կը հրատարակէ Ընկերութեան Կանոնագիրը, որ* 10 *Յօդուածէ բաղկացած է։ Տանք մէկ երկու ծանօթութիւն. Ընկերութեան հիմնադիրները — «խորհրդական անդամներ» —* 10 *հոգի են եւ Ընկերութեան բոլոր հոգերը իրենց վրայ առած են (Կանոն Ա.). անդամավճարն է՝ տարին* 20 *դրուշ (Կանոն Բ.). ով որ մէկ անգամէն* 200 *դրուշ վճարէ՝ մշտնջենաւոր անդամ կ՚ըլլայ (Կանոն Գ.). Ընկերութիւնը* 10 *տարի պիտի շարունակուի, եթէ գործը յաջող երթայ՝ դարձեալ* 10 *տարի պիտի շարունակէ, իսկ եթէ ոչ՝ իր գրքերն ու ստացուածքը աղքատ դպրոցներուն պիտի բաժնուին (Կանոն Զ.). Ընկերութիւնը պիտի տպէ տպագրութեան միջոց չունեցող գրագէտներու գործերը եւ եթէ կարենայ՝ պիտի վարձատրէ զանոնք*

---

[5] *Անդ՝* 1861, *Թ.* 396։
[6] Մասիս, *Կ. Պ.* 1861, *Թ.* 517։
[7] *Անդ՝ էջ* 72—74։

(Կանոն է.). Ընկերութիւնը կը պարտաւորէ ինքզինքը՝ «բարոյականի եւ կրօնքի դէմ գիրք տպել չտալու» (Կանոն Ը.):

Ինչպէս կը տեսնուի՝ Պէշիկթաշլի «Հայկազեան Ընկերութիւն»ը տիպար Հրատարակչական մ՚եղած է ա՛յդքան հնութեան մէջ: Չկայ թերթ մը, որ գովեստ չընէ իր մասին: Ջեփիւռ՝[8] համեմատելով հայ գոյնզգոյն Ընկերութիւններու հետ, որոնք սունկի պէս բուսած ու անհետացած են, առանց կոկիկ հետք մը ձգելու՝ առաջին եւ լաւագոյն Ընկերութիւնը կը համարի «Հայկազեան»ը, որ ամէն տարի իր հաշիւը կու տայ հրապարակով եւ չափազանց օգտակար կ՚ըլլայ Ազգին, ոչ մէկ գանգատի եւ դժգոհութեան առիթ տալով: Ջեփիւռ կու տայ ցանկը մինչեւ 1863 Մարտ Ընկերութեան հրատարակած գրքերու, որոնք են. 1. Առաջնորդ հայ ընթերցանութեան կամ Նոր Քերական, 2. Պարտք տղայոց, 3. Նախադիտելիք Մանկանց, 4. Թուաբանութիւն համառօտ, 5. Քերականական վերլուծութիւն, 6. Դպրութիւն կամ Նոր Քերականութիւն, 7. Անգութն Պետրոս, 8. Բարոյականք Պլուտարքեայ (Բ. Հտր.), 9. Բարոյականք Պլուտարքեայ (Գ. Հտր.):

Մասիս[9] «Հայկազեան»ի Ազգին բրած ծառայութիւնը «նշանաւոր» եւ «մեծ» որակելէ յետոյ՝ կ՚ըսէ որ 5 տարուան մէջ ան

---

[8] Կ. Պ. 1863., էջ 69:
[9] 1864, Թ. 628:

*35·700 հատոր (հատ, օրինակ) մեծ ու փոքր գրքեր ընծայած է Ազգին։ Միայն 1862ին 14·200 գիրք տպած՝ 9161 գիրք ծախած է։*

Մէճմ. Հավ.[10] *1865ին գրուատէլէ վերջ «Հայկազեան»ի ազգօգուտ գործունէութիւնը՝ կը չեշտէ որ ան 90·000 ղրուշի գիրք տպած եւ արդէն 59·000 ղրուշի ծախած է։*

*Ընկերութիւնը իր գոյութիւը պահած է 24 տարուան երկար շրջան մը։ 1883ին, չենք գիտեր ի՛նչ պատճառաւ, կը լուծուի ան եւ իր գրքերը կը բաժնէ։ Ընկերութեան անդամները ժողով գումարելով՝ կ՚որոշեն վերջին մնացորդ 500 ոսկւոյ գումարը Ազգ. Հիւանդանոցին նուիրել*[11]։

## 2. ՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1861)

*Հաստատուած կ՚ըսուի ի նպաստ տեղւոյն դպրոցին*[11*]*, որուն մասին չենք գտած որեւէ ակնարկութիւն հնութեան մէջ։*

## 3. ԴՊՐՈՑԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (?)

*Յիշուած է Դոկտ. Թորգոմեանէ*[12]*, իբրեւ «կարեւոր Ընկերութիւն», առանց որեւէ լուսաբանութեան։ Չենք հանդիպած հայ թերթերուն մէջ։*

---

[10] *Թ.* 612։

[11] Հայրենիք, Կ. Պ. 1883, *Թ.* 1300։ — Մասիս, 1883, *Թ.* 3459։

[11*] Արեւելք, Կ. Պ. 1898, *Թ.* 3854։ — *Գաղ. Տարեց.*, *Բ.*, *էջ* 83։

[12] *Երեմիա Չէլէպ., անդ՝ Բ., էջ* 660։

### 4. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (... 1867)

Ղալաթիոյ մէջ հիմնուած «Անձնուէր Ընկերութեան» մէկ ճիւղը կազմուած է նաեւ Պէշիկթաշի մէջ՝ «անուս ազգայնոց դաստիարակութեան» համար[13]: Փունջի մէջ նամակագիր մը սակայն գրելէ վերջ՝ կ'իմացնէ որ Ընկերութիւնը «հիմա ալ դադարման վիճակի մէջ կը գտնուի եւ պարապը կ'ելնեն ուսման համար հոն դիմողները»: Չ'ըսեր սակայն թէ ե՞րբ եւ որմէ՞ հիմնուած էր ան. ո՞վ եւ ի՞նչ ուսում կ'աւանդէր հոն: Նամակագրին խօսքերէն այնպէս կը հասկցուի թէ Ընկերութիւնը 1867էն քանի մը տարի առաջ գոյութիւն ունեցած է Պէշիկթաշի մէջ: Հոն կ'ըսուի. «Անձնուէր Ընկերութիւնը ... դաստիարակութեան ծառայեց երբեմն շարունակ»: Նամակագիրը կը յորդորէ թաղին երիտասարդութիւնը որ «ազգասիրաբար բարեհաճին իրենց արդէն հաստատուած Ընկերութեան գործն անընդհատ շարունակել»:

### 5. Ս. ԷՋՄԻԱԾՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

Ա. Ալպօյաճեան[14] կը գրէ. «Ս. Էջմիածնական Ընկերութիւն (1868) դպրոցի նպաստող Ընկերութիւն մը: Մանրամասնութիւնք կը պակսին»:

Բարեբախտութիւնը ունինք յայտնելու որ գտած ենք մանրամասն տեղեկութիւն Ըն–

---

[13] Փունջ, Կ. Պ. 1867, Թ. 183:
[14] Գաղութահայ Տարեգիրք, Պուքրէշ 1940, էջ 88:

կերութեանս ոչ միայն ծագումի, այլ եւ իր կանոնադրութեան մասին:

Ընկերութիւնս չի կոչուիր «Ս. Էջմիածնական Ընկերութիւն», այլ՝ «Ս. Էջմիածնեան Ընկերութիւն: Ահա՛ իր պատմութիւնը:

Մասիսի ուղղուած գրութեան մը մէջ՝ Խորէն Եպիսկոպոս (անշուշտ Նարպէյ), 1868 Յունիս 13ին կը պատմէ. «Պէշիկթաշի պատուարժան հասարակութիւնը Յունիս 2ին ընդհանուր ժողով կազմելով ընդ նախագահութեամբ մերով, միաբան հաւանութեամբ որոշեց որ Մաքրուհեան երկսեռ վարժարանը նախնական դպրոցի վիճակէն հանելով՝ աւելի բարձրագոյն վիճակի փոխարկուի:

Այսպիսի փոփոխութիւն մը՝ հարկաւ վարժարանին ունեցած դոյզն եկամտին վրայ ալ փոփոխութիւն մը կը պահանջէր: Ընդհ. ժողովս ի նկատողութիւն առնելով զայն՝ որոշեց որ Թաղիս մէջ Ընկերութիւն մը կազմուի, որոյ նպատակը լինի յօժարանուէր հանգանակութեամբ վարժարանին եկամուտն աւելցնել եւ ապագայն ապահովելու միջոցները մտածել: Եւ որպէս զի այս ազգօգուտ Ընկերութեան անդամակցութիւնը հասարակաց դիւրամերձենալի լինի՝ որոշուեցաւ որ ամսական բաժինը 2 դահեկան լինի, եւ իւրաքանչիւր բարեսիրի յօժարութեանը թողուի ըստ իւրում կարողութեան եւ ազգասիրութեան մէկ բաժինէ աւելի գրուիլ: Միանգամայն Ընկերութեան նախնական կանոնները հաստատուեցան եւ Մանաժողով

մը կազմուեցաւ ծածուկ քուէարկութեամբ, որոյ ձեռքն յանձնուեցան Ընկերութեան չահուցն եւ յառաջադիմութեանը վրայ հսկելը: Եւ ըստ 12 Յօդուածոց Կանոնաց Ընկերութեան՝ Մասնաժողովը ուխտեց առաջի պատուագումար ժողովոյն որ ամբողջ տարի մը առանց հրաժարելու՝ յառաջ վարէ իւր պաշտօնը եւ ամենայն ջանիւք աշխատի ի հաստատութիւն եւ ի յառաջադիմութիւն Ընկերութեանն եւ ի յաջողութիւն ազգասիրական նպատակի նորուն:

Եւ այս անուանք են Մեծապատիւ անդամոց Մասնաժողովոյն.

| | |
|---|---|
| Ատենապետ՝ | Պօղոս Աչնանեան |
| Փոխատենապետ՝ | Պօղոսիկ աղա Փափազեան |
| Կնքապահ՝ | Անտոն էֆ. Պալեան |
| Գանձապետ՝ | Արթին էֆ. Մաքսուտեան |
| Համարակալ՝ | Առաքել աղա Տիվիթեան |
| Խորհրդականք՝ | Գաբրիէլ աղա Քէմհաճեան |
| ,, | Ղազարոս աղա Ալէքսանեան |

Արդ, ինչպէս կը տեսնէք... Յունիսի 2ը արժանի յիշատակաց օր մ'եղաւ Պէշիկթաշի համար... Եւ որովհետեւ նոյն օրը Ս. Էջմիածնայ կաթողիկէին տօնախմբութիւնն էր, ուստի եւ գեղեցիկ խորհրդով որոշեց ընդհանուր ժողովը որ նորակազմ Ընկերութեան անունն ալ լինի «Ս. Էջմիածնեան Ընկերու-

թիւն», ի յիշատակ այն մեծահանդէս տօնին, որ ամէն Հայու սիրտ խորհրդաւոր զգացմամբք կը լեցնէ ...[15]»:

Մասիս հոդ կը հրատարակէ «Ս. Էջմիածնեան Ընկերութեան Հայոց ի Պէշիկթաշ» 12 Կանոնները[16], ուր կը բացատրուի թէ «Ս. Էջմիածնեան Ընկերութեան նպատակն է օգնական լինել Տնօրէնութեան Մ·(աքրուհեան) երկսեռ վարժարանին Պէշիկթաշի, անոր ամսական ծախուց բացը լեցնել ինքնայօժար տրոց հանգանակութեամբ եւ բարոյական ամենայն նպաստ մատուցանել ի պայծառութիւն նորին»:

Ընկերութեան կենդրոնատեղին է Պէշիկթաշի Ս. Աստուածածին եկեղեցւոյ գաւթին մէջ սենեակ մը (Կանոն Գ.). Մասնաժողովը ամսէ ամիս պիտի որոշէ նպաստի գումարը եւ վճարէ վարժարանին Տնօրէնութեան եւ ընդունի անկէ մուրհակ եւ ընկալագիր (Կանոն 8). Ընկերութիւնը Ս. Էջմիածնայ Կաթողիկէի տօնին օրը պիտի քննէ Ընկերութեան վիճակը եւ Մաքրուհեան վարժարանին յառաջդիմութիւնը (Կանոն 10):

Ընկերութիւնը 1868 Նոյեմբերին ունէր 157 բաժանորդ՝ 761 բաժինով, որուն հինգ ամսուան գումարը կ՚ընէ 7610 ղուրուշ. բայց որովհետեւ ամէն բաժանորդ իր տուած խօսքը յարգած չէ՝ Մասնաժողովին ձեռքը

[15] Մասիս, 1868, Թ. 853:
[16] Տես նաեւ Օրագիր, 1868, Թ. 23:

հասած գումարն է 4722 ղրուշ, պահանջ ունենալով՝ 2888 ղրուշ:

Մանամօղովը տպել տուած է բաժանորդներուն անունները՝ խրաքանչիւր ամսոյն մէջ անվճար մնացած բաժինները նշանակելով[17]:

6· ՍԱՆՈՒՑ ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

Ընկերութեանս մասին մեր միակ աղբիւրը՝ Մամուլի մէկ տեղիքն է, ուր կը կարդանք. «Նախընթաց կիրակի օրը, Պէշիկթաշի Մաքրուհեան վարժարանին մէջ թաղեցի ուսումնասէր երիտասարդք հաւաքուեր են յիշեալ վարժարանին մէջ թէ՛ պանդուխտ եւ թէ՛ բնիկ ազգայնոց կիրակնօրեայ դասախօսութիւն ընելու եւ այլեւայլ գրքեր ու լրագիրներ հաւաքելով՝ Ընթերցարան մը հաստատելու համար Սանոց Անձնուէր Ընկերութիւն մը կազմելու[18]»:

7· ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

Պոլսոյ Օրագիրէն[19] կ'իմանանք թէ Պէշիկթաշի մէջ 1871ին Ընթերցասիրաց Ընկերութիւն մը կար, որուն Գանձապետը «տարեդարձի շոգենաւ վարձած էր», Սահմանադրութեան (1860) տարեդարձը տօնելու համար: Ըստ Հայրենիքի (Կ. Պ. 1870, Թ. 23) հիմնուած է 1870ին:

---

17 Մասիս, 1868, Թ. 875:
18 Մամուլ, Կ. Պ. 1870, էջ 617, Մայիս 20:
19 1872, Թ. 835:

Թէ՛ այս, թէ՛ նախորդը եւ թէ՛ «Հայրենասիրաց»ը անծանօթ են Թորգոմեանի եւ Ալպօյաճեանի։

## 8. ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

Պէշիկթաշի մէջ 1871ի սկիզբը հիմնուած կ'երեւայ «Հայրենասիրաց Ընկերութիւն»ը, որ 1871ի Մայիսին կը գործէր «Կիլիկիոյ մէջ ազգային վարժարան մը հաստատելու նուիրական նպատակաւ»[20]։

Ընկերութիւնը չոգենաւ մը վարձած էր թէ՛ Սահմանադրութեան տարեդարձը տօնելու եւ թէ՛ «Հայրենեաց Անձնուէր Ընկերութեան» նիւթական նպաստ մ'ապահովելու համար։

Նոյնանուն եւ նոյնանպատակ Ընկերութիւն մը հիմնուած է, 1871ին, նաեւ Գուգկուննուքի մէջ։

## 9. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (?)

Թորգոմեան[21] Պէշիկթաշի մէջ կը յիշէ Աղքատախնամ կամ Բարեգործական անուով Ընկերութիւն մը, որուն սակայն ոչ մէկ պարագան ծանօթ է։ Կ'երեւի այս ալ սաուպի մը պէս երեւցած՝ եւ առանց հետք մը ձգելու մարած է։

---

[20] Մամուլ, 1871, էջ 351։
[21] Երեմ. Չէլէպ., Բ., էջ 660։

## 10· ԲԱԽՏԱՊԱՐԳԵՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873)

*Բաժանորդական Ընկերութիւն մ'է* «Բախտապարգեւ Ընկերութիւն»*ը, հաստատուած հաւանօրէն* 1873*ի վերջերը: Ընկերութեան Մասնաժողովի կողմէ Ռուբէն Զիլինկիրեան* 1874 *Ապրիլ* 7 *թուականով նամակի մը մէջ կը գրէ. «Մեծարգոյ ընկեր* Բախտապարգեւ Ընկերութեան *Պէշիկթաշու. Ընկերութեանս մեծամասնութիւնը իր վերջին անգամ ստորագրած Մարտ* 18 *թուականաւ հանրագրովը կը խնդրէր Մասնաժողովէս որ անցեալ քուէարկութեան Ընկերութեան թղթերը իր անուան մնալէն ետքը ժողով գումարէ եւ իր վերջնական որոշումը ընդհանուրին յայտնէ»* [22] :

*Ուրիշ ոչ մէկ ակնարկութեան հանդիպած ենք Ընկերութեանս մասին, որուն անունը անծանօթ է Թորգոմեանի եւ Ալպօյաճեանի:*

## 11· ԵՂԲԱՅՐԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

*Առանց անդրագոյն լուսաբանութեան՝ ըկ անունով կը յիշէ* Փունջ [23] *Պէշիկթաշի* «Եղբայրասիրաց Ընկերութիւն»*ը, որ* 1874 *Մայիսին — Սահմանադրութիւնը տօնախմբելու համար — նաւ վարձած է Պէյքոզ—Հինքեար—Իսկէլէսիի դաշտավայրը փոխադրելու համար ժողովուրդը:*

---

[22] Փունջ, 1874, *Թ.* 878:
[23] *Անդ՝ Թ.* 887:

*Անծանօթ է Թորգոմեանի եւ Ալպօյաճեանի:*

## 12. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Արարատեան Ընկերութեան վարչութիւնը* 1879 *Սեպտ.* 27*ին կը գրէ. «Արարատեան Ընկերութիւնը գոհութեամբ կը հաղորդէ արդոյ հասարակութեան նոր Ընկերութեան մը կազմութիւնն ի Պէշիկթաշ* «Ուսումնասիրաց Օժանդակ» *անուամբ*, որոյ նպատակն է նպաստել Հայաստանի դպրոցաց զարգացման *եւ որ իբր առաջին երախայրիք իւր վաստակոց՝ Արարատեան վարժապետանոցի նուիրեց* 113 *Ֆրանքի արժողութեամբ գրքեր...»*[24]:

*Երիզայի «Մեծն Ներսէս» գիշերօթիկ վարժարանի տնօրէնութիւնն եւս շնորհակալութիւն կը յայտնէ «Պէշիկթաշի Ուսումնասիրաց Ընկերութեան», որ վարժարանին* 73 *կտոր դասագիրք նուիրած է*[25]:

1880*ին Հմայեակ Վ. Դիմաքսեան Երզնկայէն շնորհակալ կ'ըլլայ Ուսումնասիրաց Օժանդակ Ընկերութեան, որ Երիզայի Պօղոս Տմպրեանի միջոցաւ Երզնկայի վարժարանին* 70 *հատ զանազան դասագիրք նուիրած է*[26]:

---

24 Մասիս, 1879, *Թ.* 2436:
25 *Անդ՝ Թ.* 2473:
26 *Անդ՝* 1880, *Թ.* 2568:

## 13. ԳՐԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884)

*Ա. Ալպօյաճեան*[27] *կը համարի թէ* 1884*ին Պէշիկթաշի մէջ հիմնուած է* «Գրասիրաց Ընկերութիւն» *մը, որուն մասին ուրիշ բան չի հաղորդեր: Տեղեկութիւն մը չենք գտած մենք ալ այս մասին:*

## 14. ՄԱՔՐՈՒՀԵԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1886)

1887 *Մարտ* 30*ին Ընկերութեան Գործադիր Ժողովի Ատենապետը՝ Յ. Գ. Կիւմշեան եւ Ատենադպիրը՝ Միհրան Ն. Կէվրէկեան Պէշիկթաշէն կը գրեն. «Թաղիս մէջ* հազիւ մէկ տարիէ ի վեր *գոյութիւն ունեցող* Մաքրուհեան Ուսումնասիրաց Ընկերութիւնը, *որ* ըստ իւր նպատակին *այժմ* 10 աղքատ եւ ուշիմ պատանիներ կը խնամէ, շաբաթականքն վճարելով, գրական եւ նիւթական պիտոյքն հայթայթելով եւ դարմանելով զայնս ի հիւանդութեան»[28]:

*Մշակութային գետնի վրայ բարեգործական Ընկերութիւն մըն է, հետեւաբար, Պէշիկթաշի «Մաքրուհեան Ուսումնասիրաց»ը, որ հիմնուած է* 1886 *Յունիս* 15*ին, ինչպէս կը տեսնուի Ընկերութեան Բ. Տարեշրջանի առթիւ հրատարակուած «Միամեայ Տեղեկագիր»էն*[29]:

---

27 *Գաղ. Տարեգ., Գ., էջ* 121:
28 Արեւելք, *Կ. Պ.* 1887, *Թ.* 961:
29 *Կ. Պ.* 1888:

Ընկերութիւնը 1887ի սկիզբը ունեցած է 179 բաժանորդ (անդամ)․ 1888ին սկիզբը կը հոգար 15 երկսեռ աշակերտի բոլոր պիտոյքները․ մէկ տարուան մուտքն եղած է 13,332·50 դրուշ[30]:

1888ին Ընկերութեան Գործադիր Ժողովը կը կազմէին․

| | |
|---|---|
| Արտաշէս Կ․ Քէօմիւրճեան | (Ատենադպիր) |
| Մէլիք Պէյլիքճեան | (Ատենապետ) |
| Գրիգոր Քիւրքճեան | (Համարակալ) |
| Յր․ Պ․ Կիւմիւշեան | (Գանձապետ) |
| Վահան Թէրզեան | (Մատակարար) |

Իսկ Վարչական Խորհուրդը՝ հետեւեալները․

| | |
|---|---|
| Վ․ Յ․ Մարգարեան | (Ատենապետ) |
| Ս․ Յ․ Բրավատալեան | (Ատենադպիր)[31] |

Ընկերութեան այդ Տեղեկագիրը կը բովանդակէ նաեւ Ընկերութեան անդամներու անուանացանկը[32]:

Ընկերութեանս հիմնադրութեան եւ նպատակի մասին 1914ի Տարեցոյցին մէջ սա կարեւոր տողերը կը գտնենք․ «Տրդատ Պէյ Պալեան... կազմած է Մաքրուհեան Ուսումնասիրաց Ընկերութիւնը, նպատակ ունենալով աղքատ աշակերտաց գրենական պէտքերն հո–

---

[30] Տեղեկագիր, անդ՝ էջ 2—4․ Հմմտ․ Հաշուեկշիռը, անդ՝ ետեւը:

[31] Տեղեկագիր, անդ՝ էջ 10—11:

[32] Անդ՝ էջ 12—16:

գալ եւ կարօտ շրջանաւարտներու բարձրագոյն վարժարաններու մէջ պաշտպանութիւնն ստանձնել»[33]։

15. ԿՐԹԱԿԱՆ ՄԱՐՄՆԱՄԱՐԶԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (?)

*Տրդատ Պէյ Պալեան իր եղբօր՝ Վահրամ Պէյի հետ հիմնած է* «Կրթական Մարմնամարզի Ընկերութիւն» *մը*[34], *հաւանօրէն Պէշիկթաշի մէջ եւ* 1886—1890*ի միջոցներուն*։

16. ՄԻՈՒԹԻՒՆ «ԽՈՐԷՆ ՆԱՐՊԷՅ» (1908)

1908*ին կազմուած երիտասարդական այս Միութիւնը ունեցած է Լսարան–Ընթերցարան մը Մաքրուհեան վարժարանին մէջ*[35]։

17. ՄԱՔՐՈՒՀԻ ՊԱԼԵԱՆ ԿՐԹԱՍԻՐԱՑ ՏԻԿԻՆՆԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1912)

*Սարգիս Պէյ Պալեանի Տիկինը՝ Մաքրուհի՝ վաղամեռիկ եղած է։ Իր յիշատակը յաւերժացուցած են՝ թողած ստացուածքով Պէշիկթաշի մէջ իր անուան ձօնուած* «*Մաքրուհեան վարժարան*»*ը հիմնելով*։

*Արդ, Մաքրուհի Պալեանի յիշատակին կը նուիրեն, Պէշիկթաշի հայ Տիկինները, նաեւ* 1912*ին իրենցմէ հաստատուած* «Մաքրուհի Պալեան Կրթասիրաց Տիկիններու Ըն–

---

[33] *Տարեցոյց* 1914, *Կ. Պ.*, *էջ* 70։
[34] *Անդ*։
[35] Ժամանակ, Կ. Պ. 1908, Թ. 40։ — 1912, Թ. 1190։

կերութիւն»*ը*: *Առիթ չենք ունեցած տեսնելու Ընկերութեան «Հիմնական Կանոնները», որոնց առաջին Յօդուածը կ'ըսէ. «Մաքրուհի Պալեան Կրթասիրաց Ընկերութեան* նպատակն է՝ բարոյական կապ մը հաստատել թաղին իգական սեռին մէջ եւ օգնել վարժարանին կարօտ աշակերտներուն» [36]:

*Ընկերութեան հրաւէրով խօսած ճառի մը մէջ, Տիկին Հայկանոյշ Մառք, վեր հանելով Ընկերութեան բնորոշ գիծը եւ օգտակար գործը՝ կը շեշտէր. «Պատի՛ւ այն կիներուն, որոնք կրցած են... խմբակի մը շուրջը բոլորուիլ, ոյժ մը ստեղծել, ինքնաբուղխ, եռանդագին ու կորովի ոյժ մը, որ միտքէն կը ծնի, որ սրտէն կը նուիրագործուի եւ գործադրութեամբ կ'անմահանայ: Մաքրուհի Պալեան Տիկնանց Ընկերութիւնը մէկն է այն նուիրեալներէն, որ համեստօրէն կու գայ իր աշխատող բազուկները միացնել նմանօրինակ Ընկերութիւններու, եւ իրեն համար ու իր սահմանին մէջ իր օգտակարութիւնն ու ծառայութիւնը մատուցանել, բոլոր բարերարութիւններուն մէջէն գերընտրելով ամէնէն նուիրականն ու ամէնէն փափկելին. — Այն է՝* Միութեան ու դաստիարակութեան գործը» [37]:

*Ընկերութիւնը բաւական թուով աղքատ սաներու եւ սանուհիներու հագուստ հոգա-*

---

[36] փեթակ, *Կ. Պ.* 1913, *Թ.* 1—2, *էջ* 144:
[37] փեթակ, *անդ՝ էջ* 146—147:

*ցած է կարճ ատենուան մէջ*[38]*։ Գործած է մինչեւ արհաւիրքի թուականը* (1915)։

### 18· ՀԱՅ ՈՐԲԱԽՆԱՄԻ ՕԺԱՆԴԱԿ ՏԻԿՆԱՆՑ ԵՒ ՕՐԻՈՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

1918*ին Պէշիկթաշի մէջ նախ կազմուած էր «Որբախնամ Մարմին» մը՝ նոյն տարւոյ Նոյեմբեր* 29*ին վերածուելով* «Հայ Որբախնամի Օժանդակ Տիկնանց եւ Օրիորդաց Միութեան[39]», *որ կ՚ունենայ հետեւեալ Վարչական կազմը*·

| | |
|---|---|
| *Տիկ· Նուպինէ Աւագեան* | *Ա· Ատենապետ* |
| *Տիկ· Ատրինէ Գալայճեան* | *Բ· Ատենապետ* |
| *Տիկ· Ֆորթինէ Կարագեան* | *Գանձապետ* |
| *Օր· Աստղիկ Իգնատիոսեան* | *Ատենադպիր* |
| *Օր· Մելինէ Արխեան* | *Օժանդակ Անդամ* |
| *Օր· Ագնիւ Պարտիզպանեան* | *Օժանդակ Անդամ* |
| *Տիկ· Մինիվէր Ունճեան* | *Օժանդակ Անդամ*[40] |

*Ընկերութիւնը մեծապէս օգտակար եղած է որբերու եւ տարագրեալներու տառապանքը մեղմացնելու համար։ Գործած է դոնէ մինչեւ* 1922։

---

[38] Ժամանակ, 1913, Թ· 1326։
[39] *Անդ*, 1918, *Թ*· 3369։
[40] *Անդ*, *Թ*· 3371։

## 19· ՀԱՅ ԻՐԱՒԱԳԷՏՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Կոչուած է նաեւ* «Հայ փաստաբաններու Միութիւն»[41]։ *Հաւաքատեղին էր Բերա, որ* 1918—1922 *կեդրոնավայրն եղած էր հայ մշակութային անօրինակ եռուն կեանքի մը, վերածնած՝* 1914—1918*ի մահաբեր շրջանէն անմիջապէս վերջ։*

*Հայ Իրաւագէտներու Միութիւնը նպատակ ունէր* գրաւուած հայ վաճքերու, եկեղեցիներու եւ զանազան հաստատութիւններու յանձնումը ապահովել եւ անոր օրինական ձեւը պաշտպանել[42]։

*Միութիւնը իր վերջնական կազմը* 1919*ին կը ստանայ, հետեւեալ կերպով.*

*Մայր Դիւան*

| | |
|---|---|
| *Ս. Գարաեան* | *Ա. Ատենապետ* |
| *Շ. Գապանճեան* | *Բ. Ատենապետ* |
| *Լ. Ներսէսեան* | *Ա. Ատենադպիր* |
| *Ա. Պօղոսեան* | *Բ. Ատենադպիր* |

*Վարչական ժողով*

*Զայլաք*

*Յ. Պիւքիւճեան*

*Ա. Ճիմպիւչեան*

*Զ. Գույումճեան*

*Ն. Աստուրեան*

*Գ. Գայսէրլեան*

*Ն. Տիարեան*[43]

---

[41] *Անդ,* Թ. 3380։
[42] *Անդ,* Թ. 3384։
[42] *Անդ,* Թ. 3552։

Միութիւնը 1919ին կը հրատարակէ «Իրաւունք» Պարբերականը[44], որ միայն 4 թիւ կրնայ լոյս տեսնել:

«Հայ Իրաւագէտներու Միութիւն»ը 1920ին կը միանայ «Հայ Երիտասարդ Իրաւագիտաց Ակումբ»ին հետ[45], որ զատ Միութիւն մ'էր: Այս միութենէն վերջ կը հրատարակուի յատուկ «Օրկան» մը՝ «Օրէնք» անունով[46]:

20· «ԿԱՄՔ» ՕՐԻՈՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Երիտասարդական Միութիւն մըն է Պէշիկթաշի «Կամք»ը, զոր կը յիշեն Ժամանակ[47] եւ Թէոդիկ[45], առանց մանրամասնութեանց:

21· ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1922)

Հիմնուած 1922 Մարտին: Նպատակ. «Օրքէսթրի խումբ մը կազմել եւ անդամներուն երաժշտական զարգացումին զարկ տալ»:

| | |
|---|---|
| Դիւանի կազմը. | |
| Կարապետ Համբարեան | Ատենապետ |
| Լեւոն Թիւթիւնճեան | Ատենադպիր |
| Վարչութիւնը. | |
| Մատաթ Լուսինեան | Ատենապետ |
| Օր. Զանըրեան | Ատենադպիր |
| Տիրան Զիթճեան | Գանձապահ |

[44] Անդ, Թ. 3666:
[45] Անդ՝ 1920, Թ. 3784:
[46] Ժողովուրդի Ձայնը, Կ. Պ. 1921, Թ. 842:
[47] 1919, Թ. 3572:
[48] Ամէն. Տարեց. 1921, էջ 308:

*Օր. Ա. Յակոբեան* *Խորհրդական*
*Ա. Տէտէեան* *Խորհրդական*

(Ժողովուրդի Ձայնը, 1922, Թ. 1061:)

## ՕՐԹԱԳԻՒՂ

### 1. Ս. ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1844)

Օրթագիւղի *հնագոյն Ընկերութիւնն է* «Ս. Թարգմանչաց Ընկերութիւն»*ը, հիմնուած* 1844*ի վերջերը: Առաջին յիշատակութիւնը Իզմիրահայ թերթը՝* Արշալոյս Արարատեան[1] *կ'ընէ, գրելով. «Մեր քաղաքիս ընթերցողները գուցէ կարծեն թէ ա՛լ ուրիշ նորահնար Ընկերութիւն մը չունինք ծանուցանելու. բայց այնպէս չէ, կը սխալին. ինչու որ ուսումնասիրական եւ ընկերական գովելի եռանդ մըն ալ Կոստանդնուպոլսոյ* Օրթագեղը *յայտնուեցաւ. եւ այնտեղը բնակող մեծապատիւ հայրենասէր* Ամիրայից հաւանութեամբ եւ խորհրդովը՝ Ս. Թարգմանչաց Ընկերութիւն *անունով միաբանութիւն մը հաստատուեր է*, որուն նպատակը՝ նոյն գեղին վարժարանը բարեկարգել է. *եւ ինչպէս կը լսենք*, հայկաբանութեան եւ գաղղիական լեզուին համար արժանաւոր ուսուցիչներ հաստատելէն ի զատ, մէկ երկու օգտակար արհեստից համար ալ վարպետներ կարգելու են, *այսինքն*՝ դերձակութեան եւ

[1] 1845 *թ.* 224, *Յունուար* 13*ին:*

կօշկակարութեան. որպէս զի դպրատան աղքատ տղաք օրը մէկ երկու ժամ յիշեալ արուեստից հետեւելով նոյն վարժարանին մէջ՝ անկէց ելլելուատենը՝ կարող ըլլան իրենց ապրուստը դիւրաւ շահելու ձեռքերնին ծառայական պատրաստ արհեստ մը ունենալով»:

Օրթագիւղի «Ս. Թարգմանչաց» դպրոցի ծագումը՝ Տնօրհէք Ամիրայէն, 1790ին, կը համարուի[2], բայց կրնայ աւելի հին ալ ըլլալ:

Մասիսի համեմատ[3] Ընկերութիւնը 1856 Յունիս 1ին վերակազմուելէ վերջ՝ մեծ հոգ տարած է վարժարանին յառաջդիմութեան:

Մեղք որ անծանօթ կը մնան Ընկերութեանս թէ՛ հիմնադիրները, թէ՛ վերակազմողները եւ թէ՛ կանոնագիրը, որոնք ո՛չ մէկ տեղ յիշուած են:

## 2. ՎԵՐԾԱՆՈՒԹԵԱՆ ԹԱՆԳԱՐԱՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Հանրային Ընթերցարանի մը բացումին առաջին գաղափարը, եթէ չենք սխալիր, Օրթագիւղի Հայոց կը պատկանի, որոնք 1847 Դեկտ.ին Ընկերութիւն մը կը հաստատեն «Վերծանութեան Թանգարանի Ընկերութիւն» անունով, որ 1848 Յունուար 1ին բացումը

---

[2] Տօքթ. Վահրամ Յ. Թորգոմեան, Երեմիա Չէլէպիի Ստամպօլոյ Պատմութիւն, Վիեննա 1932, էջ 669:
[3] 1857, Թ. 280:

*կ'ըՆէ* «Վերծանութեան Թանգարան»*ին*, *այսինքն՝ Ընթերցարանին*:

*Այս թանկագին տեղեկութիւնները կը պարտինք Իզմիրի հայ թերթին,* Արշալոյս Արարատեանի *խմբագիր՝* Ղուկաս Գ. Պալթազարեանի, *որ մասնաւոր հոգածութեամբ հետեւէ եղած, հաւաքած եւ օրը օրին հաղորդած է ինչպէս այս՝ նոյնպէս ուրիշ բազմաթիւ հին հայ ընկերութիւններու ծագման պատմութիւնը*:

Արշալոյս Արարատեան[4] «*Վերծանութեան Թանգարանի Ընկերութեան*» *հիմնումը յիշելէ վերջ՝ կու տայ Ընկերութեան Կանոնագիրը, ուր հիմնադիրները նախ կը շեշտեն թէ մինչեւ այդ ատեն* «Ազգերնուս մեծ պակասութիւններէն մէկն է... Վերծանութեան տեղի մը, *ուր այլեւայլ գրքեր ժողված, կարդալ ուզողը կարենայ լիովին իր փափաքը լեցնել...: Այս պակասութիւնը՝ հին ատենը մեր ազգին մէջ* Դիւաններն *ու* Գրքատունները *կը լեցնէին*». *յետոյ կ'իմացնեն թէ թէեւ հասարակաց Ընթերցարանի մը բացումը* «անյաղթելի արգելքներով խափանուած էր»՝ *սակայն* «*Վերծանութեան Թանգարանի Ընկերութեան*» *հիմնադիրները յաղթելով ամէն արգելքի՝ անոր բացումը կը կատարեն՝* «Զտարակուսելով ամէն ընթերցասիրաց մէկտեղ սա բանիս տալու ձեռնտուութեանը վրայ[5]:

[4] 1847, *Թ*. 301:
[5] *Անդ*, 1848, *Թ*. 303:

«Թանգարան»ի պետ նշանակուած է՝ յետոյ քահանայ ձեռնադրուած՝ Տէր Սահակ, որ այդ ատեն 20 տարեկան պատանի մ'էր[6]:

Ահա՛ Ընկերութեան «Պայմանք»ը (Կանոնագիր)·

«Ա. Միջագիւղի մէջ հաստատուած Վերածնութեան Թանգարանը սահմանուած տեղի մը ունի, ուր միայն Թանգարանին ընկերները պիտի կարենան մտնալ ու գրոց ընթերցմանը վայելել:

Բ. Ընկերութեան մասնակից ըլլալու համար տարուէ տարի վճարելու կանխիկ տուրքն է 60 ղուրուշ մէկ բաժին: Երկու երեք կամ աւելի բաժին վճարողները Ընկերութեան մեծ շնորհ ու պատիւ ըրած կը համարուին:

Գ. Ընկերութիւնը այս բաժիններէն ստացած դրամովը հետզհետէ պիտի գնէ ու դետեղէ Թանգարանին մէջ նախ՝ ամէն հայերէն լեզուով հրատարակած լրագիրները, երկրորդ՝ նախնեաց մատենագրութիւնները, երրորդ՝ նորոց եւ հետզհետէ ելլելու պիտանի գիրքերը, չորրորդ՝ եւ ամէնէն վերջը՝ թէ որ կարող ըլլայ նէ, օտար լեզուներէ կարեւոր գրեանք:

Դ. Ընկերութեան ելքն ու մուտը եւ գրոց վճառքը տնօրինելու համար մէկ Տեսուչ եւ երեք անշահասէր ու հաւատարիմ մարդիկ սահմանուած են, որոնցմէ մէկը գիտնական,

---

[6] Նոր Լուր, Կ. Պ. 1925, Թ. 226:

*որպէս զի այն գիտնականը՝ երկու ընկերաց խորհրդովը գնելու գրոց որոշումը ընէ, որոնց մէջ բարուց կամ կրօնից դէմ ամենեւին պիտի չգտնուի:*

*Ե. Աս պաշտօնատէրները հաստատուն են ու միայն անհաւատարմութեան կամ անկարութեան պատճառաւ կրնան փոխուիլ, որպէս զի չփոթութեան առիթ չըլլայ:*

*Զ. Թանգարանէն գիրք մը դուրս առնել ուզողը (լրագիրները ամենեւին դուրս չեն ելլար) իր ստորագրութեամբը մուրհակ մը կը ձգէ պահապանին, որուն մէջ առած իրին անունը ու թիւը կը յիշատակէ խոստմամբ ետ դարձնելու մէկ ամսուան միջոցի մէջ: Իսկ եթէ գիրքը աղտեղէ կամ կորսնցնէ, կը պարտաւորի նոյն անձը անոր գինը Ընկերութեան վճարելու:*

*Է. Թանգարանի Ընկերութեան սենեակը ներկայ տարւոյս սկիզբը բացուեցաւ ի Միջագիւղ: Այս Ընկերութեան ով որ կ՚ուզէ կրնայ գրուիլ նախ՝ Միջագիւղի դպրաց սենեակը, երկրորդ՝ Իւսկիւտար՝ սուրբ Խաչ եկեղեցին մահտեսի տէր Գրիգորին քով, երրորդ՝ Գալատ սուրբ Հրեշտակապետ եկեղեցին տէր Մաղաքիային քով, չորրորդ՝ Պգտի Նոր խանը կեսարացի Պօղոս աղային սենեակը:*

*Միջագիւղ ի 12 յունվարի 1848*[7]»:

[7] Արշալոյս Արարատեան, 1848, Թ. 303:

*Ընկերութիւնը քիչ վերջ հարկ կը տեսնէ քանի մը փոփոխութիւն ներմուծել իր եօթը կանոններու մէջ եւ կը կազմէ* 9 *կանոններ եւս, որոնք հրատարակուած են* Արշ. Արարատեանի *կողմէ*[8], *որ կը գովէ Ընկերութիւնը եւ շատ յուսալից կը գտնէ անոր ապագան:*

1852*ին արդէն Ընկերութիւնը հաւաքած էր* 38 *Ձեռագիր եւ* 500 *տպագիր գիրք*[9], *որոնք* 1932*ին տակաւին կը մնային «Ս. Թարգմանչաց» վարժարանին մէջ*[10]:

*Ընկերութիւնը կրցած է ունենալ յատուկ շէնք մը «Վերծանութեան Թանգարան»ի համար: Այդ շէնքը* 1859*ին կը յատկացուի Օրթագիւղի նորաբաց «Հռիփսիմեանց» աղջկանց վարժարանին, իսկ «Թանգարան»ը կը փոխադրուի Ս. Թարգմանչաց վարժարանը*[11]:

Մասիս[12] 1861*ին կ՚ըսէ որ Օրթագիւղի Վերծանութեան Թանգարանի Ընկերութիւնը*, որ 1848ին հաստատուած *եւ բաւական արդիւնք ցուցուցած է՝* «ժամանակէ մը ի վեր խափանուած» *ըլլալով՝ «Թաղին ուսումնասէր հասարակութեան ջանիւք վերստին պիտի հաստատուի աւելի կանոնաւոր եւ ընդարձակ հիմանց վրայ»:*

*Սխալ է թերթին ըսածը թէ Ընկերութիւնը* 1848*ին հաստատուած է: Ընկերու-*

---

[8] *Անդ, Թ.* 310:

[9] *Ընդարձակ Օրացոյց Ս. Փ. Ազգ. Հիւ., Կ. Պ.* 1901, *էջ* 248:

[10] *Թորգոմեան, անդ՝ Բ., էջ* 677:

[11] Մասիս, 1859, *Թ.* 385:

*թիւնը, ինչպէս գրեցինք վերը, հաստատուած է 1847ի վերջերը, հաւանօրէն Դեկտեմբերին, իսկ «Վերծանութեան Թանգարան»ը (Ընթերցարան) բացուած է 1848 Յունուար 1ին:*

*Վերծանութեան Թանգարանի Ընկերութեան վերահաստատութիւնը մեծ հանդէսով տեղի ունեցած է 1862 Յունուար 17ին, ուր Տիգրան Եուսուֆեան ճառով մը կը բացատրէ ազգային յառաջդիմութեան համար Վերծանութեան Թանգարանի կարեւորութիւնն ու օգտակարութիւնը. կը կարդացուի Ընկերութեան Կանոնագրութիւնը. շնորհակալութեան ուղերձ մը կ'ըլլայ Գաբրիէլ Խուրեանի, որ մեծագումար նուէրով մը Թանգարանի միակ բարերարն եղած էր: Թանգարանը ունի 750 գիրք, 150 Ձեռագիր, ազգ. բոլոր թերթերը եւ քանի մը օտար թերթեր: Ընկերութեան տարեկան բաժնեվճարն է 100, իսկ եռամսեան՝ 30 ղուրուշ*[13]:

*1925ին Թանգարանի մէջ «ի պահ կը մնար տպագիր գրքերու հաւաքածոյ մը եւ 180է աւելի արժէքաւոր Ձեռագիրներ*[14]»:

*Ալպօյաճեան*[15] *Ընկերութեանս անունը թերութեամբ* «Վերծանութեան Ընկերութիւն» *կոչելէ զատ՝ հիմնումը 1846 կը դնէ:*

---

[12] 1861, *Թ*. 518:
[13] Մասիս, 1862, *Թ*. 521:
[14] Նոր Լուր, *Կ. Պ*. 1925, *Թ*. 226:
[15] *Պատ. Տարեգ.*, *Ա*., *էջ* 55:

### 3. ԴՊՐԱՑ ԴԱՍ (1847 ?)

Արշալոյս Արարատեանի մէջ[16] տպուած Վերծանութեան Թանգարանի Ընկերութեան կանոնագրին մէջ կը յիշատակուի Օրթագիւղի «Դպրաց սենեակ»ը որմէ կ՚իմանանք թէ 1847ին Օրթագիւղ ունէր եւ կամ ատկէ առաջ ունեցած էր Դպրաց Դասի կազմակերպութիւն մը, որ իր յատուկ «սենեակ»ը ունէր: Դժբախտաբար չկայ ուրիշ որեւէ լուսաբանող աղբիւր մը այս մասին: Հաւանական կը մնայ ընդունիլ որ ան աւելի հին եղած ըլլայ, մինչեւ իսկ ԺԸ. դարէն:

Օրթագիւղի մէջ Դպրաց դասի մը գոյութիւնը անծանօթ է Թորգոմեանի եւ Ալպօյաճեանի: Նոր ժամանակներու մէջ, յատկապէս 1921ին, Օրթագիւղի մէջ կը յիշուի «Շնորհալի» Դպրաց Դաս մը, որ բազմաձայն խումբ մը ունի, ղեկավար ունենալով Գրիգոր Վ. Գուսան եւ որ պատարագ մատուցանել կու տայ ննջեցեալ անդամներու համար իր տարելիցին[17]: Այս վերջին Դպրաց Դասը շարունակութի՞ւնն է 1847ի եղածին՝ թէ նոր հաստատութիւն մը. չկայ բացատրութիւն:

### 4. ՀԱՅԿԱԶԵԱՆ ԹԱՏԵՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1857)

Հիմնուած է 1857 Դեկտեմբերին, նպատակ ունենալով «թատրոն մը կանգնել, ուր ազգային անցեալ դիւցազանց տեսարանները ներկայացուին[18]»:

[16] 1848, Թ. 303:
[17] Ժողովուրդի Ձայնը, Կ. Պ. 1921, Թ. 811:
[18] Մասիս, 1857, Թ. 309:

Ընկերութիւնս ունեցած է 17 «Խորհրդական» (հիմնադիր) անդամներ, որոնցմէ կ՚ընտրուի հետեւեալ Վարչական Մարմինը.

| | |
|---|---|
| Գաբրիէլ Խուրեան | Պաշտպան եւ երաշխաւոր Ընկերութեան |
| Գրիգոր Քէհրիպարճեան | Նախագահ |
| Ստեփան Իշլէմէճեան | Տեղակալ Նախագահի |
| Թովմաս Յակոբեան | Գանձապետ |
| Մանուկ Ճահինեան | ” |
| Ալէքսան Զալըեան | ” |
| Յովհ. Տ. Մ. Վանանդեցեան | Ատենադպիր |
| Գրիգոր Տէյիրմէնճեան | Գործակալ |
| Սարգիս Տ. Մ. Վանանդեցեան | ” |

Ընկերութեան Կանոնագիրը, բաղկացած 22 Յօդուածէ՝ [19] առիթ չենք ունեցած տեսնելու:

Մէնմուայր Հավատիս [20], խօսելով Ընկերութեան վրայ՝ կու տայ անոր դերասանական խումբի անունները:

Միութիւն՝ [21] «Հայկազեան» կը կոչէ Ընկերութիւնս եւ 1860 Յունուարին դադրած է, կ՚ըսէ: Իսկ Արեւելք [22] «Հայ Թատերական Ընկերութիւն» կ՚անուանէ:

---

[19] Անդ:
[20] Կ. Պ. 1858, Թ. 228:
[21] Իզմիր, 1860, Թ. 2, էջ 12:
[22] Կ. Պ. 1898, Թ. 3791:

## 5. ԱՂՔԱՏԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1858)

Հիմնուած է 1858ին եւ իր նպատակն է. «Հայազգի աղքատաց վիճակին բարելաւութիւնն թէ՛ ի բարոյական եւ թէ՛ բնական մասին»[23]: Հրատարակած է իր Կանոնագրութիւնը, զոր անկարող եղած ենք գտնել:

## 6. ԽՆԱՄԱԿԱԼՈՒՀԻ ՏԻԿՆԱՅՔ (1859)

Օրթագիւղի «Հռիփսիմեանց» վարժարանի հիմնումէն (1859) քիչ ետքը կազմուած է թաղին մէջ հայ տիկիններու Ընկերութիւն մը, որ կոչուած է «Տիկնայց խնամակալութիւն», «Խնամակալ Տիկնայք»[24] կամ «Խնամակալուհի Տիկնայք»[25], միշտ զգուշանալով կցել ատոր «Ընկերութիւն» բառը: Այս «Խնամակալուհի Տիկնայք»ն են որ 1864ին ալ հաստատած են Օրթագիւղի «Աղքատախնամ Ընկերութիւն Տիկնանց»ը, զոր վարը պիտի տեսնենք:

«Խնամակալուհի Տիկնայք» պաշտպանն եղած են «Հռիփսիմեանց» վարժարանին: 1867ին իրենց գլուխ կանգնած է Տիկին Նազլը Վահանեան, «որ իր ուսումնասէր բարուքը Հռիփսիմեանց վարժարանին Մեկենասն եղած է»[26]: Յօդուածագիր մը Մասիսի մէջ հիացում կը յայտնէ Խնամակալ Տիկնանց իրենց վարժարանին հանդէպ ունեցած գուրգու–

[23] Մուսայք Մասեաց, Կ. Պ. 1858, էջ 79:
[24] Մասիս, 1867, Թ. 811:
[25] Անդ, 1876, Թ. 1912:
[26] Անդ, 1867, Թ. 811:

բանքին վրայ, որոնք, կ՚ըսէ, «իրենց տեսչութեան ներքեւ եղած հաստատութիւնն ազգերնուս մէջ գրեթէ աղջկանց վարժարաններուն առաջինն ըրեր են», նոյն իսկ «իրենց անձնական ջանիւքը նոր շէնք մը կանգնել եւ զայն բարոյապէս եւ նիւթապէս զարգացնելու յաջողեր են[27]»: Պոլսոյ La Turquie թերթը վեր կը հանէ Հայ Խնամակալուհիներու այդ բացառիկ արդիւնքը[28]:

Տիկնանց այս Ընկերութիւնը 17 տարի անընդհատ կը շարունակէ իր հոգածութիւնը «Հռիփսիմեանց» վարժարանի հանդէպ մինչեւ 1876, երբ դրամական տարապայման նեղ կացութիւն մը անկարելի կ՚ընէ վարժարանի բացումը, բայց մէկ կողմէ թաղականութեան բարոյական քաջալերանքը, միւս կողմէ թաղին ուսումնասէրներու ձեռնտուութիւնը հնարաւոր կը դարձնեն Խնամակալութեան՝ «17 տարիներէ ի վեր ստանձնած մայրական պաշտօնը շարունակելու[29]»:

## 7. ԼՐԱԳՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860)

1860 Դեկտեմբերին Օրթագիւղի մէջ կը յիշուի «Լրագրաց Ընկերութիւն» մը, որ յատուկ սրճարան մ՚ունի, յանձնուած՝ «սափրիչ Մանուկ»ի, ուր կը ծախուէր «Թռչնիկ» թերթը[30]: Լուսաբանութիւն մը չենք գտած

---

27 Անդ:
28 Անդ, 1874, Թ. 1603:
29 Անդ՝ 1876, Թ. 1912:
30 Մասիս, 1860, Թ. 464:

*Ընկերութեանս մասին: Անունս անծանօթ է ինչպէս Թորգոմեանի, նոյնպէս «Սկսնակ»ին եւ Ալպօյաճեանի:*

## 8. ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԹԱՏԵՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863—1864)

*Օրթագիւղի մէջ 1857ին հիմնուած «Հայկազեան Թատերական Ընկերութիւն»ը՝ 1860ին արդէն չիջած էր, ինչպէս տեսանք:* Միութիւն[31] *կ'ըսէ սակայն որ ան նորէն կը ջանայ վերականգնիլ:*

*Մեզի կը թուի թէ 1863ի վերջերը կամ 1864ի սկիզբը նոր անունով երեւան ելած է ան, այս անգամ կոչուելով —* Համազգային Թատերական Ընկերութիւն *— որուն ծագումի մասին առանց որեւէ ակնարկութեան մը հանդիպելու՝ 1864ի սկիզբը յանկարծ* Մասիսէն *յիշատակուած կը գտնենք: Վերջինս կը գրէ. «Օրթագիւղի* Համազգային Թատերական Ընկերութիւնը *երեք ներկայացումներէ հաւաքած դրամովը նուիրեց (Ս. Փ. Հիւանդանոցին) 400 օխայ բակլա, 400 օխայ սիսեռ, 140 օխայ պէօրիւճէ, 50 օխայ թահին հէլվաը*[32]»:

*Ուրիշ տեղ որեւէ յիշատակութեան չենք հանդիպած Ընկերութեանս մասին:*

---

[31] *Իզմիր*, 1860, *էջ* 12:
[32] Մասիս, 1864, *Թ.* 635:

## Գ. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ՏԻԿՆԱՆՑ (1864)

*Պոլսոյ* Մասիսը[33] 1864 *Ապրիլ* 4 *թուով կը ծանուցանէ. «Եթէ գթութիւնը երկրիս երեսէն ի սպառ հալածի, տակաւին կանանց կուրծքին տակ ապաստանարան պիտի գտնէ ... ուստի ոչ նուազ բերկրութեամբ կը լսենք թէ* տասնեւհինգ օրէ ի վեր *Օրթագիւղի մէջ* բարեսէր տիկնայք Ընկերութիւն *մը կազմեր են* գիւղին մէջ գտնուած աղքատները խնամելու ազնիւ նպատակաւ»:

*Օրթագիւղի Հայ Տիկնանց* 1864 *Մարտ* 20*ին հիմնած Ընկերութիւնն է* — «Աղքատախնամ Ընկերութիւն Տիկնանց» —, *ինչպէս կ'անուանեն զայն հիմնադիրները իրենք՝* Մասիսի *ուղղած իրենց մէկ նամակին մէջ*[34]:

*Ընկերութեան* Ատենապետ Տիկ. Նազլը Վահան *շնորհակալ կ'ըլլայ* Մասիսի, *որ առաջին անգամ ծանուցած էր Ընկերութեան անունը*[35]:

*Հիմնադիր Տիկինները իրենց մէջէն* 12 *հոգի ընտրելով՝ կազմած են Ընկերութեան Տնօրէն Ժողովը, որուն յանձնած են բոլոր գործերու վարչութիւնը: Հետեւաբար միայն Տնօրէն Ժողովի* 12 *անդամները չեն Ընկերութեան Հիմնադիրները:*

*Ահա Ընկերութեան Տնօրէն Ժողովի անդամներու կազմը.*

---

[33] 1864, *Թ*. 634:
[34] Մասիս, 1864, *Թ*. 640:
[35] Մասիս, *անդ*:

| | | |
|---|---|---|
| Տիկին | Ագապի Եուսուֆեան | |
| „ | Ալէմ Զայեան | |
| „ | Ալէմ Պայիկեան | Տնօրէն |
| „ | Աննիկ Ճանըմեան | |
| „ | Բուբուլ Երլտըզեան | |
| „ | Եղիսաբեթ Եուսուֆեան | Գանձապետ |
| „ | Էֆթիկ Սինանեան | |
| „ | Իսկուհի Գաբրիէլեան | |
| „ | Նազլը Վահանեան | Ատենապետ |
| „ | Նեմզար Պուլկուրեան | |
| „ | Նունիա Կարմիրեան | |
| „ | Տիրուհի Փափազեան | |
| Օրիորդ | Սրբուհի (յետոյ Տիւսաբ) Վահանեան | Օգնական Ատենադպիր[36] |

Ընկերութեան կենդրոնատեղին է Հասխ–սիմեանց վարժարանը: Իսկ նպատակը սա․ «Անօգնական հիւանդ տառապելոց բժիշկ հոգալ, չքաւոր եւ անկարող ծերերը նիւթապէս մխիթարել, բազմաթիւ մանր տղայոց մայր եղող այրի տառապելոյ եւ անօգնական կանանց նպաստամատոյց ըլլալ, վերջապէս հոգ տանիլ ըստ իւր կարողութեան աղքատին թշուառ վիճակը լաւացնելու[37]»:

«Աղքատախնամ Ընկերութիւն Տիկնանց»ը ունի 16 կէտերէ կազմուած «Հիմնական Կանոնք», հրատարակուած Մասիսի մէջ[38], որոնցմէ յիշենք քանի մը հատը․

---

[36] Անդ՝ Թ․ 636:
[37] Անդ:
[38] 1864, Թ․ 640:

*Ընկերութեան ամսական անդամավճարն է 5 ղուրուշ (Յօդ. Գ). բաժանորդութեամբ կամ ուրիշ նպաստներով մասնակից եղող անձերը՝ միայն պատուոյ անդամ կը համարուին եւ վարչութեան խառնուելու իրաւունք չունին (Յօդ. Դ). Ընկերութեան Վարչութիւնը 12 Տիկիններէ բաղկացած Տնօրէն Ժողովի մը յանձնուած է, որ Ընկերութեան Հիմնադիր Տիկիններէ ընտրուած է (Յօդ. Ե). Տնօրէն Ժողովը արտօնուած է բարի գործերու մատակարարութեան համար այրեր ալ գործակից ընտրել (Յօդ. Թ). Տարին մէկ անգամ Ընդհանուր Ժողով կազմելով՝ Տնօրէն Ժողովը պիտի ներկայացնէ տարեկան հաշուեկշիռը եւ ըրած բարեգործութեանց ցուցակը (Յօդ. ԺԲ). Տնօրէն Ժողովը՝ իւր նիստերուն մէջ ներկայ գտնուող անդամներու մեծամասնութեան հաւանութեամբ ըրած բոլոր որոշումները կը գործադրէ, առանց բացակայ եղող անդամներու հաւանութեան սպասելու (Յօդ. ԺԶ)։*

*Ահա՛ Ընկերութեան* տասամեայ գործունէութեան *արդիւնքը. Ինը ընտանիքի ձրի բնակարան տրուած է, բժիշկ մը յատկացուցած է բոլոր աղքատներու, որոնց 527 անգամ այցելած է, աղքատ ընտանիքներու 3308 հոխա հաց բաժնած է, ութ ընտանիքի դրամական նպաստ յատկացուցած է, երեք աղքատարնակ տուն ձրի նորոգած է, շատ մը կարօտեալներու զգեստ եւ դրամական նպաստ ըրած է, Զատկին բոլոր աղքատնե-*

րուն բրինձ, կարագ եւ հաւկիթ բաժնած է, աղջիկ մը ամուսնացուցած է, արհեստաւորի մը՝ գործիքի հարկ եղած դրամը տուած է, հիւանդ պանդուխտ մը՝ հայրենիքը ղրկած է, այրի եւ աղքատ երեցկնոջ մը պարտքը վճարած է, եւ այլն, եւ այլն[39]:

Ընկերութեան տասամսեայ Մուտքն եղած է՝ 22,759 ղուրուշ, իսկ Ելքը՝ 18,085 ղուրուշ: Ասկէ զատ վիճակահանութենէ մը շահած է 13,939 ղրշ., զոր արժեթուղթի վերածելով՝ անոր տոկոսը տարեկան եկամուտ ըրած է[40]:

Օրթագիւղի երիտասարդներու եռանդուն խումբ մը 1866ի Բարեկենդանին 9ը թատերական ներկայացում կու տայ ի նպաստ «Աղքատախնամ Տիկնանց», որոնցմէ վերջինին ազգասիրական ճառ մը կը խօսի Մկրտիչ Պէշիկթաշլեան՝ խանդավառելով բոլորը[41]:

Ընկերութեան 1872ի Հաշուեկշիռը.

| | | |
|---|---|---|
| Մուտք | . . . . | ղուրուշ 24,077 |
| Ելք | . . . . . | ղուրուշ 20,809[42] |

Ա. Ալպօյաճեան[43] Ընկերութիւնս համարած էր «կանանց ձեռքով հիմնուած առաջին Ընկերութիւնն»: Ինչպէս այլուր[44]

---

[39] Մասիս, 1864, Թ. 678:

[40] Անդ:

[41] Մասիս, 1866, Թ. 728: — Մէնմ. Հավատիս, 1866, Թ. 634:

[42] Մասիս, 1873, Թ. 1374:

[43] Պատ. Տարեգ., Բ., էջ 86:

[44] Տե՛ս Յառաջ, Պարիս 1952, Թ. 2129:

*պարացուցած ենք՝ Օրթագիւղի «Աղքատախնամ Ընկերութիւն Կանանց»ը՝* կանանց ձեռքով հիմնուած առաջին ընկերութիւնը *չէ*: *Անկէ* 17 տարի առաջ խասգիւղի մէջ հայ տիկիններէ կազմուած *Ընկերութիւն մը կայ* [45]:

## 10. ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

*«Օրթագիւղի Ս. Թարգմանչաց վարժարանին տեսչութիւն, որ ամէն ջանիւք յիշեալ դպրոցին յառաջդիմութեանը կ'աշխատի*, իր պաշտպանութեամբը դպրոցին առաջին եւ երկրորդ դասու աշակերտներէն Սանուց Ընկերութիւն մը կազմեր է յանուն Ս. Թարգմանչաց վարժարանին, *որուն նպատակն է* ձրի դաստուութիւն ընել ազգային ուսումնասէր պանդուխտ եղբարց» [46]:

*Ընկերութեան հիմնումի ճշգրիտ թուականը ունի Ա. Ալպօյաճեան* [47], *այն է՝* 1864 *Մարտ* 24: *Ընկերութեան առաջին կազմակերպիչն եղած է Կարապետ Ճիզմէճեան, դպրոցի Հոգաբարձուներէն Մկրտիչ Ծանըմեան հովանաւորած, իսկ ուսուցիչներէն Սիմոն Իզմիրլեան (յետոյ Մատթէոս Կաթողիկոս) քաջալերած է զայն* [48]:

*Ընկերութիւնը* 1864 *Նոյեմբերին ծանուցում մը հրատարակելով՝* [49] *կ'իմացնէ թէ*

---

[45] *Տե՛ս* Հայաստան, *Կ. Պ.* 1847, *Թ.* 32:
[46] Մասիս, 1864, *Թ.* 636 *Նոյեմբեր*:
[47] *Անդ՝ էջ* 85:
[48] *Անդ*:
[49] Մասիս, 1864, *Թ.* 666:

Կիրակի օրերը ձրի պիտի աւանդուին հե-
տեւեալ նիւթերը. Ազգ. Պատմութիւն, Թուա-
բանութիւն, քերականութիւն, քրիստոնէա-
կան վարդապետութիւն, երաժշտութիւն։
Անկէ զատ մասնաւոր դասեր պիտի տրուին
գաղղիերէնի եւ տաճկերէնի։ Չորեքշաբ-
թիները Կիրակի օրուան դասերու կրկնու-
թիւնը տեղի պիտի ունենայ։ «Դասագրքերու,
թղթի, գրչի, եւ այլն, ծախք ընելու կարո-
ղութիւն չունեցողները ամէն պէտք եղածը
կ'ընդունին. ընթերցասիրաց փափաքը կա-
րելի եղածին չափ յագեցնելու համար՝ պատ-
րաստ կը գտնուին նաեւ մէկ քանի օրագիրք
եւ օգտակար գիրք ազգային անձերէ նուի-
րեալ»։

Օրթագիւղի Կաթողիկէ Հայոց «Լուսա-
ւորչեան» վարժարանի աշակերտները 1867
փետր. 25ին թատերական բացօթիկ ներ-
կայացում մը կու տան՝ ի նպաստ Ս. Թարգ-
մանչաց վարժարանի «Սանուց Ընկերու-
թեան»։ Թատերախաղի նիւթերն են. Վահան
եւ Զավիշ Կասիանոս[50]։

Մասիսի մէջ[51] յօդուածագիր մը 1871ին
ցաւով կը գիտէ որ «Սանուց»ը «կը ննջէ ի
խոր քուն յաւիտենական»։

1872ին ճիգ մը կ'ըլլայ Ընկերութեան
վերակազմումի. կը ձեռնարկուի յատուկ
«Թանգարան»ի մը (Գրադարան–Ընթերցա-
րան) շինութեան, որուն համար Ընկերու-

[50] Մէնմ. Հավատիս, 1867, Թ. 685։
[51] 1871, Թ. 1096։

*թիւնը քանի մ'անգամ Ընդհ. Ժողով ալ ըրած է. Ընդհ. Ժողովի Ատենապետ՝ Անդրէաս Կարապետեան վերջին կարգադրութեան մը համար 1872 Հոկտ. 9ին բոլոր անդամները դարձեալ Ընդհ. Ժողովի կը հրաւիրէ*[52]*:*

*Ընկերութիւնը իր գոյութիւնը մինչեւ* 1875 *կրցած է պահել*[53]*:*

## 11. ՔԱՋԱԼԵՐՈՂ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ՕՐԹԱԳԻՒՂԻ (1867)

*Մինչ Օրթագիւղի Հոխիսիմեանց աղջկանց վարժարանը, շնորհիւ «Խնամակալուհի Տիկնանց»* 1867*ին ծաղկուն շրջան մը կը բոլորէր՝*[54] *նոյն թաղի Ս. Թարգմանչաց մանչերու վարժարանը անկածութեան օրեր կ'ապրէր, չունենալով իրեն պաշտպան ու նպաստող Ընկերութիւն մը. չատոնց մարած էր թաղին «Ս. Թարգմանչաց Ընկերութիւն»ը, գլխաւոր պաշտպանը վարժարանին:*

*Օրթագիւղի մանչերու վարժարանի ցաւալի վիճակը մատնանիշ ընելով՝ յօդուածի մը մէջ Պ. Վ. Պառնասեան կը հարցնէ. «Արդեօք ծայրայեղութիւնը աղջկանց դաստիարակութիւնը մանչերէն առա՞ջ անցուցեր է... եթէ այրերը Խնամակալ Տիկնանց չափ ալ չեն կրնար բարեկարգ վարժարան մը պահել, ինչո՞ւ համար տեղերնին տիկիններ դնելով իրենք ետ չեն քաշուիր*[55]*»:*

---

[52] Մասիս, 1872, Թ. 1297:
[53] *Գաղ. Տարեգ., Բ., անդ:*
[54] Մասիս, 1867, Թ. 817:
[55] *Անդ:*

Պառնասեան հոն[56] կ'իմացնէ սակայն թէ Օրթագիւղի «մանչերու վարժարանն ալ բարեկարգելու համար երկու ամսէ ի վեր պէտք եղած ջանքերը կ'ըլլան եւ Քաջալերիչ Ընկերութիւն մը կազմելով, անոր եւ Թաղ. Խորհրդին ջանիւք Նախակրթարան մը եւ Ուսումնարան մը բացուեր է»:

Օրթագիւղի այս նոր Ընկերութեան մասին Մասիսի մէջ[57] անստորագիր ուրիշ յօդուածագիր մը կարեւոր լուսաբանութիւն կու տայ: Վերջինս կը գրէ. «Օրթագիւղի Թարգմանչաց վարժարանը 10 տարիէ ի վեր հետզհետէ աղէկ ու գէշ ընթացքներ ունեցած էր: Վերջին ատեններս երեսէ ձգուած էր... ազնուապետական անձեր... գուն գործեցին թաղական խորհրդոյ երիտասարդագոյն մէկ անդամին՝ այն է Յուսուփեան Տիգրանիկ աղա ազնիւ երիտասարդին միջնորդութեամբ Ընկերութիւն մը կազմել մասնաւոր, գիւղին մէջ հասարակաց դաստիարակութիւնը ծաւալելու նպատակաւ: Տիգրանիկ աղան Լօնտօնէն նոր եկեր էր եւ ինչպէս ամէն ատեն այդպիսի ջանադրութիւններ ցոյց տուած է, նոյնպէս ալ այս անգամ ստորագրութիւն մը բացաւ եւ առաջարկուած Ընկերութիւնը կազմող անդամներ հաւաքեց: Անդամոց թիւն անսահման պիտի ըլլար, բայց 34ի երբ հասաւ՝ հոն կանգ առաւ: Անդամ ստորագրուողը տարին կէս ոսկի պիտի

[56] Մասիս, անդ՝ ծանօթութիւն:
[57] 1867, Թ. 813:

*վճարէր եւ Ընկերութեան անունը* «Քաջալերող Ընկերութիւն Որթագիւղի» *դրուեցաւ: Նպատակը ոչ միայն ուսուցման գիրքով՝* այլ նաեւ թանգարաններով եւ թատերախաղերու ներկայացմամբ ալ կրթութիւն տարածել էր»:

*Յօդուածագիրը շարունակութեան մէջ կ՚ըսէ որ «Ընկերութեան նիստերուն մէջ այնպիսի երկար ու ապարդիւն վիճաբանութիւններ բացին՝ որք դպրոցական տեսչութիւն մը եւ հետեւապէս բարեկարգութիւններն ուշացնելէ զատ՝* պատճառ եղան նաեւ գործին հաստատուն հիմ մը չդնելու»:

*Ի վերջոյ դպրոցը կը բացուի եւ «Քաջալերող Ընկերութիւն»ը կը խոստանայ «տարեգլխուն բաց մ՚եղած ատեն՝* 6000 *ղուրուշ նպաստ վճարել»*[58]:

*Ընկերութիւնը կաղնիկաղ շարունակած է իր գոյութիւնը մինչեւ* 1871 *Յունիս, երբ յօդուածագիր մը կը գրէ թէ* «Քաջալերական Ընկերութիւնը անունով միայն կայ»[59]:

*Ընկերութիւնս անծանօթ է Ալպօյաճեանի:*

## 12· ԲԱՐԵՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867)

*Թատերական Ընկերութիւն մըն է Որթագիւղի* «Բարեսէր Ընկերութիւն»*ը, որ*

---

[58] *Անդ*:
[59] Մասիս, 1871, *Թ*. 1096:

*սխալմամբ կոչուած է «Բարեսիրաց Ընկերութիւն»* [60] :

*Ընկերութեանս ծագումը* 1863*ին կը դնէ յայտնի դերասանապետ՝ Պետրոս Ա. Մաղաքեան* [61] : *Եթէ տպագրական կամ այլ սխալ չէ Մաղաքեանի այդ թուականը՝ կրնայ այն իմաստով հասկցուիլ որ Օրթագիւղի «Համազգային Թատերական Ընկերութեան»* (1863—1864) *շարունակութիւնը կամ անոր հետ ձուլումը կը համարի «Բարեսէր Ընկերութիւն»ը :*

*Ուշադիր կ՚ընենք սակայն որ «Բարեսէր Ընկերութիւն»ը* 1868*էն առաջ չէր յիշուիր հայ թերթերէն :* 1863—1868*ի երկար լռութիւնը հայ թերթերու՝ չի կրնար մեկնուիլ, եթէ ընդունինք որ ան* 1863*ին հիմնուած է :*

*Բարեբախտաբար ժամանակակից եւ Օրթագիւղի Թաղեցի մը* — *Մկրտիչ Գաղանճեան* — 1868 *Փետր.* 1*ին Օրթագիւղէն Բերայի* ժամանակ Հանդէս Հայրենանուէր *թերթին գրելով՝ կը լուծէ այս հարցը.* «19*դ դարուս մէջ ապրելու արժանացող Ազգիս ներկայ ցաւալի վիճակին վրայ ի խորոց սրտէ կարեկցող վառվռուն եւ ազգասէր* երիտասարդաց խումբ մը, *իրենց անձնական շահը ազգայինին զոհելով, քանի մը տարիէ ի վեր գիւղիս աղջիկ եւ մանչ տղայոց վարժարանաց մէջ թատերական ներկայացումներ տա–*

[60] Նոր Լուր, 1925, *Թ.* 222: — *Թորգոմեան, Երեմ. Չէլէպ. անդ՝ էջ* 675:
[61] Արեւելք, *Կ. Պ.* 1889, *Թ.* 1741:

*յով, չահը գիւղին թշուառ աղքատաց նուիրեց:* Այս տարի այս խումբը *մանչ տղայոց վարժարանին մէջ փոքրիկ, բայց փառաւոր թատրոնի մը շինութեան ձեռնարկելով, յաջողութեամբ ի գլուխ հանեց եւ* Բարեսէր անուամբ Ընկերութիւն մ՚ալ կազմելով, *ուխտեց* 5 տարի նոյն թատրոնին մէջ ներկայացումներ տալ եւ հայթայթուած գումարէն թատրոնին շինութեան համար վատնըւած դրամը հանելով, մնացորդը գիւղիս մէջ ազգային ամենազգալի պիտոյից մէկուն շնորհել» (Ժամանակ Հանդէս Հայրենանուէր, *Կ. Պ.* 1868, *Թ.* 134, *Փետր.* 17):

Ժամանակ *թերթի խմբագրութիւնը կ՚աւելցնէ իր կողմէ.* «Միջագիւղի մէջ թատրոնի շինութեան եւ Թատերական ներկայացման փոյթ տանող Բարեսէր Ընկերութեան մեր շնորհակալութիւնն եւս կը մատուցանենք: *Քանի մը տեսակ օգուտներ ունի այս Ընկերութիւնը. Նախ որ Թատրերգութիւնները՝ մանաւանդ ազգայինները՝ մեծ տպաւորութիւն կ՚ընեն հանդիսականաց վրայ եւ մէյմէկ գործական դասեր կ՚աւանդեն. 2. որ ձմեռնային գիշերներուն երկայնութիւնը փոխանակ Թումար խաղալով եւն եւն անցնելու, այնպիսի հրահանգիչ զբօսանքներով կ՚անցունէ ժողովուրդը. 3. որ Միջագիւղի Թատերասէր մասին մեծ դիւրութիւններ կ՚ընծայէ, Բերա գալու եւ հոն պանդոկի մէջ գիշեր անցնելու դժուարութիւններէն կ՚ազատէ» (Անդ):*

Գաղանճեանի վերոյիշեալ գրութեան մէջ «այս տարի» բացատրութիւնը կարելի չէ առնել 1868 տարւոյ համար, նկատելով որ Փետր. 1ին գրուած ըլլալով ան՝ 1868ի Յունուար 1—Փետրուար 1ի կարճ միջոցին մէջ դժուար թէ թատերախումբը կարող եղած ըլլայ «ձեռնարկել եւ գլուխ հանել փառաւոր թատրոնի մը շինութիւնը»: Ըստ մեզ Գաղանճեանի բառը մէկ տարուան ընթացքին, այն է՝ 1867—1868 ձեռնարկուած եւ գլուխ հանուած պէտք է հասկնալ: Ինչպէս յաջորդ վկայութիւնը կը հաստատէ՝ «Բարեսէր Ընկերութեան» հիմնումը 1867ին տեղի ունեցած է:

Բարեսէր Ընկերութեան անդամ՝ Տ. Ա. Սէթեանի 1872ին այս մասին տուած լուսաբանութիւնը կարեւոր է. «1867 թուականին Օրթագիւղի մէջ Բարեսէր անուամբ Ընկերութիւն մը կազմուեցաւ... թատերական ներկայացութեանց միջոցաւ ազգին մէջ յաւերժական յիշատակ մը թողելու նպատակաւ: Ես ալ անոր անդամակիցներէն էի, երբ 69 թուականին անձնական արգելք մը կապտեց զիս այդ անդամակցութենէն»[62]:

Ընկերութիւնը կազմած են հետեւեալ անձերը.

Թովմաս Պեռեանց
Մովսէս Փափազեան
Ստեփան Փափազեան

---

[62] Մասիս, 1872, Թ. 1162:

*Աբրահամ Ոսկեմատն*
*Յակոբ Բիւկիւլեան*
*Ռուբէն Սէֆէրեան*
*Խաչիկ Սէֆէրեան*[63]։

*Ընկերութեան անդամ եղած՝ յետոյ հրաժարած են.*

*Սեպուհ Խսկիճեան*
*Յակոբ Պիպեռճեան*
*Ռոմանոս Գէորգեան*
*Դանիէլ Գարամաճեան*[64]։

Մամուլի *համեմատ*[65] *Բարեսէր Ընկերութեան նպատակն էր.* «Բարոյական արդեանց հետ՝ ազգին վարժարանաց եւ միանգամայն ազգ. Հիւանդանոցի խղճալեաց համար նիւթական արդիւնք մը հանել»։ *Ընկերութիւնը* 1870*ին Բերա* Նաում*ի թատրոնի մէջ ալ տուած է ներկայացում*[66]։

*Ընկերութիւնը մինչեւ* 1869 ինը *ներկայացում տալէ վերջ*[67], 1869—1870*ին ալ կը շարունակէ իր ներկայացումները*[68]։ 1870*ին Օրթագիւղի Ս. Թարգմանչաց վարժարանի* տեսչութիւնը *Բարեսէր Ընկերութեան կը յանձնուի*[69]։ *Կ'երեւայ թէ այս առթիւ է որ*

[63] Արեւելք, *անդ*։
[64] Մասիս, *անդ*։
[65] Մամուլ, Կ. Պ. 1870, էջ 518։
[66] Մասիս, 1870, Թ. 958։
[67] Մասիս, 1869, Թ. 907։
[68] Մամուլ, 1869, էջ 51. 1870, էջ 435, էջ 526—527։ — Մասիս, 1870, Թ. 958։
[69] Մամուլ, 1870, էջ 518։ — Ասիա, Կ. Պ. 1872, էջ 62։

ընկերութիւնը թատերասրահի փոփոխութիւն մը կ'ընէ, մեծցնելով Թարգմանչացի սրահը: Այս մասին լուսաբանութիւն մը կու տայ Սմբատ Բէստէճեան, ինչպէս կը գրէ Նշան Պէշիկթաշլեան. «Օրթագիւղի Ազգային Վարժարանի բակին մէջ ընդարձակ սրահ մը կար՝ երկու բաժանումով: Ժամանակին այդ մեծ սրահին մէջ կը տրուէին ներկայացումներ, սակայն թատերասէր հասարակութեան շատ նեղ կու գար: Թատերական մասնախումբը 1869—1870 եղանակին համար, իբր տնօրէն, Մաղաքեանը հրաւիրած էր: Ու այդ բաժանումները միացնելով խոշոր թատերասրահ մը ստեղծուած էր[70]»:

Թատերասրահը մեծցնելէ վերջ տրուած առաջին ներկայացումը կ'ըլլայ Թովմաս Պեռեանցի «Խաբուած Ակնցի» երեք արարոց կատակերգութիւնը[71]: Ա. Ալպօյաճեան, ըսելէ յետոյ թէ Օրթագիւղի Բարեսէր Ընկերութիւնը (1867—1872) կազմուած էր նոյն թաղին մէջ գործող երկու թատերախումբերու միացումով», կը գրէ. «Իր առաջին ներկայացումը կ'ըլլայ Թովմաս Պեռեանցի «Խաբուած Ակնցի» կատակերգութիւնը[72]», ինչ որ իրականութեան չի համապատասխաներ,

---

[70] Հայրենիք Ամսագիր, Բոստոն 1952, Թ. 11, էջ 11:

[71] Հայրենիք, անդ:

[72] Գաղութահայ Տարեգիրք, Բ., էջ 87:

քանի որ Ընկերութիւնը մինչեւ 1869 ինքը ներկայացում տուած էր[73]:

Սխալ է նոյնպէս Սմբատ Բէսէճեանի կարծիքը թէ 1869—1870 «թուականին է որ կազմուեցաւ Օրթագիւղի Բարեսիրաց Ընկերութիւնը»[74]: Մինչ ան 1867ին կազմուած էր արդէն, ինչպէս տեսանք:

Բարեսէր Ընկերութեան, անշուշտ 1870ին, սարքած արտակարգ երեկոյթի մը մէջ — ինչպէս կը պատմէ Սմբատ Բէսէճեան — կը խօսի Մարկոս Աղաբեկեան եւ կը տրուի ներկայացում մը: «Այդ ներկայացման ներկայ էր ճարտարապետ Յակոբ պէյ Պալեան իր ընտանիքով...: Քանի մը օր յետոյ Յակոբ պէյ Պալեան իր ապարանքը հրաւիրելով Բարեսիրաց Ընկերութեան գործադիր ժողովոյ անդամները, անոնց կ'աւետէ թէ ճարտարապետ Պետրոս Նեմջէի հրաման տուած է պատրաստել թատրոնի մը յատակագիծը: Թէ այդ թատրոնին շինութեան ամբողջ ծախքը ինքը կը հոգայ ու կը նուիրէ Բարեսիրաց Ընկերութեան» (Հայրենիք Ամսագիր, անդ):

Ալպօյաճեան «Թատերասիրաց» թատրոն կ'անուանէ Պետրոս Նեմցէի շինածը (Գաղ. Տարեգ., Բ., էջ 87):

---

[73] Մասիս, 1869, Թ. 807: — Ինչպէս տեսանք՝ Պեռեանցի թատերախաղը ներկայացուած կ'երեւայ 1869—1870ին: «Երկու թատերախումբերու միացումով» բացատրութիւնն ալ կասկածելի է, քանի որ ժամանակակիցը՝ Գաղանճեան՝ միայն «երիտասարդաց խումբ մը» ձեւը կը գործածէ:

[74] Հայրենիք, անդ:

*Յակոբ Պէյ Պալեան յետոյ անգամ մ՚ալ վերաշինած է Ընկերութեան նուիրած Թատրոնի շէնքը* (Մասիս, 1872, *Թ*. 1262)։

Սուրհանդակ (*Կ*. *Պ*. 1908, *Թ*. 71) *կը նկարագրէ Թատրոնս*. «... միակը տեսակին մէջ ամբողջ Վոսփորեան գիւղերուն մէջ, իր ընդարձակ բեմով, երկու յարկի վրայ երեսուն երեք հատ օթեակներով եւ նաեւ նոր աւելցուած վերնասրահով (galerie), ծխարաններով, *եւ այլն, Թերեւս կարենայ նախանձը շարժել քաղաքի Թատրոններուն*»։

*Դժբախտաբար* 1870*էն սկիզբ առած ներքին երկպառակութիւնը՝* 1872*ին կը կազմալուծէ Բարեւէր Ընկերութիւնը* (*Հմմտ*. Մասիս, 1872, *Թ*. 1262)։ 1872*ի Հոկտեմբերին Պետրոս Մաղաքեան ծանուցումով մը կ՚իմացնէ Թէ իր խումբով ներկայացում պիտի տայ Բարեւէր Ընկերութեան Թատրոնին մէջ*։ *Ուրեմն՝ Ընկերութեան Թատրոնը վարձու կը տրուի* (*տե՛ս* Մասիս, 1872, *Թ*. 1306)։ *Մաղաքեանի Թատերախումբի եւ խաղացանկի մասին մանրամասնութիւն ունի Պէշիկթաշլեանի վերոյիշեալ յօդուածը* (Հայրենիք, *անդ՝ էջ* 11—15)։

1873 *Յունուար* 29*ին Բարեւէր Ընկերութեան Թատրոնը* Լսարանի *կը վերածուի, ուր կը բանախօսեն Դոկտ. Ծիշմանեան՝ Ազգ. Պատմութեան* (Մասիս, 1873, *Թ*. 1342), *Տիգրան Եուսուֆեան՝ Յառաջադիմութեան* (*Ազգ. Լսարան յՕրթաքէօյ*, *Կ*. *Պ*. 1873, *խօսուած ճառը*) *մասին*, *եւ այլն*։ 1873*ին Օր*—

Թաղխողի «Լսարանի Ընկերութեան» հիմնումէն վերջ՝ ա՛լ միշտ տեղի կ՚ունենան հոն ճառախօսութիւններ։

1908ին ջանքեր կ՚ըլլան Բարեսէր Ընկերութեան Թատրոնի վերակառուցումին։ Այդ առթիւ մասնաւոր Յանձնախումբ կը կազմուի շէնքին նորոգութեան համար, կը ձեռնարկէ դրամահաւաքի[75]։

## 13. ԼՍԱՐԱՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873)

Նախ ճշդենք անունը. «Լսարանական Միութիւն» կը կոչեն Օրթագիւղի այս Ընկերութիւնը Նոր Լուր[76], Թորգոմեան[77] եւ Ալպօյաճեան[78]։ Մինչ ժամանակակիցներ ունին՝ «Լսարանի Ընկերութիւն»[79]։

Այժմ քանի մը խօսք «Լսարան»ի վրայ։

Մեր մէջ Լսարանի (conférence) գաղափարը, իբրեւ առանձին կազմակերպութիւն առենախօսութեանց կամ ճառախօսութիւններու՝ համեմատաբար նոր է։ Սկիզբը կրնայ համարուիլ այն, զոր Գաբրիէլ Այվազովսկի եւ Նարպէյ ըրած էին «Խալիպեան» վարժարանի մէջ փոփոխակի ճառախօսութիւններ սարքելով, ուր մինչեւ 200 հոգի ունկնդիր կ՚ունենային։ Իրենց նիւթն էր

---

[75] Սուրհանդակ, 1908, Թ. 71։
[76] 1925, Թ. 224։
[77] Երեմ. Չէլէպ., անդ՝ էջ 675։
[78] Բաղ. Տարեգ., Գ., էջ 113։
[79] Հմմտ. Մասիս, 1873, Թ. 1369։ — Ազգային Լսարան յՕրթագիւղ, Կ. Պ. 1873։

ընդհանուր կամ ազգ. Պատմութիւն, Աշխարհագրութիւն, եւ այլն: Այդ ճառախօսութիւնները տեւած են մինչեւ 1860[80]:

Պոլսոյ Հայութեան մէջ Լսարանական շարժումը 1869էն կը սկսի, շրջան ընելով Սամաթիա, Գումգափու, Եէնիգափու, Ղալաթիա, Սկիւտար, եւ այլն, տեղատեղ մասնաւոր Ընկերութիւններ ալ կազմուելով: Ճառախօսներն էին Հայեր, մերթ նաեւ օտարներ, մանաւանդ Հայագէտներ: Իսկ նիւթը կը կազմէին Ընդհանուր եւ Ազգ. Պատմութիւնը, Աշխարհագրութիւնը, Ախտաբանութիւնը, Մարդակազմութիւնը, Կրթական-Մշակութայինը, Դաստիարակութիւնը, եւ այլն:

Օրթագիւղի մէջ Լսարանի բացումը եղած է 1873 Յունուար 29ին Բարեսէր Ընկերութեան սեպհական թատրոնի շէնքին մէջ, ուր մուտքը ձրի, ատենախօսները ընտրուած անձեր եղած են: Հոս խօսած են Դոկտ. Տիշմանեան, Իրէկճեան, Նուսուֆեան եւ Օսկանեան, որոնցմէ ոմանց ճառերը առանձին լոյս տեսած են[81]:

Օրթագիւղի «Լսարանի Ընկերութիւն»ը կը հիմնուի՝ «Բարեսէր Ընկերութեան» քայքայումէն վերջ, հաւանօրէն 1873 Յունուար-Փետրուարին[82]:

---

80 Մասիս, 1873, Թ. 1361:

81 Մասիս, անդ:

82 Համմ. Մասիս, անդ: — Ազգային Լսարան յՕրթաքէօյ, Կ. Պ. 1873, էջ 46:

Սեպուհ Յ. Խոկիճեան՝ Մասիսի ուղղած իր մէկ նամակին մէջ ըսելէ յետոյ թէ Որթագիւղի Լսարանին հիմնարկութեան մէջ թաղին Բարեսէր Ընկերութիւնը որեւէ գործ չէ ունեցած՝ կը գրէ. «Որթագիւղի Ազգային Լսարանին հաստատութեան առաջին եւ գլխաւոր պատճառ եղած են Միքայէլ Թօփհանէլեան եւ Ն. Օտեան էֆէնտիք, մանաւանդ Ն. Օ. էֆէնտին, որ բարեհաճեցաւ մասնաւոր հրաւիրագրով գիւղացւոց ընտիր մէկ մասը ի ժողով գումարել իւր տանը եւ պարզել իրենց նպատակը: Հրաւիրեալք (20 հոգւոյ չափ) 4—5 գիշեր քանի մը ժամ նիստ ընելէ յետոյ՝ համաձայնութեամբ կանոնագրութիւն մը խմբագրելու յաջողեցան, զոր ներկայ եղող պատուարժան անձինք ստորագրելով հաստատեցին Ազգային Լսարանի Ընկերութիւնը, որուն Տնօրէն Ժողովոյ Մեծ. անդամք են.

Յակոբ Պէյ Պալեան
Տիգրան էֆ. Եուսուֆեան
Յովսէփ էֆ. Ճիշմանեան
Նշան էֆ. Օտեան
Միքայէլ էֆ. Թօփհանէլեան:

Պատիւ կը համարիմ սա եւս յիշելու թէ Լսարանի Ընկերութեան անդամոց թիւը ցարդ յիսունն անցած է»[83]:

---

[83] Մասիս, 1873, Թ. 1369 Ապրիլ 3:

Ընկերութեանս հիմնումը արձագանգելով՝ կը գրէ Պոլսոյ Օրագիրը (1873, Թ. 932, Մայիս). «Կը լսենք թէ Վսեմ. Պալեան Յակոբ պէյի նախագահութեանը տակ 36 դրագէտներէ բաղկացեալ Ակադեմական Ընկերութիւն մը հաստատուելու վրայ է ի Միջագիւղ (Օրթագիւղ), որու Կանոնագիրը խմբագրած է Մեծ. Ռուսինեան էֆէնտի»:

1873 Մարտէն վերջ Լսարանի Ընկերութեան կաճառին մէջ խօսելու հրաւիրուած են հետզհետէ Խրիմեան եւ Նարպէյ Սրբազանները, Օրմանեան, Սիպիլեան, Դուրեան Վարդապետները, ինչպէս նաեւ Պրոֆ. Ճէճիզեան, Դոկտ. Հէքիմեան, Պէրպէրեան, Ազաբէկեան, Դոկտ. Մորտման եւ Դոկտ. Ռուշբըրն, որոնցմէ վերջիննները խօսած են Վանի սեպագրութիւններու եւ Զայնագիր գործիքի վրայ, որ նոր հնարուած էր[84]:

Նոր Լուրի[85] յօղուածագրին համեմատ Լսարանի Ընկերութեան ճառախօսութիւնները տեւած են մինչեւ 1878: Սակայն 1878էն վերջն ալ շարունակուած են անոնք, գուցէ մինչեւ 1880: Մեզի ծանօթ է 1879ի Օրմանեանի ճառախօսութիւնը՝ նիւթ ունենալով «Հայուն անցեալը, ներկայն եւ ապագան[86]»:

Լսարանի Ընկերութեան սարքած բանախօսութիւններու վայրը ընդհանրապէս Բաբեսէր Ընկերութեան Թատերասրահն եղած է:

[84] Նոր Լուր, 1925, Թ. 224:
[85] Անդ:
[86] Մասիս, 1879, Թ. 2230:

*Չենք տեսած Ընկերութեան Կանոնագիրը։*

### 14. ՀԱՅԿԱԶՆ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873)

*Սիմէօն Հանչերեան՝ Օրթագիւղի* «Հայկազն Երիտասարդական Ընկերութեան» *կոզմէ ուրախութիւն կը յայտնէ որ Օրթագիւղի թատերական խումբը, գլխաւորութեամբ Պետրոս Մաղաքեանի, Լանկայի Յունաց Ընթերցարանի մէջ ներկայացում մը տուած է, ուր Պետրոս Ադամեան սքանչելի խաղարկութեամբ կը փայլի։ Հանչէրեան կ'ըսէ որ ինքը իր ընկերներով ներկայ եղած է այդ ներկայացումին՝ քաջալերելու համար հայ դերասանական խումբը*[87]*։*

*Թէ ի՞նչ Ընկերութիւն է «Հայկազն Երիտասարդական»ը՝ որեւէ լուսաբանութիւն չի տրուիր։ Չենք հանդիպած անունիս ուրիշներու քով։*

### 15. ԲԱԺԱՆՈՐԴԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873—1874)

«Բաժանորդական Ընկերութիւն»*ը կը յիշուի 1874 Յուլիսին։ Իր Գանձապետները՝ Նշան Օտեան (Գրիգոր Օտեանի եղբայրը) եւ Մ. Յ. Այվատեան, հարցումի մը պատասխանելով, կ'ըսեն թէ հրաժարած են այդ պաշտօնէն 1874 Յուլիսին։ Նշան Օտեան կը գրէ որ «Բաժանորդական Ընկերութիւնը իր հաս-*

---

[87] Մասիս, 1873, Թ. 1364 *Մարտ։*

տատութիւնն ու Հիմնական կանոնները ի սկզբան Ազգային Վարչութեան Գերագոյն Ժողովին ներկայացուցած, ընդունուած ու վաւերացուած» են[88]:

Ն. Օտեանի այդ գրութենէն այնքան միայն կարելի է կռահել թէ Օրթագիւղի «Բաժանորդական Ընկերութիւն»ը 1873—1874 հաստատուած եւ արդէն 1874 Յուլիսին կազմալուծուած է: Զի «Ազգայիններէն ոմանք լրագրի մը միջոցաւ հրապարակաւ կը հարցնեն եղեր թէ Բաժանորդական Ընկերութեան հաշիւները ու ժողովուած դրամները ո՞ւր են[89]»:

Ընկերութեանս անունը անծանօթ եղած է Թորգոմեանի եւ Այպօյաճեանի:

## 16. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

Օրթագիւղ 1874ին ունեցած է ծագումը անծանօթ «Ընթերցասիրաց Ընկերութիւն», մը, Թարգմանչաց վարժարանին նպաստելու համար, սակայն չէ կրցած լաւ կազմակերպուիլ եւ արդէն 1875ին սկիզբը կազմալուծուած է:

Ընկերութեանս յիշատակութիւնը հետեւեալ պարագայի մէջ եղած է. Օրթագիւղի «Ուսումնասիրաց Ընկերութեան» Տնօրէն Ժողովը իր Ա. տարւոյ հաշուեցուցակը 1875 Մարտ 16ին Մասիսի մէջ հրատարակած ատեն՝ «Ուսումնասիրաց»ի ունեցած արժե-

---

[88] Անդ, 1874, Թ. 1564:

[89] Անդ:

*տոմսերն յիշելէ վերջ, կը յիշէ նաեւ «Ընթերցասիրաց»ի արժետոմսերը, գրելով.* *«Երեք տոմսակներ (արժետոմս) ալ՝ որ* գիւղիս ցրուեալ Դպրոցասիրաց Ընկերութեան *կը վերաբերէր, եւ որ նոյնպէս* Ս. Թ. (*արգմանչաց*) վարժարանին եկամուտ հայթայթելու նպատակաւ *ժողովուած էր*, Գանձապետին կողմանէ *Ընկերութեանս աւանդուած ըլլալով՝ անոնց թիւերն ալ հետեւեալներն են*. 1,552·305, 1,552·309, 938·851 [90]»:

17. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

*Հիմնուած է* 1874*ի գարնան: Ընկերութեան Տնօրէն ժողովը* 1875 *Մարտ* 16*ին հաշուետուութեան մ'առթիւ կը գրէ* Մասիս*ի խմբագրին. «Հաճեցէք Ձեր պատուական* Մասիս*ի մէջ գիւղիս* Ս. Թարգմանչաց վարժարանին հաստատուն եկամուտ հայթայթելու համար կազմուած Ուսումնասիրաց Ընկերութեանս Ա. տարւոյ *այս հաշուեցուցակը հրատարակել ի տեղեկութիւն Պատուարժան Բաժանորդաց, կանխաւ մեր շնորհալիքը ընդունելով.*

*Մուտք.*

| | | |
|---|---|---|
| *Գին* 143 *բաժնից* . . . . | 7436·— | *դրշ.* |
| *Երկաթուղեաց տոմսակներէն առնուած* . . . | 941·05 | *դրշ.* |
| *Գանձապետին պահանջքը* | 231·75 | *դրշ.* |
| | 8619·25 | *դրշ.* |

[90] Մասիս, 1875, Թ. 1661:

*Ելք*·

*Գին երկաթուղեաց* 11 *տոմսակներու եւ մէկ Պուքրէշի տոմսակի* · 7623·75 *դրշ*·
*Ծախք տետրակաց, կընքոյ, մելանի, տպագրութեան տոմսակաց եւն*»[91] . . . . . . . 995·05 *դրշ*·
8619·25 *դրշ*·

## 18. ԱՐԱՐԱՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ (1876)

*Օրթագիւղի* «Արարատեան Ընկերութիւն Հայոց»*ը հիմնուած է* 1876 *Ապրիլ* 15*ին*[92]:

Մասիսի *մէջ* «*Վ. Ա.*», *անդամ* «*Արարատեան*»*ի*, *կը գրէ Ընկերութեանս* ծագումի *մասին*. «...մի քանի երիտասարդք՝ եղբայրաբար միանալով *բարեկամական ձեռն կարկառեցին միմեանց* եւ Պոլսոյ զանազան թաղերէն ալ հետզհետէ ընկերաց յաւելմամբ՝ հիմնեցին *մի Ընկերութիւն* «Արարատեան Ընկերութիւն Հայոց» *անուամբ*[93]»:

*Գաբրիէլ Նորատունկեան* (*յետոյ Փաշա եւ Արտաքին Գործոց Նախարար*), *անդամ եւ Ատենադպիր* «*Արարատեան Ընկերութեան*»՝ 1879*ին ճառի մը մէջ կը մանրամասնէ* ճըշդերով *Ընկերութեան* ծագումի, հիմնադիրներու *եւ* թաղի *պարագաները*. «...հինգ

[91] Մասիս, 1875, *Թ*. 1661:
[92] *Անդ*, 1876, *Թ*. 1905:
[93] *Անդ*, *Թ*. 1908:

ազնուախոհ երիտասարդ՝ *կը ժողովուին երեք տարի առաջ* 1876 *Ապրիլ 15ին* ի Միջագիւղ իրենցմէ միոյն տան մէջ եւ միախորհուրդ կը հիմնեն *Արարատեան Ընկերութիւնը ու* նպատակ *կ'ընտրեն* Հայաստանի մէջ ուսում ծաւալել[94]»:

*Ա. Ալպօյաճեան*[95] *կու տայ հիմնադիրներու անունները.* Արփիար Արփիարեան, Զարեհ Ծիշմանեան, Պետրոս Վասիլեան, Յովհաննէս Նըլտըրզեան եւ Մկրտիչ Փորթուգալեան:

*Միքայէլ Նաթանեան*[96] *կը գրէ որ Արարատեան Ընկերութեան հիմնուելէն վերջն է որ Մ. Փորթուգալեան Ընկերութեան անդամ կը գրուի՝ Արփիար Արփիարեանի միջոցաւ:*

*Ժամանակակից հայ գրականութեան մէջ չենք գտած Ընկերութեան* հիմնադիրներու *անունները:*

*«Արարատեան»ի «սկզբնական նպատակն եղած է* Կ. Պոլիս գտնուող գաւառացի տղոց ուսում եւ արուեստ սորվեցնել, *սակայն յետոյ նկատելով որ Կ. Պոլսոյ մէջ ուսում առնողներէն շատեր կը դժկամակին գաւառ դառնալ, որոշուեցաւ տեղւոյն վրայ գաւառացի տղոց ուսում տալ*[97]»:

*Սկզբնական նպատակին համար Ընկերութիւնը* 10 *վարժանոց նուիրատուներ հրա–*

---

[94] Մասիս, 1879, *Թ*. 2301:

[95] *Պատմութիւն Հայ Կեսարիոյ, Ա. Գահիրէ* 1837, *էջ* 1257 *ծանօթ.* 1:

[96] *Վաստուրակին, Վենետիկ* 1930, *էջ* 188:

[97] *Ա. Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կեսարիոյ, անդ:*

պարակ կը հանէ եւ յատուկ նամակներով Օրթագիւղի մէջ կը ցրուէ։ Երկու պատանի կ'որդեգրուին եւ կը դրուին Ս. Թարգմանչաց վարժարանը։ Սակայն քիչ յետոյ, 1876 Յուլիսին նպատակը փոխուելով՝ կը ձեռնարկուի ժամ առաջ Վանայ մէջ վարժարան բանալ[98]։

Ընկերութեան գործունէութեան վրայ խօսելէ առաջ՝ տեսնենք նախ անոր Կանոնագիրը, որ 1876 Նոյեմբերին Մասիսի մէջ հրատարակուած է։

Արարատեանի Կանոնագիրը 13 Յօդուած ունի։ Իր նպատակն է. «Հայաստանի մէջ ձրիապէս ուսում ծաւալել»։ «Ընկերութեան անդամք կ'առաջարկեն նոր ընկերներ, որոց ընդունելութեան համար ամբողջ ընկերաց միաձայն հաւանութիւնը հարկաւոր է, բաց ի անոնցմէ, որք Պոլսէն բացակայ են» (Յօդ. Ա). «Ամէն ընկեր պարտական է տասը դուրուշ պղինձ ամսական վճարել Ընկերութեան գանձուն։ Երեք ամիս ամսական չվճարողը հրաժարեալ է Ընկերութենէն» (Յօդ. Բ). «Հաւաքուած ստակին հարիւրին տասը միշտ իբրեւ պահեստ պիտի մնայ» (Յօդ. Գ) Ընկերութիւնը ունի Ընդհ. Ժողով եւ Գործադիր Ժողով, վերջինը պարտաւոր է չորս ամիսը անգամ մը հաշիւ տալ Ընդհ. Ժողովին (Յօդ. Դ—Զ)[99]։

---

[98] Գաղ. Տարեգ. Գ., էջ 115։
[99] Մասիս, 1876, Թ. 1905։

Մասիսի խմբագիրը Արարատեանի Կանոնագիրը հրատարակելու առթիւ կը գրէ իր կողմէ. «Արարատեան Ընկերութիւնը կազմուած է իրենց ազգասիրութեամբը ծանօթ պատուաւոր հայազգիներէ, առանց կրօնական խտրութեան: Ժողովուրդը կրնայ ամենայն վստահութեամբ գիմել անոնց ո՛եւէ տեղեկութեան համար եւ յանձնել իւր յօժար նուէրները, մասնակցելու համար այս ազգօգուտ ձեռնարկին, որ մեր թշուառ հայրենակցաց վիճակը բարւոքելու եւ բարձրացնելու սրբազան կոչումն ունի»:

Արարատեանի առաջին Ատենապետն եղած է Մ. Փորթուգալեան, որ 1876ի Յուլիսին Ընկերութեան կողմէ իբրեւ քննիչ Հայաստան ղրկուելով՝ իրեն տեղ Ատենապետ կ՚ընտրուի Մինաս Չերազ[100]: Փորթուգալեանի պաշտօնն էր ստուգել թէ Հայաստանի ո՛ր գաւառներու մէջ ամէնէն աւելի զգալի է դաստիարակութեան պէտքը եւ ո՞ւր կրնան աւելի արդիւնաւոր ըլլալ Ընկերութեան թափելիք ճիգերն ու կատարելիք գոհողութիւնները[1]:

Արարատեանի քննիչը, Մկրտիչ Փորթուգալեան, իր քննութեանց առաջին արդիւնքը Վանէն ղրկելով՝ Ընկերութեան Վարչութիւնը յարմար կը տեսնէ իր առաջին դպրոցը Վանի Ալիւր գիւղին մէջ բանալ: Ահա՛ այս

---

[100] Գաղ. Տարեց. անդ:

[1] Մասիս, անդ:

մասին Արարատեանի ըրած զեկոյցը 1877 Մարտ 31ին:

«Արարատեան Ընկերութիւնը իւր կազմութենէն անմիջապէս յետոյ գործի ձեռնարկած ըլլալով, յաջողեցաւ 1876 Նոյեմբեր 1ին իւր առաջին դպրոցը բանալ Վանայ Ալիւր գիւղին մէջ: Ընկերութեան կողմէն յատկապէս ղրկուած գործակալը կը տեղեկացնէ թէ Ալիւր գիւղը Վանէն ձիով 3 ժամ հեռի Հայաբնակ գիւղ մ'է 250 տուն բնակիչով, նաեւ կեդրոն վեց հայաբնակ գիւղերու, որք են Խաւեց, Բռնաշէն, Առնականց, Անավանիք, Ամենաշատ եւ Մարմէտ. այս գիւղերէն ալ ուսանողներ կը յաճախեն Ալիւրի դպրոցը, որ ցարդ 200ի չափ աշակերտ եւ աշակերտուհի ունեցած է, Կոստանդնուպոլսոյ մէջ երկար ատեն դասատուութեան պաշտօն վարող փորձառու եւ փութաջան անձի մը դաստիարակութեան յանձնուած: Փետրուար 1ին (1877) կիրակնօրեայ դասարան մ'ալ բացուած է Ալիւրի դպրոցին մէջ, որ կոչուած է եօթն Հայ գիւղերու համար լուսաւորութեան կեդրոն մը հանդիսանալ: Ընկերութիւնը կը պատրաստուի իւր երկրորդ դպրոցն ալ բանալ քիչ ատենէն...

Ընդհ. Ժողովոյ Ատենապետ
Մ. Ձերազ

Գործ. Ժողովոյ Ատենապետ
Ա. Արփիարեան[2]

[2] Մասիս, 1877, Թ. 1961: — Փունջ, Կ. Պ. 1877, Թ. 1164:

1877 Ապրիլին Արարատեանի Ընդհ. ժողովի Ատենապետն է Մ. Չերազ, Փոխ–Ատենապետը՝ Կարապետ Եազմաճեան, Ատենադպիրը՝ Յովսէփ Վասիլեան, Փոխ–Ատենադպիրը՝ Գէորգ Պիւլպիւլեան: Նոյնպէս Գործադիր Ժողովի Ատենապետն է՝ Յովհ. Եըլտըզեան, Ատենադպիրը՝ Արփիար Արփիարեան, Անդամք՝ Զարեհ Շիշմանեան, Մինաս Չերազ եւ Պետրոս Վասիլեան[3]:

Արարատեանի ազգաշէն ծրագիրը եւ գործունէութեան անմիջական արդիւնքը պատճառ կ՚ըլլան որ Հայութիւնը մօտէն շահագրգռուի իրմով եւ հետզհետէ տաք վերաբերում ցոյց տայ իրեն հանդէպ: Ընկերութեան Գործադիր Ժողովը 1877 Ապրիլին հրապարակաւ շնորհակալութիւն կը յայտնէ «Դպրոցասիրաց Ընկերութեան», որ 10 օրինակ Սուրէնեան Քերականութիւն եւ 5 օրինակ Ագնուորեան Աշխարհագրութիւն նուիրած է Արարատեանի: Նոյնպէս Հ. Կղեմէս Սիպիլեանի, որ «Ծաղկոցի տղոց համար» յօրինած Աշխարհագրութենէն 20 օրինակ նուիրած է[4]:

Հայ ժողովուրդի համակրանքն ու գնահատանքը անկէ՛ մանաւանդ յայտնի կ՚ըլլայ որ զանգուածօրէն անդամագրուած ու բաժանորդագրուած է Արարատեանի: Անդամագրուիլը դժուար էր, քանի որ ըստ Ա. Կա–

[3] Մասիս, 1877, Թ. 1966: — Ա. Տեղեկագիր, Կ. Պ. 1877, էջ 10:
[4] Մասիս, 1877, Թ. 1966:

նոնի՝ անդամ գրուելու համար հարկաւոր էր բոլոր ընկերներու հաւանութիւնը: Բայց ատոր հակառակ բաժանորդագրուած են մեծ թուով: 1877 Ապրիլին, ուրեմն հիմնումէն միայն 1 տարի վերջ, Արարատեանի Անդամներու թիւն էր 46, իսկ բաժանորդներունը՝ 363, գումար՝ 409: Թիւ մը՝ որ մինչեւ այդատեն միայն Բերայի «Համազգեաց Ընկերութիւն»էն գերազանցուած է:

Բաժանորդներու մէջ կան 23 Տիկիններ: Աչքի կը զարնէ մեծ թիւը Հայ Կաթողիկէ բաժանորդներու, որոնցմէ յիշենք քանի մը անուններ. Ապտուլլահեաններ, Գույումճեաններ, Թընկըրեաններ, Կէօչէյեաններ, Ճաչեաններ, Սաքըզեաններ, Տիւզեաններ, Փարթուզալեաններ, Ֆըլճեաններ, եւ այլն [5]:

Հայ Կաթողիկէ Պատրիարքարանի Ուսումնական Խորհուրդը, Ատենապետութեամբ Միքայէլ Փարթուզալեանի՝ 1879ին կ'որոշէ ամսէ ամիս Արարատեանին նուիրել 200 ոսկի[6]:

Մասիս [7] 1878 Օգոստոսին կ'իմացնէ որ Ընկերութեան Վասպուրականի Տեսուչը՝ Մարկոս Նաթանեան ընդարձակ տեղեկութիւն գրկած է Դատուանի եւ իր շրջակայ գիւղերու մասին: Նաթանեան Դատուանէն անցած է Հայոց Ձոր, հոն եւս մանրամասն քննութիւն մ'ըներու եւ տեղեկագրերու հա–

[5] Տե՛ս Արարատեան Ընկերութիւն, Ա. Տեղեկագիր. Կ. Պ. 1877. էջ 10—16:
[6] Փունջ. 1879. Թ. 1352:
[7] Թ. 2170:

մար: Այս առթիւ թերթը կը շեշտէ որ Մկրտիչ Արքեպ. Խրիմեան քարոզներով ու յորդորներով կը խրախուսէ Պոլսոյ թէ՛ բնիկ եւ թէ՛ նժդեհ Հայերը՝ իրենց կրցածին չափ օժանդակելու Արարատեանի «փրկաւէտ ջան-քերուն[8]»:

1878 Սեպտ. 10ին Ընկերութեան Գործադիր Ժողովը արտակարգ նիստ մը գումարելով՝ կ'որոշէ ձմեռէն առաջ Վանի քաղաքի մէջ վարժապետանոց մը բանալ, որուն նպատակն ըլլայ «գիւղային նախակրթարանների համար նախակրթիչ դաստիարակներ պատրաստել, որոց մեծապէս կը կարօտի ազգն[9]»:

Մասիսի մէջ[10] Արարատեան Ընկերութիւնը 1878 Հոկտ. 12 շնորհակալութիւն կը յայտնէ Խասգիւղի «Ասիական Ընկերութեան», որ «ազգասիրաբար կը մատակարարէ Արարատեան Ընկերութեան Վանայ վարժապետանոցի ներկայ (1878) տարւոյս հարկաւոր դասագրքերը»: Նոյնպէս շնորհակալութիւն կը յայտնէ Գատըգիւղի «Միութիւն Մանկանց» Ընկերութեան, որ Արարատեանի «Վանայ վարժապետանոցի համար այն (1878) տարւոյ մէջ գրի կարեւոր պիտոյքները» կը հոգայ[11]:

Վանի վարժապետանոցը կարելի չ'ըլլար սակայն 1878ին բանալ: Անոր տեղ Ընկերու—

---

[8] Մասիս, 1878, թ. 2170, 2175:
[9] Մասիս, 1878, թ. 2175:
[10] 1878, թ. 2188:
[11] Մասիս, 1878, թ. 2201. Հմմտ. թ. 2206:

թիւնը կը յաջողի 1878ին բանալ իր երկրորդ դպրոցը:

Արարատեան Ընկերութիւնը Հայաստանի իր երկրորդ վարժարանը բացած է Վասպուրականի Նահանգի Կիւսենց գիւղի մէջ, որ Վանայ արեւելեան հիւսիսային կողմը՝ Թիմար լեռնաձորի մէջ կ'իյնայ: Կիւսենց՝ Թիմարի ամէնէն բազմամարդ գիւղն է 92 տուն զուտ հայ բնակիչով: Իր շուրջը կան հետեւեալ հայ գիւղերը. Պօզանց՝ 22 տուն, Ատիկէօզէլ՝ 18 տուն, Կոմա՝ 25 տուն, Պայբակ՝ 12 տուն: Այս գիւղերն ալ աշակերտ կու տան Կիւսենցի վարժարանին: Կիւսենց ատկէ առաջ բնաւ դպրոց ունեցած չէր: Գիւղացիք մեծ ուրախութեամբ կը մանակցին դպրոցի յարկ մը պատրաստելու աշխատանքներուն:

Կիւսենցի Արարատեան վարժարանը կը բացուի 1878 Նոյեմբեր 1ին եւ կ'ունենայ 98 մանչ եւ 17 աղջիկ աշակերտ, 2 ուսուցիչով[12]: Հետեւաբար սխալ է Արարատեան Ընկերութեան Ա. Տեղեկագրին մէջ (անդ՝ էջ 7) բռնածը թէ Ընկերութեան Բ. դպրոցը 1877ին բացուած է Դատուանի մէջ:

Արարատեան Ընկերութիւնը, Մ. Փորթուգալեանի եւ Մ. Նաթանեանի ջանքերով եւ շատ մը արգելքներու յաղթելէ վերջ՝ 1879 Յունուար 1ին կը յաջողի Վան քաղաքի մէջ

[12] Արարատեան Ընկերութիւն, Գ. Տեղեկագիր, Կ. Պ. 1879, էջ 13—14:

բանալ ա՛յնչափ բաղձացուած վարժապետանոցը: Վարժապետանոցի ուսման ծրագիրը չորս տարուան ընթացքէ մը կը բաղկանայ: Քառամեայ շրջանը ընողը պիտի ստանար վկայական մը: Աշակերտներու սկզբնական թիւը կը սահմանուի 50: Առաջին տարին կ'ունենայ 35 աշակերտ: Դասարանները բաժնուած են երկու կարգի: Փորթուգալեան, որ Վասպուրականի մէջ բացուած բոլոր վարժարաններու ընդհանուր տեսուչն էր՝ տեսուչ կը կարգուի նաեւ վարժապետանոցին, իրեն հետ ունենալով 8 ուսուցիչ[13]:

Վանի վարժապետանոցը՝ Արարատեան Ընկերութեան բացած վարժարաններու կարգին մէջ երրորդն է ժամանակագրօրէն:

Արարատեանի բացած չորրորդ վարժարանն է Վասպուրականի Դատուան գիւղաքաղաքի մէջ բացուածը: Դատուան՝ Վանայ ծովուն արեւմտեան հարաւային կողմը կ'իյնայ եւ Բաղէշէն 4 ժամ հեռու է: Քաղաքականապէս կը վերաբերէր Վանայ նահանգապետութեան, իսկ եկեղեցականապէս՝ Տուրուբերանի: Զուտ հայաբնակ այս գիւղաքաղաքը ունէր 527 տուն բնակիչ, 26 տուն ալ զանազան տեղեր պանդխտած: Իր շուրջը գտնուած հայ գիւղերն են. Ուրդապ՝ 30 տուն, Թուխ՝ 25 տուն, Խնձորկին՝ 20 տուն, Չրհոր՝ 25 տուն, Շամիրամ՝ 17 տուն, Զորգոմ՝ 9 տուն, Կծուակ՝ 40 տուն:

---

[13] Անդ՝ էջ 12—13:

*Դատուանի Արարատեան վարժարանը բացուած է 1879 Մարտ 16ին եւ ունէր 62 մանչ եւ 18 աղջիկ աշակերտ, 2 ուսուցիչով*[14]:

*Դատուանի թէ՛ գիւղի եւ թէ՛ դպրոցի մասին ընդարձակ տեղեկութիւն կու տայ Մ. Փորթուգալեան* Մասիսի *մէջ*[15]: *Նա կը պատմէ որ երբ Դատուանի ժողովուրդը կը լսէ թէ Արարատեան Ընկերութիւնը դպրոց պիտի բանայ՝ ամբողջ ժողովուրդը կը գոչէ. «Աստուած հատատ պահէ այդ Ընկերութիւնը: Փա՛ռք քեզ Աստուած, փա՛ռք քեզ որ արժանացանք այս օրեր տեսնել»: Իսկ երբ Փորթուգալեան այդոց գիրք եւ այլն կը բաժնէ՝ աղաք կ'օրհնեն Ընկերութեան հիմնադիրները, ըսելով. «Աստուած երկար կեանք տայ Ստամպոլի աղաներուն. այդ մարդերը ինչ որ կ'անեն մեզ, հայր աղային չ'աներ. մեք ունէինք հաց չունինք այստեղ. գրքի, թուղթի փարա ո՞ր տեղէ պիտի ունենայինք. Աստուած հատատ պահէ Հայոց ազգ»:*

1879 *Մայիսին կը սկսի Արարատեան Ընկերութեան չորրորդ տարուան գործունէութեան շրջանը:*

*Բերայի* «Բարեգործական Ընկերութիւն»*ը*[16], *որ գեղեցիկ ծրագիրներով* 1860*ին սկիզբ ըրած էր իր գոյութեան, իսկ իրակա–*

---

[14] *Գ. Տեղեկագիր, անդ՝ էջ* 14—15:
[15] *Տե՛ս* Մասիս, 1879, *Թ.* 2322—2323:
[16] *Տես Բերայի Ընկերութեանց Թ.* 7*ը:*

նին մէջ ոչ մէկ շօշափելի գործ տեսած՝ 1873էն վերջ քաշուած էր Հրապարակէն՝ 1879ի սկիզբը բանակցութեան կը մտնէ Արարատեան Ընկերութեան հետ, Վասպուրականի մէջ իր դրամով վարժարան մը բանալու՝ Արարատեանի վարչութեան տակ: Այս նպատակին համար Բարեգործականը իր դրամագլխին տոկոսէն տարեկան 50 ոսկի կը յատկացնէ: Արարատեան Ընկերութիւնը սիրով կ՚ընդառաջէ այս առաջարկին եւ 1879 Մայիս 16ին Բարեգործականի անունով վարժարան մը կը բանայ Վասպուրականի Հայոց-Ձոր գաւառի Կէմ բազմամարդ գիւղին մէջ[17]:

Բարեգործականը Վասպուրականի իր վարժարանին յատկացուցած տարեկան 50 ոսկին յետոյ 70ի կը բարձրացնէ[18]:

Կէմի վարժարանը՝ Արարատեանի բացած հինգերորդ վարժարանը կ՚ըլլայ:

Արարատեանի բացած վեցերորդ դպրոցն է Վասպուրականի Խարակոնիս գիւղի երկսեռ վարժարանը: Գիւղս կը գտնուի Վանայ արեւելեան կողմը, 7 ժամ հեռու, Արջակի լճին մօտ: Ունէր 120 տուն հայ բնակիչ: Դպրոցը բացուած է 1879 Նոյ. 3ին: Աշակերտներու թիւն էր (ձմեռը) 110: Ունէր 2 ուսուցիչ եւ 1 տնտես: Վարժարանիս պաշտպանը՝ Մկրտիչ Սանասարեան՝ տարեկան

---

17 Գ. Տեղեկագիր, անդ՝ էջ 16: — Մասիս. 1879, Թ. 2332: — Միացեալ Ընկերութիւնք Հայոց, Կ. Պ. 1882. էջ 11:

18 Մասիս, 1879, Թ. 2423:

44 ժամ. ուկի կը վճարէր (Միացեալ Ընկերութիւնք Հայոց, անդ՝ էջ 11):

Արարատեանը շատոնց ծրագիր ունէր Վասպուրականի Գործոթ գիւղի մէջ ալ նախակրթարան մը բանալու (Տե՛ս Ա. Տեղեկագիր, էջ 7): Թէեւ Միութեան Տնօրէն Խորհուրդի Ատենապետ՝ Գաբրիէլ Նորատունկեան (յետոյ Փաշա եւ Արտաքին Գործոց Նախարար) Ընկերութեան 1879 Ապրիլ 15ին սարքած մեծ կոչունքին առթիւ խօսած ճառին մէջ կ'ըսէ որ Գործոթի մէջ ալ բացուած է դպրոց մը (Տե՛ս Մասիս, 1879, Թ. 2301), սակայն Արարատեան Գործոթի մէջ 1879 Նոյ. 6ին բացած է իր վարժարանը (Տե՛ս Միացեալ Ընկերութիւնք Հայոց, Կ. Պ. 1882, էջ 11): Գործոթ ունէր 515 տուն հայ բնակիչ եւ կը գտնուէր Վանայ հիւսիսային արեւելեան կողմը, 14 ժամ հեռու, Բերկրի (Առբերանի) վիճակին մէջ, ընդարձակ դաշտերով եւ հայ գիւղերով շրջապատուած: Գործոթի դպրոցը երկսեռ էր: Աշակերտութեան թիւը ձմեռը՝ 60—65, իսկ ամառը՝ 20—25 էր: Ունէր 1 ուսուցիչ եւ 1 տնտես:

Գործոթի վարժարանը՝ Արարատեանի բացած եօթներորդ վարժարանն է:

Մինչ Արարատեան Ընկերութիւնը, իր ծրագրին համեմատ, Հայաստանի մէջ ձրի ուսում ծաւալելու համար իրեն ասպարէզ ընտրած Վասպուրականի հայաշատ կենդրոնը կրցած էր վեց վարժարան եւ մէկ վարժա-

պետանոց բանալով եռանդուն գործի լծուիլ՝ յանկարծ իրեն կը ներկայանար գործի նոր ասպարէզ մը. — Ներսէս Արքեպ. Վարժապետեան, Կ. Պոլսոյ Պատրիարքը, Ընկերութեան ուշադրութիւնը կը հրաւիրէր Հայաստանի ուրիշ մէկ կարեւոր կէտի մը վրայ, ուր Հայութեան հոծ զանգուած մը նոյնքան կարօտ էր ուսման եւ լուսաւորութեան: Այդ հայաշատ վայրն էր Տաւրոսի շրջանը:

Ընկերութիւնը հաճոյքով յանձն կ՚առնէ Ս. Պատրիարքին այդ փափաքն ալ կատարել եւ վեց ամսուան քննութիւններէ վերջ՝ կը համոզուի թէ Տաւրոսի Հայութեան մէջ կրթութիւնը ծաւալելու համար անհրաժեշտ է առ այժմ դպրոց բանալ Զարսանճաք, Քղի եւ Չմշկածագ[19]: Ուստի Ընկերութիւնը դէպի Տաւրոս ճամբայ կը հանէ իր Գործադիր ժողովի մէկ անդամը — Պետրոս Վասիլեան — լիազօրելով զինքը անձամբ կատարելու վարժարաններու բացումը:

Մասիս՝ արձագանգ ըլլալով Ընկերութեան այս կարեւոր ձեռնարկին՝ լուր կու տայ որ Վասիլեան 1879 Մայիս 21ին ճամբայ ելած է՝ Ընկերութենէն հրահանգ ունենալով «պէտք եղած տեղեր վարժարաններ բանալ, դասատուներ կարգել եւ մինչեւ որ արժանաւոր տեսուչ մը դրկուի՝ տեսչի պաշտօնն ալ կատարել[20]»:

---

[19] Գ. Տեղեկագիր, էջ 16—17:
[20] Մասիս, 1879, Թ. 2331:

Փունճ[21] կը գովէ Վասիլեանի անձնուիրութիւնը, չեշտելով թէ ան միայն ճամբու ծախքը ընդունած է Ընկերութենէն, մնացած բոլոր ծախքերը «իր անձնականէ հոգալ յանձն առնելով»:

Մեզ կը պակսին մանրամասնութիւններ Վասիլեանի գործի մասին: Հայ թերթերը կը լռեն: 1879 Սեպտեմբերին Մասիս[22] չունի տակաւին լուր Վասիլեանի ձեռնարկի գործադրութեան մասին:

Բարեբախտաբար ունինք մեր առջեւ «Միացեալ Ընկերութեան» «Երկամեայ Տեղեկագիրը», հրատարակուած 1883ին, ուր մասամբ նշանակուած են Արարատեանի սկսած եւ «Միացեալ»ի շարունակած կրթական գործի աստիճանական ընթացքը Տարօնի Հայութեան մէջ, ուր կը տեսնուին նաեւ թէ ո՞ւր եւ ե՞րբ բացուած են դպրոցները: Արարատեանի գործի մասին ամբողջական գաղափար մը տուած ըլլալու համար՝ հոս յառաջ կը բերեմ Տարօնի մէջ բացուած վարժարաններու ցանկը՝ ժամանակագրօրէն, իբրեւ լուսաբանութիւն աւելցնելով որ մինչեւ 1880 Յունիս 1 բացուած վարժարանները՝ Արարատեանի կողմէ բացուած, իսկ անկէ վերջինները՝ «Միացեալ»ի կողմէ բացուած են, քանի որ գիտենք թէ 1880 Յունիս 1ին Արարատեանը միանալով 2 ուրիշ Ընկերու-

[21] 1879. Թ. 1376:
[22] Տե՛ս Թ. 2423:

*թիւններու հետ՝ կը պահրի առանձին իր անունով դործելէ :*

1․ Բերրի (*Զարոանճադ*) *գիւղաքաղաքին նախակրթարանը բացուած է 1879 Օգոստոս 1ին։ Ունի 140 աշակերտ։ Բերրի կենդրոնն է Զարոանճադի վիճակին եւ կը գտնուի Խարբերդի հիւսիսային, Բալուի արեւմտեան կողմը, ունի 430 տուն հայ բնակիչ* [23]։

2․ Խուփս (*Քղի*) *գիւղի նախակրթարանը բացուած է 1879 Դեկտեմբեր 1ին․ ունի 120 աշակերտ՝ 3 ուսուցիչով եւ 1 տնտեսով։ Խուփս՝ Քղիի արեւմտեան կողմը կը գտնուի, 3 ժամ հեռաւորութեամբ։ Ունի 185 տուն հայ բնակիչ* [24]։

3․ Խօշմաթ (*Բալու*) *գիւղի նախակրթարանը բացուած է 1880 Մարտ 1ին 70—80 աշակերտով եւ 1 ուսուցիչով։ Խօշմաթ, գեղեցիկ դիրքով գիւղ մ՚է Բալուէն 2 ժամ դէպի հիւսիս։ Ունի 80 տուն հայ։ Տեղացիներէն Պօղոս Ծաղիկեան յանձն առած է առաջին տարին 15—20 օսմ. ոսկի վճարել վարժարանի ծախքերուն համար* [25]։

4․ Չմշկածագի *երկսեռ նախակրթարանը բացուած է 1880 Ապրիլ 1ին եւ ունի 100—110 աշակերտ՝ 3 ուսուցիչով։ Չմշկածագ կը*

---

[23] *Տե՛ս «Միացեալ Ընկերութիւնք Հայոց»․ Տեղեկագիր Երկամեայ, Կ․ Պ․ 1882․, էջ 9։*
[24] *Անդ՝ էջ 9։*
[25] *Անդ՝ էջ 9—10։*

գտնուի Խարբերդի հիւսիսը, Եփրատի մօտ՝ 207 տուն հայ բնակիչով[26]:

5. Քղի–Գասապայի բարձրագոյն մանչերու նախակրթարանը բացուած է 1880 Դեկտեմբր. 1ին՝ 160—180 աշակերտով, 3 ուսուցիչով եւ 1 տնտեսով, Տեղացիք տարեկան 66 օսմ. ոսկի կը վճարեն վարժարանին համար[27]:

6. Քղի–Գասապայի բարձրագոյն աղջկանց վարժարանը բացուած է 1880 Դեկտեմբր. 1ին: Աշակերտուհիներու թիւն է 100—140, վարժուհի եւ ուսուցիչ՝ 3: Վարժարանս բացուած է «Ազգանուէր Հայուհեաց Ընկերութեան» խնդրանքով, որ տարեկան 140 օսմ. ոսկի կը վճարէ վարժարանին համար:

Քղի քաղաքը Երզնկայի արեւելեան կողմն է, 20 ժամ անկէ հեռու, համանուն գետակի հովտին մէջ եւ ունի 200 տուն հայ բնակիչ[28]:

Հոս կը վերջացնենք «Արարատեան Ընկերութեան» կրթական գործի պատմութիւնը:

Այժմ տեսնենք համառօտիւ Ընկերութեան նիւթական վիճակը:

Արարատեան Ընկերութեան նիւթական միջոցները հետեւեալներն են. 1. Անդամավճարներ, 2. Վիճակատոմսեր, 3. Կամաւոր նուէրներ:

---

[26] Անդ՝ էջ 9:
[27] Անդ:

1․ Ամէն անդամ, բացի ամսական 10 դահեկան անդամավճարէ՝ պարտաւոր է ամիսը կամ 10 դահեկան նուէր հաւաքել եւ կամ ինքն իր կողմէ 5 դահեկան վճարել (Հիմնական Կանոն, Յօդ. 12—13)։

2․ Ընկերութիւնը հանած էր որոշ թուով վիճակատոմսեր, որոնց վաճառումով միայն 1878—1879 գոյացած էր 60,000 դահեկան։

3․ Ընկերութեան ամենակարեւոր նիւթական աղբիւրը կը կազմեն սակայն կամաւոր նուիրատուութիւնները։ Հայ ժողովուրդի գործնական համակրանքը մեծ եղած է այս Ընկերութեան հանդէպ։ Անիկա բացատրել կարենալու համար յիշենք հետեւեալ պարագաները․

Ներսէս Վարժապետեան Պատրիարքը յատուկ կոնդակով Ազգին կը յանձնարարէ Արարատեան Ընկերութիւնը[29]։ Խասգիւղի «Ասիական Ընկերութիւն»ը յանձն կ՚առնէ Վանայ վարժապետանոցի դասատուները հոգալ, Գատըգիւղի «Միութիւն Մանկանց» Ընկերութիւնը կը ստանձնէ նոյն վարժապետանոցի գրենականներն հայթայթել[30]։ Մայրաքաղաքի օրինակը կը վարակէ դրսեցիններն ալ ու ետեւէ ետեւ կը հասնին նպաստներ Ադրիանուպոլսէն, Եգիպտոսէն, Եւդոկիայէն, Երզնկայէն, Իզմիրէն, Լոնդոնէն, Մանչես-

---

[28] Անդ։
[29] Գ. Տեղեկագիր, անդ՝ էջ 4։
[30] Անդ։

*տրէն, Մարաշլըէն, Նիկոմիդիայէն, Տրապիզոնէն, Կալկաթայէն, եւ այլն: Իզմիրի մէջ «մի քանի ուսումնական եւ ազգասէր անձինք ... խորհուրդ մը կը յղանան, այսինքն՝ Արարատեան Ընկերութեան* մէկ ճիւղ կազմել ... *մասնաւոր հանգանակութիւններ ընել եւ բաժանորդներ գտնել*[31]»:

*Արարատեանի կարեւոր գումար մը ապահոված են նաեւ սարքուած հանդէսներն ու պարահանդէսները. Գատըգիւղի Երիտասարդութիւնը, աջակցութեամբ Գարեգին Վ. Սրուանձտեանցի, թատերական ներկայացում մը կու տայ՝ ի նպաստ Արարատեանի*[32]: *Գատըգիւղի ներկայացումը գրգիռ կ'ըլլայ Ընկերութեան՝ անձամբ կազմակերպելու պարահանդէս մը, որ տեղի կ'ունենայ Բերայի Էլդորատոյի սրահը՝ հովանաւորութեամբ Ֆրանսայի դեսպան* Fournier*ի, որուն արդիւնքը կ'ըլլայ* 1000 *ոսկի*[33]: *Երկրորդ պարահանդէս մը կը սարքուի Հայ Կաթողիկէ Համայնքի մեծագոյն դէմքերէն* Օննիկ Պէյ Մըսըրլեանի *Պէօյիւքտէրէի շքեղ պարտէզին մէջ՝ հովանաւորութեամբ* Նախարարապետ Արիֆ փաշայի, *որուն զուտ շահը կ'ըլլայ* 1500 *ոսկի*[34]:

*Կ'արժէ յիշել այս վերջին պարահանդէսի առթիւ կազմուած Կարգադիր Յանձնախումբի անձնակազմը, որ ինքնին խօսուն պատկեր մ'է.*

---

31 Մասիս, 1878, Թ. 2183:

| | |
|---|---|
| Գրիգոր Օտեան | Նախագահ |
| Օննիկ Պէյ Մըսըրլը | Փոխ– |
| | Նախագահ |
| Մկրտիչ Էսայեան | Գանձապետ |
| Գաբրիէլ Նորատունկեան | Քարտուղար |

Գէորգ Ապտուլլահ
Յարութիւն Թավուքճեան
Ադոլֆ Ուրման
Սիդնէյ Լաֆոնտէն
Լէոն Լըմուան
Սերովբէ Կիւլպէնկեան
Սարգիս Համամճեան
Սիմոն Պէյ Մաքսուտեան
Անտոն Պէյ Մըսըրլը
Միւնիր Պէյ
Միքայէլ Մամճեան
Ներսէս Ներսէսեան
Յարութիւն Նորատունկեան
Պօղոս Պէյ Նուպարեան
Յովհաննէս Շահին
Կարապետ Շահպազ
Պետրոս Շաշեան
Արիկ Ունճեան
Յովհաննէս Սաքըզ
Զ. Սուէֆանովիչ
Սարգիս Սվաճեան
Րէֆէթ Պէյ

---

[32] Գ. Տեղեկագիր, էջ 4—5:
[33] Փունջ, 1879, թ. 1344:
[34] Անդ՝ թ. 1410:

Միքայէլ Փորթուգալ
Խաչիկ Օտեան[35]:

Թուրքիոյ Հայոց այս շարժումները չէին կրնար վրիպիլ Ռուսիոյ Հայոց ուշադրութենէն: Մկրտիչ Փորթուգալեան, որ թղթակցութեամբ սերտ կապ կը պահէր Մշակի հետ՝ Ռուս-Թրքական պատերազմի միջոցին կ՚անցնի Թիֆլիզ, ուր 1878 Ապրիլին Մշակի խմբագիր Գրիգոր Արծրունիէ կը խնդրէ աջակցիլ Արարատեանի: Գրիգ. Արծրունի խմբագրականներ կը նուիրէ Արարատեան Ընկերութեան նպատակի եւ գործի մասին բանալով նուիրատուներու ցանկ մը: Արդիւնքը անմիջական կ՚ըլլայ: Թիֆլիզ, Ալեքսանդրապոլ, Բաքու, Փոթի, Սիմֆերոպոլ, Երեւան, Ախալցխա, Մոզդոկ, Մադրաս, Սարատով, Պետրովսկ, Ղուբա, Սլավիանկա, Ղարաքիլիսէ, Վերին-Ագուլիս, Դաւալու, Մոսկուա, Պետերբուրգ, եւ այլն, եւ այլն՝ կը փութան իրենց նուէրները հասցնել, լեցնելով Մշակի էջերը: Ասոնց նուիրատուութեան գումարը կը բարձրանայ 8000 րուբլիի[36]: Ռուսահայ դպրոցական պատանիք եւ աղջիկունք Հայաստանի իրենց տարեկից եղբայր-

[35] Փունջ, 1879, Թ. 1406:

[36] Գ. Տեղեկագիր, էջ 5—6 (տե՛ս նուիրատուուներու ցանկը՝ էջ 54—83): — Հմմտ. Միացեալ Ընկերութիւնք Հայոց, Երկամեայ Տեղեկագիր, անդ՝ Թ. 1 Հաշուեցուցակը «Հասոյթք եւ Ծախք Արարատեան Ընկերութեան»:

ներու եւ քոյրերու ուսման նպատներու համար իրարու հետ մրցումի կ՚ելլեն նուիրատուութեամբ: Պոլիս եւ Թիֆլիզ, Հայութեան այս երկու կեդրոնները՝ Վասպուրականի եւ Տարօնի Լուսաւորութեան համար մրցումի կատարեալ պայքար մը բացած էին:

Արարատեան Ընկերութիւնը մանաւանդ երախտագէտ մնացած եւ իր պաշտպանն համարած է Գրիգոր Արծրունին, յայտնելով թէ «Հայ Ազգը իւր առաջին վարժապետանոցը Գ. Արծրունիի աշխատութեան պարտական է[37]»:

Արարատեանի եղած են նաեւ 3 կտակներ եւ մեծագումար գրքերու նուէրներ[38]: Նպաստներ եղած են նոյնպէս Եւրոպայի Օտարներէն, գլխաւորաբար Պարիս, Լոնդոն եւ Բերլին[39]:

Արարատեանի եղած նուիրատուութեանց մէջ յուզիչ դրուագներ ալ կան: Պոլսոյ Գատըգիւղի հայ պանդուխտ խոհարարներ, բեռնակիրներ ու սրճեփներ իրենց քրտինքի արդիւնք դոյզն վաստակէն բաժին հանելով՝ Արարատեանի կը ղրկեն: Ահա թէ ի՛նչ կը գրէ Գատըգիւղի պանդուխտ Հայերու պանդուխտ Առաջնորդը՝ Գ. Վ. Սրուանձտեանց. «Արարատեան Ընկերութեան Տնօրէն ժողովոյ անդամք սիրելեալք: Այդ անունը՝ զոր կը կրէ Ընկերութիւնդ, պաշտելի է ամէն

[37] Գ. Տեղեկագիր, էջ 6:
[38] Անդ՝ էջ 84—85, 86—91:
[39] Փունջ, 1879, Թ. 1366:

Հայուն: Ձեր անձնուէր ջանքը՝ զոր անձանձիր յառաջ կը տանիք, քաջալերել պարտիք մ՚է ամէն Հայուն եւ ձեր հայրենաշէն նպատակին օժանդակել՝ կենայ եւ պատուոյ, փրկութեան եւ երջանկութեան ճանապարհ պատրաստել է Հայաստանին եւ Հայուն: Երջանիկ եմ ես ներկայացուցիչ հանդիսանալով խումբ մը Հայաստանցի պանդուխտ Հայ եղբարց, որ Գատըգիւղին մէջ կը ծառայեն. Մշեցի, Վանեցի, Բալուցի եւ մեծաւ մասամբ Եգեցի խոհարարք, Մշեցի համալք, եւ այլն, եւ թէպէտ կարօտ ու ծառայ, այլ սրտին ազնիւ եւ ազատ, իրենց խնդագին զգացմամբ ինձ կը յանձնեն յայտնել Ընկերութեանդ իրենց հոգւոյ հրճուանքն ու գոհունակը փոքրիկ պատարագաւ մը, զոր իրենց ճակատներն ու լանջերը ողողող ջերմ քրտանց կաթիլներէն կը ձօնեն եւ իրենց ջանէն կ՚ընծայեն: Լսելով թէ Արարատեան Ընկերութիւնդ Արարատայ որդւոց Հայրենի գաւառաց մէջ ձրի ուսումն եւ լուսաւորութիւն տարածելու ձեռնարկած է, կը զգան թէ իրենց նժդեհութեան սեւ ճակատագիրը ջնջելու, իրենց թիկանց վրայէն գրաստական բեռն եւ պարանոցէն ծառայական լուծը թոթափելու պատուաւոր մարդոց եւ ազգաց կարգը դասուելու, հայրենեաց եւ ընտանեաց անդորր վայելել տալու, մթին եւ խոնաւ նկուղներուն մէջը իրենց թափած արցունքն ու հառաչանաց արձագանգն անհետ ընելու,

իրենց բնիկ ընդարձակ դաշտաց եւ լերանց վրայ կենաց ազատ շունչը շնչելու, հողը տալու եւ առնելու, իրենց ծնած հողոյն վրայ ապրելու զօրանալու եւ զանի զօրացնելու միմիակ միջոցն է ուսանիլ եւ գիտնալ եւ ահա այս միջոցը ասոնց զաւակաց համար կը պատրաստէ Արարատը: Քաղցր է ինծ յուսալ թէ հաճութեամբ պիտի ընդունիք գրկանաց, փաշխից, տառապանաց եւ նժդեհութեան բեռանց տակ ճնշուած մեր սիրելի Հայ եղբարց այս զուգնաքեայ պատարագը՝ իրենց փղձկեալ սրտի անհուն շնորհակալեաց եւ հայրենասիրական զգացմանց հետ՝ ի ձեռն նժդեհ վարդապետի մը, որ կ՚աղօթէ զարձունել հայրերն իրենց զաւակաց քով եւ որդիքն՝ իրենց հայրենեաց ծոցը: Յաջողեն երկինք ձեզ եւ անոնց:

1879 Յունվր. 16

Գատրգիւղ

Ն. Սրուանձտեանց

Գարեգին Վարդապետ[40]»:

Մասիս հող կը հրատարակէ նուիրատու պանդուխտներու անուանց ցանկը՝ իրենց բաժիններով, ինչպէս նաեւ Արարատեանի շնորհակալիքը՝ ուղղուած Սրուանձտեանցի եւ պանդուխտներու:

Ախալցխայէն Եղիսաբեթ Մամիկոնեան կը գրէ Մշակին. «Խնդրում եմ բարեհաճէք

---

[40] Մասիս, 1879, Թ. 2245:

*ընդունել այս իմ ուղարկած* 10 *րուբլին «Արարատեան Ընկերութեան» համար*։ Ես թէեւ շատ էի ցանկանում ստորագրութեամբ փող հաւաքել յիշեալ Ընկերութեան օգտին, *բայց դժբախտաբար մտադրութիւնս կամ ցանկութիւնս չիրագործուեցաւ*...։ Իմ կարծիքով անհրաժեշտ է եւ պարտք ամէն մի ազգասէր հայի այդպիսի չքնաղ Ընկերութեանց համար ձեռք ձեռքի տուած աշխատել եւ չխնայել ձեռքից եկած օժանդակութիւնը...։ Գրիչ ունեցողը թող չխնայէ իւր գրիչը... լեզու ունեցողը թող խօսի, խրախուսէ... փողի տէր անձը թող մի փոքր սովորականից աւելի նուիրէ, մտածելով որ օտարին չէ յղուածը...[41]»։

*Ախալցխացիք թատերական ներկայացում մը տալով՝ արդիւնքը Արարատեանի կը դրկեն*[42]։

*Շուշիի երիտասարդները իրենց հաւաքած դրամով կը փափագին Արարատեանի միջոցաւ Հայաստանի մէջ վարժարան մը բանալ նոր վախճանած Զօրավար Լազարեւի յիշատակին՝* «Արարատեան-Լազարեան» *վարժարան անունով*[43]։

*Արարատեան Ընկերութիւնը իր դրամին մէկ մասը, որուն անմիջական գործածութեան պէտք չունէր՝ տոկոսով աւանդ դրած*

---

[41] Մշակ. *Թիֆլիս* 1879, *Թ*. 18։
[42] Մասիս. 1879, *Թ*. 2244։
[43] *Անդ՝ Թ*. 2439։

էր Պոլսոյ առեւտրական մեծ տուներէն Սերովբէ եւ Սարգիս Կիւլպէնկեաններու քով [44]:

Ընկերութիւնը իր Գ. շրջանին հարկ կը համարի Հիմնական Կանոնագրութիւնը փոփոխութեան ենթարկելու, նոր յաւելուածներ ընելով: Փոփոխութիւնը տեղի ունեցած է 1878 Մայիս 14ին, Օգոստ. 27ին եւ 1879 Փետր. 25ին: Այս նոր «Հիմնական Կանոնագրութիւն»ը կը բովանդակէ 56 Յօդուած: Ասկէ զատ Ընկերութեան Ընդ. Ժողովը կ'ունենայ իր «Ներքին Կանոնագրութիւն»ը՝ 87 Յօդուածով, կազմուած՝ 1878 Յունիս 9ին [45]:

Մասիս [46] աչքի առջեւ ունենալով Արարատեանի Գ. Տեղեկագիրը եւ երեք տարուան անոր բարոյական ու նիւթական արդիւնքը՝ կ'ընդունի որ այս «ամենակարեւոր Ընկերութիւնը ջանքով ու արդիւնքով լի երեք տարիներ բոլորեր» է, բայց, կ'ըսէ, «չեմք տեսներ որ իր նպատակին վսեմութեան համապատասխան քաջալերութիւն գտած լինի ազգէն, որոյ մատուցած օգնութեան՝ համեմատական տեսակէտով միայն կրնամք նայիլ... Եթէ կը զգամ թէ մեր ազգին վերածնութիւնն ուսմանց եւ արուեստից շնորհիւ է, երբ փորձով գիտեմ թէ տգէտ ժողովուրդ մը քաղաքակիրթ աշխարհիս մէջ տեղ չունի եւ վաղ կամ անագան կորնչելու դատապար–

---

[44] Անդ՝ Թ. 2277:
[45] Տե՛ս Գ. Տեղեկագիր, անդ՝ էջ 18—26, 27—39:
[46] 1879, Թ. 2423:

տուած է, *եթէ կը զգամք թէ* մեր ազգին կրած աղետից մէկ մեծ մասն իւր տգիտութեան պատճառաւ է, *եթէ համոզուած եմք այս ճշմարտութեանց*, որք դժբախտաբար անժխտելի են, *պէտք է* աւելի անձնուիրութեամբ աշխատիմք մեր դպրոցաց համար եւ օգնութիւն չխնայեմք մեր այն Ընկերութեանց, որք այլեւայլ ձեւերու եւ անուններու ներքեւ, միեւնոյն ազնիւ նպատակին, այսինքն ազգին մէջ ուսում ծաւալելու կ'աշխատին»:

*Թէեւ Արարատեանը առաջին Ընկերութիւնը չէ որ Հայաստանի մէջ դպրոց բանալու ծրագիր ունի — իրմէ առաջ կար Բերայի «*Դպրոցասիրաց*»ը եւ իրեն հետ ու իրմէ վերջ ուրիշներ ալ կային — սակայն կարելի է համառօտ կերպով ըսել թէ* անոնցմէ ոչ մէկը Արարատեանի բարոյական մեծ ազդեցութիւնը ունեցած է իր ժամանակին վրայ[47]: *Իր հմայքը գերազանցած է միայն «Միացեալ Ընկերութիւն»ը, որ սակայն ուրիշ բան չէ, բայց եթէ իր իսկ շարունակութիւնը:*

1880 *Յունուարին, իր անդամներու* 3/4*ին քուէով, Արարատեան Ընկերութիւնը կ'ընդունի Բերայի «Դպրոցասիրաց–Արեւելեան» եւ Խասգիւղի «Կիլիկեան» Ընկերութիւններու հետ միանալու սկզբունքը*[48], *որոնց նպատակը նոյնպէս Հայաստանի մէջ դպրոց բա–*

---

[47] Շիրակ, *Աղեքսանդրիա* 1905, *էջ* 179:
[48] Մասիս, 1880, *Թ*. 2529:

*նալ եւ ուսում ծաւալել էր։ Այս երեք Ընկերութիւններու միացումով կազմուած է «Միացեալ Ընկերութիւնք Հայոց»ը, ինչպէս տեսանք արդէն անկէ առաջ[49]։ Միացումը տեղի ունեցած է* 1880 *Յունիս* 1*ին։*

*Արարատեան՝ այս միացումի առթիւ «Միացեալ»ին կը յանձնէ* 330, 688 *դուրուշ*[50]։

19· ԱՐԵՒԵԼԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1876)

«Արեւելեան Ընկերութիւնը» *հիմնուած է Օրթագիւղի մէջ* 1876*ին*[51]։

Մասիս*ի մէջ «Յ · Յ · Ծ ·» կը գրէ · «Լսեալ է մեր եւս թէ մի քանի ազնիւ սրտեր «Արեւելեան» անուամբ Ընկերութիւն մը հիմնած են* Հայաբնակ երկիրներու մէջ դպրոցներ հաստատելու, մանկավարժներ եւ գրեանք մատակարարելու *պզգօգուտ նպատակաւ։ Լսեցինք եւս թէ ամենայն ճիգ կը թափեն գործն յառաջ մղելու եւ թէ* արդէն իսկ քիչ շատ գովելի գործեր ընելու ձեռնարկած ու կատարած են[52]»։

*Դժբախտաբար անծանօթ են մեզ «Արեւելեան Ընկերութեան» ձեռնարկներն ու գործերը։ Միայն սա կրնանք ըսել որ «Դպրոցասիրաց»ի հետ միանալէ վերջ՝* 1879 *Հոկտեմ-*

---

[49] *Տե՛ս Ղալաթիոյ Ընկերութիւնները՝ Թ.* 20։

[50] *Տե՛ս «Միացեալ Ընկերութիւնք Հայոց, Երկամեայ Տեղեկագիր, էտեւ։*

[51] Մասիս, 1879, *Թ.* 2431։ — Նոր Լուր, 1925, *Թ.* 224։ — *Գաղ. Տարեգ., Գ., էջ* 115։

[52] Մասիս, 1878, *Թ.* 2121։ — *Հմմտ.* Արեւելք, 1898, *Թ.* 3853։

բեր 20ին Տուրուբերան Նահանգի Պուլանըք վիճակի Լիզ գիւղին մէջ Նախակրթարան դպրոց մը բացած է «Բարեգործական Ընկերութեան» ծախքով, որ տարեկան 50 օսմ. ոսկի կը կճարէր[53]: Լիզ հայաբնակ գիւղը կը գտնուէր Պէյլիճան լեռներու ստորոտը, Արածանիի մօտ եւ ունէր 60 տուն բնակիչ:

Արեւելեան Ընկերութիւնը 1878 Յունուար 1ին Բերայի «Դպրոցասիրաց Ընկերութեան»[54] հետ միանալով՝ կազմած են «Դպրոցասիրաց-Արեւելեան» միացեալ Ընկերութիւնը[55]:

## 20. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

1874ի «Ընթերցասիրաց»ը կարճ ժամանակէն քայքայուած է, ինչպէս տեսանք վերը: Կ'երեւայ թէ 1877ի վերջերը փորձած են ուրիշներ նոյն անունով Օրթագիւղի մէջ նոր Ընկերութիւն մը հիմնել: Վերջինս 1878 Փետր. 11ին «նորահաստատ» կ'որակուի եւ կը պատրաստուի Ընթերցարան մը բանալ: Ընկերութեան Գործադիր Ժողովը հետեւեալ ծանուցումը հրատարակած է.

«Գիւղիս (Օրթագիւղ) մէջ նորահաստատ Ընթերցասիրաց Ընկերութեան Գործադիր Ժողովը պատիւ ունի ծանուցանել ուսումնասէր թաղեցւոց որ յիշեալ Ընկերութեան

---

53 Փունջ, 1879, Թ. 1421: — Միացեալ Ընկերութիւնք, Երկամեայ Տեղեկագիր, անդ՝ էջ 10:

54 Տես Բերա, Թ. 13:

55 Տես Բերա, Թ. 33:

Ընթերցարանին բացումը պիտի կատարուի հանդիսաւոր կերպիւ, յառաջիկայ չորեք– չարթի գիշեր, Փետր. 15 ժամը 2½ին Ս. Թարգմանչաց վարժարանի սրահը, որոյ մուտքն ազատ պիտի լինի անխտիր ամէն ազ– գայնոց . . . :

Ի դիմաց Գործ. Ժողովոյ

Ատենապետ Ատենադպիր
Յ. Վ. Աշոտ Յ. Գուրգէն[56]»:

Ընթերցարանը կը բացուի[57], բայց Ըն– կերութինը առով գոհ չըլլալով՝ քիչ յետոյ բացումը կը կատարէ նաեւ Լսարանի մը՝ հետեւեալ Յայտագրով.

Լսարան
Ընթերցասիրաց Ընկերութեան
1878 Մարտ 3 Ուրբաթ գիշեր ի ժամ 2½
Ի Թատրոնի Բարեսէր Ընկերութեան
յՕրթագիւղ

Մասն Ա.

Ազգ. երգ (դաշնակի ձայնակցութեամբ)
աշակերտք Հայկ. Կրթ.
Ծինեոնակ
Նուագ (դաշնակի վրայ) Օր. Նարդոս
Կիյեօմ Թել
Բացումն Լսարանի Պ. Յ. Գուրգէն

---

[56] Մասիս, 1878, Թ. 2089:
[57] Մասիս, 1878, Թ. 2095:

Մաս Բ.

Ազգ. երգ (նոյնք)
Ինձ համար չէ
Նուագ (նոյն)
Կրանտ քարրիս հօնկրուազ
Բանախօսութիւն Հ. Կղեմէս Վ. Սիպիլեան
Հայաստան եւ Հայք
Մուտքն ազատ է երկու սեռի համար, իսկ օթեկացգին որոշուած է մէկ հինգնոց թղթադրամ[58]:

«Ընթերցասիրաց»ի 1877ին հիմնումը կը հաստատէ Ընկերութեան մէկ ծանուցումը 1880ին, ուր կ՚ըսուի թէ «Ընթերցասիրաց»ը իր Դ. շրջանին (1880) առաջին երեկոյթի հանդէսը պիտի տայ «Բարեսէր»ի թատրոնին մէջ՝ ի նպաստ «Միացեալ Ընկերութեանց»[59]:

1881ի Յունուարին Ընթերցասիրացի Լաարանին մէջ կը խօսի Խորէն Նար–Պէյ[60]:

## 21. ԳՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1878)

Ղալաթիոյ «Հայ–Գրական Ընկերութեան» լուծումէն վերջ՝[61] Օրթագիւղի մէջ կազմուած է «Գրական Միութիւն» մը, միեւնոյն ծրագրով: Միութեան հիմնումի մանրամասնութիւնները կը պակսին: Հաւանական է որ ան հաստատուած ըլլայ 1878ի ընթացքին: Ասոր ապացոյց է այն որ Ընկե–

[58] Անդ՝ Թ. 2096:
[59] Լոյս, Կ. Պ. 1880, Թ. 119:
[60] Մասիս, 1881, Թ. 2792:
[61] Տես Ղալաթիա, Թ. 16:

րութիւնը հիմնուելէ վերջ՝ գործած է ծա-ծուկ: Երբ 1879 Ապրիլին առաջին հրատարակութիւնը կ'ընէ՝ ստիպուած երեւան կու գայ իր անունով: Ասիկա բացատրուած է Ընկերութեան առաջին հրատարակութեան մէջ, ուր կ'ըսուի. «Գրական Միութիւնը... նախապատիւ կը համարէր բոլորովին անծանօթ մնալ եւ աշխատիլ, առանց յայտնուելու, սակայն հարկն ստիպեց որ վարագոյրը պատռէ, իր անդրանիկ գործոյն հետ[62]»:

Ինչպէս հասկցուեցաւ՝ Ընկերութիւնս Հրատարակչական մ'է, նպատակ ունենալով «Աժան գնով օգտակար գիրքեր տպել եւ գլխաւորապէս գաւառաց մէջ ընթերցանութիւնը զարգացնել[63]»:

Միութեան «անդրանիկ գործը» կ'ըլլայ՝ Alexandre Wayի «Թէ որ ամուսնացնելու աղջիկ մը ունենայի» գրքին տպագրութիւնը, զոր գլուխ հանած է 1879 Ապրիլին: Ֆրանսերէն գրքին թարգմանիչն է Պետրոս Յ. Ատրունի:

Միութիւնը 1879 Օգոստոսին Տնտեսեանի տպարանէն լոյս կը հանէ 1880ի «Օրացոյց»ը, որ ի նպաստ Ս. Փ. Ազգ. Հիւանդանոցի եղած հրատարակութիւն մ'է[64] շատ փոքր ծաւալով եւ աննշան բովանդակութեամբ:

---

[62] Աղէքսանդր Վէյ, Թէ որ ամուսնացնելու աղջիկ մը ունենայի. թարգմ. Պետրոս Յ. Ատրունի, Կ. Պ. 1879, էջ Ա:

[63] Մասիս, 1879, Թ. 2323:

[64] Հմմտ. Մասիս, 1879, Թ. 2326:

22. ԴՊՐՈՑԱՍԷՐ ՀԱՅՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

Օրթագիւղի Հռիփսիմեան աղջկանց վարժարանի շրջանաւարտ քանի մը Տիկիններ ու Օրիորդներ միանալով՝ 1879 Մայիս 1ին հիմը կը դնեն Հայ կնական Մշակութային Ընկերութեան մը, որուն անունը նախապէս կ՚ըլլայ «Դպրոցասէր Հայուհեաց Ընկերութիւն»[65], իսկ յետագային կը կոչուի նաեւ «Դպրոցասէր Տիկնանց Ընկերութիւն»[66], միւս Հայ կնական, գրեթէ միեւնոյն ժամանակ կազմուած Ընկերութիւններէն զանազանուելով գլխաւորաբար իր առաջին տիտղոսովը. «Դպրոցասէր...» եւ յաճախ յորջորջուելով լոկ այսպէս. «Դպրոցասէրը»:

Ընկերութեանս Հիմնադիրներ կը համարուին. Տիկ. Նազլը Վահան, Տիկ. Սրբուհի Տիւսաբ, Օր. Թագուհի Պալթազարեան, Օր. Նուրիկ Սիմէոնեան եւ Տիկ. Զապէլ Ֆըռնտըքլեան[67]:

Ահա Ընկերութեան Նպատակը. «Ա. Անօգնական Հայուհեաց դաստիարակութեան նպաստել, նաեւ գաւառաց վարժուհի պատրաստել: Բ. Ընկերութեանս նպատակը գործադրելու համար Ընկերութիւնը պիտի ջանայ մասնաւոր դպրոցներ բանալ, որոնց մէջ

---

65 Մասիս, 1879, Թ. 2416, Սեպտ. 1: — Դպրոցասէր Հայուհեաց Ընկերութիւն, Ա. Տարեկան Տեղեկագիր, Կ. Պ. 1880:

66 Հմմտ. Դպրոցասէր Տիկնանց Ընկերութիւն, Բ. Տեղեկագիր, Կ. Պ. 1881:

67 Տօքթ. Վ. Յ. Թորգոմեան, Երեմ. Չէլէպ. եւն, Բ., էջ 676:

ծրիապէս պիտի աւանդուին Ուսմունք եւ Ձեռարուեստք»[68]:

*«Դպրոցասէր Հայուհեաց Ընկերութեան» մասին հնագոյն տեղեկութիւնը ժամանակակից* Մասիս *թերթը կու տայ*, 1879 *Սեպտ.* 1*ին գրելով.* «Օրթագիւղի մէջ քանի մ'ազնուամիտ Հայ տիկնայք անուսումն եւ անտէր մնացած Հայ աղջկանց ծրի կրթութիւն տալու եւ գաւառաց համար վարժուհիներ պատրաստելու վսեմ խորհրդով Ընկերութիւն մը կազմած» *են*[69]:

*Ինչպէս ըսինք՝ Ընկերութեան հիմնումի պաշտօնական թուականն է* 1879 *Մայիս* 1*: Իսկ թէ ո՞վ եղած է բուն հիմնադիրը, որ յղացած է Ընկերութեանս գաղափարը՝ ոչ ոք յիշած է: Այն միայն ստոյգ է թէ արդէն Հռիփսիմեան վարժարանի սեղաններուն վրայ յղացուած է գաղափարը՝* «իգական սեռին զարգացման համար վարժարան բանալու»[70]: *Որքան կ'երեւայ՝ Ընկերութեան կորիզը կազմողներն եղած են* Օր. Նուրիկ Սիմէոնեան եւ Օր. Թագուհի Պալթազարեան[71], *որոնք Ըն–*

---

[68] *Դպրոցասէր Հայուհեաց Ընկերութիւն, Ա. Տարեկան Տեղեկագիր, Կ. Պ.* 1880, *էջ* 11:

[69] Մասիս, 1879, *Թ.* 2416:

[70] Բիւզանդիոն, *Կ. Պ.* 1904, *Թ.* 2326:

[71] Բիւզանդիոն, *անդ: — Խնդիր Սիմոնեան* (Ժամանակ, 1914, *Թ.* 1874) *կը գրէ որ Ընկերութեան հիմնադիրներն եղած են «Օրթագիւղի Հռիփսիմեանց Վարժարանի* երեք շրջանաւարտուհիները», *առանց անոնց անունը տալու: Մենք տուինք երկու անունները. երրորդն է* Արմաւենի Սահակեան (Հայաստանի կոչնակ, 1953, *էջ* 470):

կերութեան Ա. տարւոյ Գործադիր ժողովի Ատենապետն ու Ատենադպիրն են։ Տիկին Աւետիսեան (Անայիս) Հիմնադիրներէն մին կը համարի Օր. Թ. Պալթազարեանը, որ 1917ին ալեհեր է (Ժողովուրդի Ձայնը, Կ. Պոլիս 1921, Թ. 789)։

Ընկերութեան առաջին տարւոյ Անդամուհիներու ցանկին մէջ[72]. սա գանազանութիւնը կը նշմարենք. 37 հոգի «Ընկերուհիք»[73] տիտղոսի տակ զատ յիշուելէ վերջ՝ կը տրուի ցուցակ մը «Բաժանորդաց»[74]։ Այս գանազանութիւնը եղած է թերեւս մասնանիշ ընելու համար թէ այդ 37 «Ընկերուհիք» Ընկերութեան առաջին Անդամներն են։

Հետաքրքրական է Ընկերութեան Ա. տարւոյ Վարչական կազմը, զոր կը ներկայացնենք հոս.

Դիւան Ընդհ. Ժողովի
(Ա. տարի, 1879—1880)

| | |
|---|---|
| Ատենապետ | Տիկ. Աննիկ Ջայեան |
| Փոխ–Ատենապետ | Տիկ. Բուբուլ Մեսզեղի |
| Ատենադպիր | Օր. Լուսիկ Վասիլեան |
| Փոխ Ատենադպիր | Օր. Երանուհի Աչնան |

ԳՈՐԾԱԴԻՐ ԺՈՂՈՎ

| | |
|---|---|
| Ատենապետ | Օր. Թագուհի Պալթազարեան |

---

[72] Ա. Տարւոյ Տեղեկագիր, անդ՝ էջ 20—27։
[73] Անդ, էջ 20։
[74] Անդ, էջ 22—27։

| | |
|---|---|
| Ատենադպիր | Օր. Նուրիկ Սիմէոնեան |
| Գանձապետ | Տիկ. Յիսատինանէ Ճահին |
| Հաշուակալ | Օր. Ճարլոթ Թուշունճու |
| Խորհրդական | Տիկ. Տիրուհի Եսայեան |
| ” | Օր. Արուսեակ Ճիշմանեան |
| ” | Օր. Բուրուլ Զայեան |

ՎԵՐԸՆՏՐՈՒԹԻՒՆ ԴԻՒԱՆԻ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ
(Ա. տարւոյ վերջը)

| | |
|---|---|
| Ատենապետ | Տիկ. Սրբուհի Տիւսաբ |
| Փոխ–Ատենապետ | Օր. Սոփիա Սարաֆեան |
| Ատենադպիր | Օր. Լուսիկ Վասիլեան |
| Փոխ Ատենադպիր | Օր. Երանուհի Աշնան[75] |

«Դպրոցասէր Հայուհեաց»ը իր գոյութեան առաջին տարիէն ունեցած է «Հիմնական կանոնագրութիւն» մը, բաղկացած՝ 32 Յօդուածէ, ինչպէս նաեւ «Ներքին կանոնագրութիւն մը Ընդհ. Ժողովի»՝ կազմուած 38 կէտերէ, երկուքն ալ հրատարակուած՝ Ա. Տարւոյ Տեղեկագրին մէջ (էջ 11—19)։

Գաղափար մը կազմելու համար՝ յիշենք հոս քանի մը Յօդուած. Նոր ընկերուհիի ընդունուելու համար՝ Ընդհ. Ժողովի քուէներու մեծամասնութիւն հարկաւոր է (Հիմն.

[75] Ա. Տարեկան Տեղեկագիր՝ անդ՝ էջ 20—21։

կան. Յօդ. 1). Ամսական բաժնեգինն է 1 ար-ծաթ ղուրուշ (Յօդ. 2). Ամէն ընկերուհի հաւասար քուէ ունի ժողովներու մէջ (Յօդ. 3). Ընկերութեան բաժանորդ կրնան ըլլալ այրեր, բայց Ընկերութեան գործերու չեն խառնուիր (Յօդ. 8). Ընդհ. ժողով կը գու-մարուի երեք ամիսը մէկ անգամ (Յօդ. 14). Ընդհ. ժողովի Դիւանը միամեայ է (Յօդ. 18). Գործադիր ժողովը երկամեայ է (Յօդ. 23). Ընկերութիւնը երկու տեսակ սովորա-կան հասոյթ ունի. բաժանորդագին եւ նպաստի տոմսեր (Յօդ. 29):

Ընկերութիւնը մէկ տարուան մէջ 380 բաժանորդ ունեցած է:

«Դպրոցասէր Հայուհեաց Ընկերութիւնը» իր ձեռնարկին մէջ յաջողութեան մեծագոյն երաշխիքն ունենալու համար՝ իր Ընդհ. ժո-ղովի Վարչութեան կողմէ նամակ մը կը գրէ Պատրիարք Ներսէս Արքեպ. Վարժապե-տեանի՝ խնդրելով իր օրհնութիւնը: Ս. Պա-տրիարքը գեղեցիկ պատասխան մը գրած է: Երկու նամակներն ալ հրատարակած է Մա-սիս[76], որմէ կը համառօտենք.

Ամենապատիւ Սրբազան Հայր.

Դպրոցասէր Հայուհեաց ակումբ մը ազ-գիս օգտակար ծառայութիւն մը մատուցա-նելու նպատակաւ Ընկերութիւն մը կազմե-

[76] Մասիս, 1879, Թ. 2416:

լով մտադիր է դպրոց մը բանալ եւ ձրիապէս գիւղէս սկսելով աղքատիկ անուսումն եւ անտէր մնացեալ աղջկանց դաստիարակութիւն ընելով նաեւ գաւառաց համար վարժուհիներ պատրաստել: Դպրոցասէր Հայուհեաց Ընկերութիւնն իւր պատրաստած կանոնագրութիւն արդէն Ոսմանեան խորհրդոյ ներկայացուցած ըլլալով Ձեր Սրբազնութեան հովանաւորութեանը պէտք ունի, որպէս զի կարող ըլլայ իւր նպատակը արդիւնաւորել եւ յաջողիլ իւր նոր ձեռնարկութեանց մէջ: Աներկբայ ըլլալով որ Ձեր Սրբազնութիւնը պիտի խրախուսէ . . . նաեւ մեր փափաքն ու ջանքը . . .

Ի դիմաց Ընդհ. Ժողովոյ

| | |
|---|---|
| Ատենադպիր | Ատենապետ |
| Լուսիկ Վասիլեան | Աննիկ Ե. Զայեան |

Ազնիւ եւ պատուական Տիկնայք Դպրոցասիրաց Հայուհեաց Ակմբին օրհնութեամբ:

Գեղեցիկ եւ ազգասէր ոգւով գրած գեղաշար նամակնիդ ընթերցայ. յոյժ ուրախ եմ ձեր ձեռնարկութեան վրայ, զի շատ օգտակար է նպատակնիդ. վարժուհիներ պատրաստել գաւառաց համար, պարկեշտ եւ գիտուն վարժուհիներ՝ որոց մեծ պէտք ունի ազգը եւ զորս ամէն կողմերէ կը փնտռեն այս օրերս . . . ես պատրաստ եմ խմովանն աջակցելու Ձեզ, որ հետեւելով գիւղիդ մէջ քանի տարիներէ ի վեր օրիորդաց վարժարան կա-

նոնաւորապէս զարգացնող իմաստուն բարի եւ պատուական Տիկնոյց, անոնց պատուականագոյն աշխատութիւնը պսակել կը փութամք: Անոնց բարի օրինակը Ձեր անձանց վրայ ցուցնելով՝ կ'արդիւնաւորէք անոնց ձեռօք սերմանուած սերմունքն... Օրհնեալ քրտունք արդասաբերք, օրհնեալ ձեռք ազգասէր մշակուհեաց, ջանացէք միշտ, Ձեր վաստակոց արդիւնքը Ձեր աչքով պիտի տեսնէք... Երբ ընտանեկան առաքինութիւնք, երբ իգական սեռին կրթութիւնք զարգանայ ազգի մը մէջ, այն ազգը ճշմարտապէս կը յառաջադիմէ... Կը մաղթեմ հոգւով եւ սրտիւ որ իմաստութիւն Հօր Յիսուս եւ Անոր օրհնաբանեալ Մայրն՝ Ծաղիկն անթառամ առաքինութեան եւ Հայաստանեայց աստղունքն ամենալոյս եւ ամենաշնորհ կուսանքն անբիծ Հռիփսիմեանք՝ որոց հովանաւորութեամբ ծաղկեցայք Դուք, հովանի եւ օգնական եւ պահապան ըլլան Ձեզ: Աղօթարար

Պատրիարք Կ. Պոլսոյ
Ներսէս Արքեպիսկ.

1879 Օգոստ. 20
ի Պատրրքրն Հայոց
ի Կ. Պոլիս

Ընկերութեան մնայուն, սովորական նիւթական աղբիւրն էր, ինչպէս տեսանք, իր

*բաժանորդագիններն ու նուիրատուները։ Այս պատճառաւ ստիպուած էր կամաւոր ուրիշ աղբիւրներ ալ որոնել։ Ընկերութիւնը կազմակերպած է պարահանդէս եւ վիճակահանութիւն. կազմած է Տիկնանց Մասնախումբ մը Կէտիկ Փաշայի մէջ, որ բացած է Լսարան մը՝ սարքելու համար հանդէս եւ բանախօսութիւն՝ ի նպաստ Ընկերութեան։ Մասնախումբի կազմը հետեւեալն է*[77].

| | |
|---|---|
| *Տիկ. Նոյեմզար Ճահպազ* | *Ատենապետ* |
| *Օր. Արմաւենի Սահակեան* | *Ատենադպիր* |
| *Տիկ. Ադաւնի Փանոսեան* | *Գանձապետ* |
| *Օր. Բերուզ Միգանճեան* | *Հաշուակալ* |
| *Տիկ. Հռիփսիմէ Արամեան* | *Խորհրդական* |
| *Տիկ. Վերգինէ Պալեան* | *Խորհրդական* |
| *Տիկ. Արիք Քարամանեան* | *Խորհրդական* |

*Դպրոցասէր Հայուհեացը, որ առաջ իր գլխաւոր նպատակին հասնելու համար*, 1879 *Նոյ.* 5*ին Օրթագիւղի փոքրիկ տան մը մէջ կը բանայ իր անդրանիկ վարժարանը, որուն ուսուցիչներն ու դաստիարակները կ՝ըլլան Ընկերութեան քանի մը անդամուհի Օրիորդներ*[78]*։ Հայ թերթ մը կը գրէ «Դպրոցասէր»ի առաջին այս դպրոցի մասին. «Երեք ամիս չանցած՝* 1000 *դրուշ հաւաքելով՝ գիւղին հեռաւոր մէկ անկիւնը* խարխուլ տուն մը կը վարձեն *իբրեւ դպրոց, ուր* իրենք՝

---

[77] *Ա. Տարւոյ Տեղեկագիր, անդ՝ էջ* 21։
[78] *Անդ՝ էջ* 6։

օրիորդները՝ կ'երթան դասախօսել ու կառավարչութիւն ընել կարգով»[79]:

Դպրոցի բացումը կ'ըլլայ 20 աշակերտուհիով, բայց քիչ ետքը երբ Ընկերութիւնը պարահանդէս տալով աւելի միջոց կ'ունենայ՝ հարկ կը դատէ դպրոցը աւելի յարմար տուն մը փոխադրել, չհեռանալով Օրթագիւղէն, ուր կը գտնուէին Ընկերութեան մեծագոյն թուով անդամները: Փոխադրութիւնը կ'ըլլայ 1880 Մայիսին եւ դպրոցը կ'ունենայ 35 աշակերտուհի, երկու մնայուն ուսուցիչով եւ մէկ վարժուհիով[80]:

Դպրոցի բացումին առթիւ Ընկերութեան Գործադիր Ժողովը Ս. Պատրիարքին օրհնութիւնը խնդրած էր նամակով մը, որուն նամակով մը պատասխանելով՝ կ'ըսէ Ներսէս Արքեպ. Վարժապետեան. «Ուրախութեամբ իմացայ Ձեր Հոկտ. 27 ամսաթիւ նամակէն որ այս Նոյեմբ. 5ին Ձեր առաջին վարժարանը կը բանայք, եթէ գրաւեալ չըլլինէի՝ անձամբ պիտի գայի օրհնել Ձեր ազգօգուտ ձեռնարկութիւնը: Աստուծոյ պաշտպանութիւնը եւ անոր անկշռելի օրհնութիւնները կը հայցեմ

---

79 Արեւելք, 1895, Թ. 3351: — Այդ տունը կը գտնուէր Օրթագիւղի վերջին սահմանը կազմող Կէօչէեանց տանը քով (Ժամանակ, 1914, Թ. 1874):

80 Ա. Տեղեկագիր, անդ՝ էջ 6: — Արեւելք, անդ: — Սխալ է Փունջի (1880, Թ. 1503) գրածը թէ Դպրոցասէր Հայուհեացը «սկսեր է յատուկ շէնք մը կառուցանել»:

*Ձեր առաջին դպրոցին վրայ եւ կը մաղթեմ որ մշտատեւ եւ բարգաւաճ լինի...* [81]:

1879 *Նոյեմբ. 5ի դպրոցի բացումը կատարած է Թաղին Առաջնորդ Յակոբ Վ. Աչոտ եւ այդ առթիւ եղած են նուիրատուութիւններ: Այս մասին Գործադիր ժողովը Նոյեմբ.* 23*ին* Մասիս*ի մէջ հրատարակած իր շնորհակալիքին մէջ կու տայ մանրամասնութիւններ. «Դպրոցասէր Հայուհեաց Ընկերութիւնս ուրախութեամբ կը փութայ ծանուցանել որ ի շնորհս այն վեհանձն բարերարաց, որք նպաստեցին իւր ձեռնարկութեան, յաջողած է մասամբ իւրք իւր նպատակին գործադրութեան սկսիլ եւ իւր առաջին վարժարանը բանալ յՕրթաքէօյ ամսոյս 5ին օրհնութեամբ Յակոբ վարդապետի Աչոտ եւ ներկայութեամբ պատուաւոր ընտանեաց, եւ այսօր քանի չափ աղքատիկ աշակերտուհիներ իրենց աւանդուած ուսմանց հետ կ'ուսնին նաեւ հայրենեաց օգտաւէտ զաւակներ ըլլալ: Այս առթիւ Ընկերութիւնս իւր խորին շնորհակալիքն կը յայտնէ այն ամէն ազգասէր անձանց,* որք մերկ դպրոցը կահաւորեցին եւ աշակերտուհեաց լաւ պատսպարուելուն ամէն տեսակ խնամք տարին: Մասնաւորապէս առ հոգաբարձութիւնն Թարգմանչաց վարժարանին, որ պէտք եղած գրասեղաններն նուիրեց եւ Միհրան էփէնտի Միքայէլի, որ տղայոց ներմակեղէններն բատ կարի հոգաց, *եւ առ այլ*

---

[81] Մասիս, 1879, Թ. 2469:

քարերար անձ մը, որ գպրոցիս անմիջական պէտքերուն համար թուղթ, գրիչ, մելան եւ այլն առատօրէն նուիրեց: Քանի՛ քաղցր է մեզ տեսնել որ մեր ազգին մէջ եւս կը տեսնուին այսպիսի ազնիւ օրինակներ ի խրախոյս ուսումնասէր Ընկերութեանց եւ ի յառաջադիմութիւն ազգիս... ի դիմաց Գործադիր Ժողովոյ Ատենապետ՝ Թադէոսի Ղ. Պալթազարեան, Ատենադպիր՝ Նուրիկ Սիմէոնեան»[82]:

Դպրոցաէրի վարժարանին Ուսումնական ծրագիրը ունեցած է 2 տարուան նախապատրաստական շրջան եւ 5 տարուան նախակրթարանի կարգեր: Վերջիններուս մէջ աւանդուած ուսման առարկաներն են. Հայերէն, կրօնագիտութիւն, պատմութիւն, աշխարհագրութիւն, գաղղիերէն, թուաբանութիւն, բնական գիտութիւն, գեղագրութիւն, գծագրութիւն, ասեղնագործութիւն եւ կարուձեւ[83]:

Ընկերութիւնը իր վարժարանին համար 5 Յօդուածով կազմուած յատուկ Կանոնագրութիւն մ'ունի եւ «Դաշնագիր» մը 4 «Պայման»ներով, որոնք հրատարակուած են Ա. Տեղեկագրին մէջ (էջ 8—10):

Ընկերութեան Պատուոյ Նախագահութիւնը յանձն առած էր Ներսէս Պատրիարք Վարժապետեան, որմէ վերջ նոյնը չարունա-

---

[82] Անդ՝ Թ. 2488:
[83] Ա. Տեղեկագիր, էջ 10, «Ուսումնական Ցայտագիր»:

կած է նաեւ իր յաջորդը՝ Յարութիւն Արքեպ. Վեհապետեան[84]։ Ընկերութիւնը կ'ընդունի նաեւ կաթողիկոսական կոնդակ եւ օրհնութիւն[85]։

Ընկերութիւնը իր նիւթական հասոյթը աւելցնելու համար Պոլսոյ Թաղերէն Պէշիկթաշի մէջ ալ Օժանդակ Մասնաճիւղ մը կը կազմէ 1880—1881 շրջանին[86]։ 1882ին Բերայի մէջ հայ նկարիչներու եւ արձանագործներու կողմէ գեղարուեստական ցուցահանդէս մը կը կազմակերպուի ի նպաստ Ընկերութեան։ Կը մասնակցին. Այվազովսկի, Ոսկան, Էնքաէրճեան, Աճէմեան, Սինանեան, Տամատեան, Նշանեան, Սաքըզեան, Սրապեան, Աստուածատուրեան, Շաշեան, Ջօպանեան, Օր. Սերվիչէն, եւ այլն[87]։

Դպրոցասէր Հայուհեացը 1880—1881ի շրջանին, իր վարժարանին մէջ կ'ընդունի 5 գաւառացի գիշերօթիկ աշակերտուհի Վանէն, Ակնէն, Կեսարիայէն եւ Կէյվէյէն, որոնց միացած 40ի մօտ պոլսեցի ցերեկեաներ՝ վարժարանը կ'ունենայ 45 աշակերտուհի[88]։

Ընկերութեան օգտաշատ գործունէութեան լուրը հեռուներն իսկ լսուած ըլլալով՝

---

[84] Դպրոցասէր Տիկնանց Ընկերութիւն, Բ. Տեղեկագիր, Կ. Պ. 1881, էջ 5։ — Հայրենիք, Կ. Պ. 1886, Թ. 2045։

[85] Մասիս, 1879, Թ. 2492։

[86] Բ. Տեղեկագիր, անդ՝ էջ 9։

[87] Հայրենիք, 1882, Թ. 928։

[88] Բ. Տեղեկագիր, էջ 6։

նպատակներ կը հանէին Կարնէն, Տփղիսէն եւ Մանչեստրէն[89]: Կ՚ըլլան նաեւ գրքերու եւ դրամական նուիրատուութիւններ[90]: 1881—1882ի Ընկերութեան Պատուոյ Անդամներու մէջ կը կարդանք սա անունները. Յովհ. Այվազովսկի, Գրիգոր Զիլինկիրեան, Համբարձում Իրէքճեան, Յարոյ, ինչպէս նաեւ Տիկիններ՝ Երանուհի Թագւոր փաշա, Լուսիա Ծապուպոֆ, Մարիամ Խորասանճեան, Կիւլա Զիլինկիրեան, Նոյեմի Գափամաճեան (Մեծն Նուպար փաշայի դուստր), Սրբուհի Տիւսաբ Պէյ եւ Լէտի Ստրանկֆորտ[91]: Ընկերութեան սկզբնական շրջաններուն մեծ ծառայութիւն մատուցած եւ երախտագէտ գնահատումներով կը յիշուին Տիկ. Տիրուհի Եսայեան, Օր. Արուսեակ Ճիշմանեան, Օր. Վերոն Մերհամբերթեան եւ մանաւանդ Տիկ. Նազլը Վահան, մայր Տիկ. Սրբուհի Տիւսաբի:

Հայրենիք թերթը 1882ի Հայ ժողովուրդի անմխիթար կացութեան մէջ մխիթարական եւ սփոփիչ կէտ մը կը գտնէր «Միացեալ»ի, «Դպրոցասէր Տիկնանց»ի եւ «Ազգանուէր Հայուհեաց»ի գոյութիւնը[92]: Նոյն թերթը 1886ին «Դպրոցասէր»ի մէկ հան–

---

[89] Ա. Տեղեկագիր, էջ 5: — Բ. Տեղեկագիր, էջ 37—40:

[90] Բ. Տեղեկագիր, էջ 42—46:

[91] Դպրոցասէր Տիկնանց Ընկերութիւն, Գ. Տեղեկագիր, Կ. Պ. 1882, էջ 17:

[92] Հայրենիք, 1882, Թ. 917:

դէսին ամթիւ խանդավառ տողեր կը նուիրէր Ընկերութեան, ըսելով թէ մինչ այրեր չկըրցան ունենալ իրենց «վարժապետանոց»ը[93], Դպրոցասէրը վարժուհիներ կը հասցնէ եւ արդէն բաւական թուով վարժուհիներ հայկական գաւառներ ղրկած է[94]:

Գաղափար մը տալու համար թէ Դպրոցասէր Հայուհեացը երկու տարուան ընթացքին ի՛նչ մուտք եւ ելք ունեցած է՝ յառաջ կը բերենք 1881 Յուլիս 31ին հրատարակուած Հաշուեկշիռին արդիւնքը, ուր կը տեսնուի որ երկու տարուան մէջ — 1879—1881 — Ընկերութիւնը ունեցած է Մուտք 85,426 դուրուշ եւ Ելք 47,171 դուրուշ[95], երբ ան ունէր 5 ձրի գիշերօթիկ աշակերտուհի:

Դպրոցասէր Հայուհեաց Ընկերութիւնը 10 տարի կը շարունակէ այսպէս իր եռանդուն գործունէութիւնը: 1889ին վարժարանը կը փոխադրէ Պոլսոյ հայաշատ թաղերէն մին — Գումգափու — եւ նոյն տարւոյ Մայիս 2ին նոր շէնքի մէջ կը տօնէ իր տասնամեակը — 1879—1889: Հանդիսին կը նախագահէ Խորէն Արքեպ. Նարպէյ: Նուագերգով մը բացումը ընելէ վերջ՝ վարժարանի բարձրագոյն կարգէն Օր. Էլէնոռ Պալթազարեան ողերձով շնորհակալութիւն կը յայտնէ Ընկերութեան մեղուաջան անդամներուն. աշա-

---

[93] Վանի «Վարժապետանոց»ը իր հիմնումէն քիչ վերջ փակուած էր:

[94] Հայրենիք, 1886, Թ. 2117:

[95] Մասիս, 1881, Թ. 2994:

կերտուհիք կ՚արտասանեն եւ դպրոցական կեանքէ սիրուն խաղ մը կը ներկայացնեն. կը խօսի Յակոբ Գուրգէն. փակումի իր խօսքին մէջ Նախագահ Սրբազանը ուրախութիւն կը յայտնէ որ Ընկերութիւնը իր վարժարանը փոխադրած է թաղ մը (Գումգափու), ուր ամէնէն աւելի կը զգացուէր հայ աղջկանց վարժարանի մը պէտքը: Հանդիսի վերջաւորութեան Թաղին «Նպաստամատոյց Ընկերութիւն»ը 1000 դուրուշի նուիրատուութիւն մը կ՚ընէ Դպրոցասէրին՝ խոստանալով ուրիշ նուէրներ ալ[96]:

1890ին Յակոբ Գուրգէն կը պատմէ. «Իբր տասն եւ մէկ տարի առաջ, 1879 Յունիս* 17ին, այդ. խմբագրապետի մը հետ գնացինք այցելել Ընկերութեանս (Դպրոցասէր Տիկնանց) նորահաստատ դպրոցին, որ պարզապէս տնակ մ՚էր, յունական Թաղի մը մէջ, յՕրթաքէօյ: Տասն կամ տասնեւհինգ աշակերտուհիք, աղքատաց զաւակունք, նըստած էին աններկ գրասեղանաց վրայ, եւ ազնիւ տիկնայք ոմանք եւ օրիորդք բարետոհմիկք՝ զորովալից խանդաղատանօք որպէս թէ գուրգուրալով որբոց եւ թշուառաց վրայ՝ կը պատմէին մեզ թէ ի՛նչ նպատակաւ կազմած են Ընկերութիւնն, հաստատած են վարժարանն. թէ ինքեանք իսկ կը դասախօսեն ի սկզբան անդ, եւ յանձն առած են ամէն աշ–

[96] Արեւելք, 1889, Թ. 1598:

* Սխալ է Յունիս, պէտք է ըլլալ Նոյեմբեր. Յօդուածագիր:

խստութիւն՝ յատուկ խնամով պատրաստելու՝ այն մատղաշ աղջիկներն իբրեւ վարժուհի գաւառական դպրոցաց: Ճշմարիտն ըսե՞մ. — զմայլմամբ հանդերձ թերահաւատեցանք սակաւիկ: Այն տնակն, այն փոքրիկ աղջկունք, եւ հայարնակ գաւառաց համար վարժուհի՜:

«Սակայն յօրէ անտի եւ այսր անցան գրեթէ տասն եւ մէկ տարիներ, եւ Ընկերութիւնն՝ տակաւ բարգաւաճ եւ արդիւնաւոր՝ կանգուն է այսօր: Տասնէն աւելի գաւառական վարժարանաց մէջ յաջողութեամբ կը պաշտօնավարեն այսօր՝ իբրեւ վարժուհի նախակրթութեան՝ Դպրոցասիրաց սանուհիք, տանելով իրենց հետ, մինչեւ ի Քղի եւ ի Մուշ, ընտիր ընտիր բարեմասնութիւններ, որոց հայելի ու տիպար եղած են տիկնայք եւ օրիորդք Ընկերութեան. անստգիւտ բարք, համեստութիւն, հաստատուն կրթութիւն եւ աշխատասիրութեան ոգի... Ոչ ոք հետեւապէս պիտի վարանի յայսմ մասին առաջնութեան պատիւն ընծայել Դպրոցասէր Ընկերութեան, որ զառաջինն խորհեցաւ գաւառաց համար վարժուհի պատրաստելու հարկն. խորհեցաւ, աշխատեցաւ եւ ի գլուխ հանեց...»[97]:

1892ին, իր 12րդ շրջանը բոլորելուն առթիւ, Դպրոցասէր Հայուհեացը կ՚ընէ հետեւեալ տեղեկատուութիւնը. Ընկերութեան

---

[97] Արեւելք, 1890, Թ. 1802:

վարժարանը ունի 110 աշակերտուհի, որոնց 60ը ձրի, 12ը գիշերօթիկ են։ Ընկերութիւնը 12 տարուան մէջ հասցուցած է 22 վարժուհի, որոնք գործած են ու կը գործեն Հայաստանի եւ հայաշատ վայրերու մէջ[98]։ Հայ թերթ մը կը գրէ․ «Ընկերութիւնը իր սանուհեաց գաւառներու մէջ ունեցած յաջողութիւնը կը պարտի այն բարոյական եւ տոկուն դաստիա— րակութեան, որուն մասնաւոր խնամք կը տարուի, որով կը դիւրանայ անոնց համար գաւառներու չարքաշ կեանքը»[99]։

1893ին Պոլսոյ Ծաղիկ[100] կը գրէ որ Հայաստանի դպրոցները նոր վարժուհիներ կ'ուզեն Դպրոցասէր Տիկնանց Ընկերու— թենէն։

1895ին 26 վարժուհիներ տուած է Ընկե— րութիւնը[1]։

1895—1896ի դէպքերէն վերջ եւ անոնց հետեւանքով կը դադրի պահ մը Դպրոցա— սէրը գործելէ[2]։

1899ին գովեստի գեղեցիկ խօսքերով վեր հանելէ վերջ Դպրոցասէրի արժէքը եւ տուած արդիւնքը՝ Յ․ Թ․ Հինդլեան՝ ցաւ կը յայտնէ անոր դպրոցին դադարման վրայ[3]։

98 Տե՛ս Հայրենիք, Կ․ Պ․ 1892, Թ․ 175 անուն— ները այդ վարժուհիներուն եւ անոնց գործած վայրե— րուն։

99 Հայրենիք, անդ։

100 Ծաղիկ, Կ․ Պ․ 1893, էջ 71։

1 Արեւելք, 1895, Թ․ 3351։

2 Հմմտ․ Բիւզանդիոն, Կ․ Պ․ 1899, Թ․ 742։ — Նոյն՝ 1904, Թ․ 2321։

3 Բիւզանդիոն, 1899, Թ․ 782։

1904ին ճիգ կը թափուի կանգնելու Ընկերութիւնը եւ բանալու վարժուհինոցը[4]:

1908 Օգոստ. 25ին կոչ կ'ընէ Սրբուհի Մ. Սիմոնովիչ Ընկերութիւնը վերակազմելու եւ գործունէութեան[5]:

1908 Սեպտ. 12—25ին վերակազմուած է արդէն Ընկերութիւնը եւ կը հրատարակէ հետեւեալ Յայտարարութիւնը. «Գաւառական վարժարաններու ուսուցչուհի պատրաստելու նպատակով 1879 թուականին հաստատուած Դպրոցասէր Տիկնանց Ընկերութիւնը 17 տարի շարունակուելէ յետոյ 1896ին դադրեցաւ գոյութենէ դժբախտ պարագաներու բերմամբ եւ երկրին աննպաստ վիճակներուն հետեւանօք: Այժմ երբ երկրին մէջ կրթական եւ բարեգործական մարմիններ վերստին կը կազմակերպուին կարեւոր պէտք մը նկատուած է վերակազմել Դպրոցասէր Տիկն. Ընկերութիւնը, միեւնոյն նպատակով վաղեմի անդամներէ, նախկին ընթացաւարտներէ եւ կրթասէր տիկիններէ եւ օրիորդներէ, որոնք ազնուաբար եկած միացած են այս նպատակին շուրջը: Ընկերութեան անդամուհիները պարտք կը համարին դիմել Պոլսոյ եւ գաւառներու մէջ գտնուող բոլոր ուսումնասէր տիկիններու եւ օրիորդներու, որպէս զի աղքատ եւ անոք աղջիկներ դաստիարակելով գաւառաց ուսուցչուհի պատրաստելու գործին հա-

[4] Անդ՝ 1904, Թ. 2326:

[5] Սուրհանդակ, Կ. Պ. 1908, Թ. 62:

մար նուիրեն իրենց աջակցութիւնը բաժանորդուելով Ընկերութեան եւ ամսական իւրաքանչիւր բաժինի համար 40 փր. վճարելով...

Ի դիմաց Ընդհանուր Ժողովոյ

Ատենադպիր Ն. Վ. Օրմանեան — Ատենապետ Ն. Աւետիսեան[6]

Ընկերութեան Գ. Ընդհ. Ժողովքին (1908 Հոկտ. 21) նախագահելով Իզմիրլեան Սրբազան՝ բուռն եռանդ կը ներշնչէ բոլորին մխրճուելու դարձեալ ազգաշէն գործունէութեան։ Այդ առթիւ նոր անդամուհիներ կ'արձանագրուին, ինչպէս՝ Տիկ. Վերգինէ Ա. Ֆրնտըքլեան, Տիկ. Արշակուհի Կեսարեան, եւ այլն[7]։

1909 Յուլիսին Բիւզանդիոն[8] կ'աւետէ որ Ընկերութեան անդամները նոր աւինով գործի կը լծուին եւ շուտով կը բանան իրենց վարժարանը։ Նոյն տարւոյ Ատենայի եղեռնը կը փութացնէ վարժարանին բացումը, ուր 30 որբուհիներ կը հիւրընկալուին ապագայ վարժուհիներ պատրաստելու ծրագրով[9]։

Վարժարանը կը բացուի Գումգաբուի մէջ, ուր էր արդէն երկար ատենէ ի վեր եւ ինչպէս միշտ՝ այս անգամ ալ վարձքով։

---

[6] Սուրհանդակ, 1908, Թ. 88։
[7] Անդ՝ Թ. 112։
[8] Թ. 2865։
[9] Հայրենիք, 1909, Թ. 1526։

1909 Դեկտ. 22ին վարժարանը կ՚անցնէ ծանր տագնապ մը: Մինչ Դպրոցի տեսչուհին դպրոցական աշխատանքներով զբաղած էր՝ անակնկալ այցելութիւնը կ՚ընդունի կառավարական բարապանի մը, որ պաշտօնագիր մը կը ներկայացնէ, որուն մէջ Մէարիֆի Նախարարութեան կողմէ կը ծանուցուէր թէ, եթէ դպրոցի բացումին համար հարկաւոր եղած պետական արտօնութիւնը չկարենայ ցուցնել՝ աշակերտները պիտի ցրուեն եւ դպրոցը փակուի: Տեսչուհին անմիջապէս Պատրիարքարան կը դիմէ, ուր տօնի պատճառաւ զոց ըլլալուն՝ Համբարձում Պոյաճեանի (Մուրատ), որ հոն կը գտնուէր՝ կը յայտնէ եղելութիւնը: Մուրատ կը դիմէ Կրթական Նախարարութեան, Բարձ. Դուռ եւ Ներքին Գործոց Նախարարութեան եւ կը յաջողի յետաձգել տալ դպրոցի փակումը, մինչեւ պաշտօնական գործողութիւններու լրացումը[10]:

Ընկերութիւնը կը խորհի սեպհական շէնք մ՚ունենալու հնարաւորութիւններու վրայ: Փոքրիկ գումար մ՚ալ կայ, յատկապէս տրամադրուած այդ նպատակով[11]:

1910ին Ընկերութիւնը իր հին ծրագրին համեմատ կը ձգտի մէկ կողմէ դաստիարակել իրեն յանձնուած փոքրիկ հայուհիները, միւս կողմէ պատրաստել անոնցմէ վարժուհիներ

---

10 Ժամանակ, Կ. Պ. 1909, Թ. 354:
11 Հայրենիք, 1909, Թ. 1526:

*թէ՛ Պոլսոյ եւ թէ՛ Գաւառներու համար։ Յառուկ օրհնութեան թուղթով մը կը գովէ ու կը խրախուսէ Պատրիարք Եղիշէ Արքեպ․ Դուրեան Ընկերութեան ժիր գործունէութիւնը*[12]։

1911*ին վարժարանի շէնքը կը նորոգուի* 80,000 *ղուրուշով*[13]։ 1911 *Հոկտ․* 19*ին կը կազմուի Բերայի մէջ* «Դպրոցասէր Տիկնանց Օժանդակ Օրիորդաց Միութիւն»*ը, նպատակ ունենալով օժանդակել Դպրոցասէր Հայուհեաց Ընկերութեան*[14]։

*Հ․ Բ․ Ը․ Մ․ը ինչպէս «Միացեալ»ին* 300 *ոսկի կապած էր՝ Դպրոցասէր Հայուհեացին ալ տարեկան* 70 *անգլիական ոսկի նպաստ մը կապած ըլլալով՝* 1913*ին կը վճարէ այդ գումարը*[15]։

1914 *Յունիս* 29*ին Դպրոցասէր Վարժարանը կ՚ունենայ իր ամավերջի հանդէսը, որուն կը նախագահէ Ս․ Պատրիարքը․ հայերէն, թրքերէն ու ֆրանսերէն մեներգներէ եւ խմբերգներէ վերջ՝ Տնօրէնուհի Տիկ․ Սարուխան կը բաժնէ* 24 *շրջանաւարտուհիներու վկայականները։ Հուսկ բանքի իր խօսքին մէջ Դանիէլ Վարուժան գեղեցկօրէն կը պարզէ այն դերը, որ շրջանաւարտուհիները պիտի ունենան առաջիկայ իրենց կեանքին մէջ։ Ահա անունները շրջանաւարտուհինե–*

---

12 * Անդ*՝ 1910, *թ*․ 1639։
13 Ժամանակ, 1911, *թ*․ 936։
14 Օշական, *կ*․ *պ*․ 1914 (*ետեւը*)։
15 Ժամանակ, 1913, *թ*․ 1459։

րուն. Օրիորդներ՝ Արշալոյս Ցռունճեան, Մարի Պզտիկեան, Հայկուհի Ճամճեան, Քրիստինէ Պարոնեան, Պերճուհի Գասպարեան, Ազատնի Քրիստափորեան, Մարի Պարոնեան, Արմինէ Սամանճեան, Անգինէ Փափազեան, Զարուհի Գանթարճեան, Վերժին Միրիճեան, Հռիփսիմէ Գազանճեան, Փայլինէ Պօղոսեան, Մարի Գազազեան, Ռեբեկա Սիւսլեան, Հռիփսիմէ Տէմիրճեան, Վարդանոյշ Ալէմեան, Սրբուհի Թումայեան, Արաքսի Կէմճեան, Հերմինէ Թահթաճեան, Պայծառ Թէրզեան, Վալանդին Արփալեան, Հայկուհի Ղազարոսեան, Իզաբ Պետրոսեան[16]:

1915 Մայիս 1ին Ընկերութիւնը իր գոյութեան 36րդ տարեդարձը կը տօնէ Պոլսոյ մէջ, հոգեհանգիստ կատարել տալով հիմնադիրներու յիշատակին[17]:

Առաջին Համաշխարհային պատերազմի ընթացքին Վարժուհինոցը դէչ աղէկ կը շարունակուի (տե՛ս ժողովրդի Ձայնը, Կ. Պ. 1921, Թ. 789): Իսկ զինադադարին Ընկերութիւնը դարձեալ կը կազմակերպուի: 1918ին իր Դիւանը կը կազմէ հետեւեալ կերպով.

| | |
|---|---|
| Տիկ. Մ. Մանուկեան | Ատենապետ |
| Տիկ. Գ. Սերվիչէն | Փոխ-Ատենապետ |
| Տիկ. Մ. Պարսամեան | Ատենադպիր |
| Տիկ. Պ. Խորասանճեան | Գանձապետ |

Վարչական ժողով.

16 Ժամանակ, 1914, Թ. 1856:
17 Բիւզանդիոն, 1915, Թ. 5649:

| | |
|---|---|
| Տիկ. Մ. Պօյաճեան | Ատենապետ |
| Տիկ. Գ. Խորասանճեան | Ատենադպիր |
| Տիկ. Է. Ռուբէն | Հաշուակալ |
| Օր. Տիրուհի Մուրատեան | Բ. Հաշուակալ |

Խորհրդականներ. Տիկիններ՝ Աւետիսեան, Ճէրալ, Դոկտ. Պահճէպանեան, Մինասեան, Դոկտ. Նազարեան Պէյ, Գալէնտէրեան, Պահրի, Ցընտըքլեան, Նուպարեան, Լիմոնճեան, Օրիորդներ՝ Պալթազարեան, Գալֆաեան եւ Աճառեան:

Միաձայնութեամբ կ'որոշուի Որբանոց մը բանալ՝ հիւրընկալելու համար 100—200 որբեր: Այս գործին յաջողութեան համար Տիկ. Գալէնտէրեան կը նուիրէ աղամանդազարդ մատանի մը՝ վիճակահանութեան դնելու համար[18]:

Ընկերութիւնը Մոնս. Դոլչիէն Որբանոցի յարմար շէնք մը խնդրած ըլլալով՝ Մոնս. Դոլչի Կէտիկ Փաշայի Ֆրանսական վարժարանի շէնքը կը տրամադրէ[19], որուն վրայ Ընկերութիւնը հրապարակով ալ իր խորին շնորհակալիքը կը յայտնէ թէ՛ Մոնս. Դոլչիին եւ թէ՛ Գատըգիւղի Ս. Լեւոն եկեղեցւոյ Մեծաւոր Անտոն վ.ի, որ նոյնպէս շէնք մը տրամադրած էր Գատըգիւղի մէջ[20]:

Որբանոցի բացման հանդէսը տեղի կ'ունենայ 1919 Մարտ 30ին, նախագահութեամբ

---

18 Ժամանակ, 1918, Թ. 3378:
19 Անդ՝ Թ. 3380:
20 Անդ՝ Թ. 3394:

*Ձաւէն Պատրիարքի։ Մոնս. Դոլչիի մուտքը բուռն ծափահարութեամբ կ՚ընդունուի։ Կը խօսի Ս. Պատրիարքը։ Ընկերութեան կողմէ շնորհակալութիւն կը յայտնուի Մոնս. Դոլչիի եւ ուրիշ բարերարներու։ Հանդէսէն վերջ հիւրերը կը պատուասիրուին Թէյասեղանով*[21]։

*Որբանոցի մէջ կը պատսպարուին* 250 *որբեր* (Ժողովուրդի Ձայնը, *Թ*. 789)։

1919 *Օգոստ.ի սկիզբը վարժուհիներ դպրոցը կը փոխադրուի Բերայի կից Թաղերէն* Նշանճ–Թ՚աշի *մէջ, էմին էֆ. փողոցը եւ* 1919—1920*ի դպրոցաշրջանին համար վարժարանը կ՚ունենայ* 1 *նախապատրաստական եւ* 3 *լրացուցիչ կարգեր՝ տնօրէնութեամբ Գէորգեանի*[22]։

1919 *Մայիսին կազմուած էր «Դպրոցասէրի Տրջանաւարտից Միութիւն»ը՝ նպաստելու համար Մայր–Ընկերութեան.* 1919 *Յունիսին նուագահանդէս մը կու տայ ի նպաստ վարժուհիցին եւ* 1920 *Փետր.ին հանդէս մը՝ ի նպաստ Որբանոցին*[23]։

*Կրթասէր անձ մը* 1920*ին* 3000 *ոսկի կը կտակէ Դպրոցասէրի վարժարանին*[24]։

1921*ին Վարժուհիները փոխադրուած կը գտնենք Գատըգիւղ, Մօտա Ճատտէսի Արիֆ փաշա Գոնաք* (Ժողովուրդի Ձայնը, 1922,

---

[21] Ժամանակ, 1919, *Թ*. 3482, 3484։
[22] *Անդ*, *Թ*. 3590։
[23] *Անդ*, *Թ*. 3535, 3745։
[24] Ժողովուրդի Ձայնը, 1920, *Թ*. 655։

*Թ.* 1161)։ 1921 *Նոյեմբ. ի սկիզբը Գաւը-գիւղի վարժարանը կու գայ Հօկի նախագահ* Յովհ. Թումանեան, *որ ուղերձ մ'ընելով կ'ըսէ.* «Ազգ մը, որ այս տեսակ հաստատու-թիւններ ունի՝ սուրով ու թուրով չի մեռնիր» (Ժողովուրդի Ձայնը, *անդ՝ Թ.* 946)։

*Դպրոցասէրի վարժարանը երկու անգամ հրդեհով այրած եւ Ընկերութիւնը ճգնաժամ անցուցած է սեպհական շէնքի մը պակասէն։* 1921*ին այրող հարց մըն էր սեպհական շէնքի խնդիրը։ Վարչական ժողովի Ատենապետուհի* Տիկ. Ակիւլինէ Մուրատ Պօյաճեան *եւ* Տիկ. Մաննիկ Խօճասարեան *հանգանակութեան համար Ամերիկա կը մեկնին եւ տարուան մը ջանքերէ վերջ՝* 1922 *Ապրիլին* 30,000 *դոլարի պաշարով մը կը վերադառնան*[25]։ 1922*ի Իզմիրի աղէտը եւ ուրիշ պարագաներ կը պարտադրեն ծրագրի փոփոխութիւն։ Որբերը կը յանձնուին Ռըլիֆի, Պատրիարքարանի որոշումով, եւ կը փոխադրուին* Յունաստան *(Սելանիկ), ուր մեկնած էին նաեւ Ընկերու-թեան անդամուհիներ։ Սելանիկի մէջ կը բացուի վարժարանը նախաձեռնութեամբ Օր. Պալթազարի եւ Տիկ. Պօյաճեանի։*

1925*ին, Խնամակալութեան որոշումով, Ամերիկա հանգանակուած դրամէն* 20,000 *դո-լար կը ղրկուի Սովետական Հայաստանի Կառավարութեան՝ Երեւանի մէջ աղջկանց*

---

[25] *Թէոդիկ, Ամէն. Տարեց.* 1923, *էջ* 384—385։ — Հայաստանի կոչնակ, *Նիւ Եորք* 1953, *էջ* 470։

վարժարան մը շինելու համար Դպրոցասէրի անունով, որ յետոյ կը կոչուի Ծաhումեան (Հայաստանի Կոչնակ, 1953, էջ 470)։

Սելանիկի մալարիայի համաճարակը կը ստիպէ հեռանալ անկէ. դպրոցը կը փոխադրուի Մարսէյլ, ուր կը մնայ չորս տարի եւ անկէ ալ Պարիսի արուարձանը՝ Ռէնսի, ուր կը հաստատուի վերջնականապէս։ Հոս կը կազմուի նոր Վարչական ժողով մը՝ Ատենապետութեամբ Տիկ. Եւփիմէ Աւետիսեանի (Անայիս)[26]։

Դպրոցասէրը յաւէտ երախտապէտ պիտի մնայ, իր բարերարներու կարգին, Տիգրան խան Քէլէկեանի, որ արդիական յարմարութիւններով շէնք մը գնելով կը նուիրէ Ընկերութեան եւ Արմենակ Համբարձումեանի, որ դայն կ՚օժտէ կենդրոնական ջեռուցումով[27]։

Յովհ. Գ. Թէլեան, Պարիսի «Այսօր»ի մէջ (1952, Թ. 553) մանրամասնութիւններ կու տայ 1932—1937 տեղի ունեցած դէպքերու մասին, որմէ կ՚իմանանք թէ Դպրոցասէրի ներկայ շէնքը Քէլէկեան Հ. Բ. Ը. Մ. նուիրած՝ եւ Միութիւնն ալ Դպրոցասէրին յատկացուցած է։ Անկէ ղատ 1937ին Հ. Բ. Ը. Մ.ը կը ստանձնէ Դպրոցասէրի Խնամակալութիւնը՝ Յովհ. Գ. Թէլեանի միջնորդութեամբ։

---

[26] Ընդարձակ Տարեց. 1929, էջ 333—334։ — Տօքթ. Վ. Թորգոմեան, Երեմ. Չէլէպ. Բ., էջ 659։
[27] Ընդ. Տարեց. 1932, էջ 294։

1932ին տօնուած է Դպրոցասէրի 50ամեակը:

Մօտ քառորդ դարէ ի վեր Դպրոցասէր Հայուհեաց Ընկերութեան վարժարանը հաստատուած է Ռէնսիի մէջ: 1948էն ի վեր վարժարանը վերածուած է Լիսէի: Հայ աղջիկները հայեցի բարձր դաստիարակութեան հաւասար՝ Ֆրանսականն ալ կը ստանան:

Շրջանաւարտուհիները Ֆրանսական Կառավարութեան մօտ քննութիւն անցնելով՝ կը ստանան իրենց Բըրըվէի կամ Բաշոյի վկայականները:

Ներկայիս վարժարանը ունի 70—80 գիշերօթիկ սանուհիներ Ֆրանսայէն եւ արտասահմանէն: Աշակերտուհիներու տարիքն է 9—12: Կան լիաթոշակներ, կիսաթոշակներ եւ ձրիավարժներ: Ուսման ծրագիրը կազմուած է պետական Լիսէներու ծրագրի համեմատ: Ֆրանսերէն լեզուի բոլոր ճիւղերուն համար կան ինը Ֆրանսացի ուսուցիչներ, որոնք առաւօտները կ'աւանդեն իրենց դասերը: Իսկ հայերէնի ուսուցման համար ալ կան վեց ուսուցիչներ, որոնցմէ չորսը Միթարեան են. ասոնք ամէն կէսօրէ վերջ կ'աւանդեն հայերէնը իր բոլոր ճիւղերով, այսպէս՝ գրականութիւն, մատենագրութիւն, կրօնք, աշխարհագրութիւն, եւ այլն: Ֆրանսերէն եւ հայերէն լեզուներէ զատ՝ կ'ուսուցուին նաեւ անգլիերէն եւ սպաներէն: Իբրեւ գեղարուեստի ճիւղեր՝ կ'աւանդուին. դաշ-

նակ, երգ, սոլֆէժ, գծագրութիւն, պար, մարզանք եւ ձեռագործ (Կոչնակ, անդ)։

1952ին վարժարանի աւագ ուսուցչուհին էր Տիկ. Քարմէն։

Թէեւ Ընկերութեան 75ամեակը 1954ին է, սակայն Վարչութիւնը յարմար տեսած էր 1952—1953ը 75ամեայի Յոբելինական շրջան հրատարակել, որով անցեալ տարի Մայիս 4ին Փարիզի Mutualitéի մեծ սրահին մէջ տօնուած է Ընկերութեան 75ամեակը եւ այս առթիւ Ընկերութեան եղած է 400,000 ֆրանքի նուիրատուութիւն մը[28]։ Յոբելեանը տօնուեցաւ նաեւ ուրիշ հայկական շրջանակներու մէջ։ Այս առթիւ Ընկերութեանս անունը կարդացինք նաեւ սապէս գրուած. «Դպրոցասէր Տիկնանց Միութիւն», ինչ որ սխալ է։ «Դպրոցասէր»ը իր այդքան երկար կեանքին մէջ բնաւ երբեք չէ կոչուած «Միութիւն»։ Իր բուն սկզբնական անունն է — «Դպրոցասէր Հայուհեաց Ընկերութիւն»։ Կոչուած է նաեւ «Դպրոցասէր Տիկնանց Ընկերութիւն», ինչպէս որ սկիզբէն ի վեր չէշտեցինք եւ մեր յառաջբերութիւններով ապացուցինք։

Յոբելեանի առթիւ ուրիշ սխալ մըն ալ նշմարեցինք հայ թերթի մը մէջ. տեղ մը բսուած էր թէ Դպրոցասէրը աւելի առաջ հիմնուած եւ օրինակ եղած է Սիպիլի հիմնած Ընկերութեան։ Մինչդեռ իրականութիւնն այն է որ Սիպիլի հիմնած «Ազգանուէր Հայուհեաց

[28] Յառաջ, Փարիզ 1952, Թ. 2169։

Ընկերութիւն»ը 1879 Ապրիլ 11ին հիմնուած է, մինչ «Դպրոցասէր Հայուհեաց Ընկերութիւն»ը հիմնուած է անկէ քանի օր վերջը՝ 1879 Մայիս 1ին:

1925—1926ին Գահիրէի մէջ կազմուած է Դպրոցասէր Հայուհեացի Մասնաճիւղ մը՝ Դպրոցասէրին նպաստելու նպատակով[29]:

Դպրոցասէրը 1910ին ունեցած է իր յատուկ Քայլերգը, որուն բառերը գրած է Տիկ. Անայիս, իսկ եղանակը դաշնաւորած Յարութիւն Սինանեան[30]:

Վերջացնելով «Դպրոցասէր Հայուհեաց Ընկերութեան» մասին մեր այս ուսումնասիրութիւնը՝ կը փակենք զայն երկու գնահատանքով, մին եղած հայ այրէ մը, միւսը՝ հայ Տիկինէ մը:

Խնդիր Սիմոնեան կը գրէր 1914ին. «Դպրոցասէր Տիկնանց Ընկերութիւնը իւր վարժուհինոցով ջիղն եղաւ իգական սեռի կրթութեան, հզօր ազդակը, որ տարածեց լոյսը գաւառներուն մէջ, գործեց անդուլ ջանքերով, անսպառ ոգւով, գիտակ իւր գործին նուիրականութեան, վստահ իւր ձեռնարկին յաջողութեան՝ անվեհեր դիմեց ազգային նիւթական ձեռնտուութեան, տասնեակ փարաններով սկսուած գործ մը, տարե-

[29] Համբարձում Երամեան, Յուշարձան, Բ., Աղեքսանդրիա 1929, էջ 317:
[30] Ժամանակ, 1910, թ. 386:

կան հազար հինգհարիւր ոսկւոյ պիւտճէով մը կը ներկայանայ այսօր[31]»:

Հայ Տիկին մը 1951ին կը գրէր. Դպրոցասէրը՝ ծնունդն է «Հայ կնոջ կորովի, հետատես եւ ժրաջան գործունէութեան». ան կտրած անցած է մօտ երեք քառորդ դար՝ «միշտ պատնէշին վրայ կանգնած, յարմարելով օրուան պահանջներուն, հասցնելով գիտակից ու պատրաստուած ուսուցչուհիներ եւ մայրեր, մերթ պատսպարելով, դարմանելով եւ դաստիարակելով հարիւրաւոր անոք եւ ծնողազուրկ Հայուհիներ[32]»:

## 23. ԱՐՈՒԵՍՏԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

Օրթագիւղի «Արուեստասէր Ընկերութիւն»ը հիմնուած է 1877 Մայիս 1ին[33]: Մասիսի մէջ 1879 Նոյ. 7ին (հ. տ.) կը յիշուի իբրեւ նորակազմ Ընկերութիւն: Ընկերութեան «Վարիչ ժողով»ը հետեւեալ ծանուցումը կը հրատարակէ հոն.

Կ. Պ. 7—19 Նոյ. 1879
Օրթաքէօյ
Ազնիւ Ընկեր.

Նորակազմ Արուեստասէր Ընկերութեան Վարիչ Ժողովս պատիւ ունի ծանուցանել որ

[31] Ժամանակ, 1914, թ. 1874:
[32] Յառաջ, 1951, թ. 1980:
[33] Մանզ. էֆ. 1879, թ. 4166:

յառաջիկայ Կիւրակէ օր 11 Նոյ. Ընկերու-Թեան Ընդհանուր ժողովը պիտի գումարի յարտաքոյ կարգի նիստ ի Ս. Թարգմանչաց վարժարան ժամը ճիշդ 6ին:

Կը հրաւիրուի Ձեր Ազնուութիւնը իր ընկերական պարտաւորութիւնը կատարելու փութալ:

Ի Դիմաց Վարիչ Ժողովոյ

Ատենադպիր Ատենապետ

Տ. Արփիարեան Յ. Գուրգէն[34]

Իր նպատակն է. Հայաստանի մէջ արուեստից զարգացման օժանդակել: Նոյնանուն ուրիշ 2 Ընկերութիւն ալ կայ մին Խասգիւղ, միւսը Սամաթիա, որոնցմէ հաւանօրէն Օրթագիւղինն է, որ 1880ին Մուշի մէջ Երկրագործական վարժարան մը կը բանայ:

## 24. ՀՈԻՓՍԻՄԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՕՐԻՈՐԴԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879 ?)

Օրթաքէօյի Հռիփսիմեանց վարժարանի սանուհիները կազմած են «Հռիփսիմեան Վարժարանի Օրիորդաց Ընկերութիւն»ը, որ առաջին անգամ 1880 Մարտին հրապարակ կ՚ելլէ նուիրատուութեան մ՚առթիւ (տե՛ս Թէրճիւմանը Էֆքեար, Կ. Պ. 1880, Թ. 816): Հաւանօրէն իր կազմութիւնը հին չէ: Գուցէ հիմնուած ըլլայ 1879ին:

[34] Մասիս, 1879, Թ. 2473:

### 25. ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*Կազմուած կ՚երեւայ 1910ին: Առաջին անգամ անունին կը հանդիպինք 1910 Դեկտ. 4ին, երբ արդէն* Լսարան–Ընթերցարան *ունի*[35]*: Կը վերակազմուի 1919 Յունուարին*[36]*:*

### 26. ԲԱՐԵՍԻՐԱՑ ԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (... 1920)

*Թէոդիկ՝*[37] *տանց ըսելու թէ ե՞րբ կազմուած է Միութիւնս՝ կ՚ըսէ որ «Վերակազմուած է 1920 Փետր. 8ին»: Ինչպէս կը տեսնուի սակայն ձուլում մըն է նախկին* «Բարեսէր» *եւ* «Լսարանի» *Ընկերութեանց անուններու՝ նոր ձեւի տակ, կոչուելով* «Միութիւն»*: Թերեւս կազմուած է 1908էն վերջ: 1920ին կը կոչուի մերթ «Բարեսիրաց»*[38] *եւ մերթ «Լսարանական Միութիւն»*[39]*:*

*Իր նպատակն է. «Նպաստել երկսեռ հասարակութեան մտաւոր, բարոյական եւ ֆիզիքական դաստիարակութեան»: Ունէր 54 անդամ: Վարչական Խորհուրդը կը կազմէին. Ս. Արզումանեան, Ա. Շատանեան: Մայր Դիւանը՝ Դոկտ. Ա. Կիւլպէնկեան, Օր. Վ. Մերոպեան*[40]*:*

---

[35] ժամանակ, 1910, *Թ.* 659:
[36] *Անդ*, 1919, *Թ.* 3426:
[37] *Ամէնուն Տարեցոյցը*, 1921. *էջ* 301:
[38] ժողովուրդի Ձայնը. 1920, *Թ.* 606:
[39] ժամանակ, 1920, *Թ.* 2764:
[40] *Թէոդիկ*, *անդ*:

# ՔՈՒՐՈՒՉԷՇՄԷ

## 1. ԱՐՇԱՐՈՒՆԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1812)

*Կ. Պոլսոյ* Քուրուչէշմէ *Գիւղը եղած է մշտական բնակավայրը* Տիւզեանց Գերդաստանին [1], *ուր կը գտնուէր նաեւ իրենց վերջին հանգստարանը* [2]: *Հետեւաբար սխալ չըլլար եթէ Պոլսոյ այդ թաղն համարինք Տիւզեաններէ հիմնուած* «Արշարունեաց Ընկերութեան» *հիմնավայրը*:

*«Արշարունեաց Ընկերութեան» հիմնադիրն է* Յովհաննէս Չէլէպի Տիւզեան (*ծն.* 1749 † 1812 *Ապրիլ*), *որուն կենսագրին համեմատ՝ «ճշմարիտ գիտութեան փափաքող» անձ մ՚եղած է եւ «բազմակողմանի ուսմանց եւ երաժշտութեան մէջ ինքն արդէն կրթուած՝ փոյթ տարած է նաեւ իր ազգայնոց յառաջդիմութեան* [3]»:

*Յովհաննէս Տիւզեան եղած է* ազգային մեծ բարերար մը: *Ո՛չ միայն նորոգած է Սկիւտարի եւ ուրիշ թաղային դպրոցներ՝*

---

[1] *Տեսն. Վ. Թորգոմեան, Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան, Ստամպօլոյ Պատմ., Բ., Վիեննա* 1932, *էջ* 688:

[2] *Հ. Գաբրիէլ Մէնէվիշեան, Ազգաբանութիւն Ազնուական Զարմին Տիւզեանց, Վիեննա* 1890, *էջ* 10:

[3] *Հ. Գ. Մէնէվիշեան, անդ, էջ* 29:

այլ եւ իր անձնական ծախքով հիմնած է երկու դպրոց. մին Ղալաթիոյ մէջ, միւսը Բարթալ: Իբրեւ ուսումնասէր մարդ՝ ան հոգ տարած է օգտակար եւ ուսումնական գրքերու տարածման: Իր ծախքով տպագրել տուած է մեծահատոր գրքեր, առանց ուզելու որ իր անունը յիշուի իբրեւ մեկենաս:

Ահա այս մեծանձն անձնուրութիւնն է, որ գրքեր տարածելով ազգին յառաջդիմութիւնը դիւրացնելու նպատակով 1812ին Պոլսոյ մէջ կը հիմնէ «Արշարունեաց Ընկերութիւն»ը[4]: Այս մասին կ՚ակնարկէ Բանասէր[5], գրելով. «... Հոս կը գտնենք պզտիկ, բայց սքանչելի հաստատուած մը, որն որ քառասուն տարի առաջ նշմարիտ ազգասէրի մը գրածն է, երբ օգտակար գրքեր տպելու ընկերութիւն մը կը հաստատէր ազգերնուս մէջ... ազնիւ յիշատակ մը ան ազգասէր եւ ուսումնասէր մարդուն, որուն անունը ամէնուն ծանօթ է եւ ամէն յարգութիւն կ՚արժէ»:

Իբրեւ զուտ մշակութային Ընկերութիւն՝ կրնայ ըսուիլ որ առաջինն է «Արշարունեաց Ընկերութիւն»ը Պոլսահայ Մշակ. Ընկերութիւններու մէջ: Ընկերութեանս մէկ ճառախօսը, որ «Յ. Տ.» կը ստորագրէ եւ ապահովաբար Յակոբ Ձէլէպի Տիւզեանն է՝ կ՚ընդգծէ առաջնութեան պարագան, ըսելով. «Ըն-

[4] Անդ, էջ 21:
[5] Բանասէր, Կ. Պ. 1851, Թ. 4, էջ 161:

կերութիւն այսպիսի կարծեմ թէ ոչ երբեք եղեր էր մեր ազգին մէջը» [6]:

*«Դիտակ Բիւզանդեան»ի խմբագրութիւնն ալ կը շեշտէ «Արշարունեաց»ի անդրանկու-թիւնը՝ պատմելով նոյն Ընկերութեան հիմ-նադրութիւնը. «Մեր ազգին մէջ* հոգեւոր գո-վելի Եղբայրութիւններ *եղաւ, բայց* Ընկե-րութիւն մը չի կար. *ս. Ժ. դարուն սկիզբը տեսնուեցաւ Ստամպօլի մէջ մէկ նախանձելի* Ընկերութիւն մը՝ որ մէյտեղ խօսք դրած են, որ ձեռվններնէն եկածին չափ ջահդ ընեն, ստակ՝ խարճ չինային, որչափ պէտք ըլլայ տան, որ եղած ուսումնական գրքերուն վրայ, տախա այլ նորանոր գրքեր շինել տան գիտ-նոց, ու տպել տան, *որով որ ազգը պարէ ան շատէն քիչը կարդայ սորվի, խմաստութեան անոյշ համը առնէ* [7]»:

Բանասէր [8] *բացայայտօրէն կը գրէ*. «Առջի ուսումնական Ընկերութիւնը կը սեպենք ա-նիկայ որ հաստատուեցաւ ի Կոստանդնու-պոլիս յամին 1812 եւ որուն նպատակն էր օգտակար գրեանք հրատարակել»:

*Ընկերութեանս հիմնումի մէջ գործօն դեր ունեցած են երկու երիտասարդ Տիւ-զեաններ եւս* — Յակոբ *եւ* Մկրտիչ Ջէլէ-պիները [9]:

[6] Դիտակ Բիւզանդեան, *Վենետիկ* 1813 *Յունուար*, *Թ*. 1, *էջ* 8:
[7] *Անդ*, *էջ* 6:
[8] *Անդ*, *Թ*. 12, *էջ* 547—548:
[9] Ազգասէր, *Վենետիկ* 1815. *էջ* 4:

Առաջին տարին Ընկերութիւնը ունեցած է 40—45 անդամ: Դիտակ Բիւզանդեան [10] կը հաւաստէ որ օրէօր կ՚աճի այդ թիւը եւ մեծ յոյս կայ որ հաստատ մնայ ու տեւէ:

Ընկերութիւնը 1813ին Յայտարարութիւն մը հրատարակելով՝ կը բացատրէ այդ ին լուսաւորութեան համար անհրաժեշտ պէտքը գրքեր տպագրելով տարածելու եւ ընթերցումը քաջալերելու: Անկէ կ՚իմանանք որ ամէն անդամ իրաւունք ունի տպագրուած գրքերէն օրինակ մը ստանալու: Հոդ կ՚ըսուի նաեւ որ Ընկերութեան անդամագրութեան մէջ երեք կարգեր կը գանազանուին վճարումի տարբերութիւններով: «Յայտարարութիւնը» կ՚ըսէ. «...մտածեցին երեք կարգ դնել աս Ընկերութեան մէջ, որ ծանրութիւն մը չըլլայ. ուզողը ան կարգը ընտրէ, որը իր կարողութեանը ձեռք կու տայ»:

Ընկերութիւնը չափազանց օգտակար եղած է Հայութեան համար: Ան ստանձնած է Դիտակ Բիւզանդեան երկշաբաթաթերթի ամբողջ ծախքը՝ խմբագրութիւնը յանձնելով Վենետիկի Մխիթարեանց [11]: Յետոյ տպագրելով Ազգասէրը եւ ուրիշ գրքեր [12]: 1815էն վերջ իր վրայ առեր է նաեւ Վենետիկի Մխիթարեանց Եղանակ Բիւզանդեան տարեթերթին ծախքը [13]:

10 Անդ, էջ 6:

11 Հ. Գրիգորիս Գալէմքիարեան, Պատմութիւն հայ լրագրութեան, Վիեննա 1893, էջ 30—31:

12 Բանասէր, անդ, էջ 549:

13 Հ. Գ. Գալէմքեարեան, անդ, էջ 28:

Հակառակ իր կարճատեւ գոյութեան՝ Արշարունեաց Ընկերութիւնը մեծ ծառայութիւն մատուցած է հայ Մշակոյթին, ոչ միայն գրքերու եւ թերթերու տպագրութեամբ, այլ եւ օրինակ հանդիսանալով Հայութեան մշակութային գետնի վրայ հաւաքական աշխատանքի ու միութենական գործունէութեան: Իր օրինակը վարակիչ եղած է յաջորդ սերունդներու համար ու եւեւէ եւեւ ծիլ արձակած են զանազան տեղեր, այլեւայլ Ընկերութիւններ:

Արշարունեաց Ընկերութիւնը տեւած է, հաւանօրէն, մինչեւ 1819: Բանասէր գոհացած է 1851ին ըսկ՝ ստ տողով. «Շատ չիքշեց սակայն սա Ընկերութիւնը [14]»:

2. ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863)

1866 Սեպտ. 13ին յօդուածագիր մը Բուրուչէշմէէն ժամանակին կը գրէ. «Բուրուչէշմէի վարժարանին այժմեան բարեկարգութեանցը, որ եռամեայ յարատեւութեան արդիւնքն է, նոյն Գիւղի Թարգմանչաց Ընկերութեան շնորհիւն է: Ի սկզբան, ինչպէս սովորութիւն է, իւրաքանչիւր անդամ իր ամսական տուրքը սիրով կը վճարէր, որով մեծ զիւրութիւն մ'ըլլայէն զատ վարժարանին ամսական ծախուցը համար՝ ամէն տարի խոքրիկ դրամագլուխ մըն ալ պիտի կրնար աւելնայ: Սակայն քիչ ժամանակ անցնելէն

[14] Անդ, էջ 548: — Հմմտ. Յառաջ, Փարիզ 1950, թ. 1563:

*ետքը Ընկերութեան անդամոց մեծ մասը դադրեցուցին իրենց տուրքը եւ մնացին միայն Գասպար աղա, որ կը վճարէ 200 դրշ., Գէորգ աղա՝ 50 դրշ., Թերովրէ աղա՝ 50 դրշ., Գաբրիէլ աղա՝ 30 դրշ., Յարութիւն աղա՝ 30 դրշ., Ստեփան աղա՝ 30 դրշ., Եղիա աղա՝ 30 դրշ., Մարտիրոս աղա՝ 20 դրշ., Գրիգոր աղա՝ 10 դրշ.: Այս ազգասէր անձանց մէջ միայն երեք հոգի են որ պաշտօն ունին վարժարանին մէջ: Վարժարանը իրեն համար եկամուտ տուն մը եւ սրճարան մ՚ունի, որոնք 500 դրուշ կը բերեն ամիսը, 400 դուրուշ ալ վերոյիշեալ Ընկերութեան անդամոց կողմանէ կը վճարուի. ընդամէնը 950 դուրուշ կ՚ընէ եւ վարժարանին ծախքն ալ 1000 դուրուշ ըլլալով՝ եկեղեցին ամսէ ամիս 50 դուրուշ կու տայ, որուն փոխարէն վարժարանին համար յատուկ թապախի արդինքը կայ: Այս կերպով վարժարանը շարունակեց մինչեւ այս տարի Յունիս ամիսը, սակայն վերոյիշեալ Ընկերութեան գլխաւոր անդամոց մէջէն ոմանք որեւիցէ անծանօթ պատճառի համար վշտացած՝ Ընկերութեան տուրքը սկսան չվճարել, որով եւ արժան դատուեցաւ վարժապետաց ամսականը դեղչել...*[15]»:

[15] Ժամանակ, Կ. Պ. 1866, էջ 156: — Ժամանակ (1864, էջ 147), 1864ին *կը գրէր թէ Թուրուշէշմէի Սրբոց Թարգմանչացը տարիէ մ՚ի վեր «բարեկարգութեամբ կ՚ընթանայ, ձեռնտուութեամբ* Ընկերութեան մը, *որ* պատուարժան Գիւղացիներէ կը *բաղկանայ»*:

*Ընկերութեանս մասին ուրիշ կողմէ տեղեկութիւն կը պակսի: Ան անծանօթ է Ալպօյաճեանի եւ Թորգոմեանի:*

### 3. «ԿՈՄԻՏԱՍ» ԵՐԳՉԱԽՈՒՄԲ (1919)

*Կազմուած է* 1919*ի սկիզբը:* 1919 *Ապրիլ* 5*ին երեկոյթ մը կը կազմակերպէ՝ նոյնանուն* Նուագախումբի *մը կազմութեան համար:* 1920*ին կը գործէր «Կոմիտաս» նուագախումբը*[16]:

## ԱՌՆԱՒՈՒՏԳԻՒՂ (ՔՈՒՐՈՒՉԷՇՄԷ-ՊԷՊԷՔ)

Առնաւուտգիւղի *մէջ հին Ընկերութիւններու չենք հանդիպած: Քանի մը նոր Ընկերութիւններ, որոնց վրայ պիտի խօսինք հոս՝ երեք* միացեալ *թաղերու* — Առնաւուտգիւղ, Քուրուչէշմէ եւ Պէպէք — *Ընկերութիւններ են:*

### 1. ԱՂՔԱՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

Սուրհանդակ[17] *կը ծանուցանէ որ* Variété *թատրոնին մէջ Առնաւուտգիւղի* «Աղքատասիրաց Միութեան» *կողմէ ցերեկոյթ մը պիտի տրուի՝ ի նպաստ Չէյթունի սովեալներուն եւ Քուրուչէշմէի վարժարանին: Հաւանօրէն* 1908*ին կազմուած է Միութիւնս:*

---

[16] *Թէոդիկ, Ամեն. Տ.* 1921, *էջ* 308:
[17] *Կ. Պ.* 1908, *Թ.* 110, 112:

## 2. ՏԻԿՆԱՆՑ ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1914)

Հայկունի Արապեան 1914 *Ապրիլ 2ին Առնաուտքիւղէն կը գրէ. «Ամիսէ մը ի վեր թաղիս մէջ ալ իգական սեռը գովելի աշխատանքով մը ձեռնարկած է Միութեան մը կազմութեանը, որ մասնաւորապէս իր հոգածութեան առարկայ պիտի դարձնէ վարժարանի աղքատ ուսանողները*[18]»:

*Առաջին ժողովքին մասնակցող տասնեակ մը Տիկիններ* 20 *ոսկի կու տան: Միութեան անդամ եւ հովանաւորող են Տիկիններ.* Յակոբեան, Զպլաքեան, Փափազեան, Հալանեան, Ատիլ, Պապահեան, Նազարեան եւ Ս. Յակոբեան:

Հազիւ քանի մ'օրէ ի վեր կազմուած՝ *Միութիւնը Զատկի առթիւ* 10 *աղքատ մանուկներ կը հագուեցնէ եւ Հայ զինուորներուն կոկիկ սեղան մը կը սարքէ:*

*Միութիւնս* 3 *Միացեալ Թաղերու — Առնաուտքիւղ, Քուրուչէշմէ, Պէպէք — Ընկերութիւն մըն է: Ունեցած է իր Կանոնագիրը, զոր* 1914 *Յունիսին Պատրիարքարան ղրկած էր՝ վաւերացուելու համար*[19]:

## 3. ՀԱՅԱՆՈՒԷՐ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Երեք Միացեալ Թաղերու* «Հայանուէր Միութիւն»*ը* 1918*ին կազմուած կ'երեւայ: Ինչպէս միւս Թաղերը՝ նոյնպէս հոս փափաք*

---

18 Ժամանակ, *Կ. Պ.*, *Թ.* 1770:

19 *Անդ*, *Թ.* 1832:

կը յայտնուի հայ որբերու համար Որբանոց մը բանալ: Միութիւնը գլուխ կ'անցնի այս ազգօգուտ ձեռնարկին եւ 1918 Դեկտ. 25ին կը բացուի Որբանոցը[20]: Որբանոցի Հոգաբարձութիւնը կը ստանձնէ «Հայանուէր Միութեան» Գործ. Ժողովը, իրեն օժանդակ ունենալով Տիկնանց Խնամակալութիւն մը, հետեւեալ կազմով. Տիկիններ՝ Պարգեւ Յակոբեան, Արշալոյս Պօյաճեան, Կ. Հալաճեան, Զարուհի Արապեան: Նիւթապէս եւ բարոյապէս աջակցած են մանաւորապէս հետեւեալները. Լեւոն Ջիվէր Պէյ Կարապետեան, Խաչիկ Թարագճեան, Կարապետ Հալաճեան, Կոպեռնիկ Գավաֆեան, Համբարձում Տատեան, Ճիւմպիւշեան Եղբարք, Յովհ. Փափազեան, Պարթեւ Յակոբեան, Սեփոն Սիրուն եւ Ա. Քիւրքճեան[21]:

Միութեան Ատենապետն էր Թ. Տ. Սահակեան, Ատենադպիրը՝ Կարապետ Ալչըճեան, Հաշուակալը՝ Գաբրիէլ Յ. Համբարձումեան[22]:

1919 Յունուար 18ին Մոնս. Դոլչիի պատսպարած որբերէն 50ը կը յանձնուի «Հայանուէր Միութեան» Որբանոցին[23]: Միութիւնը Որբանոցին ի նպաստ պարահանդէս մը կու տայ 1919 Փետրուարին՝ մասնակցու-

---

20 Պատմական Յիշատակարան Երեւման Ս. Խաչ Եկեղեցւոյ Գուրու-Չէշմէի, Կ. Պ. 1934, էջ 88:
21 Անդ, էջ 89:
22 Անդ, էջ 89—90:
23 Ժամանակ, 1919, Թ. 3431:

*թեամբ Ֆրանսայի գինուորական արուեստա-գէտներու*[24]։

*Որբանոցի պաշտօնական բացումը տեղի կ'ունենայ 1919 Մարտ 16ին Զաւէն Պատրիարքի եւ բազմաթիւ հիւրերու ներկայութեամբ, ուր կ'ըլլան ճառախօսութիւններ, արտասանութիւններ ու երգեր. կը խօսի նաեւ յոյն քահանայ մը. կը չեշտուին Ամերիկայի ըրած նպաստները. կ'ըլլայ 1000 ոսկիի նուիրատուութիւն*[25]։

*Որբանոցը ունեցած է 85 մանչ եւ 150 աղջիկ սաներ. կանոնաւոր Մանկապարտէզ եւ Նախակրթարան՝ երեք դասարանով ու արհեստական բաժինով*[26]։

*Եռանդով սկսուած գործը կը շարունակէ Միութիւնը նաեւ 1920ին*[27] *եւ 1921ին*[28], *մերթ ունենալով թուրութեան պահեր կամ նիւթական դժուարութիւններ*[29]։

## 4. ՀԱՅ ՍԱՆՈՒՀԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Պէպէք — Առնաւուտգիւղ Ամերիկեան «Կոստանդինուպոլիս Քոլէճ»ի նախկին հայ սա-նուհիները 1918ին կազմած են* «Հայ Սանու-հիներու Միութիւն»*ը։ Հիմնադիրներն ու Վարչականներն են. Նախագահ՝* Տիկ. Բար-սեղեան, *Ատենադպիր՝* Օր. Զարուհի Արեւեան,

---

[24] *Անդ, թ.* 3453—3454։
[25] *Անդ, թ.* 3471։
[26] *Պատմական Յիշատակարան, անդ, էջ* 90։
[27] Ժողովուրդի Ձայնը, Կ. Պ. 1921, *թ.* 625։
[28] *Անդ, թ.* 789։
[29] *Անդ, թ.* 847, 852։

Արսինէ Սելեան, Արաքսի Թերզեան, Սաթենիկ Նահապետեան, Երջանիկ Խսկէնտէրեան, Նուարդ Համբիկեան, Յուսիկ Թարագնեան[30]:

*Միութեան նպատակն է.* Կապ պահել ամերիկեան եւ անգղիական շրջանակներու հետ եւ պատուաւորապէս ծանօթացնել Հայ Ազգը իր ամէն կողմերով[31]: *Իր սարքած նուագահանդէսին կ'երգէ Մոսկուայի եւ Պետերբուրգի առաջին տենոր՝* Ղուկասեան:

*Միութիւնը* 1921 *Ապրիլին կը ներկայացնէ Գ. Զուրաբի «Մանդուխտ Կոյս»ը: Մեհրաբեանի ղեկավարութեամբ կ'երգէ հայկական երգեր*[32]:

5· «ՀԱՅ ՕՐԻՈՐԴԱՅ ՃԵՄԱՐԱՆ»Ի ՆԱԽԿԻՆ ՍԱՆՈՒՀԵԱՅ ՄԻՈՒԹԻՒՆ (1920)

*Կը յիշուի Թէոդիկի քով*[33]*. հաւանօրէն* 1920*ին կազմուած :*

## ՌՈՒՄԷԼԻ–ՀԻՍԱՐ

### 1· ՄԵՍՐՈՎՊԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

Ռումէլի–Հիսարի *հնագոյն Ընկերութիւնը կը կոչուի* «Մեսրովպեան Ընկերութիւն», *որ հիմնուած է* 1864 *Փետր.ին: Իր սկզբնական նպատակն եղած կը թուի չափահասներու, յատկապէս արհեստաւորներու մէջ ուսում*

[30] Ժամանակ, 1918, Թ. 3364:
[31] *Անդ*, 1919, Թ. 3622:
[32] Ժողովուրդի Ձայնը, 1921, Թ. 768:
[33] *Ամէն. Տարեց.* 1921, էջ 308:

*տալ : Ընկերութիւնը Ս. Հիսարի մէջ յատուկ սենեակ մը վարձելով՝* երեկոյեան դասընթացք մը *հաստատած էր* 1864 *Յուլիսին*, աղքատ արհեստաւորներու *համար, ուր կ'ուսուցուէր.* Հայերէն, թուաբանութիւն, աշխարհագրութիւն եւ գաղղիերէն[34]:

1881*ին Ընկերութեան նպատակն է.* «Փաղին աղքատիկ վարժարանին օժանդակել[35]»: *Իր Գործ. Ժողովի Ատենապետն է* Ս. Կ. Արսէնեան, *իսկ Ատենադպիրը՝* Գ. Գ. Սիմքէշեան[36]: Թէրճէմանը էֆքեարի[37] *մէջ եղած ծանուցումէ մը կ'իմանանք թէ Ս. Հիսարի* Ս. Թադէոսեան *վարժարանի Հոգաբարձութիւնը*, 1881*ին*, *Մեսրոպեան Ընկերութեան յանձնուած է : Շնորհիւ Ընկերութեան օժանդակութեան եւ* Ռոբերտ Կոլէճի *Հայ Ուսանողներու անձնուէր դասատուութեան՝ Ս. Հիսարի վարժարանը լաւ վիճակ մ'ունի* 1881*ին*[38]:

2. ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

1869 *Ապրիլ 3ին հրդեհ մը մեծ վնաս կը հասցնէ Ռումէլի-Հիսարի Հայոց : Դժբախտ հրկիզեալները ի վիճակի չեն շարունակելու թաղին Ս. Թադէոսեան վարժարանի ընթացքը : Հրկիզեալներու երկսեռ զաւակները*

---

34 Ժամանակ, *Կ. Պ.* 1864, *էջ* 120: *Հմմտ.* Մասիս, 1864, *Թ.* 654:

35 Մասիս, 1881, *Թ.* 2944:

36 *Անդ*:

37 *Կ. Պ.* 1882, *Թ.* 1457:

38 Մասիս, 1881, *Թ.* 3067:

կը միայն փողոցը: Հայ ոսկերիչ «քանի մը բարերար անձինք» դարման տանելու համար արհեստաւորներու դասակներուն կրթութեան՝ 1869 Ապրիլ–Մայիսին կը կազմեն «Օժանդակ Ընկերութիւն»ը եւ երեքական դրուշնոց տամ–սակներ տալէ տալով՝ ազգայիններուն նիւթական օգնութեան կը դիմեն: «Այսպիսի մարդասիրական գործի մը նպաստելու համար մեր պատուական ազգայնոց յորդոր կարդալն աւելորդ կը համարինք», կը գրէ Մասիսի խմբագիր Ութիւճեան[39]:

Մամուլ[40] 1869 Օգոստ.ին կը տեղեկագրէ. «Բումէլի Հիսարի Թաղէոսեան վարժարանին համար Օժանդակ անուամբ Ընկերութիւն մը կազմուեցաւ, որ կը բաղկանայ առ այժմ 25 ընկերներէ, որոնց կրնան անդամակցիլ ամէն ազգայինք տարին վճարելով մէկ բաժնի համար կէս օսմ. ոսկի...: Այս Ընկերութեան կազմանէ հետեւեալ չորս մեծ. անձինք Հոգաբարձու ընտրուած են.

Յարութիւն Խանճեան
Պօղոս Էրմասեան
Սիմոն Յովհաննէսեան
Յարութիւն Մըրմըրեան

Ասոնց պաշտօնն է Ընկերութեան հասոյթները ընդունիլ եւ դպրոցին մատակարարութիւնը ընել»:

---

[39] Մասիս, 1869, Թ. 920: — Հմմտ. Փնջիկ, 1869, Թ. 339:
[40] Կ. Պ. 1869, էջ 266:

1869 Սեպտ. 1էն Ս. Թադէոսեան վարժարանի Վարչութիւնը թաղականութեան կողմէ Օժանդակ Ընկերութեան կը յանձնուի:

Ահասաիկ Ընկերութեան Մուտքն ու Ելքը 1869 Սեպտ. 1էն մինչեւ 1870 Յունիս.

| Մուտք | ղ. | փր. |
|---|---|---|
| Տրջագայած գանձանակէն | 7058 | 10 |
| Եկեղեցւոյ թապախէն | 462 | 20 |
| Տղայոց ամսական հասոյթէն | 2946 | 30 |
| Ննջեցեալէ հասոյթք | 47 | 20 |
| Այլ եւ այլ նուէրներէ | 803 | 20 |
| Ընկերաց կէս ոսկի տարեկան բաժիններէ | 517 | 20 |
| Ստակի շահ | 28 | 10 |
| | 11864 | 10 |

| Ելք | ղ. | փր. |
|---|---|---|
| Ամսական դասատուաց | 8262 | 10 |
| Վարժուհիի տան ամսական | 280 | |
| Դպրոցի նորոգութիւն | 713 | |
| Դպրոցի ածուխ եւ փայտ | 457 | 30 |
| Դպրոցի այլ եւ այլ ծախքեր | 741 | 30 |
| Դպրոցի 10 աղքատ տղայոց զգեստ | 1341 | |
| Գանձանակ պտտցնողի քով | 40 | |
| Պատրաստ դրամ | 18 | |
| | 11864 | 10 |

Գանձապետ Օժանդակ Ընկերութեան
Պօղոս Էյմաեան
Վասն ճշգութեան հաշւոյս կը ստորագրեմք
Ատենադպիր Ատենապետ
Ծերոն Գրիգորեան Թ. Խ.[41]

41 Մասիս. 1870. Թ. 988:

Թորգոմեան[42], խօսելով Ռ. Հիսարի վրայ, առանց որեւէ անուն յիշելու, կը գրէ. «Դպրոցին օգնութեան համար ընկերութիւններ հաստատուած են հոն երբեմն»։

Ընկերութիւնս անծանօթ է նաեւ Ալպօյաճեանի։

### 3. ՍԱՆԴԽՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

Ընկերութեանս հիմնարկութիւնը եղած ըլլալու է 1869ի ամառը։ 1870 Օգոստոսին Օրագիր[43] կը հրատարակէ ճառ մը Ռ. Հիսարի աղջկանց վարժարանի աշակերտուհի Վերգին Թորգոմեանէ գրուած, որ կարդացած է նա «Հիսարու Սանդխտեան Ընկերութեան ՏԱՐԵԴԱՐՁԻՆ առթիւ» սարքուած հանդէսին։

Փունջ Օրաթերթի խմբագիրը 1870 Յուլիս 4ին կը գրէ. «Երէկ ուրախութեամբ լսեցինք թէ տեղւոյն (Ռ. Հիսարի) Տիկնայք միաբանելով Ընկերութիւն մը կազմեր են, աղջկանց վարժարանին խնամքը իրենց վրայ առնելու եւ մանաւանդ անոր նիւթական պիտոյքը հանգանակութեամբ հոգալու համար[44]։

Ասկէ կ'եզրակացնենք. Ռումէլի-Հիսարի հրկիզումին հետեւանքով նիւթական միջոցներէ զուրկ Ս. Թադէոսեան երկսեռ վարժարանի նպաստելու համար նախ Հայ ոսկերիչ-

[42] Երեմ. Չէլէպ., Բ., անդ, էջ 698։
[43] 1870, Թ. 221, Օգոստ. 23։
[44] Փնջիկ, 1870, Թ. 600։

ներ Օժանդակ Ընկերութիւնը կը հիմնեն 1869 Ապրիլ–Մայիսին. յետոյ՝ 1869ի ամառը — գուցէ Յուլիս–Օգոստոսին — Թ. Հիսարի Հայ Տիկնայք կը կազմեն Սանդխտեան Ընկերութիւնը՝ Թաղէոսեան վարժարանի աղջկանց բաժնի նիւթական հոգը բառնալու համար:

Ընկերութիւնս անծանօթ է Ալպօյաճեանի:

### 4. ՀԱՅ–ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

Ռումէլի–Հիսարի Ամերիկեան «Ռոբերտ Գոլէճ»ի մէջ 1870ական թուականներուն 40 հայ ուսանողներ կային: Ասոնք 1871ին կը հիմնեն «Հայ–Սանուց Ընկերութիւն»ը, որ կը յիշուի 1872 Հոկտ.ին Օրագիրէն, որուն բաժանորդ գրուած էր Ընկերութիւնը, 1 ոսկի վճարելով[45]: Ընկերութեան հիմնումի թուականը կը ճշդէ Ընկերութեան Վարչութիւնը 1879 Ապրիլ 26/8 թուական նամակի մը մէջ, ուղղուած Մասիսի, ուր կ'ըսուի թէ ութը տարի առաջ հիմնուած է իրենց Ընկերութիւնը եւ 1879 Ապրիլին իր ութերորդ տարուան մէջն է: Հետեւաբար հիմնուած իրր 1871ի գարնան:

Ընկերութեան նպատակը, մինչեւ 1879ի սկիզբը, եղած է. Ռոբերտ Գոլէճի «Հայ աշակերտաց մտաւորական կարողութեան զարգացմանը նպաստել եւ նոյն լրագիր եւ գիրք

45 Օրագիր, 1872, Թ. 818:

հայթայթել[46]»։ *Իսկ 1879ի սկիզբը Ընկերութեան նպատակը* փոխուած է։ *Այս մասին Ընկերութեան անդամները կը գրեն. «Ներկայ* (1879) *տարւոյս սկիզբը Ընկերութեանս անդամներն նկատելով որ* ամէն Հայ իւր ձեռքէն եկածին չափ նպաստ կը մատուցանէ Հայ մանկտին դաստիարակելու մեծ եւ կենսական գործին, *իրենց նպատակն* ընդարձակեցին, *յորմէ հետէ Ընկերութիւնս իրեն նպատակ ընդունեց.* Կարելի եղածին չափ թէ՛ նիւթապէս եւ թէ՛ բարոյապէս օգնել Հայ մանկտւոյն դաստիարակութեանը[47]»։

1881*ին Ընկերութիւնը կը կոչուի նաեւ «Հայ* Ուսանողաց *Ընկերութիւն*[48]»։

«Հակառակ իրեն դէմ յարուցեալ բազմաթիւ խոչընդոտներու»՝ *Ընկերութիւնը կրցեր է յարատեւել 8 տարի*։ 1879*ին դրամ կը հաւաքէ՝ բարենպատակ Ընկերութեան մը միջոցաւ իր նպատակին գործածելու համար։ Ատենապետն է՝* Յ. Ն. Մոստիչեան, *իսկ Ատենադպիրը՝* Ա. Մ. Մկրեան[49]։

*Իրրեւ օտար վարժարան յաճախող հայ տղաք՝ Թ. Կոլէճի հայ ուսանողները գեղեցիկ կանոն մ'ունէին.* Մասնաւոր օրեր որոշեր էին մաքուր հայերէն խօսելու համար, *ինչպէս որ նոյնը կ'ընէին դպրոցին մէջ՝*

---

[46] Մասիս, 1879, *Թ*. 2312։
[47] *Անդ*։
[48] Հայրենիք, 1881, *Թ*. 753։
[49] Մասիս, *անդ*։

*անգղիերէն եւ գաղղիերէն խօսելու համար*[50]: *Ակնէ դատ Կոլէճի* «յառաջադէմ Հայ աշակերտները շաբաթն երկու անգամ փոփոխակի Բումէլի–Հիսարի ազգ. աղքատիկ դպրոցն երթալով՝ ձրիաբար դասախօսութիւն կ'ընեն *եւ Ընկերութեան անձուկ վիճակին ներածին չափ մերթ ընդ մերթ* դպրոցական պիտոյք ալ կը նուիրեն յիշեալ ազգային դպրոցի աշակերտաց[51]»:

*Ընկերութիւնը երկար տարիներ պահեր է իր գոյութիւնը: Հաւանօրէն* 1908*ի Սահմանադրութենէն վերջն է որ սկսած է կոչուիլ «Հայ–Սանուց* Միութիւն»: *Միութիւնը* 1921*ին կը մտադրէ տօնել իր* 50ամեակը[52]: 50*ամեակը փառաւոր կերպով տօնուած է* 1922 *Փետր.ին եւ այդ առթիւ հրատարակուած է հատոր մը՝* «Հանգրուան», *որ կը բովանդակէ կենսագրականներ, յուշանկարներ, գրական բաժին, ճառեր, եւն: Դժբախտաբար տեսած չենք «Հանգրուան»ը, ինչպէս նաեւ Ընկերութեան հրատարակած* «Միութիւն» *անունով թերթը (խմորատի՞պ)*[53]:

5. ՀԱՅԿԵԱՆ ԽՈՒՄԲ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

*Կազմուած է* 1872*ին: Հիմնադիրներն են Ռոբերտ Կոլէճի հայ աշակերտները: Նպատակը՝ «գիւղին (Ռ. Հիսար)* աղքատիկ

---

[50] Մասիս, 1879, Թ. 2307:
[51] Մասիս, 1879, Թ. 2307, 2376:
[52] Ժողովուրդի Ձայնը, 1921, Թ. 977:
[53] *Տե՛ս* Ժողովուրդի Ձայնը, 1922, Թ. 1174:

դպրոցին ապագայ յառաջադիմութեանն ըստ կարի օժանդակել, *որուն համար Ընկերութիւնը տոմսակներ տպել տուաւ եւ ամէն կարգի ազգայնոց ձեռնտուութիւնը խնդրեց իր գեղեցիկ դիտաւորութիւնը առաջ տանելու համար եւ փոքր ի շատէ յաջողեցաւ իր այս ձեռնարկին մէջ*[54]»:

*Ընկերութիւնը քաջալերուած եւ ամէն կողմէ նպաստներ ընդունած է առաջին տարին*[55]: *Սակայն* 1874*ի սկիզբը արդէն քայքայուելու սկսած էր*[56]:

### 6. Ս. ԹԱԴԷՈՍԵԱՆ ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

1875 *Յուլ.* 31 *Թուականով Ընկերութեան Վարչութիւնը կ՚ընէ հետեւեալ դեկոյցը. «Ռ. Հիսարի Ս. Թադէոսեան Վարժարանի Սանուց* նորահաստատ *Ընկերութիւնը պարտք կը համարի իւր շնորհակալութիւնը հրապարակաւ յայտնելու այն Մեծ. անձանց, որք հաճեցան* իւր մանկական քայլերը *նուիրատուութեամբ քաջալերել... Ընկերութիւնս* իւր նպատակին համեմատ *այժմ* գրանոց մը հաստատած է...: *Նա որ* շաբաթական մէկ *բաժնեգին երկու դրուշ կը վճարէ, Ընկերութեանս պաշտպան կը համարուի եւ իրաւունք կ՚ունենայ նաեւ Ընդհ. Ժողովի ներկայ գտնուիլ... իսկ նա, որ շաբաթական* 40 *փարա կը վճարէ Ընկերութեանս՝ մասնակից կ՚ըլ-*

[54] Մասիս, 1874, Թ. 1488:
[55] *Անդ*, 1872, Թ. 1330:
[56] *Անդ*, 1874, Թ. 1488:

յայ Թանգարանին գրքերը առանց վարձքի կարդալու... *ինչպէս մեր սիրտը, նոյնպէս մեր կարողութիւնը* տղայ հասակէն *նուիրելով մեր դժբախտ ազգին՝ կը մնամք միշտ անձնուէր ի դիմաց Ս. Թադէոսեան Սանուց Ընկերութեան*

*Ատենադպիր* *Ատենապետ*

*Երուանդ Զաւուչեան* *Տիգրան Գազազեան*[57]

*Այնպէս կ՚երեւայ որ Ընկերութիւնս կազմուած է* 1875*ի սկիզբը. հիմնադիրներն են Ս. Թադէոսեան վարժարանի Սաները, որոնք նպատակ ունեցած են Գրադարան-Թանգարան մը ունենալ՝ հասարակաց ընթերցումի համար. թէ՛ գրքեր եւ թէ՛ դրամականնուէրներ ստացած են*[58]:

## 7. ԱՐԱՐԱՏԵԱՆ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԻՒՆ (1908)

1908 *Սեպտեմբերին* «Նորակազմ»*է Ռ. Հիսարի* «Արարատեան Ընկերակցութիւն»*ը, որ կը պատրաստուի ներկայացնել* Ս. Սանդուխտ Կոյսը[59]: Թէոդիկ[60] *Ընկերութիւնս* «Արարատ» երկսեռ Ընկերակցութիւն» *կ՚անուանէ եւ կ՚ըսէ որ «Հիմնուած է 1908ին, վերակազմուած 1 Մայիս 1919ին: Նպատակ.* Անդամոց միջեւ ընկերային կապ մը ստեղծելով՝ օգնել եւ օգտուիլ: — *Անդամք* 35. *Վարչ. Խորհուրդ.* Միքայէլ Ալմուխանեան

[57] Օրագիր. 1875, Թ. 1605:
[58] *Անդ.*:
[59] Սուրհանդակ, 1908, Թ. 81:
[60] *Ամէն. Տարեց.* 1921, էջ 300—301:

*(Ատենապետ)*, Հ. Գույֆայեան, Վ. Սարի-մեան, Ե. Մխաճեան, Գ. Կարապետեան, Հ. Պահճէլեան, Յ. Ճիրինեան: — *Մայր Դիւան. Օրիորդներ* Ա. Զամուրեան, Վ. եւ Ե. Կալանիճեան, Զ. Ալմուխանեան»:

## 8. ՈՐԲԱԽՆԱՄ ՄԱՐՄԻՆ (1918)

*Կազմուած է* 1818 *Դեկտ.ին հետեւեալ անձերէն.* Մարտիկ Միսկնեան (*Ատենապետ*), Միհրան Ճէնիզեան (*Ատենադպիր*), Թագւոր Թագւորեան (*Գանձապետ*), Սարգիս Կարապետեան, Սիմոն Զիլինկիրեան, Աւետիս Սրէնչեան, Վահրամ Զէրչեան, Պրոֆ. Կալանիկեան: *Առաջին տարին Միութիւնը* 90 *տղի կը հասնէ ամսական բաժանորդագրութեամբ եւ* 11 *որբ կը զետեղէ Ճիչլիի Որբանոցին մէջ*[61]:

*Միութիւնը քիչ յետոյ 5 որբեր ալ կ'աւելցնէ* 11*ին վրայ*[62]:

## 9. ԿԻՆԵՐՈՒ ՕԺԱՆԴԱԿ ՈՐԲԱԽՆԱՄ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Ո. Հիասրի այրերու կազմած «Որբախնամ Մարմին»ին իբրեւ Օժանդակ՝* 1919 *Յունուարին կը կազմուի* «Կիներու Օժանդակ Որբախնամ Միութիւն»*ը, ունենալով Հետեւեալ Վարչական կազմը. Տիկիններ՝* Ծիածան Ա. Խապէնչեան (*Ատենապետ*), Զարուհի Պաղչէճեան (*Փոխ–Ատենապետ*), Արմենուհի

[61] Ժամանակ, 1919, Թ. 3417:
[62] Ժամանակ, *անդ*, Թ. 3449:

Թիւյսիւզեան (*Փոխ-Ատենադպետ*), Վերժին Ճէնիզեան (*Գանձապետ*), Էֆթիկ Ժամկոչեան, Արաքսի Չէքինեան, Մանուշակ Զամուրեան, *եւ Օրիորդներ*՝ Սաքենիկ եւ Անժէլ Նէմէնինեան (*Անդամներ*)[63]:

*Օժանդակ Միութիւնը 1919 Փետրուարին յանձն կ'առնէ 2 որբերու ծախքը հայթայթել*:

## ՊՈՅԱՃԻՔԻՒՂ

### 1· ԱՆՁՆԱՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Ղալաթիոյ կեդրոնական «Անձնուէր» Ընկերութեան ճիւղ մը բացած է* Պոյաճիգիւղի *Հայութիւնը 1870ին*՝ «տեղւոյն վարժարանին նիւթական պէտքերը մատակարարելու» *համար*: *Ի նպաստ վարժարանին «Տիգրան» անունով թատերախաղ մը կը ներկայացնէ Ընկերութիւնը 1870 Օգոստոսին*[64]:

### 2· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Պոյաճիգիւղի* Ուսումնասիրաց Ընկերութիւնը *հիմնուած է 1879ի սկիզբը*: *Հիմնադիրն է նոյն Գիւղի երիտասարդութիւնը, որ Գիւղի դպրոցին թշուառ վիճակը բարձրացնելու համար միակ դարմանը կը համարի կազմել Մշակութային Ընկերութիւն մը*: *Ըն*–

---

63 *Անդ*:
64 Մամուլ, Կ· Պ· 1870, *էջ* 824: — *Հմմտ*· Մանզ· Էփ· 1870, Թ· 1362:

կերութեան Կանոնագիրը կ՚ըսէ[65]. «Գիւղին երկրագործութիւնը տեսնելով դպրոցին ցաւալի վիճակը, որ պատիւ չէր բերեր գիւղացւոց, ջանաց միութեամբ դարման տանիլ այդմ եւ փութաց կազմել մի Ընկերութիւն, որ նպատակ ունենայ դպրոցին նիւթապէս եւ բարոյապէս նպաստել»:

Ընկերութեան առաջին նիստին, 1879 Մարտ 1ին, ընտրուած է Դիւանը.

| | |
|---|---|
| Կրօն Կիւմիւշեան | Ատենապետ |
| Միհրան Գարփազճեան | Ատենապետ |

եւ Գործադիր Ժողովը.

| | |
|---|---|
| Փիլիպպոս Կէլկէլ | Ատենապետ |
| Պօղոս Աւգէր | Ատենադպիր |
| Տիգրան Գարփազճեան | Գանձապետ |
| Աւետիս Խտարէճեան | Համարակալ |
| Յակոբ Գազազպաչեան | Անդամ |

1880 Մայիսին կ՚ընտրուի երկրորդ շրջանի Գործադիր Ժողովը.

| | |
|---|---|
| Պօղոս Կէլկէլեան | Ատենապետ |
| Հրանտ Ասատուր | Ատենադպիր |
| Կարապետ Կարագեան | Կնքապահ |
| Միհրան Գարփազճեան | Դեր–Ատենապետ |
| Միհրան Գօլօլեան | Խորհրդական |
| Պօղոս Աւգեր | Համարակալ |
| Տիգրան Գարփազճեան | Գանձապետ |

---

[65] Ուսումնասիրաց Ընկերութիւն Պօյաճի Գիւղի, Կ. Պ. 1880, էջ 7:

Ընկերութեան Կանոնագիրը ունի 19 Յօդուած, հրատարակուած առանձին գրքոյկով մը՝ 1880ին Կ. Պ., ուր կը տեսնուի նաեւ Ընկերութեան մէկ տարուան ընթացքին ունեցած գործունէութիւնը, հաշուեկշիռը, անդամներու եւ նուիրատուներու ցանկը:

Նմոյշ մը Կանոնագրի Յօդուածներէն. «Գործադիր Ժողովոյ հաւանութեամբ ընկեր կ'ընդունուի երկու սեռէ ամեն հայ (Յօդուած Ա.). Անձնիւր ընկեր պարտի վճարել առնուազն ամսական մէկ բաժնեգին, որ է մէկ արծաթ դահեկան (Յօդ. Բ.). Ո եւ է ընկեր մէկ բաժնէ աւելի կրնայ գրուիլ, բայց Ժողովոյ մէջ մէկ քուէ ունի (Յօդ. Գ.). Ընդհ. Ժողովն իր նիստերուն մէջ կը կատարէ Ընկերութեան վերաբերեալ ընտրական, օրէնսդրական եւ համարատու գործողութիւններն (Յօդ. Է.). Ընդհ. Ժողովն իրաւունք ունի պաշտօնանկ ընել իր պաշտօնեաներն, որոնցմէ գոհ չէ» (Յօդ. ԺԷ.)[66]:

Ընկերութիւնը, թաղականութեան հետ կնքած պայմանագրով մը, Պոյաճիգիւղի Երից Մանկանց վարժարանի Հոգաբարձութիւնը իր վրայ կ'առնէ 4 տարուան համար: Հոգաբարձութեան անդամ կ'ընտրուին. Հրանտ Ասատուր, Յակոբ Գազազպաշեան եւ Միհրան Գալփագճեան. վերջինս կ'ըլլայ դպրոցի Տնօրէն[67]:

---

66 Ուսումնասիրաց Ընկերութիւն, անդ, էջ 3—4:
67 Տե՛ս Ուսումնասիրաց Ընկերութիւն, անդ, էջ 6—12:

### 3. ՀԱՅ-ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

*Պոյաճիգիւղի Երից Մանկանց վարժարանի երկսեռ ուսանողները* 1880*ի Յունուարին* «իւրեանց աղքատիկ ընկերաց գրական պիտոյք հոգալու *համար* Սանուց Ընկերութիւն *մը կազմեր եւ վարժարանին Թանգարանը ճոխացնելու միջոցներ ձեռք առեր են*», *կը գրէ* Հայրենիք[68] 1881 *Յունուար* 10*ին*:

1883 *Յունուարին Ընկերութեան Գործ. Ժողովի Դիւանի անձերը ըսելէ յետոյ թէ «Հայ—Սանուց Ընկերութիւնը» Պոյաճիգիւղի վարժարանի պատանիներէն կազմուած է* երեք տարի առաջ՝ *կ'իմացնեն թէ Ընկերութիւնը վիճակահանութեան մը ձեռնարկեր է «ի յառաջադիմութիւն Ընկերութեան», որուն նիւթերը «Գիւղին Ազգասէր Օրիորդաց ձեռագործներն են, զորս հաճեցան նուիրել ի նպաստ Ընկերութեան»: Ընկերութեան Ատենապետն է*՝ Գառնիկ Մանուէլեան, *Ատենադպիրը*՝ Լեւոն Ճ. Գալփագճեան[69]:

### 4. ՀԱՅ ՅԱՌԱՋԴԻՄԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ (1913)

*Հիմնուած է* 1913*ին* 16 *տարեկանէ վար պատանիներէ: Նպատակն է պատանիները զարգացնել բարոյապէս, Ֆիզիքապէս եւ մտաւորապէս*[70]:

---

68 *Թ.* 643:

69 Թէրճիւմանը Էֆքեար, 1883, *Թ.* 1638:

70 Մարմնամարզ, *Կ. Պ.* 1913, *էջ* 168: — *Տես նաեւ* Ժողովուրդի Ձայնը, 1921, *Թ.* 788:

## 1. ՏԱՐՕՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

Սրբենիայի *միակ Մշակ. Ընկերութիւնն է* «Տարօնեան Ընկերութիւն»*ը, որ կազմուած է նախաձեռնութեամբ* Խորէն քահ. Փէհլիվանեան*ի, որ կը գրէ 1872 Նոյ. 16ին. «Մինչդեռ Պոլսոյ քանի մը շրջակայ գիւղօրէից մէջ գտնուած ազգային վարժարաններու առատութեան վիճակը չէր մեզ անծանօթ եւ ահա մօտերս* Սրբենիայի *ազգային վարժարանի ցաւալի կացութեանն ականատես ըլլալով չկրցայ հանդուրժել եւ Գիւղին Թաղ. Խորհրդոյ ուշադրութիւնը հրաւիրել փութացինք...* հարկ եղաւ առաջարկել Ընկերութիւն մը կազմելու... 15 *Հոկտեմբեր ի ներկայութեան մեր, Թաղ. Խորհրդին եւ յառաջադիմական թաղեցւոց կազմուեցաւ* Տարօնեան *անուն* Ընկերութիւնն *եւ նորա Գործադիր Մասնաժողովը, որոյ նպատակն է եւ պիտի ըլլայ միշտ* Սրբենիայի ազգային դպրոցին նիւթական եւ բարոյական մատակարարութեանը հոգ տանիլ եւ անոր յառաջատութեանը համար փոքր եկամուտ մ'ալ աւելցնելու ջանալ...: Ի դիմաց Գործադիր Մասնաժողով Տարօնեան Ընկերութեան՝ Ատենապետ՝ Խորէն քահանայ Փէհլիվանեան[71]»:

*Հետեւաբար սխալ է Ընկերութեանս* հիմնադրութեան տարի *նշանակել* 1873[72]:

---

[71] Մասիս, 1872, Թ. 1317:

[72] *Պատմութիւն Տարեգիրք*, Գ., *էջ* 113:

Ընկերութիւնը ունեցած է իրեն յատուկ կանոն մը. դանձանակ պտտցնելով՝ «շաբաթը անգամ մը քսան փարա նուէր հաւաքել», իր նպատակին հասնելու համար[73]:

Ընկերութեան Գործադիր ժողովի անդամներն են.

Խորէն քահ. Փէհլիվանեան — Ատենապետ
Յովհաննէս Բարսեղեան — Ատենադպիր
Արիստակէս քահանայ
Սարգիս Օնպաշի (Մշեցի)
Յարութիւն Օնպաշի (Մշեցի)
Համբարձում[74]:

Ընկերութիւնը կրցած է ունենալ 20 փարա վճարող 250 բաժանորդ[75]:

ԵԷՆԻԳԻԻՂ

1. ՍՐԲՈՒՀԻՈՅ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ
(1844—1845)

Իզմիրահայ թերթը արդէն 1845 Մայիսին կ'իմացնէր թէ Պոլսոյ մէջ հաստատուած են շատ մը Ընկերութիւններ Թաղերու եւ Գիւղերու հայ վարժարանները նպաստելու համար[76], եւ քիչ յետոյ անուններով կը յիշէ 9 Ընկերութիւն, որոնց մէջ է նաեւ «Ընկե-

---

[73] Ասիա, Կ. Պ. 1872, էջ 52—53:
[74] Մասիս, 1873, Թ. 1412: — Գաղ. Տարեգ., Գ., էջ 113: — Մանզ. էփ., 1873, Թ. 2261:
[75] Գաղ. Տար., Գ., անդ:
[76] Հմմտ. Արշալոյս Արարատեան, Զմիւռնիա 1845, Թ. 233:

բութիւն Սրբուհւոյ Աստուածածնի ի Նոր-գիւղն[77]» :

Արշալոյս Արարատեան *մեր միակ աղբիւրն ըլլալով՝ կարելի չէ ճշդել Ընկերութեանս հիմնումի թուականը : Սակայն նկատի ունենալով որ հայ Ընկերութիւնները*, սովորաբար, *ուշ կ՚իմացնեն իրենց հիմնումը եւ Պոլսոյ Ընկերութեան մը հիմնումը Իզմիր իմացնելու համար ալ որոշ ժամանակ մը կը պահանջուի՝ հաւանական կը համարինք որ Նորգիւղի այս Ընկերութիւնը աւելի 1844ին հիմնուած ըլլայ, քան 1845ին :*

*Ա. Ալպօյաճեանի անծանօթ է Ընկերութիւնս :*

2. ... ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

*Պոլսոյ Եէնիքէօյի երկրորդ Ընկերութիւնը կրնայ 1864 Փետրուարին հիմնուած ըլլալ, սակայն իր* անունը *կը մնայ մեզ անծանօթ :*

*Ընկերութիւնը հիմնուած է Գիւղին* Վարդանեան *վարժարանի փակումի վտանգին առթիւ : Ընկերութեան Գանձապետը՝* Ստեփան Մ. Գօմպօրեանց 1864 *Փետր. 19ին նամակ մը թէ՛* Մասիսին *եւ թէ՛* Ժամանակին *ուղղելով՝ կ՚ըսէ. «Նոր-Գիւղի աղքատիկ մանկանց կրթութեան համար* Վարդանեան վարժարանը... ցցուելու տխուր կարեւորութիւնը տեսնուած էր... : *Գիւղին բնակիչները իգութ*

---

[77] *Անդ*, *Թ*. 235 :

*չարժելով ազգասիրաբար* առժամանակեայ կերպով Ընկերութիւն մը կազմեցին, դպրոցիս պէտք եղած հոգ ու խնամքը կրելու համար… Ընկերութիւնս որոշեց ստորագրութիւն մը բանալ եւ փոքրիկ գումար մը ժողվել, որուն անխախտ եկամուտովը դպրոցս խելացի Հոգաբարձութեամբ մատակարարել… *Գանձապետ* Ընկերութեանս՝ *Ստեփան Մ. Գոմպօրեանց*[78]»:

*Թորգոմեանի*[79] *անծանօթ է Ենիգիւղի* Վարդանեան *վարժարանի անունը. ան կը յիշէ* Մամիկոնեան *վարժարան*:

## ՊԷՕՅԻՒՔՏԷՐԷ

### 1. ԱԶԳԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1881)

*Հիմնուած է* 1881*ի սկիզբները*՝ «դպրոցին եւ եկեղեցւոյն նպաստելու նպատակաւ[80]»: *Ուրիշ տեղեկութիւն չունինք: Անծանօթ է Ալպօյաճեանի*:

### 2. ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Կազմուած է* 1908*ին՝ նպաստելու համար տեղւոյն վարժարանին*[81]: ժամանակ[82] *կը գրէ. «Պէօյիւքտէրէի* Բարեգործական Ընկերութիւնը, *որ* Սահմանադրութենէն ի վեր *Գիւղին* Ս. Հռիփսիմեանց վարժարանին Հո–

---

[78] ժամանակ, 1864, *էջ* 39—40: — Մասիս, 1864, *թ.* 628:
[79] *Երեմ. Չէլէպ.*, *Բ.*, *էջ* 703:
[80] Մասիս, 1881, *թ.* 2978 *Օղոստ.*:
[81] ժամանակ, 1909, *թ.* 263. 1918, *թ.* 3387:
[82] 1913, *թ.* 1540:

գաբարձութեան դերըստանձնած է, *մեծապէս կ'աշխատի յիշեալ կրթական յարկին զարգացման: Անցած տարի արդէն երկու չրջանաւարտ ունեցած է»*:

3· ԵՐԱԺՇՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1918 ?)

*Հոփիսիմեանց Եկեղեցւոյ Միութիւնն է. Հիմնադիրներէն կը յիշուի Տէր Անանիա քհնյ. Պալեան, բայց հիմնումի տարի՞ն* (*Հմմտ.* Ժամանակ, 1954, *Թ*. 16·940):

4· ԴՊՐԱՑ ԴԱՍ ՄԻՈՒԹԻՒՆ (1944)

*Տասնամեակը հանդիսական պատարագով կը խմբեն* (*Հմմտ.* Ժամանակ, 1954, *Թ*. 16·938):

## ՍԱՐԸԵԱՐ–ԵԷՆԻՄԱՀԱԼԼԷ

1· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1907)

*Ընկերութիւնս հիմնուած է* 1907 *Նոյեմբերին, նկատի ունենալով որ* 1908 *Փետր.* 25*ին առաջին* եռամսեայ *չրջանը բոլորած է*[83]: *Ունեցած է իր կանոնագիրը*[84]:

2· ԱԶԳԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Թատերական Ընկերութիւն մ'է Սարըեար–Եէնիմահալլէի* «Ազգասիրաց Ընկերութիւն»*ը, հիմնուած* 1908*ին*: 1908 *Սեպտ.ին «Նորակազմ» է եւ երկրորդ ներկայացումը կու տայ* Բազար Պաշըի *ամառնային Թատրոնի մէջ*[85]:

---

[83] Ժամանակ, 1908, *Թ*. 111:
[84] *Անդ*, 1909, *Թ*. 263:
[85] Սուրհանդակ, 1908, *Թ*. 79:

# ՊԷՅՔՕԶ

## 1. ԲԱՐԵՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1859)

*Ընկերութիւնս կը յիշէ Ա. Ալպօյաճեան, գրելով* «Բարեսիրական Ընկերութիւն (1859...) *հաստատուած* Պէյքօզ թաղին *մէջ*, հաւանօրէն կրթական նպատակով»[86]:

*Ուրիշ ոչ մէկ ակնարկութեան հանդիպած ենք*:

## 2. ՇԱՀԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870—1871)

*Կը յիշուի լոկ ստորագրութեան մը տակ* 1871 *փետր. 6ին իր Ատենապետէն՝* Ս. Յարութիւնեան, *եւ Ատենադպիրէն՝* Յոհաննէս Պօղոսեան[87], *որոնք ըսելով թէ Պէյքօզի վարժարանին մէջ տօնուած է Վարդանանց տօնը՝ ոչ մէկ տեղեկութիւն կու տան իրենց Ընկերութեան մասին*:

*Անծանօթ է Ալպօյաճեանի*:

## 3. ԴՊՐՈՑԱՍԷ՞Ր ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

*Պէյքօզի մէջ մանչերու ազգային վարժարան մը կար* 1871*ին եւ* Աբրահամ Պէյ Երամեան *զայն իւր պաշտպանութեան տակ առած էր*: Աղջկանց վարժարան *մ'ալ բանալու համար Ընկերութիւն մը կը կազմուի* 1871*ին, որ կը յաջողի Հոկտ.* 31*ին բանալ աղջկանց վարժարանը*[88]:

---

86 *Գաղութ. Տարեգ.*, *Բ.*, *էջ* 80:
87 Օրագիր, 1871, *թ.* 372:
88 Անդ, 1871, *թ.* 594: — Մանզ. Էփ., 1871, *թ.* 1754:

Ի՞նչ էր այդ Ընկերութեան անունը։ — Ոչ մէկ յիշատակութիւն։

Թորգոմեան[89] կը յիշէ Պէյքոզի մէջ «երբեմն» հիմնուած «Դպրոցասէր» Ընկերութիւն մը։ Օրագրի մէջ յիշուած Ընկերութիւնը Թորգոմեանի «Դպրոցասէ՞րն» է։ — Չունինք լուսաբանութիւն մը։

### 4. ԴՊՐՈՑԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (?)

Թորգոմեանէ յիշուած՝ առանց որեւէ ստուգումի[90]։

## ԳԱՆՏԻԼԼԻ

### 1. Ս. ԱՌԱՔԵԼՈՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1844—1845)

Արշալոյս Արարատեան[91] 1845 Յունիսին յիշած է Գանտիլլիի մէջ գոյութիւն ունեցող «Ս. Առաքելոց Ընկերութիւն»ը, որ հաւանօրէն 1844—1845ին հիմնուած էր։

Ա. Ալպօյաճեան[92] Գանտիլլիի այս Ընկերութիւնը սխալմամբ «Ստեփանոսեան» կոչած է[93]։

Ընկերութիւնս կարեւոր դեր ունեցած պիտի ըլլայ Գանտիլլիի «Ս. Երկոտասան Առաքելոց» եկեղեցւոյն եւ համանուն դպրոցին շինութեան մէջ[94]։

---

89 Երեմ. Չէլէպ., Գ., էջ 6։
90 Անդ։
91 Զմիւռնիա 1845, Թ. 235։
92 Գաղ. Տարեգ., Ա., էջ 54։
93 Հմմտ. Ընդ. Օրացոյց, 1901, էջ 231։
94 Տես Ա. Պէրպէրեան, Պատմ., էջ 318 եւ Հայաստան, 1846 Սեպտ. 22։

# ԳՈՒԶԿՈՒՆՃՈՒՔ

## 1. ԼՈՒՍԱՒՈՐՉԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1853)

*Ընկերութիւնս յիշուած է* Մասիսի *մէջ*[95], *ուր կ'ըսուի թէ Գուզկունճուքի* Լուսաւորչեան *վարժարանը* 1853*ին շինած եւ նոյն տարւոյ Դեկտ. 1ին բացած է «եւ կը կառավարվի* համանուն բաժանորդական Ընկերութեան ձեռօք, *որուն նախագահն է* Այվատեան *Յարգոյապատիւ* Յօհաննէս *աղան»*:

*Ընկերութեանս հիմնումը կրնայ* 1853*էն առաջ ալ ըլլալ,*

«Լուսաւորչական Ընկերութիւն»*ը կանգուն էր տակաւին* 1871*ին*[96]:

*Անծանօթ է Թորգոմեանի եւ Ալպօյաճեանի*:

## 2. ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

*Ա. Ալպօյաճեան կը գրէ.* «Հայկական Ընկերութիւն (1862—1866) *կազմուած Գուզկունճուքի հայ երիտասարդներուն կողմէ: Չորս տարի Ս. Լուսաւորչեան վարժարանի սրահին մէջ թատերական ներկայացումներ տուին*[97]»:

*Ինչպէս կ'երեւայ՝ թատերական Ընկերութիւն մ'է «Հայկական»ը, որուն վրայ ուրիշ տեղէ որեւէ լուսաբանութիւն չենք գտած*:

---

[95] 1855, Թ. 206:
[96] Ծիածան, 1871, Թ. 35 եւ 39:
[97] Գաղ. Տարեգ., Բ., էջ 84:

3· ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

«Հայրենասիրաց Ընկերութիւն»ը *հիմնուած է 1871 Յունուար 10ին: Հիմնադիրներն են «Գաւառացի եւ Պոլսեցի բաւական երիտասարդներ»: Նպատակը՝* «Կիլիկիոյ սահմանները դպրոց մը բանալ, *այն սահմանները*, ուր երբեմն մեր հռչակաւոր նախահարց որրան եւ կենաց ոգին էր, *եւ այսօր* թշուառութեան եւ խաւարակուռ տգիտութեան սոսկալի գերեզման դարձած է»: 1871 *Ապրիլին Ընկերութիւնը 40 անդամ ունէր: Իր Վարչութիւնը կը կազմէին.*

*Պ. Կ. Խաչիկեան Ատենապետ*
*Տ. Մ. Քարամանեան Ատենադպիր*[98]

*Ընկերութիւնս անծանօթ մնացած է Ալպօյաճեանի:*

## ՍԿԻՒՏԱՐ

Սկիւտար *մեծ թաղը ունի* երեք *ենթաթաղեր.* Սելամիէ (Սելամսըզ, Ս. Խաչ), Նէնիմահալլէ (Ս. Կարապետ) *եւ* Ինատիէ, *որոնք թէեւ զատ զատ թաղեր են, սակայն ընդհանրապէս «Իւսկիւտար» ալ կը կոչուին: Հայ Մշակոյթ. Ընկերութիւններու մեր հաւաքածոյին մէջ գիտեցինք որ կան Ընկերութիւններ, որոնք չեշտուած կերպով վերի երեք թաղերէն մէկուն կամ մէկալին կը վերաբերին: Բայց կան կարգ մը Ընկերութիւն–*

---

[98] Մասիս, 1871, թ. 1073: — *Տես նաեւ* Օրագիր, 1871, թ. 417: — Ծիածան, 1871, թ. 3, 35, 39: — Հայրենիք 1871, թ. 44:

ներ ալ, որոնք որքան ալ «Իսկիւտար»ի մէջ կազմուած են, սակայն յիշեալ 3 թաղերէն ոչ մէկուն կրնան յատկացուիլ: Աւելի ճիշդը՝ կա՛մ անորոշ մնացած են եւ կամ երեք միացեալ թաղերու ընկերութիւններ են:

Այս պարագային լաւագոյն կը համարինք Սկիւտարի անորոշ կամ միացեալ թաղերու ընկերութիւնները զետեղել Սկիւտարի մեծագոյն թաղի՝ Սելամիէի ընկերութիւններու մէջ:

## ՍԵԼԱՄԻԷ (ՍԵԼԱՄՍԸԶ, Ս. ԽԱՉ)

### 1. ԴՊՐԱՑ ԴԱՍ (1710)

Սելամիէ թաղի Ս. Խաչ եկեղեցւոյ Դպրաց Դասի ծագումը 1710էն է: Հնագոյն դպրապետն եղած է Տիրացու Գալուստ (1765—1780), որուն յաջորդներու անուն-ները պահուած են[1]:

Նամակագիր մը[2] 1874ին կը տեղեկացնէ որ Սելամիէի «դպրապետութեան մնտուկը տարին առնուազն 15—20 հազար ղրուշ կը մտնէ. ունի իրեն յատուկ կալուած ալ եւ այս հասոյթներով վարժարանին երաժշտութեան դասատուին եւ եկեղեցւոյ մէկ պաշտօնակալէն եւ ուրիշ պիտոյք մատակարարելէն զատ, ամէն տարի վարժարանին ազ-[illegible] [illegible]րոց ալ հանդերձ կը շինուի»:

---

[1] Տես Հմայեակ քահ. Էքսէրճեան, Ցիշատակարան հնգեակ յոբելեանի Ս. Խաչ եկեղեցւոյ Սկիւտարու, Կ. Պ. 1927, էջ 57—58:

[2] Փունջ, 1874, Թ. 926:

1875ին Դպրաց Հոգաբարձութեան անդամներ՝ Մ. Ջօլագեան, Խաչատուր Նարինեան եւ Մ. Բիրինճեան երկու տարուան հաշիւը ներկայացնելով՝ կը տեսնուի որ 2 տարուան մէջ Ընկերութիւնը ունեցած է 39,907 ղրուշի Մուտք[3]:

Ս. Խաչի Դպրաց Դասը 1922ին 212 ամեակը տօնած է հանդիսական Պատարագով մը[4]:

## 2. ԽՆԱՄԱՏԱՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1846)

Սկիւտարի Ս. Խաչ Թաղի «Խնամատար Ընկերութիւն»ը կը յիշէ Հայաստան[5] 1846 Դեկտ.ի սկիզբը, դպրոցական քննութեան մը առթիւ, որուն ներկայ եղած են նաեւ «Նոյն դպրատան ջանասէր Ընկերութեան ազնիւ անդամք եւ հոգաբարձուք»:

Ատկէ 6 ամիս յետոյ Սկիւտարի վարժարանի քննութեան առթիւ եղած թղթակցութեան մը մէջ ալ կ'ըսուի. «Յիշեալ դպրատան բարեկարգ յառաջադիմութեանը վրայ ուրախ ըլլալով ներկայ գտնուող ամէն յարգելիները՝ իրենց մտերիմ շնորհակալեաց հաւաստիքը մատուցեր են նոյն վարժարանին Խնամատար Ընկերութեանը, անոր տնօրէն Տէր Յովհաննէս աւագ քահանային եւ

[3] Մասիս, 1875, թ. 1660: — Հայրենիք, 1875, թ. 241:
[4] Ժողովուրդի Ձայնը, 1922, թ. 1093:
[5] 1846, թ. 24:

մանաւանդ Փիշմիշեան ազնուամեծար Նշան աղային[6]»:

Նշան Փիշմիշեան, որ Ընկերութեան Ատենապետն եղած է, շատ աշխատած է Ընկերութեան եւ դպրոցի յառաջդիմութեան: Տակաւին 1852ին քանի մը դպրոցասէրներու հետ գլուխ է Ընկերութեան եւ տարած ջանքերով ապահոված է Ս. Խաչի վարժարանին ծախքերու վճարումը, մանաւանդ որ մինչեւ 12,000 զրուշ նուիրողներ եղած են[7]:

Ինչպէս կը տեսնուի՝ Ընկերութիւնը ո՛չ թէ մինչեւ 1849 տեւած է[8], այլ 1852ին ալ կանգուն եւ գործօն է: Ընկերութեան տարեկան անդամավճարն էր 60 զրուշ[9]:

### 3. Ս. ԽԱՉԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1852)

Սելամիէ թաղի «Ս. Խաչի Ընկերութիւն»ը հիմնուած է 1852ին: Առաջին յիշատակութիւնը գտած ենք Նոյեան Աղաւնիի քով[10]: Մասիսի[11] մէջ կ՚ըսուի որ Իւսկիւտարի դպրոցի «Ս. Խաչի Ընկերութեան Վարչութիւնը դպրոցի յառաջդիմութեան համար կարեւոր միջոցները սկզբնաւորել» վերջ՝ ձեռք կը զարնէ ուրիշ միջոցի մ՚ալ, այն է՝ վինակահանութեան: Ընկերութիւնը կը հանէ 4000 տոմսակ, իւրաքանչիւրը 25 զուրուշէն:

---

[6] Արշ. Արարատեան, 1847, Թ. 285:
[7] Նոյեան Աղաւնի, 1852, Թ. 43:
[8] Գաղ. Տարեգ., Ա., էջ 55:
[9] Նոյեան Աղաւնի, անդ:
[10] 1852, Թ. 43:
[11] 1853, Թ. 52:

Գումարը կ՚ըլլայ 100,000 ղրշ.: Շահող տոմսակները 4 հատ պիտի ըլլան. 25,000, 12,000, 7,500 եւ 5000 ղրշ., գումար՝ 50,000: Բոլոր տոմսակները ծախուելէ վերջ՝ 50,000 ղուրուշի վիճակահանութիւն պիտի ըլլայ, իսկ միւս 50,000 ղուրուշը պիտի մնայ Ընկերութեան[12]: Արդիւնքը անծանօթ է մեզ: Ընկերութեան տարեկան բաժանորդագինն էր 250, 125 եւ 62½ ղուրուշ:

## 4. ԱՐԱՐԱՏԵԱՆ ՄԵՂՈՒԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1854)

Ընկերութեանս հիմնադրութեան մասին կը գրէ Արծուի Վասպուրականը, որ Պոլիս կը տպուէր տակաւին. «Իւսկիւտարու Ս. Խաչ Եկեղեցւոյ ուսումնասէր ժողովուրդը իբր մէկ տարի յառաջ՝ Ընկերութիւն մը հաստատեր են իրենց մէջը, որ կըսուի «Արարատեան Մեղուաց Ընկերութիւն»[13]: Ընկերութեան նպատակն եղած է Ս. Խաչի թաղային վարժարանին նպաստել[14]:

Սկիւտարի Ս. Խաչի վարժարանին 10 տարիէ ի վեր ըրած յառաջդիմութիւնը չեշտելէ վերջ՝ կը գրէ հայ թերթ մը. «Բայց ժամանակէ մը ի վեր իրենց գովելի ջանքը կրկնապատկեցին՝ Նոր Ընկերութիւն մը հաստատելով Արարատեան Մեղուաց անուամբ,

---

12 Տես նաեւ Նոյեան Աղաւնի, 1853, Թ. 44:

13 Արծուի Վասպուրական, Կ. Պ. 1855, Թ. 4, էջ 53:

14 Անդ, էջ 57:

որուն Նախագահ եղած է Մեծ. Փիշմիշեան Նշան աղայն[15]»:

Ընկերութեան 1856 Յունուար 22ին Յակոբ Պատրիարքին գրած մէկ նամակին վրայ կը տեսնուի Ընկերութեան ինքնայատուկ կնիքը:

Ինչպէս կը տեղեկացնէ Արամ Անտոնեան[16], կնիքը բնական մեծութեամբ է. արտաքին երկու օղակները սեւ յատակով. գրերը եւ աստղերը սպիտակ. մէջտեղի շրջանակը սպիտակ յատակ ունի եւ միայն Ժ տառը սեւ է:

«Ժ» տառը՝ Արարատեան մեղուներու աշխատանքի ծրութիւնը կը խորհրդանշէ:

5. ԲԱԺԱՆՈՐԴԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1858)

Սելամիէի Բաժանորդական Ընկերութիւնը հիմնուած է 1858 Նոյ. 23ին: Ունի կանոնագիր մը, որ 20 Յօդուածներէ կազմուած է եւ հետեւեալ տեղեկութիւնները կու տայ Ընկերութեան մասին.

Յօդ. Ա. Այս Ընկերութեան նպատակն է քսանը հինգ մանչ ու քսանը հինգ աղջիկ, Լուսաւորչեան Հայ, վկայեալ աղքատ տղաք ձրիապէս դաստիարակել, մասնաւոր գիշե–

[15] Մասիս, 1855, Թ. 191, Սեպտ.:
[16] Թորգոմեան, Երեմ. Չէլէպ., Գ., էջ 274:

բօթիկ դպրոց հաստատելով, երկու սեռին համար:

*Յօդ. Բ. Ընկերութիւնը այս նպատակին հասնելու համար բաժանորդութեամբ ստակ պիտի ժողովէ* մինչեւ հինգ տարի *եւ հետզհետէ ժողովուած ստակը շահեցնելով, ըստ եօթներորդ յօդուածին, երբոր եկամուտը դպրոցին հաստատութեանը ու ծախուցը բաւելու ըլլայ, այն ատեն միայն դպրոցը պիտի բանայ:*

*Յօդ. Ե. Մէկ բաժինը տարին հինգ ղուրուշ է:*

*Յօդ. Է. Ընկերութիւնը հետզհետէ ժողվուած ստակով շահաւէտ կալուածներ պիտի գնէ, այսինքն՝ հող, քարուկիր եւ փայտէ շէնքեր, որոնց եկամուտը նորէն հաւաքուած ստակին հետ մէկտեղ բերելով, վերստին կալուած գնելու պիտի յատկացնէ:*

*Յօդ. Թ. Ընկերութիւնը* քսան հոգիէ *կը բաղկանայ.* այս թիւը ո՛չ կ'աւելնայ, ո՛չ կը պակսի:

*Յօդ. ԺԹ. Ընկերութիւնը կնիք մը ունի* երեք կտորէ *բաղկացած, որոնցմէ մէկը պիտի մնայ նախագահին քով, երկրորդը գանձապետաց, երրորդը Ընկերութեան խորհրդական անդամներուն քով*[17]:

---

17 Մասիս, 1859, Թ. 396:

Ընկերութեան հիմնադիր 20 անձերն են.

| | |
|---|---|
| Գրիգոր Օտեան | Նախագահ |
| Յովհաննէս Մարգարեան | Փոխ-Նախագահ |
| Գարեգին Փափազեան | Ա. Ատենադպիր |
| Եղիազար Մ. Հ. Զայեան | Բ. Ատենադպիր |
| Նշան Օտեան | Գանձապետ |
| Յարութիւն Սարուխանեան | Գանձապետ |
| Մեսրովպ Այվատեան | Գանձապետ |
| Թէոփիլէ Մաղաքեան | Գործակալ |
| Մկրտիչ Աղաթօն | |
| Կարապետ Աճէմեան | |
| Տիգրան Եուսուֆեան | |
| Օքսենտիոս Շահանեան | |
| Եղիազար Ա. Զայեան | |
| Թովմաս Զայեան | |
| Յակոբ Պէյլէրեան | |
| Գրիգոր Պէօրէքճեան | |
| Աբրահամ Սաքայեան | |
| Գէորգ Սթիմարաճեան | |
| Յովհաննէս Վարդանեան | |
| Տիգրան Փեշտիմալճեան[18] | |

Մեղու[19] կը գրէ. «Այս Ընկերութիւնը Ազգային Գերագոյն Ժողովին գիտութեամբն ու հաւանութեամբը իր գործը սկսած օրէն, իսկոյն ամէն իմաստուն եւ ազգասէր անձանց համակրութիւնը վայելեց եւ մինչեւ անգամ բարձրապատիւ Մ. Լօռու Մելիքեան

[18] Մեղու, Կ. Պ. 1858, էջ 130:
[19] Անդ, էջ 123:

զօրապետը իր գործակցութիւնը նուիրեց այս բարենպատակ գործին՝ *Ռուսիոյ Հայոց բա*ժանորդագրութեան *աշխատութիւնը իր վրայ առնելով ու մեծ յոյս եւ քաջալերութիւն տալով Ընկերութեան: Արդէն քանի քանի անձինք երեւան ելան, իրենց հարստութենէն մաս մը կտակ ընելու այս Ընկերութեան»:*

Մէնմուայը Հավատիսի խմբագիր *եւ Հայ Կաթողիկէ Համարակութեան աչքառու դէմքերէն մին՝* Յովսէփ Վարդանեան (*Վարդան Փաշա*) *գովելով Ընկերութեանս ազգասիրական ծրագիրը՝ կը շեշտէ. «...անանկ եղանակ մը մտածեր են որ յիրաւի Ազգին մանկտւոյն խնկական ու մշտնջենաւոր կրթութիւն ու դաստիարակութիւն կը խոստանան: Այս եղանակն է* Ազգը Ազգով կրթել[20]»:

Գէորգ Պատրիարք *մասնաւոր Կոնդակով մը կը հրաւիրէ ժողովուրդը՝ ձեռնտու ըլլալ Ընկերութեան. ամէն մէկ թաղէ քահանայ մը կը նշանակէ՝ հանգանակութիւն ընելու համար[21]. Թաղերու մէջ հանգանակութիւն ընելու համար աշխարհականներ ալ նշանակուած էին[22]:*

*Ընկերութեանս մասին յաջորդ* 6—7 *տարիներէն տեղեկութիւն չենք գտած:* 1866 *Օգոստոսին* Փնջիկ *կը գրէ. «Քանի՛ քանի՛ անգամ հրապարակաւ ակնարկութիւններ*

[20] Մէնմ. Հավատիս, 1859, *Թ*. 303: — *Հմմտ.* Մեղու, 1859, *էջ* 145—146:

[21] *Գաղ. Տարեգ.*, *Բ.*, *էջ* 88:

[22] Մեղու, 1858, *էջ* 131:

*եղան Բարեգործական եւ* Բաժանորդական *Ընկերութեանց համար, բայց ո՛չ երբեք պարտուպատշաճ ուշադրութիւն մը տեսնուեցաւ: Այս Ընկերութեանց նպատակները երբ ծանուցան, ո՞վ սատակ տուաւ. չէ՞ որ ժողովուրդը բացաւ իւր քսակը եւ չզլացաւ ինչ որ կրնար եւ թերեւս ինչ որ չէր կրնար… Ո՞ւր են Բարեգործական ու* Բաժանորդական *Ընկերութեանց* հաւաքած ստակները. ազգին ո՞ր գործին համար կը ծառայեն, որո՞նց ձեռքն է, ո՞րչափ է, պէտք չէ՞ որ այս ամէնը ազգը…: *Բայց, ինչ որ ալ ըլլայ, գիտենք մեք եւ չատերն ալ գիտեն հիմա թէ այս Ընկերութիւնները* խափանուած *են*[23]»:

*Ինչպէս կը տեսնուի՝ Ընկերութիւնը* իր նպատակը չէ գործադրած *տակաւին* 1866*ին եւ* խափանուած է: *Զ՚ըսուիր թէ* կազմալուծուած *կամ* քայքայուած *է, այլ՝ հաւանօրէն* արգելք դրուած է:

*Այպօյաճեան*[24] *կը գրէ որ* «1866*ին Բեբայի մէջ կը բացուի* Հայկազեան վարժարան *մը* գիշերօթիկ, հաւանօրէն այս Ընկերութեան ջանքերով, սակայն նոյն իսկ տարին չի կրնար քոլորել»:

*Ըստ մեզ հաւանական չէ որ Ընկերութիւնը* 1866*ին գիշերօթիկ վարժարան մը բացած ըլլայ, երբ այդ տարին* խափանուած էր, *կ՚ըսուի, եւ հայ* ժամանակակից *թերթերը*

[23] Փունջ Օրաթերթ, 1866, Թ. 7:
[24] Գաղ. Տարեգիրք, Բ., էջ 80:

*չէին կրնար չգիտնալ բացուած ըլլալը, երբ նկատի ունենանք թէ թերթերը* կը հետապնդէին *Ընկերութեան շարժումները։ Մեր կարծիքը հաստատելու համար ունինք աւելի շօշափելի ապացոյց մը։*

1874*ին* Մամուլ *հրապարակաւ* հաշիւ պահանջելով *Ընկերութենէն՝ կը գրէ. «*1860*էն ի ՎԵՐ, որ Ընկերութեան ԽԱՓԱՆՄԱՆ ԹՈՒԱԿԱՆՆ է, ցարդ Բաժանորդական Ընկերութիւնն իր հաշիւներն ինքնին չներկայացոյց ազգային Վարչութեան»։*

*Ուրեմն՝* 1860*ին, Ընկերութեան հիմնարկութենէն* երկու տարի ետքն արդէն, *Ընկերութիւնը* խափանուած եւ անգործութեան դատապարտուած էր։ *Անշուշտ Պետութենէն։ Հետեւաբար* չէր կրնար *Ընկերութիւնը* 1866*ին* գիշերօթիկ վարժարան *բանալ։*

Մամուլ*ի հաշուով Բաժանորդական Ընկերութիւնը իր գանձումներով գոյացուած ըլլալու էր տնտուազն* 130·000 *դուրուշ*[25]*։*

*Թէ ինչո՛ւ Թուրք պետութիւնը կը փակէր Ընկերութիւնն՝ կը բացատրէ* Օրագիր *Թերթը*[26] 1874*ին, գրելով. «Ազգին գրեթէ սահմանադրական շարժմանց միջոցին էր որ մեր մէջ* լուսաւորեալ ու իմտութեամբ առաջին կարգի համարուած *ամէն անհատ իր մէջ պարունակող* Բաժանորդական Ընկերութիւն *մը կազմուեցաւ... ՆՊԱՏԱԿԸ պիտի ըլ-*

25 Մամուլ, 1874, *էջ* 731։
26 Օրագիր, 1874, *Թ.* 1389։

*լար* *ԲԱՐՈՅԱՊԷՍ ԱԶԳԱՅԻՆ ՄԻՈՒԹԻՒՆ*, *եւ* նիւթապէս երկրագործութիւն» ։

6․ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

*Հիմնուած է* 1862 *Մայիս–Յունիսին* ։ 1862 *Յունիսին Ընկերութեան* հիմնադրութեան համար *տեղի կ'ունենայ Սկիւտարի* Ջամլըճա *բլուրի* *վայրը*[27] ։

Կիլիկիա[28] *կը գրէ․ «Իւսկիւտարի Սէլամիյէ թաղին* Ուսումնասիրաց *անուն պատուարժան* Ընկերութիւնը *Հազար դրուշ յանձներ է ազգային վարժուեան ի նպաստ Երկիրեալ ազգայնոց Պրուսայի*» ։

*Ընկերութիւնս անծանօթ է Թորգոմեանի եւ Ալպօյաճեանի* ։

7․ ՀԱՅԿԱԶԵԱՆ ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862—1863)

*Կազմուած կ'երեւայ* 1862*ի վերջերը կամ* 1863*ի սկիզբը* ։ 1863 *Նոյեմբերին հայ թերթ մը կը պատմէ․ «Իւսկիւտարի Սելամիէ թաղին* Հայկազեան Առեւտրական Ընկերութիւնը, *ըստ տրամադրութեան իւր* հիմնական Կանոնաց՝ *մինչեւ հիմա ունեցած շահուն հարիւրին տասը՝* 1000 *դրուշ յիշեալ թաղին* աղքատացն ու դպրատանցը բաժին հանեց *քանի մը շաբաթ յառաջ* ։ *Ասկէց զատ Ս*․

[27] Մեղու, 1862, էջ 143 ։
[28] 1863, էջ 470 ։

*Խաչի տօնին ալ* 600 *դրուշ* հացագինն բաշխուած է թաղին կարօտելոց[29]»:

*Անծանօթ է Ալպօյաճեանի: Թորգոմեան*[30] *յիշած է* «Առեւտրական» *ձեւով*:

8. ··· ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

*«Սկսնակ Բանասէր»*[31] *Իսկիւտարի մէջ* 1864*ին հիմնուած Ընկերութիւն մը կը յիշէ*, որուն անունը չի տար: 1864*ին հիմնուած որեւէ Ընկերութիւն չենք գտած Սկիւտարի* երեք թաղերու *մէջ*:

9. ԽՆԱՄԱԿԱԼ ՏԻԿՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1866)

*Հիմնուած է* 1866 *Ապրիլին վերջերը, ինչպէս «Խնամակալ Տիկնանց»* 1867*ին կազմած Տեղեկագիրը կը յայտնէ*[32]:

Խնամակալ Տիկնանց Ընկերութեան *նպատակն է. Ս. Խաչ թաղի* աղջկանց վարժարանին նպաստել՝ հսկելով աղջկանց կրթութեան եւ ուսման, *օրինակ առնելով* Օրթագիւղի *եւ* Խասգիւղի *Հայ Տիկնանց բարի ընթացքը՝ աղջկանց դաստիարակութեան սատարելու գործին մէջ*[33]:

*Սելամիէ թաղի թաղական Խորհուրդը դոհ մնալով Խնամակալ Տիկնանց գործունէութենէն՝* 1867*ին Ս. Խաչի* աղջկանց վար–

---

[29] Կիլիկիա, 1863, *էջ* 520:
[30] *Երեմ. Չէլէպ.*, *Գ.*, *էջ* 141:
[31] Արեւելք, 1898, *Թ.* 3854:
[32] *Տես* ժամանակ, 1867, *էջ* 132:
[33] *Անդ*:

ժարանի Տեսչութիւնը Խնամակալ Տիկնանց կը յանձնէ, *որոնք կարեւոր փոփոխութիւններ ու յաւելումներ կ՚ընեն աղջկանց ուսման ծրագրին մէջ*[34]:

*Խնամակալ Տիկնանց օգտաշատ գործը գրուատիքով վեր կը հանեն նաեւ* Մասիս[35] *եւ* Փունջ[36]:

*Խնամակալ Տիկնանց դաստիարակչական այս կարեւոր ձեռնարկին ոյժ տալու համար 1868ին կը կազմուի* «Արարատեան Ընկերութիւն»*ը*[37]»:

*Ընկերութիւնը տեւած է մինչեւ* 1872: 1873*ին Սեւամիէլի թաղեցիք յիշելով Խնամակալ Տիկնանց Ընկերութեան ա՛յնքան շինիչ գործունէութիւնը՝ փափագ կը յայտնեն դարձեալ կազմելու նոյնպիսի Ընկերութիւն մը*[38]:

*Ընկերութիւնս անծանօթ մնացած է Ալպօյաճեանի*:

10· ԹԱՏԵՐԱՊԱՇՏՊԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1866—1867)

Ծիածան[39] *թատերական ներկայացում մը առթիւ Իւսկիւտարի մէջ կազմուած* «Թատերապաշտպան Ընկերութիւն» *մը կը յիշէ, առանց անդրադոյն լուսաբանութեան*[40]:

---

[34] *Անդ*, *էջ* 46 *եւ* 132:
[35] 1867, *Թ*. 809:
[36] 1870, *Թ*. 522:
[37] Մասիս, 1868, *Թ*. 867:
[38] Փունջ, 1873, *Թ*. 845:
[39] 1867, *Թ*. 46:
[40] *Հմմտ*. Մասիս, 1867, *Թ*. 814:

«Թատերական Ընկերութիւն»ը կը յիշէ նաեւ Մանզ. Էփ. (1870, Թ. 1377)։

Ընկերութեանս անունը անծանօթ է Ալպօյաճեանի։

## 11. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

Կազմուած է 1868ին[41]։ Ունեցած է իր կանոնագիրը[42], մեզի անծանօթ։ 1871ին բացած է Լսարան[43]. ճառախօսութիւնները տեղի կ'ունենային սրճարանի մը սրահին մէջ. կը խօսէր Սիմէոն Ֆէլէկեան[44]։

Ընկերութիւնը Պետրոս Դուրեանի թաղման նիւթական հոգնստանձնած եւ արժանաւոր թաղում մը կատարել տուած է[45]։ Նոյնպէս ինքն է որ ձեռնարկած է, 1872ի գարնան, տպագրել Պետրոս Դուրեանի «Տաղք եւ Թատերգութիւնք»ը։ Սակայն տպագրիչ Յանձնախումբը սխալ կ'ընէ Դուրեանի գրութեանց բնագրի վրայ սրբագրութիւն կատարելով, որուն դէմ կը բողոքէ նամակով մը Դուրեանի եղբայրը՝ Յարութիւն եւ կը պահանջէ որ կա՛մ սրբագրուած կտորները կրկին տպուին բնագրին համեմատ եւ կա՛մ ամբողջ բնագիրը իրեն ետ դարձուի՝ ան-

[41] Արեւելք, 1898, Թ. 3853։
[42] Մասիս, 1872, Թ. 1281։
[43] Անդ, 1871, Թ. 1159։
[44] Անդ, 1871. Թ. 1347։
[45] Փունջ, 1872, Թ. 707։

տիպ[46]: *Հակառակ այդ բողոքին՝ տպագրութիւնը գլուխ կ'ելլէ 1872ին:*

*Ընկերութիւնը ունեցած է* Ընթերցարան *մը՝ Սելամիէի մեծ պողոտային վրայ*[47] *եւ բաւական գիրք*[48]:

*Արդէն 1872ի վերջերը նշաններ կային կազմալուծուելու*[49], *բայց մինչեւ 1874 կը պահէ իր գոյութիւնը եւ կը քայքայուի*: 1874 *Փետր. 8 թուականով «Ազգ»ի մը մէջ Ընկերութեան Տնօրէն Խորհրդոյ Գործադրիչ* Գոուան *կը ծանուցանէ*[50]. *«Իւսկիւտարու Ընթերցասիրաց Ընկերութիւնը Մեծ. Ընկերաց* խորհին անտարբերութեան շնորհիւ ցրուեալ վիճակի մը ենթակայ եղած ըլլալով՝ *Տնօրէն Խորհուրդը պարտ անձին համարեց, ըստ կանոնագրութեան, Ընկերութեան գոյքը* ազգային հաստատութեան մը նուիրել»: *Ընկերութեան պարտքերը վճարելու համար մաս մը գրքեր ծախելէ վերջ՝ կարասիները արճարան մը աւանդ կը թողու եւ մնացած* 93 *կտոր գրքերը Ազգ. Հիւանդանոցի կը նուիրէ*:

---

46 *Տէ՛ս Յարութիւն Դուրեանի նամակը՝* Արեւելք, 1892, թ. 2667:

47 *Թորգոմեան, Երեմ. Զէյլէպ., Գ., էջ* 141:

48 Մասիս, 1874, թ. 1497:

49 Օրագիր, 1872, թ. 831:

50 Մասիս, 1874, թ. 1497:

12· ԱՐԱՐԱՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

Սելամիկ Թաղին «Խնամակալ Տիկնանց Ընկերութիւնը» իր մէկ տարուան գործունէութեամբ աղջկանց վարժարանի մէջ չափազանց գոհ թողուցած էր թաղեցիները եւ հրաժարած աղջկանց հողէն: Թաղեցիները այդ հրաժարականին վրայ մեծ ցաւ զգալով՝ «փութացեր Ընկերութիւն մը կազմեր են, որպէս զի Խնամակալութեան թէ՛ նիւթապէս եւ թէ՛ բարոյապէս ձեռնտու ըլլալով՝ իր յառաջդիմական ազնիւ պաշտօնը շարունակելու հաճեցնեն[51]»:

Ընկերութիւնը կը կոչուի Արարատեան Ընկերութիւն, որ անմիջապէս 80 հոգի անդամ կ'արձանագրէ. յանձն կ'առնէ ամսէ ամիս «Խնամակալ Տիկնանց» 1000 դուրուշ յանձնել՝ վարժարանի ծախքերուն համար[52]:

Ընկերութեան Հիմնադիր եւ Գործադիր ժողովի անդամներն են.

Քրիստոստուր Ղազարոսեան
Յակոբ Եէմէնիճեան
Պօղոս Վ. Պ.
Յարութիւն Խանտանեան
Յովհաննէս Խանճեան
Աբրահամ Յ. Այվազեան
Միհրան Ե. Թուղլաճեան[53]:

---

[51] Փոքր Մասիս, 1868, Թ. 224, Սեպտեմբեր: — Հմմտ. Մամուլ, 1869, էջ 74 եւ 107:
[52] Մասիս, անդ, Թ. 239:
[53] Անդ, Թ. 246:

*Կու տանք նաեւ եօթը Յօդուածէ բաղկացած Ընկերութեան* Կանոնագիրը.

*«Յօդ. Ա. Ընկերութեան նպատակն է Ս. Խաչի* աղջկանց Վարժարանի ներկայ *Խնամակալութեան առ այժմ նիւթապէս օգնել եւ եթէ Խնամակալութիւնը հարկ համարի, բարոյապէս ալ օժանդակել:*

*Յօդ. Բ. Ընկերութիւնը եօթն անդամէ բաղկացեալ Գործադիր Ժողով մը պիտի ունենայ, որք Ընկերութեան Հիմնադիրներն են:*

*Յօդ. Գ. Ընկերութեան Գործ. անդամները մինչեւ տարի մը իրենց յանձն առած պաշտօնը պիտի շարունակեն:*

*Յօդ. Դ. Տարի մ'ետեւ Ընկերութիւնը Նոր Տնօրէն Ժողով մը կ'ընտրէ իր ընթացքը շարունակելու համար:*

*Յօդ. Ե. Գործ. Ժողովը բաժանորդութիւն մը պիտի բանայ, բաժինը* 50 *դուրուշ տարին, կամ ամիսը* 4 *դուրուշ: Ուզողը կէս բաժին ալ կրնայ գրուիլ, ինչպէս նաեւ ամէն բաժանորդ շատ բաժիններ ալ կրնայ առնուլ:*

*Յօդ. Զ. Գործ. Ժողովը գոյացած բաժանորդագինները Խնամակալութեան պիտի յանձնէ եւ իրեն քով* 1000 *դուրուշէն աւելի գումար մը չպիտի պահէ:*

*Յօդ. Է. Գործ. Ժողովը իր ընթացից վերաբերեալ գործերը պիտի տնօրինէ եւ ասոր*

համար հարկ եղած կանոնները պիտի հաստատէ [54]»:

Ընկերութիւնը 1869ին դեռ կը շարունակէր իր յանձնառութիւնը [55]:

Ընկերութիւնս անծանօթ է Ալպօյաճեանի:

13. ԴԱՍՏԻԱՐԱԿԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

Ընկերութեանս հիմնարկութեան մասին առաջին տեղեկութիւնը Հայրենիքի քով գտած ենք, որ 1871 Յուլիս 17ին կը գրէ. «Ուրախութեամբ կը ծանուցանեմք թէ Դաստիարակաց Ընկերութիւն անուն բարենպատակ Ընկերութիւն մը հաստատուած է մայրաքաղաքս, ուսումնական ձեռնհաս ազգայիններէ, որ ամէն թաղ երկսեռ վարժարաններ պիտի բանան որեւէ ազդեցութենէ ու թաղային իրաւասութենէ անկախ, չահն ու վնասը իրենց ըլլալով, ամէն տեսակ գիտութիւն, ուսմունք ու լեզուագիտութիւն պիտի աւանդուին [56]»:.

Ընկերութեան Ատենապետ Աւետիս Տէր Սահակեան եւ Ատենադպիր Ս. Հ. Մ. Ֆէլէկեան մասնաւոր «Ազդ»ի մը մէջ 1871 Յուլիս 20ին կ՚իմացնեն թէ իրենց առաջին վարժարանը բացած են 1871 Յուլ. 18ին Իւսկիւտարի Սելամսըզ Թաղ, Սելամիյէ փողոց

---

[54] Մասիս, 1868, Թ. 869:
[55] Փունջ, 1869, Թ. 308:
[56] Հայրենիք, 1871, Թ. 56:

*Թիւ* 19 *եւ կու տան վարժարանի դասանիւ-թերու ցանկը*[57] :

*Ընկերութիւնը հարկ եղած պատրաստութիւնը տակաւին չունենալով՝ սկիզբը միայն* մանչեր *կ'ընդունի, բայց արդէն* երկու ամիս *վերջ Ընկերութիւնը կը ծանուցանէ թէ աղջիկներու համար զատ բաժին եւ տեղ պատրաստած ըլլալով՝ կ'ընդունի նաեւ* աղջիկներ[58] :

*Ընկերութիւնը իր ծանուցումը Իւսկիւտարի* Սելամսըզ (*Սելամիէ*) *թաղէն կու տայ եւ իր վարժարանը կ'անուանէ* — Դաստիարակաց Ա. Վարժարան[59] :

*Յաջորդ տարիներու մէջ Ընկերութեանս մասին յիշատակութիւն չ'ըլլար :*
*Անծանօթ է Ալպօյաճեանի :*

## 14. ԱՂՔԱՏԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

*Սելամիէ թաղին մէջ* 1872*ի սկիզբը հիմնուած է* «Աղքատասիրաց Ընկերութիւն» *մը, որ շատ կարճ տեւողութիւն մ'ունեցած է. գուցէ Յունուարէն մինչեւ Մարտ :*

Փունջ 1872 *Ապրիլին խօսելով Սկիւտարի* Նէնիմահալլէի «Աղքատասիրաց Ընկերութեան» *վրայ՝ կը գրէ.* «*Անցեալները* Սելամիէ թաղին մէջ ալ աղքատաց օգնելու նպա-

57 Մասիս, 1871, Թ. 1115:
58 *Անդ*, Թ. 1140:
59 *Անդ* :

տակաւ Ընկերութիւն մի երեւան ելաւ. *եւ արդարեւ* բաւական օգնութիւն ու մխիթարութիւն մատոյց կարօտելոց. *սակայն* շուտով խափանեցաւ, *մինչդեռ կը լսէինք թէ մշտնջենաւոր պիտի լինի* եւ միանգամայն ջանաց անշարժ եկամուտներ ալ հայթայթել ... *չեմք կրնար այս առթիւ* չմեղադրել զանոնք իրենց սկսածն ի գլուխ չտանելուն համար [60]:

*Հմայեակ քահ. Էքսէրճեան*[61] *Սելամիէ թաղին մէջ* «Աղքատասիրաց Ընկերութեան» 1873 *Փետր.* 27*ի* յետնեալ հաշիւը *տեսնելով՝ կը զարմանայ եւ կը հարցնէ թէ արդեօք գոյութիւն ունեցա՞ծ է 1873էն առաջ* «Աղքատասիրաց Ընկերութիւն» *մը Սելամիէի մէջ, թէ «բարեմիտ եւ պարզամիտ գանձապետը իր զգացումներուն թելադրութեամբը* նոր անուն մը շիներ ու արձանագրեր է»:

*Ո՛չ, գանձապետը «չինած» չէ. 1872ի սկիզբը Սելամիէի մէջ հիմնուած է «Աղքատասիրաց Ընկերութիւն» մը, որ* կարճ տեւողութեան մը մէջ *օգտակար հանդիսացած է թաղին աղքատներուն, ինչպէս հաւաստեց ժամանակակից հայ թերթը:*

*Ընկերութիւնս անծանօթ մնացած է թէ՛ Թորգոմեանի եւ թէ Ալպօյաճեանի:*

---

[60] Փունջ, 1872, *Թ.* 719, *Ապրիլ* 22:

[61] *Ցիշատակարան Ցիսնամեայ Յոբելեանի երից Թաղից Աղքատախնամ Հոգաբարձութեան Սկիւտարու, Կ. Պ.* 1930, *էջ* 42:

### 15. ... Ընկերութիւն (1872)

*Պոլսոյ* Հայրենիք 1872 *Նոյեմբերին կը գրէ. «Կը լսեմք թէ Իւսկիւտարու Սելամիէի* երկսեռ վարժարանաց ծնողք *տեսնելով որ Թաղական Խորհրդոյ հրաժարման առթիւ վարժարանք մեծ վտանգի պիտի ենթարկին եւ թաղային յուզմանց զոհ պիտի երթան,* ամէնքը միացեր եւ Ընկերութիւն մը կազմեր են ծնողներէ եւ սանուց պաշտպաններէ բաղկացեալ[62]»:

*Ո՛չ* Հայրենիք*ի յաջորդ թիւերուն մէջ եւ ոչ ալ ուրիշ թերթերու մէջ կը գտնենք լուսաբանութիւն մը եւ Ընկերութեան անունը:*

### 16. ԲԱԺԱՆՈՐԴԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873)

*Ընկերութեանս ամբողջական տիտղոսն է.* «Բաժանորդական Ընկերութիւն հանդերձ վիճակահանութեամբ» *եւ հիմնուած է* 1873 *Նոյ.* 1*ին*, որով որեւէ կապ չունի 1858*ին հիմնուած «Բաժանորդական Ընկերութեան» հետ:*

*Ընկերութեանս մասին ծանուցած են* Մասիս, Փունջ *եւ* Հայրենիք, *որոնցմէ առաջինները հրատարակած են նաեւ Ընկերութեան* Կանոնները: *Կանոններուս հեղինակն է* Կեսարացի Պօղոս Կ. Պօտիկեան[63]: *Ահա* 8 *կէտերէ բաղկացած այդ կանոնները.*

---

[62] Հայրենիք, 1872, *Թ.* 129:
[63] Փունջ, 1873, *Թ.* 834:

1· *Ընկերութեանս նպատակն է* բաժանորդներէ գոյացած գումարով ներքին վիճակահանութիւն մը կատարելով՝ թաղիս երկսեռ վարժարանաց նպաստել :

2· *Ընկերութիւնս իւր հաստատութեան թուականէն սկսելով մէկ տարի պիտի տեւէ :*

3· *Ընկերութիւնս կը բաղկանայ 500 բաժիններէ . բաժանորդք պարտին իւրաքանչիւր բաժնի համար տարեկան 3 արծաթ մէճէտ կանխիկ, կամ երեք ամիսը մէյմէկ մէճիտ վճարմամբ լրացնել :*

4· *Տարին տասներկու անգամ ամէն ամսոյ վերջ վերոյիշեալ 500 բաժիններու վրայ վիճակահանութիւն պիտի դրուի բաժիններուն ամսականներէն գոյացած 25 ոսկւոյն միայն 15ը՝ 6 բաժնի վրայ, հետեւեալ կարգադրութեամբ.*

*Ա. Վիճակահանութենէ շահող առաջին թիւը պիտի ընդունի (10) տասն օսմ. ոսկի, միւս 5 թիւերն ալ մէյմէկ ոսկի :*

*Բ. Մնացեալ (10) տասն ոսկին ալ ամէն ամիս ի նպաստ Ս. Խաչի վարժարանաց պիտի գործածուի . . . :*

8· *Վիճակահանութեանս 500 տոմսակները ծախուելէն վերջը վիճակահանութիւնը անմիջապէս պիտի սկսի*[64]*» :*

*Առաջին վիճակահանութիւնը տեղի ու–*

---

[64] *Անդ :*

նեցած է 1874 Փետր. 3ին[65], երկրորդը՝ 1874 Ապրիլ 14ին[66]: Փետրուարի վիճակահանու-թեան չահող առաջին թիւը Ազգանազեան Ընկերութեան եղած ըլլալով՝ չահած 10 ոս-կին Սելամիէի վարժարանին կը նուիրէ[67]:

## 17· ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

Գ. Կ. Պոտիկեան 1874 Յուլիսին «Բա-ժանորդական Ընկերութեան» վերջին հաշիւը ներկայացուցած ատեն ցաւ կը յայտնէր որ հազիւ չորս անգամ վիճակահանութիւն կրցած են ընել եւ Ընկերութիւնը քաջալե-րուած չէ, նոյն իսկ վնասի ենթարկուած է: Այդ առթիւ կը յայտնէր նաեւ որ վարժարան-ներու Հոգաբարձութիւնը կը մտադրէ նոր Ընկերութիւն մը հաստատել, որպէս զի շա-բաթական 20 փարայի տուրք մը հանգանա-կելով՝ 150էն աւելի աղքատ աշակերտներու պիտոյքը կարելի ըլլայ հոգալ[68]:

Ձենք գիտեր թէ հաստատուա՞ծ է այդ նոր Ընկերութիւնը եւ ե՞րբ, ի՞նչ անունով: Հայրենիք թերթը մինչեւ 1877 տարին որեւէ լուր չի տար Սելամիէ թաղի մէջ հիմնուած նոր Ընկերութեան մը մասին:

1877ի սկիզբն է որ Հայրենիք կը հրա-տարակէ հետեւեալ ծանուցումը. Յառաջի-կայ Կիւրակէ օր Փետր. 20 ի ժամ 7½ յԻւս-

---

65 Մասիս, 1874, Թ. 1494:
66 Փունջ, 1874, Թ. 874:
67 Հայրենիք, 1874, Թ. 207:
68 Հայրենիք, 1874, Թ. 207:

*կիւտար Ս. Խաչ վարժարանին մէջ Մեծ. Սիմէոն էֆ. Ցէլէկեան Մամիկոնեան* նորահաստատ *Ընկերութեանս* բացումը ընելով *հանդերձ՝ պիտի ատենաբանէ թէ* Հայրենասիրութեան մէջ ո՞րն է ճշմարիտ սէրը եւ ճըշմարտապէս բարին եւ թէ ի՞նչ է անոնց վախճանը.

*Ի դիմաց* Մամիկոնեան Ընկերութեան
*Գործ. Ժողովոյ*

*Ատենադպիր* *Բարսեղ Աւետիսեան* — *Ատենապետ* *Տ. Գափամաճեան*

18 *փետր.* 1877 *յԻւսկիւտար Սէլամիէ* [69]:

*«Նորահաստատ» եւ «բացումը ընել» բացատրութիւնները համոզիչ են ընդունելու համար թէ Ընկերութիւնը* 1877*ի սկիզբը հիմնուած ըլլալու է: Ալպօյաճեան (Պատմ. Տարեգ.*, *Գ.*, *էջ* 114) հարցականով 1876 *դրած է:* 1877*ին կը յիշէ նաեւ* Մանզումէ (1877, *Թ.* 3380):

Լսարանական Ընկերութիւն *մը եղած կը թուի «Մամիկոնեան»ը:*

18. ՈՒՍՈՒՄՆԱՏԱՐԱԾ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

*Հիմնուած է* 1877 *Մայիս–Յունիսին: Իր նպատակն է.* ծրի ուսում աւանդել:

*Ընկերութեանս Տնօրէն Ժողովի Ատենապետ* Գ. Զաքարեան 1877 *Սեպտ. 7ին կ՚ընէ հետեւեալ յայտարարութիւնը.*

---

[69] Հայրենիք, 1877, *Թ.* 317:

«Ուսումնատարած Ընկերութեան *Տնօրէն ժողովը պատիւ ունի ծանուցանել որ* երեք ամիսէ ի վեր *Իւսկիւտարու* Ս. Խաչ եկեղեցւոյ *վարժարանին մէջ* ձրիաբար կ'աւանդուին *հետեւեալ ուսումները. Հայերէն, Փրանսերէն, տաճկերէն, Թուաբանութիւն, տոմարակալութիւն եւ աշխարհագրութիւն: Տնօրէն ժողովը կը յուսայ որ ուսումնասէր Հայ հասարակութիւնը պիտի փութայ այս հրաւէրիս ի պատասխան վերոյիշեալ վարժարանը դիմել... յորմէ արդէն օգուտ կը քաղեն* քսանէն աւելի ամէն հասակի ուսանողք[70]»:

*Ընկերութիւնը տեւած է* մինչեւ 1878ի աշունը: 1878*ի աշնան* «իւր գործերն դադրեցուցած լինելով»՝ *ունեցած* 279½ *մէճիտիէն եւ* 70 *կտոր գրքերը Օրթագիւղի «Արամեան Ընկերութեան» կը նուիրէ*[71]:

*Այս բոլոր ըսուածներէն կը հետեւի թէ սխալ մը կայ Թորգոմեանի* թուականին *մէջ, որ կը գրէ.* «1878ին հաստատեցինք *հոն* (*Սեմիզ Թաղը*) Ուսումնատարած *անուն* Ընկերութիւն *մը եւ Կիրակի օրերը պանդուխտ ազգայիններու հայերէն լեզուի ու հաշուապահութեան դասեր կու տայինք ես ու Սարգիս Սէմէրճեան քաջ Փրանսագէտ ընկերս ու ներհուն չափագէտ Գրիգոր Զաքարեան*[72]»:

[70] Մասիս, 1877, *Թ.* 2024:

[71] Մասիս, 1878, *Թ.* 2206: — *Տես նաեւ* Թէրճ. էֆքեար, 1878, *Թ.* 414:

[72] *Երեմ. Չէլէպ., Գ., էջ* 130:

Ալպօյաճեան[73] ալ սխալմամբ 1878 նշանակած է Ընկերութեանս հիմնումի տարին:

## 19. ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

Հիմնուած է 1879ի առաջին ամիսներուն: Վահրամ Յ. Թորգոմեան (յետոյ Դոկտ.) Մասիսի մէջ 1879ին կը գրէ որ «Կրթասիրաց»ը «Ազգանուէր Հայուհեաց Ընկերութենէն» «շատ իսկ կանուխ հաստատեալ» է[74]: Արդ, «Ազգանուէր Հայուհեաց Ընկերութիւն»ը 1879 Ապրիլ 11ին հիմնուած է: Հետեւաբար 1879 Ապրիլ 11էն «շատ կանուխ»ը կը նշանակէ 1879ի առաջին ամիսները:

Ընկերութեան նպատակն եղած է Լսարան եւ Մատենադարան հաստատել:

1879 Ապրիլ 21ին արդէն բացած էր Ս. Խաչ վարժարանի Թատրոնի սրահին մէջ Լսարան մը, ուր երկսեռ ունկնդիրներու կը բանախօսէ Հ. Մեսրովպ Վ. Ճերմակեան, նիւթ ունենալով. Ուսմանց ազդեցութիւնն ազգաց վրայ: Մուտքը 2 դուրուշ, մէջընդմէջ դաշնակի նուագ, իսկ հասոյթին կէսը՝ Սելամսըզ Թաղային վարժարանի աղքատ տղոց դպրոցական պիտոյքներուն յատկացուած[75]: Մայիս 11ին կը խօսին. Ս. Թղլեան («Դաստիարակութեան վրայ»), Ն. Ճ. («Առողջաբանութեան կարեւորութիւն»ը)[76]: Մայիս

[73] Գաղ. Տարեգ., Գ., էջ 117:
[74] Մասիս, 1879, Թ. 2342:
[75] Անդ, Թ. 2305:
[76] Անդ, Թ. 2322:

26*ին կը խօսի* Մաղաքիա Վ. Օրմանեան («Հայութեան ոգին»), Մատթէոս Եպ. Իզմիրլեան («Ի՞նչ է Հայուն արդի վիճակը») [77]:

*Ընկերութիւնը* 1879 *Օգոստ.* 26*ին կը բանայ նաեւ* Մատենադարան *մը, որուն բացումի ճառը կ'արտասանէ Վահրամ Յ. Թորգոմեան* [78]:

1881*ին Ընկերութիւնը կը շարունակէ իր Լսարանական հանդէսները. կը խօսի Ասորւոց կաթ. փոխանորդ՝* Ապունէ-Նուրեանը («Ասորւոց կեանքն ու պատմութիւնը») [79]:

## 20. ԱԶԳԱՆՈՒԷՐ ՀԱՅՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Հայ իգական Ընկերութիւններու մեծագոյնը* — Ազգանուէր Հայուհեաց Ընկերութիւնը — *հիմնուած է* 1879 *Ապրիլ* 11*ին Սկիւտարի Սելամիէ թաղը,* խանենեաններու տունը: *Գաղափարը յղացողն ու հիմնադիրն է* — Օր. Զապէլ Խանենեան (*յետոյ Տիկ. Զապէլ — Ասատուր, Սիպիլ*), *որ այն ատեն տակաւին* 16 *տարեկան էր*:

*Սիպիլ կը պատմէ. «...կը հրաւիրեմ դպրոցական* 8 *դասընկերուհիներս, որոնք այն տարին* (1876) *շրջանաւարտ պիտի ըլլան ինծի հետ ճեմարանէն: Ու կու գան կը հաւաքուին* մեր Սկիւտարի տանը մէջ: *Ամէնքն ալ կը խանդավառուին, կը յուզուին, կու լան*

[77] Թէրճ. էֆքեար, 1879, Թ. 685:
[78] *Անդ*, Թ. 651:
[79] Մասիս, 1881, Թ. 2790:

եւ կ՚ուխտեն աշխատիլ Հայրենիքին համար։ Դպրոցներ պիտի բանանք աղջկանց համար բոլոր հայաբնակ գաւառներու մէջ ու պիտի դաստիարակենք զանոնք նուիրապէս, բարոյապէս եւ ֆիզիքապէս։ Պիտի սորվեցնենք անոնց մաքրութեան, կարգապահութեան, առողջապահութեան օրէնքները, որպէս զի բարուոքի իրենց ֆիզիքական կացութիւնը․ պիտի սորվեցնենք անոնց ձեռարուեստներ, որպէս զի կարենան օգնել ընտանիքին նիւթական պէտքերուն․ պիտի սորվեցնենք անոնց կարդալ, գրել, հաշուել, կրօնք, պատմութիւն, որպէս զի ճանչնան իբրեւ մարդ իրենց պարտքերը եւ իրաւունքները եւ իրենց արժանի տեղը գրաւեն մարդկային ընկերութեան մէջ։ Այս ուխտը ընող դեռափթիթ աղջիկներն են․ —

Արտեմիս Տուտեան
Ակիւլինէ Լութֆեան
Մառի Զպուքճեան
Սաթենիկ Հաճեան
Տիրուհի Գալֆայեան
Վերգին Խաչատուրեան
Գարիտինէ Վարսավիրեան
Վարդանոյշ Լութֆեան։

«Եւ ասոնցմով կը կազմուի Ազգանուէր Հայուհեաց Ընկերութիւնը մօրս եւ հօրաքրոջս հովանաւորութեան ներքեւ 1879 Ապրիլ 11ին։ Ընկերութեան Բ․ նիստին 150 Տիկին–

ներ եւ Օրիորդներ փութացած էին Պոլսոյ բոլոր արուարձաններէն Օր. Սրբուհի Մելքոնեանի տունը, որ մեր ձեռագործի ուսուցչուհին էր եւ որ իր սրահը մեր տրամադրութեան ներքեւ դրաւ ամբողջ տարի մը[1]»:

«Ազգանուէր Հայուհեաց Ընկերութեան» հիմնումի մասին առաջին ծանուցումը Պոլսոյ Փունջը բրած է, 1879 Մարտ 10ին գրելով. «Մեծաւ գոհութեամբ կը լսեմք թէ մայրաքաղաքիս մէջ ալ Հայ Օրիորդաց Ընկերութիւն մը կը կազմուի, դրամ հանգանակելու եւ Արարատեան Ընկերութեան յանձնելու համար որ գաւառները աղջկանց վարժարաններ ալ հաստատուին[2]»:

Փունջ 1879 Ապրիլ 14ին — Ընկերութեան հիմնումէն 3 օր յետոյ — կը գրէ. «Մեծ ուրախութեամբ լսեցինք թէ Արարատեան Ընկերութեան Օժանդակ Ընկերութիւն Օրիորդաց անունով Ընկերութիւն մը կազմուեր է... : Յոյս ունիմք թէ այս Ընկերութենէն յետոյ պիտի կազմուին նաեւ Հայ Տիկնայց եւ Օրիորդաց ուրիշ Ընկերութիւններ[3]»:

«Ազգանուէր Հայուհեաց Ընկերութեան» առաջին Գործադիր ժողովը կարդալով Փունջի վերջին գրութիւնը՝ նամակ մը կ'ուղղէ նոյն թերթին, իբրեւ լուսաբանութիւն: Ընկերութեան այս գրութիւնը առա-

[1] Թէոդիկ, Ամէն. Տարեցոյցը, 1911, էջ 243:
[2] Փունջ, 1879, Թ. 1357:
[3] Անդ, Թ. 1365:

ջին հրապարակային արտայայտութիւնն է Ընկերութեան կողմէ՝ Ընկերութեան մասին։ *Ահա այդ նամակը.*

...խմբագիր

*Արդարեւ Իւսկիւտարու մէջ այդ օրինակ կազմութիւն մի կայ. սակայն* ոչ միայն օրի- որդք՝ այլ եւ տիկնայք *խակ անդամակցած են դմա եւ անունն է* «Ազգանուէր Հայուհեաց» *Ընկերութիւն, որն որ չէ թէ միայն Արարա- տեանի՝ այլ եւ հետզհետէ Դպրոցասիրաց- Արեւելեանի ու Կիլիկեանի միանգամայն պիտի յանձնէ իւր հաւաքած դրամները, որ- պէս զի սոյն երեք Ընկերութեանց սահմանին մէջ գտնուած* գաւառաց մէջ իգական սեռին համար ալ վարժարաններ հաստատուին։ *Հետեւաբար Ընկերութիւնս* Օժանդակ Միու- թիւն մի չէ, *այլ* անկախ Ընկերութիւն մի, *որոյ նպատակն է* իգական սեռը լուսաւորել *եւ արդէն իւր ձեռնարկութեան մէջ բաւական խրախուսուած լինելով՝ մի քանի նիստեր կազմած է եւ յառաջիկայ Ուրբաթ եւս նիստ ունի.*

*Գործադիր Ժողովոյ*

| *Ատենադպիր* | *Ատենապետ* |
|---|---|
| *Զ. Ց. Խանճեան* | *Սրբուհի Ալեանաքեան* |

16 *Ապրիլ* 1879 *Իւսկիւտար*[4]։

---

[4] *Անդ, Թ.* 1366։

*Ընկերութեան Բ. նիստին, որ տեղի ունեցած է հաւանօրէն Ապրիլ 12ին, 150 տիկիններ ու օրիորդներ ներկայ եղած են, ուր Ընկերութեան* հիմնադիր *եւ Ընդհանուր Ժողովի Ա. Ատենադպիր՝* Օր. Զապէլ Խանճեան *արտասանած է հետեւեալ ճառը, որ ինքնին խօսուն է եւ հետաքրքրական մանրամասնութիւն կը բովանդակէ թէ՛ Ընկերութեան եւ թէ՛ ժամանակի ոգիի մասին.*

## Տիկնայք եւ Օրիորդք

*Մարդկութեան ամէնէն մեծ եւ վսեմ գործն է բարերարել. վասն զի անով կրնայ մարդս իւր Արարչին նմանիլ. բարերարել սրտի մէջ ապրիլ է եւ սրտի մէջ ապրիլը անմահութիւն: Պէտք է ինքզինքնիս վարժեցնեմք բարիք գործելու, կ'ըսէ Էրնկ՝ Անգլիացի քերթողը, վասն զի այս է բնութեան մարդուն տուած առաջին եւ վերջին դասը: Եւ ի՞նչ է բարերարութիւնը՝ օգնել տկարին եւ կարօտելոյն պէտոյքը հոգալ. կարօտութիւն եւ տկարութիւն երկու տեսակ է. նիւթական եւ բարոյական: Ես վստահ եմ եւ գիտեմ թէ ամենքնիդ ալ նիւթապէս ըստ կարի օգնած էք եւ կ'օգնէք թշուառաց.* բայց բարոյականի մասին, կարծեմ քիչեր պիտի գտնուին մեր մէջ, որք կարենան իրենց ձեռքը սրտին վրայ դնելով ըսել· «պարտքս կատարած եմ»: Վասն զի թէ ամեն Հայուհի իւր այդ բարոյական պարտքը ըստ

մասին կատարէր, այսօր գաւառաց մէջ պիտի չգտնուէր անհատ մի, որ լուսաւորութենէ զուրկ՝ թշուառութեան եւ բռնութեան տակ հեծէր. *սակայն որքան ցաւալի է տեսնել, որ* այն քաջերու երկիրը՝ մեր Հայաստանը, կ'ըսեմ, հարստահարութեան, թշուառութեան, անարգութեան եւ տգիտութեան մարդախոշոշ ճիրաններուն մէջ կը դեգերի, մինչդեռ մեք հոս վարժարաններ կանգնած, տուներ կառուցած եւ մինչեւ իսկ թատրոններ, զբօսավայրեր հիմնած՝ անդորր կեանք կ'անցնեմք: *Իրաւ կցաւիմք նոցա կրած տառապանաց վերայ, սակայն դարման չեմք տանիր. ինչո՞ւ, վասն զի միջոցները կպակասին մեզ:* Կը գրեմք ոտանաւորներ, բանաստեղծութիւններ մեր Հայաստանի վերայ, կարծես իրարու հետ մրցելու համար, թէ տեսնեմք որերնի՞ս աւելի աղէկ կ'ողբամք մեր հայրենեաց աղէտները. *բայց գո՞րծ. — ոչինչ: Ինչո՞ւ. — վասն զի չեմք կարող: Մեք տկար սեռ մի, որ առանձին երկու քայլ առնելու կարողութիւն չունիմք, ի՞նչպէս պիտի փրկեմք մեր հայրենիքը, մինչդեռ ամբողջ ազգ մի, ազգասէր եւ հզօր Պատրիարք մի իւր արժանաւոր եպիսկոպոսներով, պատգամաւորներով ամբողջ Եւրոպիոյ եւ Արեւելքի արքունիքը պտտեցաւ, բայց գրեթէ մեծ արդիւնք մի չկրցաւ ձեռք բերել:*

*Երբ այսպէս մտածեմք, յիրաւի պէտք է գործէ քաշուիմք իսպառ եւ չարունակեմք մեր*

*նիւթական անփոյթ կեանքը, որ զմեզ ցարդ*
*մեռելական վիճակի մէջ պահած է*: Սակայն
երբ միւս կողմէն անցեալ դարերու վերայ
դարձնեմք մեր աչերը, քննեմք մեծագործ
կանանց յաղթանակները, որով իրենց հայրե–
նիքը փրկեցին եւ մարդկութեան յառաջա–
դիմութեանը նպաստեցին, երբ մեզ ներ–
կայանան Յուդիթ, Եսթեր, Ժան տ'Արք եւ
Եղիշէի յիշած փափկասուն տիկիններն Հայոց
աշխարհին, ո՛հ, եռանդով կը լցուիմք եւ
մեր բարձր կարողութիւնը ճանչնալով կըր–
նամք ըսել. Աշխատի՛մք, որպէս զի պար–
տաւոր չմնամք ազգին եւ մարդկութեան.
աշխատի՛մք, որպէս զի մեր գաւառացի քոյ–
րերը լոյս առնուն. աշխատի՛մք, որպէս զի
մեր հայրենիքը փրկեմք *եւ աշխատի՛մք, որ–*
*պէս զի իգական սեռը մարդկութեան մէջ*
*տեղ մի բռնէ: Իրաւ, դժուար է բարիք գոր–*
*ծել. բարեգործութիւնը փշալից վարդ մի*
*է, ով որ մերձենայ անոր՝ ձեռքերը կ'արիւ–*
*նին: Իրաւ, երբ մեք մեր Հայաստանը*
*փրկելու համար ճամբայ կ'ելնեմք, շատ մեծ*
*վտանգներ ունիմք. անհագին անտառներէ*
*պիտի անցնիմք, ուր թշնամի գազաններ*
*իրենց անհարկու մռնչիւններով պիտի ջանան*
*ահաբեկել զմեզ. ծովերէ պիտի անցնիմք*
*ձմեռ ժամանակի մէջ եւ ատելութեան մրրիկ–*
*ներն ու նախանձու ալիքները պիտի ճգնին*
*մեր բարեգործութեան նաւը խորտակել.*
*ձմեռ ժամանակ կ'ըսեմ, վասն զի մեր ազգը*

*տակաւին լուսաւորութեան ձմեռուան մէջ է եւ անշուշտ իւր փոթորիկներով պիտի հարուածէ զմեզ. սակայն մի՛ վախնաք, ձմեռուան կը յաջորդէ գարուն եւ մեր ըստ մեծի մասին տգէտ ժողովուրդը մեր գործոց բարի ըլլալը տեսնելով, փոխանակ չանթի, ծաղիկ կթօթափէ մեր գլխուն: Բայց չի վհատիմք. նաւապետ մի երբ փոթորկի ատեն ճանբայ կ'ելնէ, գիտէ որ մեծ արգելքներ պիտի պատահին իրեն եւ անոնց դիմադրելու կը պատրաստուի նախապէս. մեք ալ որ այս բարեգործ Ընկերութեան նաւապետներն եմք, պատրաստուիմք մեր դէմ ելած խոժոռ ալեաց դէմ դնելու:* Թո՛ղ բամբասեն, զրպարտեն զմեզ, որչափ որ կ'ուզեն. մեք վստահ եմք որ մեր գործը բարի է. մեք մեր հայրենիքը փրկելու պատրաստուող դիւցազնուհիներ եմք. չարամտութեան եւ տգիտութեան նետերը պէտք է որ արհամարհեմք: *Այսպիսի գործ մի, որ տակաւին նոր կտեսնուի մեր ազգին մէջ,* ի հարկէ շատ թշնամիներ, ծաղրողներ կ'ունենայ. *մեր պատասխանը միշտ սա պիտի ըլլայ. «Ջանք եւ յարատեւութիւն ամեն բանի կյաղթեն»:* Շատեր կ'ըսեն եւ պիտի ըսեն թէ չէք կրնար յաջողիլ, *սակայն ո՛ր մեծ գործ առաջին փորձով յաջողած է.* Եթէ մեք չյաջողիմք՝ գէթ հիմը դրած կ'ըլլամք եւ ուրիշ մի կը կատարելագործէ զայն. *տեսէ՛ք շոգեկառքին կատարելագործութիւնը քանի անձանց կը մե-*

բարերի․ Բարէն չոգեչարժ մեքենայով նաւեր չարժելու գաղափարը կը յղանայ, Ռօթ զայն ի գործ կը դնէ, Պօլթն կը կատարելագործէ, Թրիվիվիթ անով կառքեր քաշելու գաղափարը կ՚երկնէ, Սթիֆինսն ի գործ կդնէ եւ կատարելագործեալ վիճակի մէջ մարդկութեան կնուիրէ չոգեկառքը։ Ըսել է մեծ գործ մի ընելու համար ժամանակի պէտք կայ․ մեք աշխատի՛մք այս Ընկերութիւնը յառաջ տանելու եւ ապագայ սերունդը թող կատարելագործէ զայն, թերեւս չեմք յաջողիրի երկիւղը թո՛ղ չվհատեցնէ զմեզ։ Արդէն սկսած են շատերը ծաղրել զմեզ ըսելով թէ «օրակարգ ալ ունին եղեր», եւն, բայց մեք եթէ վախնամք ծաղրաբանութենէ, բամբասանքէ, եթէ կարեւորութիւն տամք ժողովրդեան մէջ պտտած սին խօսքերուն, բան մը չեմք կրնար ընել, եւ մեզի պէս բոլոր ազգին բարերարները այսպէս չարախօսութենէ վախնալով ետ քաշուէին, մեք այսօր ոչ դպրոց կ'ունենայինք, ո՛չ եկեղեցի, ո՛չ Ընկերութիւն եւ ոչինչ․ բայց տեսէք, Նալբանդեան մի իւր ազգին ծառայելու համար կը տքնի, կչարչարուի եւ աքսորանաց մէջ կմեռնի գոչելով․

Ազատութիւն գոչեցի, թո՛ղ որոտայ իմ գլխին
Փայլակ՝ կայծակ, հուր երկաթ, թող դաւ
դնէ թշնամին։

*Ես մինչ ի մահ կախաղան, մինչեւ անարգ*
*մահու սիւն,*
*Պիտի գոռամ, պիտի գոչեմ անդադար «Ազա–*
*տութիւն»:*

*Ի՛նչ վսեմ խօսք. տեսէք օրօրոցէն մինչեւ գերեզման :ազատութիւն կգոչէ եւ կմեռնի. մեք ալ անոր հետեւելով՝ մինչեւ վերջին շունչերնիս գոչեմք.* «Փրկութիւն Հայաստանի» եւ գիտցէք որ Հայաստան պիտի փրկուի: *Իգական սեռը եթէ ուզէ, կրնայ հրաշքներ գործել եւ սոր փորձը ամեն ուրեք տեսնուած է:* Մեք այս Ընկերութիւնը կազմած օրերնիս 12 հայուհի էինք. բայց այսօր ուրախութենէս չեմ կրնար համրել ազգասէր տիկնանց թիւը: *Այս Ընկերութիւնը դեռ նոր է*, եւ բաժանորդներէ ի զատ 100էն աւելի անդամ ունի. *եթէ ամենքնիս միատեղ աշխատիմք, քիչ ժամանակէն բոլոր Հայ իգական սեռը մէջը պիտի պարփակեմք:* Կը յիշէ՞ք, քոյրերս, երբ սոյն Ընկերութիւնը կազմելու համար առաջին անգամ հրաւիրեցի զՁեզ, ծիծաղելով իրարու երես կը նայէիք թէ մե՞ք պիտի փրկեմք Հայաստանը. բայց տեսէք որչափ ազգասէր ձեռքեր միացան մեզ, տեսէ՛ք Աստուած որչափ կ՚օգնէ բարի ձեռնարկութեանց: Բայց քայլ մը պէտք չէ ընկրկիմք մեր նպատակէն. միշտ յառա՛ջ, միշտ ի լո՛յս, միշտ ի վե՛ր. *եթէ լաւ մտածեմք, կը հասկնամք թէ մեր*

*Ընկերութիւնը շատ բարձր է ուրիշներէ. վասն զի նոր է, վասն զի առաջինն է մեր սեռին համար. ջանամք որ ինքզինքնիս այս բարձր դիրքին մէջ պահեմք, աշխատիմք միահաղոյն, ձեռք ձեռքի տանք, գրկեմք զիրար սերտ սիրով եւ* ամենէն աւելի երդում ընեմք հոս որ երբեք անմիաբանութեան, ատելութեան, անձնասիրութեան ոգի չկրեմք, երդնո՛ւմք որ վանեմք մեր մէջէն նախանձու զգացումը, երդնո՛ւմք աշխատիլ ցշունչ յետին, երդնո՛ւմք ամեն ջանք ի գործ դնել մեր հայրենիքը փրկելու եւ երկինք լսելով մեր ուխտը, օրհնէ՛ մեր նպատակը եւ պսակէ մեր իղձը[5]:

*«Ազգանուէր Հայուհեաց Ընկերութեան» առաջին կանոնագիրը կազմուած է* 17 *կէտերէ եւ հրատարակուած արդէն* 1879 *Մայիսին* Փունջի[6] *եւ* Թէրճ. Էֆքեարի[7] *մէջ: Աւելորդ չենք համարիր զայն ներկայացնել հոս գոնէ մասամբ.*

1. *Ազգանուէր Ընկերութեանս նպատակն է* Հայազգի իգական սեռի դաստիարակութեան օգնել:

2. *Ընկերութիւնս ունի երկու ժողով, մին Ընդհանուր եւ միւսն Գործադիր:*

3. *Ընդհանուր ժողովն*, որ կը բաղկանայ ամեն ընկերուհիներէ, *երեք ամիսն մի*

---

[5] Փունջ, 1879, Թ. 1373:
[6] *Անդ*:
[7] 1879, Թ. 567:

*անգամ կը գումարի որոշեալ տեղ մը եւ կը լսէ Գործադիր Ժողովոյ պաշտօնավարութեան եռամսեայ տեղեկագիրը· կը քննէ եւ կը հաստատէ հաշիւները ու ծախքերը եւ Ընկերութեան նպատակին հասնելու միջոցները կը տնօրինէ եւ կը յանձնարարէ Գործադիր Ժողովոյ զանոնք ի գործ դնել:*

6· *Ընդհ· Ժողովոյ Դիւանը կը բաղկանայ երեք ատենապետէ եւ երեք ատենադպրէ, որք մէկ տարուան համար կ՚ընտրուին եւ վերընտրելի են:*

9· *Գործադիր Ժողովը կը բաղկանայ մէկ ատենապետէ, երկու ատենադպրէ, երկու գանձապետէ եւ երկու համարակալէ, որք սոյն պաշտօններով կ՚ընտրուին Ընդ· Ժողովէն:*

10· *Ամէն Ընկերուհի պարտական է դէթ մի ամսական բաժնեգին վճարել:*

11· *Ամսական բաժնեգինն է մէկ դահեկան արծաթ:*

12· *Ով ոք եթէ կամի բաժանորդ կրնայ ընդունուիլ, ամսական դէթ մէկ բաժնեգին վճարելու պայմանաւ· բաժանորդք իրաւունք չունին Ընկերութեան գործոց միջամտել, այլ նորա տարեկան գործոց տեղեկագիրը կը ստանան*[8]:

*Ընկերութիւնը* 1880*ին կը հրատարակէ իր* «Հիմնական Կանոնագիր»*ը, կազմուած*

---

[8] Փունջ, *անդ*, *Թ*. 1373:

24 *Յօդուածներէ* *եւ* «Ներքին Կանոնագիր»*ը՝* 32 *Յօդուածներէ*[9]:

*Ընկերութեան* առաջին *Վարչական կազմը հետեւեալն է. Ատենապետ* Եղիսաբեթ Սեղբոսեան, *Ատենադպիր՝* Զապէլ Խանճեան[10]:

*Ընկերութիւնը ուղերձով մը Ս. Պատրիարքին օրհնութիւնը խնդրած ըլլալով՝ Ներսէս Արք. Վարժապետեան հետեւեալ պատասխանը գրած է.*

*Առ Նորաբողբոջ Ընկերութիւն*
*Ազգանուէր Հայուհեաց*

*Ձեր շնորհալի գիր ընկալեալ ուրախ եղէ յոյժ ընդ մխարանութիւնդ ի դրախտ Հայրենեաց վասն բարգաւաճման դաստիարակութեան ի համատիս եւ համարինս Ձեր դստերս Հայաստանի: Իցի՛ւ թէ օրինակք Ձեր զհետ Ձեր ձգէին զամենեսին զՏիկնայս եւ զՕրիորդս ազգիս եւ վաստակ կարեւոր եւ դաշտ քրտանաց եւ ասպարէս առաքինութեան իբրեւ զՁեզ ընտրէին եւ նոքա զկրթութիւն Հայկազն մանկտւոյն:*

*Մաղթեմ ի Տեառնէ օգնական լինել Ձեզ եւ քաջալեր, զՀոփփոխմեանց սրբուհեաց շնորհել Ձեզ բիւրաբեղուն արգասիս, օրհնել զքրտունս Ձեր եւ Դուք ամենեքեան զօ—*

---

[9] *Տես Ս. Տեղեկագիր, Կ. Պ.* 1880, *էջ* 7—10 *եւ* 11—13:

[10] Փունջ, 1879, *Թ.* 1379:

բացեալ Տերամբ եւ Հոգի շնորհաց ընդ Ձեզ փայլեսջիք իբրեւ զաստեղսն, եղիջիք իբրեւ ծաղիկ անթառամ մեր Հայրենեաց, զգրախտ նախնեաց Ձերոց գեղազէշ զարդարելով ի մխիթարութիւն Հայոց եւ իմ:

1879 Մայիս 30 Պէյքօզ

Աղօթարար Ձեր Ն. Ե.[11]

Ընկերութիւնը երկու գրասենեակ ունեցած է. 1. Սկիւտար՝ Սելամիէ Քարաղօլի դիմացը, Թիւ 321 տունը եւ 2. Ղալաթիա, Դպրոցասիրաց — Արեւելեանի սենեակը, Նորատունկեան Խան՝ Թիւ 11[12]: Իսկ Ընդհ. Ժողովի հաւաքավայրն եղած է՝ Սիլամիէ փողոց, Քիւրքճիպաշիի տունը[13]:

Գատըգիւղի «Տիկնանց եւ Օրիորդաց Ընկերութիւն»ը հագիւ լսած «Ազգանուէր Հայուհեաց Ընկերութեան» հիմնումը՝ դիմում կ'ընէ, փափագ յայտնելով միութեան: Ընդհանուր ժողովի մը մէջ երկակողմանի համաձայնութեամբ միութիւնը տեղի կ'ունենայ, հետեւեալ պայմաններով.

1. Ազգանուէր Հայուհեաց Ընկերութիւնը արական սեռին մէջ կազմուած Ընկերութեանց ամէնէն լաւ գործողներուն ձեւամբ պիտի բանայ իւր վարժարանները,

---

[11] Տես Փունջ, 1879. Թ. 1379 թէ՛ ուղերձը եւ թէ՛ պատասխանը: — Հմմտ. Մասիս, 1879, Թ. 2341:

[12] Մասիս, 1879, Թ. 1349:

[13] Անդ, Թ. 1356:

*ուսմանց ծրագիրներն ու դպրոցին Կանոնագիրն ինքը պատրաստելու պայմանաւ* :

2. *Ընկերութիւնը իւր առաջին վարժարանն պիտի հաստատէ Հայաստանի մէջ, երբ զայն յառաջ վարելու կարող վիճակի մէջ գտնուի, այն է՝ դպրոցին յատկացեալ գումարին եռապատիկն ունենայ* :

3. *Ընկերութիւնը երբ բաւական գումար մը ունենայ ի ձեռին, շահու պիտի դնէ զայն սեղանաւորի մը քով կամ պանքա մը* :

4. *Գատրգիւղի Ընկերութիւնն*, որ այսուհետեւ *Հայուհեաց Ազգանուէր Ընկերութեան* ճիւղը կը կազմէ, պարտի երեք ամիսն մի անգամ իւր հաշիւները ներկայել Ընդհ. Ժողովոյս... *այսուհետեւ վերոյիշեալ երկու Ընկերութիւնք* մի են *եւ* Հայուհեաց Ազգանուէր Ընկերութիւն *անունը կը կրեն*[14]:

*Արդէն* 1879 *Յունիսի սկիզբը Ընկերութիւնը Պոլսոյ շատ մը թաղերու մէջ* ճիւղեր *հաստատած էր եւ հեռաւոր տեղեր ալ դիմում ըրած էր նոյն նպատակով*[15]:

*Ընկերութեան Գործ. Ժողովը նամակով մը տեղեկացուցած ըլլալով Ընկերութեան հիմնումը եւ ծրագիրը*՝ Գէորգ Դ. Սրբազան Կաթողիկոս*ը* 1879 *Հոկտ.* 23*ին օրհնութեան կոնդակ մը կը ղրկէ, զոր կը հրատարակեն թերթերը*[16]:

---

[14] Մասիս, 1879, *Թ.* 2368:
[15] *Անդ*, *Թ.* 2360:
[16] *Անդ*, *Թ.* 2492:

1879ի *աշնան*, Օր. Էլպիս Կեսարացեան, *առաջին հայ խմբագրուհին, լոյս կը հանէ* «Նամականի առ ընթերցասէր հայուհիս» *անունով գիրք մը, որուն հասոյթը կը յատկացնէ «Ազգանուէր Հայուհեաց»ին, որուն ինքն ալ անդամ էր հաւանօրէն*[17]։

1879 *Յունիսին — Ընկերութեան հիմնումէն տակաւին* երկու ամիս վերջ — *Ընկերութեան գրուած բաժիններու թիւը հասած էր* 1500ի[18]։

*«Ազգանուէր Հայուհեաց»ի առաջին* բարերարը *Կ'ըլլայ* Տիկ. Զարդարեան, *որ Ընկերութեան բաժնետոմսերը* իր դրամով *տպագրել կու տայ*[19]։

*Երախտագիտութեամբ կը յիշուի* Տիկ. Սրբուհի Երիցեանց, *հիմնադիրը Թիֆլիսի «Հայուհեաց Բարեգործական Ընկերութեան»*, *որ իր Ընկերութեան* առաջին հասոյթէն *նպաստ մը կը հասցնէ «Ազգ. Հայուհեաց»ին*[20]։

*Առաջին նուիրատուներէն մին է նաեւ «Պէրպէրեան Սանուց Ընկերութիւն»ը*[21]։

*Ընկերութեան Ա. տարւոյ անդամներու եւ նուիրատուներու ցանկը կը տեսնուի Ա. Տեղեկագրին մէջ (էջ* 14—28)։ *Հոն կը գըտ-*

---

[17] *Անդ*, *Թ*. 2499—2500։
[18] Փունջ, 1879, *Թ*. 1385։
[19] *Անդ*, *Թ*. 1371։
[20] *Ա. Տեղեկագիր*, *Կ. Պ*. 1880, *էջ* 4։
[21] *Անդ*։

ները նաեւ Ընկերութեան միամեայ Մուտքը՝ 138,496,50 եւ Ելքը՝ 39,818,50 դահեկան։

Ընկերութեան Ա. տարեշրջանի Վարչակազմը հետեւեալն է.

Դիւան Ընդհ. Ժողովի

| | | |
|---|---|---|
| Եղիսաբեթ Սեդրասեան | Ա. | Ատենապետ |
| Տիրուհի Մամիկոնեան | Բ. | " |
| Ֆուլիկ Ոսկան | Գ. | " |
| Զապէլ Խանճեան | Ա. | Ատենադպիր |
| Նեկտար Թաշճեան | Բ. | " |
| Մաննիկ Զպուքճեան | Գ. | " |

Կեդրոնական Գործ. Ժողով

| | |
|---|---|
| Սրբուհի Ալեանաքեան | Ատենապետ |
| Զէրաֆէթ Խանճեան | Դեր–Ատենապետ |
| Տիրուհի Գալֆայեան | Ատենադպիր |
| Էլպիս Գօսան | Դեր–Ատենադպիր |
| Երանուհի Զաքարեան | Գանձապետ |
| Նուրիկ Կիւմիւշեան | Դեր–Գանձապետ |
| Սաթենիկ Հաճեան | Համարակալ[22]: |

Ընկերութիւնը պարահանդէս մը կուտայ 1880 Մարտին, հովանաւորութեամբ Սուլթանին, հասոյթի կէսը յատկացնելով Վանի, Պայազիտի եւ Վաղարշակերտի սովեալներուն[23]:

Ընկերութեան Բ. տարուայ Վարչութիւնը, ընտրուած Ղալաթիոյ Խորհրդարանի մէջ 1880

---

22 Անդ, էջ 15:
23 Մասիս, 1880, Թ. 2534, 2572, 2584:

Յունիս 2ին, կազմուած էր հետեւեալ ան-
ձերէ.

Դիւան Ընդհ. Ժողովի

| | |
|---|---|
| Տիկ. Աղաւնի Ալլօ | Ա. Ատենապետ |
| Տիկ. Մաքրուհի Մէրա-սէտեան | Բ. Ատենապետ |
| Օր. Երմոնէ Զարապլեան | Գ. Ատենապետ |
| Օր. Զապէլ Խանճեան | Ա. Ատենադպիր |

(միաձայնութեամբ ընտրուած՝ բայց
հրաժարած է)

| | |
|---|---|
| Օր. Ակիւլինէ Լութֆեան | Ա. Ատենադպիր |
| Օր. Սաթենիկ Հարենց | Բ. Ատենադպիր |
| Օր. Պիտոռ Տարագա-չեան | Գ. Ատենադպիր |

Կենդ. Գործ. Ժողով

| | |
|---|---|
| Տիկ. Մարիամ Պիլլորեան | Ա. Ատենապետ |
| Տիկ. Նեկտար Թաչճեան | Բ. Ատենապետ |
| Օր. Քրիստինէ Արթինօֆ | Ա. Ատենադպիր |
| Օր. Մաննիկ Սեդրոսեան | Բ. Ատենադպիր |
| Օր. Երանուհի Զաքարեան | Ա. Գանձապետ |
| Օր. Մարիամ Անտոնեան | Բ. Գանձապետ |
| Օր. Նոյեմի Խոչէկիւլեան | Համարակալ[24] |

Բ. տարեշրջանին Ընկերութեան Մուտքն
է 193,989·50, Ելքը 26,266·75[25]: Իսկ Գ. տա-
րեշրջանի Մուտքն է 208,692,50[26]:

---

[24] Անդ, Թ. 2637: — Բ. Տեղեկագիր, Կ. Պ. 1881, էջ 16:
[25] Բ. Տեղեկագիր, էջ 17:
[26] Գ. Տեղեկագիր, էջ 53:

«Ազգանուէր Հայուհեաց Ընկերութիւն»ը ամէն պատրաստութիւն տեսնելէ յետոյ՝ 1880 Դեկտ. 1ին Քղիի Գաստապա Գիւղաքաղաքին մէջ կը բանայ իր առաջին աղջկանց վարժարանը՝ «Միացեալ Ընկերութիւնք Հայոց»ի միջոցաւ:

Վարժարանը չորս տարուան ընթացք մը կ՚ունենայ. երկու պատրաստողական կարգերով: Բացումի առեն վարժարանը կ՚ունենայ 99 աշակերտուհի եւ 1884ին կու տայ 2 շրջանաւարտուհի[27]:

Ընկերութեան երկրորդ վարժարանը կը բացուի Հաճընի մէջ 1881 Մայիս 23ին, ունենալով 71 աշակերտուհի եւ 3 նախապատրաստական կարգեր ու 3 բարձրագոյն դասեր[28]:

1883 Նոյ. 16ին Ընկերութիւնը կը յաջողի իր երրորդ վարժարանը բանալ Մուշի մէջ, 81 աշակերտուհիով եւ նախապատրաստական 1 եւ բարձրագոյն 3 դասարանով[29]:

Մասնաւոր դիմումի եւ խնդրանքի մը վրայ՝ Ընկերութիւնը 1884 Նոյ. 1էն սկսած յանձնառու կ՚ըլլայ օժանդակել Երզնկայի

---

[27] Մասիս, 1880, Թ. 2730, 1881, Թ. 2793: — Դ. Տեղեկագիր, Կ. Պ. 1885, էջ 18:

[28] Դ. Տեղեկագիր, էջ 19: — Տե՛ս Երկամեայ Տեղեկագիր, Կ. Պ. 1911, էջ 4 Հաճըն քաղաքի եւ էջ 18 աղջկանց վարժարանի Լուսանկարները:

[29] Գ. Տեղեկագիր, էջ 14: — Դ. Տեղեկագիր, էջ 20: — Թէրճ. Էֆ. 1883, Թ. 1633:

Քրիստինեան աղջկանց վարժարանին, ուր կային 163 աշակերտուհիներ՝ 1 նախապատրաստական եւ 5 կարգերով[30]:

1880ին Վիեննայի Հայ Գաղութը կը գրէ Ընկերութեան թէ ինքը յանձն կ'առնէ Ընկերութեան կողմէ բացուելիք վարժարաններու գրենական պիտոյքները հոգալ եւ ընել դրամական նպաստներ[31]:

1881ի սկիզբը Ընկերութիւնը Լսարան մը կը բանայ Սելամիէի «Կրթասիրաց Ընկերութեան» Ընթերցատան մէջ[32]:

«Ազգանուէր Հայուհեաց Ընկերութիւն»ը Պոլսէն դուրս ալ կ'ունենայ իր մասնաճիւղերը. 1880ին Կարին[33], 1881ին Երզնկա[34], 1882—1883ին Ռուսճուք եւ Իզմիր[35], 1884ին Պրուսա[36], Ադրիանապոլիս[37], 1890ին Ռոտոսթօ[38], 1913ին Ատափազար[39], եւ այլն:

Յովհաննէս Այվազովսկի գումար մը կը յատկացնէ Ընկերութեան, որուն տոկոսը՝ 100 Ֆր. կը խոստանայ ղրկել տարուէ տարի[40]:

---

[30] Գ. Տեղեկագիր, էջ 20—21:
[31] Փունջ, 1880, Թ. 1466:
[32] Մասիս, 1881, Թ. 2803: — Թէրճ. էֆքեար, 1881, Թ. 1021:
[33] Փունջ, 1880, Թ. 1493:
[34] Մասիս, 1881, Թ. 2835:
[35] Փունջ, 1883, Թ. 1834:
[36] Անդ, 1884, Թ. 1891:
[37] Հայրենիք, 1884, Թ. 1691:
[38] Արեւելք, 1890, Թ. 2303:
[39] Ժամանակ, 1913, Թ. 29:
[40] Գ. Տեղեկագիր, էջ 5:

*Ընկերութիւնը* 1882*ին կը ձեռնարկէ մեծ վիճակահանութեան մը: Այս առթիւ ամէն կողմէ կը տեղան պէսպէս եւ բազմաթիւ նուէրներ, ոչ լոկ սովորական եւ փոքր արժէք ներկայացնող առարկաներ, ինչպէս՝ պայուսակ, մետաքսէ թաշկինակ, գրքեր, այլ եւ թանկագին իրեր, օրինակ՝ ոսկի գինդեր, զարդեր, ասեղնագործ մեծ պատկերներ եւ ասոնք մեծ թուով, ինչպէս կը ցուցնէ հսկայ շարանը նուէրներու եւ նուիրատուներու*[41]:

1884*ին Ընկերութիւնը իր Հիմնական կանոնի* 21· *Յօդուածի հիման վրայ կ'ընդարձակէ իր գործունէութիւնը եւ նպաստը գաւառաց մէջ գտնուած եւ բացուելիք հայ աղջկանց վարժարաններու համար: Ընկերութիւնը այս առթիւ կը գծէ* 7 *մասնաւոր կէտեր՝ իր նպաստի եւ օժանդակութեան կերպերու եւ չափի մասին*[42]:

Տիկ. Նեկտար Զունիդ, *որ տարիներով վարած է Ընկերութեանս Ատենապետի պաշտօնը եւ մեծ արդիւնք ունի Ընկերութեան յառաջդիմութեան մէջ՝* 1887*ին կը ստանայ* երրորդ կարգի Շէփաfաթ*ի պատուանշանը*[43]:

*Ընկերութեան* չորրորդ *աղջկանց վարժարանը կը բացուի* Սղերդի *մէջ*, 1885*ին*[44]:

[41] *Տե՛ս* Թէրճ. էփfեար, 1882, *թ*. 1378:
[42] Փունջ, 1884, *թ*. 1887:
[43] Ծաղիկ, *Կ. Պ*. 1887, *էջ* 561:
[44] *Գ. Տեղեկագիր*, *էջ* 7—8. *Երկամեայ Տեղ*. 1911, *էջ* 5:

*Ատկէ քիչ ետքը բացուած է* հինգերորդ *վարժարանը Զարաանճագի* Բերրի Գիւղաքաղաքին *մէջ*[45]:

Ընկերութեան այս վարժարաններու շըրջանաւարտուհիները յետոյ պաշտօնավարած են շրջակայ աւաններու դպրոցներու եւ Ընկերութեան բացած վարժարաններու մէջ[46]:

*

*«Ազգանուէր Հայուհեաց Ընկերութիւն»ը իր այս մեղուաջան աշխատանքները շարունակած է յօգուտ կրթութեան եւ մտքի զարգացումի հայ իգական սեռին, ծրագիր եւ նպատակ ունենալով վարժարաններ բանալ* «Հայաստանի եւ Կիլիկիոյ ամէնէն յետին անկիւններն իսկ[47]»:

*Վրայ կը հասնին սակայն արհաւիրքի օրերը*. կ'արգիլուի հանգանակութիւնը, կը փակուին դպրոցները... *Ընկերութիւնը* 1893*ին իր վարժարաններու վերջին ծախքերը վճարելէ վերջ՝ ունեցած* 120 *ոսկին կը տանի Պատրիարքարան ու արցունքոտ աչքերով պահ կը դնէ՝ լաւագոյն օրերու ակնկառոյց*:

15 *տաժանելի, անգործութեան տարիներ անցնելէ վերջ՝* 1908 *Սեպտեմբեր 4ին Ընկերութիւնը* կը վերակազմուի *Բերայի Արուեստանոցին մէջ: Որքան մեծ էր Ընկե-*

[45] *Երկամեայ Տեղեկագիր*, 1911, *էջ* 5:
[46] *Անդ*, *էջ* 5:
[47] *Անդ*:

ութեան անդամուհիներու խանդավառութիւնը՝ նոյնքան խրախուսիչ կ'ըլլայ Հայութեան համատարած համակրանքը Ընկերութեան գաղափարականին ու գործունէութեան աշխոյժին հանդէպ: Մինչ մէկ կողմէ նոր Մասնաճիւղեր կը կազմուին Պոլիս, Հայաստան եւ արտասահման, միւս կողմէ նուիրատուութիւնները կը կրկնապատկուին: Ու Ընկերութիւնը քաջալերուած այդ ընդհանուր ցոյցերէն՝ կը նետուի ասպարէզ, լծուելով ազգանուէր աշխատանքի:

Այս անգամ կը նախընտրէ ինքն իր ձեռքով, անկախաբար, գործել: Ժամանակներն ու պարագաները փոխուած եւ Ընկերութիւնը ինքն ալ փորձառու եղած էր: Ամենուրեք վստահելի ներկայացուցիչներ կ'անուանէ, որոնց միջոցաւ կը սկսի գործել:

Առաջին տարին արդէն — 1908—1909 — կը բացուին աղջկանց վարժարաններ Մուշ, Զէյթուն եւ Հաճըն: Իբրեւ Տեսչուհի՝ Մուշ կը ղրկուի Օր. Իսկուհի Զիրինեան. Զէյթունի Տեսչուհի կ'ընտրուի Օր. Զարուհի Փէշտիմալճեան. Հաճընի Տեսչութիւնը կը վարէ առժամապէս Ներսէս վ. Դանիէլեան[48]:

Ընկերութեան գործունէութիւնը հազիւ նոր թափ առած՝ վրայ կը հասնի Կիլիկեան աղէտը՝ Ատանայի ջարդով սկիզբ առած: Բոլոր Կիլիկեան Որբանոցներու աղջկանց կրթութեան հոգը կը ստանձնէ Ընկե-

[48] Երկամեայ Տեղեկագիր, 1911, էջ 10—11:

րութիւնը։ Իր խնամքին ներքեւ կ՚առնէ Մարաշի, Տէօրդ-Եօլի, Այնթապի, Հասան-Պէյլիի, Հաճընի Որբանոցներու վարժարանները՝ անոնց գիրք, գրենական, ձեռագործի նիւթ գրկելով, ներկայացուցիչներ ու տեսուչուհիներ նշանակելով։

Առանձին ուշադրութեան առակայ կ՚ըլլայ աւերակ դարձած Ատանան, ուր կը գրկուի Տիկին Արշակուհի Թէոդիկ, որ մէկմէկ կը հաւաքէ դժբախտ որբուհիները, կը համախմբէ յարկի մը տակ, կը սրտապնդէ զանոնք, կ՚ընտրէ ուսուցչուհիներ, կը հսկէ ամէն կարգադրութեանց եւ ա՛յն ատեն կը մեկնի անկէ, երբ արժանաւոր անձեր կը փոխանորդեն զինքը։

Ատանայի Որբանոցին սատարած են նիւթապէս Պոլսոյ Մաքրիգիւղի «Կիլիկեան Որբախնամ Կանանց Ընկերութիւն»ը՝ առանձներով տարրական նախակրթարանի ծախքը, ինչպէս նաեւ Մելքոնեան Եղբարց զործատան նպաստից սնտուկը։ Այս նպաստներով Ընկերութիւնը Ատանայի մէջ կը բանայ դպրոց մը՝ ողբացեալ Յակոբ Պապիկեանի յիշատակին նուիրուած [49]։

Ընկերութեան բոլոր Որբանոց-դպրոցներու սանուհիներու խմբանկարները հրատարակուած են Ընկերութեան «Երկամեայ Տեղեկագրին» մէջ (1911 Կ. Պոլիս)։

---

[49] Երկամեայ Տեղեկ., էջ 11։

*Հոս մասնաւորապէս կ՚ուզենք յիշատակել «Ազգանուէր Հայուհեաց»ի նպատակով Ընկերութիւն մը* — Օրիորդաց Միութիւն — *կազմուած 1908ի վերջերը Բերայի մէջ (տե՛ս անդ՝ Թ. 50), նախաձեռնութեամբ* Օր. Մարինոս Ստամպօլլուեանի *եւ* Օր. Աւրինէ Տօնէլեանի, *որոնք իրենց անձնական ուժերով ցերեկոյթ մը կազմակերպած՝ չօշափելի գումար մը կը գոյացնեն եւ Ընկերութեան կը յանձնեն, մեծապէս նպաստելով Ընկերութեան՝ նեղ պարագային*[50]:

1908—1910*ի շրջանի Ընկերութեան Վարչական Մարմինները կը ներկայացնեն, Ընդհ. Ժողովի* 33 *անդամներէն դատ (Երկամեայ Տեղեկ., էջ* 299), *հետեւեալները.*

*Ընդհ. Ժողովի Դիւան*

| | |
|---|---|
| *Մաքրուհի Նորատունկեան* | *Ատենապետ* |
| *Սեզարին Տօքթ. Ճահպազ* | *Դեր–Ատենապետ* |
| *Արշակուհի Թէոդիկ* | *Ատենադպիր* |
| *Աչխէն Քաքմաճեան* | *Դեր–Ատենադպիր* |

*Գործադիր Ժողով*

| | |
|---|---|
| *Զապէլ Ասատուր* | *Ատենապետ* |
| *Բերկրուհի Փափազեան* | *Դեր–Ատենապետ* |
| *Հերիքա Ճայճեան* | *Ատենադպիր* |
| *Զապէլ Համբիկեան* | *Դեր–Ատենադպիր* |

---

[50] *Տե՛ս Միութեան Վարչական կազմը եւ անդամներու անունները, Երկամեայ Տեղեկագիր, անդ, էջ* 13:

| | |
|---|---|
| Վերժին Սթամպօլլուեան | Գանձապետ |
| Լուիզ Ղազարոսեան | Համարակալ |
| Փարիս Տօքթ. Աճէմեան | Խորհրդական |
| Սուլթան Եուսուֆեան | Խորհրդական |
| Մարի Միւհէնտիսեան | Խորհրդական[51]: |

Ընկերութեան կարեւոր ձեռնարկներէն մին կ'ըլլայ Վարժուհինոցի խնդիրը — վարժարան մը հիմնել, որ վարժուհիներ պատրաստէ Ընկերութեան վարժարաններու համար: Նախ կը խորհուի Տարօնի մէջ բանալ զայն: Յետոյ, աւելի կեդրոն տեղ մը նկատի առնուելով, կ'որոշուի զայն Կարնոյ մէջ բանալ:

Սուլթանի հովանաւորութեամբ մեծ պարահանդէսի մը միջոցաւ հարկ եղած նիւթականը ապահովելէ յետոյ՝ կը դիմուի Կարնոյ Սանասարեանի խնամակալութեան, որ յանձն կ'առնէ արտօնել իր ուսուցիչներուն՝ դասախօսելու բացուելիք Վարժուհինոցին մէջ: Վարժուհինոցը կը բացուի 1910ին Կարնոյ Հռիփսիմեանց վարժարանի շէնքին մէջ, որուն մէկ յարկը կը տրամադրուի Ընկերութեան: Աշակերտութիւնը կը կազմեն Հռիփսիմեանցի շրջանաւարտուհիներէն եւ շրջակայ գիւղերէն 30 օրիորդներ՝ ապագային Ընկերութեան վարժարաններու մէջ պաշտօնավարելու պայմանաւ, իսկ ուսուցչական մար-

[51] Երկամեայ Տեղեկ., էջ 29:

*մինը կը կազմուի* Գէորգ Աբուլեանի *Տեսչու-թեան տակ* 8 *ուսուցիչով եւ* 4 *ուսուցչու-հիներով*[52]:

*Ատանայի Թաղ. Խորհուրդը գնահատե-լով Ընկերութեան վարժարանի մէկ տարուան անակնկալ արդիւնքը՝ իր աղջկանց վարժա-րանը կը յանձնէ Ընկերութեան՝ հինգ տա-րուան պայմանագրով մը*:

1908*ի Ընկերութեան վերակազմութենէն մինչեւ* 1910*ի աշունը Ընկերութիւնը բացած է հետեւեալ վայրերու մէջ աղջկանց վարժա-րաններ*. Մուշ (*նախակրթարան եւ բարձրա-գոյն*), Սասուն (*Շէնըք Գիւղ*), Պոլանըք (*Կոփ Գիւղ*), Կարնոյ Դաշտ (*Օձնի Գիւղ եւ Չիթող Գիւղ*), Հազզօ, Կարին քաղաք (*Վար-ժուհինոց*), Ատանա (*նախակրթարան եւ բարձրագոյն*), Զէյթուն (*նախակրթարան եւ բարձրագոյն*), Հաճըն (*տարրական եւ բարձ-րագոյն*), Տարսոն, Մարաշ, Տէօրթ-Եօլ, Հասան-Պէյլի, Այնթապ, Ալպիստան, Եփե-սոս, Թալաս: *Գումար*՝ 23 *վարժարան*[53]:

1910 *Հոկտ. 23ի Ընդհ. Ժողովը կ՚ընտրէ յաջորդ նոր Վարչութիւնները*.

---

[52] *Անդ, էջ* 19:

[53] *Տես Երկամեայ Տեղեկ., էջ* 33—37, *ուր տրուած են նաեւ ուսման նիւթերը: — Կարնոյ Օձնի Գիւղի աղջկանց վարժարանի դրան վրայ թիթեղէ տախտակ մը կը տեսնուէր, չրջանակով, որուն վրայ գրուած էր. «Ազգանուէր Հայուհեաց Ընկերութեան Օձնիի օրիորդաց վարժարան* 1910. *Փետրուար* 18» (*Հ. Յա-կոբ Մ. Վ. Քոսեան, Բարձր Հայք, Բ., Վիեննա* 1926, *էջ* 24):

Դիւան Ընդհ. Ժողովոյ

| | |
|---|---|
| Տիկ. Սեդարին Տօքթ. Ծահպազ | Ատենապետ |
| Տիկ. Արուսեակ Հարենց | Դեր–Ատենապետ |
| Օր. Ատրինէ Տօնէլեան | Ատենադպիր |
| Օր. Արաքսի Գալրաքեան | Դեր–Ատենադպիր |

Գործադիր Ժողով

| | |
|---|---|
| Տիկ. Զարուհի Գալէմքեարեան | Ատենապետ |
| Տիկ. Արշակուհի Թէոդիկ | Դեր–Ատենապետ |
| Տիկ. Հայկանոյշ Մառք | Ատենադպիր |
| Տիկ. Խօժէնի Տ. Ազարեան | Դեր–Ատենադպիր |
| Տիկ. Փարիս Տօքթ. Աճէմեան | Գանձապետ |
| Տիկ. Լուիզ Ղազարոսեան | Համարակալ |
| Տիկ. Արեքնազ Մարտիկեան | Խորհրդական |
| Օր. Արուսեակ Թաշճեան | Խորհրդական[54]: |

1908—1910 Ընկերութեան ընդհանուր ծախքը եղած է 122,965 ղուրուշ, իսկ պահեստի գումարը՝ 234,407·75 ղուրուշ[55]:

1914ին Պոլսոյ ժամանակ կը գրէ որ «Ազ–

[54] Անդ, էջ 64:
[55] Բողբոջ, Մարզուան, 1912, էջ 13:

գանուէր Հայուհեաց Ընկերութիւն»ը 1879ին հիմնուելէ վերջ՝ 15 տարի 10 դպրոց պահած է գաւառներու մէջ. 1908—1914ին ունեցած է 39 վարժարան. իր տարեկան ծախքն է 2000 ոսկի. Պոլսոյ մէջ ունի 390 բաժանորդ, որոնցմէ կը գոյանայ միայն 200 ոսկի. այդ բացը գոցելու համար Ընկերութիւնը ստիպուած է հանգանակութիւն ընել, հանդէս տալ եւ Մասնաճիւղերէն նպաստ սպասել: Թերթը կը շեշտէ որ Ընկերութեան առջեւ անհուն ասպարէզ կայ գործունէութեան, քանի որ շատ ու շատ տեղեր — Հայաստան ու Կիլիկիա — տակաւին դպրոց չկայ: Թերթը չափազանց քիչ կը գտնէ Բարեգործականի 100 ոսկի նպաստը Ընկերութեան, մինչդեռ, կ'ըսէ, «կրնար ան աւելի մեծ չափով օգնել[56]»:

Զաւէն Պատրիարք, Հայութեան ուղղած մէկ Կոնդակին մէջ, 1914ին, Հայութեան մասնաւոր ուշադրութեան յանձնելով «Ազգանուէր Հայուհեաց»ը՝ կը յորդորէ որ օժանդակեն անոր, «որ հաստատուած է կրթութեան եւ դաստիարակութեան գործին ծաւալումը դիւրացնելու համար... եւ անմոռանալի արդիւնքներ տուած է եւ կու տայ[57]»:

Ընկերութիւնը 1915ի սկիզբը կը դադրի

[56] Ժամանակ, 1914, Թ. 1796:

[57] Անդ, Թ. 1861:

գոյութիւն ունենալէ․ իր գոյքերն ու դրամը կը յանձնէ Ս․ Պատրիարքին[58]:

1919 Մարտին Պատրիարք Զաւէն Արքեպ․ Տէր–Եղիայեան կը յորդորէ վերակազմել Ընկերութիւնը՝ «Ազգանուէր Հայուհեաց»ի գործունէութեան պէտքը զգալի ըլլալով[59]:

Որքան գիտենք՝ ա՛յլ եւս վերակազմուած չէ «Ազգանուէր Հայուհեաց Ընկերութիւնը», բայց անոր անդամուհիները նախաձեռնարկ եղած են հեռագրով Տիկին Ուիլսընի դիմում ընելու որ Մր․ Ուիլսըն «շարունակէ իր համակրութիւնը այս ազգին, որուն թշուառ կիները ու որբուհիները իրենց փրկութիւնը կ'ակնկալեն[60]»:

*

«Ազգանուէր Հայուհեաց Ընկերութեան» մասին մեր այս տեսութիւնը թերի պիտի մնար, եթէ զանց ընէինք գէթ հարեւանցի գծերով ներկայացնելու անոր Հիմնադրուհին:

Զապէլ Յ․ Խանճեանն ծնած է Սկիւտարի Սելամսըզ (Սելամիէ) թաղը 1863 Հոկտ․ 8ին (ըստ Կեանք եւ Արուեստի [1935, էջ 125] 1863 Յուլ․ 29ին եւ ըստ Նոր Լուրի [1934․ Թ․ 4801] 1858ին: Իր հայրն է ժամացոյցի վաճառական Յովհաննէս Խանճեան: Մանկու–

[58] Անդ, 1919, Թ․ 3464:
[59] Անդ:
[60] Անդ, Թ․ 3556:

թեան առաջին գործուն եղած է Տիկ. Կառիւսի փրանսական վարժարանը, միեւնոյն ժամանակ ստանալով տունը մասնաւոր դասեր: Յետոյ մտած է Ենիմահալլէի ձեմարանը, ուր ուսուցիչ ունեցած է Խաչատուր Միսաքեանն ու Սիմոն Ֆէլէկեանն եւ 1876ին շրջանաւարտ եղած է ձեմարանէն:

11 տարեկան էր, Ե. դասարանի աշակերտուհի, երբ 1874ին Հայրենիքի մէջ առջին անգամ կ'երեւայ «Պանդուխտն անմխիթար» ոտանաւորով մը[61]. քիչ ետքը լոյս կը ընծայէ իր երկրորդ բանաստեղծութիւնը՝ «Ողջոյն Հրաժեշտի»[62]:

Խանճեան մասնաւոր ձիրք ունեցած է գծագրութեան: Ներսէս Արքեպ. Վարժապետեանն Պատրիարքի դէմքը գծած ըլլալով՝ դրկած էր Ս. Պատրիարքին, որ 1877 Հոկտ. 5 թուակիր նամակով մը իր գոհունակութիւնն ու օրհնութիւնը կը գրկէ[63]:

---

[61] Հայրենիք, 1874, Թ. 191:

[62] Անդ, Թ. 204: — Մասիսի մէջ (1874, Թ. 1526) ընթերցողներ Յօդուածագիր մը տարկեր էր թէ Խանճեանի առաջին ոտանաւորը բանագողութիւն մ'է Խորէն Նարպէյի «Վարդենիք»էն: Որուն կը պատասխանէ ձեմարանի Տեսուչ Խորէն Քահ. Փէհլիվանեան թէ Խանճեան բանագողութիւն ընելու պէտք չունի, ան վարժ է ոտանաւոր գրելու. Քանի հատ ոտանաւոր գրած է, որոնք վարժարանի մէջ պահուած են տասնձին տետրակի մը մէջ՝ հետզհետէ հրատարակուելու համար: Եթէ Յօդուածագիրը կը փափագի՝ կրնայ վարժարան գալ եւ քննել Խանճեանի եւ իր ընկերուհիներու կարողութիւնը (Մասիս, 1874, Թ. 1539):

[63] Մասիս, 1877, Թ. 2039:

*Գրական կեանքի մէջ մուտք գործելէ յետոյ՝ Խանճեան գրած է առաւելապէս* Հայ Աստրէա[64], Օր. Ալիս. Անահիտ *եւ մանաւանդ* Սիպիլ[65] *ծածկանուններով: Իր երկերն են.* 1. Գործնական Քերականութիւն արդի Աշխարհաբարի՝ *տարրական, միջին եւ բարձրագոյն, որոնք բազմաթիւ տպագրութիւն ունեցած են.* 2. Թանգարան, *տարրական, միջին եւ բարձրագոյն, որոնք նոյնպէս շատ տպագրութիւն տեսած են.* 3. Գործնական դասընթացք փրանս.-հայ. թարգմանութեան. 4. Ցոլքեր. 5. Աղջկան մը սիրտը. 6. Մագնիս. 7. Կնոջ հոգիներ:

*Զապէլ Խանճեան* 1881*ին* (*ըստ Նոր* Լուրի՝ [1934, *Թ*. 4801] 1882*ին*) *ամուսնացած է* Պ. Կ. Տօնէլեանի *հետ եւ ունեցած աղջիկ մը՝* Ատրինէ: *Ամուսնութեան առաջին* 8 *տարիները անցուցած է Պիլէճիկ, Պրուսա եւ Անկիւրիա, միշտ մօտէն հետաքրքրուելով այդ տեղերու կրթական գործով: Պոլիս վերադարձած է* 1889*ին: Ամուսնոյն մահէն վերջ՝* 1901*ին կը պսակուի ծանօթ գրագէտ* Հրանտ Ասատուրի *հետ, որմէ կ՚ունենայ նոյնպէս աղջիկ մը՝* Էմմա:

*Տիկ. Զապէլ Ասատուր բեղուն գործունէութիւն ունեցած է* ուսուցչական *ասպարէզի վրայ՝ երկար տարիներ դասախօսելով Էսայեան, Կեդրոնական եւ Համազգեաց վար-*

[64] *Անգ.*, 1879, *Թ*. 2360:
[65] *Թէոդիկ, Ամէն. Տարեց.* 1911, *էջ* 243:

*ժարաններու մէջ ո՛չ թէ իբրեւ սովորական ուսուցչուհի մը, այլ իբրեւ* նոխութիւն *մը Հայերէն արդի լեզուի եւ գրականութեան:*

*Հանրային գործունէութեան սկիզբ կրնայ նկատուիլ* 1874 *տարին, երբ՝ թելադրութեամբ ձեռագործի ուսուցչուհի* Սրբուհի Աշնեանի՝ *քանի մը ընկերուհիներով հիմը կը դնէ իրար օգնութեան կազմակերպութեան մը* — Նպաստամատոյց Ընկերութեան — *նպատակ ունենալով* աղքատ աղջկանց գրեՆակաՆ պիտոյքը հոգալ [66]:

*Իր գլուխ գործոցը պիտի մնայ սակայն* «Ազգանուէր Հայուհեաց Ընկերութիւն»*ը, որուն ո՛չ միայն հիմնադիրը, այլ եւ հոգին եղաւ զոհելով անոր իր կեանքին լաւագոյն ժամանակը, իր մտքին ամբողջ տաղանդը եւ ազգին համար գործելու եւ օգտակար ըլլալու իր բովանդակ աշխոյժը:*

*Վատ եղան ժամանակներն ու պարագաները ու թոյլ չտուին որ «Միացեալ Ընկերութիւնն» ու «Ազգանուէր Հայուհեաց»ը ողողեն Հայաստանը մանչերու եւ աղջկանց վարժարաններով, մինչեւ յետին գիւղն իսկ օժանելով փոքրիկ դպրոցով մը: Անոնց ամէնէն աշխոյժ գործունէութեան պահերուն՝ պետական արգելքները քանդիչ ու խափանիչ դեր կատարեցին:*

---

66 *Հմայեակ քահ. Էքսէրճեան, Յիշատակարան յիսնամեայ Յոբելեանի երից Թաղից Աղքատախնամ Հոգաբարձութեան Սկիւտարու, Կ. Պ.* 1930, *էջ* 192:

Հրանտ Աստուրի մահէն վերջ (1929 Յունիս 5) Տիկ. Զապէլ Աստուր տառապագին կեանք մ'անցուցած է մերթ հիւանդանոցի եւ մերթ իր Բերայի տան մէջ դարմանուելով: 1934 Յունիս 19ին կը կնքէ իր բեղուն կեանքը: Ազգային փառայեղ յուղարկաւորութեամբ մը վերջին արժանի յարգանքը կը մատուցուի եւ կը թաղուի Շիշլիի գերեզմանատունը[67]:

Տիկ. Զապէլ Աստուր՝ իբրեւ գրագիտուհի, հեղինակ եւ հանրային գործիչ՝ հայ իգական սեռի մեծագոյն դէմքերէն մին է:

## 21. ՊԷՐՊԷՐԵԱՆ ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

Կազմուած է 1879 Յունիս 1ին: Ընկերութիւնը 5 ոսկի դրկելով Դպրոցասիրաց — Արեւելեան Ընկերութեան՝ նամակի մը մէջ կու տայ հարկ եղած բացատրութիւնը Ընկերութեան մասին: Ահա այդ նամակը.

Տէր, 1879 Յունիս 1ին վարժարանիս (Պէրպէրեան) աշակերտներն մի Ընկերութիւն կազմեցին, նպատակ ունենալով Հայաստանի մէջ ուսումն տարածելու պաշտօն ստանձնող Ընկերութեանց օգնել: Այն Ընդհ. ժողովոյ մէջ, որ գումարեցաւ Հոկտ. 14ին, Գործ. ժողովս առաջարկեց, իբր սկզբնաւո–

---

[67] Տե՛ս Ամէնուն Տարեցոյց, 1911, էջ 242—243: — Կեանք եւ Արուեստ, 1934, էջ 127—128 եւ 1935, էջ 125: — Նոր Լուր, 1934, Թ. 4801, 4804: — Առիթ չենք ունեցած տեսնելու Թ. Ազատեանի գործը, Զապէլ եւ Հրանդ Աստուր, Կ. Պ. 1937:

*ութիւն մը իր նպատակի գործադրութեան՝ 5 տարւոյ գումար մը յղել ձեր ազգաշէն Ընկերութեան եւ այս առաջարկն բոլոր ժողովոյն կողմէն միաձայնութեամբ ընդունուեցաւ: Ներեցէք սակայն եթէ կը համարձակիմք այսքան փոքր գումար մը իբր նպաստ ղրկել ձեզ. գիտէք թէ Ընկերութեան մը առաջին քայլերն, ինչպէս մի մանկան, խիստ տկար են.* ժամ մի յառաջ մեր կարօտ Հայրենեաց օգնելոյ փոյթն *մղեց զմեզ այս որոշման...:*

*Դիւան Գործ. Ժողովոյ* Պէրպէրեան Սանուց Ընկերութեան.

| | |
|---|---|
| *Ատենադպիր* | *Ատենապետ* |
| *Վահան Յ. Մամասեան* | *Յովհ. Թ. Արամեան*[68] |

*Ընկերութիւնը* 1880*ին* 5 *ոսկի կը յանձնէ Խասգիւղի* Կիլիկեան Ընկերութեան՝ *ի նպաստ Զէյթունի Կիլիկեան վարժարանին*[69]: 1881*ին ալ* 5 *ոսկի կը ղրկէ* Դպրոցասէր Հայուհեաց Ընկերութեան[70]:

*Կը կարծենք թէ Ընկերութիւնս պահած է իր գոյութիւնը մինչեւ* 1895, *թէեւ* 1881*էն ասդին չունինք որ եւ է նշմար իր մասին:*

*Ալպօյաճեանի ցանկին մէջ չենք գտներ Ընկերութիւնս:*

68 Թէրճ. Էֆքեար, 1879. Թ. 706:
69 Մասիս, 1880, Թ. 2563:
70 *Անդ*, 1881, Թ. 2805:

1908էն վերջը կազմուած «Պէրպէրեան Սանուց»ը շարունակութիւնը չէ այս Ընկերութեան:

21ա. ԱԶԳԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

Հիմնուած է 1879 Նոյ. 4ին (Լրագիր, Կ. Պ. 1879, Թ. 1118): Ուրիշ տեղեկութիւն չունինք:

22. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

Սելամիէ, ինչպէս տեսանք նախապէս, ունեցած է իր «Աղքատասիրաց Ընկերութիւն»ը, որ երկար տարիներ տեւած չէ: Սակայն Թաղին մէջ հինէն ի վեր երկար ատեն գոյութիւն ունեցած է «Տնանկ աղքատաց Հոգաբարձութիւն» մը, որ կանոնաւոր «Տոմար» մ'ալ ունեցած է, ինչպէս գեղեցիկ կերպով ցուցուցած է Հմայեակ Քահ. Էքսէրճեան[71]:

Սելամիէ Թաղին մէջ 1879էն սկսած պէտք տեսնուած է յատուկ կազմակերպութեան մը՝ Թաղին աղքատ եւ հիւանդ անդամները խնամելու համար[72]: Ընկերութիւն մը հիմնելու գաղափարը կը յղանայ Համբիկ Ռուբէնեան կամ Մանուէլեան: 1880 Յուլիս 19ին կը հիմնուի Ընկերութիւնը: Ս. Խաչ վարժարանին մէջ հաւաքուած 70 աղքատասէր անձեր Ընդհ. Ժողով գումարելով՝ կ'ըն–

---

[71] Տես Յիշատակարան, անդ:
[72] Անդ, էջ 44—46:

տրեն Մայր Դիւան եւ Տնօրէն Խորհուրդ «Աղքատախնամ Ընկերութեան», որուն գեղակերտ գանձանակը կը շինէ Պապաճեան Ծիշմանեան[73]:

Ընկերութիւնը կը հիմնուի նախ միայն Սելամիէ թաղին համար. յետոյ երբ հետզհետէ Սկիւտարի միւս թաղերէն ալ անդամներ կը գրուին եւ Ընկերութիւնը միւս թաղերուն աղքատներն ալ կը խնամէ[74]՝ 1883ին գումարուած Ընդհ. ժողովը Ընկերութեան Կանոնագիրը կազմած ատեն՝ անոր ճակատը կը գրէ. «Նպատակն է Սկիւտարի Երից թաղից հիւանդ աղքատները ծրիաբար դարմանել»[75], որմէ յայտնի կ'ըլլայ թէ 1883էն սկսած Ընկերութիւնը կը վերածուի «Երից թաղից Աղքատախնամ Ընկերութեան» մը:

Կանոնագիրը կը բաղկանայ 30 Յօդուածէ, սովորական բովանդակութեամբ: Անդամավճարն է՝ շաբաթական 20 փարա:

Ընկերութեան Ընդհ. ժողովներուն նախագահած են Մատթէոս Եպս. Իզմիրլեան, Մկրտիչ Արքեպ. Խրիմեան եւ Գրիգորիս Եպս. Ալէաթճեան, իսկ Վարչական անդամներու անունները, յաջորդական տարիներու մէջ, կը գտնէ հետաքրքրուողը Էքսէրճեանի վերոյիշեալ գործին մէջ (էջ 48—169):

---

73 Անդ, էջ 46:
74 Հմմտ. Թէրճ. Լփֆեար. 1882, Թ. 1338:
75 Յիշատակարան, անդ, էջ 47:

Ընկերութեան հիմնադիրներն են.

Տօքթ. Պետրոս Ըէիզեան
Համբիկ Ռուբէնեան
Անթուան Ռոզոլաթթօ
Միհրան Գարամաճեան
Գաբրիէլ Արբաճեան
Գէորգ Խաչատուրեան
Վաղինակ Փափազեան[76]:

Ընկերութեան գործունէութեան մասին արդէն 1881ին գովեստով կը խօսուի[77]: 1880—1885 տասնեակ հազար դուրուշ ծախսելով դարմանած է հարիւրաւոր աղքատ հիւանդներ: Միայն 1885ին աւելի քան 200 հիւանդ դարմանած է[78]:

Աղքատախնամը 50 տարի անընդհատ կը գործէ եւ ոչ միայն Սկիւտարի երեք թաղերու, այլ եւ անկէ դուրս կը տարածէ իր խնամքն ու հոգածութիւնը աղքատին, հիւանդին, որբին ու այրիին: 50ամեայ գործունէութեան Յոբելեանը կը տօնուի 1930ին եւ այդ առթիւ լոյս կը տեսնէ Հմայեակ Քահ. Էքսէրճեանի գրչէն Յիշատակարան Յիսնամեայ Յոբելեանի երից թաղից Աղքատախնամ Հոգաբարձութեան Սկիւտարի (Կ. Պ. 1930),

---

76 Անդ, էջ 155:
77 Մասիս, 1881, Թ. 2813:
78 Սիմոն Գարամաճեան, Յուշատետր, Կ. Պ. 1885, էջ 5—8:

*որ մանրամասնօրէն կը պատկերացնէ Ընկերութեան կեանքը:*

1930*էն վերջ ալ չարունակած է Ընկերութիւնը իր աղքատախնամ գործունէութիւնը:*

23. ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (?)

*Թորգոմեանէ*[79] *յիշուած է Ընկերութիւնս, առանց որեւէ անդրագոյն լուսաբանութեան: Ոչ մէկ յիշատակութեան հանդիպած ենք հայ թերթերու մէջ:*

24. ԽՆԱՅՈՂԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (?)

*Այս ալ միայն Թորգոմեանէ կը յիշուի*[80] *Սելամիէի Ընկերութեանց կարգին, բայց ծանօթութիւն կը պակսի:*

25. ՍԱՆՈՒՑ ԵՒ ՍԱՆՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1882)

*Հիմնուած է* 1882 *Մայիս* 24*ին: Ընկերութեան «Գործադիր Անդամք» կը գրեն.*

*«Ս. Խաչ վարժարանի* Երկսեռ Սանունիքս՝ *աջակցութեամբ Պատ. Հոգաբարձութեան եւ Ընդհ. Դաստիարակին* Սանուց եւ Սանուհեաց *անուն* Ընկերութիւն *մը հաստատած ըլլալով՝ որոշած ենք բաժանորդագրութեան հասոյթը... յատկացնել* աղքատիկ ուսանողաց դպրոցական պիտոյից...:

79 *Երեմ. Չէլէպ., Գ., էջ* 141:
80 *Անդ:*

## Սանուց եւ Սանուհեաց Ընկերութեան

| | |
|---|---|
| Ատենապետ | Մարտիրոս Ն. Արոյճեան |
| Ատենադպիր | Համազասպ Ս. Խաքեան |
| Գանձապետ | Սահակ Ս. Ֆէսճեան |
| Հաւաքիչ | Յարութիւն Աւետիս |
| Թանգարանապետ | Արմենակ Ս. Սեդրոսեան[81] |

*Ընկերութեան* կանոնագրութիւնը *կազմուած է* 15 *կէտերէ: Տեսնենք կարեւորները.*

*Ա. Ընկերութեան նպատակն է* դպրոցական նիւթեր եւ ուսումնական առարկաներ *գնել աշակերտաց գործածութեան համար:*

*Բ.* Աղքատ եւ կարօտ ընկերակցաց դասագիրք, թուղթ եւ մելան եւլն. ձրիաբար հայթայթել:

*Գ. Ընկերութիւնս բաժանորդական է.* իւրաքանչիւր բաժինն է շաբաթը տասը փարայ: *Ուզողն մէկ բաժինէ աւելի կրնայ գրուիլ.*

*Ե. Եթէ հասոյթից աղբիւրներն առատանան՝* կարօտ ընկերակցաց մինչեւ իսկ հանդերձեղէն տալ *եւ գրօսանքի ատեն* կարդալու համար զանազան լրագրաց բաժանորդ գրուիլ եւ Թանգարանին ճոխացնել:

---

81 Թէրճէմանը էֆքեար. 1882. Թ. 1445:

է. Ընկերութեանս հաշուեցոյցը ամէն տարեդարձի Ս. Եկեղեցւոյ բակը պիտի կախուի ի տես հասարակութեան։

Թ. Ընկերութեանս մատակարարութիւնը պիտի կատարուի աշակերտաց միջոցաւ, որոնք կը կազմեն Գործադիր Մարմինն, որ կ'ընտրուի ի դիմաց աշակերտաց[82]։

Ընկերութիւնը կրցած է ունենալ իր մատենադարանը[83]։

## 26. ԲԱՐԵՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1885)

Կազմուած է 1885 Փետրուարին Սելամիէի երիտասարդներէն՝ օրինակ առնելով «Բարեգործական Ընկերութիւն»ը։ Ունեցած է իր Կանոնագիրը, մեզի անծանօթ։ Ընկերութեան Գործադիր ժողովի առաջին անդամներն եղած են.

| | |
|---|---|
| Տիգրան Սվաճեան | Ատենապետ |
| Գ. Աճէմեան | Ատենադպիր |

Ընդհ. ժողովի Վարչութիւնը

| | |
|---|---|
| Բարսեղ Աւետիսեան | Ատենապետ |
| Մանուկ Տէր Յակոբեան | Ատենադպիր |

Ընկերութիւնը Թաղ. Խորհուրդի աջակցութեամբ հասութաբեր խանութ մը կը շինէ՝ վրան սենեակով։ Իսկ 1890 Փետր. 25ին 19 աղքատ աշակերտի եւ 41 աշակերտուհիի զգեստ կը շինէ։

---

[82] Անդ։

[83] Արեւելք, 1898, Թ. 3883։

*Ընկերութեան վերջին Գործ. Ժողովը կազմած են հետեւեալները.*

| | |
|---|---|
| *Յովակիմ Գալէմքեարեան* | *Ատենապետ* |
| *Յակոբ Մրմրեան* | *Ատենադպիր* |
| *Մ. Պամպաճեան* | *Գանձապետ* |
| *Մ. Գասպարեան* | *Համարակալ* |
| *Լեւոն Ճիշմանեան* | *Անդամ* |
| *Մ. Գազազեան* | *Անդամ* |
| *Ալեքսանդր Գույումճեան* | *Անդամ* |

*«Բարեսիրական Ընկերութիւն»ը* Լատ–րանն *այ ունեցած է, ուր խօսած են Նար–Պէյ եւ Օրմանեան Սրբազանները, Պէրպէրեան եւ ուրիշներ, որոնց ճառերէն ոմանք տպուած եւ ծախուած են ի նպաստ Ընկերութեան:*

*Ընկերութիւնս կը դադրի 1892ին, բայց իր գործը կը շարունակուի ուրիշ անունով*[84]:

*«Բարեսիրական Ընկերութիւնը»* կը վեկազմուի 1913*ին, ունենալով առաջին Դիւան.*

| | |
|---|---|
| *Տօքթ. Խորխոռունի* | *Ատենապետ* |
| *Գ. Բիւրատեան* | *Ատենադպիր* |

*Իր նպատակը կ՚ըլլայ՝ Թաղին վարժարանին յառաջդիմութեանը նպաստել բարոյապէս եւ նիւթապէս*[85]:

---

[84] *Հմայեակ Քահ. Էքսէրճեան, Յիշատակարան, անդ, էջ* 196—198:

[85] Ժամանակ, 1913, *Թ.* 1600:

## 27· ԿԱՐՕՏ ՈՒՍԱՆՈՂԱՑ ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹԻՒՆ
(1892)

*Սելամիէի «Բարեսիրական Ընկերութեան» դադարումէն վերջ՝ կը կազմուի նոր Ընկերութիւն մը՝* «Կարօտ Ուսանողաց Խնամակալութիւն» *անունի ներքեւ, որ կ՚ունենայ իր* Կանոնագիրը *եւ հետեւեալ նպատակները.*

1· *Ա. Խաչի երկսեռ վարժարանաց աղքատ աշակերտաց գրենական պիտոյքը հոգալ.*

2· *Այդ աշակերտաց ցերեկեայ ճաշը տալ.*

3· *Երկսեռ վարժարանաց գրասեղանները շինել.*

4· *Այդ աշակերտաց տարին մի անգամ զգեստ պատրաստել.*

5· *Մանկապարտէզի փոքրիկներուն գրպանի տարկաներ հոգալ.*

6· *Զրխավարժ աշակերտներէն արժանաւորագոյնները բարձրագոյն կրթարան ղրկել եւ անոնց երթեւեկի ծախքերը հոգալ:*

*1892ին վերջերը կ՚ընտրուի — Թաղ. Խորհուրդէն — առաջին Գործ. Ժողովը.*

| | |
|---|---|
| *Յովակիմ Գալէմքիարեան* | *Ատենապետ* |
| *Աղեքսանդր Գույումճեան* | *Ատենադպիր* |
| *Լեւոն Բէյնիրճեան* | *Գանձապետ* |
| *Յակոբ Մրմրեան* | *Համարակալ* |

Ուշագրաւ է որ Ընկերութեան Գործ. Ժողովը Թաղականութենէ կ'ընտրուի: Յայտնի է որ 1890—1908ի շրջանը Թրքահայութեան ընկերական կեանքի եւ գործունէութեան ամէնէն յոռի շրջանն է, ուր համիդեան սարսափը գրեթէ մեռելութեան պարտադրած էր Հայ Մշակ. Ընկերութիւններու: Այդ շրջանին «Ընկերութիւն» բառն անգամ բերան առնելու չէր: Այս է պատճառը որ Հրանտ Ասատուր 1901ի ընդարձակ Տարեցոյցին մէջ «Ընկերութիւն» բացատրութեան տեղ՝ «խումբ» կամ «ակումբ» կը գործածէ (Հմմտ. անդ՝ էջ 231):

«Կարօտ Ուսանողաց Խնամակալութիւն»ը իր գոյութիւնը կը պահէ 1892—1921 եւ կը գործադրէ իր նպատակները՝ աղքատ աշակերտներու զգեստ կարելով, մանկապարտէզի եւ վարժարանին գրասեղաններ շինելով, աղքատ տղոց գրենական պիտոյք եւ ձեռագործի նիւթ հայթայթելով:

1921ին կը դադրի Ընկերութիւնը[86]:

28. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

Հիմնուած է 1908 Յուլիսին, նպատակ ունենալով «ժողովրդային զարգացումը ֆիզիկական, իմացական եւ բարոյական տեսակէտներով[87]»:

---

[86] Տե՛ս Հմայեակ քահ. Էքսէրճեան, Յիշատակարան, անդ, էջ 198—200:
[87] Սուրհանդակ, 1908, Թ. 101:

1908 *Սեպտեմբերին* կը միանայ «Յառաջդիմական ազատական Ակումբ» *Ընկերութեան հետ*[88]:

29. ՅԱՌԱՋԴԻՄԱԿԱՆ ԱԶԱՏԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ (1908)

*Կազմուած կ'երեւայ* 1908 *Յուլիս–Օգոստոսին: Իր ծրագիրն ու նպատակը անծանօթ է:* 1908 *Սեպտեմբերին կը միանայ* «Ուսումնասիրաց Միութեան» *հետ՝ իր խնդրանքով*[89]:

30. ԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

1908 *Սեպտ. 26ին իր* առաջին *ներկայացումը կու տայ Պազլար Պաշըի թատրոնին մէջ, դերասանապետութեամբ* Խ. Նորիկեանի: *Թատերախաղն է Թ. Թէրզեանի «Նահատակութիւն Սրբուհի Սանդուխտի*[90]»:

*Թատերական Ընկերութիւն մ'եղած կ'երեւայ:*

31. «ՐԱՖՖԻ» ԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Հիմնուած է* 1908*ին*[91]: 1910*ին երեկոյթ կու տայ*[92], *անչուշտ բանախօսութիւններով*: 1918—1919*ին միացած է Սելամիէի* «Յառաջդիմական Միութեան» *հետ՝ վերանուելով* «Րաֆֆի Յառաջդիմական Միութեան»:

---

88 *Անդ*:
89 *Անդ*:
90 *Անդ*, *Թ*. 99:
91 Մարմնամարզ, *Կ. Պ.* 1913, *էջ* 162:
92 Ժամանակ, 1910, *Թ*. 469:

### 32. ՅԱՌԱՋԴԻՄԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

Կազմուած է 1908ին[93]: 1913ին ունէր իր յատուկ սրահը՝ բանախօսութեան եւ հաւաքոյթներու համար: Եղած է մարզական Միութիւն մը:

Միութիւնը 1918—1919ին միանալով «Րաֆֆի» Լսարանական Միութեան» հետ՝ կ'ունենայ աւելի աշխոյժ կեանք:

### 33. ՏԻԿՆԱՆՑ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԻՒՆ (1908)

Սուրհանդակ[94] կը յիշէ Ընկերակցութիւնս, որ 1908 Հոկտ.ին ցայգահանդէս սարքած է, ուր Արշակ Զօպանեան «Ակնցիներու բանաստեղծութեան» վրայ կը բանախօսէ: Ընկերութեան Ատենապետն է Տիկ. Արշակուհի Թէոդիկ:

Ընկերակցութիւնը 1920 Հոկտ. 18ին վերակազմուելով՝ կը կոչուի «Սկիւտարի Տիկնանց Միութիւն»: Իր Վարչական Մարմիններն էին.

Ընդհ. Ժողովի Դիւան

| | |
|---|---|
| Տիկ. Կիւլիկ Հայէպլեան | Ատենապետ |
| Օր. Ա. Փափազեան | Ատենադպիր |

Վարչական Ժողով

| | |
|---|---|
| Տիկ. Տօքթ. Օֆէլիա | Ա. Ատենապետ |
| Օր. Գ. Պէյպիշ | Բ. Ատենապետ |
| Օր. Մ. Եօրօճեան | Ա. Ատենադպիր |

---

[93] Մարմնամարզ. 1913, էջ 161—162:
[94] 1908, Թ. 115:

Օր · Վ · Գէորգեան　　　　Բ · Ատենադպիր
Օր · Ա · Թադւորեան　　　　Գանձապետ
Օր · Զ · Զադրճեան
Օր · Ա · Յովակիմեան[95]

Միութիւնը փութացած է օգնութիւն հասցնել Սկիւտարի մեծ հրդեհէն վնասուողներուն[96], որուն համար հայ թերթը կը գրէ · «· · · խղճի պարտք մըն է մեզի համար յիշատակել այն անձերը եւ մարմինները, որոնք այդ անմիջական օժանդակութեան մէջ իրենց բաժինը բերին անձնուիրօրէն: Առաջին գծի վրայ պէտք է յիշել Սկիւտարի Տիկնանց Միութիւնը, որուն ներկայացուցիչները՝ Տիկնայք Պօյաճեան, Հալէպեան եւ բժշկուհի Տիկ · Օփէլեա, ադէտին առաջին օրէն սկսած իրենց անձնուէր ջանքերը կը շարունակեն ցարդ իրենց ընկերուհիներուն հետ[97]» :

34 · ԱԶԳԱՆՈՒԷՐ ՕՐԻՈՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

Հաւանօրէն կազմուած է 1909ին, Սկիւտար: «Ազգանուէր Հայուհեաց Ընկերութեան» 1908—1910ի «Երկամեայ Տեղեկագիր»ին մէջ հետեւեալ տեղեկութիւնը կը տրուի Ընկերութեանս հիմնումի մասին · «Նորափթիթ օրիորդներ · Աննա Նաքաշեան, Աննա Սեւեան, Արմինէ Մելիքեան, Արփինէ

---

[95] Ժողովուրդի Ձայնը, 1920, Թ · 618: — Թէոդիկ, Ամէն · Տար · 1921, էջ 304:
[96] Ժողովուրդի Ձայնը, 1921, Թ · 869:
[97] Անդ, Թ · 880:

Աճէմեան, Եւգինէ Մէհտէրեան, Էմմա Ասատուր, Հնազանդ Նարկիլէճեան, Նարդիկ եւ Նարկիզ Փանոսեան, Նուարդ Պօշնաևեան *մխանալով*, Ազգանուէր Օրիորդաց Միութիւն *անուան ներքեւ, վիճակահանու-թիւն մը սարքեցին Բերայի մէջ եւ հասոյթը յատկացուցին մեր վարժարաններուն . . . : Հակառակ իրենց չատ փոքր հասակին, այն-քան լուրջ եւ կանոնաւոր գործունէութիւն մը ցոյց տուին որ մեծ յոյս կու տայ մեզի թէ օր մը Ընկերութեանս յաւագոյն գործիչները պիտի ըլլան եւ արժանապէս վարեն զայն*[98]» :

*Միութեան վիճակահանութենէն ունե-ցած հասոյթն է* 1672 *ոսկի*[99] :

35. ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ ԻՆՔՆԱԶԱՐԳԱՑՈՂԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908—1909)

*Մարզական Ընկերութիւն մըն է Սելա-միէի «Ցառաջդիմական Միութեան» եւ «Րաֆֆի Միութեան» հետ յիշուած* 1911 *Ապրիլին*[1] :

36. «ԲԱԶՈՒԿ» ՄԱՆԿԱՊԱՏՇՏԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

*Կազմուած է* 1911*ի սկիզբը* : *Ունեցած է իր Ծրագիր–Կանոնագիրը*[2] : 1912*ին կը սարքէ վիճակահանութիւն մը*[3] : *Իր մասին կը գրէ*

---

[98] *Երկամեայ Տեղեկագիր*, 1911, *էջ* 9:
[99] *Անդ*, *էջ* 60:
[1] Մարմնամարզ, 1911, *էջ* 89: — *Տե՛ս նաեւ* Այսօր, *Փարիզ* 1952, *թ*. 536:
[2] Ժամանակ, 1911, *թ*. 736:
[3] *Անդ*, 1912, *թ*. 998. 1913, *թ*. 1647:

էքսէրճեան[4]. «1911ին Սկիւտարի երեք թաղերէն քանի մը երիտասարդներ միանալով՝ կը ձեռնարկեն Բազուկ մանկապաշտպան Միութիւն մը կազմելու, նպատակ ունենալով որբ տղաքները պատսպարել տան մը մէջ՝ անոնց սնունդը եւ կրթութիւնը ստանձնելով»։

1914ին տպուած քարտի մը վրայ կը տեսնուի Միութեան խնամած Որբերու մէկ խմբանկարը — 13 տղաք եւ Տիկին մը, որ անշուշտ մայր — խնամակալուհին է։

Միութեան Դիւանը կը կազմէին 1914ին.

| | |
|---|---|
| Պետրոս Աղապէյեան | Ատենապետ |
| Սիմոն Արաճաճեան | Ատենադպիր |

Դիւան 1915ին

| | |
|---|---|
| Թորգոմ Պօյաճեան | Ատենապետ |
| Ղեւոն Յովհաննէսեան | Ատենադպիր |

Վարչական Խորհուրդ 1916ին.

| | |
|---|---|
| Սեփոն Դուրեան | Ատենապետ |
| Գրիգոր Յովակիմեան | Ատենադպիր |
| Երուանդ Պարսամեան | Գանձապետ |
| Պետրոս Աղապէկեան | Համարակալ |
| Համբարձում Զուխաճեան | Մատակարար |
| Գաբրիէլ Իրէքճեան | Դեր–Մատակարար |
| Կարապետ Ալիքսաննեան | |
| Մ. Տօնէյեան | |
| Մ. Եզնիկեան | |
| Ղեւոն Յովհաննէսեան | |

[4] Յիշատակարան, էջ 210։

*Այս Միութիւնը իր պաշտօնը կը շարունակէ մինչեւ 1916ի վերջերը՝* ունենալով իր հսկողութեան տակ մինչեւ տասներկու որբեր *եւ այդ թուականէն վերջ Միութեան անդամները զինուորական ծառայութեան կոչուելով Պոլսէն կը մեկնին Ս. Խաչի Թաղ. Խորհրդոյ յանձնելէ յետոյ իրենց գոյքերն ու դրամը*[5]:

37. ՀԱՅ ՄԱՐՄՆԱՄԱՐԶԱՐԱՆ ԱԿՈՒՄԲ (1912)

*Կը կոչուի նաեւ* «Հայ Մարմնամարզարան Միութիւն[6]»: *Հիմնուած կ'երեւայ 1912ի վերջերը: Հիմնադիրն է* Մ. Մկրեան: 1913 *Մայիս* 26ին *Միութեան* տարեկան մրցումները *տեղի ունեցած են: Միութեան գործունէութիւնը կը յիշուի յաճախ, մերթ քննադատուելով*[7]:

38. «ԱՐՏՕՍՐ» ՕՐԻՈՐԴԱՑ ՈՐԲԱԽՆԱՄ ՄԻՈՒԹԻՒՆ (1912—1913)

*Այս անունին առաջին անգամ* 1913 *Օգոստոսին հանդիպած ենք:* Հեռաձայն (Ժամանակ) *կը գրէ. «Սեպտ.* 4 *Չորեքշաբթի գիշեր, Սկիւտար Թէփէի թատրոնին մէջ ժամը 9ուկէսին, ի նպաստ Սկիւտարի* «Ար-

---

[5] *Ցիշատակարան, անդ,* *էջ* 210—211:

[6] Մարմնամարզ, 1913, *էջ* 88:

[7] *Տե՛ս* Ժամանակ, 1914, *թ.* 1821: — Ժողովուրդի Ձայնը, 1921, *թ.* 890, 983: — *Թէոդիկ, Ամէն. Տարեց.* 1921, *էջ* 308:

տօսր» Օրիորդաց Որբախնամ Միութեան, Ֆէլէկեան թատերախումբը կը ներկայացնէ «Քոյր Թերեզա» տրամ 2 արար, ինչպէս նաեւ խիստ գեղեցիկ վաւեշտ մը[8]»:

Հաւանական է որ հիմնուած ըլլայ 1912—1913ին:

## 39. ՊԷՐՊԷՐԵԱՆ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

«Պէրպէրեան Սանուց Ընկերութեան» անունը շատոնց մոռցուած էր, երբ 1908ի Սահմանադրութեան ուրախ օրերը կ՚արթնցնեն համանուն վարժարանի նոր ու հին աշակերտներու մէջ փափաք մը՝ կազմելու Միութիւն մը: Սուրհանդակ[9] արձագանգ կ՚ըլլայ այն ճիգերուն, որոնք կը թափուին նորինորոյ կազմելու համար Մշակութ. Միութիւն մը՝ Պէրպէրեան Սաներու անունով:

Միութիւնը կը կազմուի սակայն բաւական ուշ — 1913ին: Միութեան Հիմնագիրը պատրաստելու համար կը կազմուի Յանձնախումբ մը հետեւեալներէ.

Արիս Ֆէսճեան
Նշան Գ. Գալֆայեան
Տիրան Զրաքեան
Լեւոն Թաշճեան
Տիգրան Թէքէյեան

---

8 Ժեռամայն, 1913, Թ. 1560:
9 1908, Թ. 75, 117:

1913 *Օգոստ. 4ին գումարուած Ընդհ. ժողովը կ՚ընդունի կազմուած Հիմնագիրը, որ ունի* 37 *Յօդուած եւ բազմաթիւ կէտեր եւ հրատարակուած է* 1914*ին առանձին գրքոյկով: Տեսնենք քանի մը Յօդուածներ.* «Պէրպէրեան Սանուց Միութիւնը *իրեն նպատակ ունի գործել* ի պատիւ վարժարանի Հիմնադրին, յօգուտ վարժարանի Սանուց եւ Հայ հասարակութեան» (*Յօդ.* 1): «*Պէրպէրեան վարժարանին մէջ կրթութիւն տալ* կարօտ ուսանողներու *եւ համալսարաններու մէջ Պէրպ.* կարօտ սաներու ուսումը ապահովել» (*Յօդ.* 2). «*Միութիւնը պիտի հրատարակէ* Տարեգիր *մը*» (*Յօդ.* 3). «*Միութիւնը պիտի սարքէ տարեկան* խնջոյք *մը, վարժարանին ամավերջի հանդէսին օրը*» (*Յօդ.* 6). «*Անդամոց տարեկան բաժնեգիններու նուազագոյն չափն է քսան եւ առաւելագոյնը հարիւր քսան ղրուշ*» (*Յօդ.* 33):

*Միութեան Ընդհ. ժողովի Առժամեայ Դիւանը.*

| | |
|---|---|
| *Նշան Գ. Գալֆայեան* | *Ատենապետ* |
| *Վ. Սարգիսեան* | *Ատենադպիր*[10] |

*Միութիւնը* 1920*ին վերակազմուած է*[11]:

---

[10] *Պէրպէրեան Սանուց Միութիւն, Կ. Պ.* 1914, *էջ* 14:

[11] Ժողովուրդի Ձայնը, 1920, *Թ.* 1593:

### 40. «ԱՐԵՒԵԼՔ» ՇԱՀԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1913)

*Կը թուի թէ կազմուած է* 1913*ին*։ 1914 *Յուլիսին կը յիշուի առաջին անգամ, երբ արդէն «լուծման» չշուկներ կան։ Ընկերութեան Ընդհ. Ժողովի Ատենապետ՝* Ն. Վալիտէյեան *եւ Ատենադպիր՝* Պ. Գիւտեան *կը հերքեն «լուծումը» եւ կը հաստատեն թէ «Ընկերութիւնը աւելի լուրջ թափով մը գործի ձեռնարկած է բարեփոխուած* Կանոնագրով»[12]։

### 41. «ՀԱՅՈՐԴԻ» ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԻՒՆ (1914)

*Կազմուած է* 1914*ի սկիզբը։ Նախաձեռնողն է* Գառլօ Շահին։ *Մարզական Միութիւն մըն է։ Իբրեւ մարզարան վարձած էր Պալլար Պաշը Ջիչէքճի պարտէզը։ Կը մտադրէր ունենալ իր Մատենադարանը եւ սարքել դասախօսութիւններ*[13]։

### 42. ՍԿԻՒՏԱՐԻ ՈՐԲԱԽՆԱՄ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

1914—1918*ի ազգային ահուելի ողբերգութենէ վերջ առաջին Որբախնամ Միութիւններէն մին է Սելամիէի մէջ* 1918 *Նոյեմբերին կազմուած* «Սկիւտարի Որբախնամ Միութիւն»*ը, որ* 1918 *Դեկտ.* 9*ին բացումը կը կատարէ իր* Որբանոցին՝ *իր ծախքով*

---

[12] Ժամանակ, 1914, Թ. 1869։
[13] *Անդ*, Թ. 1772։

պատապարելով 50 որբ, իբրեւ սկզբնաւորու-թիւն[14]։

Միութիւնը 1919 Յունուարին կը ստանայ 2045 դրուշ եւ 47 գլխարկ նուէր[15]։ 1919 Ապրիլին ալ կը ստանայ զանազաններէ 16,082 դրուշի նուէր[16]։

43. «ԱՅԳ» ՕՐԻՈՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

Այս Միութիւնը կազմուած է 1918ի վերջը եւ արդէն 1919 Յունուարին հանդէս կը սարքէ[17]։ Ունէր 20 անդամ, հետեւեալ Վարչական կազմով.

Տիկ. Ե. Պարտիզպանեան
Օր. Ա. Մոմճեան
Ա. Սէմէրճեան
Ե. Սէմէրճեան
Պ. Ժամկոչեան
Վ. Անտոնեան
Զ. Գալէնտէրեան[18]։

44. Ռ. Յ. Պ. ԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Պէրպէրեան վարժարանի աշակերտու-թիւնը 1919ի սկիզբը կազմած է «Ռէթէոս Յ. Պէրպէրեան Լսարանական Միութիւն»ը, որ 1919 Ապրիլին ներկայացում մը տալով՝ 4950 դրուշի նուիրատուութիւն մը կ՚ընէ Սե-

---

[14] Անդ, 1918, Թ. 3391։ — Հմմտ. Ճակատամարտ, 1918, Թ. 4։
[15] Անդ, 1919, Թ. 3419։
[16] Անդ, Թ. 3487։
[17] Անդ, 1919, Թ. 3545։
[18] Ամէնուն Տարեց., 1921, էջ 308. 1922, էջ 370։

լամիէի «Որբախնամ Միութեան»[19]: Միութիւնը ունէր իր սրահը եւ կու տար դեղարուեստական երեկոյթներ[20]:

### 45. ՐԱՖՖԻ ՅԱՌԱՋԴԻՄԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Սելամիէի «Րաֆֆի Լսարանական Միութիւն»ը եւ «Յառաջդիմական Միութիւն»ը 1919ի սկիզբները միանալով՝ կազմած են «Րաֆֆի Յառաջդիմական Միութիւն»ը, որ ունեցած է իր Լսարանը:

Միութիւնը օգտակար եղած է իր Լսարանը տրամադրելով գեղարուեստական հանդէսներու[21] եւ մասնաւորապէս 1921ի Սկիւտարի մեծ հրդեհէն վերջ պատսպարելով դժբախտ արկածեալները[22]:

1921ին Միութիւնը ունէր 150 անդամ: Վարչական Խորհուրդի կազմն էր.

Կարապետ Տէօվլէթեան Ատենապետ
Վ. Տիրատուրեան
Լ. Միքայէլեան
Յ. Խիստավէրտեան
Տոքթ. Ա. Տէր Անդրէասեան
Յ. Գալֆայեան
Հ. Թօգանեան

Մայր Դիւանի կազմը.

Գ. Ճէհրիկեան
Ե. Մեսրոպեան

---

[19] Ժամանակ, 1919, Թ. 3487:
[20] Ժողովուրդի Ձայնը, 1922. Թ. 1028:
[21] Ժամանակ, 1919, Թ. 3545:
[22] Ժողովուրդի Ձայնը, 1921. Թ. 869:

*Միութիւնը ունէր նաեւ* նուագախումբ *մը*[23]:

46. ՕԺԱՆԴԱԿ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*«Սկիւտարի Որբախնամ Միութեան» սատարելու համար 1919ին կազմուած է* «Օժանդակ Միութիւն» *մը, որ կարճատեւ գոյութիւն մ'ունեցած է: 1920 Հոկտ.ին «Որբախնամ Միութիւն»ը ինքնաբաւ ըլլալուն՝ հարկ չի տեսներ շարունակելու «Օժանդակ Միութեան» գործերը: Վերջինս իր գոյքերը կը յանձնէ «Որբախնամ»ին*[24]:

47. ՀԱՅ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՈՒՀԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Ամերիկեան Աղջկանց Կոլէճի հայ աշակերտուհիները 1919 Մայիսին կը կազմեն* «Հայ Շրջանաւարտուհիներու Միութիւն»*ը*[25]: *Այդ Միութիւնը դեռ չկազմած՝ անոնք արդէն զինադադարէն սկսած էին դրամ հաւաքել հայ որբերուն համար: Միութիւնը կազմելէ վերջ՝ իրենց հաւաքած գումարը կը հասնի 75,000 դրուշի, զոր կը բաժնեն Առնաուտգիւղի, Օրթագիւղի, Սկիւտարի, Գոյաճիգիւղի, Մաքրիգիւղի, Կէտիկփաշայի Որբանոցներուն եւ Սկիւտարի Հ. Կարմիր*

---

23 *Ամէնուն Տարեց.*, 1921, *էջ* 304:
24 Ժողովուրդի Ձայնը, 1920, *Թ.* 585, 608:
25 Ժամանակ, 1919, *Թ.* 3529, 3535:

*Խաչի Տան ու Գաւըրգիւղի Հ. Կարմիր Խաչի Հիւանդանոցին, իրենց պահելով միայն 50 ոսկի*[26]:

*Միութեան Դիւանի կազմը.*

| | |
|---|---|
| *Տիկ. Ա. Մանուկեան* | *Ատենապետ* |
| *Տիկ. Զ. Գոնչէկիւլ* | *Փոխ–Ատենապետ* |
| *Օր. Գ. Գալաֆեան* | *Ատենադպիր*[27] |

*Միութեան հաւաքավայրն էր, 1922ին, Բերա Խասեան վարժարան*[28]:

48· ՀԱՅ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Թորգոմեան*[29] *Սելամիէի մէջ կը յիշէ* «Երաժշտասիրական Ընկերութիւն» *մը, առանց որեւէ ճշգումի: Հնութեան մէջ չենք հանդիպած այդպիսի Ընկերութեան մը Սելամիէի մէջ: Մեզի ծանօթ է Սելամիէի* «Հայ Երաժշտական Միութիւն»*ը, որ առաջին անգամ* 1919 *Մայիսին երեւան կու գայ եւ ղեկավարութեամբ* Վ. Սարգիսեանի *համերգներ կու տայ* 120 *հոգինոց երկսեռ երգչախումբով մը*[30]: 1922*ին երգչախումբի ղեկավարն է* Գ. Սիւնի *եւ խումբը* 60 *հոգինոց*[31]:

---

[26] *Անդ, Թ.* 3539:
[27] Ժամանակ, 1919, *Թ.* 3548:
[28] Ժողովուրդի Ձայնը, 1922, *Թ.* 1064:
[29] *Երեմ. Չէլէպ., անդ, Գ., էջ* 141:
[30] Ժամանակ, 1919, *Թ.* 3527, 3571:
[31] Ժողովուրդի Ձայնը, 1922, *Թ.* 1104:

### 49. ԹԱՏԵՐԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Հաւանօրէն 1919ի գարնան կազմուած է «Թատերասիրաց Միութիւն»ը: Ներկայացում կու տայ «Թէփէ»ի թատրոնին մէջ*[32]*:*

### 50. «ԱՐՏԱԽԱԶԴ» ԹԱՏԵՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919—1920)

*Հանդիպած ենք միայն Թէոդիկի քով*[33]*: Հիմնուած ըլլալու է 1919—1920ին:*

### 51. ՈՒՍՈՒՑՉԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919—1920)

*Թէեւ Միութիւնս 1920ի սկիզբը կը յիշուի՝ սակայն հիմնուած կը կարծենք 1919ի վերջերը*[34]*:*

### 52. ՏԱՐՕՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1920)

Ժամանակի *մէջ*[35] *շատ անորոշ կերպով յիշուած է Միութիւնս, որ ունի իր Լաւաբանը: Որքան կ՚երեւայ՝ մարզական Միութիւն մըն է:*

### 53. ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (··· 1952)

*Ծագումը անծանօթ է մեզ այս* «Սանուց Միութեան», *որ թէ՛* Մարմարայի[36] *եւ թէ՛* Պայրամի[37] *մէջ կը յիշուի:*

---

[32] Ժամանակ, 1919, *Թ.* 3662: — *Հմմտ. Թէոդիկ, Ամէն. Տարեց.*, 1921, *էջ* 308:
[33] *Անդ:*
[34] *Հմմտ.* Ժամանակ, 1920, *Թ.* 3813:
[35] 1920, *Թ.* 3764:
[36] 1951, *Թ.* 2820:
[37] *Կ. Պ.* 1952, *Թ.* 2:

## ՆԷՆԻՄԱՀԱԼԼԷ (Սկիւտար)

### 1· ··· ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1839—1840)

*Սկիւտարի* Նէնիմահալլէ Թաղը 1841*էն առաջ ունեցած է Մշակութային Ընկերութիւն մը, իբրեւ պաշտպան եւ նպաստող թաղին մէջ* 1838*ին հիմնուած գիշերօթիկ վարժարանին, որ կոչուած է* «Ճեմարան *ուսումնական Երուսաղիմայ* [38]»:

*Ընկերութեան յիշատակութիւնը ըրած է Իզմիրի լրատուեղեակ հայ թերթը, դժբախտաբար առանց Ընկերութեան* անունը *արձանագրելու*: Արշալոյս Արարատեան 1841 *Յունուար* 3*ին պատմելով թէ* Յակոբ Կրճիկեան *Պոլսէն Լոնդոն ճամբորդած ատեն Իզմիր հանդիպած է՝ կ՚ըսէ որ Իզմիր եղած ատեն մեզի ուրախ լուրեր հաղորդեց Սկիւտարի* Ճեմարանին *վրայ, ուր գացած այցելած է ճարտարապետ* Յովհաննէս Ամիրայի *հետ եւ աշակերտները քննած իրենց դասերուն մէջ եւ շատ գոհ մնացած: Այդ առթիւ Յակոբ Կրճիկեան իր գոհունակութիւնը յայտնելով Ճեմարանի Ընկերութեան անդամներուն՝ ըսած է. «Ինչ որ պէտք է Ճեմարանին համար, գիրք կամ գործիք, Լոնտոն գրելնիդ եւ ուզելնիդ իմէ՝ մեծ շնորհ մը ինծի եղած կը սեպեմ,* համարելով որ զիս ալ այս Ընկերութեան մէջ ընդունած էք [39]»:

---

[38] Աւետիս Պէրպէրեան, *Պատմութիւն*, *էջ* 267:

[39] Արշալոյս Արարատեան, *Զմիւռնիա* 1841, *Թ*. 15, *Յունուար* 3:

*Տարակոյս չկայ թէ ակնարկուած Ընկերութիւնը չէր կրնար 1841ին հիմնուած ըլլալ, քանի որ լուրը Իզմիրէն՝* 1841 Յունուար երեքին *կը տրուի Պոլսոյ համար: Միւս կողմէ սակայն ոչ մէկ աղբիւր ունինք լուսաբանող թէ ե՞րբ հիմնուած եւ ի՞նչ անուն կը կրէր ճեմարանի պաշտպան այդ Ընկերութիւնը: Ո՛չ 1901ի Հիւանդանոցի Տարեցոյցին, ո՛չ Թորգոմեանի*[40] *եւ ոչ ալ Ալպօյաճեանի*[41] *ծանօթ է Ընկերութեանս գոյութիւնը: Ընկերութիւնս հիմնուած ըլլալու է* 1839—1940*ին:*

## 2. ՄԻԱԿԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1841)

*Եէնիմահալլէի այս Ընկերութիւնը յիշուած է նախ* Հայկունի[42], *ըսելով թէ Ամիրաներու կախիներու ատթիւ հիմնուած է եւ երկրորդ Ա. Ալպօյաճեան*[43], *որ կը գրէ.* «Միակամ Ընկերութիւն (1841 *Ապրիլ* 13—1841 *Հոկտ.*) *կը հիմնուի Սկիւտարի ճեմարանի տնօրէն Յակոբիկ Մանուէլեանի նախաձեռնութեամբ, ճեմարանը փակուելէ փրկելու համար: Շատ կարճ, հազիւ վեց ամիս տեւած է*»:

*Հնութեան մէջ ակնարկութեան մը չենք հանդիպած:*

---

[40] *Երեմ. Չէլէպ.*, *Գ.*, *էջ* 44—56:
[41] *Գաղ. Տարեգր.*, *Ա.*, *էջ* 52:
[42] *Մարզուան*, 1912, 7, *էջ* 108:
[43] *Գաղ. Տարեգր.*, *Ա.*, *էջ* 53:

3. Ս. ՅՈՎՀԱՆՆՈՒ ԿԱՐԱՊԵՏԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1845)

*Ինչպէս ծանօթ է՝ Եէնիմահալլէն հինէն ի վեր ունեցած է* Ս. Կարապետի *եկեղեցի մը, որուն անունով կը կոչուի յաճախ թաղն ալ — Ս. Կարապետի թաղ։ Արդ, 1845ին թաղը կ՚ունենայ նաեւ* Ս. Յովհաննու Կարապետի Ընկերութիւնը։

Արշ. Արարատեան 1845 *Յունիս 16ին կը գրէ.* «Ընկերութիւն սրբոյն Յովհաննու Կարապետի *հաստատեալ յԻւսկիւտար,* վասն յառաջադիմութեան դպրոցին որ ի Եէնի մահալլէ ըսուած թաղն[44]»։ *Նոյն թերթի մէջ լոյս տեսած Ընկերութեան Յայտարարութեան մէջ Ընկերութեան անունն է.* Իւսկիւտարու Ս. Կարապետի դպրատան Ընկերութիւն[45]։

*Ընկերութեանս հիմնումի* շարժառիթն *եղած է* Գրիգոր Այվազովսկի, *որ 1845ի սկիզբները Պոլիս գտնուելով՝ յորդորած է Հայերը որ Եէնիմահալլէի ճեմարանը* վերաբանան, *խոստանալով այդ ծախքին մասնակցիլ 100,000 ղուրուշով։ Այս մեծանձնութիւնը գրգիռ կ՚ըլլայ Պոլսեցիներուն՝* «նոր Ընկերութիւն մը բանալու[46]»։

*Ընկերութիւնը հիմնուած էր* 1845 *Հոկտեմբերէն առաջ։* 1845 *Հոկտ.* 1*ին Ընկերութիւնը Յայտարարութիւն մը կը հանէ, որմէ կ՚իմանանք թէ Ընկերութեան հիմնադիրները*

---

[44] Արշ. Արարատեան, 1845, *Թ.* 235։
[45] *Անդ, Թ.* 249։
[46] *Անդ, Թ.* 248։

Խառատուն *աշքատու անձեր են.* «...Խառատուն յարգի անձինք, *կ'ըսէ Ցայտարարութիւնը, մէկ տեղ գալով* սուրբ Կարապետի դպրատանը անուանը Ընկերութիւն մը հաստատեցին՝ *որոնցմէ ոմանք ուսումնական են, ոմանք ազգին վիճակը քաջ ճանչցող, ոմանք զանազան դպրատուններ տեսնող, ոմանք չափաւոր (խոարքէլի)* եւ ամէնը երկայնամիտ եւ խոհեմ, միակամ եւ միախորհուրդ *ուխտ ըրեր են որ մէկ* Նախակրթարան Ուսումնարանի մը հաստատելու համար *որչափ որ հնար է նէ՝ անխոնջ ջանքով եւ սիրով աշխատին*[47]»:

*Ընկերութեան նպատակն ու փափագն եղած է* 1840*ի* Ճեմարանի նման վարժարան մը բանալ: *Առ այդ Ընկերութիւնը պէտք ունէր* 400·000 *ղուրուշի, զոր կը մտադրէր հաւաքել եւ ա՛յն ատեն միայն դպրոցը բանալ, երբ այդ դրամը պատրաստ ըլլայ: Կանխիկ վճարողներու դրամը պահ պիտի մնար* 10 *բանալի ունեցող սնտուկի մը մէջ՝ տասը Գանձապահներու յանձնուած: Իսկ կանխիկ վճարել չուզողները իրենց ստորագրութեամբ գիր մը պիտի տային Ընկերութեան, սա բովանդակութեամբ.* «Ստորագրեալս պարտիմ *Իւսկիւտարու սուրբ Կարապետի դպրատան* Ընկերութեան... *ղուրուշ* Նախակրթարան Ուսումնարանին հաստատութեանը համար, *որ պիտի հատուցանեմ* (3 պայմաններով)»:

[47] *Անդ*, *Թ*. 249:

Յայտարարութիւնը կը վերջանայ հետեւեալ կոչով. «Ընկերութիւնը կը յուսայ որ բոլոր ազգը ամէն մասամբ իրեն սիրով գործակից եւ Նպատակամատոյց կ՚ըլլայ այս ձեռք զար-կած գործքին բարեյաջողութեանը համար վարձքը ու պսակը Աստուծմէ սպասելով[48]»:

Չենք գիտեր թէ ի՛նչ արդիւնք տուած է դրամահաւաքը. յաջողե՞ր է Ընկերութիւնը գործադրել իր նպատակը: — Առկէ վերջ չի յիշուիր Ընկերութեան անունը: Ըստ Ալ-պօյաճեանի՝ Ընկերութիւնը բացած է դպրոցը եւ իր գոյութիւնը տեւած մինչեւ 1851[49]:

### 4. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ԱԶԳԱՅԻՆ ՃԵՄԱՐԱՆԻ ԻՒՍԿԻՒՏԱՐՈՒ (1846)

Եէնիմահալլէի ճեմարանը, որ քանի մը տարի առաջ փակուած էր՝ 1846 Հոկտեմ-բեր 1ին վերստին կը բացուի Մատթէոս Զու-խաճեան Պատրիարքի ներկայութեամբ եւ մեծ հանդէսով: Այս առթիւ Իզմիրի թերթը կ՚իմացնէ որ «յատուկ Ընկերութիւն» մ՚ալ հաստատուած է «Իւսկիւտարի ճեմարանին հոգատարութեան համար[50]»: Ընկերութեան անունը չի տար հայ ժամանակակից թերթը, բայց կը տեղեկացնէ որ ան կազմուած է 80 անդամէ: Ընկերութեան անունին կը ծա-նօթանանք իր Կանոնագրէն, որ հրատարա-կուած է 1847ին եւ կը կրէ սա խորագիրը.

---

[48] Անդ:

[49] Գաղ. Տարեգր., Ա., էջ 54:

[50] Արշ. Արարատեան, 1846, Թ. 270, Հոկտ. 18:

«*Կանոնադրութիւն* Ընկերութեան Ազգային Ճեմարանի Իւսքիւտարու *հաստատեալ հաւանութեամբ Տեառն Մատթէոսի Ազգասէր Պատրիարգի Կոստանդնուպօլսոյ* 1 *Յունուար* 1847 Կ. Պ.»:

*Ընկերութեան հիմնումի ճշգրիտ թուականը յիշատակուած չենք գտներ. կրնայ ըլլալ որ Ճեմարանի բացումի թուականն* — 1846 *Հոկտ.* 1 — *ըլլայ, ինչպէս կարելի է հասկնալ* Արշ. Արարատեանի *վերյիշեալ տեղիքէն*:

*Ընկերութեանս մասին կը գրէ իր Կանոնագիրը. «Վեհ սրբազան Մատթէոս Արքեպ. եւ ազգասէր Պատրիարքի բարձր հրամանաւը եւ Ազգասէր գերյարգի Ամիրայից հաճութեամբը, որ ըսել է ընդհանուր Ազգին հաճութեամբը, հաստատուած Իւսկիւտարու Ազգային Ճեմարանի Ընկերութեան* բոլոր անդամները համազօր են եւ ինչ որ Ընկերութիւնը տնօրինել ուզէ նէ իւր ամէն մէկ անդամին գիտութեամբը ու հաւանութեամբ պիտի ըլլայ. *բայց գործին դիւրութեանը համար իրմէ* 34 *անդամ ընտրեց եւ գրով արտօնութիւն տուաւ անոնց որ Ազգ. Ճեմարանին վերաբերեալ բոլոր գործքերը անոնք խորհին, անոնք տնօրինեն... այս* 34 *անձինքը կոչուեցան «Խորհրդական անդամք...»: Այս Խորհրդականները իրենց խորհրդակից ընկերներէն* 21 *հոգի պաշտօնի համար ընտրեցին... ասոնք ալ կոչուեցան*

*«Պաշտօնատար խորհրդականք...»: Ընկերութեան անդամներէն 7 հոգի ալ սոսկ այցելու ընտրեցին. ըսել է Ընկերութեան բոլոր պաշտօնատար անդամները 40 պիտի ըլլան*[51]»:

*Ընկերութեան Կանոնագրութիւնը՝ յատուկ բաժիններով գծած է իւրաքանչիւր «պաշտօնատար»ի պարտականութիւնները: Այսպէս. Նախագահին համար 10 կանոն, Ուսումնապետին համար 13 կանոն, Խորհրդականներուն համար 8 կանոն, Ներքին տեսուչներուն համար 17 կանոն, Արտաքին տեսուչներուն համար 17 կանոն, Գանձապետներուն համար 7 կանոն, Ատենադպրին համար 4 կանոն, Այցելուներուն համար 3 կանոն, Ընդհանուրին համար 14 կանոն:*

*Ընկերութեան նախագահն էր* Յովհ. Հովուեան, *Ատենադպիրը՝* Մկրտիչ Աղաթօն, *խորհրդականներ՝* Սահակ Փեշտիմալճեան, Սիմոն Նորատունկեան, Նիկողոս Հովուեան, *եւ այլն, գանձապետներ՝* Մկրտիչ Մոմճեան, Յակոբ Պրուսըրգեան, Գրիգոր Ճափճափեան, *այցելու անդամք՝* Պետրոս Խօրասանճեան, *եւն, պատուոյ անդամներ՝* Գրիգոր Աղաթօն, *եւն*[52]:

*Ինչպէս կը տեսնուի՝ ճիգ թափուած է ճեմարանը երկար ատեն կանգուն պահելու համար: Դժբախտաբար կարելի չէ եղած*

---

[51] *Կանոնագրութիւն*, էջ 3—4:

[52] *Ընդարձակ Տարեցոյց Ս. Փ. Ազգ. Հիւ.* 1901, էջ 232:

*սակայն ընկերական զօդը ամուր պահել եւ յարատեւել, որով երկար տեւած չէ նաեւ ճեմարանի գոյութիւնը:*

5. ԴՊՐՈՑԱՍԷ՞Ր ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1858)

*«Սկսնակ Բանասէր» կը գրէ.* «Դպրոցներու հիմնադիր Ընկերութիւններու... *անդրանիկը կը թուի 1858ին Սկիւտար Ս. Կարապետի թաղը հաստատուած Ընկերութիւնը, որուն նպատակն էր.* Նոր թաղի մէջ աղջկանց վարժարան մը հիմնել[53]»:

*Ինչպէս կը տեսնուի՝ «Սկսնակ բանասէր» չի տար* անունը *Ընկերութեան: Թորգոմեան*[54] *Եէնիմահալլէ (Ս. Կարապետի) թաղի Ընկերութիւններէն քանի մը հատը յիշելով՝ անոնց առաջինը կը համարի* «Դպրոցասէր» *Ընկերութիւնը, որուն հիմնումի* ժամանակը *չ'որոշեր: Եէնիմահալլէի Ընկերութիւններու կարգին «Դպրոցասէր» անունի մը չենք հանդիպած հնութեան մէջ:* Անունէն *զատելով — Դպրոցասէր — հաւանական կը համարինք թէ «Սկսնակ Բանասէր»ին յիշած* 1858*ի Ընկերութիւնը Թորգոմեանի «Դպրոցասէր»ն է:*

*Ալպօյաճեան*[55] *Եէնիմահալլէի այս անորոշ մնացած Ընկերութիւնը* 1857*ին հիմնուած գնելով՝ կ'ըսէ որ «Գլխաւոր հիմնադիրն է Եազըճը Պօղոս աղա»:*

---

[53] Արեւելք, 1898, Թ. 3853:
[54] *Երեմ. Չէլէպ., Գ., էջ* 56:
[55] *Գաղ. Տարեգր., Բ., էջ* 79:

Մասիս[56] 1858 Յուլիս 31ին կ՚իմացնէ որ Սկիւտարի Նէճիմահալլէի մէջ աղջկանց վարժարան մը բացուած է: Բնական է ներքին կապ մը ենթադրել 1858ին հիմնուած Ընկերութեան եւ աղջկանց վարժարանի բացումին միջեւ: Հաւանօրէն նոյն Ընկերութիւնն է աղջկանց վարժարանը բացողը:

## 6. ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1861—1862)

Մասիսի մէջ շատ ուշ տրուած բացատրութենէ մը կը հետեւցնենք թէ Նէճիմահալլէի այս Ընկերութիւնը հիմնուած է 1861—1862ին եւ վերակազմուած 1865ին: Ընկերութիւնս իր նախաօրինակը ունեցած է Ղալաթիոյ 1860ի «Անձնուէր Ընկերութիւնը», որ Պոլսոյ մէջ ճիւղեր ունեցած է:

Սարգիս Կ. Ձալըխեան, 1865 Սեպտեմբեր 21ին կը գրէ Մասիսին. «Խմբագիր... կը համարձակիմ քանի մը տեղեկութիւններ հաղորդել ձեզ Իւսկիւտարու մէջ նորահաստատ (վերահաստատ ըսել կ՚ուզէ) Ընկերութեան մը նկատմամբ: Այս Ընկերութիւնը՝ զոր քանի մը երիտասարդք անուսումն հայը հասարակ ընթերցման, քերականութեան, թուագիտութեան եւ գեղեցկագրութեան մէջ կրթելու նպատակաւ «Անձնուէր» անուամբ Իւսկիւտարու մէջ հաստատած են, Նէճիմահալէի ազգային ճեմարանին մէջ դասարան

[56] 1858, թ. 340:

մը ունի ուսանողաց համար, *ուր* Կիրակի եւ տօն օրերը *հոն կը հաւաքուին եւ որոնցմէ աղքատ եղողներուն Ընկերութեանս մեծարոյ անդամք թէ՛ իրենց եւ թէ՛ ուրիշ ազգասիրաց նուիրօքը եւ նիւթական նպաստիւքը ձրիապէս դասագիրք, գրիչ, թուղթ եւ մելան կը բաշխեն*: Արդարեւ Նէնի-Մահալլէի Ս. Կարապետ եկեղեցւոյն *քարոզիչ դերապատիւ եւ ազգասէր Արիստակէս Սրբազանին գեղեցիկ յորդորներէն եւ ուրիշ ծանուցման թուղթերէ գրգեալ՝* առաջ *երեսնի չափ ուսանողք մեծաւ եռանդեամբ դասարան յաճախելով՝ զարմանալի յառաջդիմութիւն մը ցոյց կու տային*, սակայն յետոյ համաճարակ ախտը (1862*ի՞ քոլէրան*) վրայ գալով եւ հետեւաբար ոմանք իրենց հայրենիքը չուելով եւ ոմանք ալ նորա անողոք մանգաղին ի զոհ մատնուելով՝ ուսանողաց թիւը նուազեցաւ, *եւ այժմ* տասնի չափ ուսանողք մնացած են, *որոց մէջ Պօլսեցի տղայք ալ կը գտնուին եւ որոց թիւը յուսալի է դարձեալ՝ որ քիչ ժամանակէն աւելնալով՝ ուսման մէջ զարգանան ի պատիւ Ընկերութեանս ազնիւ նպատակին: Կ՚աղաչեմ... Խմբագիր որ բարեհաճիք ազգասիրաբար սոյն նամակս ձեր ազգօգուտ լրագրոյն մէկ անկիւնը զետեղել, որով Անձնուէր Ընկերութեանս քաջալեր եւ զիս շնորհապարտ կացուցած կ՚ըլլաք: Սարգիս Կ. Զալըխեան*[57]»:

---

[57] Մասիս, 1865, Թ. 708:

## 7. ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

Արամեան Ընկերութիւնը *կը յիշուի* 1863*ի գարնան եւ ունի* գրօսարան մը[58], *որմէ կը հետեւցնենք թէ հիմնուած ըլլալու է դէթ 1863էն առաջ*:

*Ընկերութեան Ատենապետը՝* Յ. Ն. Պ. *պաշտպանելով Ընկերութիւնը չարախօսներու դէմ՝ կ'ըսէ որ «Արամեան»ը* բաժնորդական եւ առեւտրական *Ընկերութիւն մըն է*[59]:

1864*ին Զէյթունցի* Գրիգոր Վարդապետի *պոլսէն Ուրֆա մեկնելու առթիւ Ընկերութեան անդամները իրենց մէջ* 1250 *ղուրուշ հաւաքելով՝* Ուլնիոյ Ս. Փրկիչ վանքին *համար* ձեռք մը եկեղեցական զգեստ *կը հայթայթեն եւ յիշեալ վարդապետին կը յանձնեն*[60]:

*Ընկերութիւնը* 1865*ին հաշուեցուցակ մը կը հրատարակէ, ուսկից կը տեսնուի թէ «Ընկերութիւնը Գօլէոայի առեն կազմուած առժամանակեայ յանձնաժողովոյն ձեռամբ* 11,016,10 *ղրուշ հաւաքեր եւ նոյն գումարով իւր թաղի աղքատ հիւանդաց եւ կարօտ ընտանեաց պէտքերը հոգացեր է*[61]»:

*Ընկերութիւնս անծանօթ է Ալպօյաճեանի*:

---

[58] *Տե՛ս* Մեղու, 1863, *էջ* 139: — Պեզասեան Թուչնիկ, 1863, *Թ*. 10: — Սէր, 1863, *էջ* 52:

[59] Մասիս, 1864, *Թ*. 632:

[60] *Անդ*, *Թ*. 640:

[61] Պեզասեան Թուչնիկ, 1865, *էջ* 292:

### 8. ԳՐԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865)

Պեզասեան Թուչեիկ *թերթը* 1865 *Մարտին կը գրէ.* «*Իւսկիւտարու* Նէնիմահալլէ թաղի *վարժարանին աշակերտները* մէկ քանի օրագիր ստանալու *նպատակաւ* Գրասիրական *անուամբ* Ընկերութիւն *մը կազմեր են*[62]»:

*Ընկերութիւնս անծանօթ է Ալպօյաճեանի: Իսկ Թորգոմեան*[63] *Ընկերութիւնս* «Գրասիրաց» *կոչելով՝ կը գրէ.* «Գրասիրաց՝ *որ Տերոյէնցի թարգմանած* Ճօյաի Քաղաքավարութիւնը *տպագրել տուած է* 1841—1843՝ *Օրթագիւղի Արապեան Տպարանին մէջ. այս Ընկերութիւնը եւ նման ուրիշներ դժբախտաբար երկար կեանք չեն ունեցած*»:

*Սխալ է Թորգոմեանի գրածը. Տէրոյէնցի թարգմանած Ճոյայի «Քաղաքավարութիւն»ը ո՛չ թէ Նէնիմահալլէի անդոյ «Գրասիրաց» Ընկերութիւնը, այլ Պոլսոյ* «Ուսումնական Ընկերութիւն Հայոց»*ը տպագրած է*[64]:

### 9. ԱՂՔԱՏԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

*Սկանակ Բանասէր*[65] *Ընկերութիւնս կ՚անուանէ* «Աղքատաց», *Թորգոմեան*[66] «Աղ–

---

[62] *Անդ, Թ.* 31, *էջ* 248:
[63] *Երեմ. Չէլէպ., Գ., էջ* 56:
[64] *Տե՛ս Ճօյա, Քաղաքավարութիւն, Ա., Կ. Պ.* 1842, *գրքին ճակատը, ուր տպագրող Ընկերութեան անունը արձանագրուած է:*
[65] Արեւելք, 1898, *Թ.* 3854:
[66] *Երեմ. Չէլէպ., Գ., էջ* 56:

քատասէր», մինչ ժամանակակիցներն ունին. «Աղքատասիրաց» Ընկերութիւն:

Հիմնուած է 1872 փետր. 1ին, ինչպէս կը տեսնուի հետեւեալ նամակէն.

Խմբագիր... ասկէ երկու ամիս ու կէս առաջ, Իսկիւտար Նոր-Թաղի մէջ մէկ քանի ուսումնական եւ ուսումնասէր երիտասարդաց ջանիւքն ու առաջարկութեամբը Ընկերութիւն մը կազմուած է, որ «Աղքատասիրաց» անունը կը կրէ եւ որոյ բաժանորդաց թիւը ցարդ 120ի մօտեցած է: Սոյն Ընկերութեան նպատակն է յիշեալ թաղին վարժարանի աղքատ տղայոց ամէն տեսակ գրական պիտոյքները միանգամայն եւ անոնց զգեստուց շինութիւնը ձրիապէս հոգալ...: Խիստ բերկրալի եղաւ մեզ տեսնել սոյն Ընկերութեան առաջին արդիւնքը, այն է, այս Ս. Զատկի առթիւ 30 հատ աղքատ եւ գրեթէ մերկ տղայոց զգեստուց շինութիւնը, որուն կը փութամ իմ շնորհակալիքս միանգամայն եւ սրտիս զգացած ուրախութիւնը յայտնել Ընկերութեան սոյն Մեծ. անդամոց, որոնք միարան սիրով ամէն ջանք ի գործ կը դնեն յօգուտ եւ յառաջադիմութիւն Ընկերութեան...:

Իսկիւտար

19 Ապրիլ 1872

Յ. Ճանփէսճեան[67]:

---

67 Մէնմ. Հավատիս, 1872, Թ. 1049:

Ընկերութեան չաբաթական անդամավճարն է 20 փարա: Ընկերութիւնը իր անունով տոմսակներ տպած եւ ցրուած է, որմէ գոյացած դրամով եւ նուէրներով, 1872ի Զատկին, 30 տղու զգեստ չինած է, ծախսելով 4132 ղուրուշ, կը գրէ Ընկերութեան Տնօրէն Խորհուրդի Ատենապետ՝ Յարութիւն Ս. Դուրեան[68]:

## 10. ԽՆԱՅՈՂԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

Մամուլ[69] երգիծաթերթը Կաղանդի առթիւ հայ թերթերու նուէրներ բաշխած ատեն՝ Կիլիկիա թերթին կը նուիրէ «Խնայողական Ընկերութեան» ընկալագիրները: Ա՞յս է արդեօք Թորգոմեանէ[70] եւ Ալպօյաճեանէ[71] լոկ անունով յիշուած Եէնիմահալլէի «Խնայողական Ընկերութիւն»ը: Ասով գոնէ ճշդուած կ'ըլլայ մօտաւորապէս հիմնումի տարին, այն է՝ 1874:

## 11. ՆՊԱՍՏԱՄԱՏՈՅՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

1874ին հիմնուած է Եէնիմահալլէի առաջին «Նպաստամատոյց Ընկերութիւն»ը գլխաւոր հիմնադիր ունենալով Օր. Զապէլ Խանճեան: Էքսէրճեան կը գրէ 1874 թուականին համար. «Օրիորդ Սրբուհի Աչճեան

---

[68] Անդ, թ. 1052: — Հմմտ. Փունջ, 1872, թ. 1229:

[69] 1874, թ. 444, էջ 221, Դեկտեմբեր:

[70] Անդ:

[71] Գաղ. Տարեգր., էջ 123:

*Ճեմարանի մէջ կարի եւ ձեւագիտութեան ուսուցչուհի եղած ատեն կը թելադրէ աշակերտուհիներուն* աղքատ աղջկանց գրենական պիտոյքը հոգալու *համար* Նպաստամատոյց Ընկերութիւն *մը կազմել եւ կը յաջողի»:* 1874*ին Նպաստամատոյցի անդամուհիները.*

*Օրիորդներ. Զապէլ Խանճեան*
*Արտեմիս Տուտեան*
*Ակիւլինէ Լութֆեան*
*Մառի Զպուքճեան*
*Սաթենիկ Հաճեան*
*Տիրուհի Գալֆայեան*
*Վերգին Խաչատուրեան*
*Գարոլինէ Պարսաւիտեան*
*Վարդանոյշ Լութֆեան*[72]

*Աղջկանց այս «Նպաստամատոյց»ը կը դադրի* 1876*ին, երբ իր անդամուհիները չրջանաւարտ կ՚ըլլան*[73]:

## 12. ՊԱՐԶԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

1877 *Հոկտ.* 1*ին* Ե. Վրոյր (*Եղիա Տէմիրճիպաշեան*) Հայրենիքի *մէջ կը գրէ թէ Գերմանիոյ Ֆրանկֆուրտ քաղաքին երեւելի Տիկինները* Պարզութիւն *անունով Ընկերութիւն մը կազմեր են, որուն նպատակն է* պարզ հագուիլ *եւ կը հարցնէր թէ «Արդեօք*

[72] *Հմայեակ քահ. Էքսէրճեան, Յիշատակարան, անդ, էջ* 192:
[73] *Անդ, էջ* 193:

*պիտի գտնուի՞ն* հայ տիկիններ ալ *որ մի* համանուն եւ համանպատակ *Ընկերութիւն կազմեն մի օր*[74]»:

*Ահկէ* քանի մը ամիս վերջ — *Հաւանօրէն* 1878 *Յունուարին* — *Սկիւտարի Եէնիմահալլէ Թաղի* Հայ Տիկիններ, *նախաձեռնութեամբ* Եւփիմէ Թորգոմեանի, *կը հիմնեն* «Պարզասիրաց Ընկերութիւն»*ը*, *նպատակ ունենալով*. «Նորասիրութիւնն բառնալ եւ պարզութիւնն հանրացնել»: *Ընկերութեան հիմնումի մասին առաջին ծանուցումը* Հայրենիքն *է ընողը*, *որուն մէջ* 3. Շաւարշ 1878 *Փետր.* 18*ին կը գրէ*. «*Իւսկիւտարի մէջ* մի քանի Հայ Կանայք Ընկերութիւն մը կազմած են խիստ կարեւոր եւ գովելի նպատակի մը համար, *այն է*՝ նորասիրութիւնն բառնալ եւ պարզութիւնն հանրացնել...: *Կը փափաքինք նաեւ տեսնել Իւսկիւտարու այն ազնիւ եւ առաքինի տիկնանց կազմած Ընկերութեան յաջողութիւնն եւ փայլեալ ընդունելութիւնն*, զի մեծ ծառայութիւն մ'է որ կ'ընեն ընդհանուր ազգին[75]»:

*Ընկերութեան Վարչութիւնը բաւական ուշ կ'ընէ ծանուցումը Ընկերութեան հիմնումին, հարկաւ իր պատճառներն ունենալով: Ահա թէ ի՛նչ կը գրեն. «Պարզասիրաց Ընկերութիւնը հաստատուեցաւ* Իւսկիւտարու *մէջ* բազմաթիւ հայուհեաց հաւանու-

---

[74] Հայրենիք, 1877, Թ. 375:
[75] Հայրենիք, 1878, Թ. 409:

թեամբ: *Ահա իգական սեռը լուսաւորուե-ցաւ վերջապէս*, ունայնամտութիւնը յաղ-թահարուեցաւ *եւ* 19*րդ դարուն մէջ Հայու-հիք այնպիսի յաղթանակ մը կանգնեցին՝ զոր անցեալը աղաղակեց եւ չունեցաւ, իսկ ապա-գան պիտի օրհնէ եւ պիտի ընդունի: Ուրեմն զայս բերկրութեամբ սրտի պարտ կը համա-րիմք ազդարարել բոլոր Հայուհեաց եւ ա-պարէզ կարդալ նոցա ի միութիւն այս գո-վելի նպատակին, որոյ առաջին կրկէս բա-ցաւ* տիկին Եւփիմէ Թորգոմեան *ազգասիրա-կան վսեմ խանդով եւ իւր պերճախօս չըր-թամբը պարզութեան գեղեցիկ սէրը արծար-ծեց Հայուհի սրտերու մէջ*: Ընկերութեանս *մասնակցիլ ուզողը պէտք է իր փափաքը* յայտնէ գրաւոր առ Դիւանն Ընդհանուր ժո-ղովոյ *եւ յղէ զայն ի տուն տիկին Եւփիմէ Թորգոմեանի, Նոր Թաղ*.

Տնօրէն ժողովոյ

| | |
|---|---|
| *Ատենադպիր* | *Ատենապետ* |
| *Ա. Լութուֆեան* | *Վ. Խանճեան*[76] |

*Ընկերութիւնս անծանօթ է Ալպօյա-ճեանի*:

*Եէնիմահալլէի «Պարգասիրաց Ընկերու-թեան» հիմնումէն մէկուկէս տարի վերջ նոյ-նանուն Ընկերութիւն մը կը հիմնուի* Սամա-թիոյ *մէջ, ինչպէս պիտի տեսնենք*:

76 Փունջ, 1879, *Թ*. 1410:

13. ՆՊԱՍՏԱՄԱՏՈՅՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Հմայեակ քահ. Խքուէրճեան կը գրէ*[77]. «1876*ին աղջկանց Նպաստամատոյցէն ծնունդ կ'առնէ ճեմարանի* մանչ տղայոց Նպաստամատոյցը, *որուն կ'անդամակցին Բարձրագոյն դասարանի աշակերտները*։ Իր նպատակը կ'ըլլայ ոչ միայն աղքատ աշակերտաց դպրոցական պիտոյքը հոգալ, այլ եւ տարին մէկ անգամ զգեստաւորել զանոնք եւ ցերեկայ նաշ տալ անոնց եւ գրասեղանները շինել»։ *Այս Նպաստամատոյցի Հիմնադիրները կ'ըլլան*.

| | |
|---|---|
| *Նշան Վալիտէեան* | *Ատենապետ* |
| *Լեւոն Շամտանճեան* | *Ատենադպիր* |
| *Գ. Համբարձումեան* | *Գանձապետ* |
| *Կարապետ Կիւմիւշեան* | |
| *Հեթում Սէթեան* | |
| *Յակոբ Բ. Աստուածատուրեան* | |
| *Համբարձում Զարֆճեան* | |
| *Գրիգոր Աճէմեան* | |

*Եէնիմահալլէի մանչերու «Նպաստամատոյց Ընկերութիւնը» հիմնուած է* 1879 *Յուլիս* 1*ին* (*հ. տ.*), *ինչպէս կը հաղորդէ* Մասիս 1879 *Յուլ.* 6*ին*, *գրելով*. «*Գոհունակութեամբ կը ծանուցանեմք թէ անցեալ Կիրակի Գեր. Իզմիրլեան Սրբազանի յորդորանօքն ու նախագահութեամբ Իւսկիւտարի Եէնիմահալլէի եռանդուն երիտասարդներէն մաս մ'ազ–*

[77] *Յիշատակարան, անդ, էջ* 193։

գայինք ի ժողով գումարուելով Նպաստամատոյց անուն Ընկերութիւն մը կազմեր են, որոյ նպատակն է յիշեալ թաղի երկսեռ վարժարանաց ուսումնական պիտոյքը մատակարարել եւ անոնց զարգացման համար հարկ եղած նպաստները ընծայել[78]»:

Հայրենիք[79] կը գրէ որ Ընկերութեան անդամները «մեծաւ մասամբ Ճեմարան վարժարանի վաղեմի աշակերտներէն կը բաղկանան»:

1883ին Թրքախօս Հայ Թերթ մը[80] կը գովէ Ընկերութեան գործունէութիւնը:

1886 Օգոստոսին Օսմանիէ Թատրոնին մէջ Թատերական ներկայացում մը կը տրուի «ի նպաստ Իւսկիւտարու Նոր-Թաղի Նպաստամատոյց Ընկերութեան» եւ կ'ըսուի թէ «Նպաստամատոյց Ընկերութիւնն, Հակառակ ամէն կերպ նիւթական եւ բարոյական արգելքներու, 6—7 տարիներէ ի վեր հաւատարմաբար կը ծառայէ իր նպատակին, որ է գրական պիտոյք հայթայթել աղքատիկ ուսանողաց եւ օգտակար գրքեր հրատարակել[81]»:

Կը տեսնուի որ Ընկերութեան նպատակը ընդարձակուած է եւ գրքեր ալ կը հրատարակէ: Չենք գիտեր թէ ի՞նչ հրատարակած է:

---

78 Մասիս, 1879, Թ. 2369:
79 1880, Թ. 622:
80 Թէրճէմանը Էֆքեար, 1883, Թ. 1671:
81 Հայրենիք, 1886, Թ. 2088:

Ընկերութիւնը կ՚ունենայ իր կանոնագիրը։ Կը տեւէ մինչեւ 1887 եւ կը դադրի, բայց կը վերակազմուի 1908ին[82]։ 1909ին Ընդհ. Ժողովքին կ՚ատենապետէ Լեւոն Վ. Սէմէրճեան, ուր կ՚ընտրուի հետեւեալ Տնօրէն Խորհուրդը.

| | |
|---|---|
| Կարապետ Նորատունկեան | Ատենապետ |
| Յակոբ Խուտավէրտեան | Ատենադպիր |
| Թադէոս Թէրզեան | Գանձապետ |
| Գեղամ Քէրէստէճեան | Համարակալ |
| Սեփոն Մանասեան | |
| Թէմէրիկ Յակոբեան | |
| Նշան Յովհաննէսեան | |

Ընկերութիւնը ժամանակ մը գործելէ վերջ՝ կը դադրի եւ իր գոյքերը Ս. Կարապետ եկեղեցւոյ Թաղ. Խորհուրդին կը յանձնէ[83]։

Ալպօյաճեան[84] սխալմամբ 1881ին կը դնէ Ընկերութեան հիմնումը։

14. ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879?)

Թորգոմեան[85] Եէնիմահալլէի մէջ ալ «Ուսումնական Ընկերութիւն» մը յիշած է, ըստ իր սովորութեան անորոշ եւ անիմաստ կերպով[86]։ Կը տարակուսինք այդպիսի Ըն—

---

[82] Ժամանակ, 1908, Թ. 120։
[83] Էքսէրճեան, Յիշատակարան, էջ 194—195։
[84] Գաղ. Տարեգր., Գ., էջ 120։
[85] Երեմ. Զէլէպ., Գ., էջ 56։
[86] Հմմտ. Ալպօյաճեան, Գաղ. Տարեգր., Գ., էջ 123 «միայն անունը ծանօթ»։

կերութեան մը գոյութեան մասին: Մեր պրպտումներու ընթացքին չենք կրցած ստուգել անոր գոյութիւնը: Առհասարակ այս ձեւը — Ուսումնական — հազուադէպ է Հայ Ընկերութիւններու շարքին մէջ: Յաճախակի գործածուած ձեւն է — Ուսումնասիրաց:

Կա՛յ «Ուսումնական» Ընկերութիւն մը — 1841էն իր ծագումը[87] — որ սակայն Սկիւտարի մէջ չէ հիմնուած. տպագրական Ընկերութիւն մըն է:

Կա՛յ երկրորդ «Ուսումնական» Ընկերութիւն մ՚ալ — յիշուած 1879ին — որուն ծագումը եւ թաղը անյայտ ըլլալէ զատ՝ Խասգիւղի «Կիլիկեան» Ընկերութեան հետ միացած ձեւի մէջ եւ միայն մէկ անգամ կը յիշուի Վարժապետեան Պատրիարքէն, սա ձեւով. — Կիլիկեան–Ուսումնական Ընկերութիւն[88]:

Այս վերջին «Ուսումնական» Ընկերութիւնը ըլլայ գուցէ Թորգոմեանի ակնարկած Եէնիմահալլէի «Ուսումնական»ը, որ 1879ին միացած էր «Կիլիկեան»ին հետ:

## 15· ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1882)

Հիմնուած է 1882 Ապրիլ 1ին: Իր նպատակն է. ձեմարանի վարժարանի աղքատ աշակերտներու զգեստ շինել տարին մէկ անգամ, Զատկի առթիւ եւ անոնց գրենական

[87] Արշ. Արարատեան, 1841, Թ. 26:
[88] Մասիս, 1879, Թ. 2292:

պիտոյքը հոգալ[89]: *Իսկ ըստ ժամանակակից թերթին*՝ «Ճեմարանն վարժարանի դրամական *նպաստ մը յատկացնել*[90]»:

*Արդէն 1882 Օգոստոսէն սկսած Ընկերութիւնը Ճեմարանի յատկացուցած է ամսէ ամիս 200 դահեկան եւ Զատկին ալ «որոշեալ թուով կարգ մը մանչ տղայոց զգեստ պիտի չինէ ի մխիթարութիւն նոցա թշուառ վիճակին*[91]»:

*Ճեմարանի Հոգաբարձութիւնը երախտագիտութեամբ կը ծանուցանէ որ Բարեգործական Ընկերութիւնը Նոր Թաղի աղքատ տղոց 45 ձեռք, իսկ Սելամիէ Թաղի վարժարանի տղոց ալ 10 ձեռք զգեստ չինած է 1883ի Զատկին առթիւ*[92]:

1885 *Փետր. 10ին Ընկերութեան Գործ. ժողովի անդամները*՝ Նշան Ճերմակեան (*Ատենապետ*) *եւ* Խաչիկ Ոււղուրիկեան (*Ատենադպիր*) *նամակ մը գրելով Ս. Խաչի Թաղ. Խորհուրդին*՝ *կը յայտնեն որ կը փափաքին Սելամիէի վարժարանի ամէնէն չքաւոր* 10 *տղոց զգեստ չինել Զատկի առթիւ եւ կը խնդրեն անոնց ցանկը*[93]:

*«Բարեգործական»ը* 1888*ին կը դադրի. իր պատրաստ դրամը — *100 *ոսկի — կը*

---

[89] *Էքսէրճեան, Յիշատակարան, էջ* 190—191:

[90] Թէրճ. Էֆքեար, 1883, *Թ.* 1671: — *Հմմտ. Նաեւ* Մանզ. Էֆ. 1886, *Թ.* 5714:

[91] *Անդ*:

[92] *Անդ, Թ.* 1703:

[93] *Էքսէրճեան, անդ, էջ* 190—191:

*յանձնէ Նոր Թաղի Թաղ. Խորհուրդին, որպէս զի անոր տոկոսով ճեմարանի աղքատ աշակերտներու գրենական պիտոյքը հոգացուի*[94]:

16· ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1882)

*Կը յիշուի 1883 Ապրիլին, բայց հիմնուած կը թուի ըլլալ 1882ին, ինչպէս կը տեսնուի ճեմարանի Հոգաբարձութեան տուած սա տեղեկութենէն.* «Սանուց Ընկերութիւն *Թաղիս* (*Եէնիմահալլէ*), որք վարժարանիս հարազատ սաներն են եւ որոց նպատակն է զինքեանս որդեգրող սոյն սրբազան յարկին մէջ գտնուած աղքատ ուսանողաց վերաբերեալ գրեանք եւ այլ գրական պիտոյքը հոգալ եւ զորս լիովին հոգացած են մինչեւ ցայսօր[95]»:

17· ՍԱՆՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1882)

*Ըստ Թորգոմեանի*[96] *Եէնիմահալլէն ունեցած է նաեւ* «Սանուհեաց Ընկերութիւն» *մը: Թէեւ ժամանակակից վկայութիւն մը չունինք, սակայն հաւանական է որ ճեմարանի սանուհիներն ալ միեւնոյն ժամանակներուն կազմած ըլլան Ընկերութիւն մը՝ աղքատ աշակերտուհիներու գրենականներն հոգալու համար:*

---

[94] *Անդ, էջ* 191:
[95] Թէրճ. Էֆքեար, 1883, *Թ.* 1703:
[96] *Երեմ. Ձէյթ., Գ., էջ* 130:

### 18․ ԳՈՐԾԱՒՈՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*Կազմուած է* 1910 *Յունուարին։ Իր կեդրոնն էր Եէնիմահալլէ։ Ընկերութեանս մասին կը գրէ* Ժամանակ 1910 *Փետրուարին*. «Կ․ Պոլսոյ եւ Սկիւտարի Գործաւորական Միութիւնս *ներկայ տարւոյս սկիզբէն կազմուած ըլլալով, նպատակ ունի* պաշտպանել գործաւորաց (*գալֆա*) շահերը փոխադարձ օգնութեան հիման վրայ։ *Այս առթիւ Միութեանս* գոյութիւնը կառավարութեան կողմէ վաւերացուած ըլլալով՝ *հրաւէր կ՚ուղղենք Մայրաքաղաքիս բոլոր արուարձաններուն* Եազմանի գործաւորաց *որ եթէ կը յօժարին անդամակցիլ՝ հաճին ներկայանալ* Միութեան կեդրոնատեղին Սկիւտար Եէնի–Մահալլէ[97]»։

### 19․ ՃԵՄԱՐԱՆԻ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Կը յիշուի առաջին անգամ* 1919 *Յունուար* 5*ին եւ Որբերուն համար կը նուիրէ* 47 *դպխարկ*[98]*։ Հիմնուած ըլլալու է* 1918*ի վերջերը*։

### 20․ ԿԻՆ ՍԿԱՈՒՏՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Կազմուած է* 1919*ի գարնան, Հաւաքատեղի ունենալով Ճեմարան վարժարանը*[99]։

---

[97] Ժամանակ, 1910, Թ. 413։
[98] *Անդ*, 1919, Թ. 3419։
[99] Ճակատամարտ, 1919, Թ. 122։

## ԻՆԱՏԻԷ (Սկիւտար)

### 1. ՀԱՅԿԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863)

Թատերական *Ընկերութիւն մ՚է Սկիւտարի* Ինատիէ թաղին «Հայկեան Ընկերութիւն»*ը, որ կազմուած է* 1863*ին*:

*Հիմնադրութեան նախաձեռնողներն են* Պապայեան Եղբարք:

*Ընկերութեանս մասին մեր միակ աղբիւրն է* Եղիազար Մուրատեան, *որ* 1865 *Մարտին* Ժամանակ *Թերթին ուղղած իր մէկ նամակին մէջ ժամանակակից* հայ թատրոնի *վրայ խօսելով, կը հաղորդէ. «... ուրախ եմք որ Պ. Պէշիկթաշլեանի խաղերը միշտ ծափահարութեամբ ընդունուած են թէ՛ Արեւելեան Թատրոնը, թէ՛ Միջագիւղ եւ թէ՛* այս երկուքին յաջորդ Ինատիյէի մէջ *ներկայացուած տեսնները: Այս վերջինը իր փոքր վիճակին մէջ նպատակին հասաւ, շնորհիւ* Հայկեան Ընկերութեան (*Պապայեան ազնուազարմ պարոնայց եւ ընկերաց*) : *Այս ազնուական երիտասարդներ* թաղին վիճակը եւ դպրոցին պէտքերը նկատելով՝ երկու տարիէ ի վեր *յաջողութեամբ կը ներկայացնեն այլեւայլ թատերգութիւններ եւ ազգային խաղեր, զոր Պ. Պէշիկթաշլեան աննախանձ կու տայ իրենց...:* Խիստ հազուագիւտ են Հայկեան Ընկերութեան անդամ պարոնայց նման ազգային ոգի, անշահասէր սիրտ եւ

ազնիւ ու վառվռուն բնաւորութիւն ունեցող երիտասարդներ[100]»:

*Ընկերութիւնս անծանօթ է Թորգոմեանի եւ Այպօյաճեանի:*

## 2. ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863—1864)

Իճատիէ ունեցած է «Լուսաւորչեան Ընկերութիւն» *մը, որուն համար* 1866*ին կ'ըսուի թէ* «շատոնց ի վեր խափանուած էր»: *Ե՞րբ հիմնուած էր, ուրեմն: Ճշդելու մանաւոր կռուան մը չունինք: Մօտաւոր թուական մը կրնանք նշանակել* 1863—1864 *տարիները, բայց հաւանական է որ աւելի հին ըլլայ:*

1866*ի ամրան կը վերակազմուի եւ կ'ըսուի թէ թաղին մանչերու դպրոցին պիտի սատարէ*[101]:

*Ընկերութիւնս անյիշատակ մնացած է Թորգոմեանի եւ Այպօյաճեանի քով:*

## 3. ՏԻԿՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1866)

*Հիմնուած է* 1866 *Ապրիլ—Մայիսին: Հայ թերթ մը կու տայ հետեւեալ ծանօթութիւնը.* «*Իւսկիւտարի* Իճատիէի Թաղի *երկսեռ դըպրոցը վերջին ժամանակներս դրեթէ ապարդիւն վիճակի մը մէջ կը գտնուէր . . . Թաղին* Տիկնայք բարեհաճեր են մասն ունենալ դպրոցին յառաջադիմութեան գործոյն մէջ. Ց. Այվազեան, Մ. Զարխեան եւ Կ. Օտեան

---

[100] Ժամանակ, Հանդէս Հայրենանուէր, Կ. Պ. 1865, էջ 55:

[101] Փունջ, 1866, Թ. 124:

ազնուուհի Տիկնայք *հրաւէր կարդալով Թաղին տիկիններուն, յաջողեր են* Ընկերութիւն *մը կազմել* եւ իրենց բաւականութեանը չափ ջանալ աղջկանց դպրոցին յառաջադիմութեան համար խնամ տանելով եւ կարեւոր պիտոյքը հայթայթելով[102]»:

Մասիսի *մէջ*[103] Վաղարշ *կը գովէ Իճատիէի* «Տիկնանց Ընկերութեան» *անդամուհիներն*, «որք ուրիշներէ ետ մնալ չուզելով իրենց թաղին աղջկանց ուսումնարանը բարեկարգելու ձեռք զարկեր են: Թո՛ղ իրենց հետեւողներն ու ձեռնտուները շատնան, ո՞վ կրնայ ըսել այն ատեն թէ հայերն ալ ապագայ մը չունին»:

## 4· ՀԱՅԿԱԶԵԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1881—1882)

Մասիս[104] 1883 *Մարտ 7ին կը գրէ*· «*Կը լսենք թէ Իւսկիւտարու* Իճատիէի *դպրոցին հոգաբարձութիւնն ինչ ինչ պատճառներով հրաժարած է եւ դպրոցն անկերպարան վիճակ մ'ունենալուն, տեղւոյն* Հայկազեան Ուսումնասիրաց Ընկերութեան *Գործադիր Ժողովը* նկատողութեան առեր է այս վիճակը եւ երէկուընէ սկսեալ իր հսկողութեան տակ առեր է, *մինչեւ որ Ազգային իշխանութեան կողմէ տնօրէնութիւն մը լինի*»:

*Մեզ կը թուի թէ Ընկերութեանս հիմ–*

---

102 Փունջ, 1866, Թ· 124, *Յունիս*:
103 1866, Թ· 744:
104 1883, Թ· 3425:

նումը ո՛չ թէ 1883ին, այլ 1881—1882ին եղած համարելու ենք:

Ընկերութիւնս անծանօթ եղած է թէ՛ Թորգոմեանի եւ թէ Ալպօյաճեանի:

## ՀԱՑՏԱՐ ՓԱՇԱ

### 1. ԱՆԱՏՈԼՈՒԻ ՕՍՄ. ԵՐԿԱԹՈՒՂԻՈՑ ՀԱՅ ՊԱՇՏՕՆԷԻՑ ԱԶԳՕԳՈՒՏ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

Հիմնուած է 1908 Հոկտ. 25ին: Ունի իր կանոնագիրը, բաղկացած 37 Յօդուածներէ, տպուած Պոլիս 1909ին:

Միութեան նպատակն է. «Ա. Նիւթապէս օգնել Հայաստանի ընդհանուր սովեալներու, որչափ ատեն որ կարիք կայ, եւ կարօտեալներու: Բ. Ազգօգուտի հանգամանքը արդարացնող Բարեխիրական կամ Կրթական ձեռնարկներ յաջողութեամբ գլուխ հանելու համար նիւթական եւ բարոյական որեւէ օժանդակութիւն եւ ջանք չխնայել: Գ. Երկրագործական օգտակար եւ նորագոյն գիտելիքներով մշակել Անատոլուի Հայ հողագործին միտքը, կարող ընծայելով զայն գիտութեան պահանջումներուն համաձայն ընթանալու[1]»:

Միութիւնը կազմուած էր Անատոլուի Օսմ. Երկաթ. Վարչութեան մէջ, ինչպէս նաեւ Ընկերութեան բոլոր գիծերուն վրայ գտնուող ամբողջ հայ պաշտօնէութեան անդամակցութեամբ:

[1] Կանոնագիր, Կ. Պ. 1909, էջ 3—4:

Միութեան կենդրոնը կը գտնուէր Հայտար Փաշա՝ մասնաճիւղեր ունենալով Իզմիր, Աստափազար, Պիլէճիկ, Էսկիշէհիր, Անկիւրիա, Աֆիոնգարահիսար, Գոնիա եւ Պուլկուրլու:

Անդամներէն ամսավճար կը գանձուէր 5, 10, 15 եւ 20 ղրուշ: Միութեան վարչութիւնը յանձնուած էր Ընդհ. Ժողովէն ընտրուած Տնօրէն Խորհուրդի մը, իսկ Համագումար Ժողով կը կազմուէր Ընդհ. Ժողովին եւ Տնօրէն Խորհուրդին ըրած խառն նիստէն[2]:

Միութեան Վարչութիւնը կազմուած էր 1910—1911ին հետեւեալ ձեւով.

Կենդրոնական Դիւան

| | |
|---|---|
| Նախագահ՝ | Անտոն Թարագ |
| Ատենապետ | Յարութիւն Ոսկեան |
| Դեր–Ատենապետ | Գէորգ Քէրէսթէճեան |
| Ատենադպիր | Լեւոն Պապոյեան |
| Գանձապետ | Կարապետ Աղասի |
| Հաշուակալ | Ներսէս Ալլահվէրտիօղլու |
| Քարտուղար | Հրանտ Թէրզեան |

Խորհրդակից անդամներն էին. Գրիգոր Ասլանեան, Գրիգոր Աղլայեան, Եդուարդ Միհրան, Զատիկ Յակոբեան, Լեւոն Գեւոնեան, Խաչիկ Աբրահամեան, Կարապետ Ադամեան, Հրանդ Յովհաննէսեան, Յակոբ Թորոսեան, Յարութիւն Պառնազեան, Յովհաննէս Պալեան, Յովհաննէս Արեւեան,

[2] Անդ, էջ 5—6:

Պետրոս Ցոփանեան, Վահրամ Ալթունեան, Օննիկ Յովհաննէսեան։

1911ին Միութիւնը ունէր 348 անդամ։ 1910 Մայիսին բացումը կ'ընէ իր առաջին վարժարանին, այսինքն՝ Միութիւնը 30 օսմ. ոսկիի տարեթոշակով նախակրթարան մը կը բանայ Սասնոյ Կելիէ–Կիւզան գիւղին մէջ, տեսչութեամբ Սիմէոն Զաւարեանի[3]։ 1910—1911ի շրջանին Միութեան մուտքն եղած է 33,861 ղուրուշ[4]։

1918ին Միութիւնը կը վերակազմուի[5]։ 1919 Մարտին 1000 ոսկի կը նուիրէ Հայ որբերու եւ 500 ոսկի հայ տարագրեալներու[6]։։ Հայտարփաշայի տարագրեալներու հոգը կը ստանձնէ՝ մասնակցութեամբ Գատըգիւղի Հայ Տիկնանց Մասնախումբի մը[7]։

1919ին Հայտարփաշա հաւաքուած էին Հայաստանի զանազան կողմերէ 800 տարագրեալներ, որոնք յատուկ «պարագա»ներու մէջ կը խնամուէին եւ որոնց ծառայութեան նուիրուած էին տեղւոյն Հայուհիներէն հետեւեալները. Լուիզ Անտոնեան, Վարդուհի Զարուկեան, Տ. Ա. Պայեան, Էլիզա Միքայէլեան, Վերգինէ Մինասեան, Հերմինէ Պաքալեան, Արաքսի Սպէնչեան, Բերկրուհի Ծալեան եւ Մաննիկ Քիւրքճեան[8]։

---

[3] *Տարեկան Տեղեկագիր*, Կ. Պ. 1911, էջ 15—16։
[4] *Անդ*, էջ 20։
[5] *Թէոդիկ*, *Ամէն. Տարեց.* 1921, էջ 300։
[6] Ժամանակ. 1919, Թ. 3478։
[7] *Անդ*, Թ. 3530։
[8] *Անդ*, Թ. 3536։

Մխութիւնը 300ական ոսկի կը նուիրէ Կիլիկիոյ աղետեալներուն եւ հայ բանակին[9]: Իր գոյութիւնը պահած է մինչեւ 1922:

## ԳԱՏԸԳԻՒՂ

### 1. ՆՊԱՍՏԱՄԱՏՈՅՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

Մեր միակ աղբիւրը՝ Ծիածան՝ «Նպաստամատոյց Ընկերութիւն» վերնագրի տակ 1870 Ապրիլ 11ին կը գրէ. «Պու կիւնլէրտէ Գատը քէօյ գարիյէսինտէ պազը միլլէթ խայըրխահը օլան գաթլարըտան պիր չիրքէթ թէշքիլ օլունարագ քէօյիւն միւհթաճլարընա վէ եէթիմլէրինէ խանէ իթմէքնիյէթի խայրիյէսի իլէ[10]»: Ինչպէս կը տեսնուի՝ բարեբարական նպատակով Ընկերութիւն մըն է Նպաստամատոյցը եւ հիմնուած 1870ի գարնան: Նոյն տարւոյ Զատկին Ընկերութիւնը նուիրատուութիւն կ'ընէ աղքատներու եւ դպրոցական աշակերտներու[11]: Ծիածանի նոյն տեղիքէն կ'իմանանք թէ Ընկերութեան գլուխներն եղած են. Պետրոս Ֆընտըքլեան, Սարգիս Թորոսեան եւ Մկրտիչ Կիւմիւշեան:

Ընկերութիւնս անծանօթ է Ալպօյաճեանի:

---

[9] Անդ՝ 1920, Թ. 3809:
[10] Ծիածան, Կ. Պ. 1870, Թ. 134:
[11] Անդ:

## 2· «ՄԻՈՒԹԻՒՆ ՄԱՆԿԱՆՑ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

Կազմուած է 1878 Յունուարին: Հիմնադիրներն են Գատըգիւղի Եսայեան եւ Մանուկեան ընտանիքներու զաւակները: Իրենց նպատակն եղած է. «Արարատեան Ընկերութեան վարժարանաց դասագիրքեր հայթայթել» եւ այդ նպատակով 1878ին նուիրատուութիւն մ'ընել է վերջ՝ 1879ին ալ 2000 դահեկան յանձնած են Արարատեանի[12]:

1881ին շնորհակալութիւն կը յայտնէ Արարատեան որ «Միութիւն Մանկանց»ը 961 դահեկանէ զատ՝ զանազան գիրքեր ընծայած է իրեն[13]:

Ալպօյաճեանի ցանկին մէջ չենք գտներ Ընկերութիւնս:

## 3· ՀԱՄԱԶԱՍՊԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

Հիմնուած է 1879 Յունուարին: 1879 Փետր. 23 թուականով կը գրէ յօդուածագիր մը Մասիսի մէջ. «Անցեալ օրեր իմացայ թէ Գատըգիւղի մէջ Համազասպեան անուամբ մի Ընկերութիւն հաստատուած է... Նախ անհաւատալի թուեցաւ ինձ, սակայն ի վերջոյ լսելով թէ Ընկերութիւնն կեդրոնատեղի մի եւս ունի, ուզեցի այցելութիւն մ'ընել: Կեդրոնատեղին էր ծովեզերքն Ալեքսիատի խան վերնայարկ Թիւ 9, միջակ, բայց գեղե–

---

[12] Փունջ, 1878, Թ. 1328: — Մասիս, 1879, Թ. 2229:

[13] Մասիս, 1881, Թ. 2972:

*ցիկ տեսարանով սենեակն, ուր կը գտնուէր* դեռ աղքատիկ մի թանգարան *եւ մի քանի օրաթերթք, ինչպէս Արեւելեան Մամուլ Հանդէսն, Մասիս, Մանզումէ եւ Թէրճէմանի Էֆքեար, գորոնք Մեծ. Խմբագիրք ի քաջալերութիւն Ընկերութեան ձրիապէս կը ղրկեն: Ընկերութեան* Կանոնագրութիւնը *կարդացի.* նպատակն *էր՝* մի ընթերցարան հաստատել որ պիտի ունենայ մի մատենադարան, այլ եւ այլ լրաթերթք եւ հանդէսք: *Մեծ եւ օգտակար նպատակ մ'էր այս, վասն զի Գատըգեղի համար դեռ կը պակսէր մի ընթերցարան... Սենեկին մէջ նստած էր վաղեմի դաստիարակ Զօրայեան Թորոս պատուելին... Ընկերութեան հիմնադիր երիտասարդք այդ ծերունի դաստիարակն, վարժարանէն պաշտօնանկ ըլլալէ յետոյ, Ընկերութեան սենեկի տեսուչ կարգելով՝ ամսական մի յատկացուցած էին*[14]»:

*Վ. Տիրատուրեան հաստատելէ վերջ թէ Գատըգիւղի «Համազգային Ընկերութիւն»ը* 1879 *Յունուարին հիմնուած է՝ կը գրէ. «Համազգային անուն Ընկերութիւնը նպատակ ունի այդ գիւղի մէջ մատենադարանով* Ընթերցատուն *մը հաստատել: Գատը-քէօյ ունի թէեւ մասնաւոր խնամքի առարկայ եղած վարժարան մը, բայց ժողովրդին համար կը պակսէր յառաջադիմութիւնի այս-*

---

[14] Մասիս, 1879, Թ. 2269:

պիտի զօրաւոր խթան մի: Ընթերցատունը ժողովրդի կրթարանն է[15]»:

Թէրճէմանը էֆքեար[16] 1880 Հոկտ. 24ին կ՚իմացնէ թէ «Համազասպեան Ընկերութիւն»ը «տանէ մը ի վեր» թոյլցած ըլլալով՝ ուրիշ Ընկերութիւն մը կը կազմուի:

4. ՏԻԿՆԱՅՑ ԵՒ ՕՐԻՈՐԴԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

«Բերացի Հայ Օրիորդ մը» նամակ մը ուղղելով Մասիսին՝ կը գրէր 1879 Ապրիլ 6ին. «Հայ երիտասարդութիւնը նոր եռանդով տոգորուն, այսօր ձեռք ձեռքի կու տայ եւ կը ձեռնարկէ դպրոցներ բանալ Հայաստանի, Փոքր Ասիոյ եւ Կիլիկիոյ մէջ: Նա վսեմ նպատակի մը համար կը գործէ — բարոյապէս վերածնիլ Հայութիւնը: Նա կ՚աշխատի լոյս սփռել Հայաստանի խաւար եւ ամպոտ հորիզոնին վրայ, դաստիարակութիւն տալ տգիտութեան խոր անդունդներուն մէջ թարթափող Հայուն եւ մեր հայրենեաց մէջ ծաւալել այն վսեմ սկիզբներ, որք նշանաբան են եղած քաղաքակիրթ ազգերուն: Երբ այս մեծ գործի համար անվհատ կը տքնի Հայ երիտասարդութիւնը, անխնայ զոհելով ժամանակ եւ քրտունք, երբ մեր գաւառացի եղբայրներ եւ քոյրեր նորա շնորհիւ կը սկսին ծծել ուսման կաթը եւ կրթութեամբ սնել, մեք, տեղացի Հայ օրիորդ-

[15] Թէրճէմանը էֆքեար, 1879, Թ. 514:
[16] Թ. 959:

ներս, գուցէ անզգայ հայրենեաց սիրոյն, անտարբեր հանդիսատեսներ միայն կ՚ըլլամք այս փրկարար շարժմանց եւ այս օրհնեալ աշխատանաց: Այլ միթէ այս չէ՞ մեզ ամօթ: Միթէ չի՞ կարմրիր մեր ճակատ ամեն անգամ որ խորհիմք մեր պարտուց վրայ եւ զգամք թէ միշտ անփոյթ կը գտնուիմք նոցա առջեւ: Այո՛, մեք ալ սրբազան պարտքեր ունիմք կատարելիք. մեք կը պարտիմք օգնել ազգային յառաջադիմութեան, մեք կը պարտիմք օգնել Հայաստանի բարոյական փրկութեան վեհ գործին. ճանաչե՛մք մեր կոչում, փութա՛մք եւ կատարե՛մք զայն խղճի մտօք... հրաւէր կը կարդամ բոլոր Պոլսեցի Հայ օրիորդաց, ազնիւ քերցս, իրենց եղբարց օրինակին հետեւիլ եւ Միութիւն կազմելով՝ օգնել այդ ազգօգուտ Ընկերութեանց, որք կոչուած են Հայաստանի սրտին վրայ վառել կրթութեան ջահը[17]»:

Անկէ քանի մ՚օր վերջ, 1879 Ապրիլ 18ին կը գրէր «Մասիս»ի խմբագիրը. «Բերկրութեամբ կը լսեմք թէ Գատըգիւղի Հայ տիկնայք եւ օրիորդք Ընկերութիւն մը կը կազմեն Կիլիկեան Ընկերութեան օժանդակելու համար: Գոհութեան արժանի է որ «Բերացի Հայ օրիորդին» լրագրոյս միջոցաւ ըրած հրաւէրն այսպէս համակրական ընդունելութիւն կը գտնէ Գատըգիւղի ազ–

[17] Մասիս, 1879, Թ. 2294:

նուամիտ Հայ տիկնանց եւ օրիորդաց կողմանէ»[18]:

Գաւառգիւղի հայ իգական սեռի կազմած Ընկերութեան անունն է. «Տիկնայց եւ Օրիորդաց Ընկերութիւն» եւ հիմնուած է 1879 Ապրիլ 10—20ի միջոցին[19]: Սխալ է, հետեւաբար, Լրագիրի գրածը թէ Ընկերութեանս անունը «Արմէնուհեաց Ընկերութիւն» է[20]:

Ընկերութեանս նպատակը, ինչպէս տեսանք, ըստ Մասիսի է՝ օժանդակել Կիլիկեան Ընկերութեան:

Գաւառգիւղի «Տիկնայց եւ Օրիորդաց Ընկերութիւն»ը շատ կարճ ժամանակ միայն անկախօրէն գործած է. 1879 Յունիսին սկիզբը արդէն որոշում տուած էր միանալու Սկիւտարի «Ազգանուէր Հայուհեաց Ընկերութեան» հետ[21]: Միութիւնը տեղի կ'ունենայ Յունիս 22ին եւ «Տիկնայց եւ Օրիորդաց Ընկերութիւն»ը կը դառնայ «Ազգանուէր»ի մէկ ճիւղը, ատկէ յետոյ կրելով անոր անունը[22]:

Ալպօյաճեանի անծանօթ է Ընկերութիւնս:

---

[18] Անդ, Թ. 2303:
[19] Հմմտ. Մասիս, 1879, Թ. 2303, 2356:
[20] Լրագիր, Կ. Պ. 1879, Թ. 985:
[21] Մասիս, 1879, Թ. 2356:
[22] Անդ, Թ. 2368:

## 5. ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

*Հիմնուած կը համարինք 1880 Հոկտ. ի սկիզբը*[23], *Թաղին «Համազգայեան Ընկերութեան» քայքայումէն վերջ: Իր նպատակն է Թաղին* Արամեան վարժարանի *նպաստել:* 1880 *Հոկտ. ին նոյն վարժարանին համար Թաղականութեան յանձնած է* 500, *իսկ Նոյեմբերին՝* 700 *դուրուշ: Ընկերութեան Վարչ. կազմն էր.*

| | |
|---|---|
| *Խաչիկ Կամսարական* | *Ատենապետ* |
| *Եղնա Զօրայեան* | *Ատենադպիր* |
| *Գաբրիէլ Հարենց* | *Գանձապահ*[24] |

## 6. ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

*Թատերական Ընկերութիւն մըն է: Չենք գիտեր թէ Գատըգիւղի՞ յատուկ էր: Չենք կրցած ճշդել նաեւ հիմնումի թուականը: Կը յիշուի 1880 Նոյեմբերին: Որքան կ՚երեւայ՝* Պետրոս Ա. Մաղաքեանն *գլուխ եղած է Ընկերութեան:*

1880 *Նոյ. 7ին Գատըգիւղի Թատրոնի սրահին մէջ, վարչութեամբ Մաղաքեանի, Ընկերութիւնը ներկայացում մը կու տայ ի նպաստ* Տիկ. Արուսեակ Պէզիրճեանի *(Փափազեան), ուր ծախք եղած է* 2000 *դուրուշ, իսկ մուտք ունեցած են* 1460 *դուրուշ, այն ալ* 615 *դուրուշ ապառիկով...*[25]*:*

---

[23] *Հմմտ.* Թէրճ. էֆքեար, 1880, *Թ.* 959:
[24] *Անդ, Թ.* 1000:
[25] *Անդ, Թ.* 969, 972:

### 7. ՆՐԱԺՇՏԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1889)

Մեզ ծանօթ է Գատըգիւղի մէջ կազմուած «Նրաժշտասէր Ընկերութիւն» մը 1889ին, սակայն իր մասին խօսող տեղիքը դժբախտաբար կորսնցուցած ենք:

### 8. ՀԱՅ ԱԿՈՒՄԲ (1908)

Հիմնուած է 1908 Սեպտեմբեր 1ին: Իր կանոնագիրը, հրատարակուած 1909ին, կը պարունակէ 27 կէտ, որոնցմէ առաջինը կ՚ըսէ. «Գատը–Գիւղի Հայ երիտասարդութիւնը կազմած է Միութիւն մը, որ նպատակ ունի հաստատել Ընթերցարան, Լսարան, գրօսարան ‘Հայ Ակումբ, անունով[26]»: Միութեան կրնան անդամակցիլ 20 տարեկանէն վեր Հայ անհատներ: Մուտքի կը վճարուի 1 օսմ. ոսկի, իսկ ամսավճարն է 15 ղուրուշ[27]:

Միութիւնը կը յիշուի 1911ին[28] եւ վերակազմուած է 1918ին[29]:

### 9. ԱՐԱՐԱՏԵԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

Կը յիշուի 1908 Սեպտ.ի սկիզբը եւ կու տայ թատերական ներկայացումներ Հայ Յեղափոխական մամուլին ի նպաստ[30]:

---

[26] Կանոնագիր Գատը–Գիւղի Հայ Ակումբի, Կ. Պ. 1909, էջ 3:

[27] Անդ, էջ 4:

[28] Այսօր, Փարիզ 1952, Թ. 536:

[29] Հմմտ. Թէոդ. Ամէն. Տ. 1921, էջ 308:

[30] Սուրհանդակ, 1908, Թ. 82:

## 10· ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

Գատըգիւղի մէջ երկրորդ անգամ ըլլալով հայ տիկիններ Ընկերութիւն մը կազմած են հաւանօրէն 1909ի աշնան, Ատանայի ջարդին առթիւ: Ընկերութիւնը կը կոչուի «Տիկնանց Միութիւն», որ 1909ին Ատանայի որբերուն համար հաւաքած է 10,309 ղուրուշ, իսկ 1910 Յունուարին, գլխաւորութեամբ Տիկ. Ֆուլիանէ Դուրեանի, դարձեալ նուիրահաւաքում կ'ընէ նոյն նպատակով[31]:

## 11· ՄԱՍԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909—1910)

Ընկերութիւնս կազմուած կ'երեւայ 1909—1910ի ընթացքին: 1911 Ապրիլ 8ին մասնակցած է Պոլսոյ Ս. Ողիմպիականին[32]:

Իր նպատակներէն մին եղած է թաղին Արամեան վարժարանի կարօտ աշակերտներուն նպաստել նիւթապէս: 1911 Հոկտ. 31ին գումարուած Ընկերութեան ժողովքը հետեւեալ որոշումներն ըրած է. «Ա. Ըստ առաջնոյն շարունակել Արամեան վարժարանի մէջ տասը կարօտ աշակերտի պաշտպանութիւնը: Բ. Ազգ. Կեդ. վարժարանի Զ. Ե. Դ. կարգերուն հետեւեալ նիւթերու մէջ առաջին հանդիսացող աշակերտներէն իւրաքանչիւրին տասնական օսմ. ոսկի դրամական մրցանակ տալ: Կարգ Դ. — հայերէն: Ե. — բնական գիտութիւնք: Զ. — մաթեմաթիք: Գ. Գատը–

---

[31] Ժամանակ, 1910, Թ. 381:

[32] Այսօր, Փարիզ 1952, Թ. 536:

*գիւղի Արամեան վարժարանի յառաջադէմ երկսեռ աշակերտներէն Ընկերութեան կողմէ որոշուած նիւթերու մէջ առաջին հանդիսացողներուն վեց արժէքաւոր մրցանակ յատկացնել վեց կարգերու համար: Դ. Գիտական, պատմական եւ աշխարհագրական նիւթերու վրայ հրապարակային դասախօսութեանց շարքը վերսկսիլ*[33]»:

1913 *Սեպտեմբերին կը լուծուի Ընկերութիւնը*[34]:

## 12. «ՇԻՐԱԿ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1912)

*Պոլսոյ* Ժամանակ *կը գրէ* 1912 *Դեկտեմբեր* 29 *թուականով. «Կը լսենք թէ Գաւառ-գիւղի* Նորահաստատ «Շիրակ» Ընկերութեան *վարչութեան անդամներէն ոմանք հրաժարած են ներքին կարեւոր պաշտօնէի մը փոփոխութեան առթիւ ծանր խնդիրներ ծագած ըլլալուն համար»* (Ժամանակ, 1912, *Թ*. 1309):

*Այս է մեր միակ ծանօթութիւնը Ընկերութեանս մասին: Հիմնուած կ'երեւայ* 1912*ին*:

## 13. ՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

*Կազմուած է* 1913*ին: Նպատակն է. «*Գաւառի հայ աղքատ աշակերտներու գրենական

---

[33] Ժամանակ, 1911, Թ. 949:
[34] Ժամանակ Հեռաձայն, 1913, Թ. 1557:

պիտոյք հայթայթել եւ գիւղատնտեսական, գիտական տեսրակներ տպագրել եւ ձրի բաժնել եւ մաս մըն ալ գիւղիս (*Գառը-գիւղի*) Արամեան վարժարանին աղքատիկ աշակերտութեան բաժին հանել [35]»:

1913 *Դեկտ. 11ին կը գրէ* ժամանակ. «Տասոնց ի վեր Գառըգիւղի մէջ մտածուած փափաքը իրականացած է եւ Գառըգիւղի հայ տիկիններն եւ օրիորդները Միութիւն մը կազմած են... *բարձր դասու Հայ կանայք խանդավառութեամբ մը փարած են գործին եւ կազմած են Ընդհ. Ժողով, որուն ատենապետուհի ընտրուած է Վսեմ. Տիկ. Սէֆէրեան, դեր ատենապետուհի՝ Տիկ. Արուսեակ Հարենց, ատենադպիր՝ Տիկ. Նասյեան: Տնօրէն Խորհրդոյ ատենապետուհի ընտրուած է Տիկ. Հոփփսիմէ Արապեան, դեր ատենապետուհի՝ Տիկ. Ագնիւ Ցալճեան, ատենադպիր՝ Օր. Թագուհի Պոյաճեան, դեր ատենադպիր՝ Օր. Նուարդ Պաթմագեան, գանձապետ՝ Տիկ. Մխաք Պէյ Մակարեան, համարակալ՝ Օր. Լուիզ Աճեմեան, խորհրդական՝ Տիկ. Եփփիմէ Աւետիսեան, Տիկ. Մաննիկ Պէրպէրեան, Տիկ. Ռոզ Գանճեան* [36]»:

*Միութիւնս տեւած ըլլալու է մինչեւ* 1915:

---

[35] *Անդ*, 1914, *Թ.* 1707:
[36] *Անդ*, 1913, *Թ.* 1644:

### 14. ԹՈՐՈՍԵԱՆ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

1913 *Նոյեմբերին սկիզբը կը տեղեկագրէ* Ժամանակ[37]. *«Գատըգիւղի Թորոսեան երկսեռ վարժարանի մէջ* «Թորոսեան Սանուց Միութիւն» *անունով դպրոցական Միութիւն մը կազմուեցաւ, նպատակ ունենալով. 1. Ցերեկեայ եւ գիշերօթիկ ձրիավարժ աշակերտներ պահել վարժարանը. 2. Թանգարան–Մատենադարան մը հիմնել եւ 3. Բնագիտական գործիքներ գնել: Թաղին մէջ մեծ ընդունելութիւն գտած է այս ձեռնարկը, որ* առաջին շաբթուն *իսկ յուսալից նախանշաններ տալ սկսած է: Համակիրներու մէջ աչքառու էր Լեւոն Էֆ. Սէմէրճեանի փոյթեռանդ մասնակցութիւնը»:*

1919*ին Միութիւնը անգլիերէնի դասընթացք մը կը կազմակերպէ Թորոսեան վարժարանի մէջ*[38]:

### 15. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ (1914)

Ժամանակ 1914 *Սեպտ.ին կը ծանուցանէ. «Կը լսենք թէ Գատըգիւղի մէջ* Աղքատախնամ Մարմին *մը կազմուած է, որ արդէն գործի ձեռնարկած է... Նոյն խնամակալութենէն մէկ քանի անդամներ անձամբ գանձանակի շրջագայութիւնը պիտի կատարեն եւ տպեալ նուիրատոմսերով բարեսէր անձերու օժանդակութեանը պիտի դիմեն*[39]»:

---

37 *Անդ*, *Թ*. 1628:
38 *Անդ*, 1919, *Թ*. 3568:
39 Ժամանակ, 1914, *Թ*. 1922:

Գաւառգիւղի մէջ «Աղքատախնամ Ընկերութեան» մը յիշատակութեան չենք հանդիպած հնութեան մէջ: Այդպիսի Ընկերութեան մը թուականը անծանօթ է Ալպօյաճեանի[40], մինչ Թորգոմեան[41] լոկ «Աղքատախնամ» մը կը յիշէ, նոյնպէս անթուական:

## 16. ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

Հիմնուած է 1918 Հոկտ.ին: Նոյեմբերին սկիզբը Միութիւնը իր Բ. Ընդհ. ժողովին մէջ կը վաւերացնէ իր կանոնագիրը եւ կ'ընտրէ վարչութիւնը[42]:

## 17. ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

1918ի զինադադարէն վերջ Գաւառգիւղի մէջ ա՛յլ եւս չենք հանդիպիր «Հայ Տիկնանց Կրթասիրաց Միութեան», այլ լոկ «Կրթասիրաց Միութեան» մը, որուն վարչական անդամները մեծ մասով այրեր են: Յայտնի կը տեսնուի թէ պատերազմէն վերջ փոփոխութիւն մը տեղի ունեցած է. «Կրթասիրաց» խորագիրը պահելով՝ Միութիւնը վերածուած է երկսեռի եւ կամ «Տիկնանց»ը դադրած է:

1919 Յունուարին Միութիւնը ներկայացում կու տայ, որուն հասոյթին կէսը Հայաստանի սովեալներուն, իսկ միւս կէսը Լսարան–Ընթերցարան մը բանալու յատկա–

---

40 Գաղ. Տարեգր., Գ., էջ 123:
41 Երեմ. Զէյթպ., Գ., էջ 178—179:
42 Ժամանակ, 1918, Թ. 3360:

ցուած է[43]: Կը բանայ անգլիերէնի եւ ֆրանսերէնի դասընթացք մը[44]: Աւելի վերջ կ'ունենայ նաեւ մեքենագրութեան եւ տոմարակալութեան դասընթացքներ[45]:

1919 Դեկտ.ին Միութեան Վարչ. Խորհուրդը կը կազմէին հետեւեալները.

Հրաչեայ Տէրոսկի
Յ. Տէրունի
Յ. Արսլան
Ն. Գամէր
Հ. Տատեան
Լ. Թիւթիւնճեան
Օր. Ա. Ֆէրհատեան[46]

## 18. ՈՐԲԱԽՆԱՄ (1918)

Կազմուած է 1918ի վերջը: Ահա իր առաջին Վարչութիւնը.

| | |
|---|---|
| Ն. Օհանեան | Ա. Ատենապետ |
| Տօքթ. Մ. Արդարեան | Բ. Ատենապետ |
| Ս. Թէրճէմանեան | Ա. Ատենադպիր |
| Ա. Մալխասեան | Բ. Ատենադպիր |
| Ե. Ն. Կտուրեան | Գանձապետ |
| Վ. Զէյթունցեան | Համարակալ |
| Տօքթ. Խ. Շիմշիրեան | |
| Լ Ռ. Սէմէրճեան | |
| Պ. Գալուզճեան | |
| Հ. Արդարեան | |
| Յ. Նազդաչեան[47] | |

[43] Անդ, 1919, թ. 3427:
[44] Անդ, թ. 3670:
[45] Անդ, թ. 3698:
[46] Անդ:
[47] Ժամանակ, 1919, թ. 3419:

*Որբախնամը սկիզբէն կը ստանձնէ* 100 *որբերու խնամքը։ Շէնք կը տրամադրեն Յուսուֆեան Եղբարք։* 1921*ին* 4500 *ոսկի ծախք ընելով՝ Ունճեան վարժարանի վրայ նոր յարկ մը կը բարձրացնէ, ուր կը փոխադրուին Թաղին բոլոր որբերը*[48]։

19· ԱԶԱՏ ԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Առաջին յիշատակութեան հանդիպած ենք* 1919 *Ապրիլին*։ Ժամանակ[49] *կը գրէ որ* «*Գատըգիւղի* Ազատ Լսարանական Միութիւնը *գիշերուան դասախօսութիւններու ընթացք մը հաստատած է անգլիերէնի եւ ֆրանսերէնի*»։

*Թէոդիկի քով*[50] *լոկ Միութեանս անունը յիշուած է*։

20· ԹԱՏԵՐԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1919)

*Կը յիշուի* 1919 *Մայիսի սկիզբը, ծանուցումի մը մէջ*[51]*։ Հաւանական է որ հիմնուած ըլլայ* 1919*ի սկիզբը*։

21· «ԳՈՂԹԱՆ» ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Հիմնուած կ'երեւայ* 1919*ի գարնան*։ *Կը գործէ* 1919 *Մայիսին*[52], *եւ նոյն տարւոյ Հոկտեմբերին կը վերակազմուի*[53]։

---

48 Ժողովուրդի Ձայնը, *Կ. Պ.* 1921, *Թ.* 735։
49 1919, *Թ.* 3498։
50 Ամէնուն Տարեցոյցը, 1921, *էջ* 307։
51 Ճակատամարտ, *Կ. Պ.* 1919, *Թ.* 144։
52 Ժամանակ, 1919, *Թ.* 3520։
53 *Անդ*, *Թ.* 3659։

## 22. ՈՐԲԱՍԷՐ ՄԱՆԿԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1920)

*Հայ Կաթողիկէ Անարատ Յղութեան Քոյրերու Գատըգիւղի վարժարանի տեսչութեան նախաձեռնութեամբ կազմուած է այս Միութիւնը: Ժամանակակից թերթը կը տեղեկաբերէ. «Գատըգիւղի* «Քերց Անարատ Յղութեան» *վարժարանին նախաձեռնութեամբ կազմուած է* «Որբասէր Մանկանց Միութիւն» *մը, որուն նպատակն է* թաղին որբերուն պտուղ, անուշեղէն, շոքոլաթ եւ այլն հայթայթել: *Ատենապետուհին է* Քոյր Թէոպիստէ, *որուն կ'օժանդակեն* Օրք. Անգինէ Տէրոսկի, Նուարդ Մազմանեան, Լիւսի Նահապետեան, Ռոզիկ Պարոնեան, Եւգինէ Պատուհասեան եւ Անահիտ Պօղոսեան: *Միութեան կ'անդամակցին 100ի մօտ* պզտիկ օրիորդներ, որոնք ամէն շաբաթ իրենց պտուղի դրամէն խնայած գումարը կը տրամադրեն նոյն թաղին բաղդագուրկ որբուկներուն: *Յաջողութիւն կը մաղթենք եւ կը յուսանք որ ուրիշ թաղերու մէջ ալ անոնցմէ բարի օրինակ առնելով պիտի կազմուին նմանօրինակ Միութիւններ*[54]»:

## 23. «ՇՈՒՇԱՆ» ՄԻՈՒԹԻՒՆ (1920)

Ժողովուրդի Ձայնը *ունի հետեւեալ տողերը*[55]. «*Գատըգիւղի* Շուշան Միութեան

[54] Ժամանակ, 1920, Թ. 3810:
[55] 1920, Թ. 563:

*կանոնագիրը Թաղ. Ժողովը վերադարձուցեր է Թաղ. Խորհուրդին, որպէս զի իբրեւ Թաղային մարմին վաւերացուի»: Թերթին այս հակիրճ ծանուցումէն ի՞նչ կարելի է իմանալ Միութեան բնոյթի մասին: Գուցէ այն թէ* իզական *Ընկերութիւն մ՚է ան:*

*Ուրիշ տեղէ լուսաբանութիւն մը չենք գտած:*

## 24. «ՏԱԻՐՈՍ» ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1920)

*Հայ թերթը կը գրէ* 1920 *Սեպտեմբերին.* «Տաւրոս Տիկնանց Միութիւնը, *որ կազմուած է Գատըգիւղի մէջ, ազգ. իշխանութեան վաւերացումով՝ մեզ ղրկած է կոչ մը, որով կ՚ըսէ թէ իր նպատակն է* տալ դաստիարակութիւն եւ ուսում գաւառացի խոստումնալից աղջիկներու. հայթայթել անոնց միջոցներ՝ ստանալու բարձրագոյն կրթութիւն, որպէս զի երթան մայր հայրենիք տարածելու ազգանուէր խանդ եւ գիտութիւն. դրկել ներմակեղէններ, դեղ ու դարման անխոնջ պահապան մեր զինուորին[56]»:

*Միութիւնը* 480 *կտոր ճերմակեղէն կը պատրաստէ հայ զինուորին համար, սակայն պատշաճ կը տեսնէ զանոնք յանձնել Պատրիարքարանին՝ յարմար կարգադրութիւն մ՚ընելու համար*[57]:

---

[56] Ժողովուրդի Ձայնը, 1920, Թ. 595:
[57] Ժողովուրդի Ձայնը, 1921, Թ. 735:

### 25. ԲԱՐՈՅԱԿՐԹԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1921)

*Հայ Բողոքական Ընկերութիւն մըն է, նպատակ ունենալով բանախօսութեանց մի-ջոցաւ ընդհանուր բարոյական սկզբունքներ յիշեցնել եւ գործադրել տալ*[58]:

### 26. ԱՐԱՄԵԱՆ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1922)

*Գատըգիւղի* Արամեան վարժարանը, *հակառակ իր բարձր հնութեան, հին ժամա-նակները չէ ունեցած «Սանուց» մը*: «Արա-մեան Սանուց Միութիւն»*ը հազիւ* 1922*ին կը կազմուի*[59], *եւ կը տեւէ մինչեւ օրս*[60]:

## ԳԱՐԹԱԼ

### 1. ՀԱՅ ԱՏԱՄՆԱԲՈՒԺԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Պիմէն Զարդարեանի կազմած ցանկին համեմատ*[61] «Հայ Ատամնաբուժական Միու-թեան» *հիմնումի նախաձեռնարկ եղած է* Գարթալի *մէջ: Մեզի ծանօթ աղբիւրները նոյն Միութեան* ժողովատեղի *ցոյց կու տան* Բերան: *Կը թուի թէ Միութիւնը Գարթալ հիմնուած, բայց իբր կենդրոն տեղ՝ Բերա եղած է հաւաքատեղի: Հիմնուած է* 1919 *Յունուարին: Միութեան նախաձեռնարկ եղած են.*

---

58 *Հմմտ.* Ժողովուրդի Ձայնը, 1921, *Թ.* 889 *եւ* 1922, *Թ.* 1083:

59 *Անդ*, 1922, *Թ.* 1170:

60 Նոր Լուր, *Կ. Պ.* 1952, *Թ.* 778 *եւ Երջանիկ Տարեցոյց*, *Կ. Պ.* 1953, *էջ* 12:

61 *Թէոդիկ*, *Ամէն. Տ.* 1921, *էջ* 308:

Դոկտ. Նասիպ Ալիքեան
Դոկտ. Մ. Վ. Գալֆայեան
Դոկտ. Վ. Մ. Հինդլեան
Դոկտ. Լ. Թէրզեան
Դոկտ. Ա. Հանչէրեան
Դոկտ. Օ. Աչճեան[62]

Միութեան առժամեայ Դիւանը կազմած էին. Դոկտ. Լ. Թէրզեան՝ Ատենապետ, Դոկտ. Եղ. Ծիլմէճեան՝ Ատենադպիր[63]:

1920ին Միութիւնը բոլոր Պոլսոյ Որբանոցներու, Հայ Կարմիր Խաչի եւ ուրիշ ազգ. բարեսիրական հաստատութիւններու մէջ ատամնաբուժական ձրի սպասարկութիւն մը կը հաստատէ իր անդամներով[64]:

1921ին Միութիւնը «Հայ Բժշկական» եւ «Դեղագործական» Միութիւններու հետ Դարման–Հայ–Բուժակ անունով պարբերական մը կը հրատարակէ[65]: 1922ին լոյս հանած է առանձին Ատամնաբոյժ, 1—2 թիւ միայն:

## 2· «ԱՐԱՐԱՏ» ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Կը յիշուի 1919 ամրան: Երեկոյթ կու տայ «ի նպաստ տեղւոյն կիսաքանդ ազգ. վարժարանին[66]»: 1921ին ունէր 30 անդամ: Վարչութիւնը կը կազմէին. Գ. Գարագա–

62 Ժամանակ, 1919, Թ. 3425:
63 Անդ, Թ. 3432:
64 Ժողովուրդի Ձայնը, 1920, Թ. 568:
65 Անդ, 1921, Թ. 746:
66 Ժամանակ, 1919, Թ. 3611:

*չեան, Օ. Թիֆլիզեան, Մ. Գասպարեան, Լ. Իփլիքճեան, Ն. Եալովալեան, Ռ. Եաղմուրեան*[67]:

## ԳՆԱԼԸ ԿՂԶԻ (Հայ Կոզի)

### 1. ՆԵՐՍԷՍԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867)

*Հիմնուած է* 1867 *Նոյ.* 1*ին: Ունեցած է իր Կանոնագրութիւնը,* 24 *յօդուածէ բաղկացած, ինչպէս կը գրէ* Ցառաջ: *Կու տանք Ա. եւ Բ. յօդուածները, քաղելով նոյն թերթէն.* «1. Ընկերութեանս նպատակն է Գիւղիս Ազգային դպրոցին թէ՛ նիւթապէս եւ թէ՛ բարոյապէս ըստ կարի նպաստել, այսինքն Մանչ տղայոց ուսմունք սորվեցընելու համար որոշեալ դասատուաց ծախքն հոգալ՝ իրեն վերաբերած յատուկ պէտքերովը, եւ Աղջկանց սեռին ալ Դաստիարակ կամ Վարժուհի մը յատկացընելով, անոնց ալ ըստ բաւականին կարդալ, գրել եւ ասղնեգործութիւն սորվեցընել է.

2. Ընկերութիւնս՝ բաժանորդագրութեամբ է եւ կրկին սեռի ամեն ազգային անհատ կրնան բաժանորդ գրուիլ, ուզածնուն չափ բաժին առնելով[68]»:

Մանզումէէն *կ՚իմանանք թէ Գնալը կղզիի ազգ. վարժարանի պաշտպան «Ներսէսեան Ընկերութիւնը» կղզիին վրայ* քարա–

[67] *Թէոդիկ, Ամէն. Տարեց.* 1922, *էջ* 371:
[68] Ցառաջ, Փարիզ 1953, *Թ.* 7196:

շէն կալուած *մը ունէր* 1871*ին*[69]: *Ըստ Ալ-պօյաճեանի*[70] *Ընկերութիւնը դպրոցին համար* քանի մը *կալուածներ չինած է եւ իր գլխաւոր անդամն եղած է* Շալճը Մանաս, *հայ կաթողիկէ մը*:

Գնալը կզգիի ազգ. վարժարանի հնու-թիւնը *մինչեւ* 1850 *կը բարձրանայ*: *Անունն է* Ներսիսեան Վարրժարան: *Վարժարանի անունով կոչուած է հետեւաբար իր պաշտ-պան Ընկերութիւնը եւ հաւանական է են-թադրել թէ վերջինս հիմնադիրներն այնախ-կին աշակերտներ եղած ըլլան*:

2. «ՍԵԽԱՆ» ԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Կազմուած է* 1918 *Յունուարին*: *Իր նպատակն է*. «Բարձրացնել Հայ Կզգիի Հայութեան բարոյական, կրթական եւ ընկերական մակարդակը[71]»: 1921*ին ունէր* 30 *անդամ*: *Վարչ. Խորհուրդը կը կազմէին. Գարեգին Խասրովեան (Ատենապետ), Ն. Քիւրքճեան, Օր. Արըճեան, Օր. Է. Ասա-տուր, Օր. Ե. Սիրաքեան, Մ. Պիւլպիւլ-ճեան, Կ. Հաճեան*[72]:

3. ՀԱՅ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Համազգային այս Միութիւնը հիմ-նուած է* 1919*ի սկիզբը*: *Փետրուարին հան-*

---

[69] Մանզումէի էֆքեար, 1871, *թ*. 1799:
[70] *Գաղ. Տարեգր.*, *Բ.*, *էջ* 87—88:
[71] *Ամէնուն Տարեց*. 1921, *էջ* 304:
[72] *Անդ*:

դէս մը կը սարքէ երգով, նուագով, աճառով եւ վիճակահանութեամբ[73]: Կանոնագիրը կը հաստատուի 1919 Ապրիլին[74]:

Միութիւնը 600 ոսկի կը նուիրէ Կարմիր Խաչին, Տարագրեալներուն, Որբախնամին եւ Կովկասի սովեալներուն[75]:

Ահա իր Գործ. Ժողովի կազմը.

| | |
|---|---|
| Մաթէոս Խպլեգանեան | Ատենապետ |
| Լեւոն Տէմիրճիպաշեան | Դեր–Ատենապետ |
| Գուբիթ Արապեան | Ատենադպիր |
| Հայկ Երամեան | Գանձապահ–Համարակալ |
| Մկրտիչ Մանուկեան | |
| Գամէր Փիլիպոսեան | |
| Երուանդ Գարայեան[76] | |

Միութեան նախագահ եղած է Մեծ կղզիի Կաթ. Հայոց Մեծաւոր՝ Ճամճեան վարդապետ[77]:

## ԹՈՓՀԱՆԷ

### 1. ԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

Կազմուած կ՚երեւայ 1872 Յունիսին: Իր նպատակի մասին ծանօթութիւն մը չունինք: Թէեւ կ՚ըսուի թէ ունեցած է իր

---

73 Ժամանակ, 1919, Թ. 3454:
74 Անդ, Թ. 3489:
75 Անդ, 3501:
76 Անդ, Թ. 3483:
77 Անդ, 1920, Թ. 3782:

*կանոնագիրը. չենք տեսած տեղ մը հրատարակուած:* 1872 *Սեպտ.ին Ընկերութեան* եռամսեայի *առթիւ ժողովքի կը հրաւիրէ Ընկերութեան Ատենապետը՝* Փ. Գ. Քէշիշեան *ծանուցումի մը մէջ* (Մանզ. Էփ., 1872, *Թ.* 2008: — Փող, 1872, *Թ.* 85: — Օրագիր, 1872, *Թ.* 756):

*Անունս անծանօթ է Ալպօյաճեանի:*

## ԷԹ–ՄԷՑՏԱՆ

### 1. ՎԱՐԺԱՐԱՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

*Հիմնուած է* 1878*ին:* 40—45 *տունէ բաղկացած հայկ. փոքրիկ թաղը չունենալով դպրոց՝ թաղեցիները խորհած են ճիգ մը ընել. հիմնուած է Ընկերութիւնս իբր օժանդակ մը.* 1879*ին կը յաջողին բանալ «ընտելարան» մը. փոքրիկ դպրոցը մի կերպ կը պահուի մինչեւ* 1881:

1881*ին Ընկերութիւնը կոչում մը դիմում կ՚ընէ Պոլսոյ Հայութեան՝ խնդրելով որ իր գանձանակը անտես չընեն՝ ապահովելու համար* 40 *մանուկներու կրթութիւնը.* «...թաղեցիքս ըստ կարի թաղային ընտելարանի մը ձեռնարկած եւ Ընկերութիւնս նորա նիւթականին օժանդակ կացուցած էր... *Թաղիս աղքատութիւնը եւ ժամանակիս նեղութիւնը վրայէ վրայ գալով՝* 40*ի չափ մատաղ մանկտին թշուառ կացութեան մէջ է... Ուստի կը փութամք*

*ծանուցանել արդոյ հասարակութեան որ առատասիրտ ազգայնոցս օժանդակութեանը միալով՝ կը յուսամք թէ յանուն վարժարանիս իրենց դիմող գանձանակէն պիտի չխնայեն իրենց լումայն . . .*

*Ի դիմաց Վարժարանական Ընկերութեան Ատենապետ*

*Գրիգոր Մովսէսեան* (Թէրճ. Էֆքիար, 1881, *Թ*. 1161: — *Հմմտ*. Մանզ. Էֆքիար, 1881, *Թ*. 4672):

## ԳԱՍԸՄ ՓԱՇԱ

### 1. ··· ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1856)

Գասըմ փաշայի *Ս. Յակոբ եկեղեցին նորոգութեան պէտք ունէր. 1855ին ձեռք կը զարնուի նորոգութեան աշխատանքներու. դրամը կը սպառի. 1856ին «քանի մը բարեպաշտ եւ յարգի անձինք ամենայ. Ս. Պատրիարք Հօր յորդորանօքը* Ընկերու-թիւն մը կազմելով՝ *սկսան դրամ հաւաքել եկեղեցւոյն շինութիւնը աւարտելու համար* եւ արդէն քանի մը աւուր *մէջ* 38·190 *ղուռուշ հաւաքեցին*[1]»:

*Ընկերութեանս* անունը *չենք գտած տեղ մը: Ալպօյաճեանի անծանօթ է Ընկերութիւնս:*

[1] Մասիս, 1856, *Թ*. 233, *Յուլ*. 11:

### 2· ՆՈՒԻՐԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

Հիմնուած կ՚երեւայ 1869ի Դեկտեմբերին: Մանուկ Կ. Ջիլինկիրեան Գասըմ փաշայէն կը գրէ Պոլսոյ Մանզումէին 1870 Յունիս 9ին. «Թաղեցիք... դպրոցի բարեկարգութեանը վրայ երբեք խորհած չունէին եւ հետեւաբար դպրոցը խիստ թշուառ վիճակի մը մէջ կը գտնուէր... մէկ քանի ուսումնասէր երիտասարդներ... մանկանց թշուառ վիճակին վրայ գթալով՝ Նուիրասիրաց անուն Ընկերութիւն մը կազմեցին, անոնց ուսման եւ դաստիարակութեան հոգը թէ՛ բարոյապէս եւ թէ՛ նիւթապէս ստանձնելու նպատակաւ: Սակայն ափսո՜ս որ վեց ամիսէ ի վեր դեռ գործ մը արտաբերած չէ. պատճա՞ռ — վասն զի Հազիւ կրցած է 45—50 բաժանորդ գտնել եւ որոնց մէջէն 25ը թաղեցի են[2]...»:

Ուրիշ տեղեկութիւն չունինք:

### 3· ՊԱՐՈՅՐԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

Ալպօյաճեան կը գրէ. «Պարոյրեան Ընկերութիւն (1870) կը կազմուի Գասըմփաշայի դպրոցին ի նպաստ[3]»:

Ուրիշ տեղ որեւէ յիշատակութիւն չենք գտած:

---

[2] Մանզումէի էֆքեար, 1870, Թ. 1262:
[3] Գաղութահայ Տարեգիրք, Բ., էջ 89:

4. ԴՊՐԱՑ ԴԱՍ (… 1918)

*Անծանօթ են հիմնումի պարագաները։ Կը յիշուի 1918ին*[4]*։*

5. ԱԶԳԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (… 1918)

*Ս. Յակոբայ տօնին առթիւ* Դպրաց դասը *եւ* Ազքատախնամ Մարմինը 2000 *դուրուշ կը հաւաքեն եւ Որբախնամին կը յանձնեն*[5]*։*

## ԽԱՍԳԻՒՂ

1. ՆԵՐՍԻՍԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1843)

Ս. Ներսէս Շնորհալւոյ *անունով եւ պաշտպանութեան տակ հիմնուած է* խասգիւղի *առաջին Ընկերութիւնը, որ նպատակ ունէր* թաղին ազգային վարժարանի մակարդակը բարձրացնել իր նախկին աստիճանին։ *Խասգիւղ արդէն 1836էն ի վեր ունէր* Ս. Ներսիսեան *անունով վարժարան մը*[6]*, որուն պաշտպան կը հանդիսանայ համանուն* «Ներսիսեան Ընկերութիւն»*ը։*

*Ընկերութեանս ջանքերով վարժարանը այնքան կը յառաջդիմէ որ ժամանակակից թերթը գոհունակութեամբ կը գրէ 1845ին. «…մտերիմ շնորհակալութիւն կը պարտաւորիմք անշուշտ* Ներսիսի Շնորհալւոյ պաշտպանութեամբը յիշեալ գեղին (*Խաս–*

---

[4] Ժամանակ, 1918, *Թ. 403*։

[5] *Անդ*։

[6] *Տօքթ. Վահրամ Յ. Թորգոմեան, Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան, եւ այլն, Բ., էջ 437*։

*քէօյ*) մէջ հաստատուած Ընկերութեանը, *որուն ջանքովը* յայս ատիճան բարեկարգութեան հասաւ այն տեղի ուսումնարանը, *որնոր արդէն մեծ ակնկալութիւններ կու տայ ազգիս. քանզի Ընկերութեան հոգաբարձուները գրեթէ ամէնքն ալ ուսումնական եւ ազգասէր անձինք են, որոնց մէջ մասնաւոր նշանակութեան արժանի է* մեծիմաստ պրուսացի պատուելի Յօհաննէս վարժապետին անխոնջ խնամատարութիւնը [7]»։

*Ընկերութեանս* հիմնադիրներն *եղած են Ներսիսեան Վարժարանի* նախկին աշակերտները [8]։ *Յականէ կը յիշուի* Նիկողոս Հովունեան, *մեռած* 1858*ին* [9]։

*Ներսիսեան Ընկերութիւնը* 1853*ի սկիզբը* վերակազմուած՝ *նոր եռանդով ու ծրագրով գործի կը լծուի Ներսիսեան Վարժարանի բարձրացումին համար։ Ընկերութիւնը* 1853 *Յուլիս* 1*ին կը ձեռնարկէ Ներսիսեանի կից* աղջկանց բաժինը *բարեկարգել. 5 դասարանի վերածելով զայն՝ առաջին երկու կարգերը կը թողու մանչերու շէնքին մէջ, իսկ Գ. Դ. եւ Ե. կարգերը կը զետեղէ* զատ բաժնի մը մէջ, *սահմանելով անոնց ուսման նիւթերը* եւ ստանձնելով անոնց նիւթական ծախքերու հոգը [10]։

---

[7] Արշալոյս Արարատեան, 1845, *թ*. 233։
[8] Մասիս, 1858, *թ*. 329։
[9] *Անդ*, *թ*. 335։
[10] Մասիս, 1853, *թ*. 77։

*Ընկերութիւնը իր գոյութիւնը պահած էր տակաւին 1866ին եւ կը յիշուին իր ժրաջան անդամներէն* Սահակ Փեշտիմալճեանը *«որ Ս. Ներսիսեան Ընկերութեան հիմնադրութենէն ի վեր գրեթէ միշտ անդամակից է եւ մագնիսական սքանչելի զօրութեամբ մը հոն կը քաշէ բոլոր ուսումնասէր Խասգիւղցիք»* եւ Գրիգոր Աղաթօնի *մեծամեծ ջանքերը, բարոյական եւ նիւթական օգնութիւնները*[11]»:

2. ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1845)

*Յակոբ Վարժապետեան*[12] *միայն կը յիշէ Ընկերութիւնս, ըսելով թէ «նպատակն էր հոգալ վարժարանի կրթական պէտքերը»:*

3. ԲԱՐԵՊԱՇՏԱԿԱ՞Ն ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1847)

Հայ կիներու կողմէ կազմուած հնագոյն եւ առաջին Ընկերութիւնը Խասգիւղի մէջ հիմնուած է 1847 Փետր. 1ին: *Դժբախտաբար Ընկերութեան* անունը *անծանօթ կը մնայ: Տեղեկատու թերթը* — Հայաստան — *իր կարեւոր ծանօթագրութեան մէջ երկու անգամ կը կրկնէ սա՛ յորջորջումը.* «բարեպաշտական Ընկերութիւն», *առանց որոշապէս ըսելու թէ ա՞յս էր Ընկերութեան անունը կամ տիտղոսը: Կու տանք հոս* Հայաստանի *այդ հետաքրքրական տեղիքը, որ*

---

[11] Մասիս, 1866, Թ. 756:

[12] *Յիշատակարան Հարիւրամեայ Յոբելեանի Խասգիւղի Ս. Ստեփանոս Եկեղեցւոյ*, Կ. Պ. 1931, էջ 94:

*անձանօթ մնացած էր ոչ միայն Թորգոմեանի եւ Վարժապետեանի, այլեւ «Սկսնակ Բանաւէր»ին եւ Ալպօյաճեանի.*

«Խասգիւղի ազնուազգի եւ ուսումնասէր խաթունները այս օրերս (1847 *Փետր.* 1) մէջերնին բարեպաշտական Ընկերութիւն մը հաստատեցին նոյն գիւղի աղջկանց դպրոցին յառաջադիմութեանը համար: Այս բարեպաշտական Ընկերութեան ծախուքը առ այժմ երեք վարժապետ պիտի դրուի հոն. մէկ մը հասարակ ընթերցանութեան, մէկ մը քերականութեան եւ գրի եւ մէկ մըն ալ կարի, օյայի եւ ասոնց նման զանազան կանացի գործեր բանելու: *Կը յուսամք որ ասիկա մէկ սկզբունք մը պիտի ըլլայ աղջկանց մէջ ուրիշ հարկաւոր գիտութիւններն ալ մտցնելու. եւ այս բանիս պատճառ եղող խաթուններուն բարեպաշտութիւնն ալ անմոռանալի կ'ըլլայ յաւիտեանս. որովհետեւ ազգ մը ըստ արժանւոյն կրթելու համար պէտք է նախ աղջիկները կրթուին որ երբոր օր մը մայր ըլլան նէ իրենց գիրկը իրենց զաւակներուն դպրոց մը համարուի*[13]»:

*Ինչպէս կը տեսնուի՝ Խասգիւղի* Հայ Տիկիններն *են այս Ընկերութիւնը հիմնողները եւ զուտ մշակութային Ընկերութիւն մըն է ան, որքան ալ* «բարեպաշտական» *կ'որակեն իրենք զայն*[14]:

[13] Հայաստան, 1847, *Թ.* 32:

[14] *Տե՛ս մեր յօդուածը* «Յառաջ», *Փարիզ* 1952, *Թ.* 2129:

## 4· ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1857)

*Հիմնուած է* 1857 *Յունուար* 1*ին*, *նպատակ ունենալով*՝ Ընթերցանութեան թանգարան մը ունենալ եւ Ներսիսեան վարժարանի գրադարանը ճոխացնել: *Հիմնադիրներն են «քանի մը ուսումնական եւ ուսումնասէր անձինք*[15]»: 1858 *Յունուարին Ընկերութեան Վարչութիւնը կը կազմէին*·

| | |
|---|---|
| *Յ. Թիւյսիւզեան* | *Նախագահ* |
| *Ա. Ալթուն* | *Փոխ-Նախագահ* |
| *Տ. Փեշտըմալճեան* | *Խորհրդական* |
| *Կարապետ Թելեան* | ” |
| *Գ. Ֆրէնկեան* | ” |
| *Յովհ. Տ. Զաք. Հովուեան* | *Ատենադպիր*[16] |

*Այս Վարչութիւնը* 1858*ին կը ներկայացնէ մէկ տարուան հաշուեկշիռը*, *որմէ կ՚իմանանք թէ Մուտքը* 6984 *ղրշ*·, *Ելքը* 6655 *ղրշ*· *եղած է*: *Ընկերութիւնը հայերէն թերթերու* 530 *ղրշ*·, *իսկ Ֆրանսերէն թերթերու* 2544 *ղրշ*· *վճարած է իր «Թանգարանին»* (*Ընթերցարան*) *համար*[17]:

## 5· ՎԱՐԴԱՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1857)

*Ընկերութեանս հիմնումի տարին ճշդելու համար ունինք Պոլսոյ* Ծիածանը, *որ* 1866 *Դեկտեմբերին* Վարդանանց Ընկերութեան *մը* տասնամեակը *կը յիշատակէ*[18],

---

[15] Մասիս, 1857, Թ. 263:
[16] Մասիս, 1858, Թ. 314:
[17] *Անդ*:
[18] Ծիածան, 1866, Թ. 14:

հաւանօրէն Խասգիւղի այս Ընկերութիւնը ակնարկելով: Աւելի վստահելի է Յովհ. Թիւյսիւզեանի ճշդումը, որ 1866 Յուլիսին խօսելով Խասգիւղի «Վարդանանց Ընկերութեան» վրայ՝ կ՚ըսէ որ «ութ տարի առաջ սկսած» է[19]: Ուրեմն՝ ըստ Ծիածանի 1856 Դեկտեմբերին, իսկ ըստ Մասիսի 1858 Յուլիսին հիմնուած է Ընկերութիւնս:

Հնութեան մէջ Ընկերութիւնս յիշած են նաեւ Մէնմուայը Հավատիս[20], Կիլիկիա[21], Սէր[22], Մեղու[23], բայց ոչ մէկը հարկ համարած է յիշատակել նաեւ հիմնումի տարին:

Ծիածանի եւ Մասիսի վերոյիշեալ տեղեկները կռուան առնելով՝ կարելի է 1857 տարին հիմնումի թուական համարիլ[24]:

Յովհ. Թիւյսիւզեան, որ Ընկերութեանս Տնօրէն ժողովին Ատենապետ ընտրուած էր 1866ին՝ Պարիսէն վերադարձին կը գրէ. «Յնծութեամբ տեսայ նախ ութ տարի առաջ սկսեալ Վարդանանց Ընկերութեան՝ որոյ նպատակը դպրոցին հասոյթ պատրաստել է, դեռ շարունակուիլը եւ բաւական եռանդով... բայց խիստ մօտերս այս օգտաւէտ, ուսում–

---

19 Մասիս, 1866, Թ. 756:
20 1861, Թ. 411:
21 1861, էջ 215:
22 1861, էջ 2:
23 1863, էջ 139:
24 Ալպօյաճեան (Գաղ. Տպրեզ., Բ., էջ 78) 1857ին անունովը անծանօթ Ընկերութիւն մը կը յիշէ Խաս–գիւղի մէջ: Թերեւս նոյն ըլլայ «Վարդանանց»ի հետ,

նատենից եւ հեռատես *Ընկերութեան վրայ մանաւորապէս խօսելու բարեբաղդ առիթը ունենալ յուսալով, իբրեւ ատենապետ Նոր-ընտիր Տնօրէն Ժողովոյ, այս յարատեւութեան աւետիսը տալով՝ կ՚անցնիմ...»*[25]: *Զենք հանդիպած Թիւյսիւզեանի խոստացած գրութեան:*

*Ընկերութիւնս* 1861*ին* Ընթերցարան *մ՚ունէր*[26]: *Իսկ* Ծիածան 1866 *Դեկտ.ին սա ծանուցումը կը հրատարակէ. «Խասգիւղի* Վարդանանց դպրոցատանը *ամէն կահերովը պատրաստ վարձու է*: Յիսուն ընթերցասէր անձանց ընկերութեամբ թանգարան մ՚ալ հաստատուած է: *Վարձել ուզողը Թիւյսիւզեան Համբարձում Աղայի թող դիմէ*[27]»:

*Ասկէ վերջ ա՛լ յիշատակութիւն չըլլար Ընկերութեանս մասին:*

## 6· ԹԱՏԵՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1859)

*Կազմուած է* 1859*ի սկիզբը*: Մասիս*ի մէջ կը յիշուի արդէն* 1859 *Մարտ* 5*ին, ուր* Տ. Եուսուֆեան *կը գրէ. «Խասգիւղի մէջ հաստատուած* Թատերական Ընկերութիւնը *արդէն մէկ քանի նկարագրութիւն ալ ձեւացուցած է ի ներկայութեան բազմաթիւ հանդիսականաց: Մենք թէպէտ եւ այն խաղարկութեանց ներկայ գտնուելու բարեբաղդու-*

---

[25] Մասիս, *անդ*:
[26] Մասիս, 1861, *Թ*. 498:
[27] Ծիածան, *անդ*, *Թ*. 14:

*թիւնը դեռ չեմք ունեցած, բայց կը համար-ձակիմք յօժար սրտիւ մասնակից ըլլալ իրենց գովելի ձեռնարկութիւնը քաջալերող ազնիւ հանդիսականաց խրախուսիչ ծափահարու-թեանց*[28]»։

1898*ին* «*Բանասէր*» *կը գրէ*. «(1859) *Խասգիւղցիք Օրթագիւղցիներէ քաջալե-րուած, կը կազմեն Թատերական Ընկերու-թիւն մը եւ խումբ եւ ազգային վարժարանին մէջ կու տան կանոնաւոր ներկայացումներ։ Բաւական յաջողութիւն կը գտնեն եւ քանի մը ամիսներ ետքը* (1860 *Փետր*. 26) *Բերայի Նաումի իտալական թատրոնին մէջ կու տան չքեղ ներկայացում մը, առաջնորդութեամբ Գ. Էքչեանի. խաղն էր Մոնթի իտալացի բա-նաստեղծին* Արիստոտէմ *ողբերգութիւնը հա-յերէն թարգմանուած*[29]»։

7. ԳԹՈՒԹԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1861)

*Հաստատուած է* 1861 *Փետր.ին*։ *Հիմ-նադիրներն են Խասգիւղի* Հայ Տիկինները՝ խորհուրդով թաղին քարոզիչ Ներսէս Վրդ. Վարժապետեանի (*յետոյ Պատրիարք*)[30]։

*Ընկերութեանս* նպատակն *էր Խասգիւղի* Ներսիսեան աղջկանց վարժարանի նիւթա-կան մատակարարութիւնը ստանձնել *եւ ար-դէն* 1861 *Փետրուարին Ընկերութեան կ՚ան–*

---

[28] Մասիս, 1859, Թ. 371։
[29] Արեւելք, 1898, Թ. 3791։
[30] Մասիս, 1862, Թ. 527։

դամակցին 70 տիկիններ եւ օրիորդներ[31]։ Իսկ 1863ին 100 անդամուհի ունի։

Ընկերութիւնը տարին մէկ անգամ Ընդհ. Ժողով կը գումարէ. իր Տնօրէն Ժողովը կ'ընտրէ գաղտնի քուէարկութեամբ. 1861—1863 Ընկերութեան Մուտքը կ'ըլլայ 50,982 ղրշ., իսկ Ելքը՝ 50,956 ղրշ.[32]։

Սխալ է, հետեւաբար, գրել թէ Ընկերութիւնս «Խասգիւղի Տիկնանց նախաձեռնութեամբ» եւ «թաղին աղքատներուն հոգածութեան համար» կազմուած է[33]։

## 8. ՆԵՐՍԻՍԵԱՆ ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863)

Խասգիւղի Ներսիսեան վարժարանը երկու «Սանուց»ներ ունեցած է. մին վարժարանի մէջ եղող սաներէ կամ աշակերտներէ կազմուած՝ 1863ին եւ երկրորդը շրջանաւարտ նախկին սաներէ՝ 1870ին։

Այս Ընկերութիւնը կազմած են Ներսիսեանի ներքին աշակերտները 1863ին եւ կը կոչուի «Ներսիսեան Սանուց Ընկերութիւն», որ ունեցած է իր Կանոնագիրը, կախուած վարժարանի մէջ, բայց չէ հրատարակուած։ Իր նպատակն էր. «Ըստ իւր կարեաց ուսման յառաջադիմութեան որեւէ կերպիւ նպաստել»։ Կը հաստատէ Թանգարան մը՝ աշակերտներու ընթերցման եւ զարգացման հա—

---

[31] Մեղու, 1861, Թ. 126։
[32] Անդ, 1863, Թ. 198։
[33] Գալ. Տարեգ., Բ., էջ 83։

*մար։ Ընկերութիւնը վեց ամիսը անգամ մը կը ներկայացնէ իր հաշիւները։ Պաշտպան-Խնամակալ կ'ունենայ վարժարանի տնօրէն՝* Կարապետ Չուխաճեանը[34]։

*Պոլսոյ* Մեղուին *մէջ անստորագիր մը զարմանք կը յայտնէ որ դպրոցական տղաք ալ սկսած են Ընկերութիւն կազմել եւ կը յիշէ Ընկերութեան հիմնադիր — անդամներէն* Յ. Գալֆագճեան, Կ. Բարաղամեան, Թ. Յարութիւնեան[35]։

*Այս «Սանուց»ը անծանօթ մնացած է, ըլլալով կարճատեւ։*

9. ··· ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867)

*Պոլսոյ* Փնջիկ *կը գրէ* 1867 *Նոյ.* 4*ին.* «Խասգիւղի երիտասարդներէն ոմանք Ընկերութիւն մը կազմեր են, թաղեցիներէն շաբաթական 20 փարայ ժողվելու եւ ամէն երկու ամիսն անգամ մը Հիւանդանոցի վերատեսչութեան յանձնելու գովելի նպատակաւ[36]»։ *Ս. Փրկչի Ազգ. Հիւանդանոցը* 1867*ին տագնապալի վիճակ մ'ունէր։* Բիւզանդ Քէչեան *կը գրէ որ նոյն իսկ գիշեր մ'եղաւ որ* «բոլոր պատսպարեալք անօթի մնացած էին» *դրամի պակասէն*[37]։ *Ահա այդպիսի տագնապալի պահու մըն է որ Խաս–*

34 Ժամանակ, 1863, *էջ* 208։
35 Մեղու, 1863, *էջ* 321։
36 Փնջիկ, 1867, *Թ*. 51։
37 *Բիւզանդ Քէչեան, Պատմութիւն Ս. Փրկչի Հիւանդանոցի Հայոց, Կ. Պ.* 1888, *էջ* 183։

*գիւղի երիտասարդութիւնը ազնիւ չարժուձեւ մը կ՚ընէ փոքրիկ օգնութիւն մը հասցնելու համար ազգին թշուառներուն։*

*Մեղք որ անծանօթ կը մնայ Ընկերութեան* անունը, *ինչպէս* անծանօթ մնացած է *Ընկերութիւնս իսկ Հիւանդանոցի Պատմութեան հեղինակին։ Բնականաբար անծանօթ է նաեւ Ալպօյաճեանի, Թորգոմեանի եւ Վարժապետեանի։*

10· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

*Հաւանօրէն կազմուած է 1868ի սկիզբները։ Կը յիշուի 1868 Սեպտ.ին։ Հիմնադիրն է* Ամբրոսիոս Վարդապետ, *իսկ նպատակը՝* «պանդուխտ եղբարց ձրի կարդալ գրել սովրեցնել[38]»։

*Անծանօթ է Ալպօյաճեանի։*

11. ԽՆԱՄԱԿԱԼՈՒՀԻ ՏԻԿՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

*Ժամանակակից թերթ մը հետեւեալ կերպով կ՚արտայայտուի. «Խասգիւղի* Ներսիսեան օրիորդաց վարժարանին համար *Խնամակալութիւն մը կազմուած է՝ որոյ անդամներն են.*

*Տիկին Մանան Նիգամեան*
*„ Նազլը Ճարաքեան*
*„ Նարդիկ Քավուքճեան*

---

38 Մասիս փոքր, 1868, Թ. 237։

*Օրդ. Սրբուհի Մինասեան*
*" Երանուհի Մինասեան*
*" Նոյեմի Տ. Գէորգեան*
*" Ազնիւ Զարփճեան*

*Կը շնորհաւորենք սոյն ազնուուհի Տիկնանց եւ Օրիորդաց այս փափուկ եւ նուիրական պաշտօնը, զոր ազգասիրաբար յանձն առնելու բարեհաճած են... որպէս զի ապագային մէջ Ազգը կարենայ ունենալ լուսաւորեալ մայրեր եւ կրթեալ ամուսիններ, որոնք դժբախտաբար շատ հազուագիւտ են մեր Ազգին մէջ*, եւ որոնց պակասութիւնն է գլխաւոր պատճառ Հայուն տգիտութեանն ու թշուառութեանը[39]»:

1869*ին կազմուած Ընկերութիւնս ծանօթ է «Սկսնակ Բանասէր»ին*[40]:

12. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ԽՆԱՄԱԿԱԼԱՑ ՆԵՐՍԻՍԵԱՆ ԵՐԿՍԵՌ ՎԱՐԺԱՐԱՆԱՑ (1870)

*Հիմնուած է* 1870 *Յունուար* 1*ին՝ իր նպատակն ըլլալով Ներսիսեան վարժարանի նիւթական հոգը տանիլ իր ուսերուն*: 1872*ի սկիզբը հրատարակուած Ընկերութեան հաշուեցուցակէն կը տեսնենք թէ երկու տարուան մէջ Մուտքն եղած է* 2784 *դրշ., իսկ Ելքը՝* 2390 *դրշ.: Տնօրէն ժողովի Ատենա–*

[39] Ժամանակ, 1869, *էջ* 143:
[40] Արեւելք, 1898, *Թ.* 3854:

*պետն էր* Յովակիմ Մերկերեան, *Գանձապետը՝* Համբարձում Մանուկեան[41]:

13. Ս. Ն. ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Արդէն* 1866*ին* Ներսէս Եպ. Վարժապետեան *փափաք յայտնած ու թելադրած էր որ Ներսիսեան* Սաները Ընկերութիւն *մը կազմեն՝ յօգուտ իրենց վարժարանին*[42]: *Այդ փափաքը կ'իրականանայ* 1870*ին*:

*Ներսիսեան վարժարանի* նախկին աշակերտները 1870 *Սեպտ. 11ին մասնաւոր Յայտարարութիւն մը հրատարակելով՝ կ'իմացնէն թէ* «Նախնի Սաներս *տեսնելով մեզ զարգացնող վարժարանացս աժամանակեայ* նեմացեալ վինակը, *չարժեալ յերախտագիտութենէ եւ կարեկցութեամբ զօրովեալ մեզ յաջորդող աշակերտաց վրայ, այն յայտարարութեամբ դիմեմք առ մեր նախնի աշակերտակիցս, նոյնպէս առ ամենայն բարերարս ազգային դաստիարակութեան, հրատարակելով որ* յօգնութիւն խնամիւղի Ս. Ներսիսեան երկսեռ վարժարանաց *Ընկերութիւն մի կազմեալ է յանուն* Ս. Ներսիսեան Սանուց: *Ա. Այն Ընկերութիւնս կազմեալ է ընդ նախագահութեամբ Ս. Ներսէս եպիսկոպոսի եւ վարժարանացս հոգաբարձուաց տնօրէնութեամբ: Բ. Ընկերութիւնս* բաժանորդական է *եւ ամէն բաժանորդութեան*

41 Մասիս, 1872, Թ. 1205: — Մանզ. Էփֆեար, 1872, Թ. 1856: — Օրագիր, 1872, Թ. 681:

42 *Տե՛ս* Մասիս, 1866, Թ. 756:

*գինը* տարեկան մէկ արծաթ մէճիտիէ, *եռամսեայ կանխիկ վճարելի*․․․։ *Գ․ Հոգաբարձութեան անդամներէն գանձապետ ընտրուած է* Փափազեան Պետրոս․․․։ *Դ․ Ընկերութիւնս* սկսեալ է ներկայ ամսոյն առաջին օրէն (1870 *Սեպտ․ 1էն*)․․․։ *Ամէն տարւոյ վերջը Հոգաբարձութիւնս պարտաւոր է բաժանորդաց ցանկը եւ ելեւմտից հաշուեցոյցը հրատարակել ազգ․ լրագրաց միջոցաւ*[43]»։

*«Ս․ Ն․ Սանուց Ընկերութիւն»ը վերակազմուելով երկար տարիներ պահած է իր գոյութիւնը՝ միշտ ջանալով նպաստել իր վարժարանի յառաջդիմութեան*։ 1878*ին առաջին անգամ կը վերակազմուի՝ Ընդհ․ ժողովի մը մէջ ընտրելով* Սիմոն Միքայէլեան *Ընդհ․ ժողովի Ատենապետ, իսկ Տնօրէն ժողովի անդամ կ՚ընտրուին*․ Պետրոս Փափազեան (*Գանձապետ*), Պօղոս Գըլընճեան, Մինաս Սիոսեան, Ռէթէոս Թադէոսեան *եւ* խաչատուր ժամակոչեան[44]։

*Ռէթէոս Պէրպէրեան* 1882*ին Խասգիւղի վարժարանի մէկ հանդէսին ճառախօսելով՝ կը հարցնէ․ Ո՞ւր է* Ներսիսեան Սանուց Ընկերութիւնը, *որ նպատակ ունէր* ի մի հաւաքել խասգիւղի ցիր եւ ցան ոյժերն եւ Ներսիսեան վարժարանի վաղեմի սանուց նպաստներովն սնուցանել այն կանթեղ, որ այնքան

[43] Մասիս, 1870, *Թ*․ 1008։ — *Հմմտ*․ Մանզ․ էփքեար, 1870, *Թ*․ 1364։ — Օրագիր, 1871, *Թ*․ 249։ — Արարատ, 1871, *Թ*․ 34։
[44] Հայրենիք, 1878, *Թ*․ 433։

լոյս սփռած էր իւր շուրջ. *ի՞նչ կ՚ընէ այդ Ընկերութիւն. կենդանի՞ է թէ մեռած, չգիտեմ. բայց դայս գիտեմ թէ երկար ժամանակէ ի վեր ոչ ոք եկած է խնդրել իմ լումայն*: Պէտք է կեանք տալ վերստին այդ միութեան, կամ, եթէ կենդանի է, մի նոր մղում տալ նմա[45]»:

*Ժամանակակից թերթերու տեղեկատուութիւններէն զուրկ ըլլալով՝* Տիգրան Տողրամաճեանն *սխալ թուական նշանակած է Ընկերութեանս հիմնումին*[46]»:

14. Ն. Ճ. ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Խասգիւղի մէջ* 1866*ին բացուած է* Առաքել Նուպար Ճահնազարեան վարժարանը: *Ըստ Ալպօյաճեանի*[47] *այս վարժարանի աշակերտները* 1870*ին կազմած են* «Նուպար—Ճահնազարեան Սանուց Ընկերութիւնը *Հաւանօրէն... դպրոցին մէկ պէտքը լրացնելու համար*»:

*Ժամանակակից* (1870*ի շուրջ*) *թերթերու մէջ յիշատակութեան մը չենք հանդիպած: Սակայն Ներսէս Պատրիարք Վարժապետեան իր* 1878*ի Կոնդակին մէջ երկու անգամ կը յիշէ* «Ճահնազարեան Սանուց Ընկերութիւնը», *որ Հաճընի մէջ դպրոց բացած է*[48]: *Դպրոց բացող Ընկերութիւնը*

[45] Մասիս, 1882, *Թ.* 3262:
[46] *Տե՛ս Հիսարլեան, Յիշատակարան, էջ* 85:
[47] *Գաղ. Տարեգ., Բ., էջ* 89:
[48] *Տե՛ս* Լոյս, *Կ. Պ.* 1878, *Թ.* 76:

«Ս. Վարդանեան» *կը կոչուի, որ նոյնպէս Ծաղկնաձորեանի նախկին աշակերտներէն հիմնուած է, ինչպէս քիչ վարը պիտի տեսնենք*:

*Հաւանական է որ «Ն. Ծ. Սանուց»ը — ունենալով ծրագիր Հաճընի մէջ դպրոց բանալու* — 1871ին ձուլուած *ըլլայ «Ս. Վարդանեան Ընկերութեան» հետ եւ վերջնոյս փոխանցած Հաճընի մէջ դպրոց բանալու ծրագիրը*:

## 15. Ս. ՎԱՐԴԱՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

*Հիմնուած է* 1871 *Սեպտ. 1ին: Հիմնադիրներն, առաջին անդամներն ու առաջին Վարչութիւնը կը կազմեն հետեւեալները, ըստ* ժամանակակից *թերթի մը*.

| | | |
|---|---|---|
| *Ռուբէն* | *Գրիգորեան* | *Նախագահ եւ Գանձապետ* |
| *Ռուբէն* | *Քէմհաճեան* | *Ատենադպիր* |
| *Բիւզանդ* | *Իւզարբերեան* | |
| *Ծերոն* | *Գրիգորեան* | |
| *Կարապետ* | *Գարամաճեան* | |
| *Միքայէլ* | *Իւզարբերեան* | |
| *Յակոբ* | *Աստուածատուրեան* | |
| *Յարութիւն* | *Բարսեղեան* | |
| *Յովհաննէս* | *Թէվէքէլեան* | |
| *Յ. Յ.* | *Յովակիմեան* | |
| *Պետրոս* | *Քարակէօզեան* | |
| *Սիմոնիկ* | *Մանիկէլեան* | |
| *Ստեփան* | *Զպուքճեան* | |
| *Տիգրան* | *Զպուքճեան* | |

*«Այս ազգասէր եւ ազնիւ անձինք ծանր պաշտօն մը յանձն առին, այն է* ուսումն տարածել գաւառացի Հայոց մէջ *եւ իրենց գործոց սկիզբն ըրին* Հանընէն, *ուստի ղրկեցին հոն վարժապետ, բազմաթիւ գրեանք, եւ այլն. վերջապէս բան մը չի խնայեցին.* իրենց ջանիւք եւ տնօրէնութեամբ Ս. Վարդանեան եւ Ս. Վարդուհեան երկսեռ վարժարանը բացուեցաւ ի Հանըն, որ մէկ տարիէն աւելի է կը շարունակէ անյուսալի յառաջադիմութեամբ, անխոնջ ջանիւք ազգասէր անդամոց Ընկերութեանս, որ ի յառաջադիմութիւն վարժարանաց շատ զոհողութիւն եւ ծանր ծախքեր յանձն առին սիրով[49]»:

Մանզումէի էֆքեար*ի* 1874*ի մէջ*[50] *կը գտնենք լրացուցիչ բացատրութիւն մը, որուն համեմատ Ընկերութեան հիմնադիրներ եղած են նաեւ. Աբրիկ Ունճեան, Անտոն Իւղաբերեան, Թէվէքէլ Թէվէքէլեան, Թէոփիլէ Պօղոսեան, Նշան Այվազեան, Սիմոն Փափազեան, Յովհաննէս Նասյեան: Ընկերութիւնը իր հիմնումէն* 20 *օր վերջ*, 1871 *Սեպտ.* 20 *Երկուշաբթի օր Հաճընի մէջ կը բանայ իր* համանուն (*Վարդանեան*) վարժարանը, *իսկ* 1872 *Մայիս* 15 *Երկուշաբթի օր կը բանայ Հաճըն* աղջկանց վարժարանը (*Վարդուհեան*): 1874 *Փետր.* 10*ին կը բանայ* «Վար-

[49] Մանզ. էֆքեար, 1872, *Թ.* 1985 *Սեպտ.* 1: — *Հմմտ.* Մանկավարժական Թերթ, *Տփղիս* 1879, *էջ* 10:
[50] 1874, *Թ.* 2488:

դանեան Նախակրթարան» անունով Երրորդ վարժարան մը, բոլորին ծախքերն ինքը հոգալով[51]:

«Ս. Վարդանեան Ընկերութիւնը» 1874էն վերջ ալ կը շարունակէ իր գոյութիւնը եւ գործունէութիւնը, բայց 1879ին զայն ցրուած եւ քայքայուած կը գտնենք, թէեւ Հաճընի «Վարդանեան» վարժարանը կը պահէ իր գոյութիւնը[52]»:

1879 Փետր. 18ին «Վարդանեան» Ընկերութեան ցրուած անդամներէն 40 հոգիի գումարած ժողովի մը մէջ, միաձայն հաւանութեամբ, «Վարդանեան» անունը կը փոխուի «Կիլիկեան»ի, յատուկ կանոններով եւ գործունէութեան վախճանով, ինչպէս պիտի տեսնենք վարը:

## 16. ՄԻԱԲԱՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871—1879)

Խասգիւղի «Վարդանեան» Ընկերութեան հետ 1879ին կը յիշուի «Միաբանասիրաց» Ընկերութիւն մը, որ «Վարդանեան»ի հետ 1879ին ձուլուած կ'երեւայ նորակազմ «Կիլիկեան» Ընկերութեան հետ՝ ներկայացնելով իր հաշուեկշիռը[53]:

Ձենք գիտեր թէ 1. Խասգիւղի՞ Ընկերութիւն է. 2. Ե՞րբ եւ ի՞նչ նպատակով հիմ-

[51] Մանզ. Էփքեար, 1874, Թ. 2488: Հմմտ. Փունջ, 1873, Թ. 845: — Լրագիր, 1879, Թ. 996:

[52] Հմմտ. Մասիս, 1879, Թ. 2264, 2323, 2333: — Փունջ, 1879, Թ. 1352:

[53] Տե՛ս Մասիս, 1879, Թ. 2323, 2340: — Թէրճ. Էփքեար, 1879, Թ. 603:

նուած է: Եթէ Խասգիւղի Ընկերութիւն է — ասի հաւանականութենէ զուրկ չէ — 1871—1879ի շրջանէն կրնայ ըլլալ:

Անծանօթ է Ընկերութիւններու վրայ գրողներուն:

17. ԳՐԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

Ընկերութեանս անունը Գրասիրաց գրած է Ալպօյաճեան[54], մինչ ժամանակակից չորս թերթեր ունին Գրասիրական ձեւը[55]:

Հիմնուած է 1871ին, նպատակ ունենալով՝ «նպաստել հրատարակութիւններու»: 1872ին Ընկերութեան չորրորդ հրատարակութիւնը կը կոչուէր. «Խորհուրդք հանդիսի արարչագործութեան Աստուծոյ». թարգմ. Պօղոս Գ. Քէրէստէճեան, աշակերտ Ս. Ներսիսեան վարժարանի[56]:

18. ԺՈՂՈՎՐԴԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

Հիմնուած է 1871ին: Մ. Սիսեան կը գրէ. «... երէկ Խասգիւղի ժողովրդասէր Ընկերութեան Լսարանին մէջ ատենախօսեց ազգային եռանդուն եւ ուսումնական երիտասարդներէն Յովհաննէս Տ. Մելքիսեդեկեանց. Խասգիւղի ուսումն. ազգ. մեծագոյն մասը ներկայ էր... նիւթը՝ յառաջա-

[54] Գաղ. Տարեգ., Բ., էջ 89:

[55] Մասիս, 1872, Թ. 1227: — Փունջ, 1872, Թ. 755: — Մամուլ, 1872, Թ. 246: — Ասիա, 1872, էջ 48:

[56] Փունջ, 1872, Թ. 755:

*դիմութեան վրայ... խորին շնորհակալութիւններս կը փութամ յայտնել Խասգիւղի* ժողովրդասէր Ընկերութեան *բարեջան անդամոց՝ որք* տարիէ մ'ի վեր *ամեն ջանք եւ աշխատութիւն չի գլացան* ուսմունքն ու կրթութիւնը Խասգիւղի մէջ տարածելու. *Նախ* Ընթերցարան *մը հաստատեցին, ուր Խասգիւղի ազգ. մեծագոյն մասը աղքատէն մինչեւ հարուստը, տգէտէն մինչեւ ուսումնականը* ամեն երեկոյ կը յաճախեն եւ ամեն տեսակ լրագիրներ կը կարդան: *Ընկերութեան* հաստատուելէն ի վեր տարի մ'անցաւ *եւ ահա* Լսարան *մ'ալ հաստատուեցաւ: Խասգիւղ հիմայ ունի* Ընթերցարան *եւ* Լսարան...[57]»:

*Օգտակար այս Ընկերութեան մասին չեն գրեր յաջորդ տարիներու հայ թերթերը: Անծանօթ է Ալպօյաճեանի:*

19. ԲԱԺԱՆՈՐԴԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873)

1873*ի սկիզբները հիմնուած* շահակցական *Ընկերութեանս* հիմնադիրներն *ու* վարչութիւնը *կը կազմէին հետեւեալ անձերը.*

| | |
|---|---|
| *Սարգիս Աբրահամեան* | *Նախագահ* |
| *Յարութիւն Կիւմիւշեան* | *Գանձապահ* |
| *Պետրոս Յ. Բարադեան* | |
| *Պօղոս Ոսկերիչեան* | |
| *Նիկողոս Մ. Թիւլպէնտճեան* | *Համարակալ* |

[57] Մանզ. Էֆքեար, 1872, Թ. 2003: — *Հմմտ.* Օրագիր, 1872, Թ. 804: — Մասիս, 1872, Թ. 1298:

Ընկերութեան տեւողութիւնը 5 տարի էր, իսկ իր նպատակը՝ ահաւասիկ. «Բաժանորդագրութեամբ գոյացած գումարովը տոկոս կամ շահ ունեցող ապահով եւ փոխարինելի Արժէթուղթ եւ Պարտատոմսեր գնել, վիճակահանութեամբ ատոնց արտաքոյ կարգի շահուն եւ կամ գլխավճարին հաւանականութեանն սպասելով մինչեւ 5 տարի... արժէթղթոց տոկոսներուն 2% խասգիւղի Ս. Ներսիսեան վարժարանին նպաստ յատկացնելով, մնացած 75% ալ Վարչ. ժողովոյ ձեռօքը յանձնուելիք Ընկերութեանս գործառնութեանցը վերաբերեալ ծախքերն ու պիտոյքը հոգալու պիտի ծառայէ[58]»:

Ընկերութեանս կանոնագրութիւնը 30 Յօդուածէ բաղկացած՝ հրատարակուած է Օրագրի մէջ[59]:

20. ··· ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

«Սկսնակ Բանասէր» կը յիշէ Ընկերութիւն մը, անանուն, որուն նպատակն էր «Լեզուագիտական ուսմանց պարապիլ[60]»: Ուրիշ կողմէ անծանօթ է:

21. ԱՍԻԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

Հիմնուած է 1877 Յունուար 1ին: Իր սկզբնական նպատակն եղած է. «Հայաս–

---

[58] Օրագիր, 1873, Թ. 1018:
[59] Անդ, Թ. 1024:
[60] Արեւելք, 1898, Թ. 3853:

տանի դպրոցաց ձրիաբար դասագրքեր հայթայթել[61]»։

1878*ին կը բանայ նաեւ* Կիրակնօրեայ դասընթացք *մը բնիկ եւ պանդուխտ Հայերու համար։ Դասերը տեղի կ'ունենան Ներսիսեան վարժարանը՝ երկու կարգի բաժնուած. Ա. Ընթերցանութիւն, գիր, թուանշան ճանչնալ ու գրել եւ թուաբանութեան չորս գործողութիւնները, Ազգ. եւ Սրբազ. Պատմութիւն՝ բերանացի. Բ. Հայերէն, Ազգ. եւ Սրբ. Պատմութիւն գրաւոր կերպով, թուաբանութիւն, սկզբունք տոմարակալութեան, ընդհ. աշխարհագրութիւն, տաճկերէն, գաղղիերէն, գեղագրութիւն, կրօնական եւ ազգ. երգեր, ձայնագրութիւն*[62]։

*Ընկերութիւնը ձրի կը մատակարարէ* Վանի *մէջ բացուած* Վարժապետանոցի *բոլոր դասագրքերը*[63]։ *Դասագրքեր եւ աշխարհացոյց քարտէսներ կը նուիրէ Կիլիկիոյ մէջ բացուած վարժարաններուն*[64]։ *«Կիլիկեան Ընկերութիւնը» հրապարակով շնորհակալութիւն կը յայտնէ «Ասիական Ընկերութեան» որ* 100 *Ֆր. արժէքով գիրք նուիրած է Զէյթունի վարժարանին ու կ'աւելցնէ. «Կիլիկեան Ընկերութիւնը ինքզինք խիստ բարեբաղդ կը համարի իր բարձր նպատակին գործադրութեան մէջ Ասիականին նման*

---

61 Մասիս, 1878, Թ. 2177։

62 *Անդ*։

63 Հայրենիք, 1878, Թ. 472։

64 Մասիս, 1879, Թ. 2491։

*ազնիւ Ընկերութիւն մը իրեն օգնական եւ ձեռնտու ունենալուն*[65] :»

*Ընկերութեան Ընդհ. Ժողովի Դիւանը կազմած են առաջին տարիներուն.*

| | |
|---|---|
| *Ռէթէոս Պէրպէրեան* | *Ա. Ատենապետ* |
| *Պաղտասար Պապայեան* | *Բ. Ատենապետ* |
| *Լեւոն Ազաթօն* | *Ա. Ատենադպիր* |
| *Գառնիկ Հայկեան* | *Բ. Ատենադպիր* |

*Իսկ Տնօրէն Ժողովը՝*

| | |
|---|---|
| *Գրիգոր Զոհրապեան* | *Ատենապետ* |
| *Պօղոս Քէրէստէճեան* | *Ատենադպիր* |
| *Միհրան Տէօքմէճեան* | *Գանձապետ* |
| *Միքայէլ Մուշեղեան* | *Համարակալ* |
| *Աղեքսանդր Փանոսեան* | *Գրենոց Տնօրէն* |
| *Գրիգոր Սեղբոսեան* | *Հաշուութեց Տնօրէն* |
| *Միհրան Թիւլպէնտճեան* | *Ծախուց Տնօրէն*[66] |

*Ընկերութիւնը* 1881*ին* «Կ'ընդլայնէ իր գործոց շրջանակը փոքր ինչ *եւ այսուհետեւ* պիտի հրատարակէ ազգային կրթութեան կարեւոր սեպուած դասագրքեր, յորոց ճրիապէս պիտի տայ Միացեալ ինչպէս եւ մեր ուրիշ Ընկերութեանց Հայաստանի դպրոցաց: *Այսիկան Ընկերութիւնը կը փափաքի իւր համեստ շրջանակին մէջ մասնակցիլ ազգ.*

---

[65] Հայրենիք, 1879, *Թ.* 528:

[66] *Յակոբ Վարժապետեան, Յիշատակարան Հարիւրամեայ Յոբելեանի Խասգիւղի Ս. Ստեփանոս եկեղեցւոյ*, Կ. Պ. 1931, էջ 95—96:

*զարգացման գործոյն*[67]»: *Այդ տարին Ընկերութեան Ընդհ. Ժողովի Ատենապետն էր* Արփիար Արփիարեան, *Ատենադպիրը*՝ Մկրտիչ Քէօրիւքճեան, *իսկ Վարչ. Մարմինը կը կազմէին.*

| | |
|---|---|
| *Պօղոս Գ. Քէրէստէճեան* | *Ատենապետ* |
| *Գրիգոր Զոհրապեան* | *Ատենադպիր* |
| *Աւետիս Սուրէնեան* | *Գրեանց Տնօրէն* |
| *Միհրան Մ. Տէօքմէճեան* | *Գանձապետ* |
| *Միքայէլ Մուշեղեան* | *Հաշուակալ* |
| *Տիրան Փափազեան* | *Հասութից Տնօրէն* |
| *Յակոբ Գոչումեան* | *Ծախուց Տնօրէն*[68] |

*Ընկերութիւնը* 1882*ին կ'որոշէ յատուկ* Գրական–Գիտական ամսաթերթ *մը հրատարակել: Կը կազմէ հրատարակչականի* Կանոնագիր *մը, որ կ'ունենայ* 18 *Յօդուած: Հրատարակելիք ամսաթերթին անունը կ'ըլլայ* Երկրագունտ, *որուն առաջին թիւը լոյս կը տեսնէ* 1882 *Յուլ.* 1*ին*՝ 500 *օրինակ: Ամսաթերթին տարեկան բաժանորդագինը* 2 *արծաթ մէճիտ էր եւ պարտաւորիչ՝ ամէն անդամի*[69]: *Խմբագիր եղած են* Յակոբ Պարոնեան *եւ* Եղիա Տէմիրճիպաշեան:

1888*ին* Երկրագունտը *կը դադրի. Ընկերութիւնը անոր տեղ* Դար *հանդէսը կը սկսի*

---

67 Մասիս, 1881, *Թ.* 2949:

68 *Անդ:*

69 *Տեղեկագիր եւ Կանոնագիր Ասիական Ընկերութեան կողմէ հրատարակելիք գիտական եւ գրական հանդիսին, Կ. Պ.* 1882:

Հրատարակել, որմէ սակայն մէկ թիւ միայն լոյս կը տեսնէ[70]:

Ընկերութիւնը կանգուն մնացած է մինչեւ 1900:

## 22. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

Խասգիւղի մէջ արդէն 1836էն գտնուած է Տնանկ աղքատաց տետրակ մը, ուր կը տեսնուին կանագան աղքատներու բաժնուած ողորմութիւններ[71]: 1840էն ալ գտնուած է «Խասգիւղի տնանկ աղքատաց տէփթէր» մը, որուն մէջ արձանագրուած են չքաւորներու բաշխուած դրամներ[72]: 1843ին «նորոգ տէֆթէր» կը շինուի «Տնանկ աղքատաց» համար[73]: 1873էն սկսած կան ուրիշ արձանագրութեան տետրակներ[74]:

Բուն կազմակերպեալ Աղքատախնամ Ընկերութեան մը ծագումը Խասգիւղի մէջ եղած է 1877ին, կոչուելով նախ Աղքատաց խնամակալութիւն[75]: 1879ին կ'անուանուի Աղքատախնամ Ընկերութիւն, ինչպէս կը գրէ հայ թերթ մը 1879 Ապրիլ 5 թուականով. «Գոհունակութեամբ կ'իմանամք թէ Խասգիւղի Աղ-

---

70 Հմմտ. Ծաղիկ, 1887, էջ 368:

71 Արխատակէս Ա. քհնյ. Հիսարլեան, Յիշատակարան Յիսնամեայ Յոբելեանի Աղքատախնամ Մարմնոյ Խասգիւղի, Կ. Պ. 1929, էջ 35:

72 Անդ, էջ 36:

73 Անդ:

74 Անդ, էջ 44:

75 Մանզ. էփքեար, 1884, Թ. 5307: — Թորգոմեան, անդ, Բ., էջ 451:

քատախնամ Ընկերութիւնը, *որոյ* հաստատութիւնը հազիւ 2 տարիի կը հասնի *եւ որոյ նպատակն էր* թաղին հիւանդ եւ անօգնական աղքատաց անհրաժեշտ պիտոյքը հոգալ ու խնամել… *այս տարի Զատկական տօնի առթիւ… Թաղին ամէն կարգի աղքատներէն 60ի չափ անձանց ըստ կարեաց ողորմութիւն բաշխելու չափ հանգանակութիւն մ'ընելու յաջողելէն զատ, նաեւ իր մնացած դրամագլուխն ալ ներկայ դրամական տագնապին երեսէն անվնաս պահելու իմաստութիւնն ու գործունէութիւնն ալ ունեցեր է…: Խասգիւղի Աղքատախնամ Ընկերութիւնն իր այս աստիճան յաջողութեան եւ արժանացած գովութեան մէկ մասն ալ ստուգիւ* տօքթօր Արծրունի ճարտար եւ անձնուէր բժշկին կը պարտի, *որն որ աղքատ հիւանդ մը դարմանելու համար Աղքատախնամ Ընկերութեան կողմանէ ո՛ր ատեն եւ ո՛ր ժամուն որ դեկուցում մ'ընդունի, անմիջապէս կը փութայ յիշեալ հիւանդին…: Փափաքելի էր որ մայրաքաղաքիս միւս թաղերն ալ ասկէ օրինակ առնելով իրենք ալ իրենց համար մէկ մէկ Աղքատախնամ Ընկերութիւններ հաստատէին*[76]»:

1879 *Ապրիլ 5էն հազիւ* երկու տարի *առաջը կ'ըլլայ 1877ի ամառ–աշնան շրջանը: Հետեւաբար սխալ է Ընկերութեանս* 50ամեայ Յոբելեանին *առթիւ գրուած գրքին մէջ ըն–*

[76] Լրագիր, 1879, Թ. 938:

դունուածը թէ Ընկերութեանս հիմնումը եղած է 1878ին [77] ։

1882ին Ընկերութիւնս կը յորջորջուի հայ թերթէ մը՝ «Աղքատաց խնամատար Ընկերութիւն [78]» ։

1878ին Ընկերութեանս Վարչ. Մարմինը կազմած են, կ՚ըսուի.

| | |
|---|---|
| Սարգիս Աբրահամեան | Ատենապետ |
| Թուրէն Պուլկուրեան | Ատենադպիր |
| Եղիա Ճանպազեան | Գանձապետ |
| Առաքել Ա. Տիւրրի | |
| Նիկողոս Թիւլպէնտճեան [79] | |

1882ի Ընդհ. Ժողովը կ՚ընտրէ հետեւեալ Տնօրէն Ժողովը.

Սերովբէ Քեահեաեան
Իլիաս Տիոնեան
Գրիգոր Թընկըրեան
Յարութիւն Իզմիրլեան
Պաղտ. իկ Պապաեան
Յովհաննէս Երկանեան
Լէոն Էնֆիյէճեան [80]

1883ին Խնամակալութիւնը շնորհակալութիւն կը յայտնէ բազմաթիւ նուիրատուութեանց համար [81] ։ 1884ին ալ Ընկերութիւնը բաժնած է աղքատներու հաց, միս, բրինձ, դրամ, եւ այլն ։

---

77 Հիսարլեան, անդ, էջ 43, 86 եւ այլն։
78 Թէրճ. Էֆքեար, 1882, Թ. 1457։
79 Հիսարլեան, անդ, էջ 43։
80 Թէրճ. Էֆքեար, 1882, Թ. 1457։
81 Մանզ. Էֆքեար, 1883, Թ. 5164։

Աղքատախնամը կանոնաւոր Վարչ. Մարմին ունեցած է 1883—1914, ինչպէս կը տեսնու իր 50ամեակին առթիւ հրատարակած գրքէն [82]:

Ընկերութիւնս վերջին անգամ վերակազմուած է 1927ին [83] տեւելով մինչեւ օրս:

## 23. ԿԻԼԻԿԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

Ինչպէս վերը ակնարկեցինք՝ Խասգիւղի «Մ. Վարդանեան Ընկերութիւն»ը քայքայուած էր 1879ին: Զայն կազմող Առաքել-Նուպար–Շահնազարեան վարժարանի նախկին աշակերտները 1879ին սկիզբները տեսնելով որ Արարատեան եւ Դպրոցասէր–Արեւելեան Ընկերութիւնները իրենց ասպարէզ ընտրելով Վասպուրականն ու Տարօնը՝ գործի լծուած են լոյս սփռելու յետին գիւղին մէջ անգամ՝ եռանդ ու ոգեւորութիւն կը ծնի իրենց մէջ ասպարէզ նետուելու եւ իրենց երիտասարդական աւիւնով գործելու ազգին լուսաւորութեան համար: Ասոնք իրենց գործի ասպարէզ կ'ընտրեն Հայկական ուրիշ շրջան մը — Կիլիկիա — ուր 100,000 հաշուող Հայութիւն մը կար եւ Ռուբինեանց շրջանէն պանծալի յիշատակներ դեռ վառ կը մնային:

Խորհուրդի համար կը դիմեն օրուան Մ. Պատրիարքին եւ իրենց նախկին պաշտ–

---

[82] Տե՛ս Հիսարլեան, անդ, էջ 44—50:
[83] Անդ, էջ 52:

պան Ներսէս Արք. Վարժապետեանի, որ խորհուրդ կու տայ հաւաքել նախ Ճաշնագարեանի բոլոր նախկին աշակերտները եւ կազմել նախկին միութիւնը: Ս. Պատրիարքը հրաւէրի նամակ մը կը գրէ, որ կը տպուի 100 օրինակ եւ կը ղրկուի Ճաշնագարեան նախկին աշակերտներու: 1879 Փետր. 18ին կը հաւաքուին 40 նախկիններ ժողովի, ուր Վարժապետեան իրեն տեղ փոխանորդ ղրկած էր Գարեգին Վրդ. Սրուանձտեանց, որ կը նախագահէ ժողովին: Ժողովքի մէջ մանրամասն զեկոյց կը տրուի «Վարդանեան» Ընկերութեան մասին, որմէ վերջ միաձայնութեամբ նախկին Վարդանեան Ընկերութեան տեղ կը հիմնուի «Կիլիկեան» Ընկերութիւնը յատուկ կանոնագրութեամբ եւ ընդարձակուած ծրագրով: Գաղտնի քուէով կ՚ընտրուի նոր Ընկերութեան Գործադիր ժողովը: Սրուանձտեանց կը խրախուսէ ժողովականները՝ «Միութիւն, Յարատեւութիւն եւ խոհեմութիւն» յանձնարարելով: Մինաս Չերազ, Ընդհ. Ժողովի կողմէ շնորհակալութիւն կը յայտնէ Սրուանձտեանց Վ.ին՝ խնդրելով որ իրենց երախտիքը հաղորդէ Ս. Պատրիարքին, որ այնքան սիրով առաջնորդ եւ զօրավիգ կանգնած էր իրենց ակումբին[84]:

Ընդհ. Ժողովի Դիւանը կը կազմուի հետեւեալներէ.

[84] Մասիս, 1879, Թ. 2264:

| | |
|---|---|
| *Մինաս Ջերազ* | *Ատենապետ* |
| *Կարապետ Կարեկեան* | *Ատենադպիր* |
| *Հրանտ Ասատուր* | *Դեր–Ատենապետ* |
| *Յակոբ Հազարեան* | *Դեր–Ատենադպիր* |

*Գործ. ժողովի անդամներն էին.*

| | | |
|---|---|---|
| *Յովհաննէս* | *Արշակունի* | *Ատենապետ* |
| *Տիգրան* | *Առաքելեան* | *Ատենադպիր* |
| *Եղուարդ* | *Իւթիւճեան* | *Դեր–Ատենապետ* |
| *Խաչատուր* | *Մուրատեան* | *Դեր–Ատենա–* |
| | | *դպիր* |
| *Յովհաննէս* | *Արծրունի* | *Գանձապետ* |
| *Կարապետ* | *Լաթիֆեան* | *Համարակալ* |
| *Յակոբ* | *Թաշճեան* | |
| *Միսաք* | *Թաշճեան* | *Կնքապահ* [85] |

*Ընկերութիւնը* 1879*ին կը հրատարակէ իր* «Հիմնական Կանոնագիր»*ը, որ կը բաղկանայ* 28 *Յօդուածէ, ուսկից կը տեսնենք թէ* «*Կիլիկեան Ընկերութեան*» նպատակն *է.* «Ազգային դաստիարակութիւնն ընդհանրացնել Կիլիկիոյ մէջ»*. Ընկերութեան կրնայ անդամակցիլ ամէն հայ*, եթէ մէկ ընկերի կողմէ առաջարկուի եւ Գործ. ժողովէն ընդունուի (*Յօդ.* 1)*. ամսական անդամավճարն է* 1 *արծաթ ղուրուշ* (*Յօդ.* 3)*. պատուոյ անդամները պարտաւոր են տարին* 3 *ոսկի վճարել* (*Յօդ.* 4)*.* նոյն անձը թէ՛ համարատու եւ թէ՛ համարատու չի կրնար ըլլալ (*Յօդ.* 11)*.* իւր պարտքը անթերի չկատարող ժողով կամ

---

[85] Մասիս, 1879, *Թ.* 2351:

ժողովականն՝ անվստահութեանն քուէով պաշտօնանկ կ'ըլլայ (*Յօդ.* 18)։

*Այս Կանոնագիրը հրատարակուած է թէ՝* Մասիս*ի* (1879, *Թ.* 2351), *թէ՝* Արեւելեան Մամուլ*ի* (1879, *Թ.* 77—78) *մէջ եւ թէ առանձին հատորիկով մը (Հիմնական Կանոնագիր Կիլիկեան Ընկերութեան, Կ. Պ.* 1879)։

*Ընկերութիւնը Վարդանեան Ընկերութեան Հաճընի մէջ բացած վարժարաններու պաշտպանութիւնը ստանձնելէ զատ*[86]՝ *իր առաջին վարժարանը կը բանայ* Զէյթունի *մէջ, ուսուցիչ կարգելով հոն* խաչատուր Տատուրեան[87]։

Տիկին Զարուհի Ս. Համամճեան *Կիլիկեան Ընկերութեան համար դրամահաւաք մ'ընելով՝ արդիւնքը* — 133 *ոսկի — Պատրիարքին միջոցաւ Ընկերութեան կը յանձնէ, որուն կ'ուղղէ Վարժապետեան Պատրիարք սրտագեղ շնորհակալիք մը կոչելով զայն «ընտրելագոյն նազելի եւ ճշմարիտ մայր ի մարս ազգիս», որ կը կրէ «զսիրտ, զոգի եւ զզգացմունս այն երանաւէտ տիկնայց մերոց Հայաստանեայց՝ զորոց ներբողս հրաշալի կերպով կը յերիւրէ քաղցրախօսն եւ վշտաբեկ Վ.ն Եղիշէ»։ Բայց կ'արժէ յիշել նաեւ նուիրատուները.*

---

[86] *Հմմտ.* Մասիս, 1879, *Թ.* 2475։
[87] Մասիս, 1879, *Թ.* 2360։

| | |
|---|---|
| Սարգիս Պէյ Պալեան . . . . . . . | 50 |
| Միհրան Պէյ Տիւզեան (կաթողիկէ) . . | 25 |
| Յովհաննէս Եսայեան . . . . . . | 10 |
| Մկրտիչ Եսայեան . . . . . . . . | 10 |
| Գէորգ Սամանճեան (կաթողիկէ) . . . | 10 |
| Միքայէլ Փորթուգալեան (կաթողիկէ) | 10 |
| Խաչատուր Պէյ Ալիքսանեան (կաթողիկէ) | 5 |
| Աստուածատուր Ջունդ . . . . . . | 5 |
| Սերվիչէն . . . . . . . . . . | 3 |
| Մանուկ Արսլանեան . . . . . . . | 3 |
| Վիչէն Ապտուլլահ (կաթողիկէ) . . . | 3 |
| Էլիաս Զայեան[88] . . . . . . . . | 2 |

1879 Սեպտ. 9ի ժողովքին մէջ Նոր Գործ. ժողով կ՚ընտրուի հետեւեալ կազմով.

| | |
|---|---|
| Գէորգ Ապտուլլահ | Ատենապետ |
| Տիգրան Հինքեարպէյեն-տեան | Դեր-Ատենապետ |
| Տիգրան Առաքելեան | Ատենադպիր |
| Յովհաննէս Արշակունի | Գանձապետ |
| Յարութիւն Մոստիչեան | Համարակալ[89] |

Մկրտիչ Սանասարեան Ընկերութեան Հաճընի եւ Զէյթունի վարժարաններուն կը նուիրէ Փորձ թերթի մշտատեւ բաժանորդագրութիւնը. նոյնպիսի նուիրատուութիւններ կ՚ընեն ուրիշներ ալ[90]:

Ընկերութիւնը 1879 Նոյ. 4ին մասնաւոր հանդէսով մը կը բանայ իր երկրորդ վարժարանը Մարաշի մէջ՝ տեսչութեամբ Մ. Էլմա-

88 Մասիս, 1879, Թ. 3396:
89 Անդ, Թ. 2433:
90 Անդ, Թ. 2434:

սեանի․ հանդէսին կը նախագահէ Կիլիկիոյ Մկրտիչ կաթողիկոս[91]։

Օր․ Կալինիկ Ասատուր ի նպաստ Ընկերութեան ցուցահանդէս մը կը սարքէ 150 ձեռագործներով, որոնց մէջ Փոքր–Ասիոյ քարտէսն ու «Հայկ» նահապետը իբրեւ «արուեստի, համբերութեան եւ հմտութեան հրաշակերտ» կը գնահատուին նաեւ օտարներէն[92]։

Ընկերութիւնը բանալով վարժարաններ նաեւ Այնթապի եւ Սիսի մէջ՝ 1880ի սկիզբը կ՚ունենայ իր պաշտպանութեան տակ եօթը վարժարան համագումար 1000 աշակերտներով[93]։

Կիլիկեան Ընկերութիւնը 1880 Յունիս 1ին միանալով Արարատեան եւ Դպրոցասէր–Արեւելեան Ընկերութիւններու հետ՝ կը կազմեն «Միացեալ Ընկերութիւնք Հայոց»ը, որ կը շարունակէ երեքին նպատակները գործադրել միացեալ ուժերով[94]։

## 24․ ԹՈՐԳՈՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

Հիմնուած է 1879 Մայիս 1ին։ Հիմնադիրն է Առաքել–Նուպար–Շահնազարեանի նախկին սան Գրիգոր Թընկըրեան՝ նպատակ ունենալով․ «Հայաստանի մէջ բացուած

---

91 Անդ, թ․ 2503։

92 Անդ, 1880, թ․ 2611։

93 Անդ, թ․ 2616։ — Թէրճ․ Էփքեար, 1880, թ․ 801։

94 Տե՛ս Մասիս, 1880, թ․ 2624։

վարժարաններու աշակերտներուն գիրք, գրիչ, թուղթ եւ նման բաներ հայթայթել[95]:

*Գրիգոր Թընկըրեան* 1879 *Յունիսին հրաւէր կ՚ընէ Ընկերութեան անդամներուն* առաջին *ժողովքի, ուր պիտի վաւերացուի Ընկերութեան* կանոնագրութիւնը, *պիտի ընտրուի Ընդհ. ժողովի Դիւանը եւ Գործ. ժողովը*[96]: *Ընկերութիւնս անծանօթ է Ալպօյաճեանի:*

## 25. ԳՐԱՇԱՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1880)

*Միութիւնս յիշուած է* միայն *Յակոբ Վարժապետեանէ իր «Յիշատակարան»ին մէջ:*

*Կազմուած է հետեւեալ գրաշարներէ.* Տիգրան Տողրամանեան, Որդիկ Էքսէրճեան, Տիգրան Մանտալճեան, Մոսիկ Էքսէրճեան, Գալուստ Գայըգճեան, Միհրան Վայլըյեան, Գառնիկ կոզմայեան: *Անոնց նպատակն էր դպրոցազուրկ տղաքը հաւաքել եւ անոնց կրթութեան գործը ստանձնել: Միութիւնը իր պաշտպանութեան տակ կ՚առնէ նաեւ Ներսիսեանի 3—4 ուշիմ աշակերտները եւ կը հոգայ անոնց գրենական պիտոյքն ու հագուստ-կապուստը*[97]:

## 26. ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

*Ընկերութեանս յիշատակութիւնը եղած է* 1882*ին, երբ անոր ի նպաստ պարահանդէս*

---

[95] Թէրճ. էֆքեար., 1879, *Թ.* 560:

[96] *Անդ, Թ.* 590:

[97] *Տե՛ս Յակոբ Վարժապետեան, Յիշատակարան, անդ, էջ* 96—97.:

*մը կը տրուի եւ կ՚ըսուի թէ նպատակն է՝* «ազգային որբ եւ աղքատ մանկտին կրթական հաստատութեանց մէջ դաստիարակել»:

*Թորգոմեանի համեմատ Ընկերութիւնս հիմնուած է 1880ին եւ տեւած մինչեւ 1884 (Երեմ. Զէլէպ., անդ, Բ., էջ 452): Նախորդին եւ յաջորդին նպատակներում կը նմանի:*

27· ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1882)

*Յակոբ Վարժապետեանի համեմատ*[98] *Խասգիւղի* «Ընթերցասիրաց Ընկերութիւն»*ը չարունակութիւնն է նախորդ՝* «Գրաշարաց Միութեան»: *Ժամանակակից թերթերէն այդպիսի բան մը չենք իմանար: Ընկերութիւնս ծանօթ է* Մասիս*ի*, Թէրճ. Էփքեար*ի*, Արեւելք*ի եւ* Հայրենիք*ի*: *Ընկերութիւնս հիմնուած կ՚երեւայ* 1882*ի* սկիզբը: Թէրճիւմանը Էփքեար*ի քով կը գտնենք Ընկերութեան Մայր-Դիւանի մէկ գեկոյցը, ուր Ատենապետ* Սարգիս Ա. Սրկգ. Պարտիզպանեան *եւ Ատենադպիր* Վ. Գասպարեան *կը գրեն Խասգիւղէն.* «*Գիւղիս* նորահաստատ «*Ընթերցասիրաց*» *Ընկերութիւնը, որոյ նպատակն է* Ս. Ներսիսեան վարժարանի ուշիմ եւ վկայեալ աղքատիկ արու աշակերտաց պաշտպան ըլլալ իրենց դպրոցական շրջանին մէջ *եւ որ արդէն սկսած է 1882 Մարտ 15էն իր նպատակին համաձայն 7 ուշիմ եւ աղքատիկ ու-*

[98] *Անդ*, էջ 98:

*սանողներ ընտրել, նոյն բարոյական եւ նիւթական հոգատարութիւնն ստանձնել լիովին... յաջողած է բաժանորդաց թիւն 250ի ստուարացնել*[99]»:

*Ընկերութիւնը Խասգիւղէն եւ անկէ դուրս «աղքատիկ ուսանողներ կ'որդեգրէ»* 1889*ին*[100]:

1893*ին* Հայրենիք[1] *կը գրէ. «Խասգիւղի մէջ հաստատուած Ընթերցասիրաց Ընկերութիւնը* տասնումէկ տարիէ ի վեր *անդուլ կ'աշխատի... ազգին եւ տէրութեան նուիրած է օգտակար անդամներ. ասոնց մէջ են* երկու բժիշկ... մէկ շրջանաւարտ Առեւտրական բարձրագոյն վարժարանէն, երեք շրջանաւարտ Ազգ. Կեդ. վարժարանէն, *ասոնց հաշուելու* երեսունէ աւելի պաշտպանեալներ, *որք այսօր զանազան արհեստներով կը զբաղին*: Հիմա ունի տասը պաշտպանեալ Խասգիւղի Ներսիսեան վարժարանին մէջ եւ մէկ բարձրագոյն կարգի ուսանող Կայս. Քաղ. Բժշկական վարժարանը»:

*Ընկերութիւնս վերակազմուած է* 1908 *Նոյ.* 23*ին*[2]:

*Յակոբ Վարժապետեան կու տայ քանի մը մանրամասնութիւն, անդամներու անուն–*

---

[99] Թէրճ. Էփքեար, 1882, *Թ.* 1460: — *Տե՛ս նաեւ* Մասիս,: 1882, *Թ.* 3224: — Արեւելք, 1884, *Թ.* 50. 1888, *Թ.* 1756:

[100] Արեւելք, 1889, *Թ.* 1756:

[1] *Թ.* 433:

[2] Սուրհանդակ, 1908, *Թ.* 89, 129:

*ներ եւ Ընկերութեան* Կանոնագիրը, *որ ունէր 22 Յօդուած*[3]:

## 28. ԽՆԱՄԱԿԱԼՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884)

*Անգամ մը եւս կը հիմնուի Ներսիսեան վարժարանի սանուհեաց բարոյական եւ նիւթական հոգատարութիւնը ստանձնելու համար Նոր Տիկնանց Մարմին մը: Կը յորջորջուի այս անգամ* «Խնամակալուհեաց Ընկերութիւն[4]»:

*Տնօրէն Խորհուրդը կը կազմէին* տասը *անդամուհիներ՝ նախագահութեամբ* Տիկ. Աննա Խայեան*ի*[5]:

1887*ին տակաւին Ընկերութեան նախագահը Տիկ. Աննա Խայեան է, որ 25 ոսկի հանգանակած է. Ատենապետը* Իսկուհի Պ. Տէմիրճիպաշեան, *Ատենադպիրը* Թերեզա Մ. Ճիզմէճեան *է*[6]:

1891*ին Ընկերութիւնը «հարկ* դատած է դադրեցնել ամսական նպաստը, *զոր կ՚ընէր յիշեալ վարժարանին (Ներսիսեանի)* մասնակի վճարմամբ վարժուհւոյ ամսականին[7]»:

1897*ին կ՚ըսուի թէ* դադրած *Ընկերութեան նախկին Ատենապետուհի Տիկ. Աննա Խայեանի քով 300 ոսկի կայ*[8]:

---

[3] *Յիշատակարան*, *անդ*, *էջ* 98—102:
[4] Արեւելք, 1887, *Թ*. 1031:
[5] *Վարժապետեան*, *Յիշատակարան*, *անդ*, *էջ* 112:
[6] Արեւելք, *անդ*:
[7] *Անդ*, 1891, *Թ*. 2348:
[8] Մասիս, 1897, *Թ*. 88:

### 29. ԿՐԹԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

Սուրհանդակ[9] «Կրթական Միութիւն» *վերնագրի տակ կը գրէ. «Այս անունով խումբ մը երիտասարդներ «միութիւն» մը կազմած են իրենց նպատակ ունենալով* կրթել իրենց մարմինը, միտքն ու սիրտը: *Ասոր համար նախ կազմած են Մարմնամարզական խումբ մը, որ արդէն սկսած է իր մարզանքներուն...: Միութիւնը հաստատած է նաեւ Լսարան–Ընթերցարան մը, ուր ամէն տեսակ գիրքեր ու լրագիրներ պիտի գտնուին...: Լսարանին բացումը կատարուեցաւ Կիրակի* (*Նոյ.* 19, 1908) *նախագահութեամբ* Ս. Զաւարեանի *եւ ի ներկայութեան երկսեռ հանդիսականներու*»:

### 30. ԶՐՕՍԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1912)

*Կը յիշուի* 1912 *Յունիսին. կը սարքէ դաշտահանդէս*[10]: *Մարզական Ընկերութիւն մ՚ըլլալ կը թուի*:

### 31. ՍԱՆՈՒՀԵԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1914)

Ժամանակ[11] 1915 *Մարտին կը գրէ. «Խասգիւղի Հոգաբարձութիւնը նախ վարժարանին մէջ կազմեց* «Սանուհեաց Միութիւն» *մը, նպատակ ունենալով* աղքատիկ երկսեռ աշակերտաց գրենական պէտքերը

[9] 1908, Թ. 129:
[10] Ժամանակ, 1912, Թ. 1140, 1146:
[11] Թ. 2113:

հոգալ: *Նոյն Միութիւնը յաջողեցաւ իր նպատակին իրագործման մէջ եւ Հողաբարձութեան աջակցութեամբ* դպրոցի շրջանէն սկսեալ 35 *աղքատիկ ուսանողներու դրենական պէտքերը հոգալէն զատ՝ Ս. Զատկի տօնին առթիւ ալ քան տղայոց կօշիկ տուաւ, ուրախացնելով զիրենք»:*

*Հիմնուած կ'երեւայ* 1914*ի սկիզբը:*

32. «ԱՐԾԻԻ» ԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Կազմուած է* 1918*ին: Նպատակն է.* «Նպաստել հասարակութեան մտաւոր եւ բարոյական զարգացման»: 50 *անդամ ունէր* 1920*ին: Վարչ. Խորհուրդը կը կազմէին. Աւետիս Եազըճեան (Ատենապետ), Մ. Զուրիկեան, Յ. Գարագաշեան, Պ. Պալըգճեան, Ա. Ալլահվէրտեան, Լ. Վանլեան, Ա. Ֆռունեան: Մայր Դիւան՝ Յ. Աճէմեան, Ս. Սարգիսեան, Մ. Պալըգճեան*[12]*:*

33. «ՇՈՒՇԱՆ» ՀԱՅՈՒՀԵԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ
(1918—1919)

*Վարչութիւնը կը կազմէին՝ Տիկիններ. Ա. Զուրիկեան (Ատենապետ), Է. Բիւրատ, Վ. Իզմիրլեան. Օրիորդներ. Ա. Պէրպէրեան, Վ. Ճոչկունեան, Ս. Պալըգճեան, Թ. Տէօվլէթեան*[13]*:*

[12] *Թէոդիկ, Ամէն. Տարեց.* 1921, *էջ* 301:
[13] Ժողովուրդի Ձայնը, 1920, *Թ.* 606: — *Թէոդիկ, Ամէն. Տարեց.* 1921, *էջ* 303—304:

# ԷՅՈՒՊ

## 1· ··· ԸՆԿԵՐԱԻԹԻՒՆ (1861)

Էյուպ *թաղը* 1861*ին ունեցած է Ընկերութիւն մը, որ* 1866*ին «դադրած» կ'որակուի, առանց որեւէ բացատրութեան, միայն կ'ըսուի թէ այդ դադրած Ընկերութեան թողած* 2347 *ղուրուշ դրամը անցած է Էյուպի «Դպրոցասիրաց Սանուց Ընկերութեան*[14]*»։*

*Այս մասին յիշատակութիւն չունին «Սկսնակ Բանասէր», Թորգոմեան եւ Ալպօյաճեան։*

*Մեզի կը թուի թէ անանուն մնացած այս Ընկերութիւնը կոչուած է* «Դպրոցասէր» *կամ* «Դպրոցասիրաց»։ *Իր դադարումէն վերջ երբ կը հիմնուի «Առաքելեան» վարժարանի «Սանուց Ընկերութիւն»ը՝ վերջինս իր անուան կը կցէ «Դպրոցասէր» կամ «Դպրոցասիրաց» տիտղոսը՝ ժառանգելով միանգամայն անոր թողօնը։*

## 2· ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

*Ընկերութեանս հիմնումի տարիին նկատմամբ թէեւ* 1869 *Նոյեմբերին յօդուածագիր մը կը գրէ թէ* «վեցամեայ» *է*[15], *սակայն վստահ ենք թէ* 1863 *տարին չէ Ընկերութեանս հիմնումի տարին։*

---

[14] *Տե՛ս* Փունջ, 1866, *Թ*. 140։
[15] Մանզ. Էփ., 1869, *Թ*. 1100։

*Իզմիրի* «Դպրոցասիրաց Սանուց Ընկերութիւն»*ը հիմնուած է* 1864 *Սեպտ.* 21*ին*, *ինչպէս յայտնի կը տեսնուի Ընկերութեան մէկ արտայայտութենէն*[16]:

*Ընկերութիւնս հիմնողներն են Իզմիրի* Ս. Աստուածածինի *եկեղեցւոյ* «Առաքելեան» *վարժարանի Սաները*: Առաքել Յ. Տատեան *բարերարն եղած է Իզմիրի Ազգային վարժարանի, որով երախտագէտ Իզմիրցիք իրենց վարժարանը կը յորջորջեն «Առաքելեան» վարժարան*[17]:

*Ընկերութեանս* նպատակն է նպաստել թաղին վարժարանին եւ սատարել մտաւոր զարգացումին: *Արդէն հիմնումի առաջին տարիէն Ընկերութիւնը բացած է* Ընթերցարան *մը, հասարակութեան ընթերցումին նիւթ հայթայթելով: Այդ Ընթերցարանի մէջ տեղի ունեցած են նաեւ ճառախօսութիւններ՝ ազգային նիւթերու վրայ:* 1869*ին հայ թերթ մը կը գրէ Ընկերութեան գործի մասին.* «...թաղին աղքատիկ դպրոցը կը մատակարարէ, զարդարելով նաեւ իւր թանգարանը զանազան գրքերով, որ թաղին երիտասարդաց բարոյական սնունդ կը հայթայթեն: *Եւ որ աւելին է, չբաւականանալով այժմեան վարժարանէն...* *կը ջանայ* երկսեռ վարժարանի մը շինութիւնը, *որ յիրաւի խիստ մեծ բան մ՚է իւր փոքրութեանը հա-*

---

16 *Տե՛ս* Արարատ, *կ. գ.* 1869, *թ.* 26:
17 Ծիածան, 1866, *թ.* 14:

մեմատելով... Էյուպցին վեց տարիէ ի վեր խօսարան մը ունեցած է Դպրոցասիրաց Սանուց Ընկերութեան Ընթերցարանը, ուր միշտ ազգային նիւթերու վրայ կը զբաղուի, բայց հոն յաճախողաց թիւը տասնէն աւելի չըլլալուն, չհամարձակեցաւ խօսարան անուանել զայն[18]»:

1866ին Ընկերութեան Նախագահն էր Յովհաննէս Սարաֆեան. իսկ տարեկան անդամավճարը՝ 26 ղուրուշ[19]: 1865—1866 մէկ տարուան Մուտքն եղած է 11,286 ղրշ. 35 փարա, նոյնքան ալ Ելք: Ունեցած է 105 կտոր գիրք եւ 289 զանազան թերթեր «բարեպաշտ անձերէ նուիրուած[20]»:

1871ին Ընկերութեան Գործ. Ժողովի Ատենապետ Դանիէլ Ծախպազեան եւ Ատենադպիր Ռափայէլ՝ Հանրութեան կ'իմացնեն թէ «մէկ քանի թաղեցիք» մատնութիւն ընելով ոստիկանութեան քով՝ փակել տուած էին Ընկերութեան Ընթերցարանը, սակայն Պատրիարքարանի միջամտութեամբ կրցած են վերստին բանալ տալ «եւ այժմ Կառավարութենէն ալ ճանչցուած ըլլալուն՝ իւր թշնամեաց խուչընդոտներն առ ոչինչ կը համարի[21]»: — Ընկերութիւնը 1873էն վերջ ալ տեւած է:

---

18 Մանզումէի Էֆքեար, 1869, թ. 1100: — Հմմտ. Ժամանակ, 1869, թ. 145:

19 Ծիածան, 1866, թ. 1:

20 Փունջ, 1866, թ. 140: — Հմմտ. նաեւ Մանզ. Էֆք., 1869, թ. 1010 եւ Օրագիր, 1873, թ. 1084:

21 Մասիս, 1871, թ. 1088:

### 3. ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865)

*Թորգոմեան*[22] *Ընկերութեանս հիմնումը* 1865*ին կը դնէ։ Կը կարծենք թէ ճիշդ է այդ թուականը։ Մամուլի մէջ միայն մէկ անգամ, այն ալ շատ ուշ յիշատակուած է Ընկերութիւնս իր մէկ անդամին՝* Յ. Գ. Մավեանցի *կողմէ*[23]։

### 4. ՀՌՓՍԻՄԵԱՆ ԽՆԱՄԱԿԱԼՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (... 1868)

*Կլ յիշուի* 1868 *Դեկտ.ին, սակայն անկասկած աւելի հին է։ Հիմնուած է Էյուպի* Ս. Եղիա *թաղամասի* Պեզճեան *արական վարժարանի կից* աղջկանց բաժնի *պաշտպանութեան համար*[24]։

*Անծանօթ եղած է Թորգոմեանի եւ Ալպօյաճեանի։*

### 5. ԱՐՏԵՄԵԱՆ ՏԻԿՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (... 1869)

*Անունն կը հանդիպինք* 1869 *Օգոստ.ին։ Կազմուած է Էյուպի* «Առաքելեան» *երկսեռ վարժարանի* աղջկանց «կրթութեան եւ յառաջադիմութեան ըստ կարի նպաստելու համար[25]»։ *Անծանօթ է Ալպօյաճեանի։*

*«Դպրոցասիրաց Սանուց Ընկերութիւն»ը եւ «Արտեմեան Տիկնանց»ը միացեալ աշխա-*

---

[22] *Երեմ. Չէլէպիի, անդ, Բ., էջ* 422։
[23] *Տե՛ս* Մասիս, *Փոքր*, 1869, *Թ*. 373։
[24] *Հմմտ.* Մանզ. Էփ., 1868, *Թ*. 837 *եւ* 842։
[25] Ժամանակ, 1869, *Թ*. 145։

տանքով կը յաջողին Ս. Աստուածածին Թաղամասի Առաքելեան վարժարանի աղջկանց բաժնի համար առանձին շէնք մը ձեռք բերել իբր վարժարան: Այս նոր վարժարանի անունը կը դնեն «Արտեմեան վարժարան» եւ բացումը 1870 Ապրիլ 14ին կոկիկ հանդէսով մը կը կատարեն (տե՛ս Մանզ. էփ. 1870, Թ. 1216):

6. ՊԵԶՃԵԱՆ ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

Հիմնուած է էյուպի Ս. Եղիա Թաղամասի Պեզճեան վարժարանի սաներէն: 1871 Դեկտ. 20ին կը գրեն Ընկերութեան երեք անդամները. «էյուպ Ս. Եղիա Թաղիս Յ. Պեզճեան վարժարանի աշակերտքս վեց ամիսներէ հետէ ընդ պաշտպանութեամբ Թաղեցի Մեծ. Համազասպ աղա Ռափայէլեանի Սանուց Ընկերութիւն մը կազմեր ենք մեր մէջ, Ընկերութեանս անդամակցող սան մը, մէն մի բաժնի համար շաբաթական մի միայն 10 փարա կը վճարէ...:

Ի դիմաց Պէզճեան Ս. Ընկերութեան

Տիրան Տ. Մանուկեան
Արիստակէս Հ. Յակոբեան
Պետրոս Մուրատեան[26]:

Ընկերութեան գրքեր ու թերթեր նուիրած են զանազան անձեր[27]:

Անծանօթ է Ալպօյաճեանի:

[26] Մանզ. էփ., 1871, Թ. 1803:
[27] Անդ.:

# ՊԱԼԱԹ

## 1. ԴՊՐԱՑ ԴԱՍ (1730)

Պալաթի հնագոյն ընկերական կազմակերպութիւնը Թաղին Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյ Դպրաց Դասն է, որուն ծագումը կը բարձրանայ մինչեւ 1730 տարին[1]:

Ա. Ց. Այվազեան[2] կը գրէր 1899ին. «Պալաթու եկեղեցին գրեթէ 120 տարուան կազմակերպեալ Դպրաց·Դասու Ընկերութիւն մը ունի, որուն պաշտպան եւ քաջալեր հանդիսացած է, Վարժապետեան հոգելոյս Ներսէս Ս. Պատրիարքի պապը՝ Ջէննէ վերանունեալ Տիրացու Պօղոս Աւագ–Սարկաւագը, որ ժամանակակից նշանաւոր շարականագէտներէն ու ձայնագրագէտներէն մէկն եղած է»:

Հետեւաբար ըստ Այվազեանի Պալաթի Դպրաց Դասը 1778—1779էն է: Ինչպէս սակայն վերը ըսինք, մատնանշելով երկու աղբիւրներ, Պալաթի Դպրաց–Դասի հնութիւնը աւելի բարձր է, քան որ կը համարէր Այվազեան:

Ց. Քիւրտեան եւս վերջերս Պալաթի Դպրաց–Դասի 1778ի կանոնագիրը հրատարակած ատեն կը գրէր. «Պալաթու Հայոց, կրնանք առ այժմ տալ առաջնութիւնը եկե–

[1] Պետրոս Կարապետեան, Հնդադարեան Յիշատակարան Սամաթիոյ Ս. Գէորգ եկեղեցւոյ, Կ. Պ. 1935, էջ 302: — Ա. Ալպօյաճեան, Գաղ. Տարեգր., Ա., էջ 52:

[2] Ծաղիկ, Կ. Պ. 1899, Թ. 55:

դիցուք դպրաց կազմակերպութիւն և անոնց համար պատրաստուած կանոններուն[3]»։

Ինչպէս կը տեսնուի՝ յարգելի Յօդուածագրին անծանօթ են Սամաթիոյ Դպրաց-Դասը՝ 1703էն, Սկիւտարի Դպրաց-Դասը՝ 1710էն, Մայր-Եկեղեցւոյ (Գումգափուի) Դպրաց-Դասը՝ 1719էն[4]։

Երախտապարտ ենք սակայն Թիւրեանի, որ հրապարակ կը հանէ Պալաթի Դպրաց-Դասի Կանոններու մասին 1778ին գրուած մէկ Ձեռագիրը, որ մաս կը կազմէ իր Ձեռագրաց Հաւաքածոյին։

Այդ Ձեռագրէն կ՚իմանանք թէ Պալաթի Ս. Հրեշտակապետաց եկեղեցւոյ Դպրաց Դասը 1778ին «Կանոնական Յիշատակարան» մ՚ունի, այսինքն՝ Կանոնագիր մը, որ «Կրկնաբար՝ նորոգ հաստատեցեալ եղեւ։ Յորում պարունակին կանոնք վերահաստատեցեալք[5]»։ Ուրեմն՝ 1778էն առաջին անգամ յօրինուած չեն այդ Կանոնները, այլ նախապէս գոյութիւն ունեցած Կանոններու վերակազմութիւն մ՚են («վերահաստատեցեալք»)։

Պալաթի Դպրաց Դասի Կանոնները 10 կէտերէ կը բաղկանան[6], ունենալով նաև 10 «Պատուէրք[7]»։

[3] Շողակաթ. Կ. Պ. 1952, Թ. 5, էջ 116։

[4] Հմմտ. Ա. Ալպօյաճեան, Պատ. Տարեգր., Ա., էջ 51—52։ — Պետրոս Կարապետեան, անդ, էջ 294—302, և այլն։

[5] Շողակաթ, անդ, էջ 112։

[6] Տե՛ս Շողակաթ, անդ, էջ 114—115։

[7] Անդ, էջ 115—116։

*Թէ՛ բովանդակութեան եւ թէ՛ լեզուի տեսակէտով չահեկան ըլլալուն՝ իբրեւ նմոյշ յառաջ կը բերենք Ա. կանոնը.* «Յորժամ տղայ մի ի ձայն մտանել եւ տէփտէր դպրացն գըրեալ կամենայ. յ(ա)ռ(ա)ջագոյն քանի մի ամիս փորձիցի ի փոխանորդաց եւ ի ձայնապ(ե)տ(ա)ց ի վարուց եւ ի բարուց կողմանէ, *եւս թէ է գրավարժ ըստ բաւականին. յայնժամ ի ձայնն մտանիցէ ի դումարս դպր(ա)ց*[8]»:

1870*ին* Մանզ. էփ. (*Թ.* 1263) *կը յիշէ Պալաթի* «Դպրաց Ընկերութիւնը»:

1878*ին Պալաթի Դպրաց Դասին Դպրապետն էր «տիրացու Ռափայէլ», իսկ իր փոխանորդները՝ «մահտեսի Դերձակ տիրացու Ռափայէլ» եւ «Մանկավարժ տիրացու Սարգիս*[9]»:

*Ինչպէս Ալպօյաճեան*[10] *կը հաստատէ՝ մինչեւ վերջերս կը պահէր Պալաթի Դպրաց Դասը իր գոյութիւնը՝ «վառ պահելով նորահաստներուն մէջ եկեղեցիին ծառայելու եռանդը եւ փափաքը»*:

## 2. ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1844)

*Դոկտ. Վ. Թորգոմեան*[11] *եւ Ա. Ալպօյաճեան*[12] *Պալաթի* Արամեան Ընկերութեան

---

[8] *Անդ, էջ* 114:
[9] *Անդ, էջ* 113:
[10] *Գաղ. Տարեգր., Ա., էջ* 52:
[11] *Երեմիա Չէլէպիի Ստամպօլոյ Պատմ., Ա., Վիեննա* 1913, *էջ* 323:
[12] *Անդ, էջ* 54:

*հիմնումը 1845ին կը դնեն։ Մինչ ժամանակակից հայ թերթը՝* Արշալոյս Արարատեանն[13] 1844 *Սեպտեմբեր* 2 *թուականով կը ծանուցանէ արդէն անոր հիմնուած ըլլալը։ Յիշեալ թերթը հոդ ըսելէ յետոյ թէ Գումգափուի մէջ «Լուսաւորչեան Ընկերութիւն»ը հիմնուած է՝ կը գրէ.* «Կը լսենք թէ Պալատու դպրատան յառաջադիմութեանը համար ալ ասանկ մէկ Ընկերութիւն մը հաստատուեր է Սրբազան Պատրիարքին ազգասիրական խնամքովը, *որուն վրայօք հարկաւոր տեղեկութիւններ դեռ չառացանք որ ծանուցանենք բարեսէր հասարակութեանը։*

*Զմիւռնիոյ հայ թերթը տեղեկութիւն տուանայէ վերջ* (1845*ին*) *Պոլսոյ 9ը Ընկերութիւններու կարգին — Գումգափուի «Լուսաւորչեան»ի քովը — կը յիշէ նաեւ Պալաթի «Արամեան Ընկերութիւն»ը* (Արշ. Արարատեան, 1845, *թ.* 235)։

*Հետեւաբար Պալաթի Արամեան Ընկերութիւնը ոչ թէ* 1845*ին՝ այլ* 1844*ի Սեպտեմբերէն առաջ հիմնուած է։*

*Արամեան Ընկերութեան* նպատակն *է Պալաթի* «Խորէնեան» *վարժարանի նպաստել։*

*Ալպօյաճեանի համեմատ*[14] *Ընկերութիւնը* 1847*ին կը կազմալուծուի եւ «Խորէնեան» անունով կը վերակազմուի։ Այս մասին հին վկայութեան մը չենք հանդիպած։ Ընդհակառակն Ընկերութիւնը ողջ է, իր*

[13] *Զմիւռնիա*, 1844. *թ.* 206։
[14] *Անդ*։

սկզբնական անունով, *տակաւին* 1871*ին* (*տե՛ս* Օրագիր, 1871, *Թ*. 459)։

### 3. ԽՈՐԷՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1846—1847)

*Գալաթի մէջ «Խորէնեան» անունով վարժարան մը արդէն* 1816*ին հիմնուած էր*[15]*։ Այդ վարժարանին անունով վարժարանի պաշտպան* Խորէնեան Ընկերութիւն *մը եւս կը հիմնուի անցեալ դարու* 40*ական թուականներուն, սակայն ժամանակակից հայ թերթերէն ոչ մէկուն քով հանդիպած ենք Ընկերութեան հիմնումի պարագաներուն ու թուականի մասին։ Այդ Ընկերութեան առաջին յիշատակութիւնը* 1857 *Յունուար* 10*ին* Մասիս *կ՚ընէ, ըսելով թէ* «անկէց տասն տարիի չափ առաջ» *կազմուած է։ Հետեւաբար կարելի չէ վճռականօրէն ըսել թէ* 1846*ի՞ն թէ* 1847*ին հիմնուած է ան։ Այպօյաճեանի յօդուածին մէջ*[16] 1846 *թուականը նշանակուած է իբրեւ հիմնումի թուական, իսկ Սկսնակ Բանասէր*[17]*, Հրանդ Ասատուր*[18] *եւ Թորգոմեան*[19] 1847 *թուականը կ՚ընդունին։*

1856*ին Խորէնեան Ընկերութիւնը կը վերակազմուի Գալաթի հայ երեւելիներէն* Պետրոս Խորասանճեանի *նախաձեռնութեամբ ու նպաստներով։ Այս ամէնուն մասին կարե–*

---

15 *Ընդարձակ Օրացոյց, Կ. Պ.* 1901, *էջ* 184։
16 *Գաղ. Տարեգր., Ա., էջ* 57։
17 Արեւելք, 1898, *Թ*. 3854։
18 *Ընդ. Օրաց., անդ, էջ* 232։
19 *Երեմ. Չէլէպ., անդ, էջ* 323։

*ւոր է Մասիսի վերոյիշեալ տեղիքը, զոր կու-տանք ամբողջութեամբ*:

*Հայ թերթը կը գրէ. «Մայրաքաղաքիս Պալատու թաղին հայ ժողովուրդը՝* անկէց տասն տարիի չափ առաջ Ընկերութիւն մը կազմելով, յանուն սրբոյն Մովսէսի Խորենացւոյ՝ իրենց դպրատունը բարեկարգելու ձեռք զարկեր էին. *բայց մէկ կողմանէ նոյն թաղին մէջ ձեռնհաս անձանց նուազութիւնը եւ միւս կողմանէ ժողովրդեան մեծագոյն մասին մէջ ուսման սէրը բաւական տարածուած չըլլալը՝ դպրոցը հիմնաւոր եւ տեւական բարեկարգութեան վիճակի մը մէջ դնելու համար եղած ջանքերուն յաջողութեանը դժուարութիւն կու տային: Այս ապարդիւն եւ անհաստատ վիճակին վերջ մը տալու համար,* անկէց ութ ամիս առաջ, *նոյն թաղին երեւելիները՝ Խորասանճեան մեծապատիւ Պետրոս ամիրային քաջալերական յորդորանօքն ու ազգասիրական առատաձեռն նպաստիւքը վերոյիշեալ* Խորենեան Ընկերութիւնը նորոգեցին *եւ դպրոցը ի հիմանց բարեկարգեցին*[20]»:

*Դպրոցի չէնքին հիմնական նորոգութեան համար Ընկերութիւնը վիճակահանութիւն մը կ՚ընէ*[21]:

1858*ին Ընկերութեան նախագահն է* Պետրոս Խորասանճեան Ամիրա[22]:

---

[20] Մասիս, 1857, *Թ*. 259:
[21] *Անդ*, *Թ*. 308:
[22] *Անդ*, *Թ*. 328:

Ըստ Ալպօյաճեանի[23]՝ Ընկերութիւնը 1866ին կը յաջողի դպրոցի նոր շէնք մը կառուցանել: 1883ին երրորդ անգամ կը վերակազմուի Ընկերութիւնը[24]: 1893 Ապրիլ 11ին չորրորդ անգամ կը վերակազմուի՝ քառապատիկ նպատակով. 1. Դարմանն հիւանդաց, 2. Նպաստ աղքատներու, 3. Խորենեան վարժարանի աղքատ ուսանողներու գրենական պիտոյք եւ 4. Մատենադարան[25]:

Զատ է Պալաթի «Խորէնեան Ազգախնամ» Ընկերութիւնը, որուն վրայ յետոյ:

## 4. ԱՐԵՒԵԼԵԱՆ ԲԱՐԵՐԱՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860)

Մեղու[26] կը գրէ որ ընիկ տիղրանակերացի (տիարպէքիրցի) Մկրտիչ Վրդ. Տիգրանեան՝ ջանալով քրտաբնակ եւ քրտախօս հայ մանուկներուն ուսում եւ կրթութիւն տալ եւ կարելի եղածին չափ չուտով զանոնք հայացնել՝ Պոլսոյ մէջ «Արեւելեան Բարերար Ընկերութիւն»ը կը հիմնէ, որպէս զի այդ Ընկերութիւնը հոգայ բացուելիք երեք դպրոցներու ծախքերը[27]:

Մկրտիչ Վրդ. Տիգրանեանի Պալաթէն ըրած մէկ ծանուցումէն[28] կ՚ենթադրենք թէ

---

[23] Գաղ. Տարեգր., Ա., էջ 57:
[24] Հմմտ. Թարգմանեան, անդ, էջ 324:
[25] Ալպօյաճեան, անդ:
[26] Կ. Պ. 1860, Թ. 96:
[27] Հմմտ. Մասիս, 1860, Թ. 434:
[28] Անդ, Թ. 453:

վերյիշեալ Ընկերութիւնը Պալաթի մէջ հիմնուած է։

Մեղու յիշեալ տեղիքին մէջ կ'ըսէ որ Մկրտիչ Վրդ. գրած է ազգային եւ սրբազան Պատմութիւն մը մէկ էջը հայերէն, միւս էջը հայերէն գրով քիւրտերէն, որուն տպագրութեան համար ալ հայ մեկենաս մը գտած է։

Մասիս[29] կը տեղեկագրէ որ Պատրիարքը Քաղաքական Ժողովի հետ խորհրդակցելով՝ Մշոյ Ս. Առաքելոց վանքի վանահայր՝ Մկրտիչ վարդապետը (Խրիմեան) Քիւրտիստանի մէկ մասին — Սղերդի եւ Սասունի — Առաջնորդ կը կարգէ, որպէս զի գործակից ըլլայ Մկրտիչ Տիգրանեանի «Քիւրտիստանի բազմաթիւ հայ ժողովրդոց փրկութեան» համար, որով «մեծ ու արդիւնաւոր ծառայութիւն մը ըրած կ'ըլլան Հայաստանեայց Ազգին եւ Եկեղեցւոյ»։

Մկրտիչ Վրդ. Տիգրանեան քրտաբարբառ Հայոց համար քրտերէն եւ հայերէն Այբբենարան մ'ալ լոյս կ'ընծայէ[30]։

## 5. ԺՈՂՈՎՐԴԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1861)

«Սկսնակ Բանասէր»ի[31] եւ Ա. Ալպօյաճեանի[32] ծանօթ է Պալաթի Թաղին մէջ

---

[29] Թ. 438:
[30] Մասիս, Թ. 464:
[31] Արեւելք, 1898. Թ. 3854:
[32] Պատ. Տարեգր., Բ., էջ 80:

1859ին կազմուած «Ժողովրդական» Ընկերութիւն մը: Մեր պրպտումներու ընթացքին, դժբախտաբար, ոչ մէկ հայ թերթի մէջ հանդիպած ենք Պալաթի մէջ այդ անունով Ընկերութեան մը 1859ին:

Կը խորհինք որ թերեւս այդ երկու հեղինակները զոհ գացած են սխալ տեղեկութեան մը:

Պալաթի մէջ, սակայն, կա՛յ Ընկերութիւն մը վերոյիշեալին նման, բայց ո՛չ թէ 1859ին, այլ 1861ին հիմնուած, որուն անունն է — Ժողովրդասէր Ընկերութիւն:

Ընկերութեանս առաջին յիշատակութիւնը կ՚ընէ Կիլիկիա թերթը, որ կու տայ նաեւ Ընկերութեան Կանոնները:

Պոլսոյ Կիլիկիան[33] նախ կ՚ըսէ թէ Պալաթի մէջ «Ժողովրդասէրք կամ Օժանդակութիւն գործադրման ազգային հանճարոյ, այս անունով Ընկերութիւն մը բացուած է ներկայ (1861) տարւոյս սկիզբէն», յետոյ կու տայ Ընկերութեան 12 «Հիմնական Կանոնները[34]», նշանակելով այնտեղ թէ Ընկերութիւնը հիմնուած է 1861 Յունուար 1ին:

Ահա Ա. Կանոնը. «Այս Ընկերութեան նպատակն է թաղիս ժողովրդոց մնայուն բարիքներ պատրաստելու զբաղիլ, որոնք անոնց մտաւորական զարգացմանը նպաստա–

---

[33] Կ. Պ. 1861, էջ 264:
[34] Կիլիկիա, անդ, էջ 264:

ւոր ըլլան[35]»: Բ. Կանոնը կ'ըսէ որ Ընկերութիւնը Պալաթի Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյ թաղապետութեան հսկողութեան ներքեւ կը գտնուի:

Ընկերութիւնը Ընթերցարան մ'ունի Պալաթի գպրոցին մէջ (Կանոն 12) եւ իր տարեկան բաժնեվճարն է 26 ղրուշ:

Մեղուի[36] ծանօթ է «Ժողովրդասէր Ընկերութիւն»ը: Պեզասեան Թոչնիկ[37] կը հաստատէ որ 1863ը «Ժողովրդասէր Ընկերութեան» երրորդ տարին է եւ կը ծանուցանէ թէ 12 արժանավայել անձեր պիտի ընտրուին Ընկերութեան Տնօրէն Ժողովին համար: Մասիս[38] մէջ կը ծանուցուի որ Պալաթի «Ժողովրդասէր Ընկերութեան» Գանձապետն է Գ. Ֆրենկեան: Թէ՝ Ընկերութիւնը աղքատներու նպաստ կը հայթայթէ[39]: 1870ին Տնօրէն Ժողովի Նախագահն է Յովհաննէս Եազըճեան[40]: 1872ին կը ջանայ Ընկերութիւնը գըօսարան մը շինել[41]: Ընկերութիւնը 1876ին տակաւին կանգուն էր[42]: 1872ին Ընկերութիւնը հրատարակած է իբրեւ «Գործ Ա.» Եսայի Վ. Ղեւոնդեան Ապահունեցի

[35] Անդ:
[36] Կ. Պ. 1863, էջ 139:
[37] Կ. Պ. 1863, Թ. 5:
[38] 1863, Թ. 588:
[39] Մասիս, 1866, Թ. 731:
[40] Անդ՝ 1870, Թ. 1008:
[41] Անդ՝ 1872, Թ. 1201: — Հմմտ. Օրագիր, Կ. Պ. 1870, Թ. 264:
[42] Անդ, 1876, Թ. 1790:

«Գաղթականք Հայոց» գիրքը (Մանզ· Էֆքեար, Կ. Պ. 1872, Թ. 2007): Մեր Մատենադարանին մէջ կը պակսի այս գիրքը:

## 6. ԱՐՇԱԿՈՒՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1866)

«Արշակունեան» անունով քանի մը Ընկերութիւններ ունեցած ենք, այսպէս՝ Ադրիանապոլիս (1859), Տոլապտէրէ (1872) եւ այլն: Պալաթի Արշակունեան Ընկերութիւնը 1866 Ապրիլին կը յիշուի Պոլսոյ Պեգասեան Թոչնիկէն[43], որ կը գովէ զայն հրդեհի մ'առթիւ ըրած մեծ նպաստներուն համար: Ընկերութեան Նախագահն է Բարթուղիմէոս վարդապետ:

Այնպէս կ'երեւայ թէ Պալաթի «Արշակունեան»ը բարեբարական Ընկերութիւն մ'է: Պալաթի վարժարանին կը նուիրէ 300 կաղամար եւ 7 պղինձէ գաւաթ[44]:

1868ին որձարան մը կը բանեցնէ Ընկերութիւնը[45]: 1869ին կը կազմակերպէ Սահմանադրութեան տօնախմբութիւնը Հինքեար Իսկէլէսի (Մանզ· Էֆքեար, Կ. Պ. 1869, Թ. 928):

Անծանօթ մնացած կ'երեւայ Ընկերութիւնս Սկսնակ Բանասէրին եւ Ա. Ալպօյաճեանին, որոնք չեն յիշեր զայս:

---

43 Կ. Պ. 1866, Թ. 54, էջ 434:
44 Մասիս Փոքր, Կ. Պ. 1867, Թ. 18:
45 Մասիս, 1868, Թ. 171:

### 7· ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

*Պալաթի թաղին մէջ* 1869 *Մայիսին կը յիշուի* «*Պալատու* Առեւտրական Ընկերու-թիւն» *մը, որ Ս. Փրկչի Հիւանդանոցին եղած նուիրատուութեան մը մասնակցած է* 100 *դրուշով:* Մասիս[46] *որ կը յիշէ զայն՝ ոչ մէկ բացատրութիւն կու տայ անոր մասին: Ուրիշ կողմէ ալ լուսաբանութիւն մը չենք գտած:*

### 8· ԽՈՐԷՆԵԱՆ ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

*Հիմնուած է հաւանօրէն* 1875*ի սկիզբները: Պալատի* Խորէնեան վարժարանի *սաները* «մի քանի լումաններով դասագիրք պատրաստելու, միանգամայն աղքատիկ աշակերտաց օգնելու նպատակաւ» *կը կազմեն* «Խորէնեան Սանուց Ընկերութիւն»*ը:* *Այս նորակազմ Ընկերութեան առթիւ հիմնադիրները քաջալերելու համար՝* Հօլաս 13 *կտոր հայերէն եւ գաղղիերէն գիրք կը նուիրէ Ընկերութեան, խոստանալով որ ուրիշ անգամ ալ գրքեր պիտի նուիրէ՝ եթէ Ընկերութիւնը շարունակէ իր գոյութիւնը* (Լրագիր, Կ. Պ. 1875, *Թ*. 8):

*Չենք գիտեր թէ ա՞յս Ընկերութեան մասին է որ* 1879*ին կ'ըսուի թէ* «Նպատակ ունի Հայաստանի դպրոցաց գրական պիտոյքը հոգալ ձրիաբար» (Լրագիր, 1879, *Թ*. 1098),

[46] 1869, *Թ*. 919:

*թէեւ լոկ «Խորէնեան Ընկերութիւն» բացուած է: Իսկ քիչ վերջն այլ կ'ըսուի. «Թաղիս (Գալաթ)* նորակազմ *Խորէնեան Ընկերութիւնը... իւր Ա.* Լսարանը *պիտի բանայ Խորէնեան վարժարանին սրահին մէջ»* (Լրագիր, 1879, *Թ.* 1110):

*«Խորէնեան Սանուց»ը* 1884*ին դեռ կանգուն էր, ունենալով իր* կանոնագիրը, *բայց կ'ըսուի թէ Ընկերութիւնը պառակտելու ջանացած է* Մխոխ Գ. Ոսկեան (*տե՛ս* Մանզ. Էփ., 1884, *Թ.* 5451):

9. ԳՐԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1883)

*Դոկտ. Վ. Թորգոմեանի Համեմատ Պալաթի* «Գրասիրաց Ընկերութեան» *նպատակն եղած է* «ազգային գրականութեան զարգացման աշխատիլ[47]»:

*Կը յիշուի* Մանզ. Էփֆեարի *քով* (1886, *Թ.* 5737):

10. ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884)

*Պետրոս Տէր-Վրթանէս Պալթազարեան, ծանօթ՝ «Պալթազար» յորջորջումով, ծնած է Պոլսոյ Գալաթ թաղին մէջ* 1866*ին: Իբրեւ աչքառու դերասան՝ գործած է Պոլսոյ հայ թատերախումբերու մէջ*[48]: 18 *տարեկանին*

---

[47] *Երեմ. Չէլէպ., Ա., անդ, էջ* 324: — *Հմմտ. Գաղ. Տարեգր., Գ., էջ* 121:

[48] *Տե՛ս իր կենսագրականը՝ Թէոդիկ, Ամէն. Տարեց.*, 1921, *էջ* 275—276:

կը հիմնէ «Հայկ. Բարեսիրաց Ընկերութիւն»ը, որ տասնամեայ կեանք մը կ'ունենայ[49]: Կենսագիրը մանրամասնութիւն չի տար Ընկերութեան մասին:

## 11. ԽՈՐԷՆԵԱՆ ԱԶԳԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884)

Հաստատուած է 1884 Մայիս 20ին, նպատակ ունենալով հետեւեալը. «Պալատու թաղին հիւանդ եւ տնանկ աղքատները խնամել ի մասնաւորի մատակարարելով նաեւ Խորէնեան վարժարանի աղքատ ուսանողաց զգեստի պէտքերը» (Մանզումէի էֆքեար, 1886, թ. 5726):

## 12. ԽՈՐԷՆԵԱՆ ԱՊԱԳԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1885)

Գալաթի «Խորէնեան Ապագախնամ Ընկերութեան» Մայր-Դիւանի Ատենապետ՝ Միսաք Յովհաննէսեան եւ Ատենադպիր՝ Յարութիւն Գ. Քէրէստէճեան 1885ին հրատարակութեան տուած Ընկերութեան 40 Յօդուածներէ կազմուած «Հիմնական Կանոնները»՝ կը ծանուցանեն թէ իրենց Ընկերութիւնը հաստատուած է 1885 Յունուար 1ին, վաւերացուած ըլլալով Ուսումնական Խորհուրդի Ազգ. Կենդ. Վարչութենէն:

Բացատրութիւն մը չենք գտներ թէ Ընկերութեան չարունակութիւնն ըլլայ Գա-

---

49 Անդ:

*յաթի* 1846—1847*ի «Խորէնեան Ընկերութեան»: Ընկերութիւնս, այս ձեւով, անծանօթ մնացած ըլլալ կը թուի Սկսնակ Բանասէրի եւ Ալպօյաճեանի:*

*Ահա՛ Ընկերութեանս նպատակը.* «Պալատու Խորենեան Երկսեռ Վարժարանի նիւթական կացութիւնն ապահովելու համար անշարժ կալուածներ գնել եւ կառուցանել[50]»:

*Ընկերութեան ամսական անդամավճարն է* 100 *փարա* (*Կանոն* 2)*. ունի Ընդհանուր եւ Գործադիր ժողով* (*Կանոն* 8)*. Մայր Դիւանէն զատ՝ երկու Դիւաններ ալ ունի* (*Կանոն* 33):

## 13. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1885)

*Թորգոմեան*[51] *եւ Ալպօյաճեան*[52] *Պալաթի* «Աղքատախնամ Ընկերութեան» *հիմնումը* 1879*ին կը դնեն, առանց որեւէ փաստի: Մեր պրպտումներու առթիւ ստուգած ենք որ* 1885*էն առաջ ոչ մէկ թերթ կը յիշատակէ այդ Ընկերութիւնը:* 1885*ին է որ* առաջին անգամ *կը յիշատակուի ան Պոլսոյ* Մանզումէի Էֆքեար *թերթին մէջ՝ իբրեւ* նոր հիմնուած *Ընկերութիւն մը, ինչպէս կը տեսնուի հետեւեալ տեղեկէն.*

---

[50] *Հիմնական կանոնագիր Խորենեան Ապադախնամ Ընկերութեան*, Կ. Պ. 1885, էջ 3:

[51] *Երեմ. Չէլէպի*, Ա., էջ 323—324:

[52] *Գադ. Տարեգր.*, Գ., էջ 118:

*«Ուրախութեամբ կը լսեմք թէ* վերջին օրերս *Գալատու մէջ Թաղին Քարոզիչ Արժ. Տ. Տաճատ վարդապետի եւ Պ. Պ. Եզնիկ Գիւլպիւլեան եւ Լեւոն Ռ. Շէրիտճեան ազգայնոց նախաձեռնութեամբ* Աղքատախնամ *անուն մի* Ընկերութիւն *կազմուեր է*, որոյ նպատակն է թաղին վկայեալ աղքատաց նիւթապէս նպաստել՝ նոցա հիւանդութեան ժամանակ բժիշկ ղրկելով եւ ձրի մատակարարելով դեղօրայք, ուտեստ եւ այլ կարեւոր պիտոյք: *Ի մասնաւորի հրաւէր կը կարդամք Գալատու մեր ազնիւ ազգայնոց որ հաճին յօժարակամ անդամակցիլ յիշեալ* նորակազմ *Ընկերութեան, որ պիտի սփոփէ աղքատին թշուառութիւնը*. 1885 *Յուլիս* 17[53]»:

«Խորէնեան Աղքատախնամ Ընկերութեան» *Գործադիր Ժողովի կողմէ Ատենապետ* Գ. Գաքամանեան *եւ Ատենադպիր* Լ. Ռ. Շէրիտճեան 1886*ին կը ծանուցանեն որ* 1885*ին հիմնուած Գալատի* նոյնանուն *Ընկերութեան բաժանորդները եկած իրենց Ընկերութեան միացած են*՝ «նկատի առնելով համանուն եւ միեւնոյն նպատակաւ երկու Ընկերութեանց գոյութեան անօգտութիւնը» (Մանզ. էփ., 1886, *Թ*. 5726. *Հմմտ. նաեւ Թ*. 5737):

1909*ին վերակազմուած Ընկերութիւնը իսկ* «Աղքատախնամ» *կը կոչուի եւ կը գործէ* (Ժամանակ, 1909, *Թ*. 124):

---

[53] Մանզ. էփ., *Կ. Պ.* 1885, *Թ*. 5563: — *Տե՛ս նաեւ* Լոյս. *Կ. Պ.* 1885, *Թ*. 551:

### 14. ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1887)

*Նպատակ՝ «ձրիավարժ ուսանողաց գրենական պիտոյք եւ հանդերձեղէն հայթայթել»։ Տեւած է մինչեւ 1890։ Ընկերութեան հաւաքիչ՝* Միսաք Յովնանեան՝ *իր մօտ գտնուած* 21 *ոսկի* 28 *դրուշը Թաղականութեան կը յանձնէ (Մելքոն-Աստուր, Երեքդարեան պատմութիւն Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյ Պալաթու* [1627—1931]. *Կ. Պոլիս* 1931, *էջ* 274)։

### 15. ՄԻՈՒԹԻՒՆ ԻԶՄԻՐԼԵԱՆ ՀԱՅՐԻԿ (1908)

*Պօլսոյ* Սուրհանդակի[54] *հրատարակած կարճ ծանուցումէ մը կ՚իմանանք թէ Պալաթի մէջ,* 1908*ին, կազմուած է հայրենաւէր մեծ Հայրապետին՝* Մատթէոս Արքեպ. Իզմիրլեանի *անունով այս Միութիւնը, որ կը ջանար ունենալ իր* Լսարան-Ընթերցարանը *Պալաթ–Սամաթամրուք միացեալ թաղին մէջ։ Ի զուր որոնած ենք մանրամասնութիւն։*

### 16. ԱԶԳԱՅԻՆ ԱԶԱՏ. ՅԱՌԱՋԴԻՄԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Միանգամ ընդ միշտ ըսած ըլլանք որ մեր ծրագրէն դուրս կ՚իյնայ* կուսակցական *եւ* քաղաքական *բնոյթ կրող Ընկերութիւններու*

---

54 Կ. Պ. 1908, Թ. 79։

պատմութիւնը, որ՝ ըստ մեզ՝ զատ եւ առանձին ուսումնասիրութեան նիւթ մըն է:

Հետեւաբար, որքան կրցած ենք ճանչնալ, այդ կարգի Ընկերութիւններու վրայ չենք խօսած եւ պիտի չխօսինք հոս:

1908ի Սահմանադրութեան ապա շըրջանը կարգ մը Մշակ. Ընկերութիւններու ծնունդ տուաւ, մասնաւորապէս պոլսահայ կեանքի մէջ, որոնք նախասիրութիւնը ունեցան «Յառաջդիմական» մակդիրը կամ տիտղոսը գործածել: Դժբախտաբար չենք կրցած բոլորին Կանոնագրութիւնը ձեռք բերել՝ մօտէն ծանօթանալու համար անոնց իսկական բնոյթին ու նկարագրին: Հայ թերթերու մէջ անոնք ընդհանրապէս մշակութային, ընկերական եւ ազգային-բարերարական գոյնով կը ներկայանան:

Արդ, Պալաթի մէջ 1908ին հիմնուած «Ազգ. Ազատական Յառաջդիմական Ընկերութիւնը» Մշակ. Ընկերութիւն մըն է, որ իրեն նպատակ դրած էր պայքար մղել.

Ա. Ամէն ազգավնաս ուղղութեան դէմ.

Բ. Ամէն անբարոյ եւ ախտաժէտ երեւոյթի դէմ.

Գ. Ամուրիութեան դէմ.

Դ. Հակառողջապահիկ զազիր եւ տգեղ ունակութեան դէմ.

Ե. Ծուլութեան եւ կամաւոր անգործութեան դէմ.

Զ. Շռայլութեան դէմ:

Ընկերութիւնը ունեցած է 8 էջերէ բաղկացած Կանոնագիր մը: Անդամավճարն էր 5 դահեկան[55]:

## 17. «ՍԱՍՈՒՆ» ՄԱՐՄՆԱՄԱՐԶԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1912)

Միութեանս մասին կը տեղեկացնէ մեզ Պր. Ներսէս Գասապեան (Բուլգարիա) հետեւեալը. «1912ին կազմուած է Թայրին երիտասարդներէն՝ դուտ մարզական ծրագրով եւ եղած է կարճատեւ»:

## 18. ԽՈՐԷՆԵԱՆ ՍԲՕՌԻ ԱԿՈՒՄԲ (1918)

Պր. Ն. Գասապեան կը գրէ մեզ. «1918ին, գինադադարի նախօրեակին, Խորէնեան վարժարանի նախկին շրջանաւարտ մի քանի պատանիներ հիմնած են «Խորէնեան սբօռի Ակումբ» անուամբ միութիւն մը, որ իրականին մէջ մարմնակրթանքի անուան տակ մշակութային բաւական ուշադրաւ աշխատանք տարած է հանդէսներ եւ թատերական ներկայացումներ տալով: Հիմնադիրներն եղած են. Անտոն Մուրատեան, Յակոբ Սուքին, Ներսէս Գասապեան, Համբարձում եւ Միքայէլ Յոփանեանններ, Գարեգին Լուսիկեան եւ ուրիշներ, ամէնքն ալ նախկին սաներ նոյն վարժարանի: 1919ին միանալով «Հ. Մ. Ը.

---

[55] Մելքոն-Աստուր, անդ, էջ 278:

Մ․»ի հետ՝ գործած է որպէս 11րդ մասնաճիւղը նոյն կազմակերպութեան մինչեւ 1922ի վերջը»։

## 19․ ՈՐԲԱԽՆԱՄ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

Պալաթի մէջ արդէն 1918ի ընթացքին կազմուած էր «Որբախնամ Մարմին» մը, որ նոյն տարուայ Դեկտեմբերին վերածուած էր կազմակերպուած Միութեան մը, որուն ջանքն էր տասնեակ հազարաւոր հայ որբերէն մաս մը իր նիւթական ու բարոյական խնամքին տակ առնել՝ համարատու ըլլալով Պոլսոյ մէջ կազմուած «Կենդրոնական Որբախնամ Մարմնոյն» կամ «Ազգային Խնամատարութեան»։

1919 Օգոստոսին Պալաթի «Որբախնամ Միութիւն»ը 176 որբեր կը պատսպարէր Խորէնեան վարժարանի մէջ[56]։

Չենք տեսած Ընկերութեան Կանոնագիրը·

## 20․ «ԳՈՂԹԱՆ» ՕՐԻՈՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

«Կազմուած է 1919ին՝ նախաձեռնութեամբ ուսուցչուհի Օր․ Էլիզ Գարագաշեանի, որ եւ եղած է Վարիչը Միութեան։ Կազմակերպած է կանոնաւոր հաւաքոյթներ ու դասախօսութիւններ՝ նուիրուած գրա-

[56] Ժամանակ, 1919, Թ․ 3520, 3604։

կան–գեղարուեստական հարցերու․ տուած է նաեւ թատերական ներկայացումներ։ Հագիւ երկու տարուան շրջան մը բոլորած է», կը գրէ Գաստպեան։

## ԳԱՐԱԿԷՕՄՐԻԿ (Պալաք)

### 1. ՈՍԿԵԱՆՑ ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860)

Պալաթի կից եւ մերթ անոր վերաբերած Գարակէօմրիւկ թաղի մէջ կազմուած մեզի ծանօթ հնագոյն Ընկերութիւնը «Ոսկեանց Ընթերցասիրաց Ընկերութիւն»է, որ 1860ին կը յիշուի իբրեւ «Նորահաստատ[1]»։

1861ին «Ոսկեանց Ընկերութիւն» կը կոչուի, որ Ընթերցարան մ'ունի[2]։

Գարակէօմրիւկ ունեցած է Ս․ Ոսկեանց անունով դպրոց մը, որուն նպաստելու համար, հաւանօրէն, հիմնուած է այս Ընկերութիւնը, որ անծանօթ է Սկսնակ Բանաստեղծին, Թորգոմեանի եւ Ալպօյաճեանի։ Վերջինիս յիշած[3] «Ընթերցասիրաց Ընկերութիւն»ը այս Ընկերութիւնն է։

### 2. ԱՂՔԱՏԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865)

1865ի Պոլսոյ ժանտախտի առթիւ կազմուած է Գարակէօմրիւկի «Աղքատասիրաց

---

[1] Արեւելեան–Դար, Կ․ Պ․ 1860․ էջ 82։
[2] Մեճմուայը Հավատիս, Կ․ Պ․ 1861, Թ․ 411։ — Մասիս, 1861, Թ․ 498։
[3] Գաղ․ Տարեգր․, Գ․, էջ 122։

Ընկերութիւն»ը, որ «կարօտ հիւանդաց ամէն պէտքերը հոգալէն ետքը, թաղին աղքատ ընտանիքներէն 48 տուն ալ կերակրեց իր կարողութեան ներածին չափ», կը պատմեն ժամանակակիցները[4]։

Թորգոմեան եւ Ալպօյաճեան, որ Գարակէօմրիւկի Ընկերութիւններու կարգին 1896ի «Աղքատախնամ»ը կը յիշեն՝ անծանօթ են 1865ի «Աղքատասիրաց»ին։

## 3. ՈՍԿԵԱՆՑ ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867)

Ծիածան[5] թերթը՝ 1867ին իր բաժանորդներու ցանկին մէջ կը յիշատակէ «Ոսկեանց Սանուց Ընկերութիւն» մը, որ շատ հաւանականօրէն Գարակէօմրիւկի «Ոսկեանց» վարժարանի Սաներէն կազմուած է։ Ուրիշ ոչ մէկ տեղ հանդիպած ենք անունին։

## 4. ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

Ոսկեանց Սաները՝ «կիրակնօրեայ անձնուէր դաստիարակութիւն մը հաստատելու նպատակաւ»՝ 1875ի գարնան կազմած են «Վասպուրական Ընկերութիւն»ը[6]։

Դաստիարակութիւնները նախ վարձուած տան մը մէջ տեղի ունեցած են, ուր կ'ուսան-

[4] Մասիս, 1865, Թ. 704։ — Տե՛ս նաեւ Վարագայի Հաւատարիմ, Կ. Պ. 1865, Թ. 209։
[5] Կ. Պ. 1867, Թ. 24։
[6] Մասիս, 1875, Թ. 1674։

գուէին «ինչ որ հայ անհատի մը ընկերական եւ առեւտրական վիճակին անհրաժեշտ են[7]»: 1875 Դեկտեմբերին Ընկերութեան Ատենապետը՝ Միհրան Պէշպէշեան կը ծանուցանէ որ դատախօսութիւնները Ոսկեանց վարժարանի մէջ պիտի կատարուին՝ նիւթերու վրայ աւելնալով նաեւ ձայնական երաժշտութիւն[8]: Դասերուն կրնան թէ՛ գաւառացիներ եւ թէ՛ պոլսեցիներ մասնակցիլ:

Թորգոմեան[9] կ՚ըսէ որ երկար տեւած չէ Ընկերութեան այս օգտակար գործը: Մասիս[10] կու տայ ատոր պատճառը, յիշելով զանազան հակառակութիւններ:

5. ԶՆԱՃԽԱՐՀԻԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

Ընկերութիւնս յիշուած է Դոկտ. Թորգոմեանէ[11], իբրեւ գրասիրական ընկերութիւն: Լուսաբանութիւն մը չենք գտած ուրիշ տեղ:

Մեյգոն-Աստուր (անդ, էջ 274) Սալմաթոմրուքի կը համարի Ընկերութիւնս:

6. Ա. Բ. Գ.ի ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880?)

Ըստ Թորգոմեանի[12] Գարակէօմրիւկ եւս ունեցած է 1880ին «Ա. Բ. Գ.ի Ընկերութիւն»

---

7 Մասիս, անդ, Թ. 1685:
8 Անդ, Թ. 1776:
9 Երեմ. Չէլէպ., Ա., անդ, էջ 340:
10 1876, Թ. 1783—1784: — Տե՛ս Լրագիր, 1878, Թ. 820:
11 Անդ, էջ 340: — Հմմտ. Գաղ. Տարեգր., Գ., էջ 119:
12 Անդ, էջ 340: — Ալպօյաճեան (Գաղ. Տա-

մը, որուն մասին չունի ուրիշ տեղեկութիւն։ Սալմաթոմրուքի հետ, իբրեւ Միացեալ թաղ, 1875ին ունեցած են այդ Ընկերութիւնը (տես Մամուլ, 1875, թ. 493), բայց թէ յետոյ 1880ին ալ առանձին ունեցա՞ծ է, չենք գիտեր։

7. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (… 1890)

Արդէն 1890ին կը յիշուի Գարակէօմրուկի «Աղքատախնամ Ընկերութիւն»ը, որ Մարգար Մարգարեանի ձեռքով Ս. Փրկչի Ազգ. Հիւանդանոցի կը նուիրէ 330 գրուշ (Մանզ. էփ. 1890, թ. 6377)։ Մինչ Թորգոմեան եւ Ալպօյաճեան կը գրեն թէ «1896ին կազմուած այս Ընկերութիւնը թաղին աղքատներուն ձրի բժիշկ եւ դեղ հայթայթած է մինչեւ 1900, երբ թաղին Ս. Յովհ. Ոսկեբերան եկեղեցին այրելով՝ Ընկերութիւնն ալ դադրած է[13]»։ 1908 Սեպտ.ին Գարակէօմրիւկ-Սալմաթոմրուկ միացեալ թաղը կ՚ունենայ իր Աղքատախնամը՝ կազմուած 13 անձերէ[14]։

---

բերդը., Գ., էջ 119) Գարակէօմրիւկ կամ Սալմաթոմրուկ կը համարի եւ կ՚ըսէ որ կարճատեւ եղած է։

13 Թորգոմեան, անդ, էջ 340։ — Ա. Ալպօյաճեան, Գաղ. Տարեգր., Գ., էջ 122։

14 Սուրհանդակ, Կ. Պ. 1908, թ. 86։

## ՍԱԼՄԱԹՕՄՐՈՒՔ (Պալաթ)

*Պալաթի վերաբերող այս թաղը մերթ միացած է նաեւ Գարակէօմրիւկի հետ՝ կազմելով միացեալ թաղ մը։ Որով ինչ ինչ Ընկերութիւններ Միացեալ թաղին կը վերաբերին։*

### 1. ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

Պեզասեան Թռչնիկ[1] 1866 *Մարտ* 1*ին կը գրէր*. «*Անկէ* երկու տարի յառաջ *Մայրաքաղաքիս* Սալմաթօմրուք թաղին *մէջ կազմուած* Արամեան Ընկերութիւնը *անցեալ շաբթու* բոլորովին լուծուելով, *ժողվըված* 2500 *ղրուշը Գարակէօմրիւկի Եկեղեցւոյն յանձնուեցաւ, կէսը հոն տեղի, կէսն ալ Պալատու դպրոցին աղքատիկ աշակերտաց հանդերձագինին տրուելու պայմանաւ*»։

### 2. ՀՌԻՓՍԻՄԵԱՆ ՍԱՆՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

*Յօդուածագիր մը*, Սիսակ, 1870 *Յունուար* 13*ին* Մասիսի *մէջ իր հիացումը կը յայտնէ Սալմաթօմրուք թաղի Ս. Հռիփսիմեան վարժարանի աշակերտուհիներու վրայ*, *որոնք*, *կ'ըսէ*, «իրենց մէջ Ընկերութիւն մը կազմած են, *որուն նպատակն է* գեղեցիկ սեռին դաստիարակութեանը նպաստել նիւթա–

[1] Կ. Պ. 1866, Թ. 52, էջ 419։

պէս եւ բարոյապէս: Արդարեւ բա՛րձր եւ վսեմ նպատակ. ես աւելի սքանչանալու իրաւունք ունիմ, վասն զի մինչ արտաքին սեռը անփոյթ կը գտնուի ազգին ապագային նկատմամբ եւ ահա այդքին նորատի օրիորդներ ուսմանց վեհափայլին մէջէն գոյն ապագան շատ բարձրէն նկատելով, անոր կեանք ու ծնունդ տուող խնդրովը կը զբաղին եւ կը փութան նպաստամատոյց իսկ ըլլալ...: Մխայն բան մը կը մնայ մեզ ընել, այն է քաջալերել զայն Ընկերութիւնը՝ որ ազգերնուս մէջ դեռ առաջին է եւ իրաւամբ ընդհանուր համակրութեան արժանի: Ուստի կրնայ ամէն ոք շաբաթը 10 փարայ վճարելով պատուոյ անդամ գրուիլ նոյն Ընկերութեան եւ կամ որեւէ նպաստ մ՚ընել[2]»:

Ինչպէս կը տեսնուի՝ յօդուածագիրը չի տար անունը այդ Ընկերութեան, որ ուրիշ կողմէ ալ անծանօթ է: Հաւանական կը համարինք որ ան կոչուած ըլլայ «Հոփսիմեան Սանուհեաց Ընկերութիւն»:

Ճիշդ է որ Մայրաքաղաքի վարժարանին Սանուհեաց հաստատուած այդ Ընկերութիւնը իր տեսակին մէջ առաջինն է Պոլսահայութեան մէջ, իբրեւ Սանուհեաց կամ աղջկանց Ընկերութիւն: Վասն զի իրմէ առաջ թէեւ Սանուց Ընկերութիւն կար, ինչպէս Սամաթիոյ Ս. Սահակեանը, բայց Սանուհեաց դեռ չկար:

---

[2] Մասիս, 1870, Թ. 955:

Այդ յօդուածէն յայտնի կ՚ըլլայ որ դրսէն ուրեւէ անձ ալ կրնայ Ընկերութեան անդամ գրուիլ, վճարելով չարաթը 10 փարա, բայց ո՛չ թէ իրական կամ ներքին անդամ՝ այլ «պատուոյ» անդամ ըլլալով:

Թէ ո՛րքան տեւականութիւն ունեցած եւ ի՛նչ գործած է Ընկերութիւնս՝ անծանօթ կը մնայ:

3. Ա. Բ. Գ.Ի ԲԱՐԵԿԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

Սամաթամբուքի Հոփսիմեան վարժարանի Սանուհիները Մասիսի[3] ուղղուած նամակի մը մէջ կը յիշեն «Ա. Բ. Գ.ի Բարեկամ Ընկերութիւն» մը, որ թաղին դպրոցական գործերով կը զբաղի: Ո՛չ այդ նամակին մէջ եւ ո՛չ ալ Մասիսի կողմէ բացատրութիւն կը տրուի թէ՝ ե՞րբ եւ որմէ՞ հիմնուած է այդ Ընկերութիւնը:

Անկէ 6 տարի յետոյ, 1876 Յունուար 18ին, նոյն Մասիսի ուղղուած ուրիշ նամակի մը մէջ է որ հետեւեալ լուսաբանութիւնը կը գտնենք այդ Ընկերութեան մասին. «Անկէց 6 տարի յառաջ մի քանի ուսումնասէր թաղեցիներ դպրոցաց անբարեկարգ վիճակը տեսնելով՝ Ա. Բ. Գ.ի Բարեկամաց անուամբ Ընկերութիւն մը կազ-

[3] 1870 Դեկտ. 16:

մեջին եւ դպրոցաց հոգաբարձութիւնն ստանձնեցին[4]»։

*Ընկերութիւնը հիմնումէն յետոյ կ'ունենայ իր հակառակորդները, որոնք կը յաջողին ի վերջոյ մարել հայ մշակոյթին լոյս տուող այս ճրագը։ Սակայն թաղեցիներու ուսումնասէրներէն ոմանք կը վերակազմեն զայն 1875ին եւ թաղի վարժարանին մէջ կիրակնօրեայ դասախօսութիւն մ'ալ կը հաստատեն*[5]։ Մամուլի *մէջ*[6] *Գ. Ղազարոսեան կը ծանուցանէ որ Սամաթմբուք–Գարակէօմրիւք* միացեալ թաղերու *Ս. Բ. Գ.ի Ընկերութիւնը «Անձնուէր»ի ճիւղ մը կը բանայ՝ Սամաթմբուքի Ս. Թադէոս–Բարթողիմէոս վարժարանին մէջ հաստատելով կիրակնօրեայ ձրի դասախօսութեանց ընթացք մը*։

*«Արդար» ստորագրութեամբ նամակագիր մը գոհունակութեամբ արձանագրելէ վերջ թէ «Սամաթմբուքցին եւս ունի այսօր Ընկերութիւն մը՝ որ ըստ իւր կարի թէ՛ նիւթապէս եւ թէ՛ բարոյապէս ընկերին օգնելու վսեմ նպատակն իրեն դրօշ պարզած կը գործէ»՝ կը մատնանշէ նաեւ Ընկերութեան*

[4] Մասիս, 1876, Թ. 1784։ — Մանզումէի Էֆքեար (1870, Թ. 1147) *տալով Ընկերութեան անունը տալու՝ կ'ըսէ որ ան հիմնուած է* 1869*ին*։ *Ընկերութիւնը Թաղի վարժարանին տնօրէն կը կարգէ* Յարութիւն Զինճիրճեան (*տե՛ս նաեւ* Մանզ. Էֆք., Թ. 1155)։
[5] *Անդ*։
[6] Մամուլ, Կ. Պ. 1875, Թ. 493, էջ 200։

դէմ ցոյց տրուած թշնամական կեցուածքը ոմանց[7]:

Ընկերութիւնը 1875ի Զատկին 100 չքաւոր աշակերտներու զգեստ կը շինէ եւ 1876ի Ծնունդին զանազան նուիրատուութիւններ կ'ընէ կարօտներու[8]: Ընկերութիւնս անծանօթ է Ալպօյաճեանին:

## 4. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

Սալմաթոմրուքի «Ուսումնասիրաց Ընկերութեան» կը ծանօթանանք Մասիսի մէջ տրուած մէկ «Ազդ»էն, ուր կ'ըսուի. «Սալմաթոմրուքի Ուսումնասիրաց Ընկերութիւնը պատիւ ունի ծանուցանել արգոյ հասարակութեան թէ Փետր. 6էն սկսեալ ամէն կիրակէ Թաղիս Արփաճի-Պազար փողոցը Ս. Թադէոս եւ Բարթողիմէոս վարժարանը ձրիաբար դասախօսութիւն պիտի ընէ Հայ. ի, Գաղղ. ի, Տաճկերէնի, Թուաբանութեան եւ այլն: Ուստի արգոյ հասարակութենէն վերայիշեալ ուսմանց փափաքող անձինք պարտին յիշեալ վարժարանը գալ: Ի դիմաց Ուս. Ընկ. Տնօրէն Ժողովոյ Ատենապետ՝ Պ. Միքայէլեան, Ատենադպիր՝ Գ. Կ. Մխլայըճեան[9]»:

Ալպօյաճեանի քով չի յիշուիր Ընկերութիւնս:

---

7 Մասիս, 1876, Թ. 1781:
8 Անդ:
9 Մասիս, 1872, Թ. 1201, Փետր. 12:

## 5. ԳՐԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

*Դոկտ. Թորգոմեան*[10] *կը գրէ որ 1874ին Սամաթոմրուքի մէջ գոյութիւն ունէր* Գրասիրական Ընկերութիւն *մը, որուն նպատակն էր* «թաղին մէջ ընթերցանութիւնը տարածել եւ ունենալ Մատենադարան–Ընթերցարան մը»:

*Ալպօյաճեան*[11] *Ընկերութեանս գոյութիւնը կը դնէ* 1874—1883:

Հայրենիք (*Կ. Պ.* 1881, *Թ.* 912) *կը յիշէ Ընկերութիւնս*:

## 6. ԲԱՐԵՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1881)

*Գալֆայեան Որբանոցի հիմնադիր՝ Սըրբուհի Մայրապետ Ն. Գալֆայեան՝* 1881 *Հոկտ. 28ին կը գրէ. «Սամաթօմրուքի* «Բարեսիրաց Ընկերութիւն»*ը Որբանոցիս արդի նիւթական տագնապալից վիճակը ի նկատ առնելով՝ հաճած է ի նպաստ Որբանոցիս պատսպարելոց* 200 *դրուշ նուիրել: Ուստի Որբանոցիս Հիմնադիր–Մայրը պարտ անձին կը համարի ներկայիւս իւր խորին շնորհակալիքը յայտնել յիշեալ Ընկերութեան բոլոր անդամոց եւ թէ կը բարեմաղթէ Ընկերութեան գեղեցիկ գործոյն աւելի յառաջդիմութեանը, որոյ նպատակն է* օգնել ազգին

---

[10] *Երեմ. Չէլէպ., Ա., էջ* 340:
[11] *Գաղ. Տարեգ., Գ., էջ* 113:

այնպիսի հաստատութեանց եւ աղքատ կարօտելոց[12]»։

*Ընկերութիւնը գոյութիւն ունէր 1883ին*[13]։

## 7· ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1888)

*Հիմնուած է* 1888*ի գարնան։ Իր նպատակն է*․ «Վկայեալ աղքատ հիւանդաց բժիշկ, դեղ եւ ի հարկին սնունդ մատակարարել․ Ս․ Ծննդեան տօնի առթիւ ածուխ բաշխել» (Մանզ․ էփ․, 1889, *Թ*․ 6164։ — *Տե՛ս* Արեւելք, 1889, *Թ*․ 1537)։

## 8· ԱՆՁՆՈՒԷՐ ՀԱՅՈՒՀԵԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Կազմուած է* 1908 *Սեպտ*․ 16*ին*։ *Այս մասին կը կարդանք Պոլսոյ* Սուրհանդակի *մէջ*․ «*Սարմաթօմբուքի աղջ*․ *վարժարանի տեսչին կոզմէ անցեալ շաբթու հրաւէր եղած էր թաղին հայ տիկնանց՝ կազմելու համար* «Անձնուէր Հայուհեաց Միութիւն» *անունով Ընկերութիւն մը*։ *Այս հրաւէրին անձամբ պատասխանած էին* 50*է աւելի տիկիններ, որոնք չորեքշաբթի օր վարժարանի սրահին մէջ իրենց Ա*․ *հաւաքոյթն ունեցան, որուն կը նախագահէր Տիկին Հոփփսիմէ Արապեան, որ մասնաւոր հրաւէրով եկած էր*։ *Տիկին Արապեան ատենաբանութեամբ մը պզացուց*

[12] Մասիս, 1881, *Թ*․ 3030։
[13] *Հմմտ*․ *Գաղ*․ *Տարեգ*․, *Գ*․, *էջ* 121։

«Անձնուէր Հայուհեաց Միութեան» նպատակը եւ յորդորեց զիրենք յարատեւել այն բարենպատակ ձեռնարկին մէջ կուրծք տալով ամէն խոչընդոտներու: Ներկաները մեծ ոգեւորութիւն զգացին եւ ուխտեցին ամէն ջանք չխնայել իրենց այս ձեռնարկին յաջողութեան եւ յառաջացման համար: Յետոյ կազմեցին 20 անդամուհիներէ բաղկացած Գործադիր ժողով մը[14]»:

## 9. ԱԶԳԱՆՈՒԷՐ ԱՆԿԱԽ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

Կը հիմնուի Սալմաթոմրուք–Գարակէօմրիւք միացեալ թաղերուն կողմէ՝ 1908 Սեպտեմբեր ամսոյն: Իր նպատակն է 1. Ըստ առաջնոյն թաղը անջատել Պալաթէն եւ կազմել ինքնուրոյն մատակարարութիւն մը՝ վարելու թաղային գործերը: 2. Վերաշինել այրացուեր եկեղեցին, Պզտիկ–Արմաշը: 3. Թաղին վարժարանին հոգը ստանձնել եւ Աղքատախնամ Մարմին մը վերակազմել...: 4. Լսարան–Թանգարան հիմնել: 5. Կիրակնօրեայ դասախօսութիւններ հաստատել:

Միութեան Հիմնադիր ժողովի անդամներն են. Լեւոն Մկրտիչեան, Արտաշէս Գըլըճեան, Մաթէոս Էյիպլեան, Քրիստոսատուր Ֆիլօրեան, Միհրան Աչճեան, Նշան Արապեան, Միսաք Զիլինկիրեան, Ֆրանկիւլ Յակոբեան, Յարութիւն Թէքպըլըքլեան,

[14] Սուրհանդակ, Կ. Պ. 1908, Թ. 83:

*Յարութիւն Պէրպէրեան, Գրիգոր Մինէճեան, Սարգիս Աշճեան, Սեփոն Հանըմեան, Ֆրանկիւլ Թաթարեան, Արտաշէս Զընտանճեան, Գրիգոր Տույուպտուեան, Մինաս Աշճեան, Յակոբ Յովհաննէսեան եւ Գառնիկ Չէօմլէկճեան*[15]։

## 10. ՀԱՅՈՒՀԵԱՑ ՅԱՌԱՋԴԻՄԱՍԷՐ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

*Հաւանօրէն 1909ի սկիզբը կազմուած է Սամաթիոյ մէջ* «Հայուհեաց Յառաջդիմասէր Միութիւն»*ը, որուն «նպատակին գործադրութեան միջոցներէն մէկն է* աղքատ թաղերու մէջ ձեւ ու կարի ձրի դասընթացքներ հաստատել» *եւ այդպիսի դասընթացք մը հաստատուած է Թոփգափուի մէջ, ուր չափահաս օրիորդներ կը յաճախեն եւ 1909 Նոյեմբեր 15ին երկրորդ քառամսեայի քննութիւն պիտի տան*[16]։

[15] Հայրենիք, Կ. Պ. 1909, Թ. 1525:
[16] Հայրենիք, Կ. Պ. 1909, Թ. 1525:

# ԹՈՓԳԱՓՈՒ

## 1. Ս. ՊԱՆԴԱԼԷՈՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1847)

*Պոլսոյ Թաղերէն* Թոփգափու, *ի վաղընջուց իր Ս. Նիկողայոս եկեղեցւոյն կից ունեցած է Թաղային փոքրիկ դպրոց մը: Անցեալ դարու 40ական Թուականներուն, երբ Պոլսոյ մէջ աննախընթաց շարժում մը սկսաւ դաստիարակութեան ուժ տալու համար դպրոցներու պաշտպան Ընկերութիւններ հիմնելու՝ Թոփգափուի Հայերն ալ մասնակցեցան մշակութային այդ շարժումին: Թաղին երեւելիները, համերաշխ խորհրդով,* 1847*ի ամառուան ընթացքին հիմը կը դնեն Թաղին անդրանիկ Ընկերութեան: Սակայն թէ՛ Ընկերութեան լաւագոյն կազմակերպութեան եւ թէ՛ անոր միջոցաւ տեղւոյն դպրոցին մեծագոյն յառաջդիմութիւնը ապահովելու համար՝ կը դիմեն օրուան Պատրիարքին, Մատթէոս Արքեպ. Չուխաճեանի, խնդրելով որ հաճի այցելութիւն մը տալ իրենց Թաղին եւ գիրենք քաջալերէ: Ս. Պատրիարքը* 1847 *Հոկտ.* 4*ին կ՚այցելէ Թոփգափու, հանդիսական պատարագ կը մատուցանէ եւ կը քարոզէ: Ժամանակակից հայ թերթը կը գրէ այս առթիւ. «...Ժողովուրդը հայրական խրատովը քաջալերեց* եւ դպրատանն վրայ ունեցած բարի նախանձնին ալ

եվելօք վառեց սրտերուն մէջ: Թօփխաբու դեռ չէր տեսած ասանկ մէկ հանդէս մը...[1]»:

*Պատարագէն վերջ դպրոցն երթալով Մաթէոս Պատրիարք կը հարցնէ, կը տեղեկանայ դպրոցի վիճակի մասին: «...իր ընդարձակ ազգասիրական եռանդը չարժելով», կը շարունակէ թերթը*, «անոնց մէջերնին բրած Ընկերութեանը հաստատութիւն տրվաւ իւնքն ալ բաժանորդ գրուելով»:

*Ընկերութիւնը տակաւին մասնաւոր անուն մը չունէր: Պատրիարքը հետը բերած Ս. Պանդալէոնի բժիշկին եւ Երմողեայ քահանային մասունքները, իբրեւ յիշատակ, դպրոցին նուիրելով՝ կը կարգադրէ որ մասնաւոր ուխտի օր մ'ունենան* «եւ այն օրուան ուխտաւորներուն նուիրած իւղագին եւ թափախի արդիւնքը դպրատանը ըլլայ. *ուստի* Ընկերութեանն ալ անուն դրաւ՝ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ՍՈՒՐԲ ՊԱՆԴԱԼԵՈՆԻ[2]»:

*Հայ Թերթը կ'ըսէ որ* «անպատմելի ուրախութեամբ լցուց այն աղքատիկ ժողովրդոց սիրտը, որ սեպէ թէ իրմէ բաժնուիլ չէին ուզեր... մշտնջենաւոր յիշատակ մը ձգելով իր ազգասիրութեանը ու ուսումնասիրութեանը եւ աղքատասիրութեանը»:

1849*ին*, *Յակոբ Մօսիկեանի ջանքերով կը վերակազմուի Ընկերութիւնը եւ* 1849

[1] Հայաստան, *Կ. Պ.* 1847, *Թ.* 68:
[2] *Անդ*:

Մարտ 1էն սկսած տարեկան բաժանորդագինը կ՚ըլլայ 50 ղրուշ[3]:

Սխալ է, հետեւաբար, Յարութիւնեանի ենթադրածը թէ Ընկերութիւնս 1840 թուականներուն կը կազմուի եւ «Լեւոնեան» կը կոչուի: Միայն ճիշդ է որ «Պանդալէոնի Ընկերութեան» կազմուելու ժամանակ Թոփ-գափուի վարժարանը անանուն էր (Օննիկ Ա. Յարութիւնեան, Յիշատակարան Հարիւրամեայ Յոբելեանի Ս. Նիկողայոս եկեղեցւոյ Թօփ-գաբուի, Կ. Պ. 1932, էջ 115): «Լեւոնեան» կոչուած է վարժարանը կա՛մ «Պանդալէոն»ի վերջին վանկի ազդեցութեամբ. Լէոն = Լեւոն, եւ կամ 1867ին հիմնուած «Լեւոնեան Ընկերութեան» միջոցաւ: Յարութիւնեանի անծանօթ է 1867ին հիմնուած «Լեւոնեան» Ընկերութիւնը:

Ընկերութիւնս անծանօթ է թէ՛ Սկսնակ Բանասէրին եւ թէ՛ Ալպօյաճեանին:

## 2· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1859)

Թոփգափուի երկրորդ հնագոյն Մշակութ. Ընկերութիւնը ժամանակակից Մասիսէն «Ուսումնասիրական» անունով յորջորջուած է, մինչ Սկսնակ Բանասէր[4] եւ Ա. Ալպօյաճեան[5] «Ուսումնասիրաց» կը կո–

---

[3] Անդ, 1849, Թ. 164:
[4] Արեւելք, 1898, Թ. 3854:
[5] Գաղ. Տարեգր., Բ., էջ 81:

չեն գոյն: Մենք կը նախընտրենք հնագոյնը ճիշդ համարել:

Ընկերութեանս հիմնադիրներէն կը յիշուին Յակոբ Հայկեան եւ Յովհաննէս Մ. Գաբրիէլեան, որոնք կ'երեւայ թէ թաղին թաղականներն են:

Հիմնադրութիւնը եղած է 1859 Հոկտեմբերի սկիզբը, գուցէ 1ին: Ընկերութեան նպատակն է թաղի դպրոցին «յառաջադիմութեանը օգնել»: Անդամավճարը՝ չարաթական 40 փարա:

Այժմ կու տանք Ընկերութեանս հիմնադիրներէն Մասիսի գրուած նամակ մը, որուն մէջ Ընկերութեանս մասին հարկ եղած ծանօթութիւնը կը տրուի. «Արժանապատիւ խմբագիր անօրէն Մասիս պատուական լրագրոյ: Ազգերնուս մէջ ուսման եւ գիտութեան տարածմանը աւիթ եղող Ընկերութեանց օր աւուր բազմանալը եւ զարգանալը Մասիս լրագրոյդ մէջ կարդալով եւ ազգային յառաջադիմութիւնը ապահովցնող Ընկերութիւններն ըլլալը քաջ գիտնալով եւ լաւ համոզուած ըլլալով, ներկայ Հոկտեմբեր ամսէն սկսեալ Ուսումնասիրական անունով Ընկերութիւն մը հաստատեցինք, որոյ տեղին է Թօփ Գափուի դպրոցը եւ նպատակն է նոյն թաղին դպրոցին յառաջադիմութեանը օգնել: Ընկերութիւնը թէպէտ եւ թաղական՝ բայց բաժանորդական ալ ըլլալով՝ կրնայ բաժանորդներ ալ ընդունիլ: Բաժինն է չարաթը

40 փարայ…: Նախագահ Ընկերութեան՝ Յակոբ Հայկեան, Խորհրդական Ընկերութեան՝ Յովհաննէս Մ. Գարբիէլեան[6]»:

1865ին Ընկերութիւնը կը յաջողի թաղին աղջիկներու Վարդուհեան վարժարանը շինել[7]: Ընկերութեանս մասին ուրիշ ծանօթութիւն չունինք:

## 3. ԴՊՐԱՑ ԴԱՍ (1860 ?)

Թոփգափուի Ս. Նիկողայոս եկեղեցւոյ հարիւրամեակին առթիւ հրատարակած «Յիշատակարան»ին մէջ կը գրէ Օննիկ Ս. Յարութիւնեան. «Հին արձանագրութիւններու մէջ Դպրաց Դասերու մասին ոևէ յիշատակութիւն չէ եղած: Բայց անիկա չ'ապացուցաներ թէ Դպրաց Դասեր չեն կազմակերպուած այն շրջաններուն... 1860 թուականներուն եկեղեցին ունեցած է կանոնաւոր եւ բազմանդամ Դպրաց Դաս մը եւ այդ շրջանին շինուած են արծաթեայ փարդերով երեսուն հատ շապիկներ, որոնք մինչեւ հիմա խնամով կը պահուին իբր հնութիւն...: 1906—1908 շրջանին եկեղեցւոյ մատակարարութիւնը տագնապ մը կ'անցնէր. հասոյթ մը ապահովելու նպատակաւ, Ղալաթիոյ երգչախումբը 1907ին կը հրաւիրուի Թօփ–գաբու եւ նպատակը արդարանալէ զատ, գրգիռ

6 Մասիս, 1859, Թ. 403, Հոկտ. 15:
7 Գալ. Տարեգր., Բ., անդ:

մը կ՚ըլլայ կանոնաւոր Դպրաց Դասի մը կազմութեան : Եղած հրաւէրի վրայ թաղեցի երիտասարդներ հաւաքուելով՝ տասնըհինգ անձերէ բաղկացած Դպրաց Դասը կը կազմեն դպրապետութեամբ Ալիքսան Ջնտանճեանի եւ կ՚ընտրեն Տնօրէն Խորհուրդ մը բաղկացած հետեւեալներէ .

| | |
|---|---|
| Ստեփան Թիւֆէնկճեան | Ատենապետ |
| Օննիկ Յարութիւնեան | Ատենադպիր |
| Եղուարդ Հաճեան | Գանձապետ |
| Միսակ Զարըհանէլեան | |
| Ստեփան Սէմէրճեան | |

Այս Դպրաց Դասը մինչեւ 1914ի ընդհ. պատերազմին սկիզբը պահած է իր կանոնաւորութիւնը եւ աշխատած եկեղեցւոյ պայծառութեան: Այս մարմինն էր որ 1913ին թատերականներկայացում մը սարքելով՝ ապահոված հասոյթով չինել տուած է քանըչորս հատ թաւչեայ շապիկներ: 1922 թուականին ալ Դպրաց մը թէեւ կազմուած, բայց կարճ գործունէութենէ մը վերջ ցրուած է» (Յիշատակարան հարիւրամեայ Յոբելեանի Ս. Նիկողայոս եկեղեցւոյ Թօփ-գաբուի, Կ. Պ. 1932, էջ 44—46):

4· ··· ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

Ընկերութեանս մասին միայն Մախսէն տրուած անբաւական ծանօթութիւնը հետեւեալն է .

*«Թօփ-Գափուի Թաղը բնակեալ բարեսէր անձինք՝ տեղւոյն աղջիկ մանկանց անխնամ մնալէն եւ փողոցներուն մէջ Թափառելէն յառաջ եկած կերպ կերպ չարիքն եւ հոգեկորոյս վտանգները տեսնելով,* աղջկանց դպրոց մը բանալու պէտքը ստիպողական կերպով կը զգան, *բայց Թաղին մէջ յարմար կամ պարապ տուն մը չգտնուելով՝ կը հարկադրին* աղջկանց վարժոց մը *շինելու*: Այս նպատակաւ Ընկերութիւն մը կազմեր, *վեց հաւատարիմ եւ գործունեայ անձինք հոգաբարձու կարգեր են*, որպէս զի 10 ղրուշ բաժնի վրայ, *տոմսակներ հանելով՝ Թէ՛ Թաղին ժողովրդէն եւ Թէ ուրիշ ամէն բարեսէր ազգայիններէ նպաստ հաւաքեն...: Ահաւասիկ այս փրկաւէտ գործին հոգ տանելու պաշտօնը վրանին առնող վեց բարեսէր անձանց անունները.*

| | | |
|---|---|---|
| *Քրիս* | *աղա* | *Եաղուպեան (Գանձապետ)* |
| *Նիկողոս* | „ | *Մելքոնեան* |
| *Նշան* | „ | „ |
| *Անտօն* | „ | *Գրագիրեան* |
| *Ստեփան* | „ | *Խաչատուրեան* |
| *Սերովբէ* | „ | *Գինեպանեան*[8]: |

5. ԼԵՒՈՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867)

Մասիսի *խմբագիրը, Կարապետ Իւթիւճեան*, 1870 *Դեկտ.* 26*ին Թոփգափուի վար–*

---

[8] Մասիս, 1862, *Թ*. 548:

*ժարաններու վրայ խօսելով՝ կը գրէ.* «Աղջիկ տղայոց համար ալ զատ Ընկերութիւն եւ զատ հոգաբարձութիւն մը կայ, *որ* երեք տարի առաջ *քանի մը բարեսէր անձանց,* Նշաստանեան Քրիստոստուր, Ղազարոսեան Խաչատուր եւ Ոսկանեան Մ. Քրիս աղայից ձեռօք՝ *առանց թաղ. խորհրդոյ միջամտութեան* հաստատուելով, *նոր չէնք մը կառուցած, փողոցներուն մէջ թշուառութեամբ թափառող աղջիկ մանկունքը հոն հաւաքած մտաւորական սնունդ կը մատակարարէ անոնց...:* Հոգաբարձութիւնը 25 դրուշնոց տարեկան բաժնետոմսերու եւ նուիրատուութեանց միջոցաւ հասոյթ կը հաւաքէ *եւ վարժարանին ծախքը կը հոգայ* երեք տարիէ ի վեր, *այնպիսի անխոնջ եւ եռանդուն ջանիւ որ վարժարանին բոլոր պիտոյքը հոգալէ ետեւ՝* 170 *հատ ալ Օսմանեան Քօնսօլիտէ դրամագլուխ մը գոյացուցած է եւ հետզհետէ աւելցնելու վրայ է*[9]»:

*Ինչպէս կը հասկցուի այս տեղեկատուութենէն՝ Թոփգափուի աղջկանց վարժարանին համար* 1870էն երեք տարի *առաջ* — 1867 — *յատուկ Ընկերութիւն մը կազմուած է: Հիմնադիրները, որ միանգամայն վարժարանին հոգաբարձուներն են՝ կը կոչուին. Քրիստոստուր Նշաստանեան, Խաչատուր Ղազարոսեան եւ Մ. Քրիս Ոսկանեան:*

*Ընկերութիւնը՝ վարժարանին նիւթա-*

---

[9] Մասիս, 1870, Թ. 1036:

կանը տպահովելու համար՝ տարեկան 25 ղրուշնոց բաժնետոմսեր հաներ է։

Մասիսի խմբագիրը այս կարեւոր տեղեկութիւնը տուած ատեն, դժբախտաբար, կը մոռնայ յիշել Ընկերութեան անունը։ Բարեբախտաբար տարի մը վերջ կը յիշէ զայն Ծիածանը, ցաւ յայտնելով որ 1867ին հիմնուած Ընկերութիւնը, 1871ին «քայքայած» է։ Ահա՛ Ծիածանի խօսքերը. «...քանի որ 1867 տարին կազմուած Լեւոնեան Ընկերութեան ի՛նչպէս քայքայուիլը եւ տղոց բատ մեծի մասին ցրուած ըլլալը՝ Թաղխս (Թոփգափու) մէջ ոչ ոք չգիտցող չէ[10]»։

Թէ 1867ի Լեւոնեան Ընկերութիւնը Թոփգափուի աղջկանց վարժարանի օգտին հիմնուած է՝ կը հաստատէ «Սուր» ստորագրութեամբ թղթակից մը Մասիսի մէջ, գրելով. «Թոփգափուի մէջ ալ երկու Ընկերութիւններ կան. Լեւոնեան ու Կրթասիրաց։ Լեւոնեանի նպատակն է՝ յանուն աղջկանց վարժարանի յարատեւութեան քօնսօլիտներ կուտել, այսինքն (թող ներուի ինձ ըսել) մէկ քանի հարիւր ոսկւոյ քօնսօլիտի գոյացման համար ի սկզբան խնդալ ու պարել, եւ վերջէն անոր ապարդիւն կորստեան վրայ լալ ու կոծել...[11]»։

Լեւոնեան Ընկերութիւնը կը նպաստէր նաեւ Թոփգափուի մանչերու դպրոցին[12]։

[10] Ծիածան, Կ. Պ. 1871, Թ. 43։
[11] Մասիս, 1872, Թ. 1302։
[12] Հմմտ. Ծիածան, 1871, Թ. 43։

Ա. Ալպօյաճեան, թէև Ընկերութեանս հիմնումի տարին սխալմամբ 1870 (տպագրական վրիպումով 1880 եղած է այդ թուականը) նշանակած է՝ բայց կու տայ քանի մը անդրադոյն տեղեկութիւններ, որոնք ուրիշ կողմէ մեզ անծանօթ են: Նա կը գրէ. «Լեւոնեան Ընկերութիւն (1880...) Թօփ-Գաբուի համանուն վարժարանին ի նպաստ: Հիմնադիրներն են. Պետրոս Թավչանճեան (Ատենապետ), Գ. Արծրունի (Ատենապետ) եւ այլն: 1868ին Մկրտիչ Նշաստաճեան 39.000 դրուշ հանգանակելով Թօփ-Գաբուի մէջ կը բանայ աղջիկներու «Վարդանոյշ» վարժարանը: 1870ին հաւանօրէն այս Ընկերութիւնը կը նպաստէ այս վարժարանին որ 1873ին կը գտնուէր Մ. Նշաստաճեանի մասնաւոր տեսչութեան տակ՝ անկախ Թաղ. Խորհուրդի իրաւասութենէն եւ Ընկերութիւնը կը հոգար ծախսերը: Ընկերութեան անդամներէն Գրիգոր Մկրեան անձնուիրաբար Փրանսերէն կը դասախօսէ եւ անօրէնութիւնը կը վարէ [13]»:

Թօփգափուի վարժարանին «Լեւոնեան» կոչուելու մասին հին տեղիքի մը չենք հանդիպած: Աւելի ուշ, 1881ին է որ այդ յորջորջումին հանդիպած ենք Մասիսի քով [14]:

---

13 Գաղ. Տարեգր., Բ., էջ 88:
14 Մասիս, 1881, Թ. 2947:

## 6. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869—1870)

*Կը յիշուի* Մասիսի *(1870, Թ. 977) մէջ 1870 Մայիսին, ո՛չ իբրեւ նոր Ընկերութիւն մը։*

## 7. ԼԵՒՈՆ-ՀԱՅԿԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

Լեւոն-Հայկեան Ընկերութիւնը *Ընթերցարան-գրօսարանի Ընկերութիւն մըն է, հաստատուած 1870 Մայիսին։ Ընկերութեան հիմնումի մասին Թոփգափուէն 1871 Մայիս 28ին* Ծիածանի *կը գրեն. «. . . անցեալ տարի ճիշդ այս ատեն Թաղիս մէջ պատուաւոր անձինք, որոնց մէջն էին դպրոցի Հոգաբարձութեան անդամք, ուզելով դպրոցի ձեռնտու Լեւոնեան Ընկերութեան կեդրոնատեղի մը հաստատել՝ եկեղեցւոյս կալուածներէն գրեթէ ամայի մնացեալ եւ ամսական հազիւ հազ 150 ղուրուշ ամսական բերող սրճարանը տարեկան 3500 ղուրուշ կանխիկ վճարելով վարձեցին եւ նոյն սրճարանին համար* զատ Ընկերութիւն մը *հաստատուեցաւ* Լեւոն-Հայկեան *անուամբ. նոյն հաստատութեան 200 լիրայէն աւելի ծախսեցին, չէնքը մեծցուցին, զարդարեցին . . . մէկ քանի անձինք, որոնցմէ մէկ երկուքը գինեպաններ . . . իրենց կեանքին մէջ ազգին օգտին համար չէ թէ գործել, այլ փափաքին իսկ մտաւընուն չանցնելով՝ վախնալով որ մի գուցէ իրենց գինետունները փակուին, ամէն ջանք, ամէն*

*քրտինք, ամէն մեքենայութիւնք... ըրին... բայց թող չվախնան այդ չահասէր խեղճ անձինք, վասն զի այս գրօսարանը բնաւ իրենց խմելու եւ վաճառելու օղիին արգելք չկրնար ըլլալ... վասն զի այս գրօսարանս ոչ տասը փարանոց օղիի գինետուն եւ ոչ ալ արբեցողաց կեդրոն մը չէ* [15]*» :*

Մասիսի *մէջ* [16] *«Ս . Ս .» կը գրէ որ Վարդանանց տօնը «խիստ սրտագրաւ կերպով» տօնուած է Լեւոն-Հայկեան գրօսարանին մէջ :*

*Նոյն թերթը ուրիշ տեղ մը չեչտելով Ընկերութեանս* մշակութային *նկարագիրը՝ կ՚ըսէ որ Թոփգափուի «Թաղական խորհուրդը, երկու վարժարանաց հոգաբարձութիւնք, Լեւոն-Հայկեան եւ Լեւոնեան Ընկերութիւնք այնպիսի սերտիւ միացեալ են որ որչափ ողջամիտ ազգասիրին խնդութիւն կը պատճառէ, նոյնպէս ալ չարամիտ ազգատեացին թախծութիւն* [17]*» :*

*Ընկերութիւնս չենք գտներ Սկսնակ Բանասէրի եւ Այպօյաճեանի ցանկին մէջ :*

---

[15] Ծիածան, 1871, *Թ*. 43 : — Փունջ Օրագիրի *մէջ* (1870, *Թ*. 632—633), *տասնց Ընկերութեանս անունը տալու, խօսք կ՚ըլլայ* երկու *Ընկերութեանց հիմնուելու մասին : Հիմնադիրներն են.* Միրիճան Յակոբեան, Գ. Մ. Արծրունի, Արթին Նուրեանց եւ Յ. Յովսէփեան :

[16] 1871, *Թ*. 1051 :

[17] *Թ*. 1114 : — *Յարութիւնեան կը կարծէ որ* 1864*ին հիմնուած է «Հայկեան» անունով Ընկերութիւն մը, որ կը միանայ «Լեւոնեան» Ընկերութեան հետ՝ կազմելով* միացեալ *Ընկերութիւն մը* — Լեւոն-Հայկեան : *Այս մասին չենք գտած տեղեկութիւն մը (տե՛ս Յիշատակարան, անդ, էջ* 115—116) :

## 8. ԿՐԹԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

1872 Օգ. 9 թուով կը գրէ Պոլսոյ Մասիս[18]. «Բերկրութեամբ կը լսենք թէ Թոփգափուի թաղին մէջ Կրթասէր անուամբ Ընկերութիւն մը կազմուեր է, որոյ նպատակն է՝ իւր նիւթական կարողութեան ներելոյն չափ երկու սեռէ աղքատ եւ որբ՝ բայց եւ ուսման եւ կրթութեան ընդունակութիւն ունեցող տղայք իւր խնամոց ներքեւ առնուլ եւ դաստիարակել տալ բարեկարգ վարժարանաց մէջ»:

Ընկերութեան Գործադիր ժողովի Ատենապետը, Պետրոս Պէյլիկճեան եւ Ատենադպիրը, Ա. Կ. Վարդանեան Սեպտեմբերին նամակ մը գրելով Մասիսի՝ հաստատելէ վերջ թէ իրենց Ընկերութեան բուն նպատակը ազգին աղքատ զաւակները դաստիարակել է՝ կ'ընդգծեն յատկապէս թէ «. . . ազգ մը այն ատեն ճշմարիտ յառաջդիմութեան շաւղին մէջ մտած է, երբ զինքը ներկայացնող ժողովրդեան ամէն դասուն մէջ դաստիարակութիւնը ծաւալած է[19]»:

Նամակագիրները կ'իմացնեն թէ Ընկերութիւնը արդէն քանի մը որբ եւ անտերունչ մանուկներ իւր պաշտպանութեան տակ առած է:

Ընկերութեան Կանոնագիրը անծանօթ է

[18] Թ. 1277:
[19] Մասիս, 1872, Թ. 1287:

մեզ: Իր նիւթական աղբիւրներէն մին է 40 փարանոց բաժնետոմսերու վաճառումը եւ նուիրատուութիւններ[20]:

«Սուր» յօդուածի մը մէջ համեմատական մ'ընելով Սամաթիոյ Ա. Բ. Գ. Ընկերութեան եւ Թոփգափուի Կրթասէրի միջեւ՝ կը գովէ երկուքին ազգասիրական գործունէութիւնը: Երկուքին միջեւ տարբերութիւնը այն է որ, կ'ըսէ, մինչ Սամաթիայինը միայն Սամաթիոյ աղքատիկ աղջկանց կրթութեան հոգը ստանձնած է՝ Թոփգափուինը ազգին բոլոր աղքատ տղոց դաստիարակութեան գործին նուիրուած է:

«Սուր» կը վերջացնէ իր գրութիւնը, ըսելով. «Կրթասէր Ընկերութիւնն սկսած է արդէն գործել եւ բաւական չհամարելով իւր արդի տակաւին անզօր վիճակին մէջ 7—8 աշակերտներ Զինճիրլճեան վարժարանը դրկել, չորս տղայ ալ Փանոսեան վարժարան դրկել կը պատրաստուի, որք ի վերջոյ, այսինքն երբ իրենց ուսման շրջանը լրացնեն, դարձեալ Ընկերութեան ծախիւք Գերմանիոյ բարձրագոյն կարգի վարժարանները պիտի ղրկուին ի դաստիարակութիւն: Անզգայ մը կամ մեռեալ մը լինելու է, ազնիւ ընթերցող, այսպիսի օգտաւէտ Ընկերութեան մը չանդամակցելու համար[21]»:

---

[20] Անդ:
[21] Անդ՝ Թ. 1302:

### 9· ԳՐԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

*Ընկերութեանս մասին ոչ մէկ ծանօթութեան հանդիպած ենք Հայ Մամուլի մէջ: Ա. Ալպօյաճեանի քով միայն կը գտնենք անոր յիշատակութիւնը, որ կը գրէ. «Գրասիրաց Ընկերութիւն* (1875) *կազմուած է Թօփգարուի վարժարանին օգնելու համար: Ոստիկանութիւնը կ'արգիլէ*[22]»:

### 10· ՊԱՐԶԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880—1882)

*Թօփգափուի «Վարդուհեան» աղջկանց վարժարանի* «սանուհիները, *հետեւելով* ուրիշ թաղերու մէջ նոյն շրջաններուն կազմուած Միութիւններու՝ *կազմած են* Պարզասիրաց Ընկերութիւն *մը*[23]»: *Հաւանօրէն* 1880—1882*ին, երբ «Պարզասիրաց»ներ կային Սամաթիա եւ Սկիւտար:*

### 11· ՆՊԱՍՏԱՄԱՏՈՅՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1885)

*Ընկերութեանս մասին ժամանակակից թերթերէն տեղեկատուութեան մը չենք հանդիպիր: Մեր ծանօթութիւնը կը քաղենք Յարութիւնեանի «Յիշատակարանէն» (անդ՝ էջ* 116—119), *ուր կը գրէ նա. «Այս միութիւնը* 1885 *թուականին կը կազմուի, նպատակ ունենալով աղքատիկ ուսանողաց գրենական պիտոյք հայթայթել: Այդ միութեան* հիմնադիր *անդամները եղած են.*

---

22 *Գալ. Տարեգր., Գ., էջ* 114:

23 *Յարութիւնեան, Յիշատակարան, անդ, էջ* 132:

Երուանդ Իւթիւճեան — Ատենապետ
Մարտիրոս Պէյլէրեան — Ատենադպիր
Լեւոն Կիւրճեան — Գանձապետ
Մկրտիչ Երէցեան
Շամիրամ Յովնանեան
Երուանդ Թէոփիլեան (տես՝ էջ 116):

«Նպաստամատոյց Միութիւն»ը ունեցած է 17 կէտերէ կազմուած Կանոնագիր մը, որմէ կը քաղենք հետեւեալները: Միութեան նպատակն է. «Թօփ-գաբուի երկսեռ վարժարանաց աղքատիկ աշակերտաց եւ աշակերտուհեաց իր կարողութեան չափով նպաստել»: «Միութեան սոյն վեց անդամք բացարձակապէս անփոփոխելի են, ի բաց առեալ կամաւոր հրաժարումէ» (Յօդ. 2): «Միութեան անդամք պարտաւոր են ամէն շաբաթ իրենց բաժանորդական բաժինը (1 դրուշ) վճարել» (Յօդ. 5): «Միութիւնը իր վեց անդամներէն դուրս կ'ընդունի նաեւ շնորհակալութեամբ պատուոյ անդամներ» (Յօդ. 11): «Պատուոյ անդամի մը վճարելիք շաբաթական 1 բաժինն է 20 փարա» (Յօդ. 13):

1887ին Միութիւնը Ընդհ. Ժողովի մը մէջ իր տիտղոսը կը փոխէ «Նպաստամատոյց Ընկերութեան», իսկ Կանոնագրին մէջ կ'ընէ հետեւեալ փոփոխութիւնը. Հիմնադիր անդամներու թիւը կ'իջնայ երեքի՝ ըլլալով հաստատուն մարմինը. իրեն օգնական կը դրուի Գործադիր մարմին մը, որ համարատու է ա–

ւաշնոյն։ Հիմնադիր անդամ կ'ընտրուին. Ալիքսան Զնտանճեան, Յակոբ Գրիգորեան եւ Գէորգ Կիւրճեան։ Գործադիր անդամները հետեւեալներն են. Երուանդ Իւթիւճեան, Մարտիրոս Պէյլէրեան, Արմենակ Ծիրինեան, Լեւոն Մուխթարեան եւ Լեւոն Կիւրճեան։ Ընկերութիւնը օգտակար կ'ըլլայ Թաղին' աղքատ աշակերտներու գրենական պիտոյքներէ զատ՝ հագուստ ալ հոգալով եւ վարժարանի Հոգաբարձութեան ամսական գումար մ'ալ յատկացնելով։ Կը լուծուի 1894էն վերջ' 1895—1896ի դէպքերու պատճառաւ (Յիշատակարան, անդ, էջ 117—119)։

12· ԿՐԹԱԿԱՆ ՅԱՌԱՋԴԻՄԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

Յարութիւնեան կը գրէ․ «1908 Թուականին, լուծուած Նպաստամատոյց Ընկերութեան անդամներու եւ օրուան Թաղ․ Խորհրդոյ նախաձեռնութեամբ, ժամանակին այնքան օգտակարութիւն ցոյց տուող այդ Ընկերութիւնը վերակենդանացնելու Նպատակաւ, նորահաս երիտասարդներու մասնակցութեամբ Վարդուհեան վարժարանի մէջ հաւաքոյթ մը տեղի կ'ունենայ։ Ներկաներու կողմէ ջերմապէս կը ծափահարուի այդ օգտակէտ առաջարկը եւ այդ հաւաքոյթի մէջ իսկ կ'ընտրուի նախագահան մը. Ընկերութեան անունի մասին կատարուած վիճաբանութեան իբր հետեւանք' փոխանակ Նպաս–

տամատոյցի՝ Կրթական Յառաջդիմասէր Ընկերութիւն անունը յարմարագոյն նկատուելով՝ կ'ընդունուի եւ բոլոր ներկաները անդամ կ'արձանագրուին Կրթականին։ Յաջորդող Կիրակի օրը Ընդհ. Ժողովի ընթացքին կ'ընտրուին Հիմնադիր եւ Գործադիր մարմնոց անդամները։ Նորակազմ այս Ընկերութեան Գործադիր Մարմինը արդիւնաբեր գործունէութիւն մը ցոյց չի տար եւ հազիւ չորս ամիս իր գոյութիւնը պահելէ վերջ՝ կը ցրուի եւ սակայն օգտակար Ընկերութեան մը կազմութեան նախաքայլը առած կրնայ համարուիլ։ 1909 տարւոյ մէջ, լուծեալ Կրթական Յառաջդիմասէր Ընկերութեան անդամները վերստին հաւաքուելով, քուէարկութեամբ կ'ընտրեն նախ Հիմնադիր անդամներ, որոնք են.

Յակոբ Դանիէլեան
Ալիքսան Ջնտանճեան
Գրիգոր Ալիքսանեան
Ստեփան Աբրահամեան
Մհտսի Յարութիւն Ջնտանճեան

Իսկ Գործադիր Մարմինը կ'ընտրուի հետեւեալներէ.

| | |
|---|---|
| Երուանդ Զաքարեան | Ատենապետ |
| Լեւոն Կիւրճեան | Ատենադպիր |
| Միհրան Աչճեան | Գանձապետ |
| Պետրոս Զիմէնեան | Հաւաքչապետ |

| | | |
|---|---|---|
| *Թովմաս* | *Թագւորեան* | *Հաշուակալ* |
| *Յարութիւն* | *Քէրփիճճեան* | *Աւանդապահ* |
| *Միքայէլ* | *Զարրհանելեան* | *Մատակարար* |

*Վերակազմուած Ընկերութեան այս Գործադիր Մարմինը հոգեւին կը լծուի աշխատութեան*[24]»: *Անդամները կը շատնան, կը սարքուի դաշտապարահանդէս, կը կազմուի Տիկնանց Օժանդակ մը, կը գնուին եգիպտական* Crédit foncier *արժեթուղթեր: Ընկերութիւնը կը գործէ մինչեւ* 1912 *եւ կը լուծուի՝ ի նպաստ վարժարանի շինութեան թողլով* 2000 *ոսկիի արժեթուղթեր*[25]:

*Ընկերութիւնը հիմնուած էր* 1908 *Յուլիս* 1*ին* (Ազատամարտ, 1909, *Թ.* 168):

## 13. ՏԻԿՆԱՆՑ ՕԺԱՆԴԱԿ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*Թոփգափուի* «Տիկնանց Օժանդակ Միութեան» *կազմութեան առիթ եւ պատճառ եղած է թաղին «Յառաջդիմասէր Ընկերութիւնը»՝ փափագելով ընդարձակել իր գործունէութիւնը:*

*«Տիկնանց»ի առաջին անդամուհիներն են. Տիկիններ՝ Քրիստինէ Միքայէլեան, Պէադրիս Զիմէնեան, Հայկանոյշ Շահիրեան, Իսկուհի Անդրանիկեան, Եօժէնի Փապուճ–*

---

[24] *Անդ, էջ* 120—121: — Ժամանակ (*Կ. Պ.* 1909, *Թ.* 266) *Ընկերութիւնս կը յիշէ* «Յառաջդիմասէր Ընկերութիւն» *ձեւով:*

[25] *Անդ, էջ* 121—122. *իսկ էջ* 123*ի մէջ կը ներկայացուի Ընկերութեան մէկ խմբանկարը:*

ճեան, Լուսին Զաքարեան եւ Օր. Նեմզար Գափամաճեան: Տիկնանց Միութիւնը վարժարանի աշակերտուհիներու կը հայթայթէ ձեռագործի նիւթեր եւ անոնց արտադրութիւնները վիճակահանութեան դնելով կ'ապահովէ բաւականաչափ հասոյթ[26]:

## 14· ԱՂՋԿԱՆՑ ԵՒ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

1914—1918ի պատերազմի զինադադարէն վերջ հայ որբերու եւ տարագրութենէ վերադարձողներու ծով կարիքը դարմանելու համար կազմուած բազմանուն եւ այլատեսակ Միութիւններէն մին է Թոփգափուի երկսեռ հայ երիտասարդներու կազմած այս Միութիւնը: Իր մասին ահա առաջին յիշատակութիւնը. «Թօփ–գարուի աղջ. եւ երիտ. Միութեան որբախնամի նպատակին կազմակերպած հանդէսը տեղի պիտի ունենայ վաղը, Կիրակի 1ին (1919 Փետր.), Թօփ–գարուի մէջ: Վիճակահանութեան առարկան է մետաքսահիւս ձեռագործ դրօշակ մը[27]»:

Վիճակահանութեան արդիւնքը — 200 ոսկի — կը յանձնէ Միութիւնը Որբերու եւ Տարագրեալներու Կեդրոնական Յանձնախումբին[28]:

---

[26] Անդ, էջ 121:
[27] Ժամանակ, 1919, Թ. 3432:
[28] Անդ, Թ. 3446:

# ՍԱՄԱԹԻԱ

## 1· ԴՊՐԱՑ ԴԱՍ (1703)

*Պոլսոյ* «Դպրաց Դասեր»*ու հնագոյնը* Սամաթիոյ *մէջ հիմնուած է* — 1703*ին* — *Գալուստ Կայծակ Ամասիացի Պատրիարքին* (1703—1704) *ատեն՝ դպրապետութեամբ* Սարրաֆ Սարգիս Թաշճեանի, «*որ երեսուն տարի անընդհատ բարւոք կերպով պաշտօնավարած է եւ* 1733*ին իր որդին՝* Յակոբ Թաշճեան *դպրապետ կարգած է, ինչպէս որ կը հաստատէ նոյն թուակիր պատմական արժէք ունեցող ձեռագիր ընտիր* Կանոնագիր *մը, որ մեծ խնամքով ու գուրգուրանքով կախուած է այսօր ալ Սամաթիոյ Դպրաց Դասու սենեակը*[29]»:

*Այդ Կանոնագիրը, որ* 80 կնիք-ստորագրութիւն *կը կրէ, հրատարակուած է Կարապետեանի Յիշատակարանին մէջ թէ՛ լուսատիպ եւ թէ՛ ամբողջական բնագրով, ուր կը կարդացուին անունները վարդապետի մը,* 15 *տէրտէրի եւ* 64 *աշխարհական անդամի: Կանոնագիրը կը սկսի· «Յանուն Ամենասուրբ Երրորդութեան Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ· ի Թուականի Փրկչին մերոյ հազար էՃԼԳ* (1733) *եւ ի Հայոց հազար ՃՁԲին եւ*

---

[29] *Պետրոս Կարապետեան, Հնգադարեան Յիշատակարան Սամաթիոյ Ս. Գէորգ եկեղեցւոյ, Կ. Պ.* 1935, *էջ* 294:

յամսեանն . . . մեք ստորագրեցեալ եղբարքս Սուրբ Մանաստրը կոչեցեալ Ս. Գէորգայ Եկեղեցւոյ ութսուն թուով թուեալ դպիրքս հանդերձ ութ ձայնագլխօք եւ դպրապետօք եւ թիկնապահօք, Ամենակարող զօրութեամբ եւ շնորհիւ Ս. Հոգւոյն խորհուրդ արարաք միաբանութեամբ առաջի Ամենամեծին Աստուծոյ եւ առաջի Սրբոյն Նորին, եթէ զորմութիւնս մեր այս վերոյգրեալ Դպրացս, որ չարաթէ ի չարաթ կու հաւաքիմք ի մէջի մերում, զոր ինչ յաւելումք եւ մթերեմք ի գանձանակի միոջ եղեալ զայս ամենայն, յամ յամէ սակարարեալ եւ հիսապս հաւատեալ, նովաւ Աքարէթս գնեսցուք եւ վախֆ արասցուք Ս. Գէորգ Եկեղեցւոյս մերոյ, որ ի ձեռն Դպրացս գործառնութիւնս այս յիշատակ լիցի Ս. Գէորգ Եկեղեցւոյ մերոյ. եւ ահա զայս պայմանս սահմանեցուք ի մէջի մերում եւ կարգեցաք Աստուծով միւթէվէլլի Տաչճի Օղլու զՏիրացու Յակոբն եւ վերակացու եւ Նազիր ի վերայ նորա, Ութ ձայնագլխոն հանդերձ թիկնապահօքն եւ ստորագրեցեալ միաբան դպրօքն . . . [30]» :

Առաջին ձեռագիր Կանոնագրէն զատ կան զանազան ժամանակներէ հասած «հէօճճէթ»-ներ ալ, որոնք կը պատմեն յաջորդականութիւնը դպրապետներուն, այսպէս 1740էն, 1758էն, 1761էն, 1770էն, եւ այլն:

Աւելի կարեւոր է բազմակնիք գիր մը

[30] Անդ, էջ 296—297:

1789էն, *ուր կ'ըսուի. «Ի թուի Փրկչին* 1789 *եւ տոմարականին ՌՄԼԸ* (=1789) *յՕգոստոսի* 26*ին, մեք ի ներքոյ գրեալ եղբարքս եւ դպիրքս Սամաթիա Սուլու Մանաստր եկեղեցւոյ յանուն Ս. Գէորգայ կառուցեալ: Եւ ի սոյն դպրաց ուխտն ձայնապետքս... խորհուրդ արարեալ առաջի Ամենասուրբ Երրորդութեան եւ ամենայն Սրբոց*, եդաք ուխտ ի միջի մերում զայս, զի ի մեր վախճանէ եղեալ իրատէն ձեռամբ տիրացու Գրիգոր գանձապետին, որ այժմ ունիմք ի վերայ ընչից դպրացս, ամ յամէ տացէ միոյ վարժապետի, զոր ինչ հարկ է ի վարձս վասն ուսուցանելոյ ճրիապէս զմանկունս, որ ի Սամաթիոյ: *Եւ մեք վերոյգրեալ դպիրքս կացցուք կառավարիչ ի վերայ նոյն վարժապետին, մանաւանդ ձայնապետքս*[31]»:

1868*ին* Օրագրի *մէջ* «Սամաթիոյ Դպրաց Ընկերութիւնը» *վերնագրի տակ թաղեցի մը ըսելէ յետոյ թէ Ս. Գէորգ եկեղեցւոյ այրումէն եւ Դպրաց Դասի պահարանին ոչնչանալէն վերջ Դպրաց Դասը պահարան մը կը պահէր՝ կը շարունակէ. «Այս Ընկերութիւնը ասկից* 100/150 *տարի առաջ հիմնուած է եւ երկու տեսակ վագըֆ ունի, ասոնցմէ մէկուն* նպատակն է Ս. Գէորգ եկեղեցւոյ շապիկ եւ այլն դպրական պէտքերն հոգալ. *իսկ* միւսին նպատակն է ծեր, անկեալ, եւ կարօտ տիրացուին օգնել նիւթապէս *եւ այս վերջինը կեր–*

---

[31] *Անդ, էջ* 300—301:

*պով մը գպրաց* սիկուրիթեան *ըսել է*․․․։ *Ասոնց մէջ ջերմեռանդ եւ եկեղեցասէր մարդեր կան*, բայց շարակաճի հմուտ հազիւ երկու երեք անձ կրնայ գտնուիլ․․․։ *Ամենքն ալ առեւտրական մարդիկ են*, մէջերնին անպատիւ մարդ չգտնուելուն նախանձախնդիր են[32]»։ *Այդ տարին Սամաթիոյ Դպրաց Դասը* 20—30 *անդամ ունէր*[33]։

*Ընկերութիւնը* 1953*ին իր* 250 *ամեակը տօնած է եւ կը շարունակէ իր գոյութիւնը պահել*[34]։

2․ Ս․ ՍԱՀԱԿԱՅ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1842)

*Ընկերութեանս անունը կը յիշէ առաջին անգամ* Արշ․ Արարատեան 1844 *Ապրիլին եւ կը կոչէ* «Ս․ Սահակայ Ընկերութիւն[35]» *կամ* «Սրբոյն Սահակայ Ընկերութիւն[36]», *ինչ որ սկզբնական կը համարինք․ յաջորդ տարիներուն վերածուած է ան* «Ս․ Սահակեան» *Ընկերութեան*[37]։

*Սխալ է, հետեւաբար*, *«Սկսնակ»ի*[38] *եւ*

---

[32] Օրագիր, 1868, *Թ*․ 61։
[33] *Անդ*։
[34] *Հմմտ*․ Նոր Լոյս, 1952, *Թ*․ 952։
[35] 1844, *Թ*․ 188։
[36] *Անդ*, *Թ*․ 235։
[37] Բուրաստան Ս․ Սահակեան, 1851, *էջ* 6։ — Նոյեան Աղաւնի, 1852, *Թ*․ 17։ — Մասիս, 1853, *Թ*․ 56։
[38] Արեւելք, 1898, *Թ*․ 3854։

*Այպօյաճեանի*[39] *յորջորջումը՝* «Սանուց Ընկերութիւն»:

*Հիմնադրութեան տարի ընդունուած է ընդհանրապէս* 1843, *սակայն Պետրոս Կարապետեան* 1844 *Յունուար* 1 *թուականը կրող արձանագրութիւն մը գտած եւ անոր վրայ յենլով կը պնդէ թէ Ընկերութիւնը հաստատուած է* 1842*ին*[40]: *Թէեւ հնագոյն աղբիւր մը չգտանք Կարապետեանի կարծիքը հաստատող, սակայն մեզի ալ հաւանական կը թուի թէ* 1842*ի վերջերը հիմնուած ըլլայ: Սահակեան վարժարանի շինութեան սկիզբ եղած է* 1842*ին*[41]:

*Ընկերութեանս* հիմնադիրներն *են.* Պապա Ծերունի, Մինէճի Անդրանիկ Փափազեան, Քրիստոստուր Ղազարոսեան եւ Թօփքիփէլի Յարութիւն[42]: *Իսկ* նպատակը *եղած է. Սամաթիոյ Ս. Գէորգի դպրատան օգնութիւն ընել*[43]: Արշ. Արարատեան *կը գովէ Ընկերութեան ջանքը վարժարանի օգտին համար: Ընկերութիւնը արդէն իր առաջին տարիներուն ունեցած է* տպագիր Կանոնագիր *մը*[44], *զոր դժբախտաբար չենք տեսած՝ չունենալով մեր Մատենադարանին մէջ:*

1844 *Յունուարէն մինչեւ* 1844 *Դեկտ.ի վերջը Ընկերութեան* Մուտքն *եղած է* 11,703

---

[39] *Գաղ. Տարեգր., Ա., էջ* 53:
[40] *Կարապետեան, անդ, էջ* 94—95:
[41] *Անդ, էջ* 99—100:
[42] Արշ. Արարատեան, 1844, *թ.* 188:
[43] *Անդ՝* 1845, *թ.* 235:
[44] *Կարապետեան, անդ, էջ* 102:

*ղուրուշ եւ* Եկք՝ 8686 *ղուրուշ*[45]: *Ընկերութիւնը վարժարանի համար գնած է* դասագիրք, *վճարած է* ուսուցիչներուն, *հոգացած է* միննտէր, քարձ եւ սէտիր, *բաշխած է* մրցանակ *յառաջադէմ աշակերտներու*, *գնած է* վառարան *դասարաններու համար*[46]:

Մասիս 1853*ին կը գրէ. Սամաթիոյ Ս. Սահակեան վարժարանը* «Ս. Սահակեան բարեջան Ընկերութեան խնամատարութեամբը եւ նորին ազգասէր Հոգաբարձուաց անդուլ ջանացողութեամբը միշտ գովելի յառաջադիմութեամբ մը կը շարունակի[47]»:

*Ընկերութիւնս* 1851*ին կը հրատարակէ* «Բուրաստան Ս. Սահակեան» *անունով ամսաթերթ մը*՝ Բարոյական, Բանասիրական, Տնտեսական եւ Ուսումնական *նիւթերու շուրջ: Առաջին թիւը լոյս կը տեսնէ* 1851 *Յունիսին եւ կը բոլորէ ամբողջ տարին. իսկ* 1852*ին լոյս կը տեսնէ Յունուարէն–Օգոստոս եւ կը դադրի: Թէեւ* Մասիս 1853*ին կը լսէ թէ պիտի շարունակուի* «*Բուրաստան*»*ը, սակայն չէ շարունակուած*:

*Ընկերութեանս գոյութիւնը տեւած կ'երեւայ մինչեւ* 1854 *կամ* 1855: 1855*ին նոր Ընկերութիւն մը կը կազմուի*, որ շփոթուած է այս Ընկերութեան հետ. *կը կոչուի*՝ «Սահակեան Սանուց *Ընկերութիւն*», *որ* «*Ս. Սահակայ Ընկերութեան*» *շարունակութիւնը չէ*:

---

[45] *Անդ*, *էջ* 105:
[46] *Անդ*, *էջ* 102—105:
[47] Մասիս, 1853, *Թ*. 56:

## 3. ԵԿԵՂԵՑՊԱՆԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1842)

Սամաթիոյ մէջ արդէն ԺԸ. դարէն սկսած գոյութիւն ունեցած է «Եկեղեցպանաց» Մարմին մը կամ կազմակերպութիւն մը, որ Թաղին Ս. Գէորգ եկեղեցւոյն նիւթապէս նպաստած է: Անոնցմէ անուններ ալ կը յիշուին արդէն 1781 տարիէն[48]: Կարապետեան կը գրէ սակայն. «Միւթէվէլլիներու գործակից եկեղեցպաններու մասին դժբախտաբար մեծ բան մը չգտանք, եկեղեցին քանիցս Հրոյ ճարակ ըլլալուն պատճառաւ[49]»: Կարապետեանի անծանօթ եղած է որ Սամաթիոյ «Եկեղեցպանները» իրենց յատուկ Ընկերութիւնն իսկ ունեցած են եւ այն՝ արդէն 1842էն ի վեր: Այս մասին թանկագին վկայութիւն մը կու տայ «Արեւելեան Դար» թերթը:

Նամակագիր մը 1860ին Պոլսոյ «Արեւելեան Դար»ի մէջ հետեւեալ տեղեկութիւնը կը հաղորդէ. Ըսել է յետոյ թէ Սամաթիոյ եկեղեցպանք 20—30 տարի առաջուան Պոլսոյ պարզ գպրոցներու մէջ ուսում առած մարդիկ են՝ կը գրէ. «Նախ սա իմացնենք որ այս եկեղեցպանաց Ընկերութիւնը քիչ կամ շատ փոփոխութեամբ երբեմն կամաւ եւ երբեմն ստիպեալ 18 տարիէ ի վեր Սամաթիոյ Թաղականն վարչութեանը հոգը կը տանէր: Պոլսոյ մէջ առաջին բարեկարգեալ գպրոց Սամաթիացիք ունեցան...: Առաջին բարեկարգ

---

48 Կարապետեան, անդ, էջ 97:
49 Անդ:

*Թանգարան Սամաթիա Հաստատեցաւ...*: *Ասոնք Հարկաւորապէս ժողովրդեան ձեռնտուութեամբը կատարեցաւ*, բայց գործադիրներուն եւ գլխաւոր աշխատողներուն մեծ մասը սոյն այս եկեղեցպաններն էին: *Ասոնցմէ ի զատ եկեղեցպանները* յատկապէս իրենց մէջ Ընկերութիւն մը հաստատած ունին, *որ առ այժմ* 2400 *ղուրուշ տարեկան* Կուսանաց (*աղջկանց*) դպրատան համար կը վճարէ *եւ* 8000 *Հօխայ ածուխ ալ տարեկան* աղքատաց համար *եւ օրըստօրէ ալ աւելնալու վրայ են*: *Տեսնենք ուրեմն թէ եկեղեցւոյ ելեւմտիցը մասին միթէ եկեղեցին օգո՞ւտ թէ վնաս ըրած է* այս Ընկերութեան կազմութեան եւ գործի սկսելու օրէն ի վեր... *պիտի տեսնենք որ այս մարդիկը նախկին* 116 *Հազարէն աւելի պարտքը վճարելէն ետեւ տարեկան* 61·884 *ղուրուշ եկամուտ բերող կալուած են յաւելցուցած եկեղեցւոյ... ըսել է թէ այս եկեղեցպանաց օրովը Ս. Գէորգ եկեղեցին իբրու մէկ միլիոնով աւելի Հարստացաւ... բարոյական մասին ալ սա միայն կ՚ըսենք որ այսօր Պօլսոյ Դասարաններուն մէջ եղած երեւելի դասատուներուն մեծ մասը այս մարդոց Հասուցած պտուղներն են*[50]»:

*Ընկերութիւնս անծանօթ է «Սկսնակ»ին, Թորգոմեանի եւ Ալպօյաճեանի*:

[50] Արեւելեան Դար, 1860, էջ 83:

## 4. ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱՆԳԱՐԱՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1843)

*Հիմնուած է հաւանօրէն 1843ի վերջերը։ 1844ին կը յաջողի հաստատել* Թանգարան *մը*[51] *Սամաթիոյ մէջ, որ մեծ արդիւնք կ՚ունենայ հետզհետէ հաւաքելով հոն 6—7 հազար կտոր գիրք, 5—6 հարիւր Ձեռագիր եւ 7—8 հազար զանազան լեզուով գրքեր ու տետրակներ, որոնք դժբախտաբար 1866ի հրդեհին հրոյ ճարակ կ՚ըլլան*[52]։

*Հ. Աստուր յիշած է Ընկերութիւնս, գրելով.* «... Եւ ուրիշ խումբ մըն ալ որ մատենադարան հաստատեց Սամաթիոյ մէջ[53]»։

## 5. ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1844 ?)

*Նամակագիր մը 1860ին յիշելէ վերջ թէ Սամաթիոյ* Թանգարանը *1844ին հաստատուած է՝ կը գրէ. «Յիշեալ... Թանգարանին համար* զանազան Ընկերութիւններ հաստատուեցան, *ինչպէս...* Առեւտրական Ընկերութիւն մը (1841), որուն արդիւնքն եղաւ Թանգարանի համար բաւական եկամուտ բերող խանութ մը[54]»։

*Թերթին մէջ նշանակուած 1841 թուականը յայտնի սխալատիպ է. 1844 կամ յաջորդող թուական մը կրնայ ըլլալ։*

*Ընկերութեանս մասին ուրիշ տեղ չենք*

51 *Անդ*։
52 *Տե՛ս* Ժամանակ, 1866, *էջ* 51—52։
53 *Ընդարձակ Օրացոյց*, 1901, *էջ* 231։
54 Արեւելեան Դար, *անդ*։

*հանդիպած։ Անծանօթ է ան Ընկերութիւններու վրայ գրողներուն։*

6. ··· ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1845)

1845 *Մայիս 4ին Սամաթիոյ մէջ հրդեհ մը կը պատահի։ Այդ հրդեհին առթիւ Մատթէոս Զուհաճեան Պատրիարք «մարդասիրական Ընկերութիւն» մը կը հիմնէ հրդեհէն անպատսպար մնացածներուն* «ողորմելիներուն բնակարան մը շինել տալու եւ քիչ շատ կահկարասիք տնօրինելու համար... արդէն քանի ողորմած երեւելի մարդիկ ստորագրեցան այս աստուածահաճոյ մարդասիրական Ընկերութեանը[55]»։

*Ընկերութեան* անունը *կարելի չէ ստուգութեամբ ըսել թէ «Մարդասիրական» է։ Թերթը իր շարունակութեան մէջ լուսաբանութիւն մը չի տար։*

7. ՀԱՅԿԱԶՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1846)

*Կազմուած է* 1846*ի սկիզբը։ Կը յիշէ ժամանակակից թերթը, գրելով թէ Մատթէոս Պատրիարք եւ Իզմիրցի Յովհաննէս Արքեպ.* 100*ական, իսկ Գէոդ Ամիրա Երամեան* 500 *ղրուշ նուէր տուած են Ընկերութեան*[56]։

*Մանրամասնութիւն կը պակսի։ Կը կարծենք թէ Թաղին Թանգարանին նպաստող Ընկերութիւններէն մէկն այս է*[57]։

---

[55] Արշ. Արարատեան, 1845, *թ.* 233։
[56] *Անդ*, 1846, *թ.* 257։
[57] *Հմմտ.* Արեւելեան Դար, 1860, *էջ* 83։

## 8. ՄԵՍՐՈՊԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1847)

Սամաթիոյ Կաթողիկէ Հայոց կողմէ հիմնուած է՝ Մեսրոպեան Ընկերութիւն»ը։ Կը յիշուի 1847 Յունիսին սկիզբը[58]։ Ընկերութիւնս — կը կոչուի նաեւ Ս. Մեսրոպեան Եղբայրութիւն — իր պաշտպանութեան տակ ունի վարժարան մը, որուն վեցամսեայ քննութիւնը հանդիսական տեղի կ'ունենայ 1848 Մայիսին ի ներկայութեան Հայ Կաթողիկէ Պատրիարք Անտոն Արքեպ. Հասունեանի եւ քահանաներու, ուր կը փայլի վարժարանի դաստիարակ՝ Յարութիւն Փափազեան[59]։

Ունէ՞ր իր կանոնագիրը. ի՞նչ էր իր նպատակը. որո՞նք կը կազմէին իր Վարչութիւնը. ո՞րքան տեւած է եւ ի՞նչ բարոյական ու նիւթական արդիւնք տուած — անծանօթ է։

Անշուշտ շատոնց դադրած էր որ 1888ին հայ թերթ մը կը ծանուցանէ թէ նորինորոյ կը հիմնուի ան։ Ծաղիկ կը գրէ 1888 Յունիսին. «Բերկրութեամբ կ'իմանամք թէ Սամաթիոյ Հռոմէական հայ երիտասարդներն մարդասիրական եռանդեամբ Մեսրոպեան անուն Ընկերութիւն մը կազմեր են, որոյ նպատակն է համանուն վարժարանի աղքատիկ աշակերտաց ուսումնական պէտքերն հոգալ։ Ընկերութեան հիմնադիր Պաթմանեան Յարութիւն Ծ. Վարդապետի եւ բոլոր անդա-

[58] Հայաստան, 1847, Թ. 54։
[59] Անդ, 1848, Թ. 100։

մոց յաջողութիւն կը մաղթենք ի սրտէ[60]»։

*Ինչպէս կը տեսնուի՝* վերակազմութիւն *մըն է նախկին նոյնանուն Ընկերութեան եւ ոչ թէ նոր հիմնում մը։*

*Ընկերութիւնս չէ յիշուած «Սկսնակ»էն եւ Ալպօյաճեանէն։*

9. ՈՂՈՐՄԱԾ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1852)

1852 *Յուլիսին Սամաթիոյ մեծադղորդ հրդեհներէն մին պատահած է։ Կ՚ըսուի թէ միայն Հայոց կողմէ 1000 տուն այրած է*[61]։

*Ահա ազգային այդ մեծ աղէտին առթիւ է որ կը կազմուի* «Ողորմած Ընկերութիւն»*ը՝* «Ազգ. Գերագոյն ժողովոյ տնօրէնութեամբ»։ *«Այս առաքինական Ընկերութեան յարգի անդամները», կը գրէ օրուան թերթը, «իրենց պաշտօնին մեծութիւնն ու վստահութիւնը ճանչցող անձինքներ են։ Ազգ. գթասիրութեան եւ տառապեալ հրկիզեալց մէջ յօժարակամ միջնորդներ ըլլալով, աղէկ գիտեն որ այն աղետալի հարուածին դոհ եղող աղքատներուն, որբերուն եւ այրիներուն թաղդը իրենց խոհեմ, իմաստուն եւ անձնուէր ջանքերէն կախումն ունի։ Ողորմած Ընկերութեան յարգի անդամները այս հոգւով, այս նախանձով եւ այս առաջադրութեամբ վառեալ ըլլալնին արդէն իրենց արդիւնքովը կ՚արդարացնեն։* Աստուծոյ խանը,

[60] Ծաղիկ, 1888, էջ 1194։
[61] Մասիս, 1852, Թ. 27։

թիւլպէնտճիճերուն ժողովարանը (օնձա օտասի) ժողովուած՝ բարեսիրաց կամաւոր նուէրները կը հաւաքեն եւ տառապեալ հրկիզելոց ցաւալի վիճակը հասարակաց բարեսիրութեանը նկարագրելով եւ անոնց գութն ու կարեկցութիւնը շարժելով, ձեռմէուն եկած նպաստը ընելու կը հրաւիրեն: Իրենց գործավարկան յորդորներուն առջեւ ապառաժի պէս կարծր սիրտերն անգամ իբրեւ Մովսէսի գաւազանին հարուածէն պատռելով գթութեան աղբիւրներ վազցնելու կը սկսին...: Ահաւասիկ յիշեալ Ողորմած Ընկերութեան անդամոց անունները. Յարութիւն Գարամաճեան, Կարապետ Թօզաթլեան, Յակոբ Նորատունկեան, Յովսէփ Ալեանագեան, Յարութիւն Բենկլանցի, Մեսրոպ Անուշեան, Պետրոս Թիրեաքեան, Բիւզանդ Սուրէնեան, Գրիգոր Վիչէնեան, Մարտիրոս Բարունակեան, Գէորգ Մուպաեաճի, Արիստղոմ Պալեան, Մհի Պօղոս Թիւլպէնտճի, Մանուէլ Գաֆաֆեան, Մհի Էգնա Ոսկերիչ, Աւետիս Եազմաճեան, Մարտիրոս Խամէրեան[62]»:

Ընկերութիւնս անծանօթ է «Սկսնակ»ին եւ Ալպօյաճեանի:

10. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ՄԻԱԲԱՆՈՒԹԻՒՆ (1853)

Կազմուած է 1853ի սկիզբը: Իր Յայտարարութիւնը կը հրատարակէ Մասիս 1853

---

[62] Մասիս, անդ, Թ. 31: — Հմմտ. Նոյեմն Աղաւնի, 1852, Թ. 27:

*Օգոստ. 5ին. «Ազգիս մէջ ժամանակ ժամանակ ցանկալի նպատակաւ սիրայորդ Միաբանութիւններ կազմըվելուն եւ անոնց ըստ կարի եւ ըստ պարագայից յաջողելուն գեղեցիկ նախանձաւորութիւնը եւ գովելի եռանդը յորդորեց զմեզ որ այս օրինակ Միաբանութիւն մ'ալ մենք կազմենք* Ուսումնասիրաց Միաբանութիւն *անուամբ՝ ազգօգուտ ծառայութեանց արդեամբ նպաստելու ցանկալի խորհուրդով, որպէս զի ժամանակին արդեանց եւ տրոց առաւելութեանը կամ բաւականութեանը համեմատ ձեռնհաս եւ կարող ըլլայ ազգային յառաջադիմութեանց վրայ խորհելու եւ արդեամբ օգնելու.* վասն որոյ եւ իւրաքանչիւր անդամ իր ազգասիրութենէն յորդորեալ կը պարտաւորի ամսական բաժին մը գրուիլ, որ է քառասուն փարա եւ տարեկանը կանխիկ վճարելով դպրոցին Գանձապետ յարգելույն, անկից Միաբանութենէն կնքեալ ազատագիր մը առնել, *միանգամայն եւ խոստանալ անդրժելի որ թէ ժամանակին Միաբանութեանս օգտին համար եւ գործադրութեանը վրայ խորհիլ հարկ ըլլալով իրեն ալ հրաւէր գալու ըլլայ, յանձնառու պիտի ըլլայ աշխատասիրել գալ Միաբանութեանս որոշեալ տեղին, որ է Ս. Սահակեան Վարժարանի համանուն Թանգարանը ի Սամաթիա. Այս ալ կը ցանկամք իմացնել փափաքողներուն որ* իւրաքանչիւր անդամ եւ բաժանորդ գրուող անձը Ուսումնասիրաց Միաբանութիւնս պա-

տուելու պիտի բարեհաճի իր բարեհամբոյր եւ ազգասէր բնաւորութեամբը եւ զգաստ բարոյականութեամբն ալ, որնոր Միաբանութիւնս իբրեւ անգլանալի ուխտ կը պահանջէ իւրաքանչիւր ստորագրելեաց արժանապատուութենէն[63]»։

*Ընկերութեան նախագահն էր* Նիկողոս Զոլուեան․ «*Այս բարեհամբաւ ազգասէր անձին անունը՝ ամեն գովեստներէ եւ վկայութիւններէ զօրաւոր եւ հաւատարմագոյն երաշխաւորութիւն մըն է յիշեալ Միաբանութեան բարի եւ օգտաւէտ նպատակին*», *կը գրէ* Մասիս[64]։

*Ուրիշ տեղեկութեան չենք հանդիպիր*։

*Ալպօյաճեան կը գրէ*, *Ընկերութեան* անունը միայն *տալով*. «Հիմնադիրները, նպատակը եւ կեանքը անծանօթ է, կը կարծուի Ս. Սահակեան Սանուց Միութեան շարունակութիւնը[65]»։

*Ընկերութիւնս* որեւէ կապ չունի *Սամաթիոյ Ս. Սահակեան* «Սանուց Ընկերութեան» *հետ*, *որ* 1853*ին դեռ* կազմուած չէր․ *իսկ իր* նպատակը *եւ* հիմնադիրներէն մին — *Նիկողոս Զոլուեան* — *յիշեցինք*։

---

63 Մասիս, 1853, *Թ*. 80։
64 *Անդ*, *Թ*. 82։
65 *Գալ. Տարեգր.*, *Ա.*, *էջ* 60։

## 11. ԱԶԳԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1853)

Հիմնուած է 1853ին։ 1854 Ապրիլ 1ին հրատարակելու սկսած է «Ընտանի իմաստասէր» անունով Ամսագիր մը, որուն վրայ գրուած է. «Աշխատասիրող՝ Ազգասիրական Ընկերութիւն, Հրատարակիչ՝ Վ. Սոփեալեան»։ Մեր հաւաքածոյին մէջ կը պակսի առաջին թիւը. ունինք միայն 2—3 թիւերը։ Կը կարծենք թէ չէ շարունակուած մինչեւ 1855 տարին, ինչպէս նշանակած է Ալպօյաճեան[66]։

## 12. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1853)

«Սկսնակ Բանասէր» Սամաթիոյ «Ուսումնասիրաց Միաբանութիւն»ը 1853ին յիշելէ անմիջապէս վերջ՝ կը յիշէ նաեւ 1853ին հիմնուած «Ընթերցասիրաց Ընկերութիւն եւ Թանգարան», որուն նպատակն էր. «Ընթերցման ախորժակը տարածել Հայոց մէջ եւ անոնց մտաւոր մշակութիւնը զարգացնել[67]»։

Ժամանակակից թերթեր չեն յիշեր Ընկերութիւնս։ Թորգոմեան[68] եւ Ալպօյաճեան[69] սխալմամբ 1857ին կը դնեն Ընկերութեանս հիմնումը, առանց փաստի։

---

66 Անդ։
67 Արեւելք, 1898, Թ. 3853։
68 Երեմ. Չէլէպիի, անդ, Ա., էջ 217։
69 Անդ, Բ., էջ 78։

## 13. ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1855)

*Սամաթիոյ* Ս․ Սահակեան *վարժարանի աշակերտները* 1855*ին կը հիմնեն* «Սանուց Ընկերութիւն» *մը՝ նպատակ ունենալով* վարժարանի աղքատ աշակերտներու դպրոցական պիտոյքները հոգալ[70]։

*Ընկերութեանս յիշատակութիւնը կ՚ըլլայ* 1859էն սկսած[71]։ Մասիս[72] *կը գրէ* 1860*ին*․ «*Սամաթիոյ Ս․ Սահակեան* Սանուց Ընկերութեան *անդամներէն հռոմէական համազգի բարեսէր անձ մը՝ Ս․ Փրկչի հիւանդանոցին մէջ պատսպարեալ խղճալեաց եւ աղքատ տղայոց ճերմկեղէն հագուստի համար* 50 *թօփ Ամէրիկայի կտաւ ժողվեր է, որուն* 30 *թօփը արդէն նուիրեց յիշեալ հաստատութեան եւ մնացեալ* 20 *թօփն ալ քիչ օրէն պիտի խրկէ*»։

1862*ին Ընկերութեան Նախագահն էր* Մ․ Մամիկոնեան[73]։

1863*ին ջանք եղած է վերակազմել Ընկերութիւնը․ Ընդհ․ Ժողով կազմեր են* 48 *անդամներ եւ իրենց մէջ* 12 *անձեր Գործադիր ընտրած․ որոշեր են որ ամէն անդամ շաբաթական* 10 *փարա վճարէ Ընկերութեան․ այսպէսով հաւաքեր են* 4000 *ղուրուշ*[74]։

---

70 Արեւելք, 1898, Թ․ 3853։
71 *Հմմտ*. Մէճմ․ Հավատիս, 1859, Թ․ 309, 311․ 1863, Թ․ 489 *եւ այլն*։
72 1860, Թ․ 457։
73 Մասիս, 1862, Թ․ 525։
74 Սէր, Կ․ Պ․ 1864, *էջ* 36։

Ընկերութիւնս մերթ կոչուած է նաեւ «Սամաթիոյ Սանուց Թանգարանի Ընկերութիւն[75]»:

1866ի Սամաթիոյ մեծ հրդեհին կ'այրի Սամաթիոյ Թանգարանն ալ եւ այդ առթիւ դադրած կ'երեւայ «Սանուց Ընկերութիւն»ը: 1868ին կը վերակազմուի սակայն: 1874ին անգամ մըն ալ վերակազմուելով՝ կը կոչուի «Սահակեան Սանուց Թանգարանի Ընկերութիւն»՝ նպատակ ունենալով դարձեալ բանալ Թանգարան մը[76]: 1875ին կը յաջողի Ընկերութիւնը բանալ իր նոր Թանգարանը[77]:

1896ին կը դադրի «Սանուց»ը, սակայն 1908ին նորինորոյ կը վերակազմուի վերջնականապէս[78]:

## 14. ԽԱՂԱՂԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

Սամաթիոյ «Խաղաղասիրաց Ընկերութիւն»ը կազմուած է 1862 Յունուարին: Շարժառիթը եւ նպատակը կը բացատրէ Մասիս. «Սամաթիոյ բնակիչներէն խաղաղասէր անձինք՝ Թաղին մէջ ժամանակէ մը ի վեր ծագած ցաւալի երկպառակութեանց վերջանալուն մէկ ճարը գտնելու բաղձանքով՝ Խա–

[75] Փոքր Մասիս, 1869, Թ. 373: — Մանզ. Էփ., 1874, Թ. 2531:

[76] Մանզ. Էփքեար, 1874, Թ. 2531: — Մասիս, 1874, Թ. 1542:

[77] Մասիս, 1875, Թ. 1735:

[78] Սուրհանդակ, 1908, Թ. 61: — Ժամանակ, 1908, Թ. 42:

ազգասիրական անուամբ Ընկերութիւն մը կազմեր եւ նոյն Ընկերութեան Գործող ժողով մը հաստատելու համար 36 անձանց անուններով ընտրելեաց ցանկ մը հրատարակեր են: Յիշեալ Թաղին բնակիչներէն ոմանք... Ընկերութեան հրատարակած վերոյիշեալ ընտրելեաց ցուցակին մէջի անունները խեղաթիւրելով եւ այլայլելով՝ ուրիշ ծաղրաբանական ցուցակ մը հրատարակեր են[79]»:

Ծաղրական ցանկը հրատարակեր է Մեղու զաւեշտաթերթը[80]:

Ընկերութեան Գործ. Ժողովի Ատենապետ Գէորգ Խախմանեան Պոլսոյ Մէր Թերթին մէջ լուսաբանութիւն մը հրատարակելով՝ կը գրէ. «...գժտութեանց եւ խռովութեանց մրրիկ մը քանի մը ամիսէ ի վեր Թաղիս (Սամաթիոյ) խաղաղութիւնը կը յուզէ եւ մինչ ամէն բարեմիտ հայ անոր խաղաղ վերջին տեսնելու անձկանօք կսպասէր, նա երթալով իր ոյժը թափելու եւ տկարանալու տեղ, սկսաւ օր քան զօր զօրանալ եւ յայտնի վտանգ սպառնալ. անանկ որ իր ցուրտ հովը Սրբազան տաճարներէ ներս թափանցեց եւ Աստուծոյ երկրպագելի տունը խաղաղ օդը խռովելու յանդգնեցաւ: Թաղիս ողջամիտ հասարակութիւնը ցաւով սրտի տեսաւ որ քանի տարուան միջոցը իր ջանիւքն ու-

[79] Մասիս, 1862, Թ. 525:
[80] Մեղու, 1862, էջ 43:

քրտինքովը վաստկած յառաջդիմութիւնը նսեմանալու վրայ է... սուրբ պարտք մը կար բարեսիրաց համար պահուած, զոր եւ ոչ մէկերնին գլացան. միութիւն մը կազմել՝ եւ եղածներուն դարման մը մտածել էր այդ պարտքը. ահա այս բաղձանքով Խաղաղասիրական Ընկերութիւնը իր գոյութիւնը առաւ: Իր կոչմանն համեմատ միակ նպատակ ունի իրեն՝ թաղիս յառաջդիմութեան արգելք եղող գժտութեանց եւ խռովութեանց պատճառները վերցնելու համար ամէն կարելի եղած խաղաղասիրական միջոցները մտածել՝ խաղաղութիւը վերահաստատելու համար ամէն հոգ տանիլ...: Թաղիս բարեսէր, ողջամիտ եւ բարեպաշտ հասարակութենէն չատերը ջերմ ընդունելութեամբ եւ փափաքով ողջունեցին այս ձեռնարկութիւնը եւ յօժարամիտ փութացան անդամ գրուելու՝ ամէն ջանք եւ օգնութիւն խոստանալով: Անմիջապէս Ընդհ. Ժողովով մը Ընկերութեանս Գործ. Ժողովը գաղտնի քուէարկութեամբ ընտրուեցաւ եւ յատուկ Յանձնաժողով մը յանձնուեցաւ Ընկերութեան Կանոնագիրն եւ ուրիշ պէտք եղածները պատրաստել[81]»:

Մէր կը հրատարակէ Ընկերութեան Կանոնագիրը, որ 16 կէտերէ կը բաղկանայ. 1. Ընկերութեան Նպատակն է՝ առանց որեւէ կուսակցութեանց եւ կամ խռովիչ թելադրութեանց ուղղակի կամ անուղղակի մաս-

---

[81] Մէր, 1862, էջ 132:

նակից ըլլալու՝ Սամաթիոյ թաղին յառաջադիմութեանը թէ՛ նիւթապէս եւ թէ՛ բարոյապէս յօժարակամ նպաստել: 2. *Ընկերութեանս ամէն մէկ ձեռնարկութիւնները ազգային Սահմանադրութեան կանոնացը համաձայն պիտի ըլլան: 3. Ընկերութիւնս բաժանորդագրութեամբ հաւաքած գումարը... թաղին յառաջադիմութեանը վերաբերեալ օգտակար ձեռնարկութեանց պիտի գործածէ:* 7. *Ընկերութեանս տուրքը մէկ բաժինը ամիսը հինգ ղուրուշ է:* 9. *Ընդհ. Ժողովը գոնէ* վաթսուն եւ մէկ *հոգւոյ ներկայութեամբ վաւերական կ՚ըլլայ:* 10. *Գործ. Ժողովը...* տասներկու *հոգիէ բաղկացեալ է, որնոր Ընկերութեան բոլոր գործքերը ինք կը տնօրինէ*[82]»:

## 15. ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

*Հիմնուած է* 1862 *Մարտ* 1*ին*՝ «Սամաթիոյ մէջ ազգային ընկերական կեդրոն մը կազմելու եւ զանազան ձեռնարկութեանց արթեամբք բարեգործութիւններ ընելու նպատակաւ[83]»: *Իր Կանոնագիրը շատ ուշ՝* 1871*ին կը հրատարակէ* Մասիս *եւ ունի* 10 *Յօդուած, որոնցմէ առաջինը կ՚ըսէ. «Ամէն Հայ որ Ընկերութեանս օրէնքներն կ՚ընդունի՝ կարող է Ընկերութեանս անդամ գրուիլ, մէկ անդամ*

---

82 Մէր., 1862, էջ 161:
83 Մասիս, 1871, Թ. 1156:

*միայն մէկ օամ. լիրա տուրք վճարելով»:* *Ընկերութեան Կանոնադրութեան Քննիչ Յանձնաժողովի անդամներն են.* Յ. Արշակ, Յ. Կրճիկեան, Յ. Վարդանեան, Օ. Խօճասարեան, Յ. Խպճճեան[84].

*Առաջին յիշատակութիւնը կ'ըլլայ* 1862 *Յունիսին, երբ Ընկերութիւնը գրօսական պտոյտ եւ ճաշկերոյթ կը սարքէ դէպի Վէլի-էֆէնտի՝ Սամաթիոյ Ս. Սահակեան եւ Նունեան վարժարաններու աշակերտներուն համար, որուն կը մասնակցին նաեւ մեծեր, ուր «հանդիսին շուքը կ'աւելցնէ» Ազգային* Երաժշտական Ընկերութեան[85] *Նուագախումբը*[86]:

*Արդէն* 1862*ին վերջերը Ընկերութիւնը* գրօսարան *մ'ունի*[87]: 1866*ի Սամաթիոյ մեծ հրդեհին* կը կազմակերպէ թաղերու օգնութեան գործը[88]: 1870*ին սարքած գրօսանքի մը շահը կը յատկացնէ Մուշի* Աւազաղբիւր Գիւղի մանուկներու կրթութեան[89]:

*Ընկերութիւնը ոչ միայն սրճարան-գրօսատեղի, այլ եւ 1869էն ի վեր* Լսարան *մը բացած էր բանախօսութեանց*[90]: Աղքատներու *ալ նպաստած է, բայց* 1873*ին* պարտք

84 *Անդ*:
85 *Տե՛ս* Բերա՝ *Թիւ* 13:
86 Մասիս, 1862, *Թ*. 540:
87 Սէր, 1862, *էջ* 2:
88 Ժամանակ, 1866, *էջ* 59:
89 Փնջիկ 1870, *Թ*. 568:
90 Օրագիր, 1870, *Թ*. 122:

ընելու վիճակին հասած ըլլալով՝ կազմալուծուելու վտանգի մէջ գտնուած է պահ մը[91]: 1874ին Տնօրէն ժողովի Ատենապետն է Ս. Մէյխանէճեան, իսկ Ատենադպիրը՝ Յ. Ճանիկեան[92]:

Ընկերութեան «Հայկական գրօսարան»ը 1880ին[93] եւ 1883ին[94] դեռ բաց էր:

## 16. ՆՈՒՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864—1865)

Սամաթիոյ Ս. Սահակեան մանչերու վարժարանին կից կար նաեւ աղջիկներու բաժին մը, որ մինչեւ 1857 իր սեպհական շէնքէն զուրկ կը մնար: 1857ին բարերարներու նպաստով եւ թաղին հայ ժողովուրդի առատաձեռն տուրքերով կարելի կ'ըլլայ աղջկանց յատուկ շէնք կանգնել: 1857 Յունիս 30ին հանդէսով մը բացումը կը կատարուի այս նոր շէնքին եւ աղջկանց այս նորահաստատ վարժարանը Սրբուհի Նունէ Կուսին պաշտպանութեանը նուիրուած ըլլալով՝ կը կոչուի «Սուրբ Նունեան վարժարան աղջկանց[95]»:

Արդ, Սամաթիոյ այս Նունեան աղջկանց վարժարանին նիւթապէս եւ բարոյապէս նպաստելու համար հայ տիկիններէ եւ

[91] Տե՛ս Օրագիր, 1873, Թ. 1060:
[92] Մասիս, 1874, Թ. 1485:
[93] Մասիս, 1880, Թ. 2619:
[94] Հայրենիք, 1883, Թ. 1349:
[95] Մասիս, 1857, Թ. 284:

*օրինորդներէ կազմուած է* «Նունեան Ընկերութիւն»*ը։ Այս մասին մեզի ծանօթ* միակ *աղբիւրը Ազգարարութիւն մըն է Ընկերութեան կողմէ 1865 Հոկտ. 23ին Պոլսոյ* Պեզասեան Թռչնիկ *թերթին մէջ հրատարակուած։ Խօսքը Սամաթիոյ Հայ Տիկնանց ուղղելով՝ Այդ Ազգարարութեան մէջ Ընկերութիւնը կ՚ըսէ. «Սամաթիոյ Տիկնայք* իրենց զաւակցը դաստիարակութեան եւ ձեռարուեստի տեսչութեան մասին *կերպով մը* Նունեան Ընկերութիւնս *պատասխանատու ճանչցած է*։ Ընկերութիւնս մինչեւ հիմայ ինչ որ կարելի էր՝ ի գործ դրաւ այս մասին։ *Բայց որով– հետեւ իր պարտականութիւնները կատարած ատեն* այս միջոցիս անյուսալի արգելքներ դէմն ելան, *ուստի Ընկերութիւնս պարտք կը համարի վարժարանի այժմեան վիճակը հաղորդել պատասխանատուութեան տակ չմնալու համար։ Դուք Ձեր աղջիկները վարժարան ղրկած ատեննիդ կը յուսաք որ ուսմունք սորվելու եւ դաստիարակուելու վրայ են. բայց գիտցէք որ վարժարանը Ձեր գիտցածին բոլորովին հակառակն է. ո՛չ ուսմունք կայ, ո՛չ ձեռարուեստ, ո՛չ բարոյականութիւն եւ ո՛չ տնօրէնութիւն։* Ընկերութիւնս այս մասին բողոքեց *Թաղ. խորհրդոյ, բայց ամենեւին արդիւնք մը չտեսնուելէ զատ, դեռ վարժարանն իր անբարոյական եւ ամուլ վիճակը կը շարունակէ... Ուստի... աղջիկնիդ այն վարժարանը ղրկե–*

լով ոչ միայն բան մը չեն սորվիր, այլ Ձեր տուած մայրական բարոյականութիւնն ալ կը կորսնցնեն, զոր մեք պարտք կը համարիմք Ձեզ հաղորդել... Տնօրէն ժողով Նունեան Ընկերութեան[96]»:

Ինչպէս կը տեսնուի՝ Ընկերութիւնս նոր չէ 1865ին. առնուազն տարի մ'առաջուան ըլլալու է: Ուրիշ թերթերու մէջ ոչ մէկ տեղեկութիւն կը գտնենք: Ան անծանօթ է «Սկսնակ»ին, Թորգոմեանի եւ Ալպօյաճեանի:

## 17· ՀԻՄՆԱԴԻՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

1866ի Սամաթիոյ հրդեհը այրած ոչնչացուցած էր նաեւ Նունեան աղջկանց վարժարանը եւ աղջիկները զուրկ կը մնային օրինաւոր դաստիարակութենէ: Պետրոս Կարապետեանի համեմատ հայ Կաթողիկէ ազգային բարերար Պօղոս Պէյ Մըսըրլը փառաւոր շէնք մը յատկացնելով Սամաթիոյ աղջկանց համար՝ թաղին հայ ժողովուրդին երախտագիտութեան արժանացած է[97]:

1868ին «Սամաթիոյ մէջ եօթն ազգասէր անձինք կը հաստատեն Հիմնադիր Ընկերութիւնը», որ նպատակ ունէր Սամաթիոյ մէջ «Աքապեան անուն վարժարանի մը հաստատութեամբ դաստիարակութեան լոյսը նաեւ

---

[96] Պեզասեան Թռչնիկ, 1865, էջ 317—318:
[97] Հնդաղարեան Յիշատակարան, անդ, էջ 139:

գեղեցիկ սեռին մէջ սփռելու եւ ընդհանրացնելու[98]»:

*Ընկերութիւնը կը յաջողի* 1869 *Յունուար* 6*ին բանալ Սամաթիոյ* Ագապեան աղջկանց գիշերօթիկ վարժարանը՝ *տնօրէնութեամբ* Կարապետ Փանոսեանի[99]:

*Ընկերութիւնս անծանօթ է «Սկսնակ»ին, Թորգոմեանի եւ Ալպօյաճեանի:*

## 18. ՆՊԱՍՏԱՄԱՏՈՅՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Սամաթիոյ* «Նպաստամատոյց Ընկերութիւն»*ը կազմուած է հետեւեալ պարագաներու մէջ.* 1870 *Փետր. 1ին Սամաթիոյ Ս. Սահակեան վարժարանի մէջ դպրոցական հանդէս մը տեղի կ'ունենայ ի պատիւ Ս. Սահակի եւ Ս. Մեսրոպայ, ուր յառաջադէմ աշակերտները ատենախօսութիւններ կ'ընեն, իսկ վարժարանի Հոգաբարձուներէն մին ալ խօսքը ծնողներուն ուղղելով կը յայտնէ թէ վարժարանը նիւթական ծանր տագնապի մէջ կը գտնուի եւ կը շեշտէ ծնողաց բարոյական պարտքը՝ ճիգ մը ընել վարժարանը այդ նեղ կացութենէն հանելու համար: Յետոյ յիշեցնելով թէ աշակերտներու մեծագոյն տոկոսը աղքատ ծնողներու զաւակներէ կազմուած է՝ իբրեւ հիմնական դարման կ'առաջարկէ անմիջապէս Ընկերութիւն մը հիմնել,*

---

[98] Մասիս փոքր, 1868, Թ. 237:

[99] Մասիս, 1869, Թ. 902: — *Հմմտ.* Օրագիր, 1871, Թ. 504:

*որ Նպատակ ունենայ վարժարանին օժանդակել նիւթական նպաստներով*: *Այս խօսքերը «մեծ տպաւորութիւն ընելով բոլոր ունկընդրաց վրայ*, Նպաստամատոյց անուն Ընկերութիւն *մը կազմել որոշեցին անմիջապէս եւ ստորագրութիւն բանալով*՝ շաբաթը 40 փարայ վճարելու պայմանաւ ութսնի չափ բաժին գրուեցան[100]:

*Հ. Ս. Ալաճաճեան*, Փնջիկի *խմբագիրը բանի մ'օր վերջ ալ կը հաղորդէ. «Գոհութեամբ կը լսենք որ այս նոր Ընկերութիւնը օրէ օր յառաջ երթալու վրայ է եւ առ այժմ 200ի մօտ բաժին ստորագրուած են...: Այս նոր հաստատութիւնն ալ արդարեւ կ'ապացուցանէ թէ Սամաթիա թէեւ դրեթէ բոլորովին մոխիր դարձած է եւ մեր ազգայնոց շատերը մոխրոց վրայ նստած են, բայց իրենց սրտին մէջ դարձեալ վառ ու բորբոք մնացած է ուսումնասիրութեան հուրն...: Աշխատեցէ՛ք, ազնի՛ւ Սամաթիացիք, աշխատեցէ՛ք միութեամբ*. միութիւնը՝ ինչպէս գիտէք՝ ամեն դժուարութեանց կը յաղթէ եւ յարատեւութիւնն ու երկայնմտութիւնը հրաշալեաց ծնունդ կու տան[1]»:

1870 *Հոկտ.ին Ընկերութեան Դիւանի Ատենապետ* Ա. Մկրտիչեան *բոլոր անդամները Ընդհ. Ժողովի կը հրաւիրէ*[2]:

---

[100] Փնջիկ, 1870, *Թ*. 508:
[1] Փունջ, 1870, *Թ*. 524:
[2] *Անդ*, *Թ*. 639:

Ընկերութիւնը տասը տարի կը շարունակէ իր օգտակար ծառայութիւնը: 1879ին ծանուցում մը կ'իմացնէ թէ Օսմանիէ Թատրոնին մէջ «Թափառական Հրեայ» պիտի ներկայացուի՝ ի նպաստ Սամաթիոյ Նպաստամատոյց Ընկերութեան[3]:

Այս ալ անծանօթ մնացած է Սամաթիոյ Ընկերութիւններուն վրայ գրողներուն:

## 19. ՍԱՀԱԿԵԱՆ ԹԱՏԵՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

Հիմնուած է 1870 Փետրուարին: Իր առաջին ծանուցումը տուած է 1870 Մարտ 9ին, ուր կ'ըսէ. «Սամաթիոյ երիտասարդութիւնը, որ ժամանակէ մը ի վեր կը փափաքէր թատերական խումբ մը կազմելու, մօտերս իր փափաքանաց հասած ըլլալով՝ առաջիկայ Կիւրակէ գիշեր՝ որ է Մարտ 15, իր առաջին ներկայացումը պիտի տայ Ս. Սահակեան վարժարանի մէջ: Թատերախաղն է Մեծն Ներսէսի սրտաշարժ ողբերգութիւնը...

1870 Մարտ 9 Ի Դիմաց Ս. Սահակեան Սամաթիա Թատերական Ընկերութեան

Ռ. Պարիկեան[4]

Ընկերութեան Ա. ներկայացումին Մուտքը կ'ըլլայ 1899 ղուրուշ. Ելքը՝ 1551 ղուրուշ. զուտ շահը 348, որուն կէսը Ընկերութիւնը Սահակեան վարժարանի կը նուիրէ[5]:

---

[3] Մասիս, 1870, Թ. 957:
[4] Մասիս, 1879, Թ. 2283:
[5] Փնջիկ, 1870, Թ. 527:

## 20. Ա. Բ. Գ.Ի ԲԱՐԵԿԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

Ընկերութեանս հիմնումը 1870ին դրած են սխալմամբ «Սկնակ» եւ Ալպօյաճեան: ճիշդ թուականն է 1871 Օգոստ. 2:

Ընկերութեան Վարչութիւնը նամակ մ'ուղղելով Մասիսին՝ կը տեղեկագրէ. «... Խմբագիր. Սամաթիոյ հայուն եւ հայուհւոյն ապագային սպառնացող այն ահռելի պարագաներն ի մեծ ցաւ սրտի ազգասիրաց, ճիշդ յաղթանակ տանելու պահուն, զոզ ընագդմամբ իմն հայասէր եւ հայրենասնւէր երիտասարդք ոմանք ի մի ձգուելով՝ Ա. Բ. Գ.ի Բարեկամ Ընկերութիւնը ծնան... Ա. Բ. Գ.ի բարեկամք յառաջարկէզ կը նետուին թեկն ածել այդ մեծ նպատակին, արհամարհոտ ժպտելով այն արգելքներուն, զոր ունին դարրնել խաւարին գործաւորք, աչքն անքթիթ յառելով իր սուրբ նպատակին՝ որ իր տեսակին մէջ երկուքի կը բաժնուի. այսինքն իր հասոյթին 2/3ով նպաստել Ագապեան վարժարանի եւ 1/3ով հաստատել Ընթերցարան մ'ի Սամաթիա: Ա. Բ. Գ.ի Բարեկամ Ընկերութիւնը ծնաւ այնպիսի ժամանակ մը, յորում... Ագապեանի անկումը կ'ուզուէր. ժամանակ մը, յորում Սամաթիոյ հայ երիտասարդութեան երակաց մէջ անտարբերութեան եւ անընթերցասիրութեան թոյնը տակաւ կը զօրանար. ջանաց յաջատութիւն մաղնխել երկուքն ալ... երկլիցս ձայն տուաւ հայ երիտասարդութեան. 260 անձինք ցարդ

*արձագանգ տուին...։ Շնորհակալութի՛ւն իրենց. ապրի՛ն բարեբարք։ Ընկերութիւնս այսօր կը փութայ պատ. Լրագրոյդ միջոցաւ հրատարակել իր* առաջին ամսեայ արդիւնքը, *որ է 260 բաժանորդ. ընդ ամենը չարաթա-կան 507 բաժնի գին* մէկ ամսուան 1014 *դրշ. ուսկից...* 578 *դրշ. Ադապեանի բաժինը յանձնեցինք Փանոսեան Էֆ.ի եւ ընկալագիր ընդունեցինք... մեր անկեղծ շնորհակալեաց հաւատքին կը նուիրեմք այն մեծարոյ ան-ձանց, որք հաճեցան իրենց նուէրներով պա-տուել* Ընթերցարանս, *որոնց կարգէն են նաեւ Արարատայ, Եփրատայ եւ Մանգումէի Մեծ. Խմբագրապետք, որ հաճեցան իրենց թեր-թերէն մէյմէկ օրինակ նուիրել։*

*Ընդունեցէք մեր անկեղծ յարգանքը*

*Սամաթիա, 2 Սեպտ.* 1871։

*Ատենադպիր*

*Ռ. Ս. Գ. Խմհաճեան*

*Ա. Բ. Գ.ի Բարեկամ*

*Ընկերութեան Վարիչ Ժողովոյ*

*Ատենապետ*

*Ալիքսան Սարգիսեան*[6]

*Առաջին ամսէն բացած էր Ընկերութիւնը* Ընթերցարան *մը, ինչպէս տեսանք. իսկ Սեպտ.ին կը բանայ* Լսարան *մը, ուր կը խօ-սին* Կարապետ Փանոսեան[7], Խաչատուր Ոս–

[6] Մասիս, 1871, *Թ*. 1136։
[7] Մասիս, 1871, *Թ*. 1138։

կանեան [8], Գրիգոր Պաղտասարեան եւ Կարապետ Պաղնեան [9]:

Ընկերութիւնը կը նպաստէ նաեւ չքաւորներուն [10]:

## 21· ՏՆՏԵՍԱԳԻՏԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1871)

Անունին կը ծանօթանանք 1871 Դեկտ. 17ին: Ունի Ընթերցարան, ուր փափաքողներու դասատուութիւն կ'ընէ հայերէնի եւ թուաբանութեան, խրախուսիչ դաւէն 40 փարա գանձելով [11]: Այս Ընթերցարանը կը գտնուէր Յունաց Այի–Մինայի կից:

Ընկերութիւնս ուրիշ ոչ ոքէ յիշուած է:

## 22· ԹԱՆԳԱՐԱՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

Ընկերութեանս մասին մեր ունեցած ծանօթութեան միմիակ աղբիւրը Ընկերութեան անդամավճարի ընկալագիրն է, զոր կը գտնենք մեր Մատենադարանի «Հայերէն լեզուաւ գրուած թուղթ ու թղթիկներու» հաւաքածոյին մէջ: Այդ ընկալագիրը Ընկերութեան տուած 43րդ ընկալագիրն է, տրուած Սերովբէ էֆ· Շիշէճեանի, որ իբրեւ Ընկերութեան անդամ վճարած է 16 բաժինի համար 4 դուրուշ: Ընկալագիրն ստորագրողներն են. Ընդհ. Ժողովի եւ Տնօրէն Ժողովի

[8] Անդ, Թ. 1147:
[9] Անդ, 1872, Թ· 1224.
[10] Օրագիր, 1873, Թ· 912:
[11] Անդ, 1871, Թ· 628:

Ատենապետ՝ Կ. Յ. Քրոտնեան եւ Գանձապետ՝ Տ. Ք. Զիլնեան: Ընկալագիրը կը կրէ 1874 Յունիս 2 թուականը, իսկ խորագիրն է. «Ընկալագիր Թանգարանական Ընկերութեան Ս. Սահակեան վարժարանի»:

Զարմանալի է որ ժամանակակից հայերէն թերթերու մէջ ոչ մէկ յիշատակութեան կը հանդիպինք:

23. ԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

«Սկսնակ Բանասէր»ի համեմատ[12] Սամաթիոյ մէջ 1875ին հաստատուած է «Արուեստասիրաց Ընկերութիւն» մը՝ «առ ի քաջալեր արուեստագիտաց»: Ո՛չ ժամանակակից եւ ոչ ալ յաջորդ շրջաններէ գտած ենք որեւէ յիշատակութիւն մը:

24. ԴՊՐՈՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

Թորգոմեանէ[13] միայն յիշուած է Ընկերութիւնս, առանց որեւէ աղբիւր մատնանշուելու:

25. ՊԱՐՋԱՄԷՐ ՀԱՅՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

Հիմնուած է 1879 Յուլիս 15ին: Առաջին արձագանգողը Փունջն է, որ 1879 Յուլ. 25ին կը գրէ. «Բերկրութեամբ կլսեմք թէ պարզասիրութեան վրայ յաճախ խօսուած նա–

[12] Արեւելք, 1898, Թ. 3853:
[13] Երեմ. Չէլէպիի, անդ, Ա., էջ 217:

*ները ու քարոզները վերջապէս այս օրերս լսելի եղած են։ Մենք կփափաքէինք որ Իսկիւտարի Հայուհեաց Ազգանուէր Ընկերութիւնը այս մեծ գործին առաջին ձեռնարկողն ըլլար.* սակայն Սամաթիոյ Հայ Տիկնայք արժանացած են այս փառաց, Պարգասիրաց անուամբ Ընկերութիւն մը կազմելով եւ մինչեւ ցարդ երկու նիստ ընելով թաղին Նունեան վարժարանին մէջ[14]»։

*Ընկերութիւնը կազմողներն են Սամաթիոյ* Նունեան-Վարդուհեան վարժարանի նախկին աշակերտուհիները եւ թաղին տիկինները ու օրիորդները[15]։

*Ընկերութեան Տնօրէն Խորհուրդի առաջին Ատենապետը՝* Վիքթօրիա Բ. Զիլնեան *եւ Ատենադպիրը՝* Բերուզ Գ. Բէրէստէճեան *կը գրեն. «Պարգասէր Հայուհեաց Ընկերութեան Տնօրէն Խորհուրդը պարտ անձին կը համարի հրաւիրել բոլոր Ազգասէր եւ Տնտեսագէտ Հայուհիք՝ որք կը փափաքին մասնակցիլ Ընկերութեանս, Ընկերութիւն մը, որ երկու վսեմ նպատակ միանգամայն կը պարունակէ իւր մէջ.* ջնջել Հայազգի իգական սեռի մէջէն նորասիրութեան ազգակործան մոլութիւնը եւ օգնել Ազգին բարոյական յառաջդիմութեան . . .[16]»։

*Ընկերութեան* Կանոնագիրը *ունի* 13 *Յօ-*

[14] Փունջ, 1879, *Թ*. 1393։
[15] *Անդ*, *Թ*. 1397։
[16] Մասիս, 1879, *Թ*. 2399։

*ղուած՝ Հրատարակուած* Մասիս[17] *եւ* Թէրճ. Էֆքեարի[18] *մէջ: Կու տանք նմոյշ մը.* «*Ընկերութեանս* նպատակն է նորածնութիւնը ջնջել Հայ Ազգիս մէջէն, որոշելով մի պարզ եւ վայելուչ ձեւ զգեստի եւ գլխարկի: *Սոյն* Հայկական Համազգեստը, *որ* երկու տարին անգամ մը թեթեւ փոփոխութիւններ պիտի կրէ *դարձեալ Տնօրէն ժողովոյ կողմանէ որոշելով*՝ կը բաղկանայ երկու կտորէ. մի կոնկէնէ (*բէչ*) եւ մի վրանոցէ. գլխարկն ալ զգեստին համեմատ, որոյ օրինակը (*մօտէլ*) պիտի ընդունի մէն մի անդամոյ» (*Յօդ.* 1):

«Ամսական բաժնեգինն է մէկ արծաթ դահեկան» (*Յօդ.* 2). «Բաժնեգիններէն գոյացած հասոյթը պիտի գործածուի ազգին բարոյական յառաջդիմութեանը նպաստելու» (*Յօդ.* 3). «Ո՛ ոք կամի, կրնայ ընկերուհի *ընդունուիլ*, առանց բաժնեգին վճարելու, բաւ է որ Հայկական Համազգեստը կրելու փափաքը յայտնէ» (*Յօդ.* 5):

*Ընկերութեան Ընդհ. Ժողովի Ատենապետ* Տիկ. Ազնիւ Կ. Ալանանեանի *ուղղուած գրութեան մը մէջ 12 հանրածանօթ անձեր շնորհակալութիւն կը յայտնեն ընդհանուր Հայութեան կողմէ* «*Պարզասէր Հայուհեաց Ընկերութեան*»՝ *իրեն հանրային օգտակար ձեռնարկին համար եւ կը քաջալերեն ու կը խրախուսեն Ընկերութիւնը որ չարունակէ իր*

---

[17] *Անդ:*

[18] 1879, *Թ.* 631:

*ըկած այնքան արգօգուտ գործը՝* «զգոյշ պահելով զՀայուհիս պճնասիրութեան թակարդն իյնալէ, յորում կը բռնուին ստէպ անզգալաբար եւ ուղեցոյց լինել նոցա բարեձեւ զարդուք եւ վայելուչ չափաւորութեամբ զգեստաւորելու[19]»:

*Ընկերութիւնը իր կանոնագրութիւնը կը գործադրէ եւ իր նախագծած «Հայկական Համազգեստ»ը կը կիրարկէ իր անդամներու շրջանակին մէջ մինչեւ* 1881 : *Քննադատութիւններ ու հակառակութիւններ պակաս չեն ըլլար, բնականաբար:* 1881 *Մարտին տեղի ունեցած Ընդհ. Ժողովի մը մէջ շատ մը տիկիններէ եւ օրիորդներէ եղած առաջարկին վրայ՝* Կանոնագիրը կ'ենթարկուի վերաքննութեան *եւ այդ առթիւ* զգեստներու եւ գլխարկի յատուկ ձեւեր սահմանելու Յօդուածը կը ջնջուի *եւ* «միմիայն պարզասիրութիւնը ընկերուհեաց համար իբր պարտաւորիչ սկզբունք կ'ընդունուի[20]»:

26. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1888)

*Սամաթիոյ* երից թաղից *միացեալ* Աղքատախնամ Ընկերութիւնը 1888 *Փետր. 1ին կազմուած է:* Մասիս[21] *կը գովէ անդամներու եղբայրսիրական գործը՝ տնէ տուն պտտելով աղքատներու նուէրներ հաւաքելուն համար:*

---

19 Մասիս, *անդ*, *Թ*. 2471:
20 Մանզ. Էփքեար, 1881, *Թ*. 4599:
21 1897, *Թ*. 81:

1908ին կը վերակազմուի եւ ջանք կ'ըլլայ Հիմնադրաց ժողովի ընտրութեան[22]: 1914ին Հիմնադրաց ժողովը կ'ուզէ «լաւ կազմակերպութիւն մը տալ Ընկերութեան[23]»: Կը կազմէ «Օժանդակ» Յանձնախումբ մը թաղեցի Տիկիններէ[24]:

## 27. ՅԱՌԱՋԴԻՄԱՍԷՐ ՀԱՅՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

Կազմուած է 1908 Հոկտ.ին: Իր նպատակն է. «Իգական սեռի մտաւորական զարգացման սատարել»: 1908 Նոյ. 16ին Նունեան–Վարդուհեան վարժարանի մէջ կը բանայ ձրի դասախօսութեանց ընթացք մը[25]:

Ունեցած է իր Կանոնագիրը: Դիւանը կը կազմէին.

Տիկ. Լօժէնի Կիւմիւշկերտան
Տիկ. Զարուհի Զարբհանէլեան
Օր. Շուշան Սօխալեանց
Օր. Զարուհի Սարաֆեան
Տիկ. Սիրանոյշ Իւթիւճեան
Օր. Սոֆի Զիլճեան:

(Մանզ. Էփքեար, 1908, Թ. 2297):

---

22 Սուրհանդակ, 1908, Թ. 85, 106:
23 Ժամանակ, 1914, Թ. 1837:
24 Անդ, Թ. 2011:
25 Ժամանակ, 1908, Թ. 26:

## 28. «ՎԱՀԱԳՆ» ՄԱՐՄՆԱՄԱՐԶԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908—1909)

1911 *Յուլիսին կը գրէ* Մարմնամարզ[26]. «*Սամաթիոյ մէջ* անկէ առաջ *կազմուած* «Վահագն» Մարմնամարզական Միութիւնը *վերջերս* կազմալուծուած էր. *այս անգամ Սամաթիոյ «Ժողովուրդ» Լսարանը զայն* վերակազմեց *իր նախաձեռնութեամբ: Առ այժմ անդամներու թիւը* 36 *է. խումբին ամսական մուտքն է մօտ* 140 *դրուշ*»:

*Միութեան հիմնումը* 1908—1909*ին կրնայ ըլլալ*:

## 29. «ԺՈՂՈՎՈՒՐԴ» ԸՆԹ. ԼՍԱՐ. ՄԻՈՒԹԻՒՆ (1909—1910)

*Ինչպէս տեսանք՝ կը յիշուի* 1911*ին: Հիմնարկն ըլլալու է* 1909—1910*ին: Իր ամբողջական տիտղոսն է.* «Ժողովուրդ» Ընթերցարանի Լսարանական Միութիւն:

1912*ին ցերեկոյթ մը կը սարքէ Սահակեան վարժարանի մէջ*[27]:

1918 *Դեկտ.ին Միութիւնը վերակազմուելով՝ կը կոչուի* «Ժողովուրդ» Հայկական Միութիւն. *Կ՚ունենայ Ծրագիր–Կանոնագիր. կը ձգտի իր դրօշին տակ միացնել Թաղին բոլոր կազմակերպութիւնները՝ համերաշխութեան ոգիով: Իր Դիւանը կը կազմէին. Լեւոն Կանտոյեան (Ա. Ատենապետ)*,

---

[26] Կ. Պ. 1911, էջ 158:

[27] Ժամանակ, 1912, Թ. 1046:

*Մկրտիչ Ջանանեան (Բ. Ատենապետ), Արշակ Յակոբեան (Ա. Ատենադպիր), Յարութիւն Թուլլաճեան (Բ. Ատենադպիր). Իսկ Վարչ. ժողովը՝ Բարունակ Իսկէնտերեան, Եղուարդ Միրիճանեան, Կարապետ Պապայեան, Համբարձում Պիւքիւճեան, Միքայէլ Թուլլաճեան, Յարութիւն Ներսէսեան, Ֆրանկիւլ Պաքրճեան*[28]:

## 30. «ԱՍՏՂ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1911—1912)

*Գեղարուեստական Ընկերութիւն մը կը թուի ըլլալ Սամաթիոյ «Աստղ»ը, որուն գոյութեան տեղեակ կ՚ըլլանք իր մէկ գեղարուեստական կազմակերպութեան առթիւ Պէյքոզ՝ Աբրահամ Փաշայի անտառին մէջ*[1]:

## 31. ՈՒՍՈՒՑՉԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

*Կազմուած է 1913ի սկիզբը: Իր Վարչութեան անդամներն էին.*

| | |
|---|---|
| *Ֆրանկիւլ Պաքրճեան* | *Ատենապետ* |
| *Կոպեռնիկ* | *Ատենադպիր* |
| *Յարութիւն Եայլըեան* | |
| *Մկրտիչ Զիլեան* | |
| *Օր. Սիրանոյշ Թունուզլեան* | |
| *Օր. Լուիզ* | |
| *Օր. Ագնիւ Պէրպէրեան*[2]: | |

[28] *Անդ*, 1918, *Թ*. 3394:
[1] *Անդ*, 1912, *Թ*. 1176:
[2] Ժամանակ, 1913, *Թ*. 1377:

### 32. ՀԱԿԱԼՔՈԼԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

*Հաւանօրէն* 1913*ի սկիզբը հիմնուած: Կը սարքէ առողջապահիկ բանախօսութիւններ*[3]*:*

### 33. «ԴԵՌԱՓԹԻԹ ՅԱՌԱՋ» ՕՐԻՈՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Կազմուած է* 1918*ի զինադադարէն վերջ: Կը սխալի՞նք եթէ ըսենք թէ Նունեան–Վարդուհեան Սանուհիներէն կազմուած է:* 1918 *Դեկտ.ին նախ կը յիշուի իբրեւ* «Դեռափթիթ Սանուհեաց Միութիւն», *որ ցերեկոյթ մը կը կազմակերպէ*[4], *յետոյ* 1919 *Ապրիլին կ՚անուանուի* «Դեռափթիթ Յառաջ» Օրիորդաց Միութիւն[5]:

### 34. «ՄԱՍԻՍ» ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ (1918)

*Իր անուան կը հանդիպինք* 1918 *Դեկտեմբերին*[6] *եւ* 1921*ին*[7]*:*

### 35. ՔՆԱՐ ԵՐԳՉԱԽՈՒՄԲ (1918—1919)

*Կը յիշուի* 1919 *Մայիսին*[8]*:*

---

[3] *Անդ*, *Թ.* 1629:
[4] *Անդ*, 1918, *Թ.* 3412:
[5] *Անդ*, 1919, *Թ.* 3506: — Ճակատամարտ, 1919, *Թ.* 48:
[6] Ժամանակ, 1919, *Թ.* 3541:
[7] *Թէոդիկ*, *Ամէն. Տարեց.*, 1921, *էջ* 308:
[8] Ժամանակ, 1919, *Թ.* 3541:

### 36· ՀԱՅԿԱԿԱՆ ՄԻԱՑԵԱԼ «ԿԱՅԾԱԿ» ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Թատերական ընկերութիւն մըն է Սամաթիոյ «Կայծակ»ը, որ 1919ի ամառը երեւան կու գայ եւ ներկայացում կու տայ Եէնիգափուի ծովեզերքը՝ մասնակցութեամբ «Նոր Այգ» նուագախումբի*[9]*: Միայն չկրցանք ստուգել թէ ինչո՞ւ* «միացեալ» *տիտղոսը կը կրէ: Այնպէս կ'երեւայ թէ զանազան ընկերութիւններու միացում մըն է:*

### 37· ԵԱԶՄԱՃԻ ԲԱՆՈՒՈՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1920)

*Կազմած են Սամաթիոյ, Եէնիգափուի Գումգափուի եւ Մեւլահանէի «եազմաճի» հայ բանուորները՝ իրենց կենդրոն ունենալով Սամաթիան եւ Ակումբ մը՝ Սկիւտար, Նոր-Թաղ*[10]*:*

### 38· ՍԱՀԱԿԵԱՆ-ՆՈՒՆԵԱՆ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (··· 1952)

*Հիմնումի թուականը թէեւ անծանօթ է մեզ, սակայն* երկսեռ *«Սանուց»ս հին Միութիւն մը չէ: Յիշողն է Երջանկին Տարեցոյցը*[11]*:*

---

[9] *Անդ.*, 1919, Թ. 3588:
[10] Ժողովուրդի Ձայնը, 1920, Թ. 591:
[11] 1953, էջ 12:

## 39· ՍԱՄԱԹԻՈՅ ՆԱԽԿԻՆ ԹԱՂԵՑԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1952)

*Պարիս գտնուող Սամաթիացիները* 1952*ին կը հիմնեն* «Սամաթիոյ Նախկին Թաղեցիներու Միութիւն»*ը, որուն ծրագիրն է*. «Առանց քաղաքականութեամբ զբաղելու, աշխատիլ վառ պահել հայկական ոգին եւ մշակոյթը... պայքարիլ այլասերման վտանգին դէմ... զարկ տալ իրերօգնութեան. Հայը Հայ պահել...[12]»:

*Վարչութեան անդամներն են*. Տիրան Յարութիւնեան (*Հիմնադիր*), Ժիրայր Փափազեան (*Նախագահ*), Լեւոն Շէրէմէթեան (*Քարտուղար*), Տիկ. Մառի Ստեփան (*Գանձապահ*), Տիկ. Լուիզ Ադամեան (*Հաշուակալ*)[13]:

## ՆԱՌԼԸԳԱԲՈՒ (Սամաթիա)

### 1· ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1854)

*Սամաթիոյ մեծ թաղին կից եւ նախապէս անոր մաս կազմող* Նառլըգափու *թաղին այս Ընկերութեան մասին կը գրէ ժամանակակից հայ թերթը*, 1854 *Յուլիս* 29 *թուականով*. «Նառլըգաբուի տղայոց եւ աղջկանց դպրատուններուն բարեկարգու-

---

12 Յառաջ, *Փարիզ* 1952, *Թ*. 2227:
13 *Անդ*:

թեանը համար *այս օրերս Ընկերութիւն մը հաստատուեցաւ* Մովսէս Խորենացւոյ *պան-ծալի* անուանը նուիրեալ, *որուն անդամներն են հետեւեալ յարգոյ անձինքը*.

*Վերատեսուչք*
*Մանուկ Գարամաճեան*
*Մինաս Թօզաթլեան*
*Գանձապետք*
*Ստեփան Թուղլաճեան*
*Յօհաննէս Մուպահեաճեան*

*Այս* նորահաստատ *Ընկերութիւնը . . . որոշեց որ 5000 տոմսակ պատրաստէ ամեն մէկուն գինը հինգ ղուրուշի . . . որով 25·000 ղուրուշի դրամագլուխ մը պատրաստելով, զպրատունները հաստատ կերպով բարեկար-գին ու յառաջ երթան*[14]»: *Ընկերութիւնս կը կոչուի նաեւ* «Խորենեան» (Մանզ. Էֆքիար, 1870, *Թ*. 1257):

*Նալըրգափուի մէջ* 1849*էն ի վեր կար* Խորենեան-Վառվառեան *անունով վարժա-րան մը*[15], *որուն պաշտպան կ'ըլլայ այս Ըն-կերութիւնը*:

1868*ին Ընկերութեանս կը նուիրէ* Յա-րութիւն Թափամաճեան սենեակ մը՝ Վա-լիտէ-խանի մէջ. 1869*ին* Կարապետ Փափա-զեան քսան հատ օսմանեան քօնսօլիտէ, *որուն համար հրապարակաւ շնորհակալու-*

[14] Մասիս, 1854, *Թ*. 131:
[15] *Թորգոմեան, անդ, Ա.*, *էջ* 203:

թիւն կը յայտնէ Ընկերութիւնը իր Տնօրէն Ժողովի միջոցաւ, այսինքն՝ Փոխ–Ատենապետ Խոսրով Թոփհանէլեան եւ Փոխ–Ատենադպիր Սարգիս Արապեան[16]: 1870ին ալ Պօղոս Վ. Նաթանեանի միջոցաւ Ստեփան Ճանիկեան Ընկերութեան կը նուիրէ 20 Փրանքնոց արժէտոմս մը[17]:

Ընկերութեան Կանոնագիրը ծանօթ չէ մեզի, միայն գիտենք որ շաբաթական անդամավճարն էր 10 փարա[18]: Ընկերութիւնը Թաղին երկսեռ վարժարանի Հոգաբարձութիւնը իր վրայ առած էր եւ այդ պաշտօնին կը յատկացնէր 7 անձ: Նշան Ա. Տիրվանեան (Վանեցի) կը գովէ Ընկերութեան խնամքը վարժարանին վրայ եւ վերջինիս յառաջդիմութիւնը ուսման մէջ[19]:

1880ին կ՚ըսուի թէ Ընկերութիւնը «բաւական տարիներէ ի վեր» դադրած ըլլալով՝ կը մնար միայն գոց սնտուկ մը, Թաղականութեան մօտ, սակայն հին ու նոր անդամներ Ընդհ. Ժողով մը կազմելով՝ կը վերականգնեն Ընկերութիւնը, կ՚ընտրեն իրենց Դիւանն ու Գործ. Ժողովը եւ կը շարունակեն իրենց մշակութային աշխատանքը: Այդ ատեն Ընդհ. Ժողովի Ատենապետն էր Մար–

16 Փունջ Մասիս, 1869, Թ. 363:
17 Մասիս, 1870, Թ. 1003:
18 Ծիածան, 1870, Թ. 87:
19 Օրագիր, 1870, Թ. 124:

գար Մինասեան, *իսկ Ատենադպիրը* Մ. Կ. Տէօքմէճեան[20]։

## 2. ՆՊԱՍՏԱՄԱՏՈՅՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869—1870)

*Հիմնումի թուականը կարելի չեղաւ ճշդել։ Կը յիշուի 1870 Յունիսի սկիզբը։ 1870ի Սահմանադրութեան տարեդարձին առ-թիւ շոգենաւ վարձելով զուտ շահ կ'ունենայ* 1361 *դրշ., որոնցմով* 5 *հատ արժեստոմս կը գնէ եւ կը յանձնէ «Խորէնեան Ընկերու-թեան»՝ երկսեռ վարժարանի օգտին համար, աւելցած* 38 *դրշ.ն ալ* «տղոց գրատան» *կը յատկացնէ*[21]։ *Հետեւաբար Ընկերութեանս նպատակն եղած է նիւթապէս օժանդակել Նարլըգափուի վարժարանին։ Դժբախտաբար կը պակսին անդրադոյն մանրամասնութիւն-ներ։*

*Ընկերութիւնս անծանօթ է Ալպօյա-ճեանի։*

## 3. ԽՆԱՄԱՏԱՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

Վարժարաններու աղքատ աշակերտաց ձրի դասագրքեր մատակարարել — *ահա՛ Ըն-կերութեանս* նպատակը։ *Բերայի վարժա-րաններուն* 116 *դանազան դասագրքեր նուի-րած է* 1880 *Սեպտեմբերին*[22]։ *Նոյնը ըրած է*

[20] Թէրճիւմանը էֆքիար, 1880, Թ. 894։ — *Հմմտ.* Մանզ. էֆքիար, 1880, Թ. 4426։

[21] Մանզ. էֆ. 1870, Թ. 1257։

[22] Թէրճ. էֆ. 1880, Թ. 930։

*Նարլըգափուի թաղին՝* 1880 *Դեկտեմբերին*[23]:

1883*ին վերակազմուած՝ կոչուած է «Խնամատար* Միութիւն» *եւ նուիրած Ազգ. Հիւանդանոցին* 100 *ղուրուշ*[24]:

*Անծանօթ է Ալպօյաճեանի:*

## 4. ԴՊՐԱՑ՝ ԴԱՍ (1882)

*Նարլըգափուի Ս. Յովհաննէս եկեղեցւոյ* Դպրաց Դասի Ընկերութիւնը *հիմնուած է* 1882*ին, ինչպէս կը տեսնուի* 1904*ին տպուած «Կանոնագիր»էն*[25]:

*Ընկերութիւնը կը շարունակուի:*

# ԵԷՆԻՄԱՀԱԼԼԷ (Սամաթիա)

## 1. ՈՒՍՈՒՄՆԱՏԱՐԱԾ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860)

*Սամաթիոյ կից* Եէնիմահալլէ *փոքր թաղին* Ուսումնատարած Ընկերութիւնը *հիմնուած է* 1860 *Հոկտեմբերին՝ նպատակ ունենալով ուսումը եւ կրթութիւնը տարածել Հայ ժողովուրդին մէջ: Ասիկա այն Ընկերութիւնն է որ Ալպօյաճեանի քով յիշուած է անորոշաբար իբրեւ կենդրոն ունենալով*

23 *Անդ*, *Թ.* 1009:
24 Մանզ. էփ. 1883, *Թ.* 5153:
25 *Կանոնագիր Դասուց Դպրաց Մայր եկեղեցւոյ եւ այլոց եկեղեցեաց, Կ. Պ.* 1904, *էջ* 4:

Իմամ Ալի խան (*տե՛ս Գաղ. Տարեգր.*, *Բ.*, *էջ* 83, *Թիւ* 75—76) ։

*Ընկերութիւնս յետոյ իր անունը փոխած է* «Մատենադարան» *Ընկերութեան*, *առանց փոխելու իր նպատակը եւ իբրեւ կեդրոն ունեցած է*, *բացի Եէնիմահալլէէն եւ Շու*կայէն, *նաեւ* Իմամ Ալի խանը։ *Պոլսոյ* Մէր*ուժօրեայ թերթը կը գրէ* 1861 *Հոկտեմբերին*. «*Իմամ Ալի Խանի* Մատենադարան Ընկերութիւնը *նոյն Ընկերութիւնն է*, *որ* անկից տարի մը առաջ Ուսումնատարած *անուամբ* ընկրսեր *եւ յարատեւութեամբ կը շարունակէ*, *առանց նպատակն այլայլելու*։ Աս գրասենեակն ալ հեռաւոր տեղերէ բաժանորդաց հաղորդակցութեանը դիւրութիւն տալու համար բացուեցաւ [26]» ։

Մէնմ. Հավատիս [27] *կը յիշէ Ընկերութիւնս* «Մատենադարանի *Ընկերութիւն*» *ձեւով եւ կ՚ըսէ որ իր* Կանոնագիրը *չափազանց* երկայնաձիգ *է*, *տեղ չունի հրատարակելու գայն եւ թէ Ընկերութեան կեդրոններն են* Սամաթիա *եւ* Շուկան։ Կիլիկիա (1863, *էջ* 356) *կը գրէ*, «Սամաթիոյ Եէնիմահալլէի թաղի «*Մատենադարանի*» *Ընկերութիւնը Ազգիս օգտակար ծառայութիւն մ՚ընելու նպատակաւ իր գրասենեակին մէջ ընդհանուր* ատենախօսութիւն *ընել որոշած է*։ *Այս որոշման սկիզբն եղաւ Յուլիս* 14*ին*» ։

[26] Մէր, *Կ. Պ.* 1861, *Թ.* 5, *էջ* 40։
[27] 1862, *Թ.* 431, *Ցունուար* 20։

*Ընկերութիւնը 1862ին սկիզբը 80 անդամ ունէր* (Սէր, *անդ*, *էջ* 112)։

Զեփիւռ[28] *կ՚իմացնէ թէ Մատենադարանի Ընկերութեան ատենախօսութիւնները 15 օրը անգամ մը տեղի կ՚ունենան*։

## 2· ՎԱՐԴԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Հիմնուած է* 1870*ի սկիզբը*[29]։ *Արդէն նոյն տարիէն սկսած* Ալթըմէրմէր *Սորմակիր մզկիթին կից սրճարան մը վարձած եւ* Ընթերցարան *մ՚ունեցած է*։ 1872*ին կը գնէ Երկաթուղեաց վիճակահանութեան երեք տոմս եւ կը մտադրէ իր ահեյցուցած դրամով միշտ տոմսեր գնել եւ այսպէս* «հինգ տարի ոչ մէկ բանի մը ձեռնարկել *եւ վերջը իր պայմանաժամը լրանալու միջոցին*՝ հաւաքուած ստակով թաղիս (*Եէնիմահալլէ*) դպրոցին համար կալուած մը առնելով պիտի նուիրէ», *կը գրեն Ընկերութեան Նախագահ Ա. Խ. եւ Փոխ–Ատենադպիր*՝ *Ա. Մ.*[30]։

*Ընկերութիւնը* 1873*ին տաղնապ մը կ՚ունենայ, բայց կը շարունակէ իր կեանքը*։ *Զենք հանդիպիր ակնարկութեան մը թէ իր վերջնական նպատակին հասա՞ծ է*։

*Ալպօյաճեան Ընկերութեանս հիմնումը սխալմամբ* 1871*ին դնելէ վերջ*՝ *կ՚ըսէ որ*

---

[28] Կ. Պ. 1863, էջ 179։
[29] Օրագիր, 1870, Թ. 324։
[30] Փունջ, 1872, Թ. 722։

«Ալթըմէրմէրի դպրոցին *ի նպաստ կազմուած է*[31]»: *Ժամանակին Սամաթիոյ վերաբերեալ թաղը կը կոչուի* Եէնիմահալլէ *կամ* Ալթըմէրմէր[32]:

3. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874—1875)

*Առաջին յիշատակութեան հանդիպած ենք* 1876 Յունուարին, *բայց յայտնի կը տեսնուի թէ* նորահաստատ Ընկերութիւն *մը չէ* 1876*ին*, *որով ենթադրել կու տայ թէ հիմնուած ըլլալու է գոնէ* 1874—1875*ին*: *Ահա թէ ի՛նչ կը գրուի Ընկերութեան կողմէ*. «... *Թաղիս Ներսիսեան երկսեռ վարժարանի* աղքատիկ տղայոց ուսման պէտքերը հոգալու եւ թէ վարժարանիս թանգարան մը հաստատելու նպատակաւ կազմեալ *Ուսումնասիրաց Ընկերութիւնս ԱՅՍ ԱՆԳԱՄ տեսնելով վարժարանի մանկտեաց աղքատ վիճակը՝ յատուկ տոմսակներ շրջաբերութեան հանած է* Ս. Զատկի տօնի առթիւ զգեստ շինելու դիտաւորութեամբ...:

*Ի դիմաց Ընկերութեան*

*Ատենադպիր* — *Ատենապետ*

*Մ. Էթմէքճեան* — *Դ. Տ. Մ. Փափազեան*

1876 *Յունուար* 22

*Սամաթիա*, *Եէնիմահալլէ*[33]

---

[31] *Գաղ. Տարեց.*, *Բ.*, *էջ* 90:
[32] *Թորգոմեան*, *անդ*, *Ա.*, *էջ* 218:
[33] Մանզ. Էփփիար, 1876, *Թ.* 3033:

*Ընկերութիւնը* 1879*ին կը շարունակուէր.* Յակոբ Վարդովեան *ներկայացում մը կու տայ Կէտիկ-Փաշայի Օսմանիէ թատրոնին մէջ՝ ի նպաստ* «Ուսումնասիրաց Ընկերութեան պաշտպանութեան յանձնուած Նէճի-մահալլէի Ս. Ներսիսեան վարժարանի[34]»:

*Ընկերութիւնս պահած է իր գոյութիւնը դեռ երկար տարիներ եւ դադրած, հաւանօրէն* 1890*ական թուականներուն: Սակայն* 1908*ին կը վերակազմուի եւ փակուած «Ս. Ներսիսեան» վարժարանն ալ կը բանայ*[35]:

*Կը կարծենք թէ Եէնիմահալլէի մէջ գոյութիւն չէ ունեցած* «Ներսէսեան Ընկերութիւն» *մը* 1881*ին, ինչպէս կ՚ընդունի Ալպօյաճեան*[36]: *Այդտեղ մատնանշուած Ընկերութիւնը* «Ուսումնասիրաց *Ընկերութիւնն է, որ* Ներսէսեան *վարժարանի պաշտպանը ըլլալով՝ անուան շփոթութիւն տեղի ունեցած է: Ինչպէս տեսանք՝ «Ուսումնասիրաց»ի նպատակն ալ «տեղւոյն վարժարանին նպաստել եւ չքաւոր աշակերտաց օգնել»*[37] *էր եւ* 1881*ին գոյութիւն ունէր ու կը գործէր:*

*«Ուսումնասիրաց Ընկերութիւն»ս անծանօթ է Ալպօյաճեանի:*

---

34 Լրագիր, *Կ. Պ.* 1879, *Թ.* 940:
35 Սուրհանդակ, 1908, *Թ.* 85:
36 *Պատ. Տարեգր.*, *Գ.*, *էջ* 120:
37 *Անդ*:

## 1· Ս· ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՒԵՏԱՐԱՆՉԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1844)

Կէտիկ–Փաշա *թաղի առաջին եւ հնագոյն Ընկերութիւնն է* «Ս· Յովհաննու Աւետարանչի Ընկերութիւն»*ը, որ ո՛չ թէ* 1845 — *ինչպէս նշանակած է Ալպօյաճեան*[38] — *այլ* 1844 *Դեկտեմբերին հիմնուած է։ Ժամանակակից Իզմիրի* Արշալոյս*ը*[39] 1845 *Յունուար* 13*ին Պոլսէն կ'իմանայ թէ* «ամսէ մը ի վեր *ուրիշ ուսումնական միաբանութիւն մըն ալ հաստատուեր է* Կէտիկ–Փաշայ *բնուած թաղը* Սուրբ Յովհաննու Աւետարանչի Ընկերութիւն *անունով*։ Այս Ընկերութիւնը հոգ պիտի տանի նոյն թաղի վարժարանը կարգի դնել, եւ օրինաւոր վարժապետներ հաստատել հայկաբանութեան եւ իտալական լեզուին· *ուստի ջերմեռանդ սրտիւ կը բարեմաղթենք որ Վերին Նախախնամութիւնը պաշտպան եւ նպաստամատոյց ըլլայ այս նորահաստատ ազգասէր միաբանութեանը*»։

*Այս մասին ուրիշ տեղեկութիւն չենք գտած*։

---

[38] *Գաղ. Տարեգր·, Ա·, էջ* 54:

[39] Արշալոյս Արարատեան, 1845, *Թ*· 224:

2. ... ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1858)

1858ի սկիզբը Պոլսոյ Պալի–Փաշա ըսուած Թաղը հրդեհ պատահելով՝ թաղին 300 հայ ընտանիքները անտուն անպատսպար կը մնան: Այդ առթիւ Կէտիկ–Փաշայի Հայոց կողմէ բարեբար խումբ մը Ընկերութիւն մը կը կազմէ եւ դրամական ու զանազան նուէրներ հաւաքելով՝ անմիջական օգնութիւն կը հասցնէ արկածեալներուն: Հաւաքուած դրամը 82·996 ղրուշի մեծ գումարի հասած ըլլալով՝ Ընկերութիւնը առոր մէկ մասը հրկիզեալներուն բաժնելէ վերջ՝ խոհեմութիւն կը համարի մնացածովը գետին մը գնել եւ 50—60 սենեակնոց մեծ շէնք մը շինելով հոն պատսպարել արկածեալները:

Ընկերութեան հիմնադիր–անդամներն էին.

Յարութիւն Գարամաճեան
Սիմոնիկ Նորատունկեան
Մինաս Թոզաթլեան
Յովակիմ Սախայեան
Յարութիւն Ջրաճեան
Խաչիկ Սախայեան[40]:

Ի՞նչ էր սակայն Ընկերութեան անունը: Մասիս, որ մեծ գովեստներով կը դրուատէ Ընկերութեան մարդասիրական ու ազգասիրական շարժուձեւը եւ կու տայ Ընկերութեան նուիրատուներու 3 ցանկեր[41], չի յի–

[40] Մասիս, 1858, Թ. 326:
[41] Անդ՝ Թ. 326—328:

չէր մասնաւոր տիտղոս մը կամ յորջորջում մը իբրեւ անուն Ընկերութեան:

Ալպօյաճեան չունի Ընկերութիւնս իր ցանկին մէջ:

## 3. ԱՐՏԱՒԱԶԴԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863)

Թատերական Ընկերութիւն մ'է Կէտիկ-փաշայի «Արտաւազդեան Ընկերութիւն»ը, հիմնուած 1863ին: Իր առաջին ներկայացումը տուած է 1864 Մարտ 26ին, ներկայացնելով Ալգիր ողբերգութիւնը Կէտիկ-փաշայի բացօթեայ «Ձիաթատրոնին» մէջ[42], որմէ խրախուսուած՝ Ընկերութիւնը երկրորդ ներկայացում մը կու տայ Ապրիլ 11ին, բեմ հանելով հայերէն «Յովսէփ Գեղեցիկ» եւ տաճկերէն «Օտուն գըլըճ» գաւեշտը[43]:

Ալպօյաճեան՝ յիշատակելէ յետոյ Ընկերութեանս սկզբնական շրջանը[44]՝ կու տայ գլխաւոր անդամներու անունները. Նիկանովր Իւսիւկնեան (յետոյ Եզնիկ Եպ. Ապահունի, Առաջնորդ Արաբկիրի), Աբրահամ Այվազեան, Գէորգ Այվազեան, Թագւոր Նալեան, Ռուբէն Պարիկեան, Մինասեան եւ Արմենակ Հայկունի[45]:

---

42 Սէր, Կ. Պ. 1864, էջ 27:
43 Մասիս, 1864, թ. 635:
44 Բիւզանդիոն, Կ. Պ. 1913, թ. 4983:
45 Գաղ. Տարեգր., Բ., էջ 85:

### 4· ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (... 1865)

*Ընկերութեան Ատենապետ*՝ Գրիգոր Յովսէփեան՝ *ծանուցումով մը կ՚իմացնէ թէ Ընկերութեան անդամները Թաղին սրճարանը հաւաքուելու են, ուր հրդեհէն Ընկերութեան եղած վնասները պիտի քննուին ու ստուգուին* (Վարագայի Հավատխս, *կ. դ.* 1865, *թ.* 233) : *Ուրիշ ծանօթութիւն մը չունինք: Ուրիշներէ չէ յիշուած :*

### 5· ԵՐԿՐԱԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (... 1868)

Մանզումէի էֆքեար (1868, *թ.* 616, *Մարտ* 24) *Թրքերէն կը գրէ որ «Մեր ծանօթ* Երկրագործական Ընկերութիւնը քանի մը տարիէ ի վեր *խանգարուած վիճակ ունենալուն*՝ Կէտիկ–Փաշա, *Եավէր Փաշա Թատրոնի սրճարանը անդամական ժողով պիտի գումարուի»: Թերթը չ՚ըսեր թէ ե՞րբ, ու՞ր, որմէ՞ հիմնուած է Ընկերութիւնը: Առանց ստոյգ ըլլալու՝ կը կարծենք թէ Կէտիկ–Փաշայի մէջ կազմուած է: Ուրիշ տեղ անունին հանդիպած չենք:*

### 6· ՕԺԱՆԴԱԿ ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (... 1870)

*Կէտիկ–Փաշայի մէջ կը յիշուի* «Օժանդակ Ընթերցասիրաց Ընկերութիւն» *մը, որ* 1870 *Մարտին Թաղին Ս. Յովհաննէս եկեղեց–*

ւոյ սրահին մէջ Կիրակնօրեայ ձրի դասընթացք մը կը բանայ «Անձնուէր»ի օրինակին նման: Ատենապետը եղած է Տիգրան Ն. Ճեպեճեան (Մանզ. էփքեար, 1870, Թ. 1129):

## 7. ԴՊՐԱՑ ԴԱՍ (1898)

Կէտիկ-Փաշայի Ս. Յովհաննէս եկեղեցին (շինուած 1849ին) ապահովաբար շատոնց ունեցած է իր Դպրաց Դասը, սակայն իբրեւ կազմակերպ Ընկերութիւն՝ ան 1898էն սկսած կը յիշուի[46]:

## 8. ՀԱՅ ԵՐԱԺՇՏԱՍԻՐԱՑ ԱԿՈՒՄԲ (1908)

Կը յիշուի Սուրհանդակէն[47] եւ ունեցած է եռաձայն երգչախումբ մը:

## 9. «ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ» ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

Սուրհանդակի[48] համեմատ «Խրիմեան Հայրիկ Միութիւն»ը կազմուած է 1908 Սեպտ.ի սկիզբը: Թերթը կը գրէ. «Նպատակը պիտի ըլլայ կրթութեան գործին զարգացման օժանդակել բանալով Լսարան, Ընթերցարան. կազմակերպելով հանրային դասախօսութիւններ, եւ այլն»: 1908 Սեպ-

---

[46] Անդ, Գ., էջ 122:

[47] Սուրհանդակ, Կ. Պ. 1908, Թ. 82: Հիմնուած է 1908 Օգոստ.ին (Հմմտ. Մանզ. էփ., 1908, Թ. 2208): Կը կոչուէր նաեւ «Երաժշտասիրական Ակումբ»:

[48] 1908, Թ. 73:

*տեմբեր 8ին Կէտիկ–Փաշայի «Հայ Երաժշտասիրաց Ակումբ»ը ցերեկոյթ մը կու տայ Թաղին վարժարանին պարտէզին մէջ: Հասոյթին կէսը «Արիմեան Հայրիկ» Միութեան, իսկ միւս կէսը «Երաժշտասիրաց Ակումբ»ին կը յատկացուի*[49]:

*Միութեան հիմնադիրները, որոնք միանգամայն* առաջին տարուան *Գործադիր Մարմինը կը կազմեն՝ հետեւեալները են.* Գրիգոր Եփրանոսեան, Գեղամ Բարսեղեան, Յակոբ Տէր–Յակոբեան, Շաւարշ Միսաքեան եւ Յովհաննէս Գըլըճեան: *Ասոնց օգնական կ'ընտրուին.* Թաթուլ Գույումճեան, Համբարձում Համբարձումեան, Ենովք Շահէն *եւ* Յակոբ Բոհիկեան[50]:

## 10· «ՔՆԱՐ» ԵՐԱԺՇՏԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

*Ընկերութիւնս հիմնուած է* 1910 *Օգոստոս* 1*ին, նպատակ ունենալով.* «Գործիական երաժշտութիւնը մշակելով՝ նուագախումբ կազմել եւ երաժշտութիւնը ժողովրդականացնել[51]»: *Ունէր* 65 *անդամ*:

1911*ի սկիզբը Ընկերութիւնը ունէր իր «փանփառը» եւ կը գործէր*[52]:

---

[49] *Անդ*, *Թ*. 82:
[50] *Անդ*, *Թ*. 79:
[51] *Թէոդիկ*, *Ամէն. Տարեց.*, 1921, *էջ* 305:
[52] Ժամանակ, 1911, *Թ*. 721:

### 11· ԿԱՆԱՆՑ ԲԱՐԵՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1913)

Կէտիկ–Փաշայի Կանանց Բարեսիրական Ընկերութիւնը կը յիշուի 1913ին։ Բանախօսութիւն կը սարքէ Գումգափուի մէջ[53]։ Թերթի կը մնայ մեր ծանօթութիւնը։

### 12· ՄԵՍՐՈՊԵԱՆ ԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

Միութեանս յիշատակութեան հանդիպած ենք 1913ին[54]։ Թաղին Մեսրոպեան վարժարանի Սանե՞րը հիմնած են — չունինք ստուգութիւն։ 1914ին «Փոնտ» կազմած է Կէտիկ–Փաշայի մէջ Մանկապարտէզի շէնք մը շինելու համար[55]։

### 13· «ՍԼԱՔ» ՄԱՐՄՆԱՄԱՐԶԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1914)

Ինչպէս ուրիշ առթիւ ալ շեշտած ենք՝ Շաւարշ Քրիսեանի տուած օրինակը վարակիչ եղած է Պոլսոյ բոլոր թաղերու համար ալ, ուր հետզհետէ կազմուած են այլեւայլ անուններով Մարզական Ընկերութիւններ, որոնց համադրութիւնն ու կեդրոնական Մարմինը կոչուած է «Հայ Մարմնամարզական Ընդհանուր Միութիւն»։

Կէտիկ–Փաշայի Մարզական Միութիւնը կոչուած է «Սլաք» Մարմնամարզական Միու–

---

[53] Անդ, 1913, Թ. 1422։
[54] Անդ, Թ. 1584։
[55] Անդ, 1914, Թ. 1761։

թիւն», *որուն անունն հանդիպած ենք 1914 Մայիսին*[56]:

## 14. «ՕՃԱԿԱՆ» ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1915)

*Ընկերութիւնս 1915ին հիմնուած եւ ժա-* մանակէն[57] *կոչուած է «Օճական* Սանուց *Միութիւն», մինչ Թէոդիկի*[58] *քով կ'անուա- նուի «Օճական* Երիտասարդաց *Միութիւն»*: *Իր նպատակն է*. «Նիւթապէս եւ բարոյապէս սատարել թաղին կրթական ու բարեգոր- ծական հաստատութեանց եւ ձեռնարկնե- րուն[59]: *Ունեցած է 50 անդամ*:

*Միութիւնս 1919՝ Օգոստ. 6ին կը վերա- կազմուի՝ ունենալով Հետեւեալ Վարչական Խորհուրդը*. Երուանդ Աբրահամեան (*Ատենա- պետ*), Ս. Եղբայրեան, Ն. Նէտիգարտա- շեան, Ս. Աւագեան, *Օրիորդներ՝* Ա. Յա- րութիւնեան *եւ* Ա. Սիսլեան: *Մայր Դիւանը կը կազմէին՝* Ն. Տ. Ստեփանեան, Օր. Ս. Էզանեան[60]:

1919 *Դեկտ. 27ին Գումգափուի Յունաց Թատերասրահին մէջ հանդէս մը կու տայ, ուր նուագ, մեներգ, արտասանութիւն, գա-ւեշտ եւ վիճակահանութիւն տեղի կ'ունե- նան*[61]:

---

[56] *Անդ*, 1914, *Թ*. 1804:
[57] *Անդ*, 1915, *Թ*. 2043:
[58] *Թէոդիկ*, *անդ*, *էջ* 306:
[59] *Անդ*:
[60] *Անդ*:
[61] Ժամանակ, 1919, *Թ*. 3711:

### 15· ԸՆԿԵՐՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1920—1921)

*Կէտիկ–Փաշայի մէջ* 1921*ի Մայիսին կը յիշուի* «Ընկերցասէր Տիկնանց Միութիւն» *մը, զոր կազմած են Բոլոքական Հայեր, գուցէ* 1920—1921*ին*[62]:

### 16· «ԱԼԻՇԱՆ» ԳՐԱԿԱՆ, ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՐԿՍԵՌ ՄԻՈՒԹԻՒՆ (1921)

*Կը յիշուի* 1921 *Դեկտեմբերին: Հաւանօրէն* 1921*ի ընթացքին կազմուած է: Հաւաքատեղին՝ Կէտիկ–Փաշայի Ս. Մեսրոպեան վարժարանը*[63]:

### 17· ՄԵՍՐՈՊԵԱՆ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1951)

*Կէտիկ–Փաշայի Մեսրոպեան վարժարանի* նախկին սաները 1951*ին կը կազմեն* «Մեսրոպեան Սանուց Միութիւն»*ը*[64]:

## ԳՈՒՄԳԱՓՈՒ

### 1· ԴՊՐԱՑ ԴԱՍ (1719)

*Պոլսոյ* Գումգափու *թաղի ամենահին ընկերական կազմակերպութիւնն եղած է Դպրաց Դաս Մայր–Եկեղեցւոյ անունով, որ հաստատուած է* 1719*ին, ունենալով դպրա–*

---

62 Ժողովուրդի Ձայնը, 1921, *Թ.* 778:
63 *Անդ, Թ.* 976:
64 *Երջանիկ Տարեցոյց, Կ. Պ.* 1953, *էջ* 12:

պետ՝ Տիրացու Յովսէփ (Եուսուֆ Չէլէպի՝ «Սախաթճը Պաշը») [1]:

Պեզճեան Ամիրայ այս Ընկերութեան ըրած է կտակ մը, որուն հասոյթով կը վճարուէր երաժիշտ ուսուցչին թոշակը: Դպրաց Դասը ունէր իրեն յատուկ վագըֆ եւ կալուած, ինչպէս նաեւ «Ուսումնարան» կոչուած մասնաւոր հաւաքավայր մը Մայր-Եկեղեցւոյ շրջափակին մէջ [2]:

1922ին 203ամեակը հանդիսական պատարագով տօնուած է [3]:

## 2· ՏՆԱՆԿԱՑ ՄԱՏԱԿԱՐԱՐՈՒԹԻՒՆ (1832)

«Աղքատասէր» եւ «Աղքատախնամ» անունով կոչուած Ընկերութիւններու սկզբնական ծագումը 1832էն է, երբ հիմնուած է «Տնանկաց (աղքատաց) Մատակարարութեան» Ընկերութիւնը կամ Վարչութիւնը, որ նպատակ ունէր «օգնութեան հասնիլ մանաւանդ այն տառապեալոց, որք անկարող են աշխատիլ, բայց միանգամայն կ'ամչնան մուրալ հասարակ աղքատներու պէս [4]»:

Ընկերութեանս հիմնադիրը կը համարուի Պեզճեան Ամիրան, որ 1832ին Գում-

---

1 Պետրոս Կարապետեան, Հնդադարեան Յիշատակարան Սամաթիոյ Ս. Գէորգ եկեղեցւոյ, Կ. Պ. 1935, էջ 302:

2 Ա. Ալպօյաճեան, Գաղութ. Տարեգր., Ա., էջ 52:

3 Ժողովուրդի Ձայնը, Կ. Պ. 1922, Թ. 1993:

4 Բիւզանդ Քէչեան, Պատմութիւն Ս. Փ. Հիւանդանոցի, էջ 37:

գաւառի Պատրիարքարանի մէջ Ազգին երեւելիներէն 36 հոգիէ բաղկացած ժողով մը կազմելով՝ վեց կարգի կը բաժնէ զանոնք, որպէս զի փոխնիփոխ վեցվեց հոգի աղքատներու կարիքները հոգան: Մայր—եկեղեցւոյ սենեակներէն մին այս նպատակին կը յատկացուի, ուր կը մնար «Տնանկաց Սնտուկ»ը:

Ընկերութիւնը ոչ միայն չքաւորներու ուտելիք ու հագնելիք կը հոգար, այլ եւ աղքատ պարկեշտ աղջիկներու հարսնեկան ծախքը կը ստանձնէր, կարօտ թաղերու դպրոցներուն կը նպաստէր եւ երբեմն Պատրիարքարանի կարեւոր ծախքերը իր վրայ կ՚առնէր:

Տնանկաց Մատակարարութիւնը[5] տեւած է մինչեւ 60ական թուականները, երբ արդէն կը սկսին նոյն նպատակով զանազան Ընկերութիւններ երեւան գալ:

## 3· ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1844)

Գումգափուի Լուսաւորչեան Ընկերութիւնը հիմնուած է Մատթէոս Պատրիարքէն, 1844 Յուլիս—Օգոստոսին: Արշալոյս Արարատեան[6] 1844 Սեպտ. 2ին Ընկերութեանս հիմնուիլը ծանուցանելէ վերջ՝ կը ճշդէ որ «Լուսաւորչեան Ընկերութեան» յանձնուած է Գումգափուի եւ Եէնիգափուի մէջտեղ եղած

[5] Տե՛ս այս մասին Բիւզ. Քէչեան, Պատմ. Ս. Փ. Հիւ., անդ, էջ 37—45:
[6] 1844, թ. 206:
[7] Անդ, թ. 224:

«Լուսաւորչեան» վարժարանի վարչութիւնը[7], ո՛չ թէ «Մայր-վարժարանի», ինչպէս սխալմամբ կը գրեն Հրանդ Ասատուր[8] եւ Ա. Ալպօյաճեան[9]:

### 4. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1852)

Ընթերցասիրաց Ընկերութիւնը հիմնուած է 1852 Յունուարին: 1852 Օգոստոս 26ին Յայտարարութիւն մը հրատարակելով՝ հիմնադիրները կը գրեն. «Արդարեւ բարեկարգ Ընկերութեանց յառաջ բերած օգուտները անթիւ են եւ չի գտնուիր այնպիսի ամենադժուար գործ մը, որ փոքրիկ Ընկերութեան մը առաջը չի դիւրանայ: Բազմնուս ճշմարտութեանը ապացոյց են ազգերնուս առաջը ներկայ գտնուող թէ՛ օտար ազգաց եւ թէ՛ ազգային Ընկերութիւնները: Ասիկա աղէկ գիտնալով... սիրով եւ միաբանութեամբ ձեռք ձեռքի տուած ութ ամիս առաջ «Ընթերցասիրաց» անուն Ընկերութիւն մը կազմեցինք, որ մեր պարապոյ ժամանակները ապարդիւն եւ ընդվայր չմսխենք. ուստի բարոյական գաղափարներու ծառայելու եւ ազգասիրութեան արդիւնքը ճանչնալու նպատակաւ ընտրած եմք բոլոր հայ լրագիրները: Ասկէց զատ թէ որ ազգասէր աղաները նպաստամատոյց ըլլան՝ թէ՛ գրքերով եւ թէ՛ դրամով, կը խոստանամք փոքրիկ վերծանու-

[8] Ընդարձակ Օրացոյց, 1901, էջ 231:
[9] Գաղ. Տարեգր., Ա., էջ 54:

թեան սենեակ մը կազմելու, օտարազգի լրագիրներ ստանալու եւ թէ որ ձեռքերնուս այ գայ, բանասիրական տետրակներ, գրքեր, թարգմանութիւններ, ազգիս դաստիարակութեանը եւ բարոյական կրթութեանը նպաստող գրուածքներ տպելով՝ ազգին կողմէ եղած ձեռնտուութեանց փոխարէնը հատուցանել Աստուծով: Հիմակուհիմա քսան հոգի եմք՝ 36 բաժին գրուած: Ահա Ընկերութեանս պայմանները. 1. Մէկ բաժինը՝ ամիսը 6 դրուշ է. 2. Այս ստակը ամիսէն քանի մը օր առաջ պիտի վճարուի՝ Ընկերութեան պէտքերը հոգացունելու համար. 3. Ընկերութեան անդամ ըլլողը կը պարտաւորի Ընկերութեան Կանոնները անպակաս ընդունելու:

Ով որ կ՚ուզէ այս Ընկերութեանս գրուիլ, առ այժմ Խումխարու Բապուճճի խանը Ընկերութեան գրասենեակը կրնայ ստորագրուիլ[10]»:

1853 Յունուար 1էն սկսած Ընկերութիւնը կը կոչուի «Ընթերցասիրաց Թանգարան» եւ կ՚ունենայ 82 Յօդուածէ բաղկացած Կանոնագրութիւն մը[11]: Ընկերութեան անդամ կրնան գրուիլ «կրօնքով Լուսաւորչական եւ վարքով համեստ» անձեր (Յօդ. 11): Կիներ ալ կրնան անդամագրուիլ, բայց «անոնք ո՛չ թանգարան (Ընթերցարան) կրնան գալ եւ ոչ ալ պաշտօնէից կարգը անցնիլ» (Յօդ. 14):

---

[10] Մասիս, 1852, Թ. 31 եւ 32:
[11] Տե՛ս Մասիս, 1853, Թ. 62:

Ընկերութեան Տնօրէն ժողովը 30 հոգիէ կազմուած է (Յօդ. 23):

1853ին Ընկերութեան Ընթերցարանը Մայր-եկեղեցւոյ Ուսումնարանի սրահներէն մէկուն մէջ կը փոխադրուի[12]:

Մասիս[13] տուած է Ընկերութեանս պաշտպաններուն ու Տնօրէն ժողովի անդամներուն ցանկը, որմէ կը տեսնուի թէ ժամանակի աչքառու անձեր անդամ ըլլալով՝ Ընկերութիւնս մեծ կարեւորութիւն ստացած է:

1853 Հոկտ.ին Ընկերութեան Ընթերցարանը այցելելով՝ Յակոբոս Սերոբեան Պատրիարք՝ իր պաշտպանութիւնն ու նպաստը կը շնորհէ Ընկերութեան[14]:

1859ին «իր նպատակին աւելի դիւրութեամբ հասնելու համար»՝ Ընկերութիւնը կ՚որոշէ իր Մատենադարանը Ազգին նուիրել[15]:

Մասիս Փոքր[16] 1869 Օգոստ. 1ին գուժելով մահը Բժիշկ Համբարձում Ալթունեանի՝ կ՚ըսէ որ Գումգափուի Ընթերցասիրաց Թանգարանի հիմնադիրն եղած է:

Ընկերութեանս գլխաւոր Մեկենասն եղած է Նիկողոս Պալեան[17]:

---

12 Մասիս, 1853, թ. 67:
13 Անդ, թ. 84:
14 Անդ, թ. 91:
15 Մեղու, Կ. Պ. 1859, էջ 103: — Մասիս, 1859, թ. 380:
16 1869, թ. 400:
17 Գաղ. Տարեգր., Ա., էջ 59:

### 5. ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1852)

1852 *Մարտ–Ապրիլին Գումգափուի Մայրեկեղեցւոյ Ուսումնարանի եւ շրջակայ երեք դպրոցներու վարժութիւնը քանի մը ուսումնասէր անձերու յանձնուած էր: Ուսումնարանի եկամուտը հարկ եղած ծախքը չկարենալով գոցել՝ յիշեալ անձերը կը խորհին Ընկերութիւն մը կազմելով՝ ժողովուրդի կամաւոր նպաստին դիմել:* Գերագոյն ժողովի թոյլտուութեամբ *կը հիմնեն* «Օժանդակ Ընկերութիւն»*ը, որուն նպատակն էր.* «Մայրեկեղեցւոյ Ուսումնարանի պայծառութեան պէտք եղած ծախքը հոգալ[18]»:

### 6. ԵՂԲԱՅՐՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1857)

Թովմա Թ. Յարութիւնեան, *անդամ* «*Եղբայրսիրական Ընկերութեան*», 1857 *Յունուար 14ին ծանուցում մը կը հրատարակէ* Մասիս*ի մէջ, որ թէ՛ ծագումը եւ թէ՛ բնոյթը կը լուսաբանէ Ընկերութեան:* Մասիս[19] *կը գրէ.* «*Գումգափուի կողմերը Բալուճճի խանը, երկրորդ դատիկոնը,* նոր Ընկերութիւն մըն ալ *հաստատուեցաւ* Եղբայրսիրական *անուամբ, ուր Յունուար 21էն սկսեալ* Հայերէն, Գաղղիերէն եւ Անգղիերէն լեզուաց ու աշխարհագրական եւ թուաբանական ուսմանց դասատուութիւն պիտի ըլլայ փափաքող անձինքներուն»:

---

[18] Նոյեան Աղաւնի, Կ. Պ. 1852, Թ. 13:

[19] Թ. 261: — *Հմմտ.* Արշ. Արարատեան, 1857, Թ. 538:

Ինչպէս յայտնի կ'ըլլայ՝ Ընկերութեանս նպատակը նման է Ղալաթիոյ «Անձնուէր»ի նպատակին, այսինքն՝ «անոնց չափահասներուն համար ձրի դաստիարակութիւն հաստատել[20]»: Տարբերութիւնը այն է որ Ղալաթիոյ «Անձնուէր»ի դաստիարակութիւնները՝ յատկապէս Պոլիս գտնուող գաւառացի չափահասներուն համար էին:

## 7· ԵՐԵՍՆԻՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1858—1859?)

Բարդէն Ծ. Վ. Կիւլէսէրեան[21] խօսելով Թումգափուի Տնանկաց Սենեակին եւ Մատենադարանին վրայ՝ կ'ըսէ որ հոն «Շատ մը Ընկերութիւններ կազմուած են, 1858—1859ին. Տանատեան, Հայկեան, Խնայողական, Լուսաւորչեան, Երեսնից, Ուսումնասիրաց անուններով»: Ինչպէս կը տեսնուի՝ Կիւլէսէրեան չէ ճշդած Ընկերութիւններուս կազմութեան ժամանակը. 1844ին եւ 1852ին հիմնուած Ընկերութիւններ 1858—1859ին կազմուած կը համարի՝ խառնելով զանոնք աւելի յետնագոյն ժամանակի Ընկերութիւններու հետ: Հետեւաբար կարելի չէ կրթնիլ իր կարծիքին վրայ՝ ճշդելու համար նաեւ «Երեսնից Ընկերութեան» կազմութեան ժամանակը, որուն մասին, դժբախտաբար, ուրիշ կողմէ ալ լուսաբանութիւն կը պակսի:

[20] Թ. Ազատեան, Հարիւրամեայ Յոբելեան Պեզճեան Մայր Վարժարանի, Կ. Պ. 1930, էջ 41:

[21] Կոլոտ Յովհաննէս Պատրիարք, Վիեննա 1904, էջ 107, ծանօթ. 1:

### 8. · · · Ընկերութիւն (1859)

Մինչեւ 1859 հայ աղջկանց վարժարանէ զուրկ էին Գումգափու եւ Եէնիգափու թաղերը: Մասիս[22] 1859 Նոյ. 19ին կը տեղեկացնէ թէ Միութեան էրենիաս թերթի խմբագիր Կարապետ Փանոսեանի ջանիւք եւ գործակցութեամբ Ընկերութիւն մը կազմուեր է Գումգափուի եւ Եէնիգափուի մէջտեղ աղջկանց վարժարան մը բանալու համար:

Ո՛չ Մասիս եւ ոչ ալ Միութեան էրենիաս յիշած է անունը այդ Ընկերութեան, որ հաւանօրէն 1859ի Հոկտեմբերէն առաջ հիմնուած ըլլալու է: Աղջկանց վարժարանի Կանոնագիրը հրատարակած են յիշեալ երկու թերթերն ալ[23]:

### 9· ԹԱՏԵՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860)

Ըստ Ալպօյաճեանի[24] Գումգափու ունեցած է Թատերական Ընկերութիւն մը, հիմնուած 1860ին: Ընկերութիւնը Պատրիարքարանէն կը խնդրէ որ Գումգափուի Լուսաւորչեան աղջկանց վարժարանի սրահը իրեն տրամադրուի՝ ներկայացում տրուելու համար, բայց կը մերժուի: Ուրիշ կողմէ տեղեկութիւն մը չենք գտած այս մասին:

### 10· ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1861)

Գումգափուի Մայր-եկեղեցւոյ վարժա-

---

[22] Թ. 408:

[23] Մասիս, անդ. Միութեան էրենիաս, 1859, էջ 93:

[24] Գաղ. Տարեգր., Բ., էջ 82:

րանի նախկին աշակերտները 1861 Յունիսին կը կազմեն «Սանուց Ընկերութիւն» մը՝ «բարի նպատակաւ»[25]:

Այս «Սանուց»ն է հաւանօրէն, որ 1873ին կը կոչուէր նաեւ «Պեզճեան Սանուց Ընկերութիւն» եւ ունէր գրատուն մը, որուն 34 գաղղիերէն գիրք նուիրած էր Գասպար Ֆրէնկեան. գրատան գրապետն էր Ա. Ա. Մուրատեան եւ Ընկերութեան կեդրոնը Նէտիգուլէ կը գտնուէր (տե՛ս Արեւելեան Փող, Կ. Պ. 1873, Թ. 4):

Ժամանակի հոլովոյթը ի՞նչ փոփոխութիւններու վերածած է Ընկերութիւնս, ո՛րքան ատեն կանգուն մնացած է ան. — որո՞ւն ծանօթ է: Նոյն հին Ընկերութեան վերակազմութիւնը չէ՞ վերջին տարիներս «Պեզճեան Սանուց Միութիւն» յորջորջումով երեւան եկածը, որ 1952ին իր հաւաքատեղին նորինորոյ կը կառուցանէ, մշակութային ձեռնարկներ կը կազմակերպէ (տե՛ս Երջանիկին Տարեցոյցը, 1952, էջ 12):

### 11. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

Ուսումնասիրաց Ընկերութիւնը կազմուած է 1862 Մարտին: Պոլսոյ Ջեփիւռ թերթը 1862 Օգոստ. 15ին կը գրէ. «Ասկէ երկու ամիսի չափ առաջ մէկ քանի ազգասէր եւ բանիրուն անձինք «Ուսումնասիրաց» անունով Ընկերութիւն մը կազմեցին, որուն

25 Կիլիկիա, Կ. Պ. 1861, էջ 127:

*նպատակն է* Ազգային դպրոցաց օգտակար լրագիրներ ձրիապէս նուիրել»[26]: Կիլիկիա[27] *կը ճշդէ՝* Ապրիլին *յիշելով զայն:*

*Զեփիւռ կը հրատարակէ նաեւ Ընկերութեան* Կանոնագիրը, *որ* 8 *Յօդուած ունի: Ընկերութեան տարեկան անդամավճարն է* 30 *դրուշ,* 10 *դրուշ ալ մուտք վճարելով (Բ—Գ Յօդ.): Տնօրէն ժողովը, որ «Խնամակալաց ժողով» կը կոչուի՝* 5 *հոգիէ կը բաղկանայ (Ե Յօդ.): Ընկերութեան կենդրոնատեղին եղած է Մուսալլա Թաղը, իսկ առաջին Ատենապետը՝* Մարտիրոս Սախթիյանեան:

*Սկիզբները խոչընդոտներու կը բախի Ընկերութիւնը, սակայն յետոյ կը բազմանան համակիրներն ու նուիրատուութիւնները, որով Ընկերութիւնը կարող կ՚ըլլայ աղքատ ընթերցողներու ձրի տրամադրել գրքեր ու թերթեր:* (Կիլիկիա, *Կ. Պ.* 1863, *էջ* 53—56: — Մեճմուայր Հավատիս, *Կ. Պ.* 1863, *Թ.* 494):

12. ԽՆԱՑՈՂԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (?)

*Ընկերութիւնս լոկ անունով կը յիշեն Կիւլէսէրեան*[28] *եւ Թորգոմեան*[29]*: Գումգա–*

---

[26] Զեփիւռ, 1862, *էջ* 8: — *Տե՛ս նաեւ* Վարդ Հանդէս Մեսրովպեան, *Կ. Պ.* 1862, *Թ.* 1, *էջ* 4 *եւ Թ.* 3, *էջ* 12:

[27] 1862, *էջ* 92:

[28] *Կոլոտ Յովհ. Պատրիարք, անդ:*

[29] *Երեմ. Չէլէպի, Քէօմիւրճեան, անդ, Ա.,* *էջ* 244:

փուլի մէջ այս անունով Ընկերութեան մը չենք հանդիպած հայ թերթերու մէջ:

### 13· ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863)

Մասիսէն (1863, Թ. 443) կ'իմանանք թէ Գումգափուն 1863ին ունեցած է «Ընթերցասիրաց Ընկերութիւն» մը, որուն մասին չի հաղորդեր սակայն մանրամասնութիւն: Անծանօթ է Ա. Ալպօյաճեանի:

### 14· ՏԻԿՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

Միայն Ալպօյաճեանէ (Պատ. Տարեգր., Բ., էջ 86) յիշուած է Ընկերութիւնս՝ իբր «թաղին աղջիկներու յառաջադիմութեանը նպաստելու համար»: Զենք գտած որեւէ յիշատակութիւն:

### 15· ՀԱՅԿԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865)

Առեւտրական Ընկերութիւն մըն է «Հայկեան»ը, որ կազմուած կ'երեւայ 1865ի ամբան: Իր մասին առաջին տեղեկութիւնը հիմնումէն վեց տարի վերջը, այսինքն՝ 1871ի հայ թերթերէն կը քաղենք: Ընկերութեան անդամներէն խումբ մը՝ 1871ին Ընկերութեան Տնօրէն ժողովի դէմ կը բողոքէ որ 6 տարիէ ի վեր որեւէ հաշիւ չէ տուած[30]:

---

[30] Հմմտ. Մասիս, 1871, Թ. 1128: Մամուլ, 1871, Թ. 160, էջ 28, 40: — Ընկերութեան կողմէ Գ. Եաղմուրեանի եւ Գէորգ Մ. Թաթարեանի Ընկերութեան անդամները «Հայկեան» սրճարանը կը հրաւիրեն՝ հաշիւները քննելու եւ Ընկերութիւնը վերակազմելու համար (Մանզ· էֆքեար, Կ. Պ. 1871, Թ. 1707):

Ընկերութիւնս միայն անունով ծանօթ է Թոր-գոմեանի եւ Ալպօյաճեանի։

## 16. ՆՊԱՍՏԱՄԱՏՈՅՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867)

Գումգափուի Նպաստամատոյց Ընկերու-թիւնը 1867ին հաստատուած է նախաձեռնու-թեամբ Դոկտ. Գալուստեանի, նպատակ ու-նենալով՝ Ս. Փրկչի (Հիւանդանոցի) վար-ժարանին տղոց գրենական պիտոյքը հայթայ-թել[31]։

Ընկերութեան կեդրոնը կը գտնուէր Լանկա բուռած թաղը՝ Մուսալլա ճատտէսի Թ. 94, ուր 1868ին «Վարդանանց»ը տօնա-խմբուած է[32]։ Ընկերութիւնը ունեցած է իր կանոնագիրը, զոր չենք տեսած։ 1868ին Տնօ-րէն ժողովի Ատենապետն էր Մ. Ջիւմ-բիւեան, Ատենադպիրը՝ Յ. Յ. Յովակի-մեան[33]։

Որքան կ'երեւայ՝ Ընկերութիւնը երկար ատեն պահած է իր գոյութիւնը։ 1889ին նա 1000 ղուրուշ կը նուիրէ «Դպրոցասէր Հա-յուհեաց Ընկերութեան»՝ անոր 10 ամեայ Յոբելեանին առթիւ, խոստանալով ուրիշ նպաստներ ալ[34]։

## 17. ՆՈՒԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

Հիմնուած է 1871ի սկիզբները։ «Ազ-գային պարտուց վճարման օժանդակութիւն

---

[31] Ա. Ալպօյաճեան, Պատ. Տարեգր., Բ., էջ 88։
[32] Մասիս Փոքր, 1868, Թ. 114։
[33] Մասիս, 1868, Թ. 837։
[34] Արեւելք, Կ. Պ. 1889, Թ. 1598։

մ՚ընել[35]», ահա Նուիրական Ընկերութեան նպատակը: 1871 Մայիսին նաւ կը վարձէ՝ Սահմանադրութեան տասնումէկերորդ տարեդարձը Հիւնքեար Իսկէլէսիի վայրը տօնախմբելու ուղղութեամբ Պոլսոյ Հայութիւնը՝ չահը յատկացնելով իր նպատակին[36]:

1871 Մայիս 30ին Ընկերութեան մէկ «Յայտարարութեան» վրայ կը տեսնուի Ընկերութեան սիրուն կնիքը հակթաձեւ, կանանչ գոյնով. վերը Նուիրական, մէջտեղը 1871 փնջաձեւ զարդի մը մէջ, վարը՝ Ընկերութիւն: Յայտարարութիւնը ստորագրած է Տնօրէն Ժողովի կողմէ՝ Գ. Մոմճեան:

Ընկերութիւնս անծանօթ է Թորգոմեանի եւ Ալպօյաճեանի:

18. ՀԱՅԿԱԶՆ–ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872?)

Ընկերութիւնս 1874ի Մարտին կը յիշուի իբրեւ «նախկին» Ընկերութիւն մը, որ Գումգափուի մէջ գրօսարան մ՚ունեցած է[37]: Անծանօթ է Թորգոմեանի եւ Ալպօյաճեանի:

19. ԵՂԲԱՅՐԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

1872 Յունիսին կը գրէ Պոլսոյ Փունջը[38]. «Գումգափու Մուսալլա Ն. 48 սրճարանը վարձելով այլեւայլ գաւառներէ մայրաքաղաքս գտնուող ազգայինք, որք խոհարարու–

[35] Մասիս, 1871, Թ. 1091:
[36] Մամուլ, 1871, էջ 350:
[37] Անդ՝ 1874, էջ 448:
[38] Թ. 725:

թեան եւ սպասաւորութեան գործերով կը զբաղին, Ընկերութիւն մի կազմեր են «Եղբայրասիրաց» անուամբ: Այս Ընկերութեան նպատակն է եղբայրաբար օգնել միմեանց ի հարկին: Խոհարարի եւ սպասաւորի պէտք ունեցողները կը հրաւիրուին յիշեալ սրճարանը:

## 20· ԱՐԱՄԵԱՆ ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

Ընկերութիւնս հիմնուած է 1879ի սկիզբը: Մարտ 10 թուով Ընկերութեան «Առժամանակեայ Տնօրէն» Ն· Խաչատուրեան կը գրէ· «Արամեան Ընթերցասիրաց Ընկերութիւն» մը կազմած ենք, որուն նպատակ ընտրած ենք Եէնիգաբուի եւ Գումգաբուի միացեալ թաղերուն մէջ Ընթերցարան մը հաստատել: Ըստ կանոնագրութեան այս Ընկերութեան՝ բոլոր Հայազգի խմբագիրք, առանց բացառութեան, Ընկերութեանս պատուոյ անդամ ընտրուած են[39]»: Ընկերութիւնը ունեցած է իր Կանոնագիրը (Լրագիր, Կ· Պ· 1879, Թ· 930):

Ընկերութիւնս կը կոչուի նաեւ «Արամեան Գրասիրաց Ընկերութիւն[40]»:

## 21· ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ԱԶԳ· ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ (1881)

Ալպօյաճեան կը գրէ· «Գում Գաբուի Օժանդակ Ընկերութիւն (1881) անյայտ իր

---

[39] Թէրճէմանը էֆքեար, Կ· Պ· 1879, Թ· 509:
[40] Անդ, Թ· 555: — Մասիս, 1879, Թ· 2321:

կեանքով եւ գործով, ինչպէս նաեւ նպատակով[41]»: *Մասամբ կրնանք լուսաբանել այս Ընկերութեան պարագան: Նախ՝ Ընկերութեանս իսկական անունն է.* «Օժանդակ Ընկերութիւն Ազգային Հիւանդանոցի[42]»: *Երկրորդ՝ Ընկերութեանս* նպատակն *է Ազգ. Հիւանդանոցին նպաստել.* 1882 *Օգոստոսին* 78 *քաշ ճենովայի բրինձ գնելով՝ Հիւանդանոցի գրասենեակը կը յանձնեն*[43]:

22. ՍԱՆՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884)

*Մեզպուրեան աղջկանց վարժարանը* 1865*ին* Հիսարտիպիի *մէջ հիմնուելէ վերջ՝* 1879*ին փոխադրուած էր* Գումգափու: *Արդ,* 1884*ին «Մշակ» Պոլսէն կը գրէ Թիֆլիսի* Նոր-Դար*ին.* «*Մէզպուրեան վարժարանի ուսումնաւարտ եւ բարձրագոյն դասու աշակերտուհիք՝* Սանուհեաց Ընկերութիւն *մը կազմելով՝ մտադիր են այս տարի Հայաստանի կարօտ գիւղերէն մէկուն մէջ՝ յանուն իրենց բարերար – դաստիարակին՝* Մէզպուրեան *տարրական վարժարան մը հաստատելու ընդ պաշտպանութեամբ Խրիմեան Ուսումնասիրաց Ընկերութեան*» (Նոր-Դար, *Թիֆլիս* 1884, *Թ.* 31):

23. ԱՂՔԱՏԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1886)

*Կազմուած է* 1886 *Մայիս* 1*ին:* Հայրենիք[44] *արդէն* 1886 *Մայիս* 10*ին կը գրէ.*

---

41 *Գաղ. Տարեգր., Գ., էջ* 120:
42 *Տե՛ս* Թէրճէմանը էֆքեար, 1883, *Թ.* 1623:
43 *Անդ*, 1882, *Թ.* 1517:
44 *Կ. Պ.* 1886, *Թ.* 2004:

«Մայր եկեղեցւոց եւ միացեալ թաղից նորակազմ Աղքատախնամ Ընկերութիւնը *իւր երկրորդ նիստը պիտի ընէ վաղը»: Թերթը քիչ յետոյ կու տայ հարկ եղած բացատրութիւնը եւ կ՚ընէ Ընկերութեան անունի ճշգումը. «Մայր–եկեղեցւոյ (Գումգափու)*, Կէտիկ Փաշայի, Եէնի գաբուի եւ Գումգաբուի դրսի *թաղերու* Աղքատասէր Ընկերութեան *ընդհանուր ժողով՝ ի ներկայութեան 80ի չափ անդամոց՝ իւր երկրորդ նիստն ըրաւ երէկ ի Մայր–եկեղեցի, եւ յանձնախմբի կողմէ պատրաստեալ* Կանոնագրին, *որ ընդամէնը* 30 *յօդուածէ կը բաղկանայ*, 20 *յօդուածը ինչ ինչ բարեփոխութեամբ քուէարկեց*[45]»:

*Ընկերութեան նպատակն էր՝* «չորից թաղից աղքատ հիւանդները դարմանել[46]»: *Իր առաջին Նախագահն եղած է* Տէր–Սուքիաս Աւագ քահանայ[47]: *Ընկերութեան Դիւանը կազմուած էր հետեւեալ կերպով.*

| | |
|---|---|
| *Մ. Մէլիքեան* | *Ա. Ատենապետ* |
| *Յ. Թօզլեան* | *Բ. Ատենապետ* |

---

[45] *Անդ*, *Թ.* 2005: — 1885 *Յունուարին Գամգափուի բնակիչ հայ եւ յոյն քանի մ՚անձեր միանալով՝ Ընկերութիւն մը կը կազմեն, նպատակ ունենալով թաղին հայ եւ յոյն վարժարաններու աղքատ աշակերտներուն նպաստել: Ընկերութիւնը այդ նպատակով թաղին Հայ Թաղ. Խորհուրդին կը յանձնէ* 3856·30 *ղրուշ* (Մանզումէի էֆ., 1886, *Թ.* 5682):

[46] *Անդ*, *Թ.* 2022:

[47] *Անդ*:

Յ. Փալագաշեան     Ա. Ատենադպիր
Հ. Մայըլմեան     Բ. Ատենադպիր [48]

1894—1896ին Ընկերութեան Տնօրէն Խոր- հըրդոյ անդամները 11—12 հոգի են: Ընկե- րութեան ծախքով խնամուած են 1243 հի- ւանդներ, մեծ մասով յիշեալ չորս թաղե- րէն: Ընկերութիւնը ծախսած է 45·786·75 ղրուշ: Իր եկամուտի աղբիւրներն են. Ան- դամավճարներ, թատերական ներկայացում- ներ, «պնակներ», նուիրատուութիւններ եւ «Օժանդակ Մասնախումբ»ի մը կողմէ պատրաստուած «դանձանակներ» [49]:

1896ին Տնօրէն Խորհուրդը կը կազմէին.

Տէր Արսէն քահ. Տ. Յովսէփեան
Տէր Ոսկի քահ. Օհանեան
Խաչիկ Մ. Խանճեան
Կարապետ Խանճեան
Հայկ Օ. Խօճասարեան
Մեսրոպ Պէյլիկճեան
Պօղոս Մինասեան
Տիրան Ե. Մէլիքեան [50]

Ընկերութեան մասին ընդարձակագոյն տեղեկութիւն կը պարունակէ 1899ին հրա- տարակուած «Տեղեկագիր»ը [51]:

1912ին կը կոչուի՝ «Աղքատախնամ Ըն–

---

48 Անդ, Թ. 2034:

49 Տե՛ս Բասնամեայ Համարատուութիւն Աղքա- տասէր Ընկերութեան Գումգափուի չորս Թաղերու Կ. Պ. 1896, էջ 1—20:

50 Համարատուութիւն, 1897, էջ 1:

51 Կ. Պ. 1899, էջ 1—25:

կերութիւն»[52], *իսկ* 1915*ին կը կազմալուծուի*[53]։

24. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1888)

*Կազմուած է* 1888 *Յունիսին Գումգափուի երիտասարդներէն, նպատակ ունենալով.* «Պետական եւ ազգային բարձրագոյն վարժարանաց հայ ուսանողներու նիւթապէս օգնել» (Արեւելք, 1888, *Թ*. 1343)։ *Ունեցած է իր Կանոնագիրը*։

*Ընկերութիւնս անձանօթ է Ալպօյաճեանի*։

25. ՀԱՅ ՑԱՌԱՋԴԻՄԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Գումգափուի այս Ընկերութիւնը կազմուած է* 1908*ին եւ ունեցած է իր սեփական Ակումբը, որուն Ատենապետն էր* Արմենակ Փափազեան, *Գանձապետը*՝ Վահրամ Ասատուրեան, *Ատենադպիրը*՝ Ազարիկ Մախուխեան, *Ընդհ. Քննիչ*՝ Երուանդ Սարաֆեան *եւ* Արամ Գաքունեան[54]։ *Ընկերութիւնը* 1910*ին ունէր նաեւ* Լսարան *եւ կը սարքէր նուագահանդէս*[55]։

*Երկսեռ այս Ընկերութեան իգական անդամները* 1910*ին վերջերը բաժնուելով՝ նոյնանուն զատ Ընկերութիւն մը կը կազմեն*[56]։

---

52 Ժամանակ, Կ. Պ. 1912, *Թ*. 1009։
53 *Գաղ. Տարեգր*., *Գ*., *էջ* 122։
54 Սուրհանդակ, Կ. Պ. 1908, *Թ*. 69—70։
55 *Թէոդիկ, Ամէնուն Տարեցոյցը*, 1911, *էջ* 409։
56 Ժամանակ, 1911, *Թ*. 716։

## 26. ՆՊԱՐԵՂԻՆԱՑ ՇԱՀԱԿՑԱԿԱՆ ՀԱՅ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

Պոլսոյ ժամանակ[57] կը գրէ. «Գում-Գարուի մէջ հաստատուած Նպարեղինաց Շահակցական Հայ Ընկերութեան առժամեայ Դիւանն կազմուած է հետեւեալ անձերէ.

| | |
|---|---|
| Կարապետ Այճեան | Ատենապետ |
| Պետրոս Թագւորեան | Ատենադպիր |
| Գալուստ Եկէնեան | Գանձապետ |

ուստի կը հրաւիրուին անդամները եւ անդամակցիլ փափաքողները... Գում-Գարուի Մայր վարժարանի սրահը՝ արձանագրուելու համար»:

Անդրադարձն տեղեկութիւն չունինք:

## 27. ՎԱՐԴԱՊԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

1908 Հոկտեմբերի սկիզբը կը կազմուի Միութիւնս եւ նոյն ամսոյն 5ին տեղի կ՚ունենայ իր Համաժողովը՝ Պատրիարքարանի մէջ: Դիւանի Ատենապետ կ՚ընտրուի Գէորգ Վ. Արսլանեան, Ատենապետ՝ Բաբգէն Վ. Կիւլէսէրեան: Ծրագիր-Կանոնագիր պատրաստելու գործը կը յանձնուի Յանձնաժողովի մը, որուն անդամ են Յակոբոս Վ. Տահպազեան, Գնել Վ. Գալէմքիարեան եւ Մեսրոպ Վ. Նշանեան[58]:

Միութեան «Հիմնական Կանոնագրութիւն»ը իբր ձեռագիր հրատարակուած է՝

[57] 1908, Թ. 57:
[58] Սուրհանդակ, 1908, Թ. 96:

անթուականն: Կը բովանդակէ 50 Յօդուած, որմէ կ'ընենք քանի մը յառաջբերութիւն:

Վարդապետակ. Միութեան անդամ են Հայ Եկեղեցւոյ բոլոր Վարդապետները՝ առանց միաբանական խտրութեան (Յօդ. 1): Վարդապետական Միութեան անդամները ամսական 10 ղրշ. պարտաւոր են վճարել Վրդպ. Միութեան սնտուկին (Յօդ. 2): Վարդապետական Միութեան Վարչական կազմակերպութիւնը երկու ժողով ունի. Ա. Համախումբ ժողով, Բ. վարիչ ժողով (Յօդ. 3): Վարդապետական Միութեան նպատակն է Հայ. Եկեղեցւոյ ծառայել՝ Հայ. Եկեղեցւոյ կողմէ վարդապետներու տրուած իշխանութեան լման հասկցողութեամբ (Յօդ. 9): Վարդ. Միութիւնը օգտակար կը համարի որ ընկալեալ սովորութեան համեմատ՝ իբր վարձատրութիւն տրուած ծաղկեայ եւ մանիշակագոյն փիլոններու տուչութիւնը եւ յանձնախաչի շնորհումը կապուի վարդապետներու նշանակելի գործունէութեան եւ ծառայութեան պաշտօնական գնահատման հետ (Յօդ. 21):

28. ՔԱՀԱՆԱՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

Նման «Վարդապետական Միութեան»՝ 1908ին Գումգափուի մէջ կազմուած է «Քահանաներու Միութիւն» մը, իր մասնաւոր կանոնագրով, ինչպէս կը յիշուի[59], եւ զոր չենք կրցած տեսնել:

[59] Սուրհանդակ, 1908, Թ. 110:

## 29. ՀԱՅ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԵՐԱԺԻՇՏՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

Կազմուած կը թուի 1908 Սեպտեմբեր–Հոկտեմբերին: Իր կանոնագիրը նոր կը կազմուի[60] 1908 Նոյեմբերին: Արդեօք կապ ունի՞ Բերայի (Թ. 71) «Եկեղեցական Երաժշտասիրաց Միութեան» հետ: Այդ պարագային Բերայի Միութիւնը շատ աւելի հին ըլլալու է:

## 30. «ՏՈՐՔ» ՀԱՅ ՄԱՐՄՆԱՄԱՐԶԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

1908ի Պոլսոյ ազատաշունչ մթնոլորտը թեւ տուած էր նաեւ հայ երիտասարդութեան՝ թափ կատարելու համար ոչ միայն հայաշէն մարզարաններու, այլ եւ օտար եւ միջազգային ասպարէզներու վրայ: Բազմաթիւ ու բազմազան են այն հայ մարզական Միութիւնները, որոնք 1908էն ծնունդ առին Պոլիս եւ գաւառները: Շաւարշ Քրիսեանի Մարմնամարզ թերթը մեծ զարկ տուաւ այդ արիներու շարժումին:

Պոլսոյ «Տորք» Հայ Մարմնամարզական Միութիւնը կազմուած է Գումգափուի մէջ 1908 Սեպտ. 20ին, նպատակ ունենալով հետեւեալը. «Ամէն կերպով աշխատիլ երիտասարդութեան ֆիզիքական զարգացման[61]»: Այդ նպատակին հասնելու համար իր Կանոնագիրը կը սահմանէ. «Մշակել Ֆութպոլը,

---

[60] Անդ, Թ. 120:

[61] Ընդհանուր Կանոնագիր, Կ. Պ. 1912, էջ 3:

մարմնամարզը, աթլէթիզմը եւ սփորները: Հաստատել մարմնամարզարան մը: Հիմնել Մատենադարան մը: Սարքել բանախօսութիւններ եւ կազմակերպել դաշտային հանդէսներ[62]»:

Ընկերութեան անդամ կրնայ դառնալ ամէն հայ, ամսական 2 դահեկան վճարելով: Ընկերութիւնը ունի իր «պաշտօնական համազգեստը»: Իր Վարչութիւնը կը բաղկանայ Ընդհ. եւ Վարչական Ժողովէ. առաջինին կը մասնակցին բոլոր անդամները, իսկ երկրորդը կը կազմուի 5 անդամէ, ընտրուած Ընդհ. Ժողովէն:

Ընկերութեան Կանոնագիրը 54 Յօդուած ունի, հրատարակուած Կ. Պ. 1912ին:

### 31. «ՄԻՆԱՍ ՉԵՐԱԶ» ԳԻՇԵՐԱՅԻՆ ԴԱՍԱԽԱՆԴՈՒԹԵԱՆՑ ԱԿՈՒՄԲ (1908)

Կազմուած է 1908 Հոկտ.ին: Կ'աւանդէր թրքերէն, գաղղիերէն եւ առողջապահութեան դասեր (Մանզ. Էֆքեար, 1908, Թ. 2267):

### 32. ԲԱՐԵՍԻՐԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ (1910)

Ընկերութիւն մ'է «Բարեսիրական Ակումբ»ը, հաստատուած Գումգափու 1910 Յունուար 1ին: Իր Կանոնագիրը, հրատարակուած 1910ին, կազմուած է 42 Յօդուածէ, որուն առաջինը կ'ըսէ. «Կառավարական բարձր արտօնութեամբ կազմուած է Ընկե-

---

[62] Անդ, էջ 4:

ութիւն մը «Բարեսիրական Ակումբ» անուան տակ[63]»:

Ընկերութիւնս կազմողներն եղած են «քսան տարին լրացուցած յիսուն հիմնադիրներ» (Յօդ. 2): Ահա իր ծրագիրը. «Մայր եւ Լուսաւորչեան Ազգ. վարժարանաց աղքատիկ ուսանողներուն սատարել՝ հայթայթելով անոնց գրենական պիտոյք եւ հանդերձեղէն, նաեւ անոնցմէ ուշիմները գետեղել բարձրագոյն վարժարաններ» (Յօդ. 3): Անդամավճարն է ամսական 1 ղրշ.: Վարչութիւնը կը կազմեն Հիմնադրաց ժողովը եւ Գործադիր ժողովը (Յօդ. 7 եւ 11):

### 33. «ԱՍՊԱՐԷԶ» ԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

Իր նպատակն էր. «Նպաստել իր սահմանին մէջ՝ հասարակութեան մտաւոր, բարոյական ու ֆիզիքական դաստիարակութեան»: 1920ին 190 անդամ ունէր: Վարչական Խորհուրդի անդամներն էին. Կարապետ Խամէրեան, Կ. Թուխտարեան, Մ. Մազմանեան, Յ. Սվաճեան, Յ. Գարագաշ, Կ. Բարունի, Օր. Հ. Ֆօրթունաթօ, Կ. Թարխանեան, Մ. Կիւմիւշեան, Օր. Գ. Մատաթեան եւ Երամ Սրապ: Միութիւնը ունէր իր Ենթա-Միութիւնը՝ «Հսկայորդիներ» Գեղարուեստական Միութիւն[64]»:

63 Կանոնագիր Բարեսիրական Ակումբի, Կ. Պ. 1910, էջ 1:

64 Ժողովուրդի Ձայնը, 1920, Թ. 654, 847: — Թէոդիկ, Ամէն. Տարեց., 1921, էջ 300:

*Ընկերութեանս հիմնադիրներէն կը յիշուին.* Դոկտ. Միքէ Գարակէօզեան, Արմենակ Շահուպ, Եզնիկ Քաջունի, Յակոբ Գանթարեան եւ Յակոբ Գաբուճեան[65]»: 1914*ին Ընկերութիւնը կը կոչուի* «Նոր Ասպարէզ» *Լսարանական Միութիւն*[66]»: 1915*ին կը հալածուի անողոք*: 1918*ին* կը վերակազմուի *նոր ու եռուն գործունէութեամբ*[67]: 1922*ին ի նպաստ իրեն հանդէս կը սարքեն*[68]:

34. ՅԱՌԱՋԴԻՄԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

*Ընկերութեանս նպատակն է.* «Չքաւոր ուսանողուհիներու օգնել»[69]: 1910*ին կառավարութենէն կը վաւերացուի* 163 *թիւ պաշտօնագրով*[70]: *Ընկերութիւնը որբուհի մը կը դաստիարակէ Ակնի Լիճք Գիւղի մէջ*[71]:

35. «ԶԱՆԳ» ԽՆԱՅՈՂԱՍԷՐ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*Հաւանաբար* 1910*ի վերջերը կազմուած է*: 1911*ի Փետրուարին կը գրէ* Ժամանակ[72]. «*Գումգափուի մէջ Զուլհաեան Գրիգոր էֆ.ի նախագահութեան տակ հաստատուած* «ջանք»

---

[65] *Տե՛ս* Նոր Հայաստան, Կ. Պ. 1919, Թ. 10, *էջ* 167—168:

[66] Ժամանակ, 1914, Թ. 1793:

[67] *Անդ*, 1918, Թ. 3385: — Նոր Հայաստան. *անդ*, *էջ* 167:

[68] Ժողովուրդի Ձայնը, Թ. 1001:

[69] Ժամանակ, 1911, Թ 716:

[70] *Անդ*:

[71] *Անդ*, 1910, Թ. 556. 1911, Թ. 716: — *Թէոդիկ*, *անդ*, *էջ* 308:

[72] Թ. 713:

խնայողասէր Ընկերութիւնը ներկայ ձմրան խստութիւնը նկատի առնելով, անցեալ կիրակի նոյն թաղին մէջ գտնուած կարօտ ընտանիքներուն բարեսիրաբար 700 քաշ ածուխ բաշխած է, առանց ցեղի ու կրօնքի խտրութեան»:

1918ին կը վերակազմուի կոչուելով «Զանգ Միութիւն»[73]:

## 36. ԺՈՂՈՎՐԴԱՅԻՆ ԸՆԹԵՐՑԱՐԱՆԻ ՄԻՈՒԹԻՒՆ (1914)

1914ին հիմնուած այս Միութիւնը զուտ մշակութային իր նկարագրով, կարճ ժամանակ մը միայն գործած է[74]: Ինչպէս այս՝ նոյնպէս միւս բոլոր պոլսահայ Ընկերութիւնները առհասարակ անդամալուծուած են 1915—1918ի շրջանին:

## 37. «ԲԱՄԲԻՌ» ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

Գումգափուի «Բամբիռ» Միութիւնը կազմուած կը կարծենք 1918ի վերջը: 1919 Նոյեմբերին սկիզբը լուծուելով՝ իր անդամները կ՚անդամակցին «Քնար» Երաժշտասիրաց Ընկերութեան (տե՛ս Բերա, Թիւ 43): Միութիւնը իր բոլոր գոյքերը կը յանձնէ «Քնար»ին[75]: «Քնար»ը երկար ատեն պահած է իր գոյութիւնը. 1918—1922 ամէն հայ հանդէսի փայլ կու տայ իր նուագախումբով:

---

[73] Անդ, 1918, Թ. 3381, 3387:
[74] Անդ, 1914, Թ. 1772:
[75] Ժամանակ, 1919, Թ. 3668:

### 38· «ՎԱՐՈՒԺԱՆ» ԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Դանիէլ Վարուժանի յիշատակին հիմնուած է Միութիւնս՝ նպատակ ունենալով. «Բարոյական, մտաւոր եւ նիւթական օժանդակութիւններ ապահովել»* 1918*ի թշուառներուն*[76] :

*Միութեան Վարչութիւնը կը կազմէին*[77].

| | |
|---|---|
| *Վահէ–Հայկ* | *Ատենապետ* |
| *Արամ Տիգեան* | *Ատենադպիր* |
| *Թաթուլ Յակոբեան* | *Բ. Ատենապետ* |
| *Պետրոս Աքչելեան* | *Բ. Ատենադպիր* |
| *Մկրտիչ Արապեան* | *Գանձապետ* |
| *Յակոբ Դարբինեան* | |
| *Երամ Սրապ* | |

### 39· «ԿԱՅԾԱԿ» ՇԱՀԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

1919*ի սկիզբը կազմուած է այս Միութիւնը եւ իր անդամական հաւաքոյթները տեղի կ՚ունենային Մայր–Վարժարանին մէջ*[78] :

### 40. ԱՐԵՒԵԼԵԱՆ ԹԱՏԵՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Գումգափուի* «Արեւելեան Թատերական Միութեան» *հիմնումի մասին չենք հանդիպիր տեղ մը: Կը յիշուի* 1920*ի Յունուարին*[79], *որով կարելի է ենթադրել թէ անոր կազմութիւնը եղած ըլլայ* 1919*ին*: 1920 *Յունուար 7ին հանդէս կը սարքէ Գումգափուի Յունաց*

---

[76] *Անդ*, 1918, *Թ*. 3382:
[77] *Անդ*, *Թ*. 3399:
[78] *Անդ*, 1919, *Թ*. 3404:
[79] *Անդ*, 1920, *Թ*. 3730:

*Ներախմլէնլի եկեղեցւոյ թատերասրահը, ուր տեղի կ'ունենան բանախօսութիւն, նուագ եւ կատակերգութիւն*[80]: 1920 *Փետրուարին «Հայ Բանակի Օր»ուան առթիւ, Միութեան թատերախումբը կը ներկայացնէ «Մեծն Վարդան Մամիկոնեան»*[81]: *Նոյն տարի Մայիսին՝ Միութիւնը ամառնային ներկայացումներու ծանուցում կու տայ՝ ի հաշիւ Միութիւններու կամ բարեբարական նպատակներու*[82]:

## 41. ՀԱՅ ՃԱՐՏԱՐԱԳԷՏՆԵՐՈՒ ԵՒ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Հիմնուած է* 1919*ի ամառը: Հիմնադիր ժողովը* 1919 *Յուլիս* 11*ին կ'ընտրէ Վարչական ժողով մը՝ հետեւեալ մասնագէտներէ. Կ. Պեկեան, Ունճեան, Պասմաճեան, Գավաֆեան, Թ. Թագւորեան, Վրթանէսեան, Սէրէնկիւլեան, Քէրէստէճեան, Նուրիճան, Գարակէօզեան, Ալթունեան եւ Ստեփանեան: Միութեան հաւաքավայրը Ղալաթիոյ Խորհրդարանն էր*[83]:

*Այս Միութեան նպատակներէն մին եղած է մտաւորական ոյժ տրամադրել Երեւանի կառավարութեան*[84]:

---

80 Ժամանակ, 1920, *Թ.* 3730:
81 *Անդ*, *Թ.* 3755:
82 *Անդ*, *Թ.* 3827:
83 Ժամանակ, 1919, *Թ.* 3566, 3571: — *Թէոդիկ*, Ամէն. Տարեց. 1921, *էջ* 308:
84 *Անդ*, *Թ.* 3656:

### 42. ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ՇՐՋԱՆԱԽԱՐՏԻՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*«Դպրոցասէր Հայուհեաց Ընկերութեան» Գումգափուի վարժուհինոցի շրջանաւարտուհիները* 1919 *Մայիսին կը կազմեն* «Դպրոցասէրի Շրջանաւարտից Միութիւն»*ը, նպատակ ունենալով նպաստել իրենց վարժարանին։ Միութիւնը* 1919 *Յունիսին նուագահանդէս կու տայ՝ ի նպաստ վարժուհինոցին*[85]։ 1920 *Փետրուարին հանդէս կը սարքէ՝ ի նպաստ որբերուն*[86]։

### 43. «ՏՐԱՄԱԹԻՔ» ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ (1922)

1922 *Սեպտ. 1ին «նորակազմ» է Գումգափուի «Տրամաթիք»ը, կազմուած՝ տեղւոյն «երիտասարդ ամաթէօրներէն» եւ որ պատրաստ է ազգ. բարենպատակ հաստատութիւններու տրամադրել իր ուժերը։ Խումբին գլուխը կը գտնուի Ա.* Գմբէթեան[87]։

---

[85] *Անդ*, *թ.* 3535։

[86] *Անդ*, *թ.* 3745։ — *Հմմտ.* Ժողովուրդի Ձայնը, 1921, *Տ.* 853։

[87] Ժողովուրդի Ձայնը, 1922, *թ.* 1188։

## ԳՈՒՄԳԱՓՈՒԻ–ԴՈՒՐՍԻ

### 1· ՏԻԿՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

Գումգափուի մէջ 1864ին կազմուած «Տիկնանց Ընկերութիւն» մը կը յիշեն Թարգմանեան[88] եւ Ալպօյաճեան[89]: Մեզ կը թուի թէ սխալմունքի մը զոհ եղած են երկուքն ալ: Ընկերութիւնը ո՛չ թէ Գումգափուի, այլ կից թաղի՝ Գումգափուի–Դուրսի մէջ կազմուած է:

Ժամանակակից հայ թերթերը կը պատմեն իրողութիւնը: Ահա Մասիսի տեղեկատուութիւնը. Գէորգ Ամիրա Սարաֆյար Քեահեայի փափագեամ՝ Գումգափուի–Դուրսի թաղին թաղականութենէն կը խնդրէ որ իրեն չիրմատեղի մը յատկացնեն նոյն թաղի Ս. Յարութիւն եկեղեցւոյ կից պարտէզին մէջ, այս առթիւ 40·000 դրուշ կտակելով նոյն աղքատ թաղի Պեզճեան մանչ եւ աղջիկ դպրոցներուն, 10·000 դրուշ ալ նուիրելով նոյն եկեղեցւոյն՝ իր ծնողաց հոգիներուն պաշտօն–պատարագ մատուցուելու համար· առանցմէ զատ քարաշէն կէս խանութ մ'ալ կտակելով: Թաղականութիւնը այս վեհանձն

88 Երեմ. Չէլէպ., անդ, Ա., էջ 244:
89 Գալ. Տարեգր., Բ., էջ 86:

բարիքները տեսնելով՝ կը խնդրէ Ամիրայէն որ թաղին յիշեալ դպրոցներու վերին հսկողութիւնն ու բարեկարգութիւնն ալ իր վրան առնէ: Ամիրան սիրով յանձն կ՚առնէ եւ անմիջապէս իր Տիկնոջ կը յանձնէ աղջկանց վարժարանի խնամակալութիւնը: Իսկ Տիկինը՝ «աղջկանց վարժարանին ուսմանց եւ զանազան տեսակ ասեղնագործութեանց յառաջադիմութեան մասին պէտք եղածը տնօրինելու համար ութ բարեսէր եւ ազնուական տիկիններէ խնամակալութիւն մը կազմեր է, որոնք արդէն իրենց խնամոցն յանձնուած վարժարանին զարգացմանը հոգ տանելու սկսեր են»[90]:

Գէորգ Ամիրա 1883ին կը թաղուի վերոյիշեալ Ս. Յարութիւն եկեղեցւոյ շրջափակին մէջ[91]:

Աւելի կարեւոր է Պոլսոյ ժամանակ, Հանդէս Հայրենանուէր թերթի տուած տեղեկութիւնը: Ս. Մ. ստորագրութեամբ յօդուածագիր մը հոն 1864 Փետր. 1 թուականի տակ կը գրէ. «Գումգափուի դուրսի կուսանաց վարժարանին խնամակալութեանը համար կազմուած Ազնուազարմ Տիկնանց Ընկերութիւնը յիշելն ու ընդհանրութեան իբրեւ քերկրառիթ լուր մը հաղորդելը՝ պատիւ անձին եւ քաղցր պարտաւորութիւն մը կը համարիմ: Այո՛, աղքատութեան եւ

---

[90] Մասիս, 1864, Թ. 625, Փետր. 1:
[91] Թորգոմեան, անդ, էջ 272:

*Ազգ. դաստիարակութեան յառաջադիմու-թեանը նոր խրախոյս մ'ալ կը շնորհեն, նոր թիկունք մը կ'ըլլան ազնուուհի Տիկնայք՝*

Յուստինանէ Գ. Փափազեան
Մաքրուհի Ա. Գարաբաճեան
Նեկտարինէ Յ. Գարագաշեան
Աննիկ Գ. Գարաբաճեան
Իսկուհի Ա. Պէրպէրեան
Նեկտարինէ Մ. Մինասեան
Կատարինէ Մ. Անուխեան
Մաքրուհի Մ. Փափազեան

*որոց ամանց քիչ օրուան մէջ ըրած նուէրնին եւ իրենց պաշտօնը մխարանութեամբ յառաջ տանելու ջանքերնին կը փարատեն տխրութիւնն այն սրտերէն, որ վայրկի մը վհատեցան...* Մեծաշուք Փափազեան Գէորգ ամիրայի Ազնուուհի Յուստինանէ Տիկինը նախապէս ինքը կ'ընդունին յիշեալ թաղին եւ Ազգին շնորհակալութիւնը, սկզբնապատճառ ըլլալով մեծ ձեռնարկութեան մը...: *Արդ յուսով եմք որ* Ս. Վառվառեայ (*Պեզճեան*) վարժարանին *պատուարժան Խնամակալուհիք յարատեւ ջանիւք յառաջացնելով իրենց ազգօգուտ ձեռնարկութիւնը՝ ազատ կը մնան խոչընդոտ եւ ուերիչ ձեռքերէ»*[92]:

*Ինչպէս կը տեսնուի՝ «Տիկնանց Ընկերութիւնը» կազմողն է* Տիկին Յուստինանէ Գ. Փափազեան՝ *նպատակ ունենալով Գումգա-*

---

[92] Ժամանակ, Կ. Պ. 1864. էջ 31—32:

*փուխ–Դուրսի աղջկանց* Ս. Վարվառեան վարժարանի *խնամակալութիւնը ստանձնել։ Որքան տեւած է այս Ընկերութեան կեանքը՝ չենք գտներ տեղեկութիւն մը։*

2. ԴՊՐԱՑ ԴԱՍ (1894)

*Ս. Յարութիւն եկեղեցւոյ* Դպրաց Դաս*ը գոյութիւն ունեցած է* 1894*էն սկսած, բայց կազմակերպուած է* 1902*էն ի վեր*[93]։

3. ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908—1909)

*Ընկերութիւնս կազմուած կ'երեւայ* 1908—1909*ին։ Իր նպատակն եղած է՝ Թաղին աղքատ աշակերտներու նիւթապէս նպաստել։* Ժամանակ[94] *կը գրէ. «Գումգափուի դրսի* Հայ Երիտասարդաց Ընկերութիւնը *Թաղին աղքատիկ ուսանողաց ի նպաստ Յուլիս* 4*ին դաշտային հանդէս մը պիտի սարքէ Պէյքոզի մէջ*»։

ՄԱԳՐԻԳԻՒՂ

1. ԿՐԹԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (... 1882)

*Պատահական գրութեան մը մէջ*[1] *միայն յիշուած է* Մագրիգիւղի Կրթական Ընկերութիւն*ը*, 1883 *Փետր.* 16*ին, ուր մատնանիշ*

---

[93] *Գաղ. Տարեգր.*, Գ., *էջ* 122։
[94] 1910, *Թ.* 515։
[1] *Տե՛ս* Թէրճ. Էֆքեար, 1883, *Թ.* 1656։

*կ՚ըլլայ Թաղին վարժարանի անկարգ վի- ճակը։ Կը թուի թէ բաւական հին Ընկերու- թիւն մըն է եւ եղած վարժարանի պաշտ- պանն ու նպաստողը։*

*Ալպօյաճեան չի յիշեր Ընկերութիւնս։*

2· ԱՂՔԱՏԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (… 1889)

1889*ին կը յիշուի նուաղահանդէսի մ՚առ- թիւ եւ կ՚ըսուի թէ Փոխ-Ատենապետն է* Տիկ· Իլիաս Չայեան *եւ Ատենադպիրը*՝ Օր· Ագապի Քիւրքճեան [2]։

*Անծանօթ է անունս Ալպօյաճեանի։*

3· ԴՊՐԱՑ ԴԱՍ (1897)

*Կը յիշէ միայն Ա. Ալպօյաճեան* [3]։

4· ՀԱՅ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԱԿՈՒՄԲ (1908)

*Կը յիշուի* 1908 *Մարտին* [4]։ 1908 *Հոկտ.ին կը կազմակերպէ ձրի դասընթացքներ, նաեւ լեզուներու* [5]։ 1921*ին ունէր* 55 *անդամ*։ Մայր Դիւանը *կը կազմէին*. *Տօքթ. Ն. Թիւլեան, Կ. Այճեան, Վ. Զարդարեան, Թ. Ագատեան*։ *Իսկ* վարչութիւնը՝ *Մ. Պէօճէքեան, Զ. Բլա- տեան, Յ. Վարդեան, Ե. Դերձակեան, Կ. Կարապետեան, Լ. Բարունակեան, Պ. Զար- դարեան* [6]։

---

[2] Մանզ· Էփքիար, 1889, *Թ*. 6227։
[3] *Գաղ. Տարեգր.*, *Գ.*, *էջ* 122։
[4] Ժամանակ, 1908, *Թ*. 125։
[5] Սուրհանդակ, 1908, *Թ*. 104։
[6] *Թէոդիկ, Ամէն. Տարեց.* 1922, *էջ* 271։

### 5. ՏԻԿՆԱՆՑ ԿԻԼԻԿԵԱՆ ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Հիմնուած է* 1908 *Մայիսին* (Ազատամարտ, *Կ. Պ.* 1909, *Թ.* 74)։ *Տարեկան* 50 *ոսկի կը նուիրէ «Ազգանուէր Հայուհեաց Ընկերութեան», որ Ատանայի մէջ վարժարան մը կը բանար Ընկերութեանս անունով*[7]։

*Ընկերութիւնս կը կոչուէր նաեւ* «Կիլիկեան Որբախնամ Կանանց Ընկերութիւն»[8]։ 1914*ին կը հրատարակէ* Տիկին Հռիփսիմէ Արապեանի *խրագիտութիւնը, որ Խուրշէաբեանի մրցանակին արժանացած էր*[9]։

### 6. ՀԱՃԸՆԻ ՀԱՅ ՈՐԲԵՐՈՒՆ ՊԱՇՏՊԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909)

*Կազմուած է* 1909 *Յունիս–Յուլիսին, նպատակ ունենալով* 50 *հոգինոց Որբանոց մը բանալ Հաճընի մէջ։ Տնօրէն Խորհուրդը կը կազմէին.*

| | |
|---|---|
| *Գարեգին Ազատեան* | *Ատենապետ* |
| *Գէորգ Իւթիւճեան* | *Փոխ-Ատենապետ* |
| *Կարապետ Աստուածատուրեան* | *Գանձապետ* |
| *Հրանդ Մէրկէրեան* | *Ատենադպիր* |
| *Նշան Անտոնեան* | *Հաշուակալ*[10] |

---

[7] Ժամանակ, 1909, *Թ.* 272։ — *Հմմտ. Ազգ. Հայուհեաց Ընկերութիւն, Երկամեայ Տեղեկագիր, Կ. Պ.* 1911, *էջ* 9, 21։

[8] Բողբոջ, *Մարգուան* 1912, *էջ* 12։

[9] Ժամանակ, 1914, *Թ.* 1929։

[10] Մանզ. Էփէմար, 1909, *Թ.* 2441։

7. «ԺՈՂՈՎՐԴԱՅԻՆ» ԼՍԱՐ. ԸՆԹԵՐՑ. ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

*Հիմնուած է 1909ին։ Կը յիշուի* Ժամանակէն[11]։ Նպատակը. «Նպաստել Մագրիգիւղի հայ ժողովրդեան մտաւոր, բարոյական ու ֆիզիքական զարգացումին»[12]։ 1920ին *ունէր 100 անդամ*։ Վարչ. խորհուրդը *կը կազմէին. Պիմէն Զարդարեան (Ատենապետ), Յ. Ադասեան, Լ. Բնարեան, Յ. Գանթարեան, Տոքթ. Կոստանդեան, Գ. Պետրոսեան, Յ. Գազազեան։ Իսկ* Մայր Դիւանը՝ *Կ. Գազանճեան, Վ. Զարդարեան, Գ. Պօղոսեան*[13]։

8. «ՄՇԱԿ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

*Խնայողական Ընկերութիւն մըն է «Մշակը», հիմնուած 1910ին։ Ունէր 100 բաժին՝ իւրաքանչիւրը ամսական ¼ օսմ. ոսկի։* Նպատակն *էր. Պարգեւաւոր արժեթղթեր գնել եւ շահած դրամագլխին որոշ գումարէ մը վեր 5% յատկացնել «Միացեալ Ընկերութեանց»։ Ահա՛ իր Վարչութիւնը. Սարգիս Բէշեան (Ատենապետ), Նահապետ Ադասեկեան (Ատենադպիր), Կարապետ Եակրուեան (Գանձապահ), Արմենակ Համամճեան (Հաշուակալ), Վահրամ Պէրպէրեան (Խորհրդական)*[14]։

---

[11] 1913, *Թ*. 1384. 1914, *Թ*. 1733։
[12] *Թէոդիկ, Ամէն. Տարեց*. 1921, *էջ* 302։
[13] *Անդ*։
[14] Ժամանակ, 1910, *Թ*. 650։

### 9. «ՍՐԻՆԳ» ԽՈՒՄԲ (1912—1913)

*Կազմուած է Թաղին վարժարանի շրջանակին մէջ եւ կը մասնակցի հանդէսներու*[15]:

### 10. «ՍԱՍՈՒՆ» ՄԱՐՄՆԱՄԱՐԶԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1912—1913)

*Հաւանաբար կազմուած է մարմնամարզի եռուն շրջանին* — 1912–1913*ին* —: 1918*ին* կը վերակազմուի[16]:

### 11. ՏԻԿՆԱՆՑ ՆՊԱՍՏԱՄԱՏՈՅՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1915)

*Կազմուած* 1915 *Նոյ.ին՝ Դեկտ.ին բաշխած է աղքատ ընտանիքներուն. 4 սնկի դրամական նպաստ,* 700 *օխա ածուխ,* 35 *օխա կաթ,* 350 *օխա հաց: Հայթայթած է նաեւ միջոց ձեռական աշխատանքի թէ՛ Մաղրիզլուղի, թէ՛ Սամաթիոյ, թէ՛ Խասգիւղի, թէ՛ Գումգափուի եւ թէ Պալաթի աղքատներուն: Գանձապետն էր* Տիկ. Շէրիտճեան[17]: *Ատենապետ* Տիկ. Ադամեան *կը դեկուցանէ. Միութիւնը* 2 *ամսուան մէջ* 8000 *դրշ. հաւաքած եւ բաժնած է աղքատներու*[18]:

### 12. ՏԱՏԵԱՆ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1918—1920)

Տատեան Վարժարանի *յորջորջումը* 1882*էն է*[19]: «Տատեան Սանուց Միութիւն»*ը կը յիշուի* 1921[20]: *Կը տեւէր* 1953*ին*[21]:

---

15 *Անդ.*, 1914, *Թ.* 1733:
16 *Անդ.*, 1918, *Թ.* 3405:
17 Ժամանակ, 1915, *Թ.* 2040:
18 *Անդ.*, *Թ.* 2069:
19 *Թորգոմեան, Երեմ. Չէլէպի, Ա.*, *էջ* 402:
20 Ժողովուրդի Ձայնը, 1921, *Թ.* 793, 918, 991:
21 *Երջանիկ Տարեցոյց*, 1953, *էջ* 12:

13· ՊԵԶԱԶԵԱՆ ՍԱՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Կը յիշուի* 1919 *գարնան*[22], *անշուշտ աւելի հին ըլլալով: Մագրիգիւղի՞ մէջ հիմնուած, ուր կը յիշատակուի:*

14· «ՏԻՏԱՆ» ՄԱՐՄՆԱՄԱՐԶԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (···1952)

1952*ին հանդիպած ենք իր անուան*[23]: 1914*էն առաջ չէ՞ իր ծագումը:*

## ԵԷՆԻԳԱԲՈՒ

1· ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1859—1860)

*Եէնիգափուի հնագոյն Ընկերութիւնը կը համարինք* Ընթերցասիրաց Ընկերութիւնը, *որ* 1861*ին յիշուած է, առաջին անգամ,* Մասիսէն[24], *որ* «Թնար Հայկական» *թերթի վրայ խօսելով՝* պատահաբար *յիշատակած է Ընկերութիւնս: Ընկերութիւնը* 1861*ին* Ընթերցարան *ունէր — ապացոյց թէ ան* 1861*ին հիմնուած* Նոր *Ընկերութիւն մը չէր: Հաւանական կը համարինք թէ հիմնուած ըլլայ* 1859—1860*ին: Աւելի հին ալ կրնայ եղած ըլլալ, նկատի առնելով որ Սամաթիոյ եւ Խասգիւղի «Ընթերցասիրաց»ները* 1857*էն, իսկ Գումգափուինը՝* 1852*էն են:*

---

22 Ժամանակ, 1919, թ. 3500:
23 Այսօր, *Փարիզ* 1952, թ. 540:
24 1861, թ. 498:

*Ընկերութիւնս 1872էն առաջ դադրած էր, զի նոյն տարւոյ մէջ նոր «Ընթերցասիրաց» մը կը հիմնուի Եէնիգափուի մէջ, ինչպէս պիտի տեսնենք:*

*Ընկերութիւնս անծանօթ է Ալպօյաճեանի:*

## 2· ԱՇՈՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1860)

*Ինչպէս Գումգափուի 1859ի անունը անծանօթ Ընկերութեան վրայ խօսած ատեն շեշտեցինք՝ Պոլսոյ այս երկու թաղերը — Գումգափու եւ Եէնիգափու —* Մասիսի *վկայութեան համեմատ* [25] *աղջկանց յատուկ վարժարանէ զուրկ էին 1859ին: Գումգափուի եւ Եէնիգափուի մէջտեղ աղջկանց վարժարան մը բանալու համար 1859ին Գումգափուի մէջ Ընկերութիւն մը կը հաստատուի Կարապետ Փանոսեանէ: Իսկ Եէնիգափուի Հայութիւնը իրեն համար աղջկանց յատուկ վարժարան մը բանալ ուզելով՝ 1860ին կը հիմնէ* Աշոտեան Ընկերութիւնը:

*«Աշոտեան Ընկերութեան» մասին կարեւոր է* Մասիսի *հետեւեալ տեղիքը· «Մայրաքաղաքիս Եէնիգափու թաղին մէջ աղջկանց դպրոցի մը պէտքը երկար ժամանակէ ի վեր զգալի եղած էր...: Հինգ տարի է որ մենք այս ջերմ փափաքը յայտնած էինք...: 1860ին յիշեալ թաղին բնակիչներէն քանի մը ազգասէր անձինք* Աշոտեան *անուամբ* Ընկե–

[25] 1859, *թ*. 408:

բութիւն *մը կազմեցին՝* որուն առաջին եւ միակ նպատակն էր Եէնիգափուի թաղին մէջ յանուն Ս. Աստուածածնի աղջկանց դպրոց մը հաստատել, *իր ծախուցը բաւական ըլլալիք եկամուտով*: Երկու տարի է Աշտեան Ընկերութեան կազմութիւնը *եւ անցեալ տարուան վերջին հաշուեցուցակնուն նայելով՝* 18 *հազար ղուրուշի չափ գումար մը մինչեւ հիմա հայթայթած են: Այս կերպով պատրաստուելիք պատշաճ եկամուտ մը երկար տարիներու գործ ըլլալով, թաղին բարեսէր ընակչաց համբերութիւնը հատեր է եւ վերջապէս կը լսենք թէ Յունուար 22ին ժողով մը ընելով՝ աղջկանց դպրոցը բանալու որոշում ըրեր են*[26]»: *Այսինքն՝ տասնց սպասելու որ Աշտեան Ընկերութիւնը ինքը կարող ըլլայ իր միջոցներով բանալ դպրոցը: Ուրի՛շ խնդիր որ այդ ժողովի որոշումէն վերջն ալ կարող չեն եղած թաղեցիները բանալ աղջկանց դպրոց մը*[27]:

*Հաւանօրէն «Աշտեան Ընկերութիւն»ն է, զոր Սկանակ Բանասէր «Եէնի Գափուի Ընկերութիւն (1860)» կը կոչէ*[28]:

*Սարգիս Պատրիարք 1861 Յունուար 25ին օրհնութեան կոնդակով կը հաստատէ Աշտեան Ընկերութիւնը եւ անոր Կանոնագիրը, բայց Ընկերութիւնը չի հասնիր իր նպատակին*[29]:

---

[26] Մասիս, 1863, *թ*. 573:

[27] *Հմմտ*. Մամուլ, 1871, *էջ* 26:

[28] Մասիս, 1898, *թ*. 3854:

[29] *Գալ. Տարեգր.*, *Բ*., *էջ* 81:

### Յ. ԱՂՋԿԱՆՑ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԵԱՆ ՆՊԱՍՏԱՄԱՏՈՅՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863)

Թ. Նազարեան *է հիմնադիրը* «Աղջկանց Դաստիարակութեան Նպաստամատոյց Ընկերութեան»[30], *որ ունի «Հիմնական» եւ «Մասնաւոր» կանոններ՝ եօթնական Յօդուածներով, որոնք* Ջեփիւռի *մէջ*[31] *լոյս տեսած են։ «Հիմնական» կանոններէն առաջինը կ՚ըսէ.* «Ընկերութեանս նպատակն է իւր կարողութեանը չափ աղքատիկ աղջիկներ, օրինաւոր դպրոցի մէջ բարի ընթացքով դաստիարակել տալ՝ անոնց պէտք եղած ծախքը իւրեն հոգալով»։

*Այդ նպատակին հասնելու համար Ընկերութիւնը իւր անդամներէն, ամսէ ամիս, մէկական դրուշ կը գանձէր (Հիմնակ. Կան. Յօդ. 2)։ Մինչեւ որ աղջկան մը տարեկան դաստիարակութեան պէտք եղած դրամը չհաւաքէր՝ աղջիկ մը չէր կրնար դպրոց դրուիլ (Յօդ. 5)։ Այն անդամը միայն ժողովքի մէջ ձայն ունէր, որ վերջին ամիսներու ամսականները վճարած էր (Մասնաւոր Կան. Յօդ. 7)։*

*Թէ ո՛րքան ատեն կանգուն մնացած է Ընկերութիւնս՝ չենք գիտեր. չենք գիտեր նաեւ թէ ան մէկ տարուան մէջ քանի՞ աղջկան կրթութիւնը ապահոված է. գիտենք միայն որ անոր հիմնադիրը՝* Թորոս Նազարեան՝ *արդէն* 1864*ին Եէնիգափուի մէջ աղջ-*

---

[30] Ջեփիւռ, Կ. Պ. 1863, էջ 147։
[31] Անդ, էջ 147—148։

կանց մասնաւոր վարժարան մը բացած էր, որ սակայն կարճատեւ գոյութիւն մը միայն կ'ունենայ[32]:

Ընկերութիւնս Այպօյաճեանի անծանօթ եղած է:

## 4. ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

Եէնիգափուի Հայութիւնը աղջկանց դըպրոցի մը պէտքը շատոնց զգացած էր, առանց մնայուն, կանոնաւոր վարժարան մը բանալ կարենալու: Թէ՛ 1860ի «Աշոտեան Ընկերութեան[33]» եւ թէ՛ 1863ի Թ. Նազարեանի հիմնած Ընկերութեան[34] ձգտումը աղջկանց վարժարանի մը բացումն էր: Ահա միեւնոյն նպատակով 1868ին կը հիմնուի «Արամեան Ընկերութիւն»ը: Ժամանակակից Փոքրիկ Փունջը[35] կը գրէ. «Եէնիգափուի մէջ Արամեան անուն Ընկերութիւն մը կազմուած է, աղջկանց վարժարան մը հիմնելու նպատակաւ: Այս Ընկերութիւնը բաց ի բաժանորդութենէ, Սանտըգպուրնի գրօսարան մ'ալ բացած է, որուն արդիւնքը յիշեալ նպատակին համար պիտի գործածուի...: Ցաւով կ'իմանամք որ մինչեւ հիմա Թաղեցւոց կողմանէ բաւական ձեռնտուութիւն չէ եղեր եւ շատերը անտարբերութեամբ կը նային: Կարծենք Եէնիգափու աղջկանց վարժարան

[32] Գաղ. Տարեգր., Բ., էջ 88:
[33] Անդ, Թ. 2:
[34] Անդ, Թ. 3:
[35] Փունջ Օրագիր, Կ. Պ. 1868, Թ. 216:

չկայ եւ թաղին մատաղ օրիորդութիւնը դաստիարակութենէ բոլորովին զուրկ մնացած է... *Եէնիգափուի պատուարժան թաղեցւոց արժա՞ն է բոլորովին անտես ընել այսպիսի անհրաժեշտ պէտք մը: Ահա՛ փութաջան անձինք Ընկերութիւն կազմած են ի նպաստ խղճական սեռի դաստիարակութեան: Օգնե՛լ պէտք է, եւ ամէն ջանք ընելու է որ յարատեւելով հասնի իր նպատակին....: Արդեօք տակաւին չհամոզուեցա՞ւ ամեն Հայ թէ ոչինչ խնայելու է մեր ազգին մէջ ուսումն ու գիտութիւնը տարածելու համար, եւ թէ ազգութի՛ւնն է որ զմեզ բերած ձգած է ներկայ թշուառ վիճակիս մէջ»:*

*Ընկերութիւնս անձանօթ է Ալպօյաճեանի:*

5. ՄԵՍՐՈՊԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

*Արշակ Ալպօյաճեան կը գրէ. «Մեսրոպեան Ընկերութիւն* (1869) *Եէնի Գարուի մէջ կը յիշուի այս թուականով:* Նպատակը եւ կեանքը անծանօթ[36]»:

*Բարեբախտ ենք խմացնելու որ կարեւոր տեղեկութիւններ գտած ենք Ընկերութեանս մասին: Մեսրոպեան Ընկերութեան Տնօրէն ժողովի Ատենապետը՝* Բարսեղ Գ. Այապմաճեան *եւ Ատենադպիրը՝* Կ. Եազմաճեան 1869 *Ապրիլ 29ին նամակ մը ուղղած են* Փոքր Մասիսին, *ուր ըսել է յետոյ թէ Եէնիգափուի մէջ «Անձնուէր Ընկերութեան» ջանքով կիրակնօ—*

36 Գաղ. Տարեգր., Բ., էջ 88:

*րեայ վարժարան մը բացուած էր, ուր անձնուէր երիտասարդներ յանձն առած էին ձրիօրէն դասախօսելու թէ՛ դաւանաբանակ եւ թէ՛ ընիկ ազգայնոց՝ կը գրեն.* «Արդ, նոյն անձնուէր երիտասարդները խրախուսելու համար՝ *թաղիս մէջ* տարւոյս Ապրիլ 1էն սկսեալ *Մեսրոպեան անուամբ Ընկերութիւն մը հաստատուեցաւ, որնոր* իւր ծախքովը պիտի հոգայ կիրակնօրեայ ուսանողաց բոլոր ուսումնարանի ծախքերը... *կը յուսանք որ ազգայինք իրենց ձեռնտուութիւնը եւ քաջալերութիւնը չպիտի զլանան այնպիսի Ընկերութեան մը, որուն* նպատակն *է* Լոյսը տարածել... *մեր խորին շնորհակալութիւնները... այն ազգասէր Պարոններուն, Տիկիններուն եւ Օրիորդներուն, որոնք իրենց անդամակցութեամբը Ընկերութիւնս պատուել բարեհաճած են*[37]»:

Փոքր Մասիս *տուած է հող նաեւ Ընկերութեան* կանոնագրութիւնը, *որ* 12 *Յօդուածէ բաղկացած է, ուր Ընկերութեան* նպատակի *մասին կը կարդանք.* «Ընկերութիւնս Եէնի-Գաբուի կիրակնօրեայ դպրոցի անձնուէր աշակերտաց ուսումնական պիտոյքը ձրիապէս պիտի մատակարարէ Ընկերութեանս տուրքէն եւ զանազան նուէրներէն գոյացած գումարովը... եւ իւր աւելորդը Անձնուէր Ընկերութեան միւս նիւղերուն պիտի յատկացնէ (*Յօդ*. 1):

---

[37] Մասիս, *Օրաթերթ*, 1869, *թ*. 348:

Ընկերութեան բաժանորդագինը ամսական 2 ղրուշ է (Յօդ. 2)։ Ունի Ընդհ. ժողով եւ Տնօրէն ժողով. վերջինը բաղկացած է 7 հոգիէ՝ մէկ տարուան տեւողութեամբ (Յօդ. 4 եւ 6)։ Տնօրէն ժողովը առանց մեծամասնութեան նիստ չի կրնար ընել. իսկ Ընդհ. ժողովը՝ ներկայ գտնուող անդամներով նիստ կրնայ ընել (Յօդ. 7)։

1869 Դեկտ. 1ին Ընկերութեան Ատենապետն էր Թ. Սաֆաչեան, իսկ Ատենադպիրը՝ Կ. Մ. Նիզամեան[38]։

## 6. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

Եէնիգաբու ունեցած է երկրորդ Ընթերցասիրաց Ընկերութիւն մ՚ալ, հիմնուած՝ 1872 Յունուարին։ Ընկերութիւնը թաղին դպրոցներուն աղքատ տղոց գրքեր ու գրենականներ կը նուիրէ, որուն համար թաղին աշակերտները շնորհակալութիւն կը յայտնեն[39]։ Այս առթիւ Փունջ[40] 1872 Փետր. 26ին կը գրէ որ Ընկերութիւնը «մօտերս հաստատուած» է։ Ընկերութիւնը Եէնիգաբուի

---

[38] Մասիս, 1869, թ. 948։ — Մ. Զիւմրիւթ այցելէ վերջ Ընկերութեան Կիրակնօրեայ վարժարանը՝ կը գրէ որ աշակերտներու թիւն է 70, գրեթէ ամէնքն ալ պանդուխտ. կ՚ուսուցուին՝ Քերականութիւն, Հայոց Պատմութիւն, Քրիստոնէական Վարդապետութիւն, Գրավարժութիւն, Թուաբանութիւն, Գաղղիերէն եւ Տաճկերէն (Մանզումէի էֆքեար, Կ. Պ. 1869, թ. 902)։

[39] Մասիս, 1872, թ. 1205։

[40] 1872, թ. 711։

«Մանալըք Պուսնու» բռնած տեղը Ընթերցարան մը բացած էր[41]:

1872ին Եէնիգաբուի Հայութիւնը 150·000 ղուրուշ ծախք ընելով՝ մեծ վարժարան մը կը կառուցանէ, որուն պատուհաններու բոլոր ապակիները «Ընթերցասիրաց»ը կը նուիրէ[42]:

Ընկերութիւնը 1873ի սկիզբը Լսարան մ'ալ ունի, ուր բանախօսութիւն, նուագ, երգ ու պար տեղի կ'ունենան[43]:

## 7. ԴՊՐՈՑԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

«Դպրոցասէր Ընկերութիւն» վերնագրին տակ Պոլսոյ Լոյսը[44] կը գրէ 1874 Յուլիսին. «Այս անունով մօտ օրերս Եէնի–Գաբուի մէջ Ընկերութիւն մը հաստատուած է քանի չափ ուսեալ եւ բարեկիրթ պատանիներէ՝ հովանաւորութեամբ Պ. Մ. Յ. Գալքաճեանի: Սոյն նորակազմ Ընկերութիւնը իրեն նպատակ ընտրած է առ այժմ յիշեալ թաղի մանչ տղայոց վարժարանի մէջ ուսանող աղքատիկ աշակերտաց դպրոցական պիտոյքները ըստ կարի հոգալ»: Խմբագրութիւնը գովելով այդ պատանիները՝ յարատեւութիւն կը մաղթէ:

Այս եւ միւս բոլոր Եէնիգաբուի Ընկե–

---

41 Մասիս, 1872, Թ. 1204:
42 Անդ., Թ. 1300:
43 Մասիս, 1873, Թ. 1347: — Մամուլ, 1873, էջ 208: — Օրագիր, 1873, Թ. 67:
44 Կ. Պ. 1874, էջ 48:

*րութիւնները անծանօթ են Թորգոմեանի։ Աւրիկա անծանօթ է նաեւ Ալպօյաճեանի։*

## 8. ԱՐԱՄԵԱՆ ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

*Կը յիշուի առաջին անգամ* 1875 *Դեկտեմբերին։ Հիմնուած է Եէնիգափուի դպրոցի աշակերտներէն։ Ընկերութեան Գանձապետը՝* Խ. Զ. Քիւրքճեան Նորագիր *Թերթի խմբագրութեան կը դիմէ՝ խնդրելով որ օրինակ մը յատկացնէ նոյն Թերթէն՝ իրենց Ընկերութեան* [45]*։*

## 9. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877 ?)

*Հիմնադիրներն են Եէնիգափուի* Ս. Առաքելոց *վարժարանի նախկին Սաները, որոնք* 1878 *Յունուարին հրապարակ կ'ելլեն Եէնիգափուի վարժարաններու նպաստելու համար եւ Թատերական ներկայացումներ կու տան Եէնիգափուի* Հայկանոյշ *վարժարանի մէջ։ Առաջին ներկայացումի նիւթը կը կազմեն. «Մեծն Վարդան՝ Պաշտպան Հայրենեաց», հեղինակ՝ Տ. Մանուէլեան. «Խարբերդ դատախարակը», ծիծաղաշարժ զաւեշտ մը, հեղինակ՝ չի յիշուիր* (Լոյս, Կ. Պ. 1878, *էջ* 301—302)։

*Զ'բռուիր տակայն թէ ե՞րբ հիմնուած է Ընկերութիւնը։*

## 10. ՀԱՅ ՊԱՏԱՆԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877)

*Հիմնուած է* 1877 *Սեպտեմբեր* 1*ին։ Իր*

[45] Օրագիր, 1875, *Թ*. 1716։

*նպատակն էր*. Երեք տարի շարունակելէ վերջ՝ մատենադարան մը հիմնել[46]: 1880*ին կը վերակազմուի* «Ժողովրդասէր Ընկերութիւն» *անունով եւ կը դնէ իր նպատակին*: *Ատենապետն էր*՝ Սօս Պահլաւ, *իսկ Ատենադպիրը*՝ Նազարէթ Տայեան[47]:

11. ԴՊՐՈՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1878)

*Առանց որեւէ լուսաբանութեան*՝ Թէրճիմանը Էֆքեար[48] 1878 *Փետրուարին կը ծանուցանէ որ* «Դպրոցական Միութիւն»*ը* Նէնիգափուի երկսեռ դպրոցներու աղքատ աշակերտներուն նպաստելու համար՝ 1878 *Փետրուար* 11*ին Մեծին Ներոէսի Ողբերգութիւնը պիտի ներկայացնէ*: *Նէնիգափուի Միութիւն մ՚էր սա. — ոչ մէկ տեղեկութիւն*: *Միութիւնը Փետր.* 18*ին ալ Արշակ Բ. կը ներկայացնէ նոյն նպատակով* (Լոյս, Կ. Պ. 1878, *էջ* 334):

*Այս եւ նախորդը անծանօթ են Ալպօյաճեանի*:

12. ԴՊՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1878)

*Նէնիգափուի մէջ* 1878*ի սկիզբէն* «Դպրաց Միութիւն» *մը կը յիշուի*: *Թէ ե՞րբ կազ-*

[46] Մասիս, 1880, *Թ*. 2779:

[47] *Անդ*: — Թէրճ. Էֆքեար, 1878, *Թ*. 208, 439. 1879. *Թ*. 550, *եւ այլն*: — *Ընկերութեան սկզբնական նպատակն եղած է* «ունենալ մի ընթերցարան, ուր պիտի գտնուին հայերէն, գաղղիերէն լեզուաւ գրեանք ու թերթեր» (Լրագիր, *Կ. Պ.* 1878, *Թ*. 864): *Ունեցած է իր Կանոնագրութիւնը* (*անդ*):

[48] 1878, *Թ*. 175:

մուած է՝ չենք գտներ տեղեկութիւն մը: 1878 Փետր. 4ին Միութեան նախաձեռնութեամբ Եէնիգափուի «Հայկանոյշ» անուանով վարժարանի սրահներուն մէջ «Մեծին Ներսէսի Հայրապետի Ողբերգութիւն»ը կը ներկայացուի՝ արդիւնքը յատկացնելով թաղին երկսեռ վարժարաններու 100ի չափ աղքատ աշակերտներու կրթութեան: Միութեան Վարչական անդամներն են. Մ. Պ. Սարաֆեան եւ Տ. Մանավեան[49]:

Չենք կարծեր թէ ասկէ տարբեր բան մ'ըլլայ 1884ին յիշուածը[50]:

### 13. ՀԱՅԿԱԶԵԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1879)

1877—1878ի Արեւելեան պատերազմի անմիջական յաջորդ շրջանը կարեւոր դեր խաղացած է թէ՛ Պոլսոյ եւ թէ՛ գաւառի Հայութեան մէջ հայրենասիրական զգածումի վերարթնումի եւ հրահրումի տեսակէտով: Այս շարժումին մէջ մեծ բաժին մ'ինկած էր յատկապէս Հայ Մշակ. Ընկերութիւններուն, որոնք առանց բացառութեան գրեթէ բոլորն ալ Լսարաններ բացած էին, ուր տեղի կ'ունենային ճառախօսութիւններ, նուագ եւ երգեցողութիւն՝ հայրենասիրական մթնոլորտի տակ:

Ահա մին ալ այդ Ընկերութիւններէն — Եէնիգափուի «Հայկազեան Միութիւն»ը, որ

---

49 Մասիս, 1878, Թ. 2086:

50 Գաղ. Տարեգր., Գ., էջ 121:

1879 *Մարտ 1ին ծնունդ առած՝ իր առաջին գործը կ՚ըլլայ բանալ* Լսարան *մը Թաղին «Հայկանոյշ վարժարան»ին մէջ, ուր բացումի առաջին հանդիսութիւնը կատարել վերջ՝* 1879 *Մայիս 1ին կը սարքէ Բ. հանդէսը, հետեւեալ Յայտագրով.*

| | |
|---|---|
| *Դաշնակահարութիւն* | *Մեծ. Կարապետ էֆ. Փափազեան* |
| *Ազգային երգեր* | *Պատանիներէ կազմեալ երաժշտական խումբ մի* |
| *Բանախօսութիւն* | *Մեծ. Յարութիւն էֆ. Զաքրեան* |

## Սէր Հայրենեաց

*Իսրայէլացւոց Եգիպտոսէն ելնելը — Յակոբ Նահապետին կտակը — Մովսէս եւ Եգիպտացիք — Շամունէ եւ իւր եօթն որդիքը:*

*Կը հրաւիրուին ամէն յառաջդիմասէր Հայեր իրենց ներկայութեամբը պատուել սոյն Հայկական Լսարանը, թէ՛ ի քաջալերութիւն յիշեալ բարենպատակ Ընկերութեան եւ թէ յանուն Հայոց հայրենեաց բարւոյն եւ վերածնութեան համար խօսուելիք ատենախօսութիւններէն բարոյապէս օգտուելու:*

*Մուտքն է երկու դահեկան պղինձ*[51]։

*Ընկերութեանս նպատակն էր.* «Ուղնիոյ (*Զէյթուն*) մէջ վարժարաններ բանալով ուսում տարածել»։ 1879 *Յուլիսին* 275 *անդամ ունէր։ Գործադիր ժողովի Ատենապետը* Մկրտիչ Յ. Համամճեան, *իսկ Ատենադպիրը՝* Գ. Էգնայեան *էր*[52]։ 1879 *Սեպտ.ին կը յաջողի Ընկերութիւնը դպրոց մը բանալ* Ֆրնուզի *մէջ, ուսուցիչ կարգելով Գրիգոր անունով երիտասարդ մը* (Լրագիր, Կ. Պ. 1879, *Թ.* 1087)։

## 14. «ԱՐՏԱԽԱԶԴ» ՄԱՐՄՆԱՄԱՐԶԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

*«Առողջ միտք՝ առողջ մարմնոյ մէջ» սկզբունքը շատ ուշ թափանցած է հայ կեանքի մէջ։ Մարմնակրթանքը՝ անտեսուած ճիւղ մ՚էր մեր դպրոցներու ուսման ծրագրին մէջ։ Ցանցառ կը հանդիպինք —* 1900*էն առաջ — հայ դպրոցի մը, որուն մէջ կարելի ըլլայ նշմարել մարմնակրթանքի նմանող դասաժամու մը։ Ա՛լ խօսքը չի կրնար ըլլալ այդ շրջանին մարմնակրթական հայ Ընկերութեան մը կամ կազմակերպութեան մը հանդիպելու մասին։*

*Այս կարեւոր պակասը եկաւ լեցնել մեր մէջ գլխաւորաբար* Շաւարշ Քրիսեան։ *Քրիսեանն է որ* 1911*ին հիմնելով յատուկ Պար–*

[51] Մասիս, 1879, *Թ.* 2317։
[52] Թէրճ. Էֆքեար, 1879, *Թ.* 599։

բերական մը — Մարմնամարզ — անոր միջոցաւ չեփորեց լատին գեղեցիկ խօսքը· Mens sana in corpore sano: Ոչ միայն գրեց, այլ եւ խօսեցաւ ու յորդորեց նոր սերունդը թէ «Մարմնամարզը ինքնավստահութիւն կու տայ եւ նկարագիր կը շինէ[53]»· Թէ վերադարձնելու համար հայ ցեղին նախկին «առողջութիւնը, նրբութիւնն ու գեղեցկութիւնը՝»[54] անհրաժեշտ է մարզանքը:

Շաւարշ Քրիսեանի նախաձեռնութեամբն է որ 1908էն սկսած հիմնուեցան Մարզական Միութիւններ, Ակումբներ ու Մրցարաններ:

Էէնիգափուի «Արտաւազդ» Մարմնամարզական Միութիւնը»ը[55] մին է Պոլսոյ կարեւոր մարզական Միութիւններէն, որոնց թելադրիչն ու խրախուսողը Քրիսեան եղած է: Միութիւնս 1912 Յուլիսին Պէյքոզի դաշտին մէջ սարքած է մրցախաղեր վարչութեամբ Վահրամ Փափազեանի եւ այդ առթիւ քաջերը վարձատրուած են ոսկեզօծ ու արծաթ մետալներով[56]:

## 15. «ՇԱՐԺՈՒՄ» ԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

Մարզական Միութիւն մըն է «Շարժում» Լսարանականը, որ 1913ի ընթացքին հանդէս եւ բանախօսութիւն կը սարքէր[57]:

---

53 Մարմնամարզ, Կ. Պ. 1911, Թ. 1, էջ 2:
54 Անդ, էջ 18:
55 Անդ, էջ 157, 189, եւ այլն:
56 Անդ, 1912, էջ 298—299:
57 Ժամանակ, 1913, Թ. 1436:

### 16· ԵԿԵՂԵՑԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

1913ին *Եէնիգափուի մէջ կը յիշուին* Եկեղեցասիրաց Միութիւն *եւ* Դպրաց Դաս[58], *որոնց մասին չի տրուիր սակայն անդրադարձն տեղեկութիւն* :

### 17· ՏԻԿՆԱՆՑ ՕԺԱՆԴԱԿ ՄԱՐՄԻՆ (1915)

1915—1918*ի պատերազմի օրերուն Թրքահայ արհաւիրքի շրջանին գրեթէ ոչ մէկ Հայ Ընկերութեան կամ Միութեան անունը կը լսուի Պոլսոյ հայ թերթերու մէջ* : *Այդ միջոցին Հայոց մէջ կը գործածուին* «Մարմին» *եւ* «Յանձնախումբ» *բացատրութիւնները, որոնք համազօր են «Ընկերութիւն» եւ «Միութիւն» գաղափարին, ինչպէս Համխոհ-ատեն* «խումբ» *կ'ըսուէր*[59] :

*Եէնիգափուն* 1915*ին ունեցած է* «Տիկնանց Օժանդակ Մարմին» *մը եւ «Ազգքաղաց Նպաստի Յանձնախումբ» մը*[60], *որոնք մեծապէս օգտակար եղած են տառապանքի այդ օրերուն* :

### 18· «ԿՈՉՆԱԿ» ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Կազմուած է* 1918 *Նոյեմբերին* (ժողովուրդ, Կ. Պ. 1918, Թ. 49) : *Իր նպատակն էր՝ նպաստել Թաղին մէջ այրերէ կազմուած «Որբախնամ Յանձնախումբ»ին*[61] : *Կը գո–*

58 *Անդ*, Թ. 1646:
59 *Տե՛ս* Ընդարձակ Օրացոյց, 1901, *էջ* 231—232:
60 Ժամանակ, 1915, Թ. 2127:
61 *Անդ*, 1918, Թ. 3363, 3373:

*վուի իր օգտակար գործը* (Ժամանակ, 1919, *Թ*. 3551) ։

### 19․ «ՆՈՐ ԱՅԳ» ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ (1918)

*Հիմնուած է* 1918*ին։ Իր նպատակը*․ «Երաժշտութեան մէջ յառաջացնել հայ երիտասարդութիւնը» ։ *Ունէր* 35 *անդամ* ։ *Վարչական Խորհուրդը կը կազմէին*․

*Յակոբ Ձիլինկիրեան* *Ատենապետ*
*Լ. Ճէրխոճեան*
*Յ. Իշմաղեան*
*Վ. Խաչիկեան*

*Իսկ Դիւանը*՝ Բ․ Ճիշմանեան *եւ* Գ․ Սահակեան[62]։

### 20․ «ՁԱՐԹՕՆՔ» ՕՐԻՈՐԴԱՑ ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

*Կազմուած է* 1918*ի վերջը*: 1919 *Յունուարին բացած է անգլիերէնի եւ ֆրանսերէնի դասընթացք մը*[63]: 1919 *Փետր. 3ին առաջին անգամ հանդէս կը սարքէ, ուր տեղի կ՚ունենան նուագ, արտասանութիւն եւ թատերական ներկայացում*[64] ։ *Կը գործէ* 1920*ին ալ*[65] ։

### 21․ ՀԱՅ ԴԵՂԱԳՈՐԾԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Հաստատուած է* 1919 *Մարտ* 24*ին*[66],

---

62 *Թէոդիկ, Ամէն. Տարեց*. 1921, *էջ* 303:
63 Ճակատամարտ, *Կ. Պ*. 1919, *Թ*. 66:
64 Ժամանակ, 1919, *Թ*. 3448:
65 Ժողովուրդի Ձայնը, *Կ. Պ*. 1920, *Թ*. 615:
66 Ժամանակ, 1919, *Թ*. 3475:

*«վկայեալ Հայ Դեղագործներէ եւ կը գործէ թէ՛ Պոլիս եւ թէ՛ գաւառները»:* *Իր նպատակն էր.* «Ապահովել Պոլսոյ եւ Գաւառի Դեղագործներու ներկայ եւ ապագայ բարոյական եւ տնտեսական վիճակի բարձրացումը[67]»:

*Միութեան Ծրագիր–Կանոնագիրը, հրատարակուած 1919ին*[68], *ունի 34 Յօդուած: Անդամակցողը մուտքի համար մէկ ոսկի, իսկ ամսական՝ քսան դահեկան կը վճարէ (Յօդուած* 2). *Միութեան Ընդհ. Ժողովին կը մասնակցին բոլոր դեղագործ–անդամները (Յօդ.* 10):

*Միութիւնը* 1919 *Օգոստոսին Հայկ. Կառավարութեան դէղ կը ղրկէ՝ հաւաքելով հայ դեղավաճառներէ եւ դեղագործներէ*[69]:

*Հայ Բժշկական եւ Ատամնաբուժական Միութիւններու հետ* 1920*ին կը հրատարակէ* «Դարմանն–Հայ Բուժակ» *Պարբերականը*[70]: 1921*ին թերթը պատկերազարդ է*[71]:

---

[67] *Ծրագիր–Կանոնագիր, էջ* 3:

[68] *Ծրագիր – Կանոնագիր Հայ Դեղագործական Ընդհանուր Միութեան, Կ. Պ.* 1919:

[69] Ժամանակ, 1919, *Թ.* 3592:

[70] Ժողովուրդի Ձայնը, 1920, *Թ.* 746:

[71] *Անդ*, 1921, *Թ.* 902:

## ԼԱՆԿԱ (ԵՒ ՄՈՒՍԱԼԼԱ)

### 1. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

*Լոկ ծանուցումի մը առթիւ կը յիշեն երեք թերթեր*, 1863 *Մայիսին*[1]: *Ընկերութիւնը* 1863 *Մարտին* ընթերցարան *մը ունէր*[2]: *Մեզի կը թուի թէ Ընկերութիւնս կազմուած է առնուազն* 1862*ի սկիզբը: Ս. Ալպօյաճեանի անծանօթ է:*

### 2. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

*Հիմնուած է* 1862*ի ընթացքին: Նպատակն էր.* «Ընթերցասիրութեան ճաշակ եւ գրգիռ մը տալ, մանաւանդ զայն հասարակաց ընել[3]»: *Ընկերութեան կեդրոնատեղին էր Լանկայի ենթակայ՝* Մուսալլա Թաղ, *Թիւ* 3 *դրօսարանը, ուր յաճախողները կրնային ձրի թերթ կարդալ: Ընկերութիւնը կը մտադրէր նաեւ* դասախօսութեան *ընթացք մը սարքել*[4]:

Պեզասեան Թուչնիկ[5] 1864 *Յունիսին կը ծանուցանէ թէ Ընկերութիւնը իր հանրային օգտակար մէկ նպատակն ալ գործադրելու սկսած է.* «Թէ՛ Պոլսոյ եւ թէ՛ գաւառական վարժարաններուն օգտակար գրքեր խրկեր է»: *Անծանօթ է Ալպօյաճեանի:*

---

[1] Մեղու, 1863, էջ 138. Մասիս, 1863, Թ. 588. Սէր, էջ 2:
[2] Ջեփիւռ, 1863, էջ 88:
[3] Պեզասեան Թուչնիկ, 1863, էջ 5:
[4] *Անդ:*
[5] 1864, էջ 118:

### 3· ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1863)

*Հիմնուած կ'երեւայ* 1863*ի սկիզբը*: Ջէփիւռ[6] *կը գրէ* 1863 *Մարտին «Մասվաճառատուն* Հայկական Ընկերութեան» *վերնագրի տակ. «Ուրախութեամբ սրտի կը ծանուցանեմք արգոյ հասարակութեան որ այս անունով* Նոր Ընկերութիւն *մ'ալ հաստատուեցաւ ազգերնուս մէջ: Յիշեալ Ընկերութեան յարգի անդամները Լանկայի Ընթերցարանին կից խանութ մը բացած են հայ գործաւորներու հսկողութեան ներքեւ եւ պատիւ կը համարին հրաւիրել զհասարակութիւնը յիշեալ խանութը, ուր թէեւ անտարբեր գնով, բայց ուրիշ մասվաճառներու ծախած միսերէն միշտ աւելի ընտիր տեսակները կը գտնուին»*:

*Ընկերութիւնս թէեւ* առեւտրական *է, սակայն առաւելապէս նպատակ ունեցած է* «կարելի եղածին չափ ճգնիլ ազգին մէջ օտարասիրութեան հարուած մը տալ»: *Դարձեալ*՝ «ամէն ամիս թաղին վկայեալ կարօտելոցը միս բաշխել, իւր կարողութեանը համեմատ[7]»: *Թերթը կ'ըսէ որ օտարները թէ՛ գէշ միս կը ծախեն Հայերուն եւ թէ՛ կը ծաղրեն զանոնք*:

### 4· ԹՈՐԳՈՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1865—1866)

*Հիմնուած կ'երեւայ* 1865—1866*ին*: 1867*ին* Ընթերցարան *մ'ունի Մուսալլայի մէջ*[8]: *Ըն–*

[6] 1863, *էջ* 88:
[7] Ջէփիւռ, *անդ*, *էջ* 94:
[8] Ծիածան, 1867, *Թ*. 20:

*կերութեան Ընդհ. Վերատեսուչն էր* Ա. Գրիգորեան[9]: *Մանրամասնութիւն չի հաղորդուիր: Ալպօյաճեանի քով չենք գտներ:*

### 5. ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԼԱՒՈՒԹԵԱՆ ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1866)

Մասիս 1866 *Դեկտ. 31ին կը գրէ. «Կը լսենք թէ ուսումնասէր երիտասարդներ* Լանկայի Մուսալլա *թաղը* ուսումնական եւ բանասիրական ակումբ *հաստատելու բաղձանօք անցեալ Կիրակի օրը ժողով մը գումարեր են յիշեալ թաղը, ուր բաւական ազգայինք ներկայ գտնուած են* եւ նոյն նպատակաւ Ընկերութիւն մը հաստատելու առաջարկութիւն ըլլալով՝ յիսունէն աւելի անձինք անդամ գրուած են: *Ընկերութիւնը նոր կազմուելու վրայ ըլլալով՝ անունն ու կանոնագրութիւնը տակաւին վերջնական կերպիւ որոշուած չեն, սակայն, ինչպէս կը ստուգենք մեզ, պարզ, գովելի եւ օգտակար նպատակ մ'ունի, այն է՝* այլեւայլ ուսումնական եւ բանասիրական նիւթերու վրայ ճառեր եւ հրապարակային դասախօսութիւններ ընել եւ ընկերաց ընթերցանութեան համար գրքեր ու լրագիրներ պատրաստ ունենալ»: *Թերթը տակէ ամիս մը վերջն ալ կը գրէ. «Կը լսենք թէ Լանկայի Մուսալլա թաղին մէջ բացուելիք* Ընթերցարանի *Ընկերութիւնն՝ յիշեալ պանդուխտ ազգայնոյն (Զէյթունցի Ղազարոս)*

---

[9] Մասիս, 1866, *Թ.* 778:

յուղարկաւորութիւնը չքեղ կերպիւ կատարելու համար մեծ ջանք ըրեր է[10]:

Ընկերութեանս հիմնադրութեան թուականն է 1866 Դեկտ. 25 եւ կը կոչուի «Հայկական կամ Ազգային Բարեկամութեան Օժանդակ Ընկերութիւն»: Ունի Կանոնագրութիւն, հրատարակուած Ծիածանի մէջ: Բացի 3 կէտերէ բաղկացած իր նպատակէն՝ Կանոնագիրը ունի 13 Յօդուած, որուն կը կցուի 7 կէտերէ բաղկացած Կանոն մը՝ Ընկերութեան Յանձնաժողովին յատկացուած: Յիշենք քանի մը կէտեր. «Ընկերութեան նպատակը Հայ հասարակութեան ընդհանրութեանը բարոյապէս ձրի եւ մարդասիրական ոգւով ծառայութիւն մը ընել է հետեւեալ իրերու մէջ.

Ա. Ընկերութիւնը Հայ հասարակաց այժմեան վիճակին իրականապէս ծառայող լրագիրները պիտի պատուէ եւ պաշտպանէ ամէն օրինաւոր միջոցներով:

Բ. Առ այժմ Կ. Պոլսոյ մայրաքաղաքին մէջ թաղ թաղ բարեկարգ Ընթերցարաններ հաստատելու պիտի օգնէ:

Գ. Հրապարակական դասախօսութիւններ ու բարեգործական եւ խրատական ճառեր խօսելու սովորութիւնը պիտի քաջալերէ ամէն տեսակ օրինաւոր նպաստներով:

Հասարակութեան առջեւ Ընկերութեան երաշխաւորութիւնը պիտի ըլլայ գաղտնիք

---

[10] Անդ, 1867, Թ. 781:

*չունենալ. իւր գործողութիւնները ամէն կարգի անձանց բաց պահել, մինչեւ անգամ իր ներքին գործառնութեանց նիստերը, արձանագրութիւնները եւ հաշիւները* (Յօդ. 3): *Անդամ գրուիլ ուզողը՝ մուտքին հինգ դահեկան պիտի վճարէ եւ այնուհետեւ պիտի չարունակէ չաբաթական միայն մէկ դահեկան հատուցանել* (Յօդ. 5). *ի դիպուածի որ Ընկերութիւնը անկարգ եւ անկանոն կերպով ցրուի... Ազգ. Պատրիարքարանը իրաւունք ունենայ Ընկերութեան դրամը, գիրքերը եւ բոլոր գոյքը դրաւելու* (Յօդ. 13). Ընկերութիւնը կ'ուխտէ պատուել, յարգել եկեղեցականները, աշխատիլ այր կատարեալներուն հետ, համբերել երիտասարդներուն եւ հնազանդիլ իշխանութեան» (*Կանոն Յանձնաժողովոյ* 7)[11]:

1867*ին բացած է Ընկերութիւնը* Ընթերցարան *մը Մուսալլա Ճատտէսի Թ.* 94[12]: *Բայց երկար չէ տեւած եւ արդէն* 1868*ին դադրած է*[13]:

*Անշուշտ «Սկսնակ»ի անորոշարար յիշածը*[14] *այս Ընկերութիւնն է*:

6. ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1870)

*Բաժանորդական Ընկերութիւն մըն է Լանկա–Մուսալլայի* «Առեւտրական Ընկե–

11 Ծիածան, 1867, Թ. 20—26: — *Հմմտ.* Փոքր Մասիս, 1867, Թ. 31: — Փնջիկ, 1867, Թ. 180:
12 Մանզումէի էֆքեար, 1868, Թ. 589:
13 *Հմմտ.* Մանզ. էֆ. 1868, Թ. 589:
14 *Տե՛ս* Արեւելք, 1898, Թ. 3853:

բութիւն»ը, որ կը յիշուի 1871 Մայիսին եւ որուն Տնօրէն Ժողովի Ատենապետը Կ. Ա. Պարոնեան, իսկ Ատենադպիրը Մ. Կարապետեան էր[15]։

Մանրամասնութիւն կը պակսի։

### 7. «ՍԷՐ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

Կը յիշուի 1873 Մայիսին։ Սահմանադրութեան տարեդարձին առթիւ շողենաւ վարձած եւ զիւաս ըրած է[16]։

Այս եւ նախորդը չենք գտներ Ալպօյաճեանի ցանկին մէջ։

### 8. «ԶԱՆԳ» ՕՐԻՈՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

1918 Դեկտեմբերին նուագահանդէս կը սարքէ ի նպաստ որբերու[17]։ Զինադադարէ՞ն վերջը հիմնուած էր։

### 9. «ԿՈՀԱԿ» ԱՇԽԱՏԱՍԷՐ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Կազմուած է 1919ին։ «Հայ Յառաջդիմասէր» Թատերախումբը ներկայացում կու տայ ի նպաստ Միութեանս[18]։

---

15 Օրագիր, 1871, թ. 455։
16 Հմմտ. Մասիս, 1873, թ. 1390—1391։
17 Ժամանակ, 1918, թ. 3404։
18 Անդ, 1919, թ. 3600։

# ԱՅ ՍՏԵՓԱՆՈ

## 1. ԵՐԿՐԱԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1848)

*Հիմնուած է* 1848 *Դեկտ.ին (ոչ թէ* 1849*ին, ինչպէս համարած է Ալպօյաճեան)։* Արշ. Արարատեան[19] 1849 *Յունուար* 7*ին կը գրէ. «Աղաթօնեան պարոն Գրիգորին տնօրէնութեամբը եւ բարենախանձ յորդորանօքը իւր հայազգի աշակերտաց մէջ միաբանութիւն մը հաստատուեցաւ* մօտ օրերս Երկրագործական Ընկերութիւն *անուամբ... Ահաւասիկ երկրագործութեան կայսերական դպրոցին հայկազուն աշակերտաց անուանքն, որոնք* հիմնադիր *եղան Երկրագործութեան Ընկերութեան.* Ճանիկ Խաչատրեան, Յօհաննէս Մ. Ճիմշիրեան, Ռափայէլ Փափազեան, Յարութիւն Ս. Տէրտէրեան, Զենոբ Եկէնեան, Պօղոս Ա. Վրդանէսեան, Յոհաննէս Հ. Մինէնեան, Կարապետ Փ. Տէր-Ղուկասեան, Յոհաննէս Ա. Էֆշեան, Բիւզանդ Ստեփաննոսեան, Պօղոս Խախմանեան, Պօղոս Ունենեան, Կարապետ Ս. Փանոսեան, Խաչատուր Սինանեան»։

*Տրամաբանական է ընդունիլ թէ Ընկերութեանս հիմնումը ո՛չ թէ* 1849*ին, այլ* 1848*ին եղած է, ինչպէս կ՚ընդունի նաեւ Թորգոմեան, որուն ծանօթ է այս աղբիւրը*[20]*։ Ալպօյաճեան սխալմամբ* 1849 *նշանակած է եւ իր տուած տեղեկութիւնը*[21] *թերի է։*

---

[19] 1849, *Թ.* 328։
[20] *Երեմ. Չէլէպի, անդ, Ա., էջ* 408։
[21] *Գաղ. Տարեգր., Ա., էջ* 58։

*Ընկերութեանս* Կանոնագիրը 14 *Յօդուած կը պարունակէ եւ հրատարակուած է* Արշ. Արարատեանէ: *Կը յիշատակենք քանի մը կէտեր. Ընկերութեան նպատակն է.* «Որեւիցէ կերպիւ ծաղկեցնել ազգերնուս մէջ երկրագործութեան ազնիւ եւ ամենահարկաւոր արհեստը»: *Այս Ընկերութեան ծախուքը պիտի հրատարակուին երկրագործութեան վրայօք զանազան գրուածքներ... եւ Հայաստանի մէջ երկրագործութիւնը ծաղկեցնելու միջոցները, որչափ որ կարելի է, ի գործ պիտի դրուին* (*Յօդ.* 1). *Տասնուհինգ խորհրդականներէ բաղկացեալ ժողով մը՝ պիտի մտածէ եւ քննէ այս միջոցները* (*Յօդ.* 2). *Ստորագրութիւնը ամիսը հինգ ղուրուշ բաժնի վրայ է եւ միշտ երեք ամիսը կանխիկ պիտի վճարուի* (*Յօդ.* 8). *«Առժամանակեայ» Նախագահ եւ Գանձապետ՝* Գրիգոր Աղաթօն, *Ատենադպիր՝* Ճանիկ Խաչատրեան (*Յօդ.* 12). *«Առժամանակեայ» Խորհրդականներ՝* Ճանիկ Խաչատրեան, Խաչատուր Սինանեան, Զենոբ Եկէնեան, Կարապետ Ա. Փանոսեան, Յովհ. Շիմշիրեան եւ Յարութիւն Ս. Տէրտէրեան (*Յօդ.* 13): *Դրսէն առնուելիք Խորհրդականներն են.*

*Յակոբ Կոճիկեան*
*Սերովբէ Վիչէնեան*
*Յակոբ Մելիքեան*
*Գէորգ Սթիմարաճեան*
*Մկրտիչ Աղաթօն*

Նիկողայոս Զօրայեան
Յարութիւն Մոմճեան
Միքայէլ Աղաթօն[22]

2· «ՆՈՐ-ՈՅԺ» ՄԻՈՒԹԻՒՆ (1918—1919)

Կը յիշուի 1920ին[23] եւ 1921ին[24], առանց լուսաբանութեան մը։

## ԵՏԻԳՈԻԼԷ (Գազըր-Չէշմէ)

1· ԱՇԱԿԵՐՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908—1909)

Կազմողներն են Ս. Յակոբայ Որբանոցի աշակերտները։ 1912ին ունէր Մատենադարան մը[25]։

## ՆՇԱՆՃԸ

1· ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (…1865)

Ընկերութիւնս յիշուած է Վարագայի Հավատիսի կողմէ (1865, Թ. 169) միայն, ըսելով թէ Ընկերութեան Տնօրէն Ժողովի կողմէ Յովհ. Քէրէսթէճեան ազդ մը գրկած է, որով կ՚իմացնէ թէ Ընկերութիւնը մեծ նաւ մը վարձած է Սահմանադրութեան հինգերորդ տարեդարձին առթիւ։ Այդ առթիւ կը յիշուի նաեւ Ընկերութեան զբօսանաւ մը ունեցած ըլլալը։

---

[22] Արշ. Արարատեան, 1849, Թ. 328։
[23] Ժողովուրդի Ձայնը, 1920, Թ. 606։
[24] Թէոդիկ, Ամէն. Տարեց. 1921, էջ 308։
[25] Փեթակ, Կ. Պ. 1912, Թ. 3։ — Կը յիշուի արդէն 1909ին եւ ունեցած է իր կանոնագիրը (Ազատամարտ, 1909, Թ. 159)։

# ՊԷՇԻԿԹԱՇ-ՍԿԻՒՏԱՐ

## 1· ՊԱՐԶԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1864)

*Հետաքրքրական իրողութիւն մ՚է. մինչ 1878—1880ի միջոցներուն* Սկիւտարի *եւ* Սամաթիոյ *մէջ ձեռնամուխ կ՚ըլլային* «Պարզասիրաց Ընկերութիւններ» *հիմնելու* — իբրեւ նորութիւններ Հայոց մէջ — *անգիտակ էին եւ կամ բոլորովին մոռցած՝ թէ արդէն 1864ին Պէշիկթաշի եւ Սկիւտարի հայ ընտանիքներ հիմնած էին նոյնանուն Ընկերութիւն մը՝ նոյն նպատակով։*

*Արդարեւ կա՛յ այդպիսի իրողութիւն մը։ Պոլսոյ հին թերթերէն* Վարագայի Հավատիս *1864ին կը տեղեկագրէ հետեւեալը.* «*Ուրախալի լուր մ՚առած ենք. այս է՝* Պէշիկթաշի *եւ* Իւսկիւտարի *բնակիչներէն մինչեւ հիմայ 20 ընտանիք* Պարզասիրաց Ընկերութիւն *մը կազմելու վրայ են եւ մօտ օրերս անոր գործադրութիւնը պիտի տեսնենք։ Նպատակն* է՝ նորաձեւ եւ նման զգեստներէ հրաժարիլ եւ վայելուչ եւ խնայողութեան յարմար զգեստներ հագնիլ կտաւին մէկ արշինը 6 դուրուշէն աւելի չըլլալով. միւս զգեստներու մասին ալ նոյն գաղափարն ունին...։ *Եթէ այս Ընկերութիւնը զարգանայ՝ ամէն կողմէ գոհունակութեան պիտի արժանանայ*»։

*Անծանօթ է Ընկերութիւններու վրայ գրողներուն։*

## ՎԵՐԻՆ ՎՈՍՓՈՐ
## (Եէճի Մահալէ)

### 1․ ··· ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1887)

*Ծանուցում մը լոկ,* 1889 *Դեկտ․ին, կ'իմացնէ թէ* 1887*ին հիմնուած է Ընկերութիւն մը՝* Վերին Վոսփորի Եէճի Մահալէի *մէջ՝ նպատակ ունենալով․* «Դպրոցի շինութեան համար յարմար գետին մը գնել»։ *Չի յիշուիր Ընկերութեան* անունը, *բայց կ'ըսուի թէ տարի մը գործելէ վերջ՝ անհամաձայնութեան պատճառաւ կը քայքայուի։ Անդամներէն* Յովհաննէս Մոստիչեան, Յարութիւն Սվաճեան եւ Բարսեղ Բարսեղեան *կը շարունակեն Ընկերութեան դրամը շահեցնել․ կը գնեն երկաթուղիի տասը արժետոմսեր՝ ջանալով ծառայել Ընկերութեան նպատակին (տե՛ս* Արեւելք, 1889, *Թ*․ 1764)։

*Անծանօթ է Ալպօյաճեանի։*

## Կ․ ՊՈԼԻՍ

*Այս վերնագրի տակ պիտի զետեղենք, սկզբնական ծրագրի համեմատ, այն Ընկերութիւնները, որոնց* ո՛ր թաղին մէջ հիմնուած ըլլալը *չենք կրցած ստուգել, կամ՝ կը յիշուին* «Կ․ Պոլիս» *եւ կամ իրենց կենդրոնը Պոլսոյ* խանի *մը մէջ էր։*

### 1․ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1841)

*Հիմնուած է* 1841 *Մարտ* 1*ին։ Ընկերութեան Կանոնագրութեան* «Նախաշաւիղ»*ը կը*

*բացատրէ* նպատակը· *«Հայոց գրականութիւնը ընտիր եւ ուսումնական մատեաններու կողմէ պակասութիւն մը չունենալով, թէեւ Եւրոպայու մշակեալ լեզուներուն հետ կրնայ մրցիլ, բայց խրթին ըլլալովին ու առ հասարակ ժողովուրդն ալ գրաբառ լեզուին տեղեակ չըլլալով, մէջերնին գիրք կարդալը օգտակար ու զուարճալի ըլլալուն տեղը՝ կ'երեւի որ ձանձրացուցիչ բան մը կ'ըլլայ, որով ազգերնուս մէջ չէ թէ միայն գիտութիւնը առաջ չերթար, այլ մանաւանդ մեր գրականութեանը ու հեղինակներուս յարգն ալ չենք կրնար ճանչնար: Այս գլխաւոր պակասութիւնը տեղ տեղ քանի մը անկանոն աշխարհաբառ ու զուտ տաճկեվար գիրքեր շարադրողներու յորդոր ըլլալով, կերեւի որ ամմէն երկիր ամմէն քաղաք ու կրնամ ըսեր ամմէն տեղ մէկզմէկէ տարբեր լեզուներ կարդացուին*, անանկ որ քանի մը հոգի մէկ տեղ ժողվըրվելով՝ ամմէնն ալ հայերէն խօսիլ կարծելով, մէկմէկու խօսք հասկընալու թարգման ալ չեն կրնար գտնար, *որ Աստուած չընէ՝ տեսանկ երթալու ըլլայ նէ օր աւուր վրայ մեր ազնիւ ու պատուական գրաբառ լեզունիս բոլորովին կորսնցնելու վտանգին մէջ կը գտնուինք:* Եւ որովհետեւ ատանկ ազգու երկիւղը ամեն ազգասէրները արթնցնելով զգուշացնելու է, *անոր համար Պոլսոյ մէջ քանի մը հայրենակիցներ մէկ ըլլալով՝* Ուսումնական Ընկերութիւն *մը հա–*

*տոտեցին*, ջանքով ու ստրկով կենդանացընելու համար ուսումը[26]»:

*Ընկերութիւնը ունի 45 Յօդուածէ բաղկացած* կանոնագրութիւն *մը, զոր* Արշ. Արարատեան *հրատարակած է: Այս Կանոնագրութիւնը մեր Ընկերութիւններու ունեցած կանոններու* հնագոյն մէկ նմոյշն ըլլալուն՝ *կու տանք անկէ քանի մը Յօդուած.*

«*Ուսումնական Ընկերութիւնը պիտի ըլլայ միայն ուղղափառ եւ ազգասէր հայրենակիցներէ.* ամմենն ալ արեւելեան եկեղեցւոյ զաւակ (*Յօդ.* 1). *Ընկերութեան դրամագլուխը դիւրաւ ճարելու համար՝ բաժինի ձգուած է. ամմէն մէկ բաժինը տասներկու քաննոց ոսկի ու կէս, Ստամպօլի սակ* (*Յօդ.* 2). *Ուսումնական Ընկերութիւնը* վեց տարվան վրայ հաստատված է (*Յօդ.* 6). *Յիսուն բաժին հաւքըվելուն պէս՝ Ընկերութիւնը գործի պիտի սկըսէ* (*Յօդ.* 7). *Ուսումնական Ընկերութիւնը* մէկ կառավարութիւն մը պիտի ունենայ վեց անդամով. չորս հոգաբարձու, մէկ կառավարիչ եւ մէկ ալ դատաքննիչ (*Յօդ.* 10). *Ընկերութեան կառավարութիւնը կնիք մը պիտի ունենայ.* կնիքին մէջտեղը անօթ մը բոցաւոր՝ յուսոյ նշանակով *ու բոլորտիքն ալ գրուած.* Կառավարութիւն Ուսումնական Ընկերութեան Հայոց ի Պօլիս (*Յօդ.* 25). *Ամմէն հեղինակ կամ թարգմանիչ իր ձեռագիրը տպել տալու*

[26] Արշ. Արարատեան, 1841, *թ.* 26:

համար Ընկերութենէն օգնութիւն կը գտնէ (Յօդ. 31). Ամմէն տպագրելի գիրքերը կանոնաւոր անսխալ աշխարհաբառ եւ պարզ գրաբառ պիտի ըլլան, ամենեւին մէջը տաճկեվար կամ ուրիշ օտար բառեր չի գտնըվելով» (Յօդ. 37):

Ընկերութեան առաջին կառավարիչ ընտրուած է Գէորգ Փեշտիմալճեան, որուն գրատունը կը գտնուէր Պոլիս՝ Սամա-ալթն ճէպէլ-աքտար Սարըքի խանը, ուր էր նաեւ Ընկերութեան կեդրոնը:

1841 Նոյեմբերին կը գրէ միակ հայերէն թերթը. «Ուրախ սրտով կը փութանք ծանուցանել հասարակութեանը թէ Կ. Պօլսոյ Ուսումնական Ընկերութիւնը օր ըստ օրէ առաջ երթալու վրայ է: Արդէն երեք հատոր բարոյական փոքրիկ գրքեր աշխարհաբար լեզուով տպել տըւած է. առաջինը՝ Բարոյական պատմութիւններ անունով. երկրորդը՝ կատակերգութիւն մըն է չորս արարուածով, որուն տիտղոսը է Փոքր քաղաքներուն մեծախօս մարդիկը. երրորդը՝ Պետրոսի Մէթասթազիոսի սրբազան գործողութիւններէն... [27]»:

Քիչ ետքը կը տպուի նաեւ «Նամականի ընտանեկան» [28] եւ «Քաղաքավարութիւն» [29]. վերջինս խօսակցի ձոյայի հեղինակութիւնն է եւ չորս հատորէ կը բաղկանայ, որուն առ–

[27] Անդ, Թ. 62:
[28] Անդ, Թ. 85:
[29] Անդ, Թ. 104:

թիւ Թրիեստաբնակ Գրիգոր Աբելեան Ընկերութեան կը նուիրէ 5000 ղուրուշ՝ որպէս զի Ընկերութիւնը տպէ 100 օրինակ Հայ աղքատ աշակերտներու բաժնէ[30]:

Թորգոմեան[31] սխալմամբ «Գրասիրաց Ընկերութեան» գործը համարած է Ճոյայի գրքին տպագրութիւնը: Ուսումնական Ընկերութեան սովորութիւնն էր իր տպագրած գրքին վրայ նշանակել իր անունն ալ: Ճոյայի Հայ. Թարգմանութեան վրայ կեցած է Ուսումնական Ընկերութեան անունը:

## 2. ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1842)

1842ի գարնան հիմնուած է Արամեան Ընկերութիւնը, որուն մասին ժամանակակից Հայ Թերթը կու տայ հետեւեալ ծանօթութիւնը՝ գրելով 1842 Մայիս 15ին. «Արամեան Ընկերութիւն անունով առեւտրական փոքրիկ Ընկերութիւն մը սկսեր են հաստատել Կ. Պոլիս, որնոր երկու հարուր բաժին պիտի ունենայ, ամմէն մէկ բաժինը 500 ղուրուշ. այսինքն՝ ընդ ամմէնը հարուր հազար ղուռուշ դրամագլուխ... աս Ընկերութիւնը գլխաւորապէս հարկաւոր եղած ուտելիքի վերաբերեալ կամ ուրիշ ասոնց նման ապրանքներ պիտի առնէ ու ծախէ...: Բաժանակիցները, որոնք ամմէնքը Հայազգի ըլլան պիտի, կը պարտաւորին աս Ընկերութենէն առուտուր ընել, թէ որ օրինաւոր

[30] Անդ, 1843, Թ. 146:
[31] Երեմ. Չէլէպի, Գ., էջ 56:

պատճառ մը չունենան ուրիշ տեղաց գնելու: *Ընկերութեան կառավարիչ գրուեր է* Ստունեան *յարգի պարոն* Մանուկը, *որն որ Ղալաթիա բացուելու մաղազան պիտի նստի միշտ ու* չորս վերակացու *պիտի ունենայ*...: Հաշիւ տեսնելու ատենը Ընկերութեան շահին հարուրին 5 պիտի հանեն ազգին պիտանի գործքի մը համար··· *Արամեան Ընկերութեան* 150 *բաժինի չափ արդէն առնուած է, կը մնայ հիմակ յիսուն բաժին. անիկայ ալ լմնալուն պէս գործի պիտի սկսուի*[32]»:

*Արդիւնքը անծանօթ է մեզ: Ալպօյաճեանի քով չենք գտներ անունս:*

3· ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1847)

*Ընկերութեանս գաղափարը յղացուած էր* 1847*ի Մարտին, իրեն նպատակ դնելով* «առաւել ազգին մէջ վաճառականութիւնը յառուցանել *քան թէ իւր շահը փնտռել, որուն նպատակը առաւել ազգին* դպրոցներէն ուսմունքը կատարելագործելով ելլող տղայոց ապրուստ ճարել է *քան թէ իրեն հարստութիւն գանձել*[33]»:

*Ընկերութիւնը կը հաստատուի* 1847 *Յուլիս* 1*ին Ընկերութեան* պայմանագրութեան (*Կանոնագիր*) *հաստատուելով եւ իւրաքանչիւր բաժանորդէ ստորագրուելով: Այս «պայմանագրութիւնը»* 31 *Յօդուած ունի հրատարակուած*՝ Հայաստան *թերթի մէջ:*

[32] Արշ· Արարատեան, 1842, *Թ*. 86:
[33] Հայաստան, *Կ. Պ.* 1847, *Թ*. 39:

«Ուր Միութիւն կայ՝ հոն ուժ կայ» *իրեն նշանաւոր ընտրած՝ Ընկերութիւնը կը գծէ իր կանոնները, որոնցմէ ահա քանի մը նմոյշ.* «1. *Ընկերութիւնը պիտի ըլլայ հարիւր բաժինի վրայ. ամէն մէկ բաժինը տասն հազար դրշ. օսմանցիի ըստակ.* 2. *Բաժանորդները պարտաւոր պիտի ըլլան անմիջապէս իրենց բաժինին կէսը, այսինքն հինգ հազար դրշ մաքուր ըստակ ըլլալով Ընկերութեան սնտուկին պատկեցունել.* 7. *Ընկերութիւնը ամբողջ երեք տարի պիտի տեւէ, այսինքն՝* 1 *Յուլիս* 1847*էն մինչեւ* 1 *Յուլիս* 1850. 12. *Ընկերութիւնը ժողովք մը պիտի ունենայ եօթն հոգիով բաղկացած.*

1 *Գործադրիչ վերատեսուչ*
1 *Գանձապետ*
5 *Փոխանորդ*

31. Ամենակարողին օրհնութիւնը այս Ընկերութեանը բոլոր գործերուն վրայէն անպակաս ըլլալու համար՝ ամէն Տարեգլուխ ընդհանուր կշռութեան ցուցուցած շահին հարիւրին երկու ք բարեպաշտական գործի մը համար ծախք պիտի ըլլուի[34]»:

4. ··· ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1849)

1840*ական Թուականին վերջերը* Բուրգասի (*Բուլղարիա*) *մէջ փոքրիկ հայ հասարակութիւն մը կար Ս. Ստեփանոս եկեղե-*

---

[34] Հայաստան, 1847, *Թ*. 50:

ցիով, սակայն կը պակսէր միայն քահանան։ Հայ ծնունդները մերթ Յոյները կը մկրտէին՝ սէնէտ (հաստատագիր) պահանջելով եւ այն պայմանաւ որ տղաքը յետոյ իրենց յանձնուին։ Մետաքսի հայ վաճառական մը Բուրգասէն Պոլիս անցնելու առթիւ կը յայտնէ իրենց անմխիթար վիճակը քանի մը «խապապ»ներու (մետաքսագործ), «որոնց ազգային արեան եռանդն սիրտ կը բորբոքի» եւ խնդրն կ՚իմացնեն օրուան Պատրիարք՝ Յակոբ Արք. Սերոբեանի, որ «Ընկերութիւն մը կը հաստատէ վերի գլուխն ինքն գրուելով եւ շատերն ալ փափաքանօք կը գրուին եւ ծերունի Աբրահամ վարդապետն եւ նորին աշակերտ Յօհաննէս վարդապետն... սիրով յանձնառու են եղեր երթալ այն եկեղեցին բանալ, այն տեղն գտնուած ժողովուրդն հաւաքել, բոլոր հոգեւոր գործերնին կատարել... տղայքնին կարդացնեն... Ընկերութիւնն գիր վաւերական տուաւ կարգաւորաց ձեռքն որ... բնաւ դրամ չի պահանջեն անոնցմէ... Ընկերութիւնն Պօլսոյ պիտի հոգայ տարոց տարի...։ Ով որ կ՚ուզէ այս բարեպաշտական Ընկերութեան գրուիլ, թող դտնայ «խապապ» Պ. Մարգարն Յակոբեան, կամ «խապապ» Աւետիսն Սահակեան ի Թահտագալէն, կամ «սահաթճի» Պ. Պետրոսն Խաֆաֆեան եւ կամ «եաղճի» Պ. Կարապետեան, որ գանձապետն է այս Ընկերութեան, որոնց տեղը խումխափուի Մայր եկեղեցւոյ քէօշէ պէօրէճիի կից պէռ–

պէտի խսանութն կ'իմացուի կը գտնուի»[35]։

*Անունով անծանօթ այս Ընկերութիւնը անծանօթ մնացած է «Մկտնակ»ին եւ Ալպօյաճեանին*։

### 5. ՅԱՆՁՆԱՐԱՐԱԿԱՆ ԱՌԺԱՄԱՆԱԿԵԱՅ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1850)

*Հիմնուած է Եէնիքաբուլէի Ս. Փրկչի Ազգ. Հիւանդանոցի վարժարանին կից Գրադարան մը կազմելու համար։ Բաժանորդական այս Ընկերութեան մէկ բաժնեգինն էր 25 ղրշ.։ Առաջին անդամը 1700 ղրշ. կը հաւաքուի եւ կը գնուին «ուսումնական եւ բարոյական» գրքեր։ Յակոբոս Պատրիարք մասնաւոր գրով մը կը յորդորէ բոլորը որ նպաստեն դրամով եւ գրքերով։ Մինչեւ 1851 Փետր. Ընկերութեան գրուած էին 78 բաժին 1990 ղրշ. մուտքով։ Ընկերութեան «հոգաբարձուն» էր Պատրիարքարանի գրագիր՝* Ստեփան Ճշմարտախօսեան[36]։

*Ընկերութիւնս անծանօթ է Ա. Ալպօյաճեանի*։

### 6. ՓԱՐԻԶԻ ՀԱՅԿԱԶԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1857)

*Պարիսի մէջ բացուած* Արեւելեան Բազմալեզու Վարժարանը *յետոյ կոչուած էր* Հայկազեան Վարժարան՝ *դրուելով Պարիսի Օսմանեան կայս. դեսպանին պաշտպանու–*

---

[35] Հայաստան, 1849, Թ. 154. *Յունիս* 4։
[36] *Անդ*, 1851, Թ. 54։

թեան եւ Պոլսոյ Գերագոյն Ժողովի խնամքին տակ: Գերագոյն Ժողովը 1857 Մարտ 22ին կ՚ընտրէ Խնամակալաց Ժողով մը, որ պաշտօն ունէր, բացի ազգային ուսումնարաններէ՝ մասնաւորապէս Պարիսի Հայկազեան Վարժարանի «տնտեսական բարեկարգութեանը, կանոնաւոր շարունակութեանը եւ յառաջադէմ զարգացմանը հսկել եւ ամէն պիտոյքն ու գործերը հոգալ»: Խնամակալաց Ժողովի անդամներն էին.

Առաքել Պ. Տատեան
Գրիգոր Աղաթօնեան
Կարապետ Երամեան
Մանուէլ Նէւրուզեան
Մարտիրոս Միւհէնտիսեան
Մկրտիչ Մոմճեան
Նիկողոս Միսաքեան
Պետրոս Խորասանճեան [37]

Խնամակալաց Ժողովի այս կազմը յետոյ կը կրէ փոփոխութիւն մը, ուր կը տեսնուին եկեղեցական եւ աշխարհական ուրիշ անուններ ալ [38]:

Ա. Ալպօյաճեան կը գրէ. «Գրիգոր Օտեան, որ այս Ընկերութեան գլխաւոր հեղինակն էր՝ Կ. Պոլսոյ մէջ հաստատուն երկրորդական վարժարան մը հիմնել նպատակ ընարելով՝ Բաժանորդական Ընկերու–

---

[37] Մասիս. 1857, Թ. 271:
[38] Տե՛ս Մասիս, անդ՝ Թ. 281:

թիւն Հայոց նոր անունով կը փորձէ շարունակել այս Ընկերութիւնը[39]»:

Մեր պրպտումներու ընթացքին չգտանք յիշատակութիւն մը «Բաժանորդական Ընկերութեան» մասին: Ընկերութեան «Յայտարարութիւն»ը իր կանոններով հրատարակեց Պր. Յ. Քիւրտեան (տե՛ս Ծողւակաթ, Կ. Պ. 1955, Թ. 4). իրեն ալ անծանօթ է ուրիշ տեղեկութիւն:

7. ... ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1857)

Ա. Ալպօյաճեան կը գրէ[40]. «...Ընկերութիւն (1857...) կազմուած է Արմենակ Հայկունիի նախաձեռնութեամբ, բաժանորդագրութեամբ թատերական Ընկերութիւն մը, որ սակայն յաջողութիւն չէ ունեցած: Նոյն տարին իբր այդ Ընկերութեան գործ՝ կը հրատարակուի Մուսայք Մասեաց թատերական շաբաթաթերթը, որ 1857 Սեպտեմբեր 7էն մինչեւ 1858 Յունվար հազիւ կրցաւ ապրիլ»:

Արմենակ Հայկունի Ծիգմէճեանի հիմնած Ընկերութիւնը կը յիշուի Մասիսի[41] քով, առանց անունի. կենդրոնն էր Չինիլի խան: Ծիգմէճեան իր այդ թերթէն նախ նմոյշ մը լոյս կը հանէ 1857 Օգոստոս 7ին[42], իսկ թերթին առաջին թիւը լոյս կը տեսնէ 1857

---

[39] Գալ. Տարեգր., Բ., էջ 79:
[40] Անդ:
[41] Մասիս, 1858, Թ. 326:
[42] Անդ, 1857, Թ. 291:

Սեպտեմբեր 1ին, սակայն հրամանագիր հանելու համար կը ստիպուի դիմում ընել, որով երկրորդ թիւը կը յապաղի եւ լոյս կրնայ տեսնել միայն Հոկտեմբեր 5ին[43]։ Վերջին թիւը լոյս կը տեսնէ 1858 Յունուար 25ին[44]։

## 8· ԱԶԳԱՍԻՐԱԿԱՆ ԵՒ ԲԱՐԵՊԱՇՏԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1856—1857)

Նախ հարկ է ճշդել հիմնումի թուականը· Ա· Ալպօյաճեան նշանակած է 1862—1875· ուրեմն հիմնումի թուական կ՚ընդունի 1862ը[45], որ սխալ է, քանի որ Արեւելեան Դար ոչ միայն 1860 Դեկտ. 31ին արդէն կը յիշէ Ընկերութիւնս[46], այլ եւ կ՚ըսէ թէ չորս տարիէ ի վեր գոյութիւն ունեցած է ան։ Հետեւաբար Ընկերութեանս հիմնումի թուականը կ՚ըլլայ 1860 Դեկտ. 31էն չորս տարի առաջ — 1857ի սկիզբը կամ 1856ի վերջը։ Սոյն ճշդած կ՚ըլլանք նաեւ Ալպօյաճեանի հետեւելով ըրած մեր սխալ արտայայտութիւնը[47]։

Ընկերութեանս սկզբնական յորջորջումն այլ տարբեր եղած է։ Առաջին անգամ զայն յիշողը՝ Արեւելեան Դար[48] կը կոչէ լոկ «Ազգասէր Ընկերութիւն», մինչ իրմէ տարի մը

---

[43] Տե՛ս Մուսայք Մասեաց, 1857, թ. 2։
[44] Տե՛ս Մուսայք Մասեաց, 1858, թ. 18։
[45] Տե՛ս Պատ. Տարեգր., Բ., էջ 85։
[46] Տե՛ս Արեւելեան Դար, 1860, էջ 101։
[47] Տե՛ս սոյն՝ Բերա, թ. 29։
[48] 1860, էջ 101։

վերջ Մասիս[49] կ'անուանէ «Բարեպաշտական Ընկերութիւն վասն Բանտարգելոց» եւ քիչ վերջն ալ՝ «Ազգասիրական եւ Բարեպաշտական Ընկերութիւն»[50]: Վերջին ձեւով կը յորջորջէ Ընկերութիւնս նաեւ Սէր[51]: Մենք այնպէս կը հասկնանք թէ Ընկերութիւնս 1856—1857ին հիմնուած ատեն կոչուած է լոկ «Ազգասէր Ընկերութիւն», իսկ յետոյ 1861ին վերակազմուելով՝ կոչուած է «Ազգասիրական եւ Բարեպաշտական Ընկերութիւն»:

Իբրեւ լուսաբանութիւն աւելցնենք նաեւ թէ Ընկերութիւնս առաջին անգամ յիշող Արեւելեան Դար կը շեշտէ որ այս Ընկերութիւնը հիմնողները չորս տարի ծածուկ պահած են հանրութենէն իրենց Ընկերութիւնը. իր բառերով՝ «ծածկաբար ձեռք զարկած են չորս տարիէ ի վեր»[52]:

Ի՞նչ էր նպատակը այս Ընկերութեան: Արեւելեան Դար[53] կը գրէ. «...այս բարեպաշտական Ընկերութեան ազնիւ անդամները մէկ կողմէն Ազգասիրութեամբ, միւս կողմէն աղքատասիրութեամբ բորբոքեալ՝ աճապարելով մը կը դիմեն Տէրութեան բանտերուն՝ այն տխուր տեղերը գտնուած խեղճ մը թշուառ բանտարկեալներ խալըսելու, ազատելով զա–

[49] 1862, Թ. 517 Յունուար 4:
[50] Մասիս, 1862, Թ. 532:
[51] 1862, Թ. 23, Ապրիլ 15:
[52] Արեւելեան Դար, 1860, էջ 102:
[53] 1860, էջ 101—102:

նոնք իրենց ցաւալի պարտքերէն, խրկելով գիրենք մխիթարուած եւ ուրախ իրենց եղկելի եւ թշուառ ընտանեաց քով… *ո՜րքան ազնուասրտութիւն, ի՜նչ աստիճան քրիստոնէական զգայմունք եւ աղքատասիրութիւն պարտ է ըլլալ Վարագճի խանի վերոյիշեալ ազգայնոց սրտերուն մէջ՝ որ* ծածկաբար ձեռք զարկած են չորս տարիէ ի վեր Տարեգլխոյն իրենց կարողութեան համեմատ խել մը հայազգի պարտականներ բանտերէն եւ իրենց պարտքերէն ազատելով՝ իրենց թշուառ *ընտանեաց քով վերադարձնելու»*:

*Ընկերութեանս կեդրոնատեղիներն էին* Վարագճի–խան *եւ* Շապճի–խան. *իսկ Վարիչներէն կը յիշուին* Ստեփան Բարսեղեան *եւ* Ա. Խիւտավէրտեան[54]:

*Ընկերութեան* կանոնագիրը 19 *Յօդուած ունէր, հրատարակուած՝* Մասիսէն: *Կուտանք քանի մը ուշագրաւ Յօդուած. «Այս Ընկերութեան* նպատակն *է Քրիստոսի այն խօսքին հետեւիլ, որ կ՚ըսէ.* Ի բանտի էի՝ եւ տեսէք զիս. *Ընկերութեան անդամոց թիւը անսահման է (Յօդ. 1). Բաժինը 20 դուրուշ է (Յօդ. 3). Առ այժմ Ընկերութիւնը կրնայ միմիայն այն բանտարգելոց պարտքը վճարել ու ազատել զանոնք բանտէն՝ որոց պարտքին գումարը 500ը չ՚անցնիր եւ իրենք համեստ եւ անտերունչ մարդիկ են (Յօդ. 5). Գործադիր Ժողովը այցելու անուանով եօթն հոգի պիտի ունենայ, որոնք կարգաւ բանտարկե–*

[54] Մէր. 1862, Թ. 23, էջ 173:

լոց այցելութիւն պիտի ընեն եւ տեսածնին անմիջապէս իմացնեն ժողովին որ ըստ այնմ անօրինէ պէտք եղածը (Յօդ. 13). Ընկերութիւնը մշտնջենաւոր է, երբեք չի լուծուիր (Յօդ. 17)[55]:

1869ին դադրած էր Ընկերութիւնս եւ իր հիմնադիրներէն Ա. Խիւտավէրտեան պարտքի տակ ինկած էր[56]:

Ընկերութիւնս որեւէ կապ չունի 1875ին հիմնուած Հայ Կաթողիկէներու «Բարեպաշտական Ընկերութիւն ի նպաստ Գաւառաց Կաթողիկէ Հայոց» Ընկերութեան[57] հետ, ինչպէս սխալմամբ իրարու հետ միացուցած էր Ա. Ալպօյաճեան[58]:

## 9. ··· ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1858)

1858 Ապրիլ 24 Թուականով Պոլսոյ Մասիս սա Յայտարարութիւնը կը հրատարակէ. «Պատիւ ունինք ծանուցանելու յարգոյ Համազգեաց որ մօտերս նոր Ընկերութիւն մը կազմուեցաւ, որուն նպատակն է կարողութեանը չափ ծառայել իր Ազգին՝ հետեւեալ դասատուութիւններն ընելով. Հայոց Պատմութիւն, քանակագիտութիւն (մաթէմաթիքա), աշխարհագրութիւն, բարոյական գիտութիւն, քաղաքական տնտեսութիւն, բնական պատմութիւն, ընդհանուր պատմութիւն,

[55] Մասիս, 1862, Թ. 517:
[56] Մասիս, 1869, Թ. 913:
[57] Տե՛ս աստ՝ Բերա, Թ. 29:
[58] Գաղ. Տարեգր., Բ., էջ 85:

հայկաբանութիւն, անգղիարէն, գաղղիերէն: Կը յուսամք որ յարգոյ Ազգայինք զմեզ փափաքին եւ Նպատակին հասցնելու համար իրենց կողմանէ պէտք եղած խրախոյսն ու քաջալերութիւնը չեն խնայեր եւ մեք պատրաստ եմք ծառայելու Ազգին դպրոցաց, ընտանիքներու եւ մասնաւոր անհատից[59]»:

Յայտարարութիւնը անստորագիր է, միայն կ՚ըսուի թէ «աւելի լաւ տեղեկութիւն առնելու համար ուզողը կրնայ երթալ Զինճիլի–խանը «Մուսայք Մասեաց»ի գրասենեակը:

Ինչպէս կը տեսնուի՝ ո՛չ հիմնադիրները հրապարակ կ՚ելլեն, ո՛չ հիմնումի թուականը կը ճշդուի եւ ոչ ալ որեւէ Կանոնագրութիւն կամ պայմանագիր կայ: Իր Նպատակով կը նմանի առկէ քիչ յետոյ հիմնուելիք «Անձնուէր Ընկերութեան»:

Ուրիշ կողմէ լուսաբանութիւն չունինք:

## 10. ԱՐԱՐԱՏԵԱՆ ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1859)

Հիմնուած է 1859ի առաջին ամիսներուն: «Վաճառականական Ընկերութիւն Հայոց» վերնագրի տակ Ընկերութեան մէկ ծանուցումը ըսելէ յետոյ թէ վաճառականութիւնը պէտք եղածին չափ զարգացած չէ մեր մէջ, ան յառաջ երթալու տեղ նոյն իսկ ետ գացած է՝ կը գրէ. «Թողունք Հայոց վաճառականու–

[59] Մասիս, 1858, Թ. 326:

*թեան* հին համբաւը, որով իր երկրին դիրքը զինքը գրեթէ միջնորդ մը բրած էր Հնդկաստանի ու Պարսկաստանի ապրանքները արեւմտեան Ասիա եւ Եւրոպա տարածելու· դեռ անցեալ եւ նախընթաց դարերուն մէջ բաւական անուն եւ յարգ ունէինք իբրեւ վաճառականութեան քաջայարմար ազգ մը: *Պարսից, Ռուսաց եւ Լեհացւոց թագաւորներն իրենց վաճառականութիւնը ծաղկեցնելու համար՝ Հայ գաղթականներ տարին իրենց երկիրը եւ մեծամեծ արտօնութիւններ տուին:* Աշխարհիս հիմնական վիճակին նայելով··· *մեզի նման ազգերը···* մանրավաճառ կամ վաճառականութեան փափաքող կրնան ըսուիլ առաւել քան թէ վաճառական: *Այս իրաւացի խորհրդածութիւնները յորդոր մը ըլլալով* քանի մը ազգասէր եւ յարգի անձանց, *այս օրերս* Արարատեան *անունով* Առեւտրական Ընկերութիւն *մը հիմնեցին հազար բաժնի վրայ, իւրաքանչիւր բաժինը 50 լիրա սթէռլինի: Արդէն 200 բաժինէն աւելի ստորագրութիւն ըլլալով՝ գործի պիտի սկսին եւ առ այժմ առեւտրական յարաբերութիւններն միայն Անգլիոյ հետ պիտի ըլլայ: Ուստի ով որ կը կամի՝ կրնայ բաժանորդ գրուիլ այս Ընկերութեան... կարդալով չինուած* Կանոնադրութիւնը, *որ կը գտնուի* Եալտըզլը խանը, *յարգի Ճանիկեան Ստեփան Աղային գրատունը*[60]»:

[60] Մասիս, 1859, Թ. 375:

Ընկերութեան ուրիշ մէկ կեդրոնը Վալիտէ-խանն էր գտնուէր[61]: Իսկ հիմնադիրներն էին.

Սիմոնիկ (Յակոբիկ) Նորատունկեան
Յարութիւն Խարամանեան
Թովմաճան Գույսերլեան
Յօհաննէս Եուսուֆեան
Մանուէլ (Յովակիմ) Նէվրուզեան
Յարութիւն Բինկեանցի
Մինաս Թոքաթլեան
Աստուածատուր Գէորգեան
Մարտիրոս Մուհէնտիսեան
Անտոն Արթինով
Յարութիւն Սարուխանեան
Գրիգոր Թորոսեան[62]

Ընկերութիւնը գործունէութեան կը սկսի 1859 Մայիս 1ին: Պոլսոյ մէջ ունէր Նախագահ մը, երկու Տնօրէն, չորս Խնամակալ. Մանչեստր եւ Լոնդոն մէկմէկ Տնօրէն: Պոլսոյ իր կեդրոնն էր Մեծ-Նոր խանի վերը՝ Մարթէօ խանը[63]:

## 11. ՏՊԱԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ (1859)

Հիմնուած է 1859 Մայիսին. Ալպօյաճեան[64] սխալմամբ Յունիս նշանակած է:

---

[61] Անդ, թ. 403:
[62] Անդ, թ. 409:
[63] Տե՛ս մանրամասն՝ Մասիս, 1859, թ. 430. Մեղու, 1859, էջ 18, 184. 1860, էջ 110. Փարիզ, 1860, էջ 86:
[64] Գաղ. Տարեգր., Բ., էջ 81:

Մասիս 1859 *Մայիս 28ին կը գրէ.* «*Հայազգի ուսումնասէր երիտասարդներ* այս օրերս *Ընկերութիւն մը հաստատեցին* Տպագրական Ընկերութիւն Հայոց *անունով, որուն նպատակը, պիտի ըլլայ* հայերէն լեզուով բարոյական, պատմական, ողբերգական, կատակերգական եւ միանգամայն զուարճալի ու օգտակար գրքեր եւ նախնեաց ընտիր մատենագրութիւններ տպել եւ արժան գնով ազգին վաճառել. տղայոց կրթութեանը վերաբերեալ գրքերն ալ ձրի պիտի նուիրէ դպրատանց: *Այս բարենպատակ Ընկերութեանը մենք ալ ի սրտէ փափաքող ըլլալով՝ արժան կը համարինք անոր յաջողութեանը մէկ մէկ օրինակ լրագրոյս արգոյ բաժանորդացը խրկել, վստահ ըլլալով որ բազմաթիւ ուսումնասէր անձինք կը բարեհաճին բաժանորդ գրուելու՝ յօգուտ ուսումնական զարգացման ազգիս*[65]»:

*Մանրամասնութիւն կը պակսի:*

12. ԽՆԱՄԱԿԱԼ ՏԻԿՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ
(1860)

*Ընկերութեանս կազմութեան սկիզբ եղած է* 1860 *Նոյ.ին: Իր նպատակն էր.* Ս. Փրկչի Ազգ. Հիւանդանոցի ընդհանուր մաքրութեան հոգը, *իսկ մանաւորապէս* կանանց բաժնի հոգաբարձութիւնն ստանձնել: *Կարապետ Իւթիւճեան կը տեղեկագրէ* 1860 *Նոյ.* 17*ին.*

65 Մասիս, 1859, Թ. 383: — *Հմմտ.* Արեւելք, 1898, Թ. 3853:

«Կը լսենք թէ ազգիս մեծամեծ գերդաստաններէն քանի մը առաքինասէր եւ ազնուասիրտ տիկնայք Ս. Փրկչի հիւանդներուն ու կարօտելոցը ժամանակ ժամանակ այցելութիւն ընելու եւ անոնց հանգստութեանն ու արժանապէս խնամակալութեանը հսկելու ամենագովելի նպատակաւ հոգաբարձութեան ընկերութիւն մը կը կազմեն մէջերնին[66]»:

Մասիս*ի լրագիրը նոյն տարւոյ Դեկտեմբեր 29ին ալ կը գրէ. «...Ամենապատիւ Ս. Պատրիարք Հայրն ու Քաղաքական Ժողովը շնորհակալութեամբ ընդունեցին ազնուահի տիկնանց այս մարդասիրական եւ աստուածահաճոյ առաջարկութիւնը, որ ընդհանուր ազգիս պատիւ կը բերէ եւ* խնամակալ տիկնանց ժողովը կազմուեցաւ, *որուն անդամներն են այրուբենի կարգաւ, իրենց ստորագրութեամբը.*

*Տիկ. Ագապի Բ. Եուսուֆեան*
*Տիկ. Էպրու Գ. Երամեան*
*Տիկ. Էֆտիկ Գ. Մինասեան*
*Տիկ. Իսկուհի Երկանեան*
*Տիկ. Իսկուհի Պ. Տէմիրճիպաշեան*
*Տիկ. Լուսիկ Մ. Մարգարեան*
*Տիկ. Հոփսիմէ Նէվրուզեան*
*Տիկ. Մարիամ Եաղուպեան*
*Տիկ. Նէվգուհուր Պ. Խորասանճեան*
*Տիկ. Նեքտար Ն. Աչնանեան*
*Տիկ. Նեքտար Վ. Միսաքեան*

66 *Անդ*, 1860, *Թ*. 458:

*Տիկ. Սոֆիկ Յ. Նորատունկեան*
*Տիկ. Սրբուհի Մ. Ճէզայիրլեան*
*Տիկ. Սրբուհի Ա. Մուպահեաճեան*
*Տիկ. Տիրուհի Ա. Մխաքեան*
*Տիկ. Տիրուհի Մ. Փափազեան*

*Այս ազնիւ Տիկիններն ամսոյս* 24*ին Ս. Փրկչի հիւանդանոցը ժողովվելով, խնամով աչքէ անցուցին բոլոր մէջը պատսպարեալ խեղճերը եւ անոնց վիճակը մանրամասնաբար քննեցին: Եւ որովհետեւ մաքրութեան առաջին եւ էական նիւթը ճերմակեղինաց կարգադրութիւնն էր, հիւանդանոցին մէջ պատսպարեալ ծերոց, կանանց եւ հիւանդաց արձանագրութիւնը զատ զատ ուզեցին եւ անոնց համար միայն կարգեալ ճերմակեղինաց ցուցակը քննեցին:* Դժբախտաբար ոչ միայն փոխնորդի զգեստ, այլ նաեւ այս խղճալեաց թուոյն չափ ալ ճերմակեղէն չի գտան, որովհետեւ շատերը շապիկ չունէին եւ չէին հագած: *Նմանապէս անկողիններն ալ պէտք եղածէն շատ պակաս գտան.* անանկ որ մէկ անկողնոյ մէջ երկու երեք հոգի մէկտեղ կը պառկին հիւանդ կամ բորոտ տղայք: *Ուստի մէկ կողմանէ այս ամենահարկաւոր պիտոյքը եւ միւս կողմանէ խնայողութիւնը դիտելով, խորհրդակցութեամբ որոշեցին եւ հոգաբարձուաց առաջարկեցին որ անյապաղ շինվին եւ պատրաստվին* 100 *անկողին,* 100 *բարձ,* 100 *վերմակ,* 500 *սաւան անկողնոյ,* 400 *սաւան վերմակի,* 660 *շապիկ,* 600 *շապկընկեր,*

100 *խըռխա*, 100 *ճնթարի* (*ծերոց եւ հիւանդաց համար*), 50 *խըռխա*, 50 *ճնթարի* (*կանանց համար*), 100 *եադմա սեւ*...:

*Խնամակալ տիկնայք իրենց Ընկերութեան* հիմնական կանոնին *երկրորդ յօդուածին համեմատ, որ է* ամէն ամսոյ մէկ որոշեալ օրը հիւանդանոց գումարիլ խորհրդակցելու եւ ժողովով տնօրէնութիւն ընելու համար, *միաբան հաւանութեամբ ամեն ամսոյ առաջին հինգշաբթի օրը որոշեցին*[67]»:

*Ասկէ յայտնի կ'ըլլայ որ* 1. *Ընկերութեանս անունն է՝* «Խնամակալ Տիկնանց Ընկերութիւն[68]». 2. *Ան հիմնուած է* 1860 *Դեկտեմբերին*. 3. *Վերը յիշուած Տիկիններու ցանկը կը ներկայացնէ Ընկերութեան* հիմնադիրները. 4. *Ընկերութիւնը արդէն* 1860 *Դեկտ.ին ունեցած է իր* «Հիմնական Կանոնները», *որոնք դժբախտաբար ոչ մէկ տեղ հրատարակուած կը գտնենք*. 5. *Ընկերութեան* կեդրոնն *էր Ս. Փրկչի հիւանդանոցը, ուր ամէն ամսոյ առաջին Հինգշաբթին ժողով կը գումարէին*:

*Բիւզանդ Քէչեան*[69] *Խնամակալ Տիկնանց ցուցակին մէջ աւելցուցած է նաեւ հետեւեալները, որոնք անշուշտ* 1860*ի հիմնադիրներու ցանկէն վերջը արձանագրուած են. Աննիկա Ճանըմեան, Գայիանէ Ասլանեան, Թագուհի*

---

67 Մասիս, 1860, Թ. 464:

68 *Տե՛ս* Մասիս, 1864, Թ. 641:

69 *Պատմութիւն Ս. Փրկչի հիւանդանոցին Հայոց*, *էջ* 157:

Մաղաքեան, Իսկուհի Գաբրիէլեան: Թէչեան կը գրէ թէ Խնամակալ Տիկնայք «Բաժանորդական Ընկերութիւն մը կազմեցին իրենց մէջ, դրամական նպաստ ընելու համար եւ իւրաքանչիւրն այս կերպիւ մէկ մէկ գումար վճարելէն զատ, զգեստները կարելու, ձեւելու եւ կարելու աշխատութեանց մէկ մեծ մասն եւս ստանձնեցին...: Անդամուհիք իրենց մէջ ամէն տարի 30·000—40·000 ղրուշի չափ կը հաւաքէին, զոր գլխաւորապէս կը յատկացնէին ձերմակեղէնի, զգեստեղէնի, անկողիններու նորոգման[70]: 1860—1861ի Հիւանդանոցի Հոգաբարձութեան լուծումը, Հիւանդանոցին պարբերաբար ներկայացուցած յոռի մատակարարութիւնը եւ մանաւորապէս Տիկ. Էպրու Երամեանի Պարիս մեկնումը — այս Տիկնը Ընկերութեան Ատենապետուհին կը համարուէր — «մահացու հարուածը կ'ըլլայ խնամակալուհեաց բազմօգուտ հոգատարութեան[71]»:

1862 Մայիսին կը գրէ Մասիս[72]. «Ազնուասիրտ Խնամակալ Տիկնայք այս վերջին ժամանակներս 42·000 ղուրուշ հաւաքած ըլլալով, որուն 5000ը Մաքսուտեան մեծապատիւ Թագուհի տիկինը շնորհած է, Հիւանդանոցի խղճալեաց եւ վարժարանի տղայոց հանդերձ եւ անկողին շինել տուին»:

«Խնամակալ Տիկնայք» յաճախ իրենց

[70] Անդ, էջ 157—158:
[71] Անդ, էջ 158:
[72] Թ. 535:

*սպասուհիները Հիւանդանոց կը ղրկէին՝ հոն մաքրութիւն կատարելու, տղոց անկողինները նորոգելու, եւ այլն, որմէ վերջ իրենք ալ կ՚այցելէին եւ նուէրներով կ՚ուրախացնէին պատսպարեալները*[73]:

*Ընկերութեան չորրորդ տարւոյ Մուտքն եղած է* 30·500 *ղուրուշ, որով գնած է ճերմակեղէն, հագուստ, գուլպայ, անկողին եւ ուրիշ բաներ:* Մանչեստրի *ազգայինք Ընկերութեան բարերարներն եղած են՝ ղրկելով մեծ քանակութեամբ ճերմակեղէնի նիւթ եւ գուլպայ*[74]*: Ժրաջան անդամուհի մ՚եղած է* Սոփիա Յակոբ Նորատունկեան († 1864), *որ «քաղցր եւ սիրելի պարտականութիւն մը համարած էր իրեն յաճախ այցելութեան երթալ հոն (հիւանդանոց) եւ հիւանդներն ու վրշտակրեալները մխիթարել*[75]*»:* 1865*ին սկիզբը Ազգ. Հիւանդանոցը կը փայլի մաքրութեան, կոկիկութեան, զգեստներու միաձեւութեան, պարզութեան ու վայելուչ ճաշակի մը անժխտելի գոյութեամբ եւ այս ամէնը կը պարտին մեծ մասով Տիկնանց Ընկերութեան*[76]:

*Ընկերութիւնը իր այս արդիւնաշատ գործունէութիւնը շարունակած է մինչեւ* 1866:

13· ԳՐԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1861—1862)

*Ընկերութիւնս հրապարակ կ՚ելլէ* 1863 *Յունուար* 1*ին, բայց կը յայտնէ. «Լաւ հա–*

[73] *Հմմտ.* Մասիս, 1863, *Թ*. 592:
[74] Մասիս, 1865, *Թ*. 687:
[75] *Անդ՝ Թ*. 657:
[76] Մասիս, 1865, *Թ*. 687:

*մարեցաւ* չհրատարակել մինչեւ ցարդ իւր անունն ու նպատակն. *ո՛չ թէ նախատական ձեռնարկութիւն կամ խարէութիւն մը ըլլալուն, հապա՝ ցաւով կ'ըսեմք՝* երկիւղիւ չանցնելոյ այնպիսի ազգային Ընկերութեանց տխուր կարգն՝ որոնք անուամբ միայն եկան գացին անհետացան... [77]»:

*Հիմնումը կրնայ ըլլալ* 1861—1862*ին*: *Նպատա՞կը*. «Ստակ շահիլ եւ միանգամայն նպաստել ուսումնական յառաջդիմութեան Ազգիս: Օգտակար եւ պիտանի գրուածոց Հեղինակութիւնները արժանաւոր վարձատրութեամբ ստանալ, տպագրել տալ եւ ջանալ խիստ աժան գնով ծախել [78]»: *Ընկերութիւնը քանի մը գիրք հրատարակած է: Իր կեդրոնն էր* Գաշըգճըլար խան՝ *թ*. 4:

*Այպօյաճեանի ցանկին մէջ չենք գտներ Ընկերութիւնս*:

## 14. ԳԱՒԱՌԱԿԱՆ ՏԱՌԱՊԵԼՈՑ ՆՊԱՍՏԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1861 ?)

*Կը յիշուի* 1864 *Փետրուարին*, լոկ անունով: Ժամանակ [79] *կը հարցնէ. «Բարեգործական Ընկերութեան, Բաժանորդական Ընկերութեան, Պահապան Ընկերութեան*, Գաւառական տառապելոց նպաստի Ընկերութեան, *եւ այլն եւ այլն հաշիւները երբ ուզենք որ Վարչութեան ներկայացուին եւ*

---

77 Կիլիկիա, 1863, *էջ* 45:
78 *Անդ*, *էջ* 46:
79 1864, *էջ* 21:

*յանձնուին, դարձեալ կասկածելի՞ ուրեմն պիտի երեւանք. . .»*:

1861*ին* Մասիս *Ընկերութեան մը կազմութիւնը կը յիշատակէ՝* Պարտիզակի անգործներուն ու սովահարներուն *համար*[80]: *Արդեօք այս Ընկերութիւնը չէ՞*:

*Անծանօթ է Ալպօյաճեանի*:

15. ԽՆԱՄԱԿԱԼԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1866)

*Կազմուած է* Կարապետ Զուլխաճեանի *հիմնած* Ծիածան *թերթին նպաստելու համար: Կարապետ Զուլխաճեան* 40 *տարի ուսուցչութիւն ընելէ վերջ խուլցած ըլլալով՝ պաշտօն մը չէր կրնար գտնել: Պատուաւոր ապրուստ մը ճարելու համար* 1866*ին կը ձեռնարկէ* Ծիածան շաբաթաթերթին *հրատարակութեան: Զուլխաճեանի բարեկամներն ու ձեռնասունները ծերունի վարժապետին նպաստելու համար կը հիմնեն* «Խնամակալաց Ընկերութիւն»*ը՝ իրենց վրայ առնելով թերթին ամբողջ հոգը*[81]:

*Զուլխաճեան* 1866 *Սեպտ.* 7*ին Յայտարարութիւն մը հրատարակելէ վերջ՝ Հոկտեմբեր* 1*ին կը սկսի կանոնաւոր կերպով լոյս հանել թերթը մինչեւ* 1867 *Սեպտ.* 23, *այսինքն՝* 47 *թիւ, որմէ վերջ* «կը հարկադրի քանի մի շաբաթ դադրեցնել Ծիածանը, որպէս զի կարող ըլլայ ներքին եւ արտաքին խոչընդոտներուն դարմանն խորհիլ»:

---

[80] *Տե՛ս* Մասիս, 1861, *Թ.* 486—487:
[81] Ժամանակ, 1866, *էջ* 157:

Սակայն վերջնական կ՚ըլլայ այդ դադարումը, գուցէ դադրած ըլլալով նաեւ Ընկերութիւնը :

Ընկերութեանս անունը ծանօթ չէ Ալպօյաճեանի :

### 16· ԱՐԱՄԱՋԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867)

Անունս կը յիշուի Մասիսէն 1868 Յունուարին[82] եւ կ՚ըսուի թէ Ընկերութեանս ծախքով տպուած է Վոլթէրի «Ընթացք աշխարհի» գրքին «Պապուգին տեսիլքը» հատուածը: Գիրքը տպուած է 1867ին Յովհ. Միւհէնտիսեանի տպարանը: Ո՛չ յառաջաբանին մէջ եւ ոչ ալ ուրիշ որեւէ տեղ բացատրութիւն մը կը գտնենք Ընկերութեանս մասին: Ուրիշ կողմէ ալ որեւէ ծանօթութիւն չենք գտներ: Տպագրական Ընկերութի՞ւն մ՚եղած է արդեօք:

Ալպօյաճեանի անծանօթ է անունս :

### 17· ԸՆԿԵՐԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1867—1868)

Փնջիկ[83] 1868 Մայիսին կը հրատարակէ Ընկերութեանս ներկայացուցիչ՝ Գէորգ Գույումճեանի մէկ ծանուցումը, ուր կ՚իմացնէ թէ «Ընկերասիրաց Ընկերութիւն»ը Բէնտիք չօղենաւը վարձած է Սահմանադրութեան Ը. տարեդարձը կատարելու համար «Հինքեար Իսկէլէսի»ի վայրը: Ուրիշ ծանօթու–

[82] Մասիս, 1868, Թ. 831:
[83] 1868, Թ. 157:

*թիւն չունինք։ Անունս անծանօթ է Ալպօյա-ճեանի։*

## 18. ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

*Կը յիշուի* 1869 *Մարտ* 5*ին։ Կը կարծենք թէ* 1868*ի ընթացքին կազմուած է։* Նպատակն *էր*. «Ընթերցասիրութիւնը Ազգիս մէջ ծաւալելու համար աժան գինով օգտակար գիրքեր հրատարակել[84]»։ *Իբրեւ «օգտակար գիրք»* 1869*ին հրատարակեր է Աղեքսանդր Դիւմայի «Տիկին Մոնսորօ»ն, բայց յաջողութիւն չէ գտած եւ հակառակ իր խոստումին՝ չէ կրցած շարունակել*[85]։

*Ընկերութեան գրասենեակը* Վէզիր-խան *կը գտնուէր, իսկ Գործակալն էր* Յովհաննէս Գ. Թոզլեան։ *Ալպօյաճեանի ցանկին մէջ չկայ անունս։*

## 19. ԲԱՐԵՐԱԴԴԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868 ?)

*Թէեւ* 1870*ին կը յիշուի*[86], *սակայն սա՛ պարագան որ Ընկերութիւնը վիճակահանութեան շատ մը տոմսեր կրցեր է* գնել եւ պահեստի դնել[87], *կը ցուցնէ թէ* 1870*ին չէր կրնար* նորակազմ *Ընկերութիւն մ'ըլլալ։ Անծանօթ է Ալպօյաճեանին։*

---

[84] Մասիս, 1869, Թ. 909։
[85] *Հմմտ. նաեւ* փոքր Մասիս, 1869, Թ. 358։
[86] *Տե՛ս* Օրագիր, 1870, Թ. 300. Մանզ. Էփքեար, 1870, Թ. 1212։
[87] Մանզ. Էփքեար, 1870, Թ. 1212։

## 20. ԱՅՐԱՐԱՏԵԱՆ ՎԻՃԱԿԱՀԱՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1868)

*Հիմնուած է* 1868 *Դեկտ. 31ին: Իր մասին տրուած* միակ *տեղեկութիւնը* — 1875 *Յունուարէն* — *կը գտնենք* Օրագիր*ի քով, որ կը գրէ*[88]. «Այրարատեան վիճակահանական Ընկերութեան վեցամեայ պայմանաժամը անցեալ տարւոյ Դեկտ. 31ին լրացած է, *ուստի սոյն Ընկերութեան բաժանորդներն կը հրաւիրուին յառաջիկայ Փետր. 1ին Շաբաթ օրէն սկսեալ գալ* իրենց բաժնին ինկած գումարն Ընկերութեան Գանձապետ Բաբազեան Պետրոս Էֆէնտիէն ստանալ ամբողջապէս: Տնօրէն ժողով»:

## 21. ԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

*Հիմնուած է* 1869 *Օգոստոս 1ին: Ունեցած է իր Կանոնագիրը: Անդամ կրնար ըլլալ ամէն հայ՝ առանց սեռի եւ կրօնի խտրութեան (Յօդ. Դ.): Ատենապետն էր* (1872*ին*) Փիլիպոս Գ. Քէշիշեան, *Ատենադպիրը*՝ Կարապետ Մ. Քէշիշեան (Փող, 1872, Թ. 82 *եւ* 85):

*Իր անունէն դատելով՝ ուսումնասիրութեան սատարող Ընկերութիւն մը եղած կը թուի:*

*Անծանօթ է Ալպօյաճեանի:*

## 22. ԱԶԳԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

*Հիմնուած է* 1869 *Սեպտեմբերի սկիզբ–*

---

[88] Օրագիր, 1875, Թ. 1456:

*ները։ Իր կազմութեան նպատակն էր* Մկրտիչ Արքեպ. Խրիմեանի *պատրիարքական ընտրութենէն վերջ՝* արժանաւոր ընդունելութիւն մը սարքել։ *Ընկերութիւնը մասնաւոր շոգենաւ մը վարձած էր Խրիմեանը դիմաւորողները մինչեւ Տրապիզոն տանելու եւ անկէ Խրիմեանը հանդիսաւորապէս Պոլիս առաջնորդելու համար։ Ընկերութեան ներկայացուցիչներէն կը յիշուի* Գէորգ Կարապետեան[89]։

*Իր «Ազգ»ին մէջ Ընկերութիւնը կոչ կ՚ընէ պոլսահայութեան որ ետ չմնայ գաւառի Հայութենէն, «որոնք տուն ու խանութ գոցելով գունդագունդ դիմաւորեցին Նորին Սրբազնութիւնը*[90]»։

*Ընկերութիւնս անծանօթ է Ալպօյաճեանի եւ ուրիշներու։*

## 23. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

1871 *Նոյ.* 13 *թուականով կը գրէ* Փունջ. *«Լրագրէս տարեկան բաժին մ՚ընծայուած է Կարսի վարժարանին, մայրաքաղաքիս մէջ* Զէմպէրլի-թաշի *կողմը* պանդուխտ ազգայնոց մօտերս *հաստատուած* Ուսումնասիրաց Ընկերութեան *կողմէ։ Ուրախութեամբ կ՚իմանամք թէ այս Ընկերութեան* նպատակն է նպաստել գաւառական աղքատիկ վարժարանաց[91]»։

---

[89] Օրագիր, 1869, *թ.* 18։

[90] *Անդ*, *թ.* 49։ — *Հմմտ.* Ժամանակ, 1869, *թ.* 418։ Մանզ. էփ. 1869, *թ.* 1072։

[91] Փունջ, 1871, *թ.* 696։

1872 *Ապրիլ–Մայիսին Կիմիւշխանեցի երիտասարդ մը՝* Ս. Իւթիւթմազեան՝ *Ընկերութեան սրահին մէջ* դաստիարակութեան, սիրոյ եւ միութեան *վրայ բանախօսութիւն կ'ընէ բազմաթիւ գաւառացի ունկնդիրներու ներկայութեան*[92]:

*Ընկերութիւնս չէ յիշուած Ալպօյաճեանէ:*

24. ԹԱՏԵՐԱՊԱՇՏՊԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (... 1873)

*Կը յիշուի* 1873*ին* (*տե՛ս* Արեւելեան Փող, 1873, *Թ.* 65), *բայց յայտնապէս հին Ընկերութիւն կ'երեւայ:*

25. ԲԱԽՏԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873)

*Ընկերութեանս մասին մեր ունեցած աղբիւրն է Ընկերութեան* Կանոնագրութիւնը, *որ* 1873*ին հրատարակուած է եւ կու տայ հետեւեալ ծանօթութիւնները. Ընկերութիւնս հիմնուած է* 1873 *Յունուար* 1*ին՝* հինգ տարի *տեւողութեան պայմանով: Նպատակն է.* Դրամագլուխը չկորսնցնող այլեւայլ վիճակուոր թղթեր գնել եւ վիճակահանութեան սպասել: *Ընկերութիւնը կը բաղկանայ* 120 *բաժինէ, իւրաքանչիւրը* 1 *ոսկի եւ ամիսը* 2 *քառորդ մէճիտիէ բաժանորդագին: Անդամները կը պարտին մինչեւ ամսոյն* 15 *իրենց բաժանորդագինը վճարել. ով որ այդ ժամանակը կ'անցնէ՝* 2 *քառորդ մէճիտիէ կը տու–*

---

[92] *Անդ*, 1872, *Թ.* 721:

*գանուի: Հինգ տարի վերջ — 1878 Յունուար 1ին — Ընկերութեան սնտուկին մէջ եղած արժէթղթերը ծախուելով՝ գումարը պիտի բաժնուի 120 բաժանորդի*[93]*: Կանոնագիրը ունի 15 Յօդուած եւ 13 Հրահանգ-Յօդուած:*

*Ընկերութեանս մասին որեւէ թերթի մէջ չենք հանդիպած: Անծանօթ է Ալպօյաճեանի:*

## 26. ԽՆԱՅՈՂԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԵՂԲԱՅՐՍԻՐԱՑ (1873)

*Կազմուած է 1873 Մարտ 1ին:* Օրագիր[94] *արդէն 1873 Մարտ 15ին կը յիշատակէ: Հիմնադիրներն են.*

*Գաբրիէլ Ճ. Արապեան*
*Մկրտիչ Բարսեղեան*
*Դոկտ. Իւթիւճեան*

*Առնք կը կազմեն նաեւ Ընկերութեան Տնօրէն Ժողովը: Նպատակը.* Սիրել Հայրենիքը, սիրել Ազգը եւ սիրել անձը: *Առեւտրական Ընկերութիւն մըն է* «Խնայողական Ընկերութիւն Հայ Եղբայրսիրաց»*ը, որ կը գրէ* հինգ տարուան մէջ 1000 *Ռումէլիի Երկաթուղեաց արժէթուղթ գնել, ունենալ* 1000 *բաժանորդ-անդամ եւ տարեկան* վեց վինակահանութեամբ *դրամ շահիլ տալ: Օրական անդամավճարն է* 40 *փարա, որ կ՚ընէ ամսական* 31 *ղուրուշ:*

---

[93] *Կանոնադրութիւն Բաղդախիրական Ընկերութեան, Կ. Պ.* 1873:
[94] Օրագիր, 1873, Թ. 876:

Ընկերութեան «Օրինագիրք»ը հրատարակուած է Կ. Պ. 1873ին, ուր կայ «Պայմանագրութիւն» մը (22 Յօդուածէ բաղկացած) Հիմնադիր–Տնօրէն ժողովին, «Պայմանագրութիւն» մ'ալ Հսկող ժողովին (11 Յօդուած) համար: Կայ նաեւ «Կանոնագրութիւն» մը Բաժանորդաց (26 Յօդուած), «Վարչական կանոններ» (26 Յօդուած) Հիմնադիր եւ Հսկող ժողովականաց համար եւ «Վերջաբան» մը (4 Յօդուած):

Ընկերութիւնը կը մտադրէ ամէն տարի Մայիսի մէջ տօնել իր տարեդարձը ազգ. յարկի մը մէջ՝ այդ ազգ. յարկին կամ թաղին աղքատներուն հացկերոյթ մը տալով: Կ'ուզէ 50 արժէթուղթ առնել՝ նուիրելով Ազգ. Հիւանդանոցին՝ իբրեւ անշարժ կալուած[95]:

Անծանօթ է Արպօյաճեանի:

## 27. ԲԱՂԴԱՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873)

Հիմնուած է 1873 Ապրիլ 1ին: Հիմնադիրներն են.

| | |
|---|---|
| Կարապետ Փանոսեան | Ընդհ. Տնօրէն |
| Սարգիս Մարտիրոսեան | Գանձապետ |
| Միհրան Տատուրեան | Գանձապետ |
| Գրիգոր Ճէօհրայեան | Համարակալ |
| Մկրտիչ Յովհաննէսեան | Հաւաքիչ |
| Կարապետ Սարրաճեան | Հաւաքիչ |

95 Տե՛ս նաեւ Մասիս, 1873, Թ. 1363: — Օրագիր, 1873, Թ. 992. 1874, Թ. 1499, եւ այլն:

Նպատակն է՝ Առաջին. Օսմանեան Ռումէլիի երկաթուղեաց արժէտոմսերէն զնել. Երկրորդ. Ներքին վիճակահանութիւն կատարել. Երրորդ. Յիշեալ արժէտոմսերու թուոց (promesse) Բաղդատոմսերէն առնել:

Ընկերութիւնը իր հիմնադրութեան թուականէն սկսելով հինգ տարի պիտի տեւէ: Ան կը բաղկանայ 500 բաժիններէ: Բաժանորդի մը նախնական տուրքն է կէս արծաթ մէճիտ, իսկ ամսական տուրքը՝ կէս օսմ. ոսկի: Ամսավճարներն ընելու է ամսոյն 1—10: Ով որ մինչեւ ամսոյն 10ը ամսավճարը չէ ըրած՝ կէս մէճիտ տուգանք կը վճարէ: Որեւէ վիճակահանութեան մէջ, երբ Ընկերութեան Արժէտոմսերն ու Բաղդատոմսերը առաջին կամ երկրորդ պարգեւները չահին՝ անմիջապէս բաժանորդներուն մէջ պիտի բաժնուին: Ընկերութեան պայմանաժամը — 1878 Ապրիլ 1 — լրանալուն՝ վերջին Ընդհանուր ժողով պիտի գումարուի եւ ան պիտի որոշէ Ընկերութեան լուծման կերպը, որուն համեմատ ամէն բաժանորդի կը տրուի իրեն ինկած դրամագլուխը[96]:

Կանոնագիրը 37 Յօդուած ունի եւ հրատարակուած է Հայ–տաճ.: Ընկերութիւնս յիշած է Օրագիր[97] եւ ուրիշներ եւս զանազան առթիւ[98]: 1878 Ապրիլ 1ին Ընկերու–

[96] Կանոնագիր Բաղդանուէր Ընկերութեան, Կ. Պ. 1873:

[97] 1873, Թ. 939:

[98] Տե՛ս Ասիա, 1873, Թ. 64: — Մանզ. էփքեար, 1876, Թ. 3038, եւ այլն:

թեան պայմանաժամը լրացած ըլլալով՝ Մեկնաւրեան վարժարանի մէջ Ընդհ. ժողով կը գումարուի եւ բոլորին համամտութեամբ կ՚որոշուի լուծել Ընկերութիւնը: Սակայն Ընկերութեան անդամներէն ոմանք 1878 Օգոստ. 1ին գարմանք կը յայտնեն որ տակաւին Ընկերութեան անդամներուն չի բաժնուիր պահեստի դրամը[99]:

## 28. Վ. ՃԱՐ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873)

Ընկերութիւնս միայն այս ձեւի մէջ եւ միայն Օրագրէն յիշուած է 1873 Յուլիս 19ին: Որով անկարող ենք լուծել «Վ. Ճար.»ի հանելուկը. — ի՞նչ է Ընկերութեանս ամբողջական անունը: Հաւանօրէն հիմնուած է 1873 Մայիս–Յուլիսին: Իսկ իր նպատակը եւ ուրիշ պարագաներ անծանօթ կը մնան: Օրագիր[100] «Ազգ»ի մը ներքեւ կը գրէ. «Մեծապատիւ ընկերք Վ. Ճար. Ընկերութեան. Ընկերութեանս երկու գլխաւոր խնդիրներուն վերջնական որոշումը տալու համար, յառաջիկայ կիւրակէ՝ որ է յուլիս 22, վերստին Ընդհ. ժողով պիտի գումարի, Գումգաբուի դրսի դպրոցը, ճիշդ 5ին: Արդ ներկայիւս կը խնդրուի Ձեր Մեծապատուութենէն որ այն գործը պարտ անձին համարելով՝ նոյն օրը որոշեալ ժամուն անպատճառ ներկայ գտնուիլ բարեհաճիք: Ի դիմաց Վ. Ճար.

[99] Տե՛ս Մասիս, 1878, Թ. 2158:
[100] 1873, Թ. 995:

Ընկերութեան՝ Ատենապետ՝ Յ. Ազատ–րեան»:

Ժամանակակից ուրիշ հայ թերթերու մէջ որեւէ լուսաբանութիւն չենք գտներ: Անծանօթ է «Սկսնակ»ին եւ Ալպօյաճեանին:

## 29. ԱԶԳԱՆԱԶԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873—1874)

Կը յիշուի 1874 Ապրիլին, ուր կ՚ըսուի թէ 10 ոսկի նուէր ըրած է Սելամիէի երկսեռ վարժարանին[1]: Անծանօթ է Ալպօյաճեանին:

## 30. Ս. ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

Կազմուած կ՚երեւայ 1874ի սկիզբները: Նպատակն է՝ Վանի Ջուլամերկ գաւառի Գուզա–Գաւառ գիւղաքաղաքի մէջ վարժարան մը բանալ: Ընկերութեան Ատենապետ Գէորգ Արեւելեան եւ Գանձապետ Յովհ. Մաղաքեան 1874 Օգոստ. 22ին կը գրեն. «...Նիւթական չքաւորութիւնը Հայաստանի մէջ բազմաթիւ գիւղեր եւ քաղաքներ զուրկ թողած է դպրոցէ, մինչեւ իսկ չունին ծաղկոց մը, ուր կարենան ուսանիլ գոնէ պարզ կարդալ գրել եւ հաշուել մը: Սոյն կարգէն է նաեւ Վանէն երկու օր հեռաւորութիւնով Ջուլամերկ նահանգին Գուզա Գաւառ գիւղաքաղաքը, ուր 150 տունի չափ Հայ կը գտնուի նիւթական եւ մտաւոր բոլորովին աղքատիկ վիճակի մը մէջ ինկած: Այս խղճալի վիճակին դարման մը տանելու հա–

---

[1] Փունջ, 1874, թ. 874:

*մար Ընկերութիւն մը կազմած եմք* Ս. Թարգմանչաց *անուն, գիտութեամբ Կեդ. եւ տեղական ազգ. վարչութեանց: ... կը գիտեմք համուր Հայ ազգին որ իւրեանց մէն մի նուէրովը քաջալերեն... Ընկերութեանս կնիքով վաւերացեալ տոմսակներ շրջաբերութեան եղած են 2 դրուշնոց եւ ¼ արծաթ մէջիտնոց...*[2]»:

Ասիա[3] *ամիս մը յետոյ իմացնելով թէ Ընկերութեան տոմսակներէն միայն 120 հատ ծախուած է՝ կը գրէ. «Դպրոց կանգնելը՝ մանաւանդ Հայաստանի խորերը... մեծ քաջալերի արժանի է: Սակայն ցաւ ի սիրտ կը տեսնեմք որ մինչդեռ խօսելու պէտք եղած տաեն հազարաւոր ազգայիններ Հայաստա՛ն Հայաստա՛ն պոռալով... կը գոռուին, Հայաստանի մէջ մի դպրոց կանգնելու ձեռնարկած տաեն՝ մի լուման անգամ կը զլանան...»:*

*Արդիւնքը մեզ անծանօթ է: Այպօյաճեանի ցանկին մէջ չենք գտներ Ընկերութիւնս:*

## 31. ՕԲԵՐԱՅԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1873—1874)

1874 *Հոկտ.* 4 *թուականով հերքումի մը առթիւ է որ կ՚իմանանք թէ Պոլսոյ մէջ* 1873*ի վերջերը կամ* 1874*ի սկիզբը կազմուած է* «Օբերայի Ընկերութիւն» *մը, որուն տնօրէնն է* Տիգրան Գալէմճեան, *որ «Արիֆին հիյլէսի»*

---

[2] Ասիա, 1874, թ. 92:
[3] *Անդ*, թ. 123:

եւ «Ջին չիչէի» Թրքերէն խաղերը կը ներկայացնէ[4]:

Մանրամասնութիւն կը պակսի:

## 32· ՀԱՅԿ· ՀՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

Այս վերնագրի տակ Ընկերութեան «Առժամանակեայ Մասնաժողով»ի «Ազգ»ը կը յայտարարէ 1874 Դեկտ․ին․ «Այս անուամբ Ընկերութիւն մը հաստատուած, որոյ նպատակն է ազգային հնութեանց, պատմական եւ լեզուագիտական ուսմանց պարապիլ: Այն Ընկերութեան անդամակցիլ ուզող անձինք բարեհաճին... իրենց ստորագրութիւնը Ալտուլլահեան Եղբարց գործարանը խրկելու[5]»:

Ալպօյաճեանի անծանօթ ըլլալով Ընկերութեանս անունը՝ յիշած է սա ձեւով. «...Ընկերութիւն (1874) հիմնեալ նպատակ ունենալով լեզուագիտական ուսմանց պարապիլ[6]»:

## 33· ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԳՈՐԾԱՒՈՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875)

Հիմնուած է 1875 Մայիս 4ին: Հիմնադիրներուն մասին կը գրէ Մասիս[7]. «Բերկրութեամբ սրտի կը ծանուցանեմք թէ քանի մը համեստ եւ արուեստագէտ հայ երիտա-

---

[4] Հմմտ. Մանզ. Էփ., 1874, Թ. 2662 եւ 2665:
[5] Անդ, Թ. 2693:
[6] Գաղ. Տարեգր., Գ., էջ 114:
[7] 1875, Թ. 1715:

սարդնէր՝ *արհեստից զարգացման անկչուելի օգուտները նկատելով՝* հայ գործաւորաց համար արհեստական դպրոց մը եւ գործարաննէր հաստատելու նպատակաւ՝ *յանուն* Հայկական Համազգային Գործաւորաց Ընկերութիւն *մը կազմեր են, որուն ամէն հայ կրնայ անդամակցիլ՝ շաբաթը 40 փարա վճարելով եւ երեք ամիսն անգամ մը վիճակահանութեան մասնակցելով: Ընկերութեան կեդրոնատեղին է Գաշըրճիլեան վերի յարկ Թիւ 6»:*

*Ընկերութիւնը նախ «Բաժանորդական տետրակ» մը հրատարակած է իբրեւ հրաւիրագիր*[8]*: Յետոյ ալ իր* Կանոնագրութիւնը: *Վերջինս կը բաղկանայ 63 Յօդուածէ, ուր կ'ըսուի թէ Ընկերութեան անդամ կրնան գրուիլ նաեւ կիներ, բայց պաշտօն չեն կրնար ընդունիլ (Յօդ. Դ.). Նոյնպէս տիկնայք, աղջկունք եւ մանկտիք կրնան անդամակցիլ, բայց ժողովներու մէջ ո՛չ ձայն ունին եւ ոչ ալ պաշտօն (Յօդ. Դ.): Ընկերութիւնը ունի Երեսփոխանական Ժողով եւ Տնօրէն Ժողով*[9]*: Ընկերութեան բանալիք դպրոցին մէջ պիտի սորվեցուին երկաթագործութիւն, ձուլարարութիւն եւ տաղձագործութիւն*[10]*:*

*Ընկերութեան հիմնումի նախաձեռնարկ եղած է* Սոփոն Պէզիրճեան, *որ Վարչութեան առաջին Ատենապետն եղած է եւ 1875 Նոյ.-ին*

---

[8] Մասիս, *անդ:*

[9] *Կանոնադրութիւն Հայկ. Համազգ. Գործ. Ընկերութեան, Կ. Պ. 1875, էջ 7:*

[10] *Անդ, էջ 14:*

կը ծանուցանէ թէ Ընկերութիւնը կրցած է յաջողիլ «ծովեզերեայ ու հայաբնակ թաղի մը մէջ ընդարձակ գետին մը ձեռք անցնել[11]»։ Սակայն Ընկերութիւնը իր նպատակին չէ կրցած հասնիլ։ Հայ թերթերը տխուր լուրը կու տան Ընկերութեան լուծումին, 1881ին[12]։

## 34. ԻՍԹԱՆՊՕԼ ՇԻՐՔԷԹԻ (1875)

Թրքերէն անունով՝ հայկական Ընկերութիւն մըն է «Իսթանպօլ Շիրքէթի»ն, այսինքն՝ «Պոլսոյ Ընկերութիւն», որ 31 Յօդուածով կանոնագիր մ'ունի, հրատարակուած՝ Մասիսէն։ Յիշենք քանի մը հատը. Յօդ. Ա. Իսթանպօլ Շիրքէթի. այս անունով Ընկերութիւն մը հաստատուած է հինգ հիմնադիր անդամոց ձեռօք, որք են.

Մանուկ Արգըեան
Խաչիկ Տամատեան
Շնորհք Տաւուտեան
Տիրան Գալճեան
Մկրտիչ Անտիրեասեան

Յօդ. Բ. Ընկերութեան նպատակն է. 1. Օսմանեան երկաթուղեաց բաժնեթուղթեր գնել. 2. Ներքին վիճակահանութիւն ընել։ Յօդ. Գ. Ընկերութիւնն 1875 Սեպտեմբեր 1էն հաստատեալ՝ հինգ տարի պիտի

[11] Մասիս, 1875, Թ. 1763։ — Տե՛ս Օրագիր, 1876, Թ. 1725. Թէրճ. Էֆ. 1877, Թ. 139, 151։
[12] Տե՛ս Մանզ. Էֆ., 1881, Թ. 4469. Մասիս, 1881, Թ. 2915, եւ այլն։

շարունակէ: *Յօդ. Դ. Ընկերութիւնն 999 բաժնէ բաղկացեալ է, եւ ուզողը մէկ կամ աւելի բաժնի կրնայ գրուիլ: Յօդ. ԺԳ. Ընկերութեան* երկրորդ *նպատակն է ամսէ ամիս հաւաքուելիք 999 ւիրային 500 ւիրան՝ տարին տասներկու անգամ վիճակահանութեան դնել: Յօդ. ԻԸ. Հինգերորդ տարին լրանալէ վերջ, հիմնադիրք՝ Ընդհ. Ժողով հրաւիրելով, Ընկերութեան հաշիւները ներկայացնելէ ետեւ, սնտուկին մէջ պատրաստ ունեցած դրամագլխին երկու հազար ւիրան՝ հինգ տարուան մէջ քաշուած վիճակահանու-թիւններէն* բնաւ չշահող բաժանորդաց պիտի բաժնուի... *Մնացեալ դրամագլուխն եւ ուրիշ ստակներն ալ 999 բաժանորդաց պիտի բաժնուին հաւասարապէս*[13]:

*Անծանօթ է Այպօյաճեանի:*

35. ՅՈՒՍԱԴՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1875—1876)

*Կազմուած կ'երեւայ Հայ* սափրիչներու *կողմէ: Կը յիշուի 1876 Սեպտ.ին, երբ Պոլսոյ «Մենեքբերիմեան Ընկերութիւնը» իր հաշուետուութեան մէջ կ'ըսէ թէ «Յուսադրական Ընկերութիւնը» իրեն նուիրած է 1500 դրուշի արժէքով. «չիվիլի քայա» մը՝* սափրիչ արհեստաւորաց կողմանէ[14]:

*Այպօյաճեանի քով չենք գտներ անունս:*

---

[13] Մասիս, 1875, Թ. 1716:
[14] Հայրենիք, 1876, Թ. 309:

36. ԲԱՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1877—1878)

Հ. Կղեմէս Սիպիլեանի *մահուան առթիւ խօսուած դամբանականի մը մէջ կը յիշուի* «Բանասիրաց Ընկերութիւն»*ը, որուն անդամ եղած էր հանգուցեալը եւ շատ աշխատած՝ Ընկերութեան օգտին համար: Յիշատակութիւնը* 1878 *Յուլիսին ըլլալով*[15] *մեզի կը թուի թէ իբր* 1877—1878*ի շրջանին զետեղելու ենք այս Ընկերութիւնը, որ անծանօթ մնացած է Սկսնակին ալ, Ալպօյաճեանին ալ:*

37. ԴԱՐՄԱՆԱՏԱՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ (1878)

Թէրճիւմանը Էֆքեար 1878 *Օգոստոսին կը ծանուցանէ թէ* Դարմանատար Ընկերութիւն Հայոց *անունով Ընկերութիւն մը հիմնուած է Պոլսոյ մէջ, որուն շատ պէտք ունէին մանաւանդ պանդուխտ հիւանդ աղքատները: Թերթը կ՚իմացնէ նաեւ թէ արդէն շատեր անդամագրուած են անոր. «...Իշիթթիկիմիզէ կէօրէ միլլէթիմիզ հէր գըսըմ վէ սընըֆընտան բէք չօգ ատէմլէր Ընկերութիւնս ազա օլմագ իւզրէ պուլունուեօրլար*[16]»:

*Հաստատուած կրնայ ըլլալ* 1878*ի սկիզբները: Անծանօթ Ալպօյաճեանին:*

38. ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

*Տպագրական Ընկերութիւն մըն է, հիմնուած* 1878 *Ապրիլ* 1*ին: Ժամանակակից հայ*

[15] *Տե՛ս* Մասիս, 1878, *Թ*. 2144:
[16] Թէրճ. Էֆքեար, 1878, *Թ*. 352:

թերթ մը կը գրէ. «Վարժարանաց բացման օգնելու Ընկերութեանց հետ ամենամեծ հաճութեամբ կը ծանուցանեմք նաեւ ազգին գրական հանճարն ու ձեռնարկներն ալ քաջալերելու նպատակաւ Վասպուրական անուամբ նոր Ընկերութեան մ'ալ հաստատութիւնը, որոյ գործոյն եւ նպատակին արժանիք իւր հետեւեալ Ազդէն կընայ ըստ բաւականին ճանչցուիլ.

Ազդ Վասպուրականի
հաստատեալ 1878 Ապրիլ 1

Վասպուրական պատիւ ունի յայտարարել թէ այս օրէն սկսեալ պատրաստ է յօգուտ ազգ. յառաջդիմութեան եւ ի քաջալեր գրագիտաց ի լոյս ընծայել տպագրութեամբ պատմական, բարոյական, գրագիտական, դատական եւ այլ գրքեր: Կը հրաւիրուին հեղինակք եւ թարգմանիչք բանակցիլ ներկայացուցչիս հետ... Մէրճանը Բիւչաի էֆ. խանին տակը...

1878 Հոկտ. 22 — Ներկայացուցիչ
Կ. Պոլիս — Մ. Զպուքճեան[17]

Անծանօթ է Ալպօյաճեանին:

39. ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878—1879)

Լոկ անունով կը յիշուի Ներսէս Վարժապետեան Պատրիարքէն, 1879ին ուրիշ Ըն-

---

[17] Լրագիր, Կ. Պ. 1878, Թ. 820:

կերութիւններու հետ, սա՛ ձեւով. «Արարատեան, Արեւելեան–Դպրոցասիրաց, Կիլիկեան–Ուսումնական Ընկերութեանց պատգամաւորները[18]»:

40. ԵՐՈՒԱՆԴՈՒՀԵԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878—1879)

Ընկերութեանս կը ծանօթանանք քանի մը տողնոց «Ազդ»է մը, զոր հրատարակած է Ընկերութեան Ընդհ. Ժողովի Դիւանի Ատենադպիր Պօղոս Մ. Գալուստեանց, ուր կ'ըսուի թէ Ընկերութիւնը Ընդհ. Ժողովի նիստ ունի Մահմուտ փաշա, Պէզճի խան՝ Տնօրէն Ժողովի համարատուութեան եւ Կանոնադրութեան վերաքննութեան համար[19]:

Այս է մեր ամբողջ գիտցածը: Ոչ մէկ թերթ կը խօսի իր մասին. չենք տեսած իր Կանոնագրութիւնը, որ հրատարակուած չ'երեւար: Կարեւոր Ընկերութիւն մ'եղած ըլլալու է: Հետաքրքիր էինք գիտնալ իր նպատակը կամ գոնէ հիմնադիրները: Այպօյաճեան Ընկերութեանս անունը անգամ չէ յիշած:

41. ՀԱՅԿԱԶԵԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1879)

Հիմնուած կ'երեւայ 1879ի սկիզբը: Իր նպատակն է. «Ուղնիոյ (Զէյթունի) ժողովրդեան դաստիարակութեան եւ մտաւոր զարգացման նպաստել[20]»: Ընկերութեան

---

[18] Մասիս, 1879, Թ. 2292:
[19] Թէրճ. Էֆքեար, 1879, Թ. 676:
[20] Անդ, Թ. 679:

Գործ. Ժողովը 1879 Սեպտ. 30ին «Ազգ» մը հրատարակելով՝ կը ծանուցանէ «Հայկազեան Միութեան Գործ. Ժողովս խնդութեամբ սրտի կը ծանուցանէ արդոյ հասարակութեան որ յաջողած է Ֆռնուզի մէջ մի վարժարան բանալ դաստատու կարգելով Ֆռնուզցի Պ. Գրիգոր անուն երիտասարդը… Ընկերութեան գրասենեակը Նուրի–Օսմանիէ փողոց Եաղճի խանն է: Ի դիմաց Գործ. Ժողովոյ Ատենապետ Աբրահամ Ճափճափեան, Ատենադպիր Օննիկ Մ. Զուլնեան[21]»:

## 42. ՀԱՅ ՈՍԿԵՐՉԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

Հաւանօրէն կազմուած է 1879ին: Կը յիշուի 1880 Փետր.ին, երբ Ընկերութիւնը արդէն իր Կանոնագիրն ունի, որուն 23րդ Յօդուածին տրամադրութեան համեմատ Ընկերութիւնը մտադիր է հաստատել դպրոց մը՝ «Ընդ տեսչութեամբ Դպրոցասիրաց-Արեւելեան Ընկերութեան[22]»: Ահա իր նպատակը. Հայաստանի մէջ դպրոց մը բանալ, որուն պիտի յատկացնէ իր հասոյթներուն կէսը, իսկ միւս կէսով ալ պիտի պահուէ դպրոցին ծախսերը: Տնօրէն Խորհուրդի Ատենապետն է Յ. Շահնազար, իսկ Ատենադպիրը՝ Մ. Ռափայէլեան[23]: 1883ին կանգուն էր տակաւին Ընկերութիւնը, բայց չենք տեղեկանար թէ հրցա՞ծ է բանալ վարժարան

---

[21] Անդ:
[22] Անդ, 1880, Թ. 792:
[23] Անդ:

մը Հայաստանի մէջ: Մասիս[34] չոր ու ցամաք ծանուցում մ'ըրած է լոկ 1883ին, գրելով թէ «Հայ Ոսկերչաց Ընկերութիւնը» իր պահեստի գրած գրամագլուխի եռամսեայ տոկոսը «Միացեալ Ընկերութեանց» կը նուիրէ: Ինչպէս ծանօթ է՝ 1880էն ի վեր «Դպրոցասիրաց-Արեւելեան» Ընկերութիւնը վերածուած էր «Միացեալ Ընկերութեանց Հայոց»ի, հետեւաբար վերջինս էր գործադրիչը «Հայ Ոսկերչաց Ընկերութեան» նպատակին. հաւանօրէն այդ նպատակին գործադրութեան համար էր որ Ընկերութիւնս դրամ կը յանձնէր «Միացեալ Ընկերութեանց»:

43. ԱԶԱՏ-ԱՐԵՒԵԼԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879—1880)

1880 Մարտ 11ին հետեւեալ ծանուցումը կը կարդացուէր. «Ազատ-Արեւելեան անուամբ նորակազմ թատերական Ընկերութիւնը պատիւ կը համարի ծանուցանել բոլոր Ազգ. Ընկերութեանց, վարժարանաց, Լսարանաց եւ ամեն ազգ. թատերական անօրէնութեանց որ պատրաստ է թէ՛ Հայերէն եւ թէ Տաճկերէն ներկայացումներ տալ գոհացուցիչ պայմաններով: Փափաքողք կրնան տեսակցիլ Կ. Պ. Մէրճան փողոց...:

Ատենապետ
Գ. Ա. Մաղաքեան[25]

---

[24] 1883, Թ. 3423:
[25] Թերճ. Էփ., 1880, Թ. 813:

*Ալպօյաճեանի ցանկին մէջ կը պակսի անունս:*

44. ՄԾԲԻՆԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880—1881)

*Կը յիշուի նուիրատուութեան մ՚առթիւ.* 1881 *Մայիսին Ս. Փ. Հիւանդանոցին* 13 *զոյգ կօշիկ կը նուիրէ*[26]:

*Անծանօթ է Ալպօյաճեանին:*

45. ԿՐԹԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880—1881)

Մանզումէի էֆքեար[27] 1881 *Օգոստոսին կը յիշէ Ընկերութիւնս՝ առանց մանրամասնութեան. Դիւանի Վարչ. անդամ էր* Յ. Պօղոսեան. *կենդրոնը՝* Մահմուտիէ խան:

46. ՀԱՅ-ԽՄԲԱԳՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1882)

*Կազմուած է* 1882 *Յունիս–Յուլիսին: Նպատակը՝* «պաշտպանել ազգային եւ կրօնական բարձրագոյն շահերը[28]»:

47. ԱՊՈՒԽՏԱՎԱՃԱՌ ԱԶԳ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1883)

*Կը յիշուի* 1884 *Մայիսի սկիզբը: Գործ. ժողովի Ատենապետ* Յակոբ Շալճեան *ընկերներէն* 65 *օխա ապուխտ եւ* 20 *օխա պանիր հաւաքելով՝ ղրկեր է Խասգիւղի Աղքատախնամին*[29]:

---

26 Թէրճ. էֆ., 1881, Թ. 1115:
27 Թ. 4726:
28 Մանզ. էֆ., 1882, Թ. 5011:
29 Արեւելք, 1884, Թ. »9:

### 48· ՑԱՌԱՋԴԻՄԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (… 1884)

*Թէրճ. Էֆքեարէ*[30] *կը յիշուի* 1884 *Դեկտեմբերին* :

### 49· ՏՊԱԳՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ (1886)

*Տպագրած է «Ընկերային Նամականի» անունով Թարգմանութիւն մը: Մեր մատենադարանին մէջ չունենալով այդ գիրքը՝ չենք կրնար անդրադոյն ծանօթութիւն մը տալ: Ընկերութիւնս յիշուած է լոկ ծանուցման մը առթիւ*[31] :

### 50· ՀԱՅ ՍԱՓՐԻՉ ԱՐՀԵՍՏԱՒՈՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (… 1888)

*Ազգ. Հիւանդանոցին եղած նուիրատուութեան մը ցանկին մէջ սա տողերուն կը հանդիպինք.* «Հայ Սափրիչ Արհեստաւորաց Միութիւնն ՈՐՊԷՍ ԱՄԵՆ ՏԱՐԻ, *նոյնպէս եւ այս տարի թէ՛ ցերեկ եւ թէ՛ երեկոյ ընդհ. պատապարելոյ ճոխ հացկերոյթ մը տալով, նաեւ նուիրեց* 1154 *ղուրուշ*[32]» :

*Ինչպէս կը տեսնուի՝ նոր Միութիւն մը չէ, այլ* տարիներէ ի վեր *գոյութիւն ունեցած է* 1888*էն առաջ: Եւ սակայն* Մանզ. Էֆ.*ի մէջ նախորդ շրջաններէն ոչ մէկ ծանօթութեան հանդիպած ենք այս մասին: Չկայ ակնարկութիւն մը ուրիշ թերթերու մէջ ալ:*

---

[30] *Թ.* 2208:

[31] *Տե՛ս* Մանզ. Էֆ., 1886, *Թ.* 5812:

[32] Մանզ. Էֆ., 1888, *Թ.* 6092:

*Այս Ընկերութիւններու յիշատակութեան չենք հանդիպիր նաեւ Ալպօյաճեանի քով*։

51· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1889)

*Կազմուած է 1889ի սկիզբը։ Նպատակը*· «Պետական եւ բարձրագոյն վարժարանաց աղքատիկ, այլ ուշիմ ուսանողաց օգնել նիւթական կերպով [33]»։

52· ՆՊԱՍՏԱՄԱՏՈՅՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1895)

*Կազմուած է 1895ին։ Հիմնադիրներն են* «քանի մը եռանդուն երիտասարդներ»։ *Նպատա՞կը*· «Կարօտ ուսանողներու օգնել»։ *Ընկերութիւնը կը վաւերացուի Խառն Ժողովէն* 1895 *Սեպտ.ի սկիզբը* [34]։

53· ՀԱՅՐԵՆԱՍԷՐ ՀԱՅՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1906)

*Թղթիկ մը կը ծանուցանէ այս անունով Ընկերութեան մը հիմնումը* 1906*ին։ Ուրիշ որեւէ լուսաբանութիւն մը չենք գտած*։

54· ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ–ՄԱՐԴԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (?)

*Հրատարակուած անթուական «Ջօն»է մը կ'իմանանք թէ այս անունով Ընկերութիւն մը հիմնուած է Պոլսոյ մէջ։ «Ջօն»ը ոտանաւոր մ'է «Փոթորիկէն վերջ» խորագրով եւ Ալ. Սիրունեանի ստորագրութեամբ*։

---

[33] Ծաղիկ, 1889, էջ 10։
[34] *Անգ*, 1895, էջ 553։ — Մուրճ, 1895, էջ 1337։

### 55· ՀԱՅՈՒՀԵԱՑ ՅԱՌԱՋԴԻՄԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1909—1910)

*Նպատակն է՝* «Աղքատ թաղերու մէջ կարի եւ ձեւագիտութեան դասաւանդութիւններ ընել»: *Առաջին դասարանը կը բանայ Թօփգափուի մէջ,* 1910 *Յուլիսին*[35]:

### 56· ՀԱՅԱԳՈՐԾ ԲԱՆՈՒՈՐՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1910)

*Միայն* Ազատամարտի *քով* (1910, *Թ*. 290) *Հանդիպած ենք Միութեանս*:

### 57· ԴՊՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

*Կազմուած է* 1911 *Մայիս* 6*ին: Կը կոչուի նաեւ* «Մայրաքաղաքի Դպրաց Միութիւն»: *Ունի* 43 *Յօդուածէ կազմուած Ծրագիր–Կանոնագիր մը*[36]: *Ահա իր նպատակը. «Սատարել Ս. Եկեղեցւոյ պայծառութեան. եկեղեցական երգեցողութեանց մէջ միօրինակութիւն եւ ներդաշնակութիւն հաստատել...»*:

### 58· ՀԱՅ ՄԱՐՄՆԱՄԱՐԶԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

*Կազմուելու սկսած է* 1911 *Ապրիլին՝ նախաձեռնութեամբ* «Մարմնամարզ»*ի խմբագրութեան եւ որ կը յաջողի* 1911 *Մայիս* 1*ին կազմակերպել* Պոլսահայ առաջին Ողիմպիականը[37]:

---

[35] Ժամանակ, 1910, *Թ*. 551:

[36] *Հրատարակուած թերթիկներու վրայ, Հաւանօրէն* 1911*ին*:

[37] Մարմնամարզ, *Կ. Պ.* 1911, *էջ* 122 *եւ* 188:

*Այս Միութիւնը* սկզբնաւորութիւնն *է տալագայի* «Հ · Մ · Ը · Մ ·»*ի* ։

## 59· ՀԱՅ· ՄԱՐՄՆԱՄԱՐԶԱԿԱՆ ԸՆԴՀ· ՄԻՈՒԹԻՒՆ (1913)

«Հայ Մարմնամարզական Ընդհանուր Միութեան» ծագումը 1911*էն է*, *երբ կազմուած է «Հայ Մարմնամարզական Միութիւն»ը՝ որ ջանացած է Պոլսոյ մէջ գտնուած թաղային փոքրիկ* մարզական *Միութիւնները մէկտեղել, միջ–միութենական մրցումներու մղել եւ* 1911 *Մայիս* 1*ին ալ գլուխ հանել առաջին* Հայ Ողիմպիական *խաղերը* ։

«*Հ · Մ · Ը · Մ ·»ի* գաղափարը *սակայն ծնունդն է Պոլսոյ* «Մարմնամարզ» *թերթի*, *յատկապէս անոր խմբագիր* Շաւարշ Քրիսեանի ։

«*Հ · Մ · Ը · Մ ·»ի հիմը դնելու համար* Մարմնամարզ*ի խմբագրութեան նախաձեռնութեամբ* 1912 *Յունիսին Մասնախումբ մը կը կազմուի*, *որ կ՚որոշէ* 1912 *Յուլիս* 29*ին Համաժողով մը գումարել Պոլսոյ մէջ*, «ուր հայ մարմինին եւ հայ միտքին աշխատաւորները ձեռք ձեռքի տուած՝ ճշդեն բոլոր այն միջոցները, որոնք անհրաժեշտ են մեր ներկայ թմրած ու թուլամորթ սերունդին տեղ՝ վաղուան առողջ ու կայտառ սերունդը ստեղծելու համար [38]» ։

[38] *Անդ*, 1912, *էջ* 219։

*Համաժողովին ներկայ պիտի գտնուէին Պոլսոյ եւ գաւառի բոլոր մարմնամարզական ակումբներուն եւ անոնց մասնաճիւղերուն, Թուրքիոյ հայ երկրորդական վարժարաններուն, հայ Մամուլին, հայ բժշկական դասին եւ ուսուցչութեան ներկայացուցիչները։ Համաժողովի գլխաւոր նպատակն էր՝ Պատրաստութիւն Հայ Մարմնամարզական Ընդհանուր Միութեան հիմնական ծրագրին, անոր տարեկան պիւտճէի քննութեան եւ Կեդրոնական Գործադիր Մարմնի ընտրութեան։*

Մարմնամարզի *խմբագրութիւնը* 1912 *Յուլ. 1 Թուականով կը գրէ*[39]. *«...Առաջին Համաժողովը, որ յառաջիկայ յուլիս 29ին Պոլսոյ մէջ պիտի գումարուի, կոչուած է համազգային տօն մը ըլլալու բոլոր անոնց համար*, որոնք ֆիզիքական վերազարթնումը կը նկատեն մեր ազգին ամէնէն կենսական անհրաժեշտութիւններէն մէկը»։

*Շաւարշ Քրիսեան՝ «Հ. Մ. Ը. Մ.»ի կազմութեան անհրաժեշտ պէտքը չեշտելու եւ արդէն գոյութիւն ունեցող հայ Ակումբներու անոր հանդէպ ունելիք դիրքը եւ պարտաւորութիւնը յստակօրէն պարզելու համար՝ «Ակումբները Հայ Մարմնամարզական Ընդհ. Միութեան մէջ» վերնագրի տակ կ՚ընդգծէր. «...Մենք աղքատ ազգ մըն ենք, սակայն խրողութիւն մ՚է, բայց խրողութիւն*

[39] Անդ, էջ 221։

*մ'է նաեւ թէ մեծնալ, հարստանալ ուզող ազգ մը հետամուտ ըլլալու է իր վիճակէն դուրս գալու ու աւելի բարձր վիճակի մը ցանկալու: Պէտք չի կայ անպատճառ կրկնելու թէ զօրութիւնը միութեան մէջն է. եթէ տասը երիտասարդ քովէ քով գալով աւելի ուժեղ են իրր ակումբ քան այդ երիտասարդները անջատաբար, ատիկա բաւականաչափ կերպով կը ցուցնէ թէ ակումբներու միութիւն մը շատ աւելի զօրաւոր պիտի ըլլայ քան այդ ակումբները իրենք իրենց մնալով: ...Անհրաժեշտ է որ անոնք (Հայ ակումբները) գան Ընդհանուր Հայ Մարմնամարզական Միութեան մէջ միանան, կեդրոնական զօրաւոր վարչութեան մը քօնդրօլին տակ... պէտք է ճիշդ ու ճիշդ* Հայոց Միացեալ Ընկերութեան *պէս ընել, այսինքն բոլոր ակումբները մասնաճիւղեր նկատել...* որքան ատեն որ չըմբռնենք թէ մէկը ամենուն իսկ ամենքը մէկուն համարի վարդապետութիւնը ճիշդ է, չենք կարող ազգային օգտակար ձեռնարկներ յաջողցնել *ու ատոնց գլխաւորներուն կարգին է* Հայ Մարմնամարզական Ընդհանուր Միութիւնը[40]»:

*Նշանակուած թուականին — Յուլիս 29 — տեղի չ'ունենար Համաժողովը. կը յետաձգուի Օգոստոս 19ին: Բայց Օգոստ. 19ին ալ չի կրնար գումարուիլ եւ հարկ կը տեսնուի «անպայման կերպով յետաձգել» —*

40 *Անդ*, էջ 334—335:

ակումբներու, վարժարաններու եւ մամուլին մէկ մասին անտարբերութեան պատճառաւ:

*Հակառակ այդ ձգձգումներուն եւ տեղի չունեցած «Համաժողով»ին՝* 1913ի առաջին ամիսներուն *կը կազմուի Հայ մեծագոյն Ընկերութիւններէն մին* — Հայ Մարմնամարզական Ընդհանուր Միութիւնը — *Շաւարշ Քրիսեանի «անհատական նախաձեռնութեամբ ու գաղափարին համակիր անձերու օժանդակութեամբ*[41]»: *«Գաղափարի համակիր» մ'եղած է մասնաւորաբար* Գրիգոր Յակոբեան[42]:

*Միութեան նպատակն է.* Հայ ցեղին բարոյական եւ ֆիզիքական ազնուացումը աշխատիլ[43]: *Կարեւոր* օժանդակ *մ'եղած է գրեթէ նոյնաժամանակեայ հաստատութիւն մը* — Հայ Սկաուտիզմը — *միեւնոյն նպատակով*[44]:

*Ծանօթ է «Հ. Մ. Ը. Մ.»ի գործունէութիւնը եւ օգտակարութիւնը հայ կեանքի մէջ: Անոր գործունէութիւնը սահմանափակուած չէր միայն Պոլսոյ եւ կամ Թրքահայ շրջանակին մէջ, ինչպէս կը դիտէր Շ. Քրիսեան արդէն* 1913*ին*[45]: *Կարճ ժամանակուան մէջ ընդհանուր համակրութիւն գտնելով՝ ան*

---

41 Մարմնամարզ, 1913, *էջ* 61:
42 *Թէոդիկ, Ամէն. Տարեց.*, 1921, *էջ* 147—148:
43 Մարմնամարզ, 1913, *էջ* 62:
44 *Անդ.*, *էջ* 78:
45 *Անդ.*, *էջ* 83—86:

*տարածուեցաւ ամէնուրեք, ուր հայ մանկիկ մը բոյն դրած էր աշխարհի որեւէ անկիւնը*[46]:

*Այսօր ալ կը շարունակէ «Հ. Մ. Ը. Մ.»ը խորհրդանիշ մ'ըլլալ Հայ Սփիւռքի մէջ Հայ ժողովուրդի ձգտումին* դէպի ընդհանուր միութիւն, դէպի բարոյական եւ ֆիզիքական ազնուացում ու բարձրացում:

60. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1914)

*Հիմնուած է 1914ին սկիզբը: Իր կանոնագիրը* հաստատուած է *Հիմնադիր ժողովէն*՝ 1914 *Մայիս 13ին* (*Կանոնագիր*, Կ. Պ. 1914, *էջ* 8: — *Հմմտ.* Բիւզանդիոն, 1914, *Թ.* 5389):

*Նպատակը.* 1. *Ուսումնասիրել մանուածապէս Հայաստանը.* 2. *Հրատարակել ուսումնասիրութիւնները պարբերաբար.* 3. *Միջոցներ գտնել՝ փրկելու հնագիտական ամէն տեսակ արժէք ունեցող առարկաներ* (*Յօդուած* II): *Տարեկան անդամավճարն է* 1 *մէճիտ* (*Յօդ.* III): *Պիտի ունենայ իր Պարբերականը* (*Յօդ.* VII):

61. ԱՐԻՍՏԱԿԷՍԵԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1914)

*Կազմուած է* 1914 *Մարտին*՝ *Նպատակ ունենալով.* «*Պոլսոյ շրջակայ հայ համայնք*–

---

[46] *Տե՛ս* Ճակատամարտ, 1918, *Թ.* 1—5. Ժամանակ, 1918, *Թ.* 3363. Ժողովուրդի Ձայնը, 1921, *Թ.* 983. Կեանք եւ Արուեստը, 1932, *էջ* 245, *եւ այլն*:

*նէրը ուսումնասիրել, անոնց նիւթական եւ բարոյական մակարդակը բարձրացնել, տնտեսական, առողջապահական ու կրթական ուղղութիւն տալ»: «Պարբերաբար այցելութիւններ պիտի կատարուին բոլոր կարեւոր կեդրոններուն եւ ճիշդ տեղեկութեանց վրայ գործն· քայլեր պիտի առնուին ժողովրդին օգնելու*[47]»:

62· «ՏԵԿՈՐ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1914)

*Կազմուած կը թուի 1914ի գարնան:* *Նպատակն եղած է՝* «Հայ ճարտարապետութիւնը զանազան միջոցներով ուսումնասիրել եւ ընդհանրացնել[48]»: *Ուրիշ տեղեկութեան չենք հանդիպած:*

63· ՀԱՅ ՄՏԱՒՈՐԱԿԱՆՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

Ժամանակ[49] 1918 *Դեկտ· 16ին կը գրէ·* «Հայ Մտաւորականներու Միութիւնը, *որ ազգային նպատակի մը շուրջ կազմուած է՝ երէկ իր կազմակերպութիւնը աւարտեց: Ընտրուեցան՝*

| | |
|---|---|
| *Հ· Խօճասարեան* | *Ա· Ատենապետ* |
| *Տօքթ· Թօփճեան* | *Բ· Ատենապետ* |
| *Տօքթ· Տինանեան* | |
| *Գէորգեան* | *Քարտուղարներ* |
| *Վարչ· Խորհուրդ* | |

[47] Ժամանակ, 1914, *Թ*· 1768:
[48] *Անդ*, *Թ*· 1847:
[49] 1918, *Թ*· 3386:

Գ. Գավաֆեան
Պրոֆ. Գալայճեան
Քիւրքճեան
Զաքրեան
Տօքթ. Բարսեղեան

Կազմուած է 1918 Նոյ.ին (Ժողովուրդ, Կ. Պ. 1918, Թ. 48):

## 64. «ՑՈՂԱԿ» ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Հիմնուած է 1919 Մարտին[50]:

## 65. ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Կազմուած է 1919ի սկիզբը: Իր Կանոնագիրը, բաղկացած 16 Յօդուածէ, հրատարակուած է 1919ին: Ահա նպատակը. «Նպաստել Հայկական Ոճը վերակենդանացնելու եւ պատշաճեցնելու արդի պայմաններուն . . .[51]»: Վարչական Խորհուրդը կը կազմէին.

| | |
|---|---|
| Արմենակ Պէյ Սաքըզ | Ա. Ատենապետ |
| Միշէլ Նուրիճան | Բ. Ատենապետ |
| Հրանտ Գազանճեան | Ա. Ատենադպիր |
| Գեղամ Խանամիրեան | Բ. Ատենադպիր |
| Զարեհ Բերքմէզ | Գանձապետ |

Անդամներ

Պօղոս Պէյ Մըսըրլը
Եդուարդ Թէրզեան

[50] Ժողովուրդ, 1919, Թ. 143:
[51] Հայ Գեղարուեստական Միութիւն, Կ. Պ. 1919, էջ 3:

*Մ. Եազըճեան*
*Տիգրան Զայեան*
*Մերուժան Պարսամեան*
*Լ. Կիւլպէնկեան*
*Զատիկ Տէր Ներսէսեան*
*Յ. Էքշեան*
*Հ. Կիւմիւշկերտան*
*Անդրանիկ Ալթունեան*
*Ներսէս Վասիլեան*

*Միութեան համակիր մը 300 ոսկի կը նուիրէ, առանց անունը յայտնելու*[52]: *1919ի վերջերը ջանք եղած է Պարիսի մէջ Մասնաճիւղ մը հիմնելու՝ յոյս ունենալով որ Հայ Գեղարուեստի ծանուցումով նպաստած պիտի ըլլան* Հայկական դատին, *ինչպէս կը գրէ խմբագրի Թղթիկ մը Պարիսէն*:

## 66. ՀԱՅ ՄԱՄՈՒԼԻ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Կազմուած է* 1919 *Փետր.* 1*ին*: *Գլխաւոր նպատակն էր. «Հայ Մամուլի միջեւ դաղափարային միութեան կապ մը պահել*[53]*»*: *Ընդհ. Ժողովի անդամ էին Եր. Օտեան (Ատենապետ) եւ Մերուժան Պարսամեան (Ատենադպիր), իսկ Վարչ. Ժողովի՝ Ենովք Արմէն, Հայկ Սէրէնկիւլեան, Միքայէլ Շամտանճեան, Յ. Ճ. Սիրունի, Սարգիս Սրենց, Տիգրան Ջաւէն եւ Տիգրան Չիթունի*[54]:

---

[52] Ժամանակ, 1919, *Թ.* 3577:
[53] *Անդ*, *Թ.* 3433:
[54] *Անդ*:

67. «ԽԱԺԱԿ» ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Կը յիշուի 1919 Փետր.ի սկիզբը՝ իբրեւ երկայացում տուող Միութիւն մը[55]:

68. «ՍԵԽԱԿ» ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Միայն անունով կը յիշուի 1919էն[56]:

69. ՀԱՅ ԽՄԲԱԳԻՐՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Ժամանակ կը տեղեկագրէ 1919 Նոյ. 11ին. «Հայ Խմբագիրներու Նորակազմ Միութեան անդամները կիրակի օր Բերայի Մատենադարանի սրահին մէջ հաւաքուեցան եւ Ընդհ. Ժողովէն վաւերացուած Կանոնագրին համաձայն գաղտնի քուէարկութեամբ ընտրեցին Վարչ. Ժողովը... 22ի չափ Խմբագիրներու մասնակցութեամբ Վարչ. Ժողովի անդամ ընտրուեցան՝ Վահան Թահրիման, Արփիկ Միւպահեանճեան, Ժիրայր Ծիրակացի, Վահան Թոշիկեան, Յակոբ Տէր Յակոբեան, Արտաշէս Վանարեան եւ Եդուարդ Զօրուեան[57]»: Միութիւնը կ'որոշէ խմբագիրներու կենսագրութիւնը պատրաստել[58]»:

1921ի սկիզբը Միութիւնը քանի մը փոփոխութիւն կ'ընէ իր Կանոնագրին մէջ՝ «որպէս զի աւելի շեշտուի Միութեան բարոյական օգտակարութիւնը»: Կը ձեռնարկուի նոր ընտրութեան: Դիւանը կը կազմեն՝

[55] Անդ, Թ. 3446:
[56] Անդ, Թ. 3608:
[57] Անդ, 1919, Թ. 3672:
[58] Անդ, Թ. 3676:

Ե. Օտեան (Ատենապետ), Լ. Ծաթրեան (Ատենադպիր), իսկ Վարչ. Ժողովը՝ Տիկ. Հայկանոյշ Մառք, Ա. Մուպահեաճեան, Յ. Տ. Յակոբեան, Ե. Արմէն, Լ. Մօզեան, Ե. Զօրուրեան եւ Ա. Քէչեան[59]: Ձենք տեսած իր Կանոնագիրը: «Հայ Մամուլի Միութեան» անուանափոխումը չէ՞ այս Միութիւնը:

### 70. ՀԱՅ ԳԵՂԱԳՈՐԾԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Հիմնումի գաղափարը 1919 Մարտէն է[60], սակայն կազմուած է Յունիս–Յուլիսին: Առաջին Վարչ. Ժողովի անդամ եղած են Վ. Սիրունեան, Ա. Զպուքճեան, Պ. Արսլանեան, Կ. Նարկիլէճեան, Ս. Թերխան, Ա. Զարիֆեան, Օ. Ճիլաճեան[61]:

Հայ Բժշկական եւ Հայ Ատամնաբուժական Միութիւններու հետ հասարակաց «Օրկան» մ'ունեցած է Միութիւնս՝ «Դարման–Հայ–Բուժակ» անունով[62]:

### 71. ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴ ԻՐԱՒԱԳԻՏԱՑ ԱԿՈՒՄԲ (1919)

Հիմնուած 1919ին՝ ունեցած է իր Հանդէսը՝ «Իրաւունք»[63]: 1920ի գարնան միանալով «Հայ Իրաւագէտներու Միութեան[64]» հետ՝ կը կազմեն «Հայ Իրաւագիտաց Միու–

---

[59] Ժողովուրդի Ձայնը, 1921, թ. 708:
[60] Ժամանակ, 1919, թ. 3475:
[61] Անդ, թ. 3574:
[62] Ժողովուրդի Ձայնը, 1920, թ. 746:
[63] Ժամանակ, 1919, թ. 3706:
[64] Ասոնց «Օրկանն» էր «Իրաւագէտ» (Ժամանակ, անդ):

թիւնը», որուն առժամեայ վարչութեան անդամ էին. Լ. Գույումճեան, Ա. Թաղուրեան, Ռ. Թընկըրեան, Մ. Զայլաք, Ս. Մեսրոպ, Լ. Կանդ եւ Ա. Սաատէթեան[65]: Միութիւնը դոյանալէ յետոյ «Հայ Իրաւագիտաց Միութիւն»ը կ'ունենայ իր յատուկ Նոր «Օրկանը» — Օրէնք — իբրեւ Պարբերաթերթ[66], իսկ Դիւանը եւ Վարչական Ժողովը կը կազմուին աւելի յետոյ[67]:

## 72. ՀԱՅ ԿԱՆԱՆՑ ԼԻԿԱ (1919)

Հիմնուած է 1919ին: Նպատակ՝ «Միութեան կապ հաստատել իգական սեռի ներկայացուցիչներու միջեւ, մտամշակոյթին միասնաբար հոգ տանելու, նոյնպէս եւ ըստ կարի հետեւանք տալու ազգային անտեղիտալի պահանջմանց»: Անդամք՝ 40: Վարչ. Խորհուրդ՝ Տիկիններ Ե. Աւետիսեան (Ատենապետ), Հ. Մառք, Զ. Պահրի, Ի. Զիլեան, Օր. Վ. Գալանթար: Մայր Դիւան՝ Զ. Աստուր, Օր. Ֆ. Քէսթանեան[68]:

Միութեան անդամուհի մը մեզ կը գրէ. «Հայ Կանանց Լիկա» մը կազմելու գաղափարը թելադրեց Տէր Զաւէն Պատրիարք: Համազգային Մարմին մըն էր ան՝ հայ կաթողիկէ, հայ բողոքական եւ հայ լուսաւորչական կիներէ բաղկացած: Լիկան Ընկերու–

---

65 Ժամանակ, 1920, Թ. 3784:
66 Ժողովուրդի Ձայնը, 1921, Թ. 774:
67 Տե՛ս անդ, Թ. 811:
68 Թէոդիկ, Ամէն. Տարեց. 1921, էջ 303:

*թին մըն էր ծրագիր ունենալով* ցիրուցան որբերը համախմբել։ Ձէզոֆ տունը հիմնելով՝ օտարացած վերապրող որբերը գտնել։

*«Ձէզոֆ Տուն»ի տնօրէնուհին եղած է* Տիկ. Զարուհի Յ. Պահրի *եւ չատ մեծ արդիւնք ունեցած է Թուրքերու քով մնացած եւ գրեթէ Հայութեան համար կորսուած որբեր «հայացնելով»։* 250 *որբ–որբուհիներ փրկած է Տիկինը, ինչպէս ինքը կը նկարագրէ խօսուն Ֆիլմի մը պատկերներով*[69]։

*«Հայ Կանանց Լիկա»ն* 1922*ի սկիզբը լուծուած է։*

## 73. ՀԱՅ ԹԱՏԵՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1921)

*Կը կազմուի* 1921*ի գարնան՝ իբրեւ «Օժանդակ» մը* «Հայ Տրամաթիք Ընկերութեան[70]»։ *Կը գործէ* 1921 *Մայիս–Յունիսին*[71]։

## 74. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐԻ ՄԻՈՒԹԻՒՆ (1919—1921)

*Հիմնումի գաղափարը, եթէ չենք սխալիր,* 1919*էն է։ Իր մասին ճշգրիտ տեղեկութեան մը չենք հանդիպած։ Գիտենք որ Միութիւնը հրատարակած է — ցուցահան–*

---

[69] *Տե՛ս* Հ. Կոչնակ, 1954, *Թ.* 45 *եւ* 46։

[70] *Տե՛ս աստ՝ Բերա Թ.* 54։ — Ժողովուրդի Ձայնը, 1921, *Թ.* 743։

[71] Ժողով. Ձայնը, 1921, *Թ.* 808։

ղէմներու առթիւ — փոքրիկ անուանացանկեր հայ նկարիչներու։ Հայ Նկարիչներու Միութիւն մ'է ինքնին։ 1921ին իր վեցերորդ ցուցահանդէսը կը կազմակերպէր, մասնակցութեամբ 26 նկարիչներու [72]։

## 75. ՆԻՀԱՐԱԿԱԶՄ ՏՂՈՑ ՊԱՇՏՊԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (··· 1953)

Կը յիշուի 1953ին [73], առանց մանրամասն տեղեկութեան։ Զունի՞ իր կանոնագիրը։ Ինչո՞ւ չստանայինք զայն։

## 76. ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՀԵՏԱԶՕՏԻՉ ՄԻՈՒԹԻՒՆ (1953)

Հիմնուած է 1953 Ապրիլին։ Միութեան նպատակն է․ Մշակութային բոլոր մարզերու վրայ հետազօտութիւններ կատարել եւ արդիւնքը ի սպաս դնել հանրութեան՝ հրատարակութիւններով, ցուցահանդէսներով եւ բանախօսութիւններով։

Միութեան հիմնադիրներն են․

| | |
|---|---|
| Պրոֆ. Գրիգոր Քէօմիւրճեան | Նախագահ |
| Թորոս Ազատեան | Ատենապետ |
| Շապուհ Զօլաքեան | Բ. Ատենապետ |
| Պերճ Էրգիեան | Ատենադպիր |
| Ժիրայր Թաթարեան | Գանձապետ |
| Օր. Վարդուհի Ճէլալեան | |

[72] Ժողովուրդի Ձայնը, 1921, Թ. 941։
[73] Երջանիկ Տարեցոյց, Իսթանպուլ 1953, էջ 13։

*Օր. Սիրվարդ Պետրոսեան*
*Գէորգ Բամպուգճեան*
*Երուանդ Արսլանեան*

*Միութիւնը ունի իր Ծրագիր–Կանոնագիրը, զոր չենք տեսած։*

*Միութիւնը 1953—1955 սարքած է ասուլիսներ, բանախօսութիւններ եւ նուագահանդէսներ։ 1954ին տօնած է Կոմիտաս Վրդ.ի ծննդեան 85 ամեակը։*

## ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ՂԱԼԱԹԻԱ

### 1. «Ս. ԽԱՉ» ԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ (1750?)

*Վիեն. Մխիթ. Միաբանութեան Դիւանի հին թուղթերու մէջ*[1] «հինէն ի վեր գոյութիւն ունեցած» *ընկերութիւն մը կը յիշուի «Ս. Խաչ» Եղբայրութիւն անունով, որ կազմուած էր «Ճիզվիթի ժամ»ի մէջ, այն է՝* St. Benoît *եկեղեցին*[2], *որուն նպատակը եւ գործունէութիւնը՝ իր մանրամասնութեան մէջ՝ անծանօթ է: Վերոյիշեալ դիւանական թուղթերու համեմատ* 1822*ին միայն* 3—4 *անդամ մնացած ըլլալուն՝ Ընկերութիւնը դադրած էր: Սակայն կը վերակազմուի* 1822 *Հոկտ.ին ունենալով կենդրոն* Ս. Գէորգ *եկեղեցին (Դիւ. Վիեն. Մխիթ.* 1822 *Նոյ.):*

*Հաւանական կը թուի որ Ընկերութիւնս «Ս. Յովսէփայ Եղբայրութեան» ժամանակներէն ըլլայ, քանի որ իր նախատիպ օրինակը, հաստատուած Հռոմի մէջ՝ շատ հին է:*

---

[1] 1822 *Յուլ.* 25. *նամակ Հ. Անդրէասի՝ գրուած Պոլսէն Գեր. Աբբահայր Բարիկեանի:*
[2] *Հ. Մ. Սրապեան, անդ, էջ* 13 *եւ ծանօթ.:*

## 2. «ԱՆՈՒՆ ՄԱՐԻԱՄՈՒ» ԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ (ԻԲՐ 1800)

*Ղալաթիոյ Ֆրանսական* St. George *եկեղեցւոյ մէջ Հայ Կաթողիկէները ունեցած են բարեպաշտական Ընկերութիւն մը՝* «Անուն Մարիամու» Եղբայրութիւն *անունով, որուն կազմութիւնը* 1800*ի տասնները եղած կը թուի: Հ. Սրապեան*[3] *Ընկերութիւնս յիշած ատեն ժամանակի որեւէ ճշդում չ՚ըներ:*

*Եղբայրութեանս նպատակն էր.* «Նպաստել աղքատ ննջեցելոց»[4], *այսինքն՝ աղքատ ննջեցեալները ձրի թաղելու բոլոր աշխատանքները յանձն առնել:*

*Եղբայրութեան անդամները վերոյիշեալ եկեղեցւոյ աջ կողմը իրենց յատուկ խորան մը շինելով՝ վրան կանգնած էին իւղաներկ Տիրամօր պատկերը, Մանուկ Յիսուսը գիրկը, եւ երկուքին ձեռքին մէջ Ս. Աստուածածնայ հանդերձը կախուած, որուն առջեւ կը կատարէին իրենց բարեպաշտութիւնները: Այս պատկերը նկարել տուած էր* Պետրոս Աղա Սանտըգճեար Նալլըգճեան *Հայ Կաթողիկէներու կառուցանելիք առաջին եկեղեցւոյ համար:* 1831*ին ծագած ժանտախտին առթիւ թափօրաբար պտտցուած է Պոլսոյ փողոցները՝ Հրապարակային աղօթքով: Իբր յիշատակ այդ պատմական թափօրին՝ Զատկի երկրորդ օրը նուիրուած է Հրապարակային յարգանքի ի պատիւ այդ պատ–*

---

[3] *Անդ, էջ* 10:
[4] *Անդ:*

կերին․ պատարագէն վերջ՝ եկեղեցւոյ շուրջը թափօրի կը հանուի ան։ Ժողովուրդը մեծ յարգանքի առարկայ ըրած է զայն եւ բազմաթիւ նուէրներով զարդարած, որով կը կոչուի «Ըրլտըզ Աստուածածին»։

Որչափ գիտենք Եղբայրութիւնս կը շարունակուի մինչեւ օրս[5]։

3․ ՅՕԹՆ ԽՈՑԻ ԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ (1808)

Այս Եղբայրութիւնը հիմնուած է 1808 Մայիս 1ին։ Իր սկզբնական նպատակը բարեպաշտական եղած է։ Սակայն 1834էն վերջ «Աղքատանոց»ի ծառայող Ընկերութեան մը վերածուած է, որ 1868ին տակաւին կը գործէր[6]։

4․ ԴՊՐԱՑ ԴԱՍ (1838)

Հայ Կաթողիկէ Համայնքի առաջին Դպրաց Դասը հաստատուած է 1838ին Ղալաթիոյ Ցիսուս Փրկիչ Մայր-Եկեղեցւոյ մէջ։ Մէճմուայը Ախպար թերթի մէկ թուղթին մէջ Յովհաննէս Յ․ Ալան 1897 Դեկտ․ 28ին կը գրէ որ իր քով է օրինակութիւնը հին Յղթակցութեան մը, որ կը հաստատէ թէ կաթողիկէ Հայոց առաջին Դպրաց դասը 1838ին հիմնուած է Ս․ Փրկիչ եկեղեցւոյն համար եւ թէ հին Հայ կաթողիկէները «Ս․ Ստեփանոսի Նախավկային նախատօնա-

---

[5] Տե՛ս Աւետիք, Պէյրութ 1937, Թ․ 4, էջ 6։
[6] Հմմտ․ Ասկէրեան, անդ, էջ 12 եւ 17․։

*կին կը փութային Բերայի բարձունքներէն դէպ ի* Ղալաթիա *իջնալ՝ լսելու համար Դպրաց Դասուն* «Ճէյլի» *պատարագը եւ մանաւանդ* Տիրացու Պապա Համբարձումն» :

*Այդ թռուցիկին մէջ կը յիշուի հայ կաթողիկէ երկրորդ հնագոյն Դպրաց Դասը, որ հիմնուած է* 1850*ին, անծանօթ ըլլալով հիմնողներն ու եկեղեցին :*

## 5· ՅԱՌԱՋԴԻՄԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1876)

*Միայն* Մասիսի *քով հանդիպած ենք յիշատակութեան Միութեանս մասին : Կազմուած էր Հայ Ազգ. Երեսփոխաններէն եւ կ'ըսուէր.* «Յառաջդիմական Միութիւն Ազգ. Երեսփոխանաց [7]» :

*Միութիւնը* 1876 *Յունիսին* «նախապատրաստական *գումարում*» *մը կ'ընէ Ղալաթիոյ Էսկի Պալըք–Բազար Իսկէլէսի : Ուրեմն՝ նոր կազմուած էր :*

## 6· ՀԱՅ ԳՐԱՇԱՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1878)

*Ընկերութեան գաղափարը յղացուած էր* 1877*ին եւ կազմուած «Մասնաժողով» մը, որ հայ թերթերու մէջ կ'ընէր հետեւեալ հրաւէրը «Առ Հայ Գրաշարս». կը ծանուցուի ամէն Հայ գրաշարաց՝* որք իրենց ապագայ վիճակին բարւոքմանը փափաքող են, *անհրաժեշտ պարտաւորութիւն կայ իրենց ներկայ գտնուիլ յառաջիկայ Կիւրակէ Դեկտ.*

---

[7] Մասիս, 1876, *Թ*. 1841 :

18 ժամ ճիշդ 6ին Ղալաթիա Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ մօտ Հայկական սրճարանը, ուր տեղ պէտք եղած կարգադրութեանց վրայ խորհրդածութիւններ պիտի ըլլան։

1877 Դեկտ. 16

Յ. Զամչրճեան

Ղ. Փափազեան

Ի Դիմաց Մասնաժողովոյ

Յ. Պարոնեան

Յ. Կարապետեան[8]։

Ընկերութիւնը կը կազմուի 1878 Յունուար 2ին, ունենալով իր Կանոնագրութիւնը, որ Յունուար 8ին գումարուած ժողովի մը մէջ քննութեան կ'ընթարկուի։ Տեսած չենք այդ Կանոնագրութիւնը։

Ընկերութեան Ընդհ. Ժողովի Ատենապետն էր Ղ. Փափազեան, իսկ Ատենադպիրը՝ Մ. Ս. Քիրապճեան[9]։

Ա. Ալպօյաճեան Ընկերութեանս հիմնադրութիւնը սխալմամբ 1880ին կը դնէ[10]։

## 7. ՄԻԱԲԱՆՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

Պոլսոյ Հայրենիք կը գրէ 1880 Յունուար 12 Շաբաթ օր.

«Հինգշաբթի օր Ղալաթիոյ Ազգ. Մատենադարանին մէջ, ուր հաւաքեալ էին 40ի

---

[8] Մասիս, 1877, Թ. 2066։ — Թէրճ. էֆքեար, 1877, Թ. 134։

[9] Մասիս, 1878, Թ. 2076, 2108։ — Հայրենիք, 1878, Թ. 418։ — Թէրճմ. էֆքեար, 1878, Թ. 161։

[10] Գաղ. Տարեգ. Գ., էջ 119։

չափ պատուաւոր ազգայինք ընդ նախագահութեամբ Ս. Պատրիարք Հօր, «Միաբանութիւն Հայոց» անուն Ընկերութիւն մը հաստատուեցաւ, որոյ նպատակն է Հայ ժողովրդական կենցաղը դիւրել նիւթական եւ մտաւորական միջոցներու զարգացմամբ: Այս Ընկերութեան պիտի անդամակցին ամէն ազգայինք, որք տարին 20 ղրշ. կ'ուղեն վճարել թէ՛ Տաճկաստանի թէ՛ Ռուսաստանի եւ թէ՛ Պարսկաստանի մէջ: Այսպիսի Ընկերութեան մը պէտքը թէեւ մէկ ու կէս տարի յառաջ զգացուած, սակայն ինչ ինչ պատճառներով մինչեւ ցարդ գործադրուած չէր: Ուրախ եմք որ Ս. Պատրիարք Հօր ազգասիրական ջանից շնորհիւ այսպիսի պատուաւոր Ընկերութիւն մը հաստատուեցաւ, որոյ կարեւորութիւնը առաւել քան զամենայն վերջին ժամանակներս զգալի եղած էր, զի Ռուսաստանի եւ Տաճկաստանի մեծահարուստ ազգայինք, որք կ'ուզէին ազգին մեծ մեծ գումարներ նուիրել կամ կտակել, կարող չէին իրենց բաղձանքը պսակել բովանդակ ազգին անեղծ վստահութեան արժանի եւ երեւելիներէ կազմեալ Ընկերութիւն մը կամ մարմին մը չգտնուելով ազգին մէջ[11]: Լրագիր (1880 Թ. 1173) կ'ըսէ որ այս Ընկերութիւնը կազմուած է «Ալիանս Իզրայէլիդ»ի օրինակի վրայէն:

---

[11] Հայրենիք, 1880, Թ. 585: — Համմ. Լրագիր, Կ. Պ. 1880, Թ. 1168:

*Ընկերութիւնս անծանօթ է Ալպօյաճեանի :*

8· ԲԵՄԱԿԱՆ ՅԱՌԱՋԴԻՄԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1884)

*Հիմնուած է* 1884 *Սեպտ.էն քանի մը ամիս առաջ՝ Ազգ. երեսփոխաններէ եւ Պետ ընտրուած է* Յարութիւն Մերճէմգուլի (Մասիս, 1884, *թ*. 3736) : *Անծանօթ է Ալպօյաճեանի :*

## ԲԵՐԱ

1· ԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ ԱՆԱՐԱՏ ՅՂՈՒԹԵԱՆ (1848)

*Հիմնուած է* 1848*ին՝* Բերա : *Հիմնադիրն է Հ.* Մանուէլ Վ. Տէվրիշեան, *Վիեննական Մխիթարեան :* Նպատակը *կը դնէ ինքը՝ հիմնադիրը. «Աս Եղբայրութեան բուն դիտումը՝ իր ծնած օրէն, ուրիշ բան չէ եւ չեղաւ եւ չէ, բայց եթէ ուղղափառ Ազգին մէջ* կրօնական եւ բարեպաշտական գիրքեր տարածելով՝ զինքը օտարազգի չար գիրքերուն տուած վնասներէն պատսպարել եւ ուղղափառութեան հոգին կենդանի պահել» (*Նամակ գրուած Պոլսէն* 1865 *Սեպտ.* 13*ին. Դիւ. Վիենն. Մխիթ. Մատենադարանի*) :

*Հ. Մանուէլ Եղբայրութեան համար գրած էր* 8 *յօդուածէ բաղկացած* Կանոնագրութիւն *մը, որ յետոյ Հ. Աղեքսանդր Վ. Պալճեանէ* իտալերէնի *եւ Հ. Մանուէլէն ալ* տաճկերէնի *կը թարգմանուի : Յիշենք քանի մը Յօդուած. «Սոյն Եղբայրութեան կրնայ*

անդամակցիլ ամէն քրիստոնեայ՝ այր եւ կին, նուիրելով Եղբայրութեան ըստ կամի եւ ըստ կարողութեան դրամական օգնութիւն մը յանձնումն դրամագլխոյ, որուն շահովն Եղբայրութեան գրքերը կը տպուին» (Յօդ. Գ.)։ «Եղբայրութեան անդամ գրուողներն՝ Եղբայրութեան ծախքովը տպուած գրքերէն մէյմէկ օրինակ եւ կամ տրուած նպաստին համեմատ աւելի եւս ձրի կ՚ընդունին» (Յօդ. Դ.)։ «Մնացած գրքերն ըստ կարի աժան գնով կը ծախուին եւ անկէ ժողուած ստակը դրամագլխոյն շահուն վրայ կը դարնուի» (Յօդ. Ե.)։

Հ. Մանուէլ 1865ին տուած է ցանկ մը անդամներու՝ իրենց անդամավճարներով, որ կը կարծենք թէ առաջին ցանկն է, ուր կը կարդանք. Աննա Տէօվլէթեան՝ 1000 ֆրանք, Յովհաննէս Տէրվիչեան՝ 500 Ֆր., Գրիգոր Երկանեան՝ 300 Ֆր., Մարիամ Տէրվիչեան՝ 240 Ֆր.., եւ այլն, համագումար՝ 25 անդամ՝ 4330 ֆրանք (Դիւան, անդ)։

Եղբայրութեան հնագոյն տպած գիրքն է՝ Թէօվպէքեար Մարիամ Մագդաղենացիին կենճէլէրի, 1862, էջ 204։

Եղբայրութիւնը՝ իր անդամներէ կազմուած վարչական Մարմին եւ յատուկ ժողով ունեցած է՝ նախագահութեամբ Հ. Մանուէլի, որ տեւած է մինչեւ 1865։ Այդ տարին գումարուած ժողովի մասին կը գրէ մեր Հ. Գէորգ Զալըխեան Պոլսէն՝ Գեր. Աբբա–

Հայր Պօղաճեանի. «Ջանյաջող եղից ժողովոյ Ընկերութեան Անարատ Յղութեան չկարեմ այլ ինչ ասել, բայց եթէ՝ ո՞ գիտէ թերեւս մատն Աստուծոյ իցէ եւ յայնմ, զի ի հաստանել մեր զգոյս մեր յԸնկերութենէ՝ կարեմք համարձակագոյնս դհետ լինել կազմել առանձինն վասն մեր Ընկերութիւն ինչ, ընդունելով ի Հռոմայ ներողութիւնս, եւ այլն. որպէս ինչ Գեր. Գեր. Հայրդ ի բազմաց հետէ երկնէր ի մտի» (Դիւ. Վիեննի. Մխիթ. Մատեն. 1865 Դեկտ. 22)։

Իսկապէս ալ 1866ին կը դադրի աշխարհիկ Վարչութիւնը եւ Եղբայրութիւնը՝ իբրեւ Հրատարակչական մը՝ հաստատելով Գեր. Յակովբոս Արքեպ. Պօղաճեանէ՝ Վարչութիւնը կ'անցնի ամբողջապէս Վիեննի. Մխիթ. Միաբանութեան եւ կ'ունենայ 10 կէտերէ բաղկացած կանոնագրութիւն մը, որ շաղկապուած է նախկին 8 Յօդուածներէն եւ առանձին հրատարակուած, որուն համեմատ՝ անգամ մը նուազագոյն կէս անգլիական կը վճարէ։ Ընկերութիւնը մինչեւ 1934 հրատարակած էր 43 գիրք։ Իսկ 1939—1945ի պատերազմին կը դադրի գոյութիւն ունենալէ։

## 2. ՆԱՐԵԿԵԱՆ ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

Կազմուած է 1869 Նոյեմբերին։ Հիմնադիրներն են Սիմոն Ց. Գ. եւ Մ. Ց. Սըվաճեան։ Ընկերութեան նպատակն է. Բերայի

ազգայնոց մէջ ուսումը ծաւալել՝ ազգային վարժարանաց թէ՛ նիւթապէս եւ թէ բարոյապէս նպաստելով ։ *Ընկերութիւնը իր առաջին ժողովը կը գումարէ Ներսէսեան վարժարանի սրահը* (Մանզումէի էֆքեար, *Կ. Պ.* 1869, *Թ.* 1095 ։ — *Տե՛ս նաեւ* Ծիածան, 1869 *Նոյ.*) ։

## 3. ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

1871 *Յուլիսին կը տեղեկագրէ Հայրենիք. «Բերայի 20ի չափ հայ երիտասարդներէ բաղկացեալ* Առեւտրական Ընկերութիւն *մը հաստատուեր է, որոյ նպատակն է* մասնաւոր խանութ մը բանալ եւ հասարակութեան աժան գնով ամէն տեսակ ապրանք վաճառել ։ *Այս Ընկերութիւնը, որ այժմ մեծկակ դրամագլուխ մը պատրաստած չէ դեռ, բայց կը յուսամք թէ քիչ ատենէն իր նպատակին կը հասնի* իւր խմբագրած Կանոնադրութեան համաձայն ։ *Յուսամք թէ այս բարեմիտ երիտասարդք նախանձելի օրինակ պիտի ըլլան ազգին մէջ այս տեսակ Ընկերութեանց բազմանալուն*[12]» ։

*Ինչպէս կը տեսնուի՝ բաժանորդական Ընկերութիւն մըն է* ։

## 4. ԱՐՀԵՍՏԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Կազմուած կ՚երեւայ* 1908 *Օգոստոսին* (*Հմմտ.* Մանզ. էֆքեար, 1908, Թ. 2205) ։

---

[12] Հայրենիք, 1871, *Թ.* 54 ։

5. ՀԱՅ ԱԶԳԱՍԻՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Թատերական Ընկերութիւն մըն է* «Հայ Ազգասիրական Միութիւն»*ը*, *կազմուած* 1908*ին*, *որ նոյն տարւոյ Սեպտ.* 1*ին* «Նորակազմ» *կ՚որակուի եւ ներկայացում կու տայ Բերա* Union Française *ի մէջ* ի նպաստ Վանի սովեալներու[13]:

6. ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ–ՄԱՐԴԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԷ ՀԱՅՈՑ (1908)

Սուրհանդակ*ի մէջ միայն հանդիպած ենք* «Հայրենասիրական – Մարդասիրական Ընկերութեան Կաթողիկէ Հայոց»*ին*, 1908 *Հոկտ.ին*, *որմէ կը գուշակենք թէ հիմնուած ըլլալու է* 1908*ին*: *Իր նպատակը յայտնի է անունէն*. «Հայ գաղթականներու բաշխուելու համար բաւական քանակութեամբ հանդերձեղէն, *եւ այլն*, հաւաքած են Պ. Պ. Էտկար Տավուտեան եւ Երուանդ Անտոնեան՝ *Հայրենասիրական–Մարդասիրական* Մարմնին կողմէ: *Այդ հանդերձեղէնները երէկ անձամբ տարին յանձնեցին Բերայի Թաղ. Խորհրդարանը*[14]»:

7. «ԳՈՂԹԱՆ» ՀԱՅ ԹԱՏԵՐԱՍԻՐԱՑ ՄԱՐՄԻՆ (1908)

*Այս ալ* «Նորակազմ» *կ՚անուանուի* 1908 *Հոկտ.ին. ներկայացում կու տայ ի նպաստ* «*Հայ կարօտ գաղթականաց*» *Բերա*, Petit Chant*ի մէջ*[15]:

---

[13] Սուրհանդակ, 1908, *Թ.* 71:
[14] *Անդ*, *Թ.* 94, *Հոկտ.* 3:
[15] *Անդ*, *Թ.* 105, *Հոկտ.* 15:

### 7ա. ԱՇԽԱՏԱՆՔԻ ՏՈՒՆ (1909)

*Հիմնուած է 1909ի սկիզբները: Իր նպատակը. Աշխատող ձեռքերու համար գործ հայթայթել, քան անոնց նպաստել... գնել աշխատաւորը գործելու կարելիութեան մէջ* (Աշխատանք, *Վան* 1913, *էջ* 1419):

### 8. ՀԱՅ ԿԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

*Ընկերութիւնը կը կոչուի նաեւ* «Պոլսոյ Հայ Տիկնանց» *Միութիւն, որուն անդամուհիները տնէ տուն պտտելով կը հաւաքեն հագուստեղէն, անկողին, ծածկոց, աման, կահկարասի: Կ'ըլլան բազմաթիւ նուիրատուութիւններ Պոլսէն ու դրսէն (Անդ, թիւ* 2428):

*Միութիւնը* 1909 *Յուլիսին* Օրթագիւղի *մէջ կը բանայ* Որբանոց–Արհեստանոց *մը Ատանայի* սրբուհիներուն *համար՝ ջանալով առաջին առթիւ տալ անոնց ձեռքը գործնական արհեստ մը (Անդ, Թ.* 2448):

*Ահա թէ ի՛նչ կը գրէ Միութեան Վարչական Խորհուրդը — երեք տարի յետոյ — «...երեք տարիէ ի վեր ամէն կարելի զոհողութիւն յանձն առինք արհեստանոցի ճիւղը զարգացնելու համար. ուրախ ենք որ այսօր նմանօրինակ օտար հաստատութիւններու հետ մրցելու կարող վիճակի մը հասած են հագուստի, ճերմակեղէնի եւ պռօտէի ճիւղերը: Վայելչասէր դասակարգէ յաճախորդուհիներու համար բազմաթիւ օժիտներ պատրաստուեցան հոն եւ ամէնքն ալ գոհ մնացին:*

Պոլսէն ճիւղին համար մինչեւ իսկ Մանչեսթրի հայ տիկիններէն յանձնարարութիւններ ստացանք...

Հայ Տիկնանց Միութեան
Վարչական Խորհուրդին կողմէ

Ատենադպիր — Ատենապետ
Մ. Պօչնաքեան — Ա. Յ. Նիկողոսեան

(Անդ, 1914, Թ. 2593):

Միութեան Որբանոցը 1913ին սկիզբը կը փոխադրուի Շիշլի (Անդ, 1913, Թ. 2867):

## 9. ՀԱՅԿԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1918)

Կը յիշուի 1918ի Դեկտ.ին եւ ունի ճիւղեր Պոլսոյ զանազան թաղերու մէջ[16] եւ գաւառները: Միութիւնը իր յատուկ տունը ունէր[17]:

## 10. «ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹԻՒՆ» ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Կազմուած է 1919 Մարտին սկիզբը (Ժողովուրդ, Կ. Պ. 1919, Թ. 134):

## 11. ՍԱՆԱՍԱՐԵԱՆ ՍԱՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Կազմուած է 1919ի գարնան: Հիմնադիրներն են Պոլիս գտնուող Սանասարեանի շրջանաւարտները, թերաւարտները եւ ուսուցիչները[18]:

---

16 Հմմտ. Ժամանակ, 1918, Թ. 3396, 1919, Թ. 3403:
17 Ժամանակ, 1919, Թ. 3552:
18 Ժամանակ, 1919, Թ. 3552, 3557:

## 12· ԱՂՔԱՏԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1919)

1914—1918ի չարաչուք պատերազմը իր սոսկալի աւերումներէն զատ՝ օգտակար արդիւնքներ ալ յառաջ բերած էր մեր ժողովուրդին մէջ: Լաւագոյն արդիւնքներէն մին կը համարինք այն անկեղծ, անվերապահ եւ ցեղին գոյութիւնը ամէն գնով պահպանելու մտահոգութեամբ յառաջ եկած ազգային միութեան ոգին, որ կրնայ բսուիլ թէ աննախընթաց է իր տեսակին ու տարածութեան չափով:

Իբրեւ ապացոյց՝ ահա փոքրիկ օրինակ մը:

1919ի սկիզբները, գուցէ գարնան, «Բերայի մէջ Հայ եւ Հայ Հռոմէական Տիկիններէ եւ Օրիորդներէ Ընկերութիւն մը կազմուած է «Աղքատասէր Տիկնանց Ընկերութիւն» անունով, որուն նպատակն է դաստիարակել աղքատ աղջիկները: Այս Ընկերութիւնը իր վերջնական կազմութիւնը ստացած է հետեւեալ կերպով·

| | |
|---|---|
| Տիկին Երամ | Ատենապետ |
| Տիկին Նարլեան | Դեր–Ատենապետ |
| Օր· Օլկա Ազարեան | Ատենադպիր |
| Տիկին Կիւմիւշկերտան | Գանձապետ |
| Տիկին Աղան | Անդամ |
| Օր· Րիթա Ազարեան | Անդամ |
| Օր· Գույումճեան | Անդամ[19]: |

---

[19] Անդ., Թ· 3632:

*Ընկերութիւնը չուտով բացած էր վարժարան մը 4 դասարանով։ 1919 Օգոստոս–Սեպտեմբերին 5րդ դասարան մ'ալ կը բանայ աւելցնելով անգլիերէն եւ մարմնամարզ։ Վարժարանի Տեսչուհի ընտրուած էր* Օր. Զէֆինեան։

Ժամանակ *կը գրէ. «Այս հաստատութիւնը, որ աղքատ աղջիկներ կը դաստիարակէ, հասոյթի մասնաւոր աղբիւր մը չունի եւ նուիրատուութիւններով եւ անդամներու անձնական ջանքերով ուսում եւ կրթութիւն կու տայ աղքատ աղջիկներու*[20]» ։

*Դժբախտաբար չենք գիտեր թէ ո՛րքան տեւած է այս Ընկերութիւնը եւ իր բացած վարժարանը։*

13. ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1953)

*Հայ Կաթողիկէ Ս. Գրիգոր Լուսաւորիչ Ուսումնարանի նախկին Սաները 1953ին* «Սանուց Միութիւն» *մը կազմելով՝ Յուլիսին Հանդիսական Հոգեհանգստեան Պատարագ մը մատուցանել տուած են Սաղըրղ–Աղաճի Ս. Աստուածածին Մայր–եկեղեցւոյ մէջ՝ Ս. Գրիգոր Լուսաւորիչ Ուսումնարանի հանգուցեալ հիմնադիրներուն, բարերարներուն, ուսուցիչներուն եւ աշակերտներուն համար. Պատարագէն վերջ ճառախօսութիւններ ալ տեղի ունեցած են։*

20 *Անդ։*

*Միութեան Հիմնադիրներէն կը յիշուին.* Տօքթ. Տանտիկեան, Տօքթ. Ա. Վահրամ, Տօքթ. Ա. Պալեան, Ա. Եանքու, Ն. Թէրզեան: *Միութեան ջանքն է* վերաբանալ Ս. Գրիգոր Լուսաւորիչ Ուսումնարանը, *որ «պիւտճէի անբաւարարութեան եւ այլ պատճառներով»* 1925*ին փակուած էր*[21]:

## ՖԷՐԻԳԻՒՂ

### 1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1881)

1883 *Յունիս* 26 *թուականով նամակ մը կը գրեն* Թէրճէմանը էֆքեարի *«Ի Դիմաց Գործ. Ժող.ի* Ուսումնասիրաց Ընկերութեան *Ատենապետ՝* Ս. Ս. Պալըգճեան *եւ Ատենադպիր՝* Ն. Հ. Գազազեան *եւ թերթը* «Ուսումնասիրաց Ընկերութիւն» *վերնագրով կը հրատարակէ այդ նամակը, որ հետեւեալն է.*

«Ուսումնասիրաց Ընկերութիւնս, *ինչպէս գիտէք*, երկու տարիէ ի վեր հաստատուած *եւ վերջերս ալ* Ուսումնական խորհրդոյ կողմէն պաշտօնապէս վաւերացուած լինելով, *այս անգամ վերստին արժան դատած է դիմել առ համայն ուսումնասէր ազգայինս որ հաճին իրենց նպաստիւքն քաջալերել զԸնկերութիւնս, որոյ յատուկ նպատակն է* գիւղիս Ս. Վարդանանց աղքատիկ վարժարանի ուսանող երկսեռ մանկտոյն

[21] Նոր Լուր, 1953, Թ. 880:

նիւթապէս եւ բարոյապէս օժանդել ի յուսաւորութիւն մտաց նոցա եւ ի փառս եւ յօգուտ ազգիս[22]» :

*Ինչպէս կը տեսնուի՝ Ֆէրիգիւղի* «Ուսումնասիրաց Ընկերութիւն»*ը հիմնուած է* 1881 *Յունիսին եւ հոն* 1881 *Ապրիլին հիմնուած* «Ս. Վարդանանց Ընկերութենէն» *տարբեր Ընկերութիւն մըն է* :

*Ա. Ալպօյաճեան Ֆէրիգիւղի «Ուսումնասիրաց Ընկերութեան» հիմնումը սխալմամբ* 1883*ին կը դնէ*[23] :

## 2. ՆՊԱՍՏԱՄԱՏՈՅՑ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Հիմնուած է* 1908 *Սեպտ.ի սկիզբը* : Սուրհանդակ 1908 *Հոկտ.* 1*ին կը ծանուցանէ.* «*Ֆէրիգիւղի* Հայ Տիկինները Ընկերութիւն *մը կազմած եւ իրենց Ծրագիրը Յանձնաժողովին* (*Նպաստից Յանձնաժողով*) *ղրկած էին* : *Յանձնաժողովը ընդունելի գտաւ անոնց նպատակը եւ որոշեց հրաւիրել որ գործի ձեռնարկեն. իսկ* Կանոնագրին *վաւերացումը առաջիկային ձեռնհաս մարմնի մը քննութեան յանձնել հարկ դատուեցաւ*[24]» :

*Նոյն թերթը* 15 *օր յետոյ կը գրէ. «Ֆէրիգիւղի Թաղ. Խորհուրդը աջակցութեամբ* Նպաստամատոյց Տիկնանց Միութեան 1200

---

[22] Թէրճ. Էֆքեար, 1883, *Թ.* 1763, *Յունիս* 29:
[23] *Գաղ. Տարեգ. Գ.*, *էջ* 121:
[24] Սուրհանդակ, 1908, *Թ.* 103:

*ղրշ·ի գումար մը յանձնած է Տեղապահ Սրբազանին*[25]» ։

Մանզ· էֆքեար (1908, *Թ*· 2225, 2234, 2237) *եւ* Ազատամարտ (1909, *Թ*· 90) *թերթերու քով Ընկերութիւնս կոչուած է* «Կըրթասէր Տիկնանց Ընկերութիւն» ։

## ԲԱՆԿԱԼԹԻ

### 1· ՕԺԱՆԴԱԿ ԽՆԱՄԱԿԱԼՈՒՀԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1889)

*Բանկալթիի մէջ* 1886*ին բացուած* Սայենեան *երկսեռ վարժարանի նիւթապէս նպաստելու համար* 1889*ի գարնան կը հաստատուի* «Օժանդակ խնամակալուհեաց Ընկերութիւն»*ը, որուն բացումը կ՚ընէ Վահան Ծ· Վ· Յակոբեան*, 1889 *Մարտ* 3*ին, ճառով մը, որմէ յորդորուած՝ Ընկերութիւնը կը կազմէ իր առժամեայ Դիւանը ։ Կանոնագիրը վաւերացուելէ վերջ՝ կ՚ընտրուի հետեւեալ Գործադիր Ժողովը ·*

*Տիկ· Նախշիկ Պ· Մարկոսեան*
*Տիկ· Վիրգինէ Զ· Կարապետեան*
*Տիկ· Մարի Ա· Պաղտատլեան*
*Օր· Բարիս Գ· Գահրամանեան*
*Տիկ· Արմաւենի Տ· Դարբինեան*
*Տիկ· Վասիլուհի Պ· Համբարձումեան*
*Տիկ· Արուսեակ Ն· Գալֆայեան*

---

[25] *Անդ*, *Թ*· 104 ։

Տիկ. Լուսեայ Ա. Անտոնեան
Տիկ. Վիրգինէ Եսայեան (Մանզ. էֆ. 1889, Թ. 6192):

2. ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Կը յիշուի 1919 Յունիսին՝ Պէյպէքի մէջ սարքած հանդէսի մ'առթիւ (Ժամանակ, 1919, Թ. 3536): Կազմուած է 1919 Փետրուարին:

3. «ԿԱՅԾԱԿ» ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

Հաւանօրէն 1919 Յունուարին կազմուած է Բանկալթիի «Կայծակ» Միութիւնը, որ 1919 Մարտին նուագահանդէս տալով 239.80 ոսկի հասոյթ կ'ունենայ, զոր Կեդր. Որբախնամին կը յատկացնէ[26]:

4. ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՀԵՏԱԶՕՏԻՉ ՄԻՈՒԹԻՒՆ (1953)

Պոլսոյ առումին (1453) 500ամեակը առիթ տուաւ Պոլսահայ մտաւորական հոյլի մը կազմելու «Մշակութային Հետազօտիչ Միութիւն»ը, որուն նպատակն է «մշակութային բոլոր մարզերու վրայ հետազօտութիւններ կատարել, նկատի առնելով մանաւորաբար այն ժամանակաշրջանը, որ սկիզբ կ'առնէ Իսթանպուլի առումէն ու կը հասնի մինչեւ մեր օրերը[27]»:

Միութեան հիմնադիրները, որ միան–

[26] Ժամանակ, 1919, Թ. 3475:
[27] Աստղաբերդ, Կ. Պ. 1953, Թ. 11—12, էջ 149:

*դամայն Վարչական Մարմնի պաշտօնը կը վարեն՝ հետեւեալներն են.*

*Պրոֆ. Գրիգոր Քէօմիւրճեան*
*Թորոս Ազատեան*
*Ծատուր Զօրաքեան*
*Պերճ Էրզիեան*
*Ժիրայր Թաթարեան*
*Օր. Վարդուհի Ճէլալեան*
*Օր. Սիրվարդ Պետրոսեան*
*Գէորգ Բամպուգճեան*
*Երուանդ Արսլանեան (Անդամք)։*

*Միութեան կեդրոնատեղին է Բանկալթի, Թավուգճու Ճէթհի Սօգագ, Քէօմիւրճեան Արարթման*[28]*»։*

## ՇԻՇԼԻ

### 1. ՀԱՅ ՈՐԲԱԽՆԱՄ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Հաւանօրէն կազմուած է 1919ի սկիզբը։* 1919 *Մարտին Միութիւնը իր հոգածութեան տակ ունէր* Որբանոց *մը Նշան Թաշի բարձունքին վրայ, ուրուն «կանոնաւորութիւնը փողոցի դռնէն կը սկսի... կոկիկ հագուած, վրայ գլուխը մաքուր... անոնք ոչ թէ որբեր, այլ աւելի շուտ գիշերօթիկ վարժարանի մը աշակերտներու կը նմանին... առողջապահութեան հսկողութիւնը յանձնուած է 12*

---

[28] Աստղաբերդ, *անդ*։ — Այսօր, *Պարիս* 1953, *Թ.* 701։

բժիշկներու ... 94 որբերուն հսկողութիւնը յանձնուած է Ընդհ. տնօրէն Պ. Գրիգոր Յովակիմեանի[29]» :

2. ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (...1952)

Գարակէօզեան Որբանոցի Սաները, որքան գիտենք, 1930էն առաջ արդէն ունեցած են իրենց Միութիւնը: Հետեւաբար Նոր Լուրի[30] եւ Երջանիկ Տարեցոյցի[31] յիշած Միութիւնը նորութիւն մը չէ :

3. «ՇԻՇԼԻ» ՄԱՐՄՆԱԿՐԹԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (...1953)

Կազմութեան թուականը անծանօթ է մեզ : Կը յիշուի Երջանիկ Տարեցոյցին մէջ[32] :

*

ՕՐԹԱԳԻՒՂ

1. ՀԱՅԿԱԿԱՆ ԿՐԹԱՐԱՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (...1880)

Յակոբ Գուրգէնի 1876ին Օրթագիւղի մէջ հիմնած անհատական վարժարանը կը կոչուէր «Հայկական Կրթարան» : 1880ին կը յիշուի այդ վարժարանի անունով Ընկերութիւն մը, որ 320 դրշ.ի նպաստ մը կ՚ընէ «Արուեստասէր Ընկերութեան», որպէս զի վերջինս կարող ըլլայ Մուշի մէջ երկրագոր–

[29] Ճակատամարտ, 1919, Թ. 96:
[30] 1952, Թ. 777:
[31] 1953, էջ 12:
[32] 1953, էջ 12:

ծական վարժարան մը բանալ[33]: Անծանօթ է Ալպօյաճեանի:

2. ԲԱՐԵՍԷՐ ԱՆՁՆՈՒԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

Կազմուած է 1880ի սկիզբը: Կը յիշուի 1881ին[34]: Անծանօթ է Ալպօյաճեանի:

3. «ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ» (1911)

Կազմուած է 1911 Մարտ 11ին: Իր Կանոնագիրը հրատարակուած է թերթիկի մը վրայ, որմէ կ'իմանանք թէ Միութեան նպատակն էր. «Գիւղիս (Օրթագիւղ) Ազգ. երկսեռ վարժարանաց ուսանողութեան մտաւորական մակարդակը բարձրացնել, վերակազմելով եւ հետզհետէ ճոխացնելով վարժարանին գրադարանը»: Կանոնագիրը ունի 11 Յօդուած: Իւրաքանչիւր անդամ ամսական 50 փարա կը վճարէ (Յօդ. 7): Միութեան կնիքին վրայ կը կարդացուին հետեւեալ բառերը. «Մատենադարան Միութիւն Օրթաքէօյ, Ազգ. երկ. վարժ. 1911»:

## ՊՈՅԱՃԻԳԻՒՂ

1. ... ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1907)

Գիւղին դպրոցի աշակերտներէն ունեւորներու տղոցմէ հիմնուած Ընկերութիւն

---

[33] Լոյս, Կ. Պ. 1880, էջ 991:

[34] Տե՛ս Մանզումէի Էֆքեար, 1888, Թ. 4319 եւ 4320:

*մը կը յիշուի* 1909 *Դեկտեմբերէն* երկու տարի *առաջ*, *որ «չատ չանցած խամրած»է* (Ազատամարտ, *Կ. Պ.* 1909, *Թ.* 147) ։

2. «ԱՐՇԱԼՈՅՍ» ԿՐԹԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1907)

*Պոյաճըգըւղի* աղքատ ընտանիքներու *զաւակ աշակերտներէ հիմնուած է* 1907*ին*, *որուն Ատենապետը* Ֆրէնկեան, *իսկ Ատենադպիրը* Գույումճեան *էր* 1909*ին* (Ազատամարտ, 1909, *Թ.* 146) ։

*Ընկերութիւնս յարատեւած է ։ Վարժարանի յաջողակ աշակերտները կրցեր է տեղաւորել երկրորդական վարժարաններու մէջ ։* 1909*ին ունէր սաներ Սկիւտարի եւ Բերայի երկրորդական վարժարաններու մէջ* (Ազատամարտ, 1909, *Թ.* 147) ։

## ՊԷՕՅԻՒՔՏԷՐԷ

1. ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1881)

*Հիմնուած է* 1881 *Յուլիսին վերջը՝ հետեւեալ Տնօրէն Խորհրդով.*

| | |
|---|---|
| *Աղեքսանդր Փանոսեան* | *Ատենապետ* |
| *Գ. Պէզազեան* | *Ատենադպիր* |
| *Ստեփան Աւետիսեան* | *Գանձապետ* |
| *Սահակ Խանճեան* | *Հաշուակալ* |

*Ծարաթական բաժնեվճարն է մէկ ղրուշ ։ Ունեցած է Կանոնագիր ։ Սկզբնական* նպա—

տակն *եղած է* «գիւղին եկեղեցւոյն, վարժարանին եւ աղքատաց օգնել»: *Սակայն 1883ին գրեթէ լուծուած էր՝ մնալով միայն հաշուակալը: 1888ին կը վերակազմուի՝ նպատակ ունենալով Պէօյիւքտէրէի մէջ* աղջկանց վարժարան մը բանալ: *Ընկերութեան նոր Վարչութիւնը, գլուխ ունենալով* Յովսէփ Ծ. Վ. Սարաճեան, 1888 *Սեպտ. ի առաջին կիրակին հանդիսութեամբ բացումը կը կատարէ* Բարեգործական Ընկերութեան աղջկանց վարժարանին 33 *աշակերտուհիով եւ* Օր. Թագուհի Ազոյեան *վարժուհիով*:

*Ընկերութիւնը* 1888*ի վերջը ունէր Մուտք* 6282·50 *ղրշ. եւ Ելք* 5163 *ղրշ.*[35]»:

*Ընկերութիւնս անծանօթ է Ալպօյաճեանի*:

ՊԷՅՔՈԶ

1. ԴՊՐՈՑԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Հիմնուած է* 1908*ին, ինչպէս կը գրէ* Մանզումէի էֆքեար (1908, *Թ.* 2260):

2. ԱԶԳ. ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1919)

*Կազմուած կ՚երեւայ* 1919*ի սկիզբը: Հանդէս կը սարքէ* 1919 *Փետրուարին՝ ի նպաստ հայ տարագրեալներու եւ դպրոցներու* (Ժողովուրդի Ձայնը, 1919, *Թ.* 104):

[35] *Տե՛ս* Արեւելք, 1889, *Թ.* 1525:

## ԳԱՏԸԳԻՒՂ

### 1· ԿՐԹԱՍԷՐ ՕՐԻՈՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1919)

*Կազմուած է* 1919*ի գարնան* : *Հիմնադիր-ներն են Գատըգիւղի* Անարատ Յղութեան *վարժարանի* շրջանաւարտուհիները : *Նպա-տակն է՝ նոյն վարժարանի մէջ* Ընթերցա-րան *մը հաստատել* (Ժողովուրդի Ձայնը, *Կ. Պ*. 1919, *Թ*. 229) :

## ԳԱՍԸՄ ՓԱՇԱ

### 1· ԲԱՐԵՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

*Հաւանօրէն* 1908 *Օգոստոս—Սեպտեմբե-րին հիմնուած է* : *Կը յիշուի* 1908 *Նոյեմբե-րին* (Մանզ· Էփքեար, 1908, *Թ*. 2287) :

## ԷՅՈՒՊ

### 1· ՅՈՒՍԱԼԻՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (···1873)

*Ընկերութիւնս* բաժանորդական *է*, *հա-ւանօրէն* շահակցական : *Ունեցած է կանոնա-գիր մը* : *Յիշատակուած է շատ ուշ*· — 1873*ին* : «Ազգ Յուսալիր Ընկերութեան» *վերնագրի տակ կը գրէ Վարչ· Ժողովի Ատե-նապետ՝* Յ· Զիլինկիրեան· «*Ընկերութեանս 4 թիւ բաժնին տէր*··· *անձը իւր չարաթա-կանները ժամանակին չի վճարելով եւ քանիցս ազդարարելու*··· *Ժողովս յիշեալ*

*բաժինը անուրդի դնելով՝ ծախած է ըստ տրամադրութեան* երթներորդ յօդուածի *եւ ուրիշի փոխադրած. հետեւապէս յիշեալ թիւ բաժանորդն Ընկերութենէս հրաժարած եւ իրեն քով գտնուած միեւնոյն թիւ բաժնետոմսը անվաւեր եւ անարժէք կը ճանչցուի*[36]» ։

## ԼԱՆԿԱ

### 1. ՕԺԱՆԴԱԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1876)

*Հիմնուած է* 1876 *Յունուար* 1*ին* ։ *Իր նպատակն է* օգնել Կէտիկ–Փաշայի մէջ հաստատուած Մկրտիչեան Վարժարանի, մինչեւ որ ան կարող ըլլայ ինքզինքը հոգալ ։ *Անդամակցութեան մէկ բաժինն է չարաթը* 10 *փարա ։ Ընկերութեան վարչութիւնը կը կազմէր յատուկ Յանձնաժողով մը, որուն անդամներն էին.*

*Յովհաննէս Տօ–Մկրտիչեան*
*Ստեփան Մարտիկեան*
*Յովհաննէս Ազատարեան*
*Տօքթ. Կ. Վարդանեան*
*Տօքթ. Մ. Տատրեան*
*Յակոբ Մարթայեան*

*Ընկերութեան կանոնները* 12 *կէտերէ կը բաղկանան եւ հրատարակուած են* Աւետաբերի (*Կ. Պ.* 1876, *էջ* 139) *մէջ* ։

---

[36] Օրագիր, 1873, Թ. 1122 ։

# ՃՇԴՈՒՄՆԵՐ ԵՒ ԼՐԱՑՈՒՄՆԵՐ

## ՂԱԼԱԹԻԱ

### 1. Ս. ՅՈՎՍԷՓԱՅ ԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ (1742)

216 *տարի առաջ հիմնուած այս Ընկերութիւնը (տե՛ս աստ, էջ* 16) *տակաւին կենդանի է եւ գործօն։* 1920*ին* 50*ամեայ Յոբելեանի յիշատակ մը կատարուած է Պոլիս եւ այդ առթիւ յատուկ Միտալ մը շինուած, որուն մէկ երեսին վրայ կը տեսնուի հաւասարակող խաչ մը՝ բոլորտիքը գրուած.* Եղբայրութիւն Ս. Յովսէփայ. *իսկ երկրորդ երեսին վրայ.* Յիշատակ Յոբելինի Պաշտպանութեան Ս. Յովսէփայ 1870—1920։

### 2. Ս. ԼՈՒՍԱՒՈՐՉԻ ԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ (1781)

1811*ին* Գանձապետն *էր* Գրիգոր Ճիւքիւրեան, *քեռորդի մեր Հ. Անդրէաս Ճիւքիւրեանի, «որ յաւուրս կիւրակէից կացեալ ի դրունս եկեղեցւոյ ունելով զգանձանակ աղքատաց ի ձեռին՝ անսուաղ սպասէ մինչեւ ցհասարակ աւուր, պարզ վասն հոգեւոր վարձուց» (Դիւ. Վիենն. Մխիթ.* 1811 *Սեպտ.* 25)։

### 3. ՎԱՐԺԱՊԵՏԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862)

*«Վարժապետական Ընկերութիւն» (տե՛ս աստ, էջ* 28) *ունի* տասնուերեք *կէտերէ կազմուած* կանոնադրութիւն *մը, հրատարա–*

*կուած* ժամանակ *թերթի մէջ*[37], *ուսկից կ'իմանանք թէ «Ընկերութեան անդամ կրնան ըլլալ այն վարժապետները, որ արդէն Ազգին մէջ իրենց արդեամբը ծանուցեալ են: Իւրաքանչիւր ընկեր Ընկերութեան կողմանէ ընկերակցութեան վկայական պիտի ունենայ եւ ամսական գոնէ 5 ղրշնոց մէկ բաժին տուրք անխափան պիտի վճարէ Ընկերութեան* ․ ․ ․ Ընկերութեան սնդուկը հաւաքուած դրամը պիտի գործածուի կարօտ եղող ընկեր վարժապետաց օգնութեան համար, որոշեալ կանոնի մը համեմատ»:

*Կանոնադրութիւնը հաստատուելէ վերջ* (1864) *կազմուած է Դիւանը.*

| | |
|---|---|
| *Յակոբ Ոսկան* | *Ատենապետ* |
| *Աւետիս Տ. Սահակեան* | *Փոխ–Ատենապետ* |
| *Թորոս Նազարեան* | *Ատենադպիր* |
| *Սիմէոն Ցէլէկեան* | *Փոխ–Ատենադպիր* |

*Տնօրէն Ժողով*

*Սիմէոն Միքայէլեան*
*Յարութիւն Թիւլեան*
*Քրիստոստուր Ղազարոսեան*
*Քրիստափոր Գալփաքճեան*
*Ս. Պ. Պ. Փափազեանց*[38]:

4․ ԵՂԲԱՅՐԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1873)

*Ղալաթիոյ Ընկերութիւններու կարգին թիւ 12ի մէջ* (*տես՝ էջ* 31) *Թորգոմեանէ*

---

[37] 1864, *էջ* 192—193:
[38] *Անդ:*

*առնելով յիշած էինք* «Եղբայրական Ընկերութիւն» *մը՝* անծանօթ *իր բոլոր պարագաներով: Այժմ կը ճշդենք եւ կը լրացնենք.*

*Ընկերութիւնն է* «Եղբայրասիրաց *կամ* Եղբայրական Միութիւն», *որ կը յիշուի* 1873 Սեպտեմբերին: *Հիմնուած է* 1873*ի սկիզբը: Միութիւնը գոյութիւն ունէր* 1876*ին* (*տե՛ս* Հայրենիք, 1873, *թ*. 165: — 1876, *թ*. 300: — Նորագիր, *կ. պ.* 1876, *թ*. 1789): Մանզումէի էֆքեար (1876, *թ*. 3092) *կը գրէ որ Միութիւնը Ազգ. Հիւանդանոցի նուիրած է 2 հատ Օսմէնլի երկաթուղւոյ արժեթուղթ՝* 1,074,399 *եւ* 1,074,400 *թիւերով:*

## 5. ՎԱՐԺԱՊԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1878)

*Միութեանս հիմնադրութեան մօտաւոր տարի նշանակած էինք* (*տես՝ էջ* 39) 1880, *ինչ որ* սխալ է: *Հիմնուած է* 1878 Հոկտ. 15ին[39]:

*Միութիւնը ունի 8ը Յօդուածէ եւ 25 կէտէրէ բաղկացած* Կանոնագիր *մը, հրատարակուած* Հայրենիքի *մէջ, որմէ կը քաղենք քանի մը կարեւոր կէտեր:*

1878 *Հոկտ. 15ին Պոլսոյ ազգ. վարժարաններէն 30 ուսուցիչներ հաւաքուելով՝* «Վարժապետական Միութիւն» *անունով Ընկերութիւն մը կը հիմնեն նպատակ ունենալով.*

1. Վարժապետաց նիւթական վիճակին

[39] Հայրենիք, 1878, *թ*. 474:

բարւոքումն եւ բարոյական արժանեաց բարձրացումն․

2․ Մանկավարժական ուսմանց մշակութիւնն․

3․ Ազգ․ դաստիարակութեան կանոնաւորումն ու զարգացումն։

*Միութեան անդամ կրնայ ըլլալ ամէն հայ վարժապետ, որ իր ամսաթոշակին 2%ը կը վճարէ ամսէ ամիս։ Միութիւնը պիտի ունենայ սնտուկ մը, որմէ* ծեր ու կարօտեալ վարժապետաց նպաստ պիտի տրուի։ *Միութիւնը պիտի ունենայ* մանկավարժական թերթ *մը եւ* մատենադարան *մը։ Միութեան Ընդհ․ ժողովը կը կազմեն՝ ընկերաց ամբողջութիւնը։ Ունի Դիւան՝* 4 *անձէ եւ Գործադիր ժողով՝* 9 *անձէ կազմուած*[40]։

6․ ՄԻԱԲԱՆՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑԱԿԱՆԱՑ ՀԱՅՈՑ (1882)

*Կը կոչուի նաեւ* «Վարդապետաց Միութիւն» *եւ վերջնական կազմը ընդունած է* 1885*ին*։ *Իր* նպատակն *էր*․ «Գործակցիլ համախորհուրդ ի զարգացումն կրօնական եւ ուսումնական վիճակի վարդապետաց» (Լոյս, *Կ*․ *Պ*․ 1885, *Թ*․ 671)։

7․ ԴՊՐԱՑ ԴԱՍ (1907)

*Կը ճշդենք․ Ղալաթիոյ* «Դպրաց Դաս»*ի հիմնումը ոչ թէ* 1912ին (*տես՝ էջ* 48), *այլ* 1907ին *եղած է*։ *Ունի իր* Կանոնագիրը, *որուն*

---

[40] *Անդ*, *Թ*․ 476։

ԺԱ. Յօդուածին համեմատ Ընկերութեան եւ իր ժողովներուն Նախագահն է Դպրապետը: Ընկերութեան անդրանիկ Տնօրէն ժողովը կը կազմէին.

Ակայեան Ստեփան
Բարունակեան Գառնիկ
Լօքմաճեան Տիրան
Պօչնաքեան Հրանտ
Քէսէճեան Սմբատ[41]:

8. ՀԱՅ ՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

Կը ճշդենք հիմնումի տարին — 1910 —. իր Կանոնագիրը ունէր 64 Յօդուած (Առաւօտ, Կ. Պ. 1910, Թ. 199—200):

## ԲԵՐԱ

1. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1869)

Ընկերութեանս հիմնումի տարին եւ ուրիշ կէտեր անորոշ մնացած էին (տես՝ էջ 90): Օրագիր-Սէր թերթը կու տայ հետեւեալ լուսաբանութիւնները: Ընկերութեան «Գործ. Յանձնաժողով»ի Ատենապետ՝ Աւետիս Խտարէճեան եւ Ատենադպիր՝ Մ. Յ. Սրվանեան 1870 Մայիս 12ին կը ծանուցանեն թէ իրենց «վեցամսեայ հաշուեցուցակի պայմանաժամը լրանալու մօտ է». Հետեւաբար Ընկերութեան հիմնումը 1870ին չի կըր–

[41] Արեւելք, 1907, Թ. 6478:

նար ըլլալ, *այլ տառասխալ* 1869ին *ըլլալու է*: *Ընկերութիւնը ունի իր* Կանոնագիրը: *Ընկերութեան նպատակն է.* «Թաղին (Բերա) մտաւորական զարգացումն ու յառաջադիմութիւնը»: *Ընկերութիւնը* աղքատ աշակերտներու կօշիկ ու հագուստ շինել կու տայ [42]:

## 2. ՎԱՐԴՈՒՀԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

*Վերջապէս գտանք* «Վարդուհեան Ընկերութեան» Կանոնները, *որոնք* 32 *Յօդուածէ կը բաղկանան եւ* Մէնմուայի Հավատիս (1873, *Թ.* 1116) *հրատարակած է զանոնք: Ընկերութեան նպատակն է՝* «Դաստիարակութիւն Հայոց օրիորդաց» (*Յօդ. Բ.*):

## 3. ԽՐԱԽՈՅՍ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1872)

*Կը ճշդենք հիմնումի* տարեթիւը — 1872 — *եւ ոչ թէ* 1873, *ինչպէս գրած էր Ալպօյաճեան: Ընկերութեանս յորջորջումն է.* «Խրախոյս Ագապեան Ընկերութիւն», *զոր կը յիշէ* Մանզումէի Էֆքեար (1872, *Թ.* 1931): Փողի (1872, *Թ.* 207) *համեմատ Ընկերութիւնս հիմնուած է* 1872 Յուլիսէն առաջ: *Վերջինս կը գրէ. «Ագապեան վարժարանի անխոնջ եւ քրտնաջան տնօրէնութեան բարոյապէս խրախոյս եւ քաջալեր հանդիսացող երախտապարտութեան ազնիւ խումբը՝ նիւթապէս ալ խրախոյս մատուցանել կը խորհի»:*

---

[42] Օրագիր-Սէր, Կ. Պ. 1870, *Թ.* 159:

4· ԽՆԱՄԱՏԱՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Ընկերութեանս մասին* լրացում մը *միայն հարկ է ընել*․ Հայ Կաթողիկէ *Ընկերութիւն մ'է* «Ազգային Խնամատար Ընկերութիւնը», *որ ունեցեր է իր* կանոնագիրը (*մեզ անծանօթ*)․ *հաստատեալ եղած է Բերայի Ս․ Յովհ․ Ոսկեբերան եկեղեցին․ Ատենապետը* Յ․ Սամանենեան, *Ատենադպիրը*՝ Անտոն Գրլճեան[43]։

5. ԳԹԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1880)

*Հայ Կաթողիկէ Տիկնանց այս Ընկերութեան հիմնումի մօտաւոր թուականն նշանակած էինք* 1881․ *պէտք է ըլլալ սակայն* 1880, *ինչպէս կը տեսնուի* Թէրճէմանը Էֆքեար *թերթի Թ․* 854*էն*, *ուր կը ծանուցուի թէ Մայրաքաղաքի Հայ Կաթող․ Տիկիններր հիմնած են* «Գթասէր Տիկնայց» *անունով Ընկերութիւնը* (Dames de Charité), *որուն նպատակն է խնամք տանիլ Բանկալթիի Ս․ Յակոբ Հիւանդանոցի աղքատ, որբ, այրի, անտէր անձերու եւ ընտանիքներու*[44]։

6· «ՔՆԱՐ» ԵՐԱԺՇՏԱՍԷՐՆԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1888)

*Կը կոչուի նաեւ «Քնար»* Երաժշտական *Ընկերութիւն*։ *Հիմնուած է* 1888 *Հոկտեմբերին*։ *Իր* նպատակն *էր*․ «Երաժշտախումբ (orchestre) կազմել՝ անդամոց երաժշտական

---

43 Թէրճէմ․ Էֆքեար, 1879, Թ․ 702։
44 Թէրճ․ Էֆքեար, 1880, Թ․ 854։

արուեստի մէջ յառաջդիմելուն նպաստելու համար» (Արեւելք, 1888, թ. 1447)։ *Ունեցած է իր* կանոնագիրը։

7. ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԲԵՐԱՅԻ (1895)

*Կը լրացնենք. Բերայի* Աղքատախնամ Ընկերութիւնը *հիմնուած է* 1895 *Սեպտեմբեր–Հոկտեմբերին. Նոյեմբերին Տնտեսական Խորհուրդը կը վաւերացնէ Ընկերութեան* կանոնագիրը. *Նոյ.* 19*ին կ'ընտրուի Ընկերութեան Դիւանը հետեւեալ անձերով.*

| | |
|---|---|
| *Տիրան Քէլէկեան* | *Ատենապետ* |
| *Տիգրան Արփիարեան* | *Ատենադպիր* |
| *Յ. Տէրունեան* | *Փ. Ատենապետ* |
| *Ե. Սվաճեան* | *Փ. Ատենադպիր* |

(Հայրենիք, 1895, թ. 1346)։

8. ԷՍԱՅԵԱՆ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Բերայի այս Միութիւնը* 1919*ին անունը փոխելով՝ եղած է* «Դէպի Երկիր Միութիւն[45]։ *Հաւանօրէն կարճ տեւած է այդ նոր անունը։ Յետոյ դարձեալ նախկին անունը ստացած է։*

9. ՀԱՅ ԲԺՇԿԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

*Միութեանս վրայ լրացում մը միայն.* 1920*ին կ'ունենայ իր Պարբերականը՝* «Դարման»[46]։

---

[45] Ճակատամարտ, 1919, թ. 106։
[46] Ժամանակ, 1920, թ. 3755։

### 10․ ՀԱՅ ՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1910)

*Հիմնումի տարին կը ճշդենք․ ո՛չ թէ 1912ին, այլ 1910ին եղած է հիմնումը։ 1910ի Նոյ․ին գրական երկու մրցանակ կը խոստանայ թատերախաղի մը եւ Թրքահայ գրականութեան պատմութեան համար։ Դիւանը կը կազմեն Հ․ Ս․* Երեմեան (*Ատենապետ*) *եւ* Ռ․ Զարդարեան (*Ատենադպիր*) (*Հմմտ․* Յառաջ, *Կարին* 1910, *Թ․* 90)։ *Ունէր իր* Կանոնագիրը (*տե՛ս* Ազատամարտ, 1910, *Թ․* 287)։

### 11․ «ԴՊՐՈՑԱՍԷՐԻ» ՕԺԱՆԴԱԿ ՄԻՈՒԹԻՒՆ (1911)

*Միութեանս բուն անունն է․* «Դպրոցասէր Տիկնանց Օժանդակ Օրիորդաց Միութիւն» *եւ հիմնուած է* ո՛չ թէ 1913ին, *այլ* 1911 Հոկտ․ 19ին, *ինչպէս կ՚իմանանք իր* կանոնագրէն, *հրատարակուած* «Օշական» Գրական ժողովածուի[47] *տեւը*։

*Կանոնագիրը ունի* 38 *Յօդուած, որմէ կու տանք կարեւորները․*

*Նպատակ․ Ա․ Գոհացնել Վարժուհիներին ուսումնական պահանջները, կազմելով մատենադարան, գիտական աշխատանոց եւ հայթայթելով դասարանական զանազան կարեւոր տարիներ․ Բ․ Վարժուհիներին յաջող ուսումնաւարտներէն մին արտասահման ղրկել յաջորդաբար, կատարելագործելու համար մանկավարժութիւնը* (*Յօդ․* 1)։

Մէն մի անդամուհւոյ բարոյական պար–

---

[47] Կ․ Պ․ 1914։

տակա՛նութիւնն է իր անձնական շահերէն գերադասել Միութեան շահերը (*Յօդ․* 3)։

*Անդամուհիներու ամսական թաժնեգինն է մէկ դահեկան* (*Յօդ․* 4)։

*Միութիւնը պատասխանատու է Դպրոցասէր Տիկնանց Տնօրէն Ժողովին* (*Յօդ․* 8)։

12․ ՀԱՅ ՈՒՍՈՒՑՉԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ (1908)

*Կը ճշդենք․ ո՛չ թէ* 1912*ին*, *այլ* 1908 Օգոստ․ 2ին *հիմնուած է* «Հայ Ուսուցչական Միութիւն»*ը*, *որուն Դիւանի Ատենապետ*՝ Յ․ Թ․ Հինդլեան *եւ Ատենադպիր*՝ Յովսէփ Գույումճեան *ընտրուած էին*[48]։

*Միութեան* կանոնագիրը *հրատարակած է* Սուրհանդակ[49]։ *Իր նպատակ է․* «Ամբապնդել Թուրքիոյ Հայ ուսուցչաց մէջ համերաշխութեան ոգին»։ *Անդամ կրնայ ըլլալ ամէն հայ ուսուցիչ եւ ուսուցչուհի*, *որ ունի ուսուցչական վկայագիր եւ կը վճարէ տարեկան* 30 *ղրշ*․։

13․ ՀԱՅ ԿԱՆԱՆՑ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԻՒՆ (1919)

*Բերայի Ընկերութիւններու Թ*․ 69*ը* (*տես*՝ *էջ* 137) *կը ճշդենք ու կ՚ամբողջացնենք հետեւեալ կերպով․ Ընկերութեան տիտղոսն է*՝ «Հայ Կանանց Ընկերակցութիւն», *որ հիմնուած է* 1919 Յունիս 28ին, *Ազգ․ Մատենադարանի սրահին մէջ*։ *Իր* Ծրագիր–

[48] Սուրհանդակ, 1908, *Թ*․ 60։
[49] *Անդ*, *Թ*․ 61։

Կանոնագիրը *հրատարակած է* Հայ Կին[50]։ *Ընկերութիւնը Օրգան մը չէ կրցած ունեցալ։ «Հայ Կին»ի յարգելի խմբագրուհի՝* Տիկ. Հայկանոյշ Մառք, *իբրեւ անդամ նոյն Ընկերութեան, մեծ տեղ տուած է Ընկերութեան։* Հայ ԿԻՆ *Օրգանը եղած չէ բնաւ։*

*Ընկերութեան Ծրագիր–Կանոնագիրէն կը քաղենք յաջորդները·*

Նպատակ· Համերաշխութեան կապ մը հաստատել բոլոր հայ կիներուն միջեւ· *նպաստել Հայ կնոջ բարոյական, մտաւոր եւ նիւթական ու ֆիզիքական զարգացումին· արտայայտիչն ըլլալ Հայ կնոջ ընկերական եւ քաղաքական ձգտումներուն։*

*Ընկերութեան* անմիջական *նպատակն եղած է· Հայ կնոջ ձայնով պաշտպանել Հայկ· դատը եւ օժանդակել Մայր Հայրենիքին վերականգնումի գործին։*

Ծրագիր· *Ընկերութիւնը կը ձգտի կապ մ'ըլլալ Հայ կանացի բոլոր Միութիւններուն միջեւ·* Club *ունենալ...* Organe *մը գրական, գիտական, գեղարուեստական, ընկերային, քաղաքական ու վայելչական բաժիններով, նպատակ ունենալով զարգացնել եւ ազնուացնել Հայ կնոջ միտքն ու ճաշակը· հաստատել* տուներ... *պահպանել Հայ կնոջ ազնուական յատկանիշերը...։*

Կանոնագիր· *Ընկերակցութեան անդամ ըլլալու համար պէտք է առնուազն 21 տա–*

---

[50] Կ. Պ. 1919, Թ. 1, էջ 14 եւ 16։

*ըեկան ըլլալ եւ ներկայացուիլ մէկ անդամուհիի կողմէ. Ընկերութեան անդամավճարն է մէկ օսմ. ոսկի տարեկան, վճարելի մէկ անգամէն. Ընկերակցութեան ընթացիկ գործերը վարելու համար կ՚ընտրուի Վարչ. Ժողովը, որ կը բաղկանայ 9 անդամներէ եւ 5 օժանդակ անդամէ:*

*Ընկերութեան անդրանիկ Վարչական Մարմինները հետեւեալ կերպով կազմուած են.*

*Ընդհ. Ժողովի Դիւան*

| | |
|---|---|
| *Տիկ. Աւետիսեան (Անայիս)* | *Ա. Ատենապետ* |
| *Տիկ. Տօքթ. Զարփճեան* | *Բ. Ատենապետ* |
| *Օր. Վարդուհի Գալանթար* | *Ա. Ատենադպիր* |
| *Օր. Գ. Գավաֆեան* | *Բ. Ատենադպիր* |

*Վարչական Ժողով*

| | |
|---|---|
| *Տիկ. Ա. Յ. Սվաճեան* | *Ա. Ատենապետ* |
| *Տիկ. Զարուհի Պահրի* | *Բ. Ատենապետ* |
| *Տիկ. Հայկանոյշ Մառք* | *Ա. Ատենադպիր* |
| *Օր. Մաննիկ Պէրպէրեան* | *Բ. Ատենադպիր* |
| *Տիկ. Արաքսի Աչճեան* | *Գանձապետ* |
| *Օր. Մ. Ազարեան* | *Համարակալ* |
| *Տիկ. Մարի Սթամպօլեան* | *Անդամ* |
| *Տիկ. Զ. Գալէմքիարեան* | *Անդամ* |
| *Տիկ. Ա. Թէոդիկ* | *Անդամ* |
| *Տիկ. Տօքթ. Պալաքեան* | *Անդամ* |
| *Տիկ. Տօքթ. Ալեանաք* | *Անդամ* |
| *Օր. Տէր Սահակեան* | *Անդամ*[51] |

---

[51] Հայ կին, *անդ*, էջ 14 *եւ* 16։

## ՖԷՐԻԳԻՒՂ

### 1. Ս. ՎԱՐԴԱՆԱՆՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1881)

Ֆէրիգիւղի «Ս. Վարդանանց Ընկերութեան» հիմնադրութեան ժամանակը չէինք կրցած ստուգել (տե՛ս առ՝ էջ 142—143) եւ ենթադրաբար ու հարցականով 1872 դրած էինք: Այժմ ուրախ ենք ճշդելու հետեւեալ կերպով. Ընկերութիւնը հիմնուած է 1881 Ապրիլին եւ իր նպատակն է. «Ֆէրիգիւղի վարժարանի աղքատ տղոց կրթութեան նիւթապէս եւ բարոյապէս նպաստել[52]»:

Հայրենիքի մէջ Ընկերութեան Գործ. Ժողովի Ատենապետ Ն. Մ. Էքսէրճեան եւ Ատենադպիր Ն. Գազազեան Ֆէրիգիւղէն 1881 Յուլ. 28 թուականով կը գրեն. «Գիւղիս կրթասէր երիտասարդութիւնը տեղւոյս Ազգ. վարժարանի աղքատիկ մանկտւոյն դաստիարակութեան նիւթապէս եւ բարոյապէս նպաստելու համար երեք ամսէ ի վեր Ս. Վարդանանց անուամբ Ընկերութիւն մը կազմած է եւ իր Վարչութեան Գործ. Ժողովս ալ ընտրուած է ըստ օրինի... Գործ. Ժողովս... սկսած է ձրի գրեանք եւ թուղթ, գրիչ եւն, մատակարարել ի պէտս աղքատիկ ուսանողաց. ինչպէս նաեւ դասախօս–դաստիարակին ամսականին մէկ մասն ալ ստանձնած է վճարել[53]»:

---

52 Թէրճէմանը Էֆքեար, 1881, Թ. 1187:
53 Հայրենիք, 1881, Թ. 791:

## ԲԱՆԿԱԼԹԻ

### 1· ԱՂՔԱՏԱՍԷՐ ԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ (1872)

Կը կոչուէր նաեւ «Աղքատասէր Ընկերութիւն» եւ ունէր աղջկանց նախակրթական վարժարան մը ի Բանկալթի, Հայոց հին գերեզմանատան դիմացը (Յ. Գ. Փալագաչեան, Տեղագրութիւն Կ. Պոլսոյ. Կ. Պ. 1889, էջ 35) :

### 2· «Ս. ԸՆՏԱՆԻՔ» ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԵՂԲԱՅՐՈՒԹԻՒՆ (1902)

Եղբայրութեան մասին կ'ընենք յաջորդ լրացումները. 1. Հիմնադիրն եղած է Հ. Գրիգորիս Ծ. Վ. Գալէմքեարեան, Վիեննական Մխիթարեան. 2. Եղբայրութիւնը Ա. Համաշխարհային պատերազմէ վերջ վերակազմուած եւ կոչուած է «Ս. Ընտանիք Աղքատախնամ Միութիւն», որուն Վարչութիւնը 1922ին — Միութեան 20ամեակին առթիւ — կ'ընէ հետեւեալ դեկոյցը.

Միութիւնը ունեցած է՝
1920ին Մուտք 35,750, Ելք 19,410
1921ին Մուտք 115,910, Ելք 66,010

«Առանձին ուշադրութիւն դարձուեցաւ որ նպաստները իրապէս կարօտեալներու տրուին... Մայիս ամիսէն սկսաւ օրական հացի բաշխումը, որ պատերազմի ընթացքին դադրած էր: Նորածին աղքատ մանկանց, ինչպէս նաեւ չափահասներու համար ալ

զգեստեղէն բաժնուեցաւ:... *Ի նկատի առնելով այն մեծ դժուարութիւնը որ կը տիրէ բնակութիւն գտնելու եւ տան վարձքերը վճարելու, Միութիւնս այդ ուղղութեամբ ալ աշխատեցաւ օգտակար ըլլալ կարօտ ընտանիքներու, դիմելով օժանդակութեանը Ս. Յակոբ անկելանոցի Պատ. Վարչութեան: Որբերու հոգածութեան նուիրական գործին մէջ ալ Աղքատախնամս բերաւ իր փոքրիկ մասնակցութիւնը* երկու որբուհիներու ամսականը վճարելու նպաստելով: *Միութիւնը յատկապէս ուշադրութիւն դարձուց* հիւանդ աղքատներուն»: *Միութիւնը առանձին շնորհակալութիւն կը յայտնէ Տօքթ.* Ա. Գամպուրեանի, Ս. Յակոբ Անկելանոցի, Կարմիր խաչի, Փոքր Քերց (Petites Soeurs) *եւ* Երեմիա Հիւանդանոցի:

*Գանձապետ*

Հ. Վրթանէս Բունկուցեան

*Նախագահ*

Հ. Յուսիկ Կոստանեան[54]

## ՇԻՇԼԻ

### 1. ՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ (1909)

Կը գրեն. *Ո՛չ թէ Շիշլիի մէջ՝ այլ* ՖէՐԻԳԻՒՂ-ՊԵՐԱՅԻ *մէջ* հիմնուած է «*Հայ*

---

[54] Ժողովուրդի Ձայնը, 1922, Թ. 1089:

*Տիկնանց Միութիւն»ը, յետոյ* փոխադրուած ՇԻՇԼԻ։

*Հիմնադիրներն են* ՖԷՐԻԳԻԻԴԻ *«Տիկնանց»ին եւ* Բերայի *«Աշխատանքի Տան» անդամներէն ոմանց* միութեամբ՝ *նպատակ ունենալով, Ատանայի ջարդէն ետք,* Կիլիկեան զոհերուն օգնութեան հասնիլ։ *Կ՚ընձեռեն զգեստ, դրամ, եւ այլն։ Կը բանան Որբանոց մը Օրթագիւղի մէջ, ուր Ատանայէն բերուած* 25 *որբուհիներ կը ստանան խնամք, սնունդ, դաստիարակութիւն, ուսում, ձեռագործ, կարուձեւ։ Միութիւնը Ատանայէն բերել կու տայ ուրիշ որբուհիներ ալ եւ անոնց առողջութեան նպաստելու համար Որբանոցը* Շիշլի *կը փոխադրէ* (Ազատամարտ, 1909, *թիւ* 90, 96)։

## ՕՐԹԱԳԻՒՂ

### 1· ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1874)

*Ընկերութիւնը իր գոյութիւնը պահած էր — հաւանօրէն* վերակազմուելով *— մինչեւ* 1891։ Դանուք *թերթը կը գրէ որ «Օրթագիւղի Հայ երիտասարդք* Ուսումնասիրաց Ընկերութիւն *մ՚ունին. անցեալ օր կ՚ուզեն ի նիստ գումարուիլ կարեւոր կարգադրութիւններ ընելու համար, չենք գիտեր ի՞նչ տեսակ լրտուէ դրդուած՝ Պէշիկթաշի վսեմ. ոստիկանապետն կարգիլէ այդ նիւթը...»* (Դանուք, *Ուսճուք* 1891, *Թ.* 3)։

## 2· ԱՐՈՒԵՍՏԱՍԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1879)

*Այս անունով* երեք *Ընկերութիւն յիշած է Արշակ Ալպօյաճեան (Գաղութահայ Տարեգիրք*, *Գ.*, *էջ* 114, 115 *եւ* 117) *Սամաթիոյ* (1875*ին*), *Խասգիւղի* (1877*ին*) *եւ Օրթագիւղի* (1879*ին*) *մէջ: Մեզի կը թուի թէ թիւրիմացութեան մը զոհ եղած է, երբ կը գրէ թէ Օրթագիւղի «Արուեստասէր Ընկերութիւն»ը կազմուած է* 1879 *Հոկտ.ին՝* «1877 Մայիս 1ին Խասգիւղի մէջ կազմուած նոյն անուն ընկերութեան նմոյշին վրայ եւ նոյն նպատակով» (*Գաղ. Տարեգ. Գ.*, *էջ* 117):

*Մեր պրպտումներուն մէջ* Խասգիւղի *«Արուեստասէր Ընկերութեան» մը* չենք հանդիպած: *Մեզի կը թուի թէ Խասգիւղ* չէ ունեցած *այդ անունով Ընկերութիւն մը: Ինչ որ Խասգիւղի համար կը գրէ Ալպօյաճեան՝ կը վերաբերի մասամբ* Օրթագիւղի: *Օրթագիւղի՛ մէջ է որ հիմնուած է* Արուեստասէր Ընկերութիւն *մը եւ այն՝ ո՛չ թէ* 1879 Հոկտեմբերին, *այլ* 1879 Մայիս 1ին: *Ա՛յս Ընկերութիւնն է որ* Մուշի մէջ բացած է երկրագործական վարժարան մը, *ինչպէս պիտի պատմենք:*

*Ուրեմն ճշդելով կ՚աւելցնենք հետեւեալները Օրթագիւղի թիւ 23ի վրայ.*

Մանզ. Էփքեարի *մէջ* (1879, *Թ.* 4166) *թղթակից մը գրած էր թէ* Օրթագիւղի *մէջ* 1877 *Մայիս* 1*ին հաստատուած է «Արուեստասէր Ընկերութիւն»ը: Արդ*, 1877*ի վերջին*

7ը սխալ տպագրութիւն է. *պէտք է ըլլալ*՝ 9։ *Վերոյիշեալ թղթակիցը, որ* «Մ. Ա.» *կը ստորագրէ՝ իր թղթակցութիւնը* խասգիւղէն՝ *Պոլսոյ* Մանզումէի էֆքեարի *յղած է* 1879 *Սեպտ. 20ին, ուր կը տեղեկագրէ. «..խմբագիր. Ուրախութեամբ լսեցինք թէ* ՄԻՋԱԳԻՒՂԻ (*Օրթագիւղ*) *մէջ* Արուեստասէր *անուամբ* Ընկերութիւն *մը կազմուած է* 1877 (9) Մայիս 1է սկսեալ, Հայաստանի մէջ արուեստից զարգացման օժանդակելու նպատակաւ։ *Համայն ազգայնոց հրաւէր կը կարդամք որ սոյն բարենպատակ Ընկերութիւնը քաջալերել փութան։ Սոյն Ընկերութեան հիմնական կանոնագրութեան մէկ օրինակը քիչ օրէն լրագրոյդ մէջ հրատարակելու միտք ունիմք։*

20 *Սեպտ.* 1879 *Մ. Ա.*

խասգիւղ (Մանզ. էֆքեար, 1879, *թիւ* 4166)։

*Ինչպէս կը տեսնենք*՝ խասգիւղցի մ'է գրողը, *բայց Ընկերութեան կազմուիլը* Միջագիւղի (Օրթագիւղ) *մէջ կը դնէ եւ այն*՝ 1877 Մայիս 1ին, *որ պիտի ըլլայ*՝ 1879 *Մայիս* 1։ — *Ընկերութիւնս յիշուած է ուրիշ թերթերէ ալ, մերթ* «Արուեստասէր» (Մասիս, 1879, *թ*. 2473), *մերթ* «Հայկական Արուեստասէր» (Փունջ, 1880, *թ*. 1497), *մերթ* «Արուեստասիրաց» (Մասիս, 1881, *թ*. 2795) *եւ մերթ* «Արուեստասիրաց Հայ-

կակաՆ» (Մասիս, 1882, *Թ*. 3347) *կո-չուելով*։

*«Մ. Ա.» խօսքը պահած չէ Ընկերու-թեան Կանոնները «քիչ օրէն» հրատարակե-լու* Մանզումէի *մէջ*։

Թէրճէմանը էփքեար 1880 *Մարտ 4ին* «Արուեստասէր Ընկերութիւն Հայկական, հաստատեալ ի 1 Մայիսի 1879» *վերնագրի տակ կը հրատարակէ Ընկերութեան* «Հիմ-նական Կանոնագրութիւնը», *ուր սակայն* ո՛չ ստորագրութիւն կայ, եւ ոչ ալ տեղւոյ (թաղի) անուն։ *Անշուշտ* Օրթագիւղի *«Արուեստասէր»ինն է այդ Կանոնագրու-թիւնը, քանի որ հոդ կ՚ըսուի թէ հաստա-տուած է* 1879 *Մայիս* 1*ին եւ կը կրէ նաեւ սա* ծանուցիչ նշանը *թէ իր* նպատակն է «Հայաստանի մէջ արուեստից զարգացումն»։

Լրագիր (1879, *Թ*. 1076) *ալ կը հաս-տատէ թէ «Արուեստասէր Ընկերութիւն»ը* 1879 *Մայիս* 1*ին հիմնուած է իրեն նպատակ ունենալով*. «Հայաստանի մէջ արուեստից զարգացման օժանդակել»։

*Վերոյիշեալ «Կանոնագրութիւն»ը կը բաղկանայ* 28 *կէտերէ*, սովորական բովան-դակութեամբ *եւ որեւէ ակնարկութիւն չկայ Հայաստանի մէջ* արհեստից *կամ* արուեստից օժանդակելու *անշութեամբ* (*տե՛ս* Թէրճ. էփքեար, 1880, *Թ*. 805)։

Փունջ 1880 *Օգոստ. 9ին կը գրէ. «Գո-հութեամբ կը լսեմք թէ Ընդ. Ժողովն*

Հայկական Արուեստասէր Ընկերութեան… Օգոստ. 3ի նստին մէջ տարեկան 500 լիրա որոշելով՝ Մշոյ մէջ երկրագործական վարժարան մը հիմնելու համար իւր Գործ. Ժողովոյն յանձներ է գործադրել անյապաղ: Իսկ Գործ. Ժող.ն այս որոշման գործադրութեան համար՝ իբրեւ յարմարագոյն նկատելով Մշոյ Առաքելոց վանքն, խնդրեր է Ս. Պատրիարքէն՝ որ Ընկերութեան տրամադրութեան ներքեւ դրուի յիշեալ վանքն: Նորին Սրբազնութիւնն ալ մեծաւ հաճութեամբ ընդունելի համարելով այս առաջարկութիւնը՝ Վանօրէից Խորհրդոյ յանձներ է առ ի գործադրութիւն» (Փունջ, 1880, Թ. 1497):

Ընկերութեան Գործադիր Ժողովը Իզմիրի Արեւելեան Մամուլի մէջ (1880, էջ 514) կը հրատարակէ հետեւեալը. «Գործադիր Ժողովս կը փութայ ուրախութեամբ ծանուցանել թէ Պ. Պետրոս Աֆքէրեան Ընդհ. Տնօրէն եւ Պ. Գրիգոր Գարբիէլեան վկայեալ երկրագործ եւ Ուսումնապետ վարժարանիս Հոկտ. 15ին ժամանած են ի Մուշ իւրեանց հետ ունենալով երկրագործական գործիք եւ այլ պիտոյք, եւ թէ վարժարանիս բացումն տեղի ունեցած է ամսոյս 24ին Ս. Առաքելոց վանուց մէջ…

Ի դիմաց Գործադիր Ժողովոյ
Արուեստասէր Ընկերութեան Հայկական

Ատենադպիր Ատենապետ
Գ. Շնորհքեան Յովհ. Շահինեան

30 *Նոյ.* 1880
*Կ. Պոլիս*

*Գրիգոր Գաբրիէլեանի* 150 *լիրա, իսկ Պետրոս Աֆքէրեանի* 50 *լիրա կը վճարուի տարեկան* (Թէրճ. էֆ. 1880, *Թ.* 973) :

Փունջ (1881, *Թ.* 1541) 1881 *Յունուարին կ'իմանայ թէ Մշոյ Ս. Առաքելոց վանքին մէջ բացուած երկրագործական վարժարանի աշակերտներու մէկ մասը* ցրուած է *վանահօր պատճառաւ, որ վարժարանի բացման տեն ալ դժուարութիւն հանած էր :*

*Մասիս* (*Թ.* 3342) 1882 *Դեկտ.ին ցաւով կը յայտնէ թէ վարժարանը* փակուած է: *Փակումի պատճառ ցոյց կու տայ վանքի վանահայրը՝* Յովհ. Վ. Մուրատեան:

Փունջի *համեմատ* (1883, *Թ.* 1829) *Ընկերութիւնը հարկ եղած աջակցութիւնը չէ ունեցած իր պաշտօնեաններու կողմին վրայ, որոնք Ընկերութեան դրամը չարաչար գործածած են :*

ՊԷՅՔՈՁ

1. ԴՊՐՈՑԱՍԷ՞Ր ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1871)

*Այսպէս հարցումով նշանակած էինք Ընկերութեանս* անունը՝ *հին լուսաբանութիւն մը գտած չըլլալով : Գտանք սակայն նոր լուսաբանութիւն մը, որով կրնանք հաստատել*



*մեր հարցումը. — Այո՛, այսինքն՝* Դպրոցասիրաց *կը կոչուէր Պէյքոզի մէջ* 1871*ին հիմնուած Ընկերութիւնը, որուն* հիմնադիրներէն *մին եղած է* Թ. Մարգարեան *եւ կը յիշէ Ընկերութեան անունը, այսպէս.* «Պէյքոզի Դպրոցասիրաց Ընկերութիւն» (Ազատամարտ, 1910, *թ.* 242)։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ





---

